# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 15

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ВИЗАНТИЙСКИЕ ИСТОЧНИКИ

V

# ПРОДОЛЖАТЕЛЬ ФЕОФАНА

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Р. М. БАРТИКЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1990

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Ե

# ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1990

ԴՄԴ 63.3(2Հ)43
Թ 406

Տպագրվում է ՀԽՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ



Հատորի խմբագիր պատմական գիտությունների դոկտոր
Ս. Մ. ԿՐԿՅԱՇԱՐՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել ՀԽՍՀ ԳԱ թղթակից անդամ
Մ. Կ. ԶՈՒԼԱԼՅԱՆԸ և պատմական գիտությունների թեկնածու
Գ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԸ

Թեոփանեսի Շարունակող
Թ 406 *[Ժամանակագրություն] / Թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագր. Հ. Բարթիկյանի; (Հատորի խմբ.՝ Ս. Մ. Կրկյաշարյան).—Եր.։ ՀԽՍՀ ԳԱ հրատ., 1990.—VI—XLV+438 էջ.—(Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, 15. Բյուզանդ. աղբյուրներ, 5 / ՀԽՍՀ ԳԱ Պատմ. ին-տ; Խմբ.՝ Ս. Տ. Երեմյան (գլխ. խմբ.) և ուրիշ.).*

*Գիտության մեջ «Թեոփանեսի Շարունակող» պայմանական խորագիրն է տրված 813—961 թթ. պատմությունն ընդգրկող մեծարժեք մի ժամանակագրության, որ անփոխարինելի աղբյուր է ոչ միայն Բյուզանդիայի, այլև հարևան երկրների, այդ թվում Հայաստանի պատմության ուսումնասիրման համար։ Նա հսկայական նյութ է պարունակում այդ շրջանում Բյուզանդիայում գործած հայազգի ռազմական, քաղաքական և մշակութային բարձրաստիճան բազում գործիչների մասին, ինչպես և բյուզանդական գահին տիրացած բազմաթիվ հայազգի կայսրերի, այդ թվում՝ Մակեդոնական (Հայկական) հարստության։*

*Նախատեսվում է Բյուզանդական կայսրության և Հայոց պատմությամբ հետաքրքրվողների համար։*

0503022000 / 708(02)—90 — 18—90

ԴՄԴ 63.3(2Հ)43

ISBN 5—8080—0128—5
Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1990

# «ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ»-Ի «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» ԵՎ ԺԱՄԱՆԱԿԸ

*«Բյուզանդական աղբյուրներ» մատենաշարի սույն V գիրքը գիտության մեջ «Թեոփանեսի Շարունակող» (կամ «Շարունակված Թեոփանես»* «Theophanes Continuatus»*) պայմանական խորագիրը կրող «Ժամանակագրության» հայերեն ամբողջական թարգմանությունն է։ Նախորդ՝ IV գիրքը Թեոփանես Խոստովանողի նշանավոր «Ժամանակագրությունն» էր, որ ընդգրկում է Դիոկղետիանոս կայսրից սկսած (284 թ.) մինչև 813 թ. ընկած ժամանակաշրջանի պատմությունը։ Ահա այդ «Ժամանակագրության» շարունակությունն է խնդրո առարկա պատմական երկը, որ ստեղծվել է X դարի կեսերին, Կոստանդին Ծիրանածին կայսեր (913—959 թթ.) կարգադրությամբ։*

*Ինչպես կտեսնենք ստորև, «Թեոփանեսի Շարունակող»-ի ընդգրկած պատմական ժամանակաշրջանը՝ IX դար—X դարի կեսեր, Բյուզանդական կայսրության պատմության այն շրջանն է, երբ հայկական տարրը կայսրության կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերեց իշխող դիրք։ «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրությունը» այդ իրողությունը ամենավառ ձևով է ներկայացնում, որով հիշյալ պատմական երկը մի զգալի չափով «Բյուզանդիա և Հայաստան, հայերի դերը Բյուզանդական կայսրության մեջ» մեծ թեմային է նվիրված։*

*«Թեոփանեսի Շարունակող»-ի «Ժամանակագրությունը» մեզ է հասել մեկ գրչագրով, XI դարում արտագրված մատյանում, որն այժմ պահվում է Վատիկանի մատենադարանում (*Vatic. *167)*[1]*։ Այդ երկը բովանդակող մի այլ ձեռագիր (*Barber. *232) արտագրված է սրանից և հրատարակված ֆրանսիացի հելլենագետ, Բորդոյի համալսարանի փիլիսոփայության և աստվածաբանության պրոֆեսոր Ֆրանկիսկոս*

[1] Նրա մասին տե՛ս *S. Mercati* et *P. Franci de Cavalieri*, Codices Vaticani graeci, vol. 1, Vatic. 1923, p. 191; *H. G. Nickles*, The Continuatio Theophanis. „Transactions and Proceedings of the American Philological Association", vol. 68. 1937, p. 24, n. 22 (apud: *Каждан*, Из истории 1, с. 76).

Կոմբեֆիսի (1605—1679 թթ.) կողմից։ Այն լույս է տեսել բազմիցս։ Վերջին հրատարակությունն իրականացվել է բյուզանդական պատմիչների Բոննի կորպուսում, 1838 թ.[2]։ Հենց սրանից է կատարված մեր ներկա թարգմանությունը։ Պետք է նշել, որ Վատիկանի № 167 ձեռագրից արտագրված է, նույնպես Վատիկանի մատենադարանում պահվող մի ձեռագիր ևս, որը սակայն իրենից ներկայացնում է «Թեոփանեսի Շարունակող»-ի երկի՝ Կոմբեֆիսի բաժանմամբ սոսկ հինգերորդ գիրքը[3]։

Ինչպես պետք էր սպասել, առկա մեկ գրչագիրը հնարավորություն չի տալիս կազմելու հիշյալ երկի քննական բնագիրը, և ուսումնասիրողները ստիպված էին բավարարվել մի շարք ընթերցվածների առանձին ուղղումներ առաջարկելով։

Ինչպես ասվեց, և այդ բանը հաստատում է «Ժամանակագրության պակասավոր խորագիրը, երկը Թեոփանես Խոստովանողի նշանավոր «Ժամանակագրության» շարունակությունն է։ Կոմբեֆիսն այն բաժանել է վեց գրքի, թեև բաժանումն առկա է միայն առաջին չորս մասերում, որոնք բովանդակում են չորս կայսրերի՝ Լևոն V Հայկազնի (813—820 թթ.), Միքայել II Ամորացու (820—829 թթ.), Թեոփիլոսի (829—842 թթ.) և վերջինիս որդի Միքայել III-ի (842—867 թթ.) թագավորությունների պատմությունը։ Այդ մասին է վկայում արդեն հիշված խորագիրը, որտեղ կարդում ենք. «Ժամանակագրություն շարահարյալ հրամանավ քրիստոսասեր և Ծիրանածին Կոստանդին կայսեր ամենաիմաստուն և ինքնակալ Լևոն կայսեր որդու, սկսյալ այնտեղից, որտեղ ավարտել է Թեոփանեսը, այն է՝ Լևոն Հայկազնի թագավորությունից մինչև Թեոփիլոսի որդի Միքայել կուրապաղատ[4] կայսեր»։ Կոմբեֆիսի կողմից V գիրք համարվող մասն ունի առանձին վերնագիր և իրենից ներկայացնում է Վասիլ I-ի (867—886 թթ.) թագավորության պատմությունը, շարադրված նրա թոռ Կոստանդին Ծիրանածինի կողմից. «Երանելի Վասիլ կայսեր կյանքի և գործունեության պատմությունը, որ նրա թոռ՝ կամավն աստուծո հռոմայեցիների կայսր Կոստանդինը ջանասիրությամբ քաղեց զանազան շարագրանքներից և վստահեց գրչին»։ Ինչ վերաբերում է VI գրքին, ապա այստեղ շարադրված է Լևոն VI-ի (886—912 թթ.), յոթնամյա Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանության (912—920 թթ.), նրա հորեղբայր Ալեքսանդրի (912 թ.),

[2] Լուսատիպ եղանակով արտատպվել է Աթենքում։ Հրատարակության թիվը նշված չէ։ Իրականացնողն է Կ. Խ. Սպանոսը։
[3] Տե՛ս H. G. Nickles, The Continuatio Theophanis, p. 225 sq.
[4] «Կուրապաղատի» մասին տե՛ս ստորև, ծանոթ. 2։

*Ռոմանոս I Լեկապենոսի և Կոստանդին Ծիրանածինի միացյալ իշխանության (920—944 թթ.), Կոստանդին Ծիրանածինի երկրորդ մենիշխանության (944—959 թթ.) և վերջինիս որդի Ռոմանոս II-ի թագավորության առաջին երկու տարիների (959—961 թթ.) պատմությունը։*

*Արդ, եթե նկատի առնենք այն հանգամանքը, որ աշխատության խորագրում խոսք է լինում «ժամանակագրության»՝ Կոստանդին Ծիրանածինի հրամանով գրվելու մասին, ապա պարզ է, որ վերջին էջերը, որոնք նվիրված են հիշյալ կայսեր մահից հետո տեղի ունեցած իրադարձություններին, աշխատությանն են կցվել ավելի ուշ։ Անգլիացի բյուզանդագետ Ջ. Բյուրին ենթադրում է, որ աշխատությունը կազմված է շուրջ 950 թ.[5], բոլոր դեպքերում Կոստանդին Ծիրանածինի երկրորդ մենիշխանության տարիներին (944—959 թթ.)[6]։*

*Ո՞վ է «Թեոփանեսի Շարունակող» ընդհանուր խորագիրը կրող «ժամանակագրության» հեղինակը կամ հեղինակները։ Դեռևս 1885 թ. հույն պատմաբան Սակկելիոնը ամբողջ երկը (բացառյալ V գիրքը՝ Վասիլ I-ի կենսագրությունը) վերագրեց Թեոդորոս Դափնոպատեսին[7]։ Կ. Կրումբախերը Թեոդորոս Դափնոպատեսին էր վերագրում միայն VI գիրքը[8], իսկ Մ. Յա. Սյուզյումովը՝ միայն առաջին չորս գրքերը[9]։ Ս. Շեստակովը հանգեց այն եզրակացության, որ երկը մի ամբողջություն է և գրված է Թեոդորոս Դափնոպատեսի կողմից[10]։ Ա. Պ. Կաժդանը ցույց տվեց, որ հիշյալ «ժամանակագրությունը» մի ամբողջություն չի կազմում, որ այն շատ հստակ կերպով չորս մասի է բաժանվում[11], հետևաբար ունեցել է տարբեր հեղինակներ։ Առաջին մասի մեջ Ա. Կաժդանը ընդգրկում է Կոմբեֆիսի բաժանմամբ առաջին չորս գրքերը (Լևոն V-ին, Միքայել II-ին, Թեոփիլոսին և Միքայել III-ին նվիրված)։*

---

[5] *J. Bury*, The Treatise De administrando imperio, „Byzantinische Zeitschrift“, Bd. 15, 1906, p. 571.

[6] *Каждан*, Из истории 1, с. 77.

[7] *A. Markopoulos*, Theodore Daphnopatès et la Continuation de Theophane, p. 179. Թեոդորոս Դափնոպատեսի մասին այժմ տե՛ս Theodore Daphnopates. Correspondance, editee et traduite par *J. Darrouzès—L. G. Westerink*, Paris, 1 97

[8] *K. Krumbacher*, Geschichte, S. 348, 399, 459.

[9] *М. Я. Сюзюмов*, Об историческом труде Феодора Дафнопата, „Византийские очерки“, т. 2, 1916, с. 297 и сл.

[10] *С. Шестаков*, К вопросу об авторе Продолжения Феофана. „Deuxieme Congrès International des Etudes Byzantines“, Belgrade, 1929, p. 35 sqq.

[11] *Каждан*, Из истории 1, с. 92. Ա. Կաժդանը հանգամանորեն ուսումնասիրել է խնդրո առարկա երկի հետ կապված աղբյուրագիտական բազմաթիվ հարցեր „Византийский временник“ հանդեսում։ Մենք լայնորեն օգտվել ենք նրանից։

*Ինչպիսի՞ աղբյուրներից է օգտվել «Թեոփանեսի Շարունակող»-ի առաջին մասի հեղինակը։ Մի քանիսն ինքը հեղինակն է հիշատակում։ Կարևոր հիշատակություններից մեկն այն է, որ նա օգտագործել է ոմն Թեոգնոստոսի գործը. «Այս մասին շատ հստակ տեղեկացնում է մեր ձեռքն ընկած ուղղագրության մասին Թեոգնոստոսի գրվածքը։ Ով ծանոթանա նրան, հանգամանորեն կտեղեկանա» (Գիրք Ա, գլ. 27)։ Նա առանց որոշակիացնելու, Լևոն Հայկազնի՝ բուլղարների դեմ մղած մարտերի վերաբերյալ գրում է. «Ահա ոմանք գրավոր այսպես մեզ նկարագրեցին հիշյալ ճակատամարտը» (Գիրք Ա, գլ. 6)։ «Թեոփանեսի Շարունակող»-ին հայտնի են և օգտագործված Թեոփիլոս կայսեր իշխանության ժամանակին վերաբերող վիմագիր արձանագրություններ (Գիրք Գ, գլ. 8)։ Թեև «Ժամանակագրության» մեջ հիշված չեն, սակայն ուսումնասիրողները պարզել են, որ Թեոփիլոսի՝ Ամորիոն քաղաքի համար արաբների դեմ մղած պատերազմների պատմության շարադրանքում օգտագործված են «42 ամորացի նահատակների մասին վարքի» երկու խմբագրություններն էլ, ավելի վաղ կազմված Սոփրոնիոս Կիպրացու կողմից, և ավելի ուշ՝ Վասիլ I-ի ժամանակ ստեղծված, որի հեղինակն է վանական Եվոդիոսը[12]։*

*Ուսումնասիրողները կանգ են առել «Թեոփանեսի Շարունակող»-ի առաջին մասի՝ Գեորգ Վանականի և վերջինիս շարունակող Կեղծ Սիմեոն Մագիստրոսի[13] ժամանակագրությունների հետ ունեցած առնչության հարցի վրա։ Նրանք գտնում են, որ Սիմեոն Լոգոթետի ժամանակագրության առաջին խմբագրությունը «Թեոփանեսի Շարունակող»-ի բնագրից անկախ է, բայց երկրորդ և երրորդ խմբագրությունները հանդես են բերում ընդհանրություններ, որոնք, գտնում են, ուղղակի չեն գալիս «Թեոփանեսի Շարունակող»-ի «Ժամանակագրությունից», այլ երկուսն ունեցել են մի ընդհանուր աղբյուր[14]։*

[12] *Василевский—Никитин*, Сказания о 42 аморийских мучениках, с. 109. Նաև Պ. Նիկիտինի կարծիքը նույն տեղում, էջ 102 և ծանոթ. 1։ Հմմտ. *Каждан*, Из истории I, с. 78—79.

[13] Խոսքը Սիմեոն Լոգոթետի «Ժամանակագրության» երրորդ խմբագրության մասին է, որ առաջին հրատարակիչ Կոմբեֆիսը վերագրել է Սիմեոն Մագիստրոսին։ Հետագայում ուսումնասիրողները այն կոչեցին Կեղծ Սիմեոնի «Ժամանակագրություն»։ Նրա մասին այժմ տե՛ս Α. Φ. Μαρκόπουλος. Ἡ Χρονογραφία τοῦ Ψευδοσυμεών։ Կեղծ Սիմեոն Մագիստրոսի «Ժամանակագրությունը» հենված է Սիմեոն Լոգոթետի հնագույն բնագրի վրա, թեև նրանում կան հետագայում մուտք գործած հատվածներ (*Каждан*. Хроника Симеона Логофета, էջ 136)։ Մեր ծանոթագրություններում այն համառոտ է հիշատակվում, պարզության համար՝ «Սիմեոն Մագիստրոս»։

[14] *Каждан*, Из истории I, с. 79.

Վերջապես «Թեոփանեսի Շարունակողը» օգտվել է նաև Կոստանդին Ծիրանածինի հավաքած նյութերից, ինչպես և բավարար գրույցներից, հատկապես Միքայել III-ի վերաբերյալ, հաճախ ոչ վստահելի։

Ի տարբերություն բյուզանդական այլ ժամանակագիրների ու վարքագիրների, որոնք տալիս են պատմական դեպքերի ու դեմքերի մասին սոսկ պոզիտիվ շարադրանք, «Թեոփանեսի Շարունակողը» առանձին դեպքերում միևնույն դեպքի մասին բերում է երկու, իրարից տարբեր վարկածներ, ընթերցողին թողնելով ընտրելու նրանցից մեկն ու մեկի արժանահավատ լինելը։ Նա ջանում է նաև առանձին երևույթների պատճառները պարզել, քանզի, պատմիչի ասելով, «... քաղաքական գործիչների սովորելու և փորձ ձեռք բերելու ամենախսկական դպրոցն այն է, որ նրանց ցույց տրվի երևույթի անհայտ պատճառը, դեռ ավելին, նաև այն, ինչ թաքնված է մեզանից։ Ամեն մի պատմական երկ, որը դրանից զուրկ է ու մերկ, չգիտեմ, ինչ օգուտ կարող է տալ մարդկանց» (Գիրք Ա, գլ. 11)։

«Թեոփանեսի Շարունակողն» իր աշխարհայեցողությամբ ու գաղափարախոսությամբ ընդգծված պատկերապաշտ է։ Թեև պատկերապաշտության հաղթանակից անցել էր ավելի քան հարյուր տարի, նա ժամանակակցի կրքոտությամբ հարձակվում է պատկերամարտների, առաջին հերթին պատկերամարտ կայսրերի վրա, ամեն գնով ջանում նրանց անգամ դրական գործունեությունը մռայլ գույներով ներկայացնել։ Պատկերամարտության հարցում նա առաջինը ձաղկում է Լևոն Հայկազնին, ով եռանդուն կերպով առաջ տարավ պատկերապաշտների և հատկապես վանականության դեմ պայքարը։ Արծրունիների (և Գնունիների) ծագման մասին առասպելը, որ Լևոն V կայսրը օգտագործել է՝ դրանում պարփակված դրականը իրեն վերագրելու միտումով, աղավաղվել է՝ հակառակ պատկերը ներկայացնելու համար։ Լևոն V-ի մասին աստվածաշնչային առասպելը Ասորեստանի կռապաշտ թագավոր Սենեքերիմի՝ իր բարեպաշտ որդիներից սպանվելու, վերջիններիս Հայաստան փախչելու և իր՝ Լևոնի տոհմին սկիզբ տալու «փաստը» պատմիչը բերում է առանց այդ որդիների բարեպաշտության ու հոր կռապաշտության հիշատակության։ Նա սոսկ ընդգծում է նրանց հայրասպան լինելու հանգամանքը, հետևաբար և Լևոնի՝ հայրասպան հորից սերելը։ Այնուհետև պատմիչը ջանք չի խնայում ցույց տալու, որ Լևոնը օրինական ճանապարհով գահին չտիրացավ, այլ պարզապես այն հափշտակեց։ Բայց հենց այստեղ ակնառու է դառնում և «Թեոփանեսի Շարունակողի»՝ անկասկած Լևոնի կողմնակից և ժամանակակից աղբյուրի օգտագործման

փաստը։ Պատմիչը բերում է տվյալներ, որոնք հայազգի այդ կայսեր քաղաքական ու ռազմական գործունեության մասին հակառակ պատկերն են տալիս։ Նա ընդգծում է Լևոնի խիզախությունն ու ռազմավարական հմտությունը արաբների դեմ մղվող պատերազմում, դեռևս նրա նախքան գահին տիրանալը։ «Նա,—գրում է պատմիչը,—իսմայելացիների դեմ մղած անվերջ մարտերում սխրանքներ էր գործում, քանզի ռազմավարությամբ, իր ֆիզիկական ուժով ու ձեռք բերած փորձառությամբ շատ կարող էր»։ Լևոնի ռազմավարական ծիրքի մասին պատմիչը խոսում է և բուլղար խան Կրումի դեմ կայսրության մղած պատերազմների առնչությամբ։ Թեև մի տեղ գրում է, թե Լևոնը բյուզանդական զորքի պարտության պատճառն էր, այնուհետև բերում է այլ աղբյուրներից տվյալներ, որոնց համաձայն հենց Լևոնն էր զինված ուժերը փրկողը»։ «Թեոփանեսի Շարունակողը» (հավանաբար Լևոնի կողմնակից հեղինակի գործից օգտվելով) ցույց է տալիս, որ Լևոնն «անձամբ մարզում էր բանակը, Թրակիայի և Մակեդոնիայի բազմաթիվ շրջաններում անձամբ ի հիմանց կառուցում քաղաքներ, շրջագայում ամեն տեղ՝ սարսափ ու երկյուղ ազդելու համար անգամ թշնամիներին։ Պատմում են,—շարունակում է իր միտքը պատմիչը,—իր նման գործունեության համար նույնիսկ սուրբ Նիկեփորը (Նիկեփոր պատրիարքը—Հ. Բ.) մի առիթով արդեն նրա մահից հետո, ասել է, թե քաղաքը (Կոստանդնուպոլիսը—Հ. Բ.) թեև կորցրեց մի անօրեն մարդու, բայց և հասարակաց հոգացողի։ Նա ուժգին հարված հասցրեց իշխաններին ու կառավարիչներին, ոչ միայն քաղաքական, այլև ռազմական։ Երբ լինելով անարծաթասեր, առաջ էր քաշում ծայրաստիճան անկաշառ մարդկանց, նկատի առնում նրանց արժանիքները և ոչ ունեցած հարստությունը»։

Լևոնին թշնամաբար տրամադրված հեղինակը, պարզ է, նրա սպանությունը Միքայել II-ի կողմից պիտի համարեր աստծո ցասման արտահայտություն և այդ ոճրագործությունն արդարացներ։ Ահա Միքայել II-ի կատարած ոճրագործությունը աստծուց համարելով, «Թեոփանեսի Շարունակողը» այնուհանդերձ չի խնայում և Միքայելին, քանզի նա ևս բյուզանդական հասարակությանը հուզած պատկերապաշտ-պատկերամարտ կռիվներում ու վեճերում ընթացավ իր նախորդի ուղիով։ Նիկեփոր պատրիարքի պահանջին՝ վերականգնել սրբապատկերների պաշտամունքը, Միքայելը պատասխանեց. «Ես հավատքի սկզբունքների հարցում փոփոխություններ կատարելու միտք չունեմ, ոչ էլ որևէ հարձակում գործելու և վերացնելու արդեն ավանդվածն ու հաստատվածը»։

«Թեոփանեսի Շարունակողը» միանգամայն բացասական վերաբեր-

մունք չի ցուցաբերում Միքայել II-ի թագավորության տարիներին Բյուզանդիայում բռնկած Թովմա Գազիրացու ապստամբության նկատմամբ։ Նրան հասկանալ դժվար չէ։ Այդ ապստամբությունը, որ սկսվեց որպես հերթական գահակալական պայքար, շուտով ստացավ սոցիալական, դասակարգային բովանդակություն՝ ընդդեմ տիրապետող կարգերի։ «Ստրուկները,—գրում է պատմիչը,—մաճատարած զենք են բարձրացնում տերերի վրա, զինվորը՝ տաքսեոտի, լոխագոսը՝ զորավարի»։

«Թեոփանեսի Շարունակողի» պատկերապաշտական համոզմունքները ակնբախ են նաև Միքայելին հաջորդած վերջին պատկերամարտ կայսր Թեոփիլոսին նվիրված շարադրանքում։ Նա զուտ կեղծավորություն է համարում Թեոփիլոսի ձգտումը «իրեն ներկայացնել արդարության ջերմ պաշտպան, քաղաքացիական օրենքների ճշմարիտ պահապան»։ Մոռանալով իր այդ գրածը, նա ընդամենը մեկ էջ հետո, պարզ է, անքննադատաբար կրկնելով իր աղբյուրը և հակասությունը չնկատելով, գրում է միանգամայն հակառակը։ «Թեոփիլոսը,—ասում է նա,—հանդես եկավ որպես արդարության պաշտպան, բոլոր վատ մարդկանց համար եղավ սարսափելի, իսկ բարի մարդկանց համար՝ հիացմունքի սիրժանի։ Վատերի համար սարսափելի, քանզի նա արդար էր և վատության ատեցող, բարիներն էլ հիանում էին նրա վրա, քանզի նա գիտուն էր ու խիստ»։ Ահա այսպես հակասելով իրեն, վերոբերյալ նախադասությունն ավարտում է հետևյալ խոսքերով. «Այդուհանդերձ չի կարելի ասել, որ նա միանգամայն զուրկ էր վատությունից»։ Իսկ Թեոփիլոսի կենսագրությունն ավարտելով, ավելացնում է. «Նա իր ամբողջ կյանքի ընթացքում գարշանք տածելով ուղղափառ հավաքը գավանողների նկատմամբ, անգթաբար նրանց գլխին տարվա բոլոր եղանակներին մշտապես ձմեռ էր թափում»։

Այս բոլորը պարզ վկայում են, որ «Թեոփանեսի Շարունակողը» շատ հաճախ է ընկնում իր գաղափարներին միանգամայն հակառակ գիրքերում գտնվող աղբյուրի ազդեցության տակ, մի բան, որ ընդգծում է նրա անքննադատ վերաբերմունքը դեպի իր աղբյուրները։ Այդ բանը ամենից ակնառու երևում է հենց Թեոփիլոսին նվիրված գրքում։ Հենց թեոփիլոսամետ աղբյուրի անքննադատ կրկնելն է պատճառը, որ նա վերջում, մանրամասն նկարագրելով կայսեր շինարարական լայն գործունեությունը, փաստորեն տալիս է նրա ներբողյանը։

Անցնելով առաջին բաժնի չորրորդ գրքին՝ Միքայել III-ի և Թեոդորայի թագավորության շրջանին, «Թեոփանեսի Շարունակողը» միանգամայն կերպարանափոխվում է։ Հայտնի է, որ ո՛չ Միքայել III-ը և ոչ

էլ նրա մայր Թեոդորա կայսրուհին պետական ու ռազմական հարցերում դեմքեր չէին։ Ամբողջ իշխանությունը գտնվում էր սկզբնական շրջանում Թեոփիլոսի նշանակած խնամակալների՝ դրոմոսի լոգոթետ Թեոկտիստոսի, Թեոդորայի եղբայր կեսար Վարդասի և Թեոդորայի հորեղբայր մագիստրոս Մանուիլի ձեռքում։ Երեքն էլ շատ կարող անձնավորություններ էին։ Բայց փոքր անց, վերացնելով երկուսին, համայն իշխանությունն իր ձեռքն առավ Վարդասը։ Բայց հենց այն պատճառով, որ Թեոդորան դարձավ պատկերապաշտությունը վերականգնողը, «Թեոփանեսի Շարունակողը» նրան կոչեց «իսկական թագուհի»։ Դրա պատճառը նաև այն էր, որ հենց Թեոդորայի հրամանով սկսվեցին պավլիկյան աղանդավորների, կայսրության գահը սասանողների և իշխող դասակարգերի սարսափը հանդիսացողների տմարդի հալածանքները։ Ինչ վերաբերում է Միքայելին ու Վարդասին, ապա մեր պատմիչը նրանց հանդեպ միանգամայն բացասաբար էր տրամադրված։ Եվ դա բնական է։ Նա գրում է Կոստանդին Ծիրանածինի՝ Մակեդոնական հարստության հիմնադիր Վասիլ I-ի թոռան պատվերով, և նրա գրածը պիտի մուտք լիներ նոր հարստության հաստատման պատմության։ Եվ քանի որ Վասիլ I-ը գահ բարձրացավ Վարդասի և Միքայելի դիակների վրայով, ապա պետք է այդ ոճրագործությունների անհրաժեշտությունն արդարացվեր, նրանց ի վերուստ սահմանված լինելը հաստատվեր։

«Թեոփանեսի Շարունակողը», շարադրելով իր չորս գրքից բաղկացած երկասիրությունը, արդեն գիտե, որ երկի շարունակությունը, Վասիլ I-ի մանրամասն կենսագրությունը, շարադրված Կոստանդին Ծիրանածինի կողմից, առկա է։ «Հագարացիները,— գրում է նա,— ...ասպատակ էին սփռում, ավերում ու ոտնատակ անում համայն երկիրը՝ մինչև երանելի կայսր Վասիլի թագավորությունը։ Բայց այդ մասին խոսք կլինի նրա պատմությանը նվիրված գրքում» (Գիրք Բ, գլ. 28)։

«Թեոփանեսի Շարունակողը» ամեն կերպ աշխատում է ցույց տալ, որ Մակեդոնական հարստությանը նախորդող կայսրերին չի կարելի համեմատության մեջ դնել ուսումնասիրողների կողմից «Մակեդոնական» հորջորջված հարստության հիմնադրի, Վասիլի հետ։ Նա այստեղ, թեև մշուշապատ, կրկնում է Կոստանդին Ծիրանածինի գործում արտահայտություն գտած այն միտքը, որի նպատակն էր հիմնավորել Վասիլ I-ի գահ բարձրանալը, նրան համարելով Արշակունիներից սերող, հետևաբար թագավորական ծագում ունեցող կայսր և ոչ թագի հափշտակող, ինչպիսին նա իրականում էր։ Այդ առասպելը, որի հեղինակը ինքը Վասիլն էր և նրա շրջապատը, նպատակ ուներ ոչ միայն իր՝ Վասիլի ծա-

գումը սքողել, իր գահ բարձրանալը օրինականացնել, այլ նախ և առաջ հանդես գալ որպես արաբական լուծը թոթափող և իր ինքնուրույն պետականությունը վերականգնող Հայաստանի սյուզերենը, Հայաստանի, որի նվաճումը տվյալ պահին բյուզանդական արտաքին քաղաքականության հիմնական մտահոգությունն էր։

Վասիլ I-ի կենսագրությունը, որ, ինչպես ասվեց Կոմբեֆիսի բաժանմամբ կազմում է սույն «Ժամանակագրության» հինգերորդ գիրքը, գրվել է շուրջ 950 թ. (բոլոր դեպքերում 948 թ. հետո)։ Բնագրում, ինչպես ասվեց, այն վերնագրված է. «Երանելի կայսր Վասիլի կյանքի և գործունեության պատմությունը, որ նրա թոռ՝ կամավն աստուծո հռոմայեցիների կայսր Կոստանդինը ջանասիրությամբ քաղեց զանազան շարադրանքներից և վստահեց գրչին»։ Ինչպես ցույց է տալիս Ծիրանածինը տվյալ աշխատության առաջաբանում, ինքը ցանկություն է ունեցել գրել բյուզանդական բոլոր կայսրերի պատմությունը։ Բայց «դա գլուխ բերելու համար երկար ժամանակ, մեծ աշխատանք էր պետք, ապա և բազում գրքերի առկայություն, պետական գործերից որոշ դադար, մի բան, որից մենք զուրկ էինք։ Այդ իսկ պատճառով,—շարունակում է Ծիրանածինը,—ես ստիպված գտա մի երկրորդ ելք, այն է՝ սկզբից մինչև վերջը շարադրել մեկ կայսեր կյանքն ու ամբողջ գործունեությունը, կայսըր, որը կայսերական իշխանությունն անչափ վեհացրեց, որի անունը հոմանիշ է թագավորության, որը հռոմայեցիների պետության և գործերին անչափ օգտակար եղավ»։

Կոստանդին Ծիրանածինի նպատակն է եղել տալ իր պապ Վասիլ I-ի՝ Մակեդոնական հարստության հիմնադրի ներբողյանը։ Իր նպատակին հասնելու համար Ծիրանածինը շատ հաճախ ստիպված է լռել, նույնիսկ կեղծել առանձին փաստեր, որոնք կարող էին ստվեր գցել, անվանարկել իր փառաբանած անձնավորությանը։ Հենց սկզբից նա կեղծում է Վասիլ I-ի ծագման հարցը, ավելի ճիշտ, նա գրի է առնում այն կեղծ ծննդաբանությունը, որ ստեղծվել էր դեռևս Վասիլի կենդանության օրոք և որի համաձայն Վասիլը, ոչ ավել ոչ պակաս, սերում էր Հայաստանի առաջին քրիստոնյա թագավոր Տրդատ III-ից և Հռոմեական կայսրության առաջին քրիստոնյա կայսր Կոստանդին Մեծից։ Բոլորի համար մի բան պարզ էր, որ Վասիլը ծնվել էր Մակեդոնիայում, հայ ծնողներից։ Վասիլի կենսագիրները պետք է «ապացուցեին», թե Վասիլի նախնիները ո՞րտեղից էին գաղթել Մակեդոնիա։ Պարզ է, որ Հայաստանից և նրանք պետք է Հայաստանում իշխած թագավորական վերջին հարստության շառավիղները լինեին։ Ծիրանածինը ցույց է տա-

լիս», որ այդ գաղթը տեղի է ունեցել բյուզանդական Լևոն I կայսեր ժամանակ (457—474 թթ.)։ Այնուհետև կայսրը համառոտ ոճերով, պարզապես պատմական կապը պահպանելու, ավելի ճիշտ՝ ստեղծելու համար, մի քանի դեպքերի նկարագրությամբ պատմությունը հասցնում է մինչև բուլղարների խան Կրումի ժամանակները և ցույց տալիս, որ վերջինս 813 թ. Ադրիանուպոլիսը բյուզանդացիներից գրավելով, գերեվարեց տեղի բնակչությանը, այդ թվում և ապագա կայսեր ծնողներին, իրենց նորածին որդու հետ. նրանք գերությունից ազատվեցին Կրումի հաջորդ Օմուրտագի ժամանակ։

Ծիրանածինը առիթ չի փախցնում տեղի-անտեղի ցույց տալ, որ Վասիլի՝ պետության առաջին մարդը դառնալու պատիվը աստծուց էր նախասահմանված։ Թեև այլ աղբյուրներից ակնհայտ է, թե ինչպիսի ոչ աստվածահաճ ճանապարհներով նա տիրացավ Բյուզանդական կայսրության գահին։

Պատմաբան կայսրը, աշխատելով իր պապին ներկայացնել որպես առաքինության տիպար, որից պետք է, որ բոլորը օրինակ վերցնեին, խուսափում է ճշմարտությունից։ Նա ոչ կեսար Վարդասի, ոչ Միքայել III-ի սպանության մեղքը չի գցում Վասիլի վրա։ Ծիրանածինի տվյալներով Վարդասի սպանության հարցում Վասիլը դիտողի դերում էր, իսկ Միքայելի սպանության մեջ Ծիրանածինը իր պապին միանգամայն անմեղսակից է հանում, ջանում համոզել ընթերցողին, թե կայսեր սպանությունը կազմակերպեցին և իրականացրեցին «իշխանության գլուխ կանգնած բոլոր մեծամեծները և սենատի խելամիտ գործիչները»։

Կոստանդին Ծիրանածինը այնուհետև տալիս է Վասիլ կայսեր թագավորության մանրամասն պատմությունը, նրա ներքին քաղաքականությունը, արտաքին թշնամիների դեմ մղած պատերազմները, շինարարական, օրենսդրական գործունեությունը, ամեն անգամ չմոռանալով ընդգծել իր պապի ողջամտությունը, առաքինությունները։

Խնդրո առարկա երկը հայագիտության համար արժեքավոր է ոչ միայն դրանով, որ ի դեմս նրա մենք ունենք հայկական ծագումով մի կայսեր հանգամանալից կենսագրությունը, տվյալներ Բյուզանդական կայսրության մեջ այդ շրջանում աչքի ընկած մի շարք հայ գործիչների մասին։ Տարածված է այն կարծիքը, որ տվյալ ժամանակաշրջանում Բյուզանդիայում գործող հայ բարձրաստիճան գործիչները անունով էին միայն հայեր, որ նրանք մոռացել էին իրենց մայրենի լեզուն, կորցրել իրենց ազգային դեմքը։ Ծիրանածինի պատմությունը մեզ հնարավորու-

թյուն է ընձեռում հանգելու միանգամայն այլ եզրակացության։ Ինչպես վկայում է նա, Ադրիանուպոլսում (և ոչ միայն այնտեղ) հաստատված հայերը, որոնք բավական հարստացել էին, IX դարում առանձին գաղութ էին կազմում, պարփակված լինելով իրենց մեջ և անաղարտ պահելով ազգային դեմքը։

Ծիրանածինը նույն միտքն ընդգծում է մի քիչ հետո։ «Վասիլի նախնիները,—գրում է նա,—թեև տեղացիների հետ խնամիական կապեր հաստատում էին, բայց մեկուսացած տոհմի նման էին ապրում»։ Երբ Վասիլը առաջին անգամ գնում է Կոստանդնուպոլիս, ծառայության է անցնում ոչ այլ ոքի, այլ միայն հայի մոտ։ Թեոփիլիցեսը, որի պրոտոստրատորը նա դարձավ, Վարդասի ազգականն էր, իսկ Վարդասը հայտնի է, որ հայ էր։ Հենց Վարդասն է նրան հասցնում բյուզանդական բարձրաստիճան պաշտոնեության կազմը։ Եվ դա դեռ բոլորը չէ։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ բյուզանդական արքունիքում պատրիկ Կոստանդինը «շատ էր սիրում Վասիլին, որովհետև ինքն էլ (Վասիլի պես) ծագումով հայ էր»:

Ծիրանածնի այդ երկի արժեքը հայագիտության համար դրանով չի սպառվում։ Նա արժեքավոր է նաև իր վկայություններով Բյուզանդական կայսրության դեպի Արևելք կատարած արշավանքների և նվաճումների մասին։ Եթե չհաշվենք Գենեսիոսի «Ժամանակագրությունը», ապա Ծիրանածնի սույն երկը գլխավոր աղբյուրն է պավլիկյանների՝ կայսրության դեմ մղած պայքարի վերջին փուլի մասին։ Իսկ այդ կապակցությամբ բազմաթիվ տեղանունների, բերդերի և այլնի հիշատակումը կարևոր է Հայաստանի պատմական աշխարհագրության ուսումնասիրության համար։

Եվ վերջապես, նա բյուզանդական միակ աղբյուրն է, որ խոսում է Սահակ Պարթևի «Տեսիլքի» մասին։

Ծիրանածնի աշխարհայացքը ամենից հստակ ձևով այս աշխատության մեջ է հանդես գալիս։ Նա ճակատագրապաշտ է և սնոտիապաշտ։ Նախախնամությունն է մարդկանց գահ բարձրացնում և ցած գլորում։ Բայց հակառակ սույն աշխատության հեղինակի մտածելակերպին, նրա հետապնդած նպատակներին, առանձին փաստերի ակնհայտ աղավաղումներին, «Վասիլ կայսեր կենսագրությունը» մնում է այդ դարաշրջանի պատմության ուսումնասիրության գլխավոր և ամենակարևոր աղբյուրը։

«Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության»՝ Ա. Պ. Կաժդանի բաժանմամբ երրորդ հատվածը, որ ինչպես վերևում ասվեց



2—1069

Ֆ. Կոմբեֆիսը ներկայացրել է որպես ամբողջ երկի վեցերորդ գիրք, տրոհվում է երկու մասի։ Առաջին մասը բովանդակում է Լևոն VI-ի (886—912 թթ.), Կոստանդին Ծիրանածինի մանկահասակության (913—920 թթ.), Ռոմանոս I Լեկապենոսի և Կոստանդին Ծիրանածինի միացյալ թագավորության (920—944 թթ.), վերջապես Կոստանդին Ծիրանածինի միահեծան թագավորության տարիները մինչև 948 թ. և իր բովանդակությամբ գրեթե համընկնում է Սիմեոն Լոգոթետի «Ժամանակագրության»։

Լևոն VI-ի և Ալեքսանդրի պատմությանը նվիրված բաժինը, համեմատած Կոմբեֆիսի բաժանմամբ առաջին չորս գրքերի հետ, աչքի է ընկնում մի էական տարբերությամբ։ Եթե առաջին չորս կայսրերի պատմությունները իրենցից ներկայացնում են բավական հանգամանալից պատմական շարադրանք, ապա այստեղ մեզ է ներկայանում, խիստ ասած, պատմական շարադրանքի հում նյութ, որ ավելի է հարում Սիմեոն Լոգոթետի և Գեորգ Վանականի Շարունակողի որդեգրած համակարգին։ Լևոն VI-ի թագավորության մասին բաժնի § 20-ում, ապա և Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանության ժամանակաշրջանի պատմությանը նվիրված բաժնի § 8-ում հանդիպում ենք հեղինակի՝ լեզվաբանական, տեղանունների ստուգաբանության զանազան մարզանքների, որոնք գուցե գալիս են այլ աղբյուրներից, բայց և չի բացառվում, որ հետագա գրչի արգասիքը լինեն, քանզի աշխատության այլ բաժիններում նման բանի չենք հանդիպում։ Պետք է նշել, որ հենց այս, ապա և Ռոմանոս Լեկապենոսին նվիրված բաժիններում հանդիպում ենք հայազգի գործիչների, որոնք հիշված են իրենց տոհմանուններով։ Թեև մեզ համար պարզ էր, որ Բյուզանդիայում ծառայող հայազգի գործիչները մեծ մասամբ պատկանում էին հայ նախարարական ընտանիքներին, այդ հանգամանքը աղբյուրներում արձանագրված չէր, ավելի ճիշտ՝ պարզված չէր։ Այդ իմաստով կարևոր է հիշատակությունը Լևոն VI-ի թագավորության ժամանակ գործած Թեոդորոս Գունիացիցեսի (Գնունի) և Կոստանդին Ծիրանածինի ժամանակ՝ հայկական աղբյուրներում չարձանագրված «Մաշտոցյան» տոհմին պատկանող մի այլ Թեոդորոսի մասին։ Ռոմանոս Լեկապենոսին նվիրված մասի § 41-ի տվյալները վկայում են, որ հեղինակն օգտագործել է Հովհաննես Կուրկուասին նվիրված «պրոտոսպաթար և դատավոր Մանուիլի՝ ութ գրքից բաղկացած երկասիրությունը»։ Իսկ հաջորդ՝ § 42-ը շատ հստակ հուշում է, որ այն գրված է Նիկեփոր Փոկասի թագավորության ժամանակ (963—969 թթ.), և Փոկասի ընտանիքին մոտիկ կանգնած

մարդու կողմից։ Նա ոչ միայն գովաբանում է հայկական այդ տոհմին պատկանող մի շարք նշանավոր գործիչների, այլ նաև ցույց է տալիս, որ զորավար Հովհաննեսի հարազատ եղբայր պատրիկ Թեոփիլոսը «Նիկեփոր Հաղթողի՝ Փոկաս մականվանյալի թագավորության ժամանակ դարձավ մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս»։

Վերջապես, «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության»՝ Ա. Պ. Կաժդանի բաժանմամբ չորրորդ՝ վերջին մասը բովանդակում է Կոստանդին Ծիրանածինի միահեծան թագավորության հիմնական մասը և նրա որդի Ռոմանոս I-ի թագավորության սկիզբը, հասցնելով այն մինչև Կրետե կղզու ազատագրումը արաբների ձեռքից, 961 թ.։ Այս մասի հեղինակի անունը նույնպես հիշված չէ։ Ասենք, որ դեռևս Ֆ. Ի. Ուսպենսկին կարծիք էր հայտնել, որ խնդրո առարկա մասի հեղինակը Թեոդորոս Դափնոպատեսն էր[15], կարծիք, որ մերժվել է Վ. Վ. Լատիշևի կողմից[16]։ Սակայն Ա. Պ. Կաժդանը, առաջ քաշելով մի շարք կռվաններ, հակված է կարծելու, որ Թեոդորոս Դափնոպատեսը կարող էր լինել «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության» այս վերջին՝ չորրորդ բաժնի հեղինակը։ Նրա կռվաններից մեկն այն է, որ Դափնոպատեսը, լինելով Կոստանդնուպոլսի քաղաքապետ, քաջատեղյակ էր իրեն ժամանակակից և իր պաշտոնը վարած քաղում անձնավորություններին, որոնց մասին ամենայն մանրամասնությամբ գրված է այս չորրորդ բաժնում[17]։ Թեև իր այդ միտքը հաստատելու համար Ա. Պ. Կաժդանը բերում է այլ կռվաններ ևս, այդուհանդերձ «Թեոփանեսի Շարունակողի» պատմական երկի այս վերջին բաժնի՝ Դափնոպատեսի կողմից գրված լինելու վարկածը համարում է «շատ ենթադրական»[18], որով X դ. բյուզանդական ժամանակագրությունների պատմության նըվիրված իր երկրորդ հոդվածում Դափնոպատես անունը վերցնում է չակերտների մեջ[19]։

Ելնելով այն հանգամանքից, որ Հովհաննես Սկիլիցեսը չի օգտագործել «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության»՝ Ռոմանոս Լեկապենոսի անկմանը հաջորդող դեպքերի շարադրանքը, Ա. Պ. Կաժդանը կարծում է, որ Թեոդորոս Դափնոպատեսին վերագրվող այս բա-

[15] *Ф. И. Успенский*. Охридская рукопись Иоанна Скилицы куропалата. ИРАИК, т. IV, 1899, вып. 2, с. 3.

[16] *В. В. Латышев*. Две речи Феодора Дафнопата. Православный Палестинский Сборник, т. IX, 1910, с. XV—XVII.

[17] *Каждан*, Из истории 1, с. 93—94.

[18] Նույն տեղում, էջ 94։

[19] *Каждан*, Из истории 2, с. 113.

*ժինը «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության» մեջ նախապես չէր մտնում*[20]*։*

*Թեոփանեսի Շարունակողի» պատմական երկն իր բովանդակությամբ համընկնում է X դարի պատմիչ Գենեսիոսին վերագրվող «Թագավորությունների գիրքը» գործին, որն ընդգրկում է 813—886 թթ. դեպքերը, այսինքն՝ «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության» առաջին երկու մեծ բաժինները։ Արդ, ի՞նչ հարաբերության մեջ են այդ երկու աղբյուրները, ի՞նչ կապ կա նրանց միջև, նրանցից ո՞րն է առաջնայինը։ Դեռևս անցյալ դարից ուսումնասիրողները առաջ էին քաշել այն միտքը, որ «Թեոփանեսի Շարունակողի» աղբյուրն այս երկու բաժիններում Գենեսիոսի երկն է*[21]*։ Այս միտքը իշխող էր մինչև մեր դարի 30-ական թվականները, երբ այլ վարկած առաջ քաշեց Անրի Գրեգուարը։ Նա հանգեց այն եզրակացության, թե Միքայել III-ին վերաբերող բաժնում ոչ թե «Թեոփանեսի Շարունակողն» է օգտվել Գենեսիոսից, այլ ընդհակառակը՝ Գենեսիոսը «Թեոփանեսի Շարունակողից»*[22]*, որպեսզի այնուհետև ցույց տա, որ այդ երկու հեղինակները իրենց ձեռքի տակ են ունեցել մի այլ, երկուսի համար ընդհանուր աղբյուր*[23]*։ Այդ կարծիքը բյուզանդագետների շրջանում ընդունելության գտավ*[24]*։*

*Ա. Պ. Կաժդանը ամենայն մանրամասնությամբ համեմատելով «Թեոփանեսի Շարունակողի» երկի երկրորդ բաժինը՝ Վասիլ I կայսեր կենսագրությունը, Գենեսիոսի ժամանակագրության համապատասխան մասի հետ, եկել է այն եզրակացության, որ սկզբնաղբյուրը «Թեոփանեսի Շարունակողն» է, ավելի ճիշտ՝ Կոստանդին Ծիրանածինը*[25]*, թեև միաժամանակ չի բացառում այն հանգամանքը, որ առանձին տեղերում Գենեսիոսը ունեցել է այլ աղբյուրներ*[26]*։*

---

[20] *Նույն տեղում, էջ 110։*

[21] *E. de Muralt.* Essai de chronographie byzantine, p. XXIII; *F. Hirsch.* Byzantinische Studien, S. 122. *Հիրշի առաջ քաշած թեզը՝ «Թեոփանեսի Շարունակողի» կախվածության մասին Գենեսիոսից, ընդունելություն գտավ բազմաթիվ ուսումնասիրողների կողմից։ Այդ մասին տե՛ս* *Каждан*, Из истории 3, с. 99, прим 42

[22] *H. Grégoire.* Michel III et Basile le Macedonien, p. 335.

[23] *H. Grégoire.* Manuel et Theophobe, p. 185, n. 1.

[24] G. *Ostrogorsky.* History, p. 187; G. *Moravcsik.* Byzantinoturcica, Bd. 1, . 318. *Հմմտ.* *Каждан*, Из истории 3, с. 101, прим. 50.

[25] *Каждан*, Из истории 3, с. 101 и сл.

[26] *Նույն տեղում, էջ 116։*

Անցնելով Գենեսիոսի երկի և «Թեոփանեսի Շարունակողի» առաջին բաժնի համեմատության, Ա. Պ. Կաժդանը չի բաժանում Հիրշի կարծիքն այն մասին, թե «Թեոփանեսի Շարունակողի» աղբյուրը Գենեսիոսի պատմական երկն է։ Նա գրում է. «Թագավորությունների գիրքը» «Թեոփանեսի Շարունակողի» ժամանակագրության աղբյուր չի ծառայել, ավելի շուտ՝ հակառակը, Գենեսիոսն իր տվյալները՝ քաղում է այդ ժամանակագրությունից, կամ էլ երկու հեղինակներն էլ օգտվել են ինչ-որ մի երրորդ, մեզ չհասած աղբյուրից, ընդ որում «Թեոփանեսի Շարունակողը» բազմաթիվ դեպքերում ավելի մոտ է կանգնած սկզբնաղբյուրին»[27]։

Ավարտելով իր հետազոտությունը այդ երկու աղբյուրների միմյանց հետ ունեցած փոխհարաբերությունների մասին, Ա. Պ. Կաժդանը ցույց է տալիս, որ կասկածելի է այն միտքը, որ Գենեսիոսի ամբողջ ժամանակագրությունը բխում է «Թեոփանեսի Շարունակողի» երկից։ Այդ ենթադրությունը կարելի է անել լոկ Գենեսիոսի երկի վերջին մասի վերաբերյալ, բայց ոչ 813—867 թթ. շրջանին վերաբերող բաժնի համար[28]։

«Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրությունն» օգտագործել է XI դարի հեղինակ Հովհաննես Սկիլիցեսը՝ Փոտ և Իգնատիոս պատրիարքների, ինչպես և զորավար Հովհաննես Կուրկուասի գործունեությունը ներկայացնելու համար։ Այդ ժամանակագրության առաջին երեք բաժինները Հովհաննես Սկիլիցեսի հիմնական աղբյուրն են եղել 811—945 թթ. դեպքերի շարադրման համար[29]։

* * *

Ինչպես արդեն ասվեց, IX դարից, ավելի որոշակի՝ Լևոն V Հայկազնի թագավորությունից (813—820 թթ.) Բյուզանդական կայսրության

[27] Նույն տեղում, էջ 112, 116։

[28] Նույն տեղում, էջ 116։

[29] Նույն տեղում, էջ 110։ Հովհաննես Սկիլիցեսը Թեոդորոս Դափնոպատեսին հիշում է բյուզանդական տասը պատմիչների թվում, որոնցից «յուրաքանչյուրն իր առջև անձնական նպատակ դնելով, մեկը, ասենք, կայսեր ներբողյան (գրեց), մյուսը՝ պատրիարքի պարսավագիր, երրորդը՝ բարեկամի գովք, ամեն մեկը պատմության զգեստի մեջ սեփական դիտավորությունը (գրեցին)»։ Տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 10, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Գ, Հովհաննես Սկիլիցես, էջ 4։ Ըստ Ա. Մարկոպուլոսի Դափնոպատեսին է վերաբերում «կայսեր ներբողյան»-ի մասին խոսքը։ Տե՛ս *Markopoulos*, Theodore Daphnopates, p. 172.

պատմության մեջ բացվում է մի նոր ժամանակաշրջան, երբ հայկական տարրը կյանքի բոլոր բնագավառներում աստիճանաբար գերիշխող դիրքեր է նվաճում։ Եթե դրանից մեկ դար առաջ բյուզանդական գահին տիրացած Ֆիլիպպիկոս-Վարդանի կարճատև թագավորությունը (711—713 թթ.) կարելի է պատահական մի դրվագ համարել, ապա IX դարից սկսած պատկերը էապես փոխվում է։ Բյուզանդական կայսրության մեջ հայերի աչքի ընկնող դերը դառնում է նախորդող ժամանակաշրջաններում տեղի ունեցած «հայկական կուտակումների» արդյունքը։ Հարցն այն է, որ VIII դարի 20-ական թվականներից սկսած արաբական խալիֆայության օրեցօր ծանրացող լուծը Հայաստանում, դրա հետևանքը հանդիսացած 774—775 թթ. ապստամբությունը և նրա դաժան ճնշումը, հայերի՝ դեպի Բյուզանդիա արտագաղթի նոր, ավելի լայն հոսանքի պատճառ դարձավ։ Դրությունը էլ ավելի վատացավ պարսիկ Բաբեկի գլխավորած խուռամյանների՝ Հայաստանում ծավալած խժդժությունների պատճառով։ Արտագաղթում էին ամենից առաջ հայ նախարարական ընտանիքների առանձին ներկայացուցիչները, որոնք կայսրության մեջ իշխող դիրքեր էին գրավում, ոչ միայն քաղաքական ու ռազմական ասպարեզներում, այլև եկեղեցական ու մշակութային։

Բյուզանդական կայսրության գահին նստել են բազմաթիվ հայազգի կայսրեր, բայց միայն Լևոն V-ն է, որ աղբյուրներում մշտապես հիշվում է «Հայկազն» (ὁ Ἀρμένιος) մակդիրով։ «Թեոփանեսի Շարունակողը» նրա ծագման մասին տալիս է մանրամասն տեղեկություններ[30], որոնք վկայում են նրա ոչ միայն հայազգի լինելու հանգամանքը, այլև որոշակիորեն նախարարական ընտանիքի պատկանելու մասին։ Բյուզանդական աղբյուրը Լևոնի ծագման մասին բերում է Արծրունիների [ինչպես և Գնունիների] նախարարական ընտանիքներում տարածված հայկական այն առասպելը, համաձայն որի նրանք սերում են Ասորեստանի թագավոր Սենեքերիմի մի որդուց։ Ահա Արծրունի [կամ Գնունի] Լևոնը ծառայության է մտնում Նիկեփոր I կայսեր կողմից Արևելքի հինգ բանակաթեմերի գլխավոր հրամանատար նշանակված նույնպես հայազգի Վարդանի մոտ, դառնում ֆեդերատների [այսինքն՝ օտարերկրացի վարձկաններից կազմված զորագնդի] կոմես։ Այնուհետև նա ղեկավար պաշտոն ստացավ Միքայել I Ռանգաբե կայսեր պալատական պահակախմբում, շարունակելով իր զինվորական

[30] Լևոնի ծագման մասին հատուկ տե՛ս *Adontz*, Sur l'origine de Léon V.

կարիերան, որպես կայսրության խոշորագույն՝ Անատոլիկոն բանակաթեմի զորավար, արժանանալով նաև պատրիկի պատվաստիճանին։ Լևոնն ամուսնացավ պատրիկ և քվեստոր Արշավիրի դուստր Թեոդոսիայի հետ, այն Արշավիրի, որ 808 թ. դավադրություն էր նյութել Նիկեփոր կայսեր դեմ՝ գահին տիրանալու մտադրությամբ։

Միքայել կայսեր Նիկեփոր I-ից ժառանգություն էր մնացել բուլղարական պատերազմը։ Խան Կրումը 811 թ. հուլիսի 26-ին Նիկեփոր կայսեր ծանր պարտության էր մատնել, կայսրը սպանվել էր ռազմի դաշտում, նրա որդին՝ գահաժառանգ Ստավրակիոսը, մահացու վերք ստացել և փոքր անց վախճանվել։ Կրումը, գրավելով Թրակիայի բազմաթիվ քաղաքներ, այդ թվում և Ադրիանուպոլիսը, վերջինիս բնակչությանը, նրանց մեջ և բազմաթիվ հայերի, բռնի տեղափոխեց Դանուբ գետի ձախ ափը։ Բուլղարական բանակներն արդեն թակում էին կայսրության մայրաքաղաքի դռները։ Միքայել I-ը իր զորքերով, այդ թվում և Լևոն Հայկազնի գլխավորած գնդերով, ճակատամարտ տվեց, բայց հակառակ Լևոնի ցուցաբերած համառության, վարձկան գնդերի դավաճանության պատճառով, բյուզանդական բանակը 813 թ. հունիսի 22-ին Վերսինիկիա վայրում պարտություն կրեց, Միքայել կայսրը ստիպված գահից հրաժարվեց հօգուտ Լևոնի։

813 թ. հուլիսին Լևոնը գահ բարձրանալով, բարձր պաշտոնների նշանակեց իր հայրենակիցներին՝ Թովմա Գազիրացուն՝ ֆեդերատների տուրմարխի պաշտոնում, իսկ նախկինում Միքայել կայսեր պրոտոստրատոր Մանուիլին շնորհեց պատրիկի պատվաստիճան և նշանակեց Արմենիակների բանակաթեմի զորավար։

Լևոն V-ը ամենից առաջ ջանաց վերացնել բուլղարական վտանգը։ Նրան հաջողվեց վերագրավել Մեսեմբրիա (այժմ՝ Նեսեբր) քաղաքը, իսկ Կրումի մահից հետո բուլղար խան Օմուրտագի հետ 815 թ. երեսուն տարով հաշտության պայմանագիր կնքել։

Վերացնելով բուլղարական վտանգը և ապագայում ևս նրանց կողմից հանգիստ ու ապահով զգալու մտահոգությամբ, Լևոն V-ը Թրակիայում և Մակեդոնիայում հսկայական քաղաքաշինություն ու բերդաշինություն ձեռնարկեց։

Կայսրությանը պակաս մտահոգություն չէին պատճառում Հունաստանի մայր ցամաքում վաղուց հաստատված սլավոնների ելույթները։ Դեռևս 758 թ. Կոստանդին V կայսրը ճնշեց Մակեդոնիայի սլավոնների ապստամբությունը, 783 թ. Իրենե կայսրուհու օրոք՝ Թեսաղոնիկեի, Հելլադա բանակաթեմի և Պելոպոնեսի սլավոնների հակակայսերական

շարժումները: Պելոպոնեսի սլավոնների ապստամբությունները վերջ-նականապես ճնշվեցին Նիկեփոր I-ի օրոք, Փոքր Հայքից սերող հայազ-գի զորավար Սկլերոսի, հետագայում մեծ անուն հանած բյուզանդա-կան այդ ազնվականական ընտանիքի առաջին հայտնի ներկայացուցչի կողմից:

Այս շրջանում արաբական վտանգը կայսրության համար այնքան էլ սարսափելի չէր: Հարուն ալ Ռաշիդ խալիֆայի մահից հետո խալի-ֆայության ներսում ստեղծված անկայուն վիճակը Լևոն V-ին հնարա-վորություն տվեց զբաղվել կայսրության ներքին կյանքը հուզող մի շարք հարցերով, որոնցից ամենակարևորը պատկերների պաշտամուն-քի շուրջ գնացող վեճերն էին: Այս հարցում Լևոն կայսրը իր համար սատար գտավ ի դեմս Հովհաննես Քերականի, ծագումով հայ մի ուս-յալ անձնավորություն, որ հետագայում գրավելու էր Կոստանդնուպոլսի պատրիարքական աթոռը: Հիշյալ վեճերի հիմքում ընկած էին ավելի շուտ քաղաքական ու տնտեսական դրդապատճառներ, քան զուտ կրո-նական ու պաշտամունքային: Պատկերամարտության առաջին շրջանը, որ սկսվել էր 726 թ. Լևոն III կայսեր օրոք, վերջ էր գտել 787 թ. Նի-կիայի 7-րդ տիեզերական ժողովի ընդունած որոշումով: Հաղթանակել էր պատկերապաշտությունը, սակայն կարճ ժամանակով: Լևոն V-ը 815 թ. վերսկսեց պատկերապաշտների հալածանքները:

Լևոն V-ի որդեգրած քաղաքական, ռազմական ու եկեղեցական գործունեությունը ստիպեց իր հակառակորդներին համախմբվել: Նրանք Լևոնի կյանքի դեմ դավադրություն նյութեցին և նրան սրախողխող արին սբ. Սոփիայի տաճարում, սուրբ սեղանի առջև, 820 թ. դեկտեմ-բերի 25-ին, Քրիստոսի ծննդյան տոնին: Դավադրության կազմակեր-պիչն էր Լևոնի նախկին զինվորակից Միքայել Ամորացին, որ, գահին տիրանալով, հիմնադիրը դարձավ «Ամորական» կոչվող հարստության: Լևոնի սպանությունից հետո, Միքայելի մարդիկ Պրոտե կղզին աքսո-րեցին նրա կնոջն ու չորս որդիներին, որոնցից մեկի անունը Սմբատ էր:

Լևոն V-ի թագավորության օրոք պետական ու ռազմական պաշ-տոններում փայլեցին բազմաթիվ հայազգի գործիչներ, որոնցից «Թեո-փանեսի Շարունակողը» հիշատակում է, բացի Թովմա Դագիրացուց, նաև Արևելքի հինգ բանակաթեմերի ընդհանուր սպարապետ, մոնո-ստրատեգոս Վարդան «Թուրքին», Արմենիակների և Անատոլիկոն բա-նակաթեմերի զորավար պատրիկ Մանուել «Ամաղեկացուն», Լևոն V-ի եղբորորդի Գրիգոր Պտերոտոսին, հոգևորականներ Հովհաննես Քերա-կանին, ոմն Սմբատի և շատ ուրիշների:

Միքայել II-ի թագավորության ժամանակ [820—829 թթ.] պատկերապաշտների հալածանքները դադարում են, աքսորականները վերադառնում, այդ թվում և պատրիարք Նիկեփորը, ինչպես և նշանավոր վանական Թեոդորոս Ստուդիտեսը։ Սակայն նոր կայսրը իր նախորդի պատկերամարտական ուղղվածությունը չվերացրեց, պատկերապաշտությունը չհաղթանակեց։ Նիկեփոր պատրիարքի դիմումին՝ վերականգնել սրբապատկերների պաշտամունքը, Միքայել II-ը պատասխանեց. «Ես հավատքի սկզբունքների հարցում փոփոխություններ կատարելու միտք չունեմ, ոչ էլ որևէ հարձակում գործելու և վերացնելու արդեն ավանդված ու հաստատվածը։ Թող յուրաքանչյուրը վարվի ինչպես ինքն է ճիշտ գտնում, ըստ իր կամքի, այդ բանի համար ոչ ոք չի պատժվի, նեղություն չի կրի»։ Սա ցույց է տալիս, որ թեև տիրում էր պատկերամարտությունը, այդուհանդերձ պատկերապաշտները հետապնդման ենթակա չէին։

Միքայել II-ը իր որդու ու գահաժառանգի՝ Թեոփիլոսի դաստիարակության գործը վստահեց երդվյալ պատկերամարտ, հայազգի նշանավոր գործիչ Հովհաննես Քերականին։ Թեոդոտոս Մելիսենոսի մահից հետո նա պատրիարքական աթոռին վերստին չբազմեցրեց նախկին պատրիարք Նիկեփորին, այլ Անտոնիոսին, որ Հովհաննես Քերականի հետ մշակել էր 815 թ. եկեղեցական ժողովի կանոնները։

Միքայել II-ի թագավորության ամենանշանավոր իրադարձությունը դեռևս Լևոն V-ի թագավորության վերջում բռնկված Թովմա Դագիրացու ապստամբությունն էր։ Հանդես գալով որպես պատկերապաշտության ախոյան, նա կարողացավ իր կողմը գրավել իշխող ավագանուց դժգոհներին, ապա և տարածեց այն համբավը, թե նպատակ ունի փրկել ստրուկներին իրենց կրած հարկային ծանր լծից։ «Թեոփանեսի Շարունակողը» գրում է, թե Թովմայի ապստամբության ժամանակ «ստրուկները ձեռք են բարձրացնում տերերի վրա, զինվորը՝ տաքսեոտի, լոխագոսը՝ զորավարի»։ Համայն Փոքր Ասիան, բացառությամբ Օպսիկիոն և Արմենիակների բանակաթեմերի, անցավ ապստամբի կողմը։ Նրա բանակը ազգային առումով խիստ խայտաբղետ էր։ Պատմիչի ասելով նրան միացել էին «եգիպտացիներ, հնդիկներ, պարսիկներ, ասորիներ, հայեր, խալդեր, իբերներ, զեխեր, կաբիրներ և բոլոր նրանք, ովքեր բաժանում են Մանիի գաղափարներն ու օրենքները»։ Վերջիններս աղանդավոր պավլիկյաններն էին, որոնք բյուզանդական աղբյուրներում հաճախ մանիքեցիներ են կոչվում։ Նրանք աղանդավոր Սերգիոսի օրոք [801—835 թթ.] շատ էին հզորացել։ Թովմային օժանդակու-

*թյուն էր ցուցաբերում նաև արաբական խալիֆայությունը, որի թելադրանքով Անտիոքի պատրիարք Հակոբը Թովմային կայսր հռչակեց։ Կիբիրրեոտների ծովային բանակաթեմի անցումը ապստամբի կողմը վերջինիս հնարավորություն տվեց օգտագործելու և նրա ենթակայության գտնվող բյուզանդական տորմիղը։ Ապստամբին միացավ և Լևոն V-ի եղբորորդի, զորավար Գրիգոր Պտերոտոսը, որ Միքայել II-ի կողմից աքսորական ապրում էր Սկյուրոս կղզում։ Թովմային ստանալով տասը հազար հետևակ, նա գլխավորեց այն Միքայել II-ի դեմ մղվող պատերազմում։*

*821 թ. դեկտեմբերին Թովման պաշարեց Կոստանդնուպոլիսը։ Միքայել կայսեր օգնության եկավ բուլղարների խան Օմուրտագը, Կրումի որդին։ Թովման հաջողություն չունենալով, 823 թ. գարնանը ստիպված եղավ վերացնել մայրաքաղաքի պաշարումը, մանավանդ Գրիգոր Պտերոտոսը, դավաճանելով իրեն, անցել էր կայսեր կողմը և ապստամբին հարվածել թիկունքից։ Թովման 824 թ. հոկտեմբերին Թրակիայի Արկադիուպոլիս քաղաքում ընկավ կայսեր ձեռքը և մահապատժի ենթարկվեց։*

*Շուրջ երեք տարի տևած քաղաքացիական պատերազմը շատ էր թուլացրել կայսրությունը։ Օգտվելով դրանից Իսպանիայի արաբները 826 թ. նվաճեցին Կրետե կղզին և իրենց ձեռքում պահեցին մինչև 961 թ., երբ այն ազատագրեց հայազգի զորավար, հետագայում կայսր Նիկեփոր Փոկասը։ Կրետեն դարձնելով հարմար հենակետ, արաբները Միջերկրական և Էգեական ծովերում ծովահենությամբ էին զբաղվում, բավական նեղ դրության մեջ դնելով բյուզանդական իշխանություններին։ Աֆրիկայի արաբներն էլ իրենց հերթին 827 թ. ներխուժեցին Սիցիլիայում և, աստիճանաբար այն նվաճելով, խիստ թուլացրին բյուզանդական դիրքերը նաև այդ շրջանում։ Անցնելով Իտալիայի մայր ցամաքը, նրանք գրավեցին Կալաբրիան և Լանգոբարդիան։*

*Միքայել II-ի օրոք աչքի ընկած հայ գործիչներից հիշատակելի են Լևոն V-ի որդիներ Սմբատը, Վասիլը, Գրիգորը և Թեոդոսիոսը, որոնցից ոմանք Միքայել II-ի կողմից պաշտոններ էլ ստացան, ապա նաև պրոտոստրատոր Մանուիլը։*

*Միքայել II-ին հաջորդեց նրա որդի Թեոփիլոսը [829—842 թթ.], որը, ի տարբերություն հոր, փայլուն կրթություն էր ստացել։ Նա իր պատկերամարտական քաղաքականության մեջ ավելի հետևողական եղավ, քան հայրը, ինչ որ վերագրում են իր ուսուցիչ Հովհաննես Քերականի որոշ ազդեցությանը։ «Թեոփանեսի Շարունակողի» ասելով, նրա*

օրոք պետական բանտերը լցվեցին սրբապատկերները պաշտողներով, սրբապատկերների նկարիչներով, վանականներով, եպիսկոպոսներով, հոգևոր հովիվներով և նրանց հոտով... Նա հրամայեց արգելել վանականների մուտքը քաղաքները, նրանց վանքերն ու անապատները ակումբների և պանդոկների վերածեց»։ Հակառակ նրան, իր հայազգի կին կայսրուհի Թեոդորան թունդ պատկերապաշտ էր և ամուսնուց գաղտնի երկրպագում էր սրբապատկերները և այդ ոգով էլ դաստիարակում իր դուստրերին, մի բան, որ Թեոփիլոսից թաքուն չէր մնում և գրգռում էր վերջինիս զայրույթը։ Թեոդորայի հայազգի ծագումը, հավանաբար, պատճառ դարձավ, որ նա իր ամենակրտսեր դստեր՝ Մարիային կնության տա «Հայերի երկրից» սերող, նշանավոր հայազգի ռազմական գործիչ, Կրինիտեսների տոհմին պատկանող Ալեքսիոս Մուսելեին։ Թեոփիլոսը Ալեքսիոս Մուսելեին շնորհեց անթիպատ պատրիկի, ապա՝ մագիստրոսի պատվաստիճանը, իսկ հետո էլ նրան կեսար հռչակեց։ Այս շրջանում Բյուզանդական կայսրության մեջ նշանավոր մյուս հայազգի անձնավորությունը Մանուիլն էր։ Լևոն V-ի թագավորության ժամանակ նա փոքրասիական խոշորագույն՝ Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր, այն բանակաթեմի, որի զորավարը, մինչև կայսր դառնալը, հենց Լևոն Հայկազնն էր։ Իսկ Լևոնի հաջորդ Միքայել II-ի օրոք Մանուիլը կայսեր պրոտոստրատորն էր։

Թեոփիլոսի օրոք երկրի վարչական բաժանման մեջ տեղի ունեցան փոփոխություններ, որոնք ունեին խոշոր բանակաթեմերը փոքրացնելու, նրանց զորավարների հզորությունը թուլացնելու նպատակ։ Բուկելլարների բանակաթեմի տարածքից անջատվեցին նրա հյուսիսարևելյան շրջանները, կազմելով Պափլագոնիայի բանակաթեմը, իսկ Արմենիակների բանակաթեմի հյուսիսարևելյան շրջաններից՝ Խաղտիքի բանակաթեմը։ Կայսրության փոքրասիական շրջանների հարավում, արաբական խալիֆայության սահմանամերձ տարածքում Արմենիակների և Անատոլիկոն բանակաթեմերի հողերից ստեղծվեցին երեք վարչական միավորներ, որոնք կլեյսուրներ կոչվեցին։ Խոսքը վերաբերում է Խարսիանոնին, Կապադովկիայի և Սելևկիային, որոնք փոքր ուշ վերածվեցին բանակաթեմերի։ Վարչական փոփոխություններ տեղի ունեցան նաև Բյուզանդական կայսրության եվրոպական տարածքում և Ղրիմում։

Թեոփիլոսն իր ամբողջ թագավորության ընթացքում դժվարին պատերազմներ մղեց արաբական խալիֆայության դեմ։ Խալիֆա Մամունը [823—833 թթ.] որոշ չափով չեզոքացնելով պարսիկ Բաբեկի վտանգը, 830 թ. սկսեց պատերազմը Բյուզանդիայի դեմ։ Թեոփիլոսն ու Մանուի-

րը գլխավորեցին բյուզանդական բանակը։ «Թեոփիլոսի Շարունակողը» ասելով, «Մանուիլը շատ խիզախ մարդ էր, բոլոր հակառակորդներին քաջ հայտնի, քանզի նա ծննդով հայ էր»։

Թեոփիլոսի՝ արաբների դեմ գլխավորած զորքի հրամանատարներից էր և ըստ ավանդության պարսից արքաներից սերող և Բյուզանդիայում ապրող Թեոֆոբոսը։ Նա իր զորքով մուտք է գործում Բյուզանդական կայսրություն, հասնում Սինոպ քաղաքը և հպատակություն հայտնում Թեոփիլոսին։ Կայսրը պարսիկներից մի առանձին՝ «պարսկական» կոչված զորագունդ կազմեց և ուղարկեց արաբների դեմ։ Ահա սրանց հրամանատար է կարգվում Թեոֆոբոսը, որ, ամենայն հավանականությամբ, ոչ այլ ոք էր, քան Բաբեկի՝ Բյուզանդիա ապաստանած զինվորականներից։ Թեոփիլոսը քաղաքական նկատառումներով օգտագործում է խուռամյանների ապստամբությունը խալիֆայության դեմ։

Արաբների դեմ պատերազմը փոփոխական հաջողություններով էր գնում։ Այդ ընթացքում Մանուիլը, որ արդեն սխոլերի դոմեստիկոս սպարապետ էր նշանակվել, մեղադրվեց կայսեր դեմ խռովություն նյութելու մեջ։ Կուրացման վտանգին չենթարկվելու համար, նա փախուստի է դիմում արաբ խալիֆայի մոտ և արժանանում բարձր պատիվների։ Մնալով որոշ ժամանակ խալիֆայի մոտ, ի վերջո կայսրից ներում ստանալով վերադարձավ կայսրության սահմանները։

«Թեոփանեսի Շարունակողը» այդ ընթացքում խոսում է և մի արշավանքի մասին, որ բյուզանդացիները կատարել են Աբազգիայի [Աբխազիայի] դեմ։ Ուսումնասիրողները գտնում են, որ այն տեղի է ունեցել 837 թ. և ուղղված էր Տիֆլիսի ամիրա Իսխաք իբն Իսմայիլի դեմ։ Արշավանքը գլխավորում էին մեզ արդեն հայտնի Թեոֆոբոսն ու Թեոփիլոս կայսեր աներձագ, Թեոդորա կայսրուհու եղբայր Վարդասը, որոնք, սակայն, չարաչար պարտություն կրեցին։ Թեոֆոբոսը, որ խուռամյաններ աղանդի հետևորդն էր և Բաբեկի զինակիցը, բնական է, պետք է գլխավորած լիներ պարսիկ խուռամյաններից բաղկացած զորք։ Դա հաստատվում է Ստեփանոս Ասողիկի տվյալներով [տե՛ս ստորև, Գիրք Գ, ծանոթ. 94]։ Սակայն «Թեոփանեսի Շարունակողի» «Աբազգիան», եթե նկատի առնենք Ասողիկի տվյալները, ամենևին էլ Աբազգիա չէր, այլ բուն Հայաստանը, ավելի որոշակի՝ Բասեանն ու Վանանդը, որտեղ էլ նրանք ջարդ ստացան Տիֆլիսի վերոհիշյալ ամիրայի կողմից։

Խալիֆա Մամունին հաջորդած Մուտասիմի օրոք արաբների վտանգը

կայսրության համար ավելի շոշափելի դարձավ։ Թեև 837 թ. Թեոփիլոսը գրավեց Սամոսատ նշանավոր քաղաքը, բայց այդ միջոցին Բաբեկի ապստամբությունը ճնշած խալիֆան հնարավորություն ձեռք բերեց իր ամբողջ ուշադրությունը բևեռել կայսրության դեմ մղվող պատերազմին։ Մուտասիմը 838 թ. կազմակերպեց մի մեծ արշավանք փոքրասիական խոշոր կենտրոնների վրա։ 838 թ. հուլիսի 22-ին Դազիմոն վայրում տեղի ունեցած ճակատամարտում նա կայսեր դեմ փայլուն հաղթանակ տարավ, ապա շարժվեց դեպի Անկյուրա և հզորագույն քաղաք-ամրոց Ամորիոն, Ամորական հարստության հիմնադրի ծննդավայրը և գրավեց դրանք։ Թեոփիլոսն այնպիսի անելի առաջ կանգնեց, որ ստիպված եղավ ֆրանսիական թագավոր Լյուդովիկոս Բարեպաշտի [814—840 թթ.]՝ Կարլոս Մեծի որդու մոտ հայազգի գործիչ Թեոդոսիոս Բաբուցիկոսի գլխավորությամբ դեսպանություն ուղարկել, զինվորական օգնության խնդրանքով, բայց դեսպանության ղեկավարի անժամանակ մահը խանգարեց գործին։

Թեոփիլոսը արաբներից պարտություններ էր կրում նաև հարավային Իտալիայում, որտեղ Սիկիլիայի սարակինոսների ձեռքն ընկավ Տարանտա քաղաքը։

Թեոփիլոսին պակաս նեղություններ չէին պատճառում և երկրի ներսում բռնկված սոցիալական շարժումները, որոնցից հզորագույնն այս ժամանակ պավլիկյան աղանդն էր։ Սկիզբ առնելով Հայաստանի Արշամաշատ քաղաքում, VII դարի կեսերին, շարժումն աստիճանաբար տարածվեց Բյուզանդական կայսրության փոքրասիական նահանգներում և արաբական տիրապետության տակ գտնվող Հայաստանում։ VIII դարի կեսերից, շնորհիվ Կոստանդին V Կոպրոնիմոս կայսեր կողմից Թեոդոսուպոլսից և Մելիտենեից կատարված բռնագաղթեցումների, պավլիկյան աղանդը լայն տարածում գտավ նաև Թրակիայում։ Աղանդն իր հզորության գագաթնակետին հասավ հատկապես Սերգիոս աղանդապետի օրոք [801—835 թթ.], որ պատճառ դարձավ նրանց սարսափելի հալածանքների դեռևս Միքայել I-ի, Լևոն V-ի և Թեոփիլոսի կողմից։ Աղանդապետ Սերգիոսն իր հետևորդներով ստիպված եղավ փախուստի դիմել կայսրության տարածքից և ապաստանել Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ Աքթայի մոտ։ Սկզբնական շրջանում արաբները, նկատի առնելով աղանդավորների հակակայսերական տրամադրությունները, ջանացին օգտագործել նրանց և անգամ բնակության համար հատկացրին քաղաքներ ու ամրոցներ։

Թեև 837 թ. պատրիարք դարձավ Թեոփիլոսի հայազգի ուսուցիչ

Հովհաննես Քերականը, և վերսկսվեցին պատկերապաշտների հալածանքները, պատկերամարտությունն ապրում էր իր մայրամուտը։ Նա հիմնականում իր դիրքերն էր պահում սոսկ Կոստանդնուպոլսում։ 842 թ. հունվարի 20-ին Թեոփիլոսը վախճանվեց, նրա հետ նաև պատմության գիրկն անցավ կայսրությունը շուրջ 120 տարի ալեկոծած պատկերամարտությունը։ Թեոփիլոսի դեմ ատելությամբ լցված պատկերապաշտ պատմիչը արաբների դեմ մղված պատերազմներում կրած նրա պարտությունները բացատրում է հենց նրա «ամբարշտությամբ»։

Թեոփիլոսին հաջորդեց իր երեքամյա որդի Միքայել III-ը։ Իշխանության ղեկն իրենց ձեռքն առան նրա հայազգի մայր Թեոդորան՝ տուրմարխ և դրունգար Մարինոսի դուստրը, Թեոդորայի եղբայր, նշանավոր քաղաքական և մշակութային գործիչ կեսար Վարդասը, վերջինիս [ու Թեոդորայի] հորեղբայր Մանուիլը՝ «ազգությամբ հայ» և ներքինի Թեոկտիստոսը։ Սրանք մանկահասակ Միքայելի՝ Թեոփիլոսի նշանակած խնամակալներն էին։ Եթե նկատի առնենք այն հանգամանքը, որ Միքայելի անվամբ կտրված դրամների վրա, բացի Թեոդորայի պատկերից կա և Միքայելի ավագ քույր Թեկլայի պատկերը, որ կայսերական փաստաթղթերի տակ դրվում էր Թեկլայի ստորագրությունը, նշանակում է, որ Թեոփիլոսի ավագ դուստրը ևս խնամակալների թըվում որոշակի դեր էր խաղում։

856 թ. Միքայելի և Վարդասի նյութած դավադրության զոհ դարձավ Թեոկտիստոսը, և երկրի փաստական իշխանությունն ամբողջությամբ անցավ Վարդասի ձեռքը։ Երկու տարի անց տապալվեց և Թեոդորան, որ վանք էլ աքսորվեց։

Թեոփիլոսի մահից անմիջապես հետո կայսրությանը հուզող առաջնահերթ հարցը պատկերապաշտության վերականգնումն էր։ Պատկերամարտ պատրիարք Հովհաննես Քերականը կարգալույծ արվեց, և նրա փոխարեն պատրիարքական աթոռին նստեց Մեթոդիոսը։ 843 թ. գումարվեց եկեղեցական ժողով, որ վերջնականապես վերահաստատեց սրբապատկերների պաշտամունքը։ Հասկանալի է, հարցը չէր վերաբերում սոսկ սրբապատկերների պաշտամունքին։ Դրանով վերջ էր դրըվում կայսրերի՝ եկեղեցին պետությանը ենթարկելու ջանքերին, թեև դրանից հետո էլ եկեղեցին լիակատար անկախություն չգտավ, ոչ էլ տիրող դիրք գրավեց պետության նկատմամբ։

Պատկերամարտության դեմ հաղթանակ տանելով, բյուզանդական կառավարությունը շարունակեց դեռևս Միքայել I-ի, Լևոն V-ի և Թեոփիլոսի՝ պավլիկյանների դեմ տարած հալածանքները։ Եթե պատկե-

րամարտության և պատկերապաշտության միջև գնացող պայքարը պայքար էր նույն իշխող դասակարգերի շրջաններում, ապա պավլիկյան աղանդավորների դեմ տարվողը ընդգծված դասակարգային բնույթ ուներ։ Պավլիկյան գաղափարների աստիճանական տարածումը շահագործվող դասակարգերի շրջանում վտանգավոր էր դարձել իշխող դասակարգերի համար։ Պետրոս Սիկիլիացու վկայությամբ պավլիկյան խոշորագույն աղանդապետ Սերգիոսը շատերին «հարուստից աղքատ դարձրեց»[31]։

Թեոդորան կազմեց պատժիչ արշավախումբ, որը կայսրության արևելյան նահանգներում և, առաջին հերթին Անատոլիկոն և Արմենիակների բանակաթեմերում, աղանդավորների մեծ ջարդ կազմակերպեց։ «Թեոփանեսի Շարունակողի» տվյալներով կոտորվեց շուրջ տասը բյուր մարդ։

Այս շրջանում պավլիկյանների շարժումը կայսրության դեմ գլխավորեց պրոտոմանդատոր Կարբեասը, որ ծառայում էր Անատոլիկոն բանակաթեմի զորավար Թեոդոտոս Մելիսսենոսի մոտ և հալածանքների պատճառով իր աղանդակիցների հետ ապաստան էր գտել նույն Մելիտենե քաղաքում։ «Թեոփանեսի Շարունակողի» տվյալներով «աղանդավորներն այնքան բազմացան, որ սկսեցին իրենց համար քաղաքներ կառուցել՝ այսպես կոչված Արգաուսը [Արգովան] և Ամարան։ Երբ սկսեցին այնտեղ հոսել նույն հերձվածը դավանողների նոր բազմություններ, նրանք հիմնադրեցին մի այլ [քաղաք], որը Տեֆրիկե [իմա՝ Տիվրիկ—Հ. Բ.] կոչեցին։ Նրանք անչափ բազմացան և հանդգնում էին այդ քաղաքներից արշավանքներ գործել և անվերջ ավարառել հռոմեական երկրի տարածքը։

Այս միջոցին պավլիկյաններին օժանդակում էին և արաբները, որոնք ի դեմս աղանդավորների կայսրության դեմ ձեռք էին բերել դաշնակից, թեև այդ դաշինքը երկար չի տևում։ Պավլիկյանների արմատական գաղափարները նույնչափ վտանգավոր էին և արաբական իշխող դասակարգերի համար։

Պավլիկյանների շարժումը փոքրասիական թերակղզում կարողացավ իսպառ ճնշել Միքայելի հաջորդ Վասիլ I-ը միայն։

Թեոփիլոսի մահից հետո վերսկսվեցին պատերազմական գործողությունները արաբների դեմ։ Թեոկտիստոս լոգոթետը կարողացավ փոքր ժամանակով [843—844 թթ.] վերահաստատել բյուզանդական

[31] Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, հ. Ա, Երևան, 1981, էջ 763։

*գերիշխանությունը Կրետե կղզու վրա, թեև նույն այդ ժամանակ Բյուզանդիան մեծ պարտություն կրեց Մելաս գետի ափին։ Սակայն Արաբական խալիֆայության հզորությունը ներքին երկպառակությունների պատճառով գնում էր դեպի անկում։ 856 թ. Թրակեսիոն բանակաթեմի զորավար Պետրոնասը, Թեոդորայի և կեսար Վարդասի եղբայրը, արշավեց Սամոսատի շրջանը և խորացավ մինչև Ամիդ։ Միաժամանակ նա հարձակվեց Տեփրիկեի վրա և վերադարձավ բազում ռազմագերիներով։ 859 թ. արաբների դեմ նոր արշավանք ձեռնարկեցին կեսար Վարդասը և կայսր Միքայել III-ը նույնպես Սամոսատի շրջանում։ Սակայն խոշորագույն հաղթանակը արաբների դեմ՝ Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ Աքթայի դեմ զորավար Պետրոնասը տարավ 863 թ., և Բյուզանդական կայսրությունը պաշտպանվող կողմից առաջին անգամ դարձավ հարձակվող և արաբների դեմ տարվող երկարատև պատերազմների նախաձեռնությունը վերցրեց իր ձեռքը։ Մելիտենեի ամիրան Արմենիակների բանակաթեմի տարածքով հասել և գրավել էր նշանավոր Ամիսոսը՝ Սև ծովի ափին։ Պափլագոնիայի բանակաթեմի սահմանի վրա, Պոսոն կոչվող վայրում սեպտեմբերի 3-ին նրա բանակը գլխովին ջարդվեց, ռազմի դաշտում ընկավ և ամիրան։ Նույն տարին իր մահով վախճանվել էր և նրա նախկին դաշնակիցը, պավլիկյանների զորահրամանատար Կարբեասը, որին փոխարինելու էր եկել նշանավոր Խրիսոխիրը։*

*Պոսոնի ճակատամարտից ընդամենը երեք տարի առաջ կայսրությունը հուզեց ռուսների վտանգը։ Նրանք առաջին անգամ լինելով երևացին Կոստանդնուպոլսի առաջ 860 թ., օղակեցին քաղաքը, ավարառեցին նրա շուրջն ընկած շրջանները։ Ռուսների վտանգը ընդդիմակայելու և քաղաքի բնակչությունը ոգևորելու համար արաբների դեմ մղվող պատերազմից հատուկ վերադարձավ Միքայել կայսրը։ Նրան օժանդակեց և պատրիարքը։ Ռուսները պարտություն կրեցին և ստիպվեցին հեռանալ, բայց բյուզանդական կառավարությունը նպատակահարմար գտավ ռուսների նորաստեղծ պետության հետ կապեր հաստատել։ Նա այնտեղ ուղարկեց հոգևորականներ՝ քրիստոնեություն տարածելու, մի բան, որ իր ավարտին էր հասնելու շուրջ 130 տարի անց։*

*Միքայել III-ի և Թեոդորայի իշխանության օրոք քրիստոնեությունը տարածվեց հարավային և արևելյան սլավոնների շրջանում։ Այդ գործը գլխավորեցին թեսաղոնիկեցի եղբայրներ Կոստանդինը [Կիրիլլոս] և Մեթոդիոսը, պատրիարք Փոտը և կեսար Վարդասը, երկու վերջինները՝ հայազգի, երկու առաջինները՝ Փոտի աշակերտները։ Մորա-*

վիայում նրանց ունեցած հաջողության հիմնական պատճառն այն էր, որ սլավոնների երկրում քրիստոնեություն էին քարոզում սլավոնական լեզվով։ Պակաս կարևոր չէր և սլավոնական այբուբենի հորինումը Կիրիլոսի կողմից, որին հաջորդեց սուրբ գրքի թարգմանությունը։

Մորավիայի մկրտությունից հետո քրիստոնեությունը պետական կրոն հռչակվեց և Բուլղարիայում։ Իշխան Բորիսը 864 թ. քրիստոնեությունն ընդունեց Բյուզանդիայից, թեև այնտեղ ակտիվ գործունեություն էին ծավալել և Հռոմի պապի գործակալները։ Իշխան Բորիսի կնքահայրը Միքայել կայսրն էր, այդ պատճառով էլ Բորիսը ստացավ քրիստոնեական Միքայել անունը։

Սլավոնական երկրների քրիստոնեացումը հսկայական նշանակություն ունեցավ նրանց պետական կոնսոլիդացիայի գործում, մշակույթի աննախընթաց զարգացման ու ծաղկման։ Ինչ վերաբերում է Բյուզանդիային, ապա նա հիշյալ ժողովուրդներին համակրոն ու համագավան դարձնելով և ընդգրկելով բյուզանդական մշակույթի ոլորտում, ելնում էր քաղաքական նկատառումներից՝ ձեռք բերել դաշնակիցներ և նրանց հեռու պահել Հռոմի պապի և Կարլոս Մեծի ստեղծած և պապի օրհնությանն արժանացած կայսրության ազդեցությունից։ Այս հողի վրա է՛լ ավելի սրվեցին Կոստանդնուպոլիս—Հռոմ եկեղեցական փոխհարաբերությունները։ Պատկերամարտ կայսրերը այնքան էլ մեծ նշանակություն չէին տալիս կայսրության արևմտյան մասի ճակատագրին, Հռոմի պապի՝ իրենց քաղաքականությանը դիմադրելուն։ Այդ հանգամանքը օգտագործեցին Հռոմի եկեղեցու մեծերը և ջանացին խառնվել Կոստանդնուպոլսի եկեղեցու գործերին, հաստատել իրենց գերագահությունը Կոստանդնուպոլսի պատրիարքի նկատմամբ։ 863 թ. Նիկողայոս I պապը Լատերանում ժողով գումարեց և Փոտին չճանաչեց պատրիարք։ Բայց դա ոչ մի հետևանք էլ չունեցավ։ Անչափ գործունյա ու հեռատես Փոտ պատրիարքը կարողացավ պահպանել իր անկախությունը Հռոմից, հաստատել իր իշխանությունը Արևելքի եկեղեցիների վրա, տարածել իր ազդեցությունը սլավոնական աշխարհում։ Դեռ ավելին, նա Հռոմի եկեղեցու դավանանքը հայտարարեց հերետիկոսություն, 867 թ. Կոստանդնուպոլսում հրավիրեց եկեղեցական ժողով, որը նզովեց Նիկողայոս պապին, իսկ Հռոմի եկեղեցու միջամտությունը բյուզանդական եկեղեցու գործերին հայտարարեց անթույլատրելի և ապօրինի։

Միքայելի և Թեոդորայի թագավորության տարիներին Բյուզանդական կայսրության մեջ հայկական տարրը է՛լ ավելի կարևոր դիրքեր գրավեց։ Հայազգի էր թագուհին, կիսով չափ իր կայսր որդին։ Ինչպես



3—1063

տեսանք, երկրի փաստական իշխանությունը գտնվում էր Թեոդորայի եղբոր՝ Վարդասի ձեռքում, որն ստանալով կեսարի բարձրագույն պատվաստիճանը, պետք է կայսր հռչակվեր, եթե Միքայելը անզավակ վախճանվեր։ Վարդասի [և Թեոդորայի] երկու եղբայրները՝ Անտիգոնոսն ու Սմբատը նույնպես կարևոր դեր էին խաղում, ինչպես և նրանց հայրը՝ Մարինոսը, որ դրունգարի և տուրմարխի պաշտոններն էր վարում։ Թեոդորայի երեք քույրերն էլ ամուսնացել էին հայազգի բարձրաստիճան գործիչների հետ. Սոփիան՝ վիգլայի դրունգար, մագիստրոս Կոստանդին Բաբուցիկոսի, Կալոմարիան՝ Արշավիր պատրիկի և մագիստրոսի. Իրենեն՝ կիսով չափ հայազգի պատրիարք Փոտի մորեղբայր Ստեփանոս մագիստրոսի հետ։ Արշավիրի երկու որդիները՝ Ստեփանոսն ու Վարդասը դարձան մագիստրոսներ։ Թեոդորայի մորեղբայրը Մանուիլը, ինչպես տեսանք. Արմենիակների բանակաթեմի զորավարն էր դեռ Լևոն V-ի ժամանակ։ Պակաս դեր չէր խաղում և Թեոդորայի մյուս եղբայր Պետրոնասը։ Ռազմական բնագավառում աչքի ընկավ Պետրոնասի որդի Մարիանոսը։ Այդ ժամանակաշրջանում իրենց խոսքն էին ասում և զուտ հայերից բաղկացած զորամասերը, որոնց վրա էին գլխավորապես հենվում հայազգի վերոհիշյալ գործիչները։

Հայերը տեր ու տիրական են դառնում ոչ միայն քաղաքական ու ռազմական ասպարեզներին, այլև հոգևոր ու մշակութային։ Կեսար Վարդասն էր, որ կյանքի կոչեց Կոստանդնուպոլսի նշանավոր համալսարանը՝ Մագնավրան, որը գլխավորեց հայազգի Լևոն փիլիսոփան, որ միաժամանակ աստղաբաշխ էր, մաթեմատիկոս, երկրաչափ ու երաժիշտ։ 832—843 թթ. Կոստանդնուպոլսի պատրիարքական աթոռին նստեց Հովհաննես Քերականը, նույնպես հայազգի, Բյուզանդիայում անուն հանած աստղաբաշխ Բագարատի որդին, Արշավիր պատրիկի եղբայրը և Լևոն փիլիսոփայի հորեղբորորդին։ Բայց այս ժամանակաշրջանի, ապա և բյուզանդական բազմադարյան մշակույթի ռահվիրան պատրիարք Փոտն էր, Իրենեի, Թեոդորայի և կեսար Վարդասի փեսա Արշավիրի քրոջ որդին։

Ահա այս ընթացքում պատմական ասպարեզ իջավ մի անձնավորություն, որ քայլ առ քայլ առաջ ընթանալով, պիտի Բյուզանդական կայսրության ամենանշանավոր հարստության հիմնադիրը դառնար, հարստություն, որ 190 տարի տնօրինեց պետության ճակատագիրը։ Նա Վասիլ Մակեդոնացին էր։ Իր նպատակին հասնելու համար նրա առջև երկու խոչընդոտ կար։ Առաջինը [և ամենավտանգավորը] կեսար Վարդասն էր։ Միքայել III-ի օժանդակությամբ Վասիլին հաջողվեց 865 թ.

ապրիլի 21-ին Վարդասին սրախողխող անել, իսկ 867 թ. սեպտեմբերի 24-ին սրակոտոր անելով և Միքայել III-ին՝ գահին տիրանալ[32]։

Վասիլին վիճակված էր շարունակել արաբների դեմ մղվող դարավոր պայքարը։ IX դարում Աֆրիկայի արաբները Միջերկրականի տերն ու տիրականն էին դարձել, իսկ հարավային Իտալիայի և Սիկիլիայի արաբները սկսեցին տարածվել նաև երկրի խորքերը։ Նրանք հասան և պաշարեցին նույնիսկ Դալմատիայի Ռաուսիոն [Ռագուզա] քաղաքը։ Վասիլ կայսրը իր ծովակալ Նիկետաս Օորիֆասի գլխավորությամբ նավատորմիղ ուղարկեց նրանց դեմ և կարողացավ կանգնեցնել արաբների առաջխաղացումը։ Նույն Օորիֆասը հաջողությամբ մարտնչեց նաև Կրետեի արաբների դեմ, որոնց նավատորմիղը սպառնում էր անգամ Կոստանդնուպոլսին։ Օորիֆասի պայքարը շարունակեց ծովակալ Նասարը։ Արաբները ժամանակավոր պարտություններից հետո նոր ուժով հարձակվում և գժվարին դրության մեջ են գնում կայսրությունը։ Նրանց հաջողվում է 878 թ. գրավել Սիկիլիայի մայրաքաղաք Սիրակուսան, ինչպես և Բարի քաղաքը Իտալիայում։ Բյուզանդական կայսրության վարկը վերականգնեց զորավար Նիկեփոր Փոկասը, որ 885 թ. կարողացավ արաբներից գրավել Իտալիայի մի մասը և կազմակերպել այնտեղ երկու բանակաթեմ՝ Կալաբրիայի և Լանգոբարդիայի։

Ավելի դժվարին էր կայսրության պայքարը աբբասյանների դեմ Փոքր Ասիայում և Ասորիքում, որին անձնական մասնակցություն ունեցավ հենց Վասիլ կայսրը։ Բացի արաբներից, կայսրության համար մեծ սպառնալիք էին դարձել պավլիկյան աղանդավորները։ Վերջիններիս զինված ուժերի հրամանատար Կարբեասի մահից հետո շարժումը գլխավորեց Խրիսոխիրը, որ այնքան համարձակություն ու կարողություն ունեցավ իր զորքերով հասնել մինչև Նիկիա և Նիկոմեդիա։

871 թ. Վասիլը արշավելով նրանց մայրաքաղաք Տեֆրիկեի դեմ, ծանր պարտություն է կրում և հազիվ ազատվում գերի ընկնելուց։ Միայն հաջորդ տարին Վասիլի զորավարներին հաջողվում է կոտրել պավլիկյանների դիմադրությունը և արյան մեջ խեղդել նրանց շարժումը, որ ավելի քան երկու դար փորձանք էր դարձել կայսրության գլխին։

Պավլիկյաններին ճնշելուց հետո բյուզանդական զորքերը, կռվի բռնվելով արաբական ուժերի հետ, շարունակում են այն պայքարը, որ փոփոխական հաջողություններով մղվում էր դեռ Վասիլ կայսեր նախորդ՝ Միքայել III-ի օրոք։ Վասիլին հաջողվում է գրավել Սամոսատ

32 Պատմական հաջորդող ակնարկում տրվում է «Բյուզանդական աղբյուրների» Բ գրքի («Կոստանդին Ծիրանածին») համապատասխան շարադրանքը (էջ XII—XXVIII)։

քաղաքը, ապա և Զապետրան, անցնել Եփրատ գետը և հասնել Մելիտենե, որին սակայն չկարողացավ տիրանալ։ Վասիլն ամրապնդում է իր դիրքերը արևելքում և այստեղ է ահա, որ բյուզանդացիները առաջին անգամ, երկար դադարից հետո, հարաբերության մեջ են մտնում հայերի հետ, որոնք ազատագրվել էին արաբների լծից և քաղաքական անկախություն ձեռք բերել։ Օգտվելով արաբա-բյուզանդական 7-ամյա պատերազմից [856—863 թթ.], Աշոտ Բագրատունին 862 թ. իրեն իշխանաց իշխան էր հռչակել, իսկ 885 թ. նաև թագավոր։ Վասիլը շատ էր շահագրգռված բարեկամական հարաբերություններ հաստատելու Աշոտ Բագրատունու հետ, հասկանալի է, արաբների դեմ դաշնակից ունենալու համար։ Ավանդությունը հաղորդում է, որ Վասիլը նույնիսկ ցանկացել է թագադրվել Աշոտ Բագրատունու ձեռքով։ Իհարկե, այդ բանին դեմ չէր և հայոց իշխանաց իշխանը։ Նա ևս տվյալ շրջանում կողմնակից էր ունենալ բյուզանդական օժանդակությունը՝ իր դիրքերն ամրապնդելու համար։ Եռանդուն աշխատանք էին տանում նաև հոգևոր պետերը։ Զաքարիա Ա Զագեցի կաթողիկոսը և Փոտ պատրիարքը դեռ Վասիլի գահ բարձրանալուց առաջ երկար նամակագրություն ունեին եկեղեցիների միության խնդրի շուրջը, սակայն, քանի որ Բյուզանդիայի հոգևոր պետը ուզում էր իրեն ենթարկել հայոց եկեղեցին, ընդունել տալով Քաղկեդոնի դավանանքը, բանակցություններն ավարտվեցին անարդյունք։

Վասիլը Հայաստանը դիտում էր ոչ միայն որպես դաշնակից։ Նրա հիմնական նպատակը Հայաստանը նախ վասալական կախման մեջ առնելն էր, ապա նաև նվաճելը, քանի որ Վասիլը թեև ծագումով հայ էր, նա բյուզանդական կայսր էր. նախ և առաջ շահագրգռված կայսրության շահերով։ Վասիլն իրեն Արշակունի հռչակեց, թեև նրա երակներում արշակունի արյան մեկ կաթիլ անգամ չկար։ Ընդունված է ասել, որ Վասիլն այդ քայլին դիմելով, նպատակ ուներ իր հասարակ ծագումը սքողել, իր գահ բարձրանալն օրինականացնել։ Դա շատ հնարավոր է, բայց հիմնական դրդապատճառը այդ չէր։ Ուսումնասիրելով IX—XI դդ. հայ-բյուզանդական հարաբերությունների պատմությունը, դժվար չէ համոզվել, որ Վասիլի այդ քայլը շատ հեռուները գնացող նպատակներ ուներ՝ Հայաստանը գցել վասալական կախման մեջ, այդ ձևով ավելի դյուրին կլիներ նվաճել այն։ Հայաստանում Արշակունիների հարստության գոյության ժամանակ երկրի բոլոր նախարարությունները տիրող հարստության վասալներն էին. այդ թվում և IX դարում վերապրած և ինքնուրույն իշխանություններ հաստատած Բագրատունիները, Արծրունիները, Անձևացիք, Սյունիները և մյուսները։ Իրեն Արշակունի հռչակելով, Վա-

սիլը հանդես էր գալիս որպես այդ բոլորի սյուզերենը, ցանկանում de jure կախման մեջ գցել նրանց։ Մեր միտքը հաստատվում է Բյուզանդիայի արտաքին գործոց նախարարության գրասենյակում 'թխված մի «տեսությամբ», համաձայն որի իբրև թե պարթևների արքա Արշակի առաքինության և ձեռք բերած մեծ փառքի շնորհիվ օրենք դարձավ, որ այսուհետև պարթևներին, հայերին և մարերին թագավորեն բացարձակապես Արշակի տոհմից սերողները կամ նրա շառավիղները։ Նպատակը պարզ է, քանի որ Վասիլն իրեն Արշակի շառավիղն էր համարում, ապա այդ մտացածին «օրենքի» համաձայն նա պետք է թագավորեր ի միջի այլոց նաև հայերի վրա։ Ինչպես տեսնում ենք, կեղծիքը բավական սրամիտ էր։

Դա, իհարկե, դարավոր ստրկությունից հազիվ ինքնուրույնություն ձեռք բերած հայ իշխանների և ժողովրդի համար փայլուն ապագայի նախերգանքը չէր կարող հանդիսանալ։ Նրանք ամենևին էլ չէին ուզում մի տիրողի ձեռքից հազիվ ազատված, մի ուրիշի ձեռքն ընկնել, թեկուզև քրիստոնյայի։

Այսպիսով, ոչ միայն հայ-բյուզանդական եկեղեցական հարաբերությունները որևէ շոշափելի արդյունք չտվեցին, այլև քաղաքական, թեև փոխադարձ շփումները տվյալ ժամանակաշրջանում բավական գործոն էին։

Եկեղեցական հարցում Վասիլ կայսեր առաջին գործն եղավ Փոտին հեռացնել պատրիարքությունից և նրա տեղը վերահաստատել Իգնատիոսին։ Պատճառն այն էր, որ Փոտը սերտ կապեր ուներ կեսար Վարդասի, ինչպես և Միքայել III-ի հետ, հետևաբար Վասիլի քաղաքական հակառակորդն էր։ Բացի այդ, Վասիլն ուզում էր բարելավել իր փոխհարաբերությունները Հռոմի պապի հետ, մի բան, որին արգելք էր կանգնած Փոտը։ 869 թ. եկեղեցական ժողովում Փոտը դատապարտվեց, նզովվեց և աքսորվեց Բոսպորի ափին գտնվող մի վանք, թեև Վասիլը շուտով նրան հետ կանչեց և իր երեխաների դաստիարակության գործը նրան վստահեց։

IX դարի վերջում դարձյալ օրակարգի հարց են դառնում միաբնակ-երկաբնակ վեճերը։ Ամենայն հավանականությամբ պատահական չէ այն, որ Վասիլի, Լևոնի և Ալեքսանդրի հրապարակած Էպանագոգե կոչված Դատաստանագրքի հենց սկզբում, որտեղ խոսվում է կայսեր մասին, մանրամասնորեն տրվում են քաղկեդոնական դավանանքի սկզբունքները, որոնց պետք է կայսրը հետևի, թեև բացառված չէ, որ Վասիլը լինելով հայ, ուզում էր ընդգծել իր ոչ հայազգի լինելը։

Վասիլը շատ մեծ աշխատանք տարավ հարևան երկրներում քրիստոնեության տարածման համար, հատկապես Դալմատիայում, ինչպես և Հունաստանում բնակվող սլավոնների մեջ։

Վասիլը մեծ ջանքեր թափեց կանոնավորելու բյուզանդական դատավարությունը։ Նա «կերակուր և ռոճիկ» սահմանեց դատավորներին՝ նրանց կաշառակերության առաջն առնելու համար։ Իսկ բյուզանդական իրավունքի ասպարեզում նրա տարած աշխատանքը իսկապես որ տիտանական էր։ Այդ գործին նա մասնակից դարձրեց մի շարք հայազգի գործիչների և առաջին հերթին Փոտ պատրիարքին և օրենսգետ Սմբատին, ինչպես և այլ մասնագետների, որոնք կեսար Վարդասի հիմնադրած և Լևոն փիլիսոփայի կողմից ղեկավարվող Մագնավրայի համալսարանի սաներն էին։

Վասիլն աչքի ընկավ նաև շինարարական գործունեությամբ, որի մասին ամենայն մանրամասնությամբ խոսում է իր թոռ Կոստանդին Ծիրանածինը՝ Վասիլ կայսեր կենսագրության մեջ։

Վասիլ կայսրը վախճանվեց 886 թ.։ Նրան հաջորդեց երկրորդ որդին՝ Լևոնը։ Վասիլի անդրանիկ որդին՝ Կոստանդինը՝ վախճանվել էր 879 թ.։ Վասիլ կայսրը դեռևս 870 թ. Լևոնին հռչակել էր կայսերակից։ Նոր կայսրը արտակարգ զարգացած անձնավորություն էր (նա Փոտի աշակերտն էր), դրա համար միջնադարյան հեղինակները նրան «Իմաստուն» կամ «Իմաստասեր» մակդիրով են հիշատակում։ Զբաղված լինելով գիտությամբ, նա քաղաքական և ռազմական հարցերից հեռու էր կանգնած, այդ բոլորը վստահելով իր մեծամեծներին և առաջին հերթին հայազգի Ստիլիանոս Զաուցեսին, որի դուստրը՝ Զոեն, Լևոնի կինն էր։ Հենց այս Զաուցեսն էր, որ հռչակվեց «կայսերահայր», մի տիտղոս, որ հիշյալ անձնավորությամբ մուտք գործեց Բյուզանդիա։ Զաուցեսը Լևոն VI-ի ժամանակ այն դերն էր խաղում, ինչ կեսար Վարդասը Միքայել III-ի ժամանակ։

Լևոն VI-ի թագավորության ամբողջ շրջանը անցավ անդադար պատերազմների մեջ։ Եթե Վասիլի ժամանակ կայսրության թշնամիները հիմնականում արաբներն էին և պավլիկյանները, ապա Լևոնի ժամանակ առաջին գծում հանդես եկան բուլղարները։ Սիմեոն ցարը գահ բարձրանալով, միանգամայն նոր դիրք բռնեց Բյուզանդիայի հանդեպ։ Նա 894 թ. ներխուժեց Թրակիա։ Բյուզանդիան բուլղարների դեմ զինական դաշինք կնքեց հունգարացիների հետ, որոնք բյուզանդական աղբյուրներում հայտնի են որպես Թուրքեր։ Նրանք կարողացան թիկունքից հարձակվելով, բուլղարների ցարին պարտության մատնել։ 895—896 թթ.

բուլղարների և կայսրության միջև կնքված հաշտությունը երկարատև չէր։ Պեչենեգների օգնությամբ հաղթելով հունգարացիներին, Սիմեոնը դարձյալ հարձակվեց Բյուզանդիայի վրա։ Բյուզանդական զորքերը գլխավորում էր Փոտի ազգական, նույնպես հայկական ծագում ունեցող Լևոն Կատակալոնը, որը, սակայն, պարտվեց Բուլգարոֆիգոնի ճակատամարտում [896 թ.]։ Պատերազմը շարունակվեց մինչև 899 թ., երբ երկու ախոյանների միջև հաշտություն կնքվեց։ Հայտնի է, որ հաշտություն է կնքվել նաև 904 թ., մի բան, որ ցույց է տալիս, թե 899 թ. կնքված հաշտությունը ժամանակավոր բնույթ է ունեցել։ Մինչև 913 թ. բուլղարների և բյուզանդացիների միջև տիրում էր խաղաղություն։

Լևոն VI-ի օրոք Բյուզանդիայի համար սպառնալիք են դառնում նաև ռուսները։ Նրանք, ինչպես տեսանք, առաջին անգամ երևացել էին Կոստանդնուպոլսի ափերին, դեռևս 860 թ.։ Ռուսները 907 թ. իշխան Օլեգի գլխավորությամբ դարձյալ հայտնվում են Կոստանդնուպոլսի առաջ։

Արաբները, օգտվելով Բյուզանդիայի՝ բուլղարների դեմ պատերազմում զբաղված լինելու հանգամանքից, 904 թ. իրենց նավատորմիղով անսպասելիորեն հարձակվում և գրավում են Թեսաղոնիկե քաղաքը, ավերում ու կողոպտում այն, իսկ բնակչությանը գերեվարում։ Արաբ ծովահենների դեմ պայքարը գլխավորում էր պատրիկ Հեմերիոսը, որին հաջողվում է 910 թ. մեծ ծովամարտում հաղթել արաբներին։ Բայց պատերազմի հետագա ընթացքը անհաջող էր բյուզանդացիների համար։

Ցամաքում Լևոն VI-ը արաբների դեմ արժանահիշատակ ընդհարումներ չի ունեցել։ Երկու կողմից էլ ավարառուական բնույթի արշավանքներ են եղել։ Հիշատակություն կա, որ հաշտություն է կնքվել Մելիտենեի, Տարսոնի և այլ ամիրաների հետ, ընդ որում ասվում է, որ երկու ամիրա հարկատու դարձան Բյուզանդիային։ Ինչ վերաբերում է Աֆրիկայի արաբներին, ապա նրանք հասնում են որոշ հաջողությունների, 902 թ. ավարտելով Սիկիլիայի նվաճումը և ասպատակ սփռելով մինչև Հռոմ։

Լևոն VI-ը վախճանվեց 912 թ. մայիսի 12-ին։ Կայսր հռչակվեց նրա կրտսեր եղբայր Ալեքսանդրը, որի կայսերակիցն էր Լևոնի յոթնամյա որդի Կոստանդին Ծիրանածինը [905—959 թթ.]։ Ալեքսանդրը թագավորեց ընդամենը 13 ամիս և վախճանվեց 913 թ. հունիսի 6-ին։ Մանկահասակ Կոստանդնի համար ստեղծվեց խնամակալական խորհուրդ, որի մեջ կարևոր դեր էին խաղում Լևոն VI-ի կին Զոեն[33], Կոստանդնի

[33] Այս Զոեն Ստիլիանոս Զաուցեսի դուստրը չէ, այլ Զոե Կարբոնոպսինան, Լևոն VI-ի չորրորդ կինը։ Լևոնը չորս անգամ ամուսնացավ։ Զաուցեսի դուստրը Լևոնի երկրորդ կինն էր։

մայրը (Ալեքսանդրը նրան վանք էր աքսորել, բայց կայսեր մահից հետո նա դուրս էր եկել) և պատրիարք Նիկողայոս Միստիկոսը։

Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանությունը տևեց 913 թ. հունիսի 7-ից մինչև 920 թ. դեկտեմբերի 17-ը։ Այդ ժամանակամիջոցում կայսրությունը նորից զբաղված էր բուլղարների դեմ մղվող արյունալի պատերազմով։ Ցար Սիմեոնը մեծ զորքի գլուխն անցած 913 թ. հասավ մինչև Կոստանդնուպոլսի պարիսպների տակ, բայց չկարողացավ գրավել քաղաքը և հետ դարձավ։

Բյուզանդիան բուլղարների դեմ դաշինք է կնքում պեչենեգների հետ, որոնք թանկարժեք նվերների դիմաց պետք է Սիմեոնին հարվածեին թիկունքից։ Հակառակ այդ բոլորին, Սիմեոնին հաջողվում է 914 թ. սեպտեմբերին ստիպել Ադրիանուպոլսի հայազգի զորավար Պանգրատուկասին [Բագարատ] քաղաքն իրեն հանձնել։ Կայսրուհի Զոեն Սիմեոնին բազմաթիվ նվերներ տալով, հետ ստացավ քաղաքը։ Զոեն Սիմեոնին հաղթահարելու համար որոշում է արաբների հետ հաշտություն կնքել, որպեսզի կարողանա արևելքի բոլոր ուժերը տեղափոխել բուլղարների դեմ մղվող պայքարում։ Բյուզանդական զորքերի սպարապետն էր հայազգի մագիստրոս Լևոն Փոկասը, Նիկեփոր Փոկասի եղբայրը, որը սակայն «ավելի աչքի էր ընկնում իր արիությամբ, քան թե խոհեմությամբ»։ Բուլղարների դեմ ուղարկվեցին նաև Վարդաս Փոկասը, հայկական զորաբանակով Մելիասը [Մլեհ] և արևելյան բոլոր բանակաթեմերի զորավարները։ Աքելոոս գետի ափին 917 թ. տեղի է ունենում կատաղի ճակատամարտ, որտեղ բյուզանդական զորքերը գլխովին ջախջախվում են։ Այս ճակատամարտում զոհվում է Ազոտոս (Աշոտ, թե՞ Ազատ— Հ. Բ.) անունով հայազգի մի նշանավոր զորավար, որ գլխավորում էր էքսկուբիտոսների կայսերական թիկնապահ զորքը։ Շատ քչերն են փրկվում, այդ թվում և Մլեհը, որ անցնելով արևելք, հսկայական գործունեություն է ծավալում արաբների դեմ։ Լիկանդոսի բանակաթեմը իր կազմավորումը պարտական է այս նշանավոր Մելիասին, այնպես, ինչպես դրանից փոքր առաջ կազմավորված Միջագետք բանակաթեմը նույնպես հայազգի նշանավոր գործիչներ Պանգրատուկասին և Տավտուկասին (Դավթակ)։

Այս ժամանակաշրջանում Բյուզանդիայի արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ է գրավում Հայաստանը։ Ջանկանալով օգտվել Յուսուֆ ոստիկանի ասպատակությունների հետևանքով ստեղծված ծանր վիճակից, Բյուզանդական կայսրությունը պատրիարք Նիկո-

ղայոսի միջոցով (աթոռակալել է 901—907 և 912—925 թթ.) մի քանի անգամ դիմեց Հայոց կաթողիկոս Հովհաննես Դրասխանակերտցուն և Հայոց թագավորին, օգնություն խոստանալով, որի դիմաց սակայն նկատի ուներ Հայաստանը կայսրությունից վասալական կախման մեջ գցել։ Բյուզանդական կառավարությունը նույնիսկ Կոստանդնուպոլիս հրավիրեց Սմբատ Ա թագավորի որդի Աշոտ Երկաթին, որին մեծ պատիվներով ընդունեց կայսրուհի Զոեն։

Կոստանդին Ծիրանածինի մանկահասակությունը պատճառ դարձավ, որ բարձրաստիճան զինվորականների կողմից գահին տիրանալու բազմաթիվ փորձեր կատարվեն, որոնք սակայն հաջողություն չունեցան։ Այդպիսի պայմաններում հսկայական ազդեցություն ձեռք բերեց ծովակալ Ռոմանոս Լեկապենոսը, որի հայրենիքը Արմենիակոնն էր։ Լեկապենոսը նախ իր դուստր՝ Հելենեին կնության տվեց երիտասարդ կայսեր և դարձավ Բյուզանդական կայսրության պատմության մեջ երկրորդ «կայսերահայրը»։ Մի փոքր անց նա հռչակվեց կեսար։ Կայսրուհի Զոեն, Կոստանդնի մայրը, հաշտ աչքով չէր նայում Ռոմանոսի օրեցօր հզորանալուն։ Բայց Ռոմանոսի համար դժվար չէր Զոեին դարձյալ վանք աքսորել, մեղադրելով նրան իրեն թունավորելու փորձ կատարելու մեջ, ինչ որ բացառված չէր։ 920 թ. դեկտեմբերի 17-ին Ռոմանոսը, ձեռամբ Կոստանդին Ծիրանածինի և պատրիարք Նիկողայոսի, կայսր է հռչակվում։

Փաստացի ամբողջ իշխանությունն անցավ Ռոմանոս Լեկապենոսի ձեռքը։ Կոստանդինը թեև կայսերակից էր և պետական պաշտոնական փաստաթղթերում հիշվում էր Ռոմանոսից առաջ, բայց և այնպես Ռոմանոսի ձեռքում մի խաղալիք էր և շատ շուտով հեռացվեց պետական գործերից և ստիպված իրեն նվիրեց դրական գործունեության։ Աղբյուրների տվյալների համաձայն Ռոմանոսի քառորդդարյա թագավորության ամբողջ ընթացքում Կոստանդին Ծիրանածինը գտնվում էր Ռոմանոսի «ենթակայության» կամ «հպատակության» մեջ։ Ռոմանոսը օգտվելով իր դեմ ուղղված մի դավադրությունից, որ կատարվել էր Կոստանդնի համախոհների կողմից, Կոստանդնին կայսրերի շարքում երկրորդ տեղն է իջեցնում, առաջինը վերապահելով իրեն, թեև դա երդմնազանցություն էր։

Ռոմանոսը շտապեց կայսերակից հռչակել և իր որդիներին՝ Քրիստափորին [921թ. մայիսի 20-ից մինչև 931 թ. օգոստոս], Ստեփանոսին և Կոստանդնին [924 թ. դեկտեմբեր]։ Նա այն աստիճան առաջ անցավ, որ ուզեց կրկնած լինել Վասիլ I-ին և իր 16-ամյա որդի Թեո-

փիլակտոսին պատրիարք հռչակեց (933 թ. փետրվարի 2-ին։ Աթոռակալեց մինչև 956 թ. փետրվարը)։

Ռոմանոս I Լեկապենոս կայսեր թագավորության ամբողջ ժամանակաշրջանն անցավ անդադար պատերազմների մեջ, որոնք կայսրությունը մղում էր և՛ Արևմուտքում, և՛ Արևելքում։ Աբբասյան հարստությունը դեպի անկում էր գնում և Բյուզանդիայի համար արդեն նախկին վտանգը չէր ներկայացնում։ Բյուզանդական կայսրությունը, օգտվելով իր դարավոր ախոյանի թուլացումից, սկսեց ծավալել նվաճողական քաղաքականություն, որի սկիզբը Վասիլ I-ն էր դրել։

Ռոմանոս Լեկապենոսը բյուզանդական զորքերի սպարապետ [դոմեստիկոս] նշանակեց հայազգի Հովհաննես Կուրկուասին [Գուրգեն], այն ամենարնդունակ զորավարին, որը բյուզանդական աղբյուրներում կոչվում է Նոր Տրայանոս և Բելիսարիոս։ Նա քսաներկու տարի անընդմեջ, 922 թ. մինչև 944 թ. վարեց այդ պաշտոնը և իր զորավարական տաղանդով կարողացավ Բյուզանդական կայսրության սահմանները հասցնել մինչև վերին Եփրատ և Տիգրիս, նա «կրկնապատկեց կայսրության հողերը», գրավեց հազար քաղաք, ասում է «Թեոփանեսի Շարունակողը»։ Այդ բանին նպաստեց նախ և առաջ այն հանգամանքը, որ 927 թ., Սիմեոն ցարի մահից հետո, Բյուզանդիային հաջողվեց խաղաղություն հաստատել բուլղարների հետ և իր համայն ուշադրությունը կենտրոնացնել արաբների դեմ մղվող պատերազմում։ Բյուզանդական զենքի կարևորագույն հաջողություններից էր նշանավոր Մելիտենե քաղաքի գրավումը [934 թ.] Հովհաննես Կուրկուասի և հռչակավոր Մելիաս-Մլեհի կողմից։ Վերջինս գլխավորում էր հայերից բաղկացած զորք։ Բյուզանդիայի համար միակ լուրջ խոչընդոտը արևելյան ճակատում Համդանյան հարստության պատկանող, Մոսուլի և Հալեպի ամիրա Սայֆ ալ Դաուլան էր, որ 938 թ. սեպտեմբերին վերին Եփրատում պարտության մատնեց Հովհաննես Կուրկուասին։ Այդ խոչընդոտը սակայն ժամանակավոր բնույթ էր կրում։

Բուլղարական պատերազմը մինչև 927 թ. շարունակվեց նախկին կատաղությամբ։ Սիմեոնի զորքերը 920 թ. հասնում էին մինչև Կոստանդնուպոլիս։ Հերթական մի ճակատամարտի ժամանակ իր պրոտոմանդատորի հետ ջրասույզ է արվում հայազգի պատրիկ, ծովակալ Ալեքսիոս Մուսելեն, որը մասնակցում էր պատերազմին «իր ժողովրդով», ամենայն հավանականությամբ՝ հայերով։ Բուլղարներին հաջողվում է դարձյալ գրավել Ադրիանուպոլիս քաղաքը և գերել նրա զորավարին։ Ռոմանոսին ի վերջո հաջողվում է հաշտություն կնքել ցար Սիմեոնի

հետ, որը շատ չանցած, 927 թ. վախճանվում է։ Նրա մահով բյուզանդա-բուլղարական հարաբերությունների մեջ բեկում է առաջանում։ Սիմեոնի որդի ցար Պետրոսը և նրա աներձագ-խնամակալ Գեորգը իրենց բանակցությունները Ռոմանոսի հետ վարում էին ի միջի այլոց մի վանականի միջոցով, որի անունն էր Կալոկիրիս, ազգությամբ հայ։

Ռոմանոսի օրոք, 944 թ. Կոստանդնուպոլսի վրա նավատորմիղով դարձյալ երևացին ռուսները՝ իշխան Իգորի գլխավորությամբ, բայց պարտություն կրելով, ցրվեցին Բյութանիա նահանգով մեկ։ Նրանց դեմ պայքար մղեցին և մեծ ջարդ տվեցին հայազգի զորավարներ Վարդաս Փոկասը և Հովհաննես Կուրկուասը։

Ռոմանոսի թագավորության ընթացքում կայսեր կյանքի դեմ բազմաթիվ ոտնձգություններ և նրան տապալելու փորձեր եղան։ Դրանցից կարելի է նշել այն դավադրությունը, որի կազմակերպիչներն էին «ոմն Ադրիանոս Խալդ» (այսինքն՝ խաղտիքից, հավանաբար հայ) և «մեծահարուստ» Տաճատ հայը։ Նրանց դրդողն էր Խաղտիք բանակաթեմի զորավար Վարդաս Բոյիլասը (ելնելով անունից՝ նույնպես հայ)։ Նրանք գրավում են Բաբերդ ամրոցը։ Ռոմանոսը նրանց դեմ է ուղարկում Հովհաննես Կուրկուասին, որին հաջողվում է ճնշել ապստամբությունը։ Դավադրության պարագլուխներին նա կուրացնում է, գրավում նրանց ունեցվածքը։ Միաժամանակ հաջողվում է փախչել Տաճատին, որը, սակայն, ստանալով անձեռնմխելիության մասին երաշխիքներ, հանձնվում է։ Նրան բանտարկում են Մանգանայի «տանը», բայց, փախուստի դիմելու փորձի մեջ բռնվելով, կուրացվում է։ Ռոմանոս կայսրը խնայեց միայն Վարդաս Բոյիլասին, որովհետև նա «իր բարեկամն էր»։

Մի դավադրություն, այնուամենայնիվ, հաջողություն ունենում է։ Դրա կազմակերպիչները Ռոմանոսի որդիներն էին։ Նրանց, ըստ երևույթին, դրդել էր Կոստանդին Ծիրանածինը։ Իրենց հորը գահընկեց անելով, աքսորում են Պրոտե կղզին, որտեղ և նա 948 թ. հունվարի 15-ին վախճանվում է։ Դավադիրների թվում էր և Մանուիլ Կուրտիկը, ամենայն հավանականությամբ, որդին այն հայ Կուրտիկի, որ սպանվեց Կոստանդին Ծիրանածինի դեմ կազմակերպված՝ Կոստանդին Դուկասի դավադրության ճնշման ժամանակ։ Կոստանդին Ծիրանածինը մի քանի օր թագավորեց Ռոմանոսի որդիների հետ, բայց շուտով նրանց ձերբակալեց և մայրաքաղաքից աքսորեց։ Այսպիսով, 945 թ. հունվարի 27-ին Կոստանդինը ստանձնեց միահեծան իշխանությունը։

Կոստանդին Ծիրանածինը պաշտոնների նոր բաժանում կատարեց։ Հայազգի Վարդաս Փոկասին մագիստրոսի բարձր պատվաստիճանը շնոր-

հելով, նշանակեց բյուզանդական զորքերի սպարապետ (դոմեստիկոս)[34]։ Մանուիլ Կուրտիկը դարձավ պատրիկ և վիգլայի դրունգար։ Արքունիքում մեծ դեր էին խաղում ծագումով Մամիկոնյան Թոռնիկյաններր, որոնց օգնությամբ Կոստանդինին հաջողվեց չեզոքացնել Ռոմանոս Լեկապենոսի որդիներին. նրանց աքսորեցին Պրոտե կղզին և վանական ձեռնադրեցին։

Ռոմանոսի թագավորության վերջին շրջանում շնորհազրկված Հովհաննես Կուրկուասը Ծիրանածինի օրոք դարձյալ պատիվների է արժանանում։ Մենք հանդիպում ենք նրան արաբների հետ բանակցություններ վարելիս՝ ռազմագերիների փոխանակության շուրջ։ Այս ժամանակ է, որ նորանոր հայ գործիչներ են հանդես գալիս, ինչպես Ռոմանոս Մուսելեն։

Կոստանդին Ծիրանածինի օրոք մեծ զարգացում են ապրում գիտությունները։ Ինքը լինելով շատ կրթված մարդ, հովանավորում էր գիտությունները և առաջին հերթին հռետորությունը, փիլիսոփայությունը, երկրաչափությունը, աստղաբաշխությունը, արվեստը։ Նա հատուկ ուշադրություն դարձրեց կեսար Վարդասի հիմնադրած համալսարանին, որ նոր ծաղկում ապրեց։ Ծիրանածինն աչքի ընկավ և իր շինարարական գործունեությամբ։ Նա կառուցեց պալատներ, եկեղեցիներ, ծերանոցներ և այլն, որոնց մասին հիացմունքով են խոսում ժամանակակից հեղինակները։ Ինչ վերաբերում է արտաքին քաղաքականության հարցերին, ապա նրա օրոք կայսրությունը շարունակեց արաբների դեմ մղվող պատերազմը և՛ Ասորիքում, և՛ Աֆրիկայում։ Կիբիրեոտների բանակաթեմի զորավար Վասիլ Հեքսամիլիտոսի գլխավորությամբ բյուզանդական զորքերին հաջողվում է պարտության մատնել Տարսոնի ծոցից դուրս եկած արաբական նավատորմիղը և հեղուկ կրակով հրկիզել այն։ Իտալիայում դրությունը բավական բարդ էր։ Լանգոբարդիան և Կալաբրիան ապստամբություն էին բարձրացրել կայսրության դեմ, միանալով արաբներին։ Կոստանդին Ծիրանածինը, պատրիկ Մարիանոս Արգիրոսի գլխավորությամբ, զորաբանակ ուղարկեց և ճնշեց նրանց։ Մարիանոսը գրավեց ապստամբած Նեապոլիս քաղաքը։ Բյուզանդական նավատորմիղը պարտության մատնեց նաև Աֆրիկայի արաբների նավատորմիղը։ «Թեոփանեսի Շարունակողի» ասելով, և՛ Եգիպտոսի ամիրան, և՛ Ասորիքի ամիրան այդ բոլորից հետո կայսեր հետ հաշտություն կնքեցին,

[34] Տարիներ անց, երբ Վարդաս Փոկասը «ծերացավ», կայսրը այդ պաշտոնը տվեց Վարդասի որդուն՝ Նիկեփորին, որ պատրիկ էր և Անատոլիկոն բանակաթեմի զորավարը։ Այս Նիկեփոր Փոկասը հետագայում դարձավ կայսր (963—969 թթ.)։

թեև մի փոքր անց ցույց է տալիս, որ Ասորիքի արաբների դեմ շարունակվում են պատերազմական գործողությունները։ Բյուզանդական զորքը գլխավորում էր Վարդաս Փոկասի որդի Նիկեփոր Փոկասը, որը լինելով պատրիկ և Անատոլիկոն բանակաթեմի զորավար, ստացել էր հոր պաշտոնը, դառնալով սպարապետ։

Բյուզանդական զորքերը, Վասիլ պատրիկի գլխավորությամբ, գրավում են Սամոսատ քաղաքը և հսկայական ավար վերցնում։ Պակաս հաջողություն չի ունենում և Նիկեփոր Փոկասի եղբայրը, պատրիկ Լևոնը, որին Կոստանդին Ծիրանածինը, ինչպես տեսանք, իր առաջին մենիշխանության ժամանակ մագիստրոսի բարձր պատվաստիճան էր շնորհել և նշանակել Անատոլիկոն բանակաթեմի զորավար։ Իր սխրագործություններով հռչակվեց նաև հայազգի զորավար Թեոփիլոսը, Հովհաննես Կուրկուասի եղբայրը, որին ի վերջո հաջողվեց արաբների ձեռքից 949 թ. գրավել Թեոդոսուպոլիս-Կարին քաղաքը։ Թեոփիլոսը դարձավ Խաղտիք բանակաթեմի զորավարը։

Ռոմանոս Լեկապենոսի թագավորության և Կոստանդին Ծիրանածինի երկրորդ մենիշխանության ժամանակ բավական լայն ծավալ են ստանում հայ-բյուզանդական փոխհարաբերությունները։ Բյուզանդական կայսրությունը շարունակում է իր գործուն քաղաքականությունը հայոց, առաջին հերթին իր հարևան Տարոնի հայկական իշխանության նկատմամբ։ Պակաս եռանդ չի ցուցաբերում կայսրությունը և Ապահունիքում հաստատված կայսիկ ամիրաների, ինչպես և վրացիների նկատմամբ։ Հովհաննես Կուրկուասը մի շարք արշավանքներ է կատարում Կարին-Դվին ուղղությամբ, թեև ոչ միշտ հաջողությամբ։

Կոստանդին Ծիրանածինը վախճանվեց 959 թ. նոյեմբերի 15-ին, գահը թողնելով իր անչափահաս որդի Ռոմանոսին և վերջինիս մորը՝ Հելենեին։ «Թեոփանեսի Շարունակողը» տալիս է Կոստանդին կայսեր արտաքինի մանրամասն նկարագրությունը։ Նա բարձրահասակ էր, ուներ կաթի նման սպիտակ մորթ, երկար դեմք, վարդագույն այտեր, գեղեցիկ, ուրախ աչքեր։ Նա արծվաքիթ էր, երկարավիզ։ Նա նոճիի նման ուղիղ հասակ և լայն ուսեր ուներ։

* *

Ստորև տրվում է «Թեոփանեսի Շարունակողի» «Ժամանակագրության» ամբողջական թարգմանությունը, կատարված հետևյալ հրատարակության հիման վրա. Theophanes Continuatus. Ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1838, pp. 1—481:

# ΣΥΝΕΧΙΣΤΗΣ ΤΟΥ ΘΕΟΦΑΝΟΥΣ

# THEOPHANES CONTINUATUS

# ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՇԱՐԱՀԱՐՑԱԼ ՀՐԱՄԱՆԱՎ ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ԵՎ ԾԻՐԱՆԱԾԻՆ ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿԱՅՍԵՐ՝ ԱՄԵՆԱԻՄԱՍՏՈՒՆ ԵՎ ԻՆՔՆԱԿԱԼ ԼԵՎՈՆ ԿԱՅՍԵՐ ՈՐԴՈՒ, ՍԿՍՅԱԼ ԱՅՆՏԵՂԻՑ, ՈՐՏԵՂ ԱՎԱՐՏԵԼ Է ԹԵՈՓԱՆԵՍԸ, ԱՅՆ Է՝ ԼԵՎՈՆ ՀԱՅԿԱԶՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԻՑ ՄԻՆՉԵՎ ԹԵՈՓԻԼՈՍԻ ՈՐԴԻ ՄԻՔԱՅԵԼ ԿՈՒՐԱՊԱՂԱՏ[1] ԿԱՅՍԵՐ։

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

*Ինչ վերաբերում է յուրաքանչյուր գրքի բովանդակությանը, ապա նույն այն Կոստանդին կայսրն է[3], որ բարեխղճությամբ կազմել և մատչելի ձևով շարադրել է, որպեսզի կազմողների համար պարզ դառնա...... թագավորության[4]։*

*Բոլոր դեպքերում, ով ամենաիմաստուն կայսր[5], քո ազնվությունն է, որ քո բարի և այլ բազում և մեծ գործերի, այդ թվում և ժամանակի ընթացքում անգոյության մատնվածներր վերստին կյանքի կոչելու և վերակենդանացնելու քո ցանկության կարգին, կամեցար մի գործ էլ կատարել հոգալ պատմության մասին, որպեսզի մոռացության գիրկը չանցնեն անցյալում թագավորական գայիսոնին տիրացած մարդիկ։ Թեև նրանցից ոմանք նախանձախնդրությամբ բարին են գործել, սակայն նրանց [կենսագրությունն] անիրավացիորեն գրի չի առնվել։ Ոմանք ջանացին սովորական մարդկանցից ոչնչով չտարբերվել, նրանք հանդես եկան որպես պատմության ոչ բարեկամներ և իրենց անտաշությամբ ծաղրի առարկա դարձան[6]։ Արդ, ի՞նչ պետք է անի կայսրը, որպեսզի գրավոր խոսքով օգուտ տա։ Նա պետք է հոգատարություն ցուցաբերի [գիտուն] մարդկանց նկատմամբ, հատկապես պատմական գիտության, քանզի դրանց մեջ է թագավորության ուժը, որպեսզի դատողությունը կորցրած,*

*զառիվայր ընթացող մարդիկ չսխալվեն, քանզի [դեպքերը] լռության մատնելով, կվտանգվի այն, ինչով մենք տարբերվում ենք ամեն ինչից։*

*Այն, ինչ դու կատարել ես, ով ամենասիրելի կայսր, պատմական [գիտության] ու [գիտուն] մարդկանց նկատմամբ հոգատարություն ցուցաբերելու ուղղությամբ (որպեսզի հատուկ կանգ չառնեմ մյուս արարքներիդ վրա), թող իմաստուն այրերն ասեն, թեպետև դու բոլորից իմաստուն ես։ Պատմողը հենց դու ես, մենք պարզապես քեզ ծառայող ձեռքեր ենք, անցյալի դեպքերի մասին դու ես պատմում, անգամ եթե դրանք շատ հոռի են և ոչ փայլուն, քանզի խոհեմ մարդիկ վատից էլ կարող են օգուտ քաղել։ Դու, անտարակույս, ամեն տեսակի զբաղմունքից ու հանգստից գերադասեցիր պատմական գիտությունը, քանզի ուսումնասեր ու պատմություն սիրող հպատակների մեջ ամենից շատ դա է ջերմեռանդություն և առաքինություն առաջացնում։ Դու պատմության նյութը քաղեցիր գրավոր և բանավոր աղբյուրներից և բարվոք խորհեցիր, ի դեմս պատմության, բոլորի համար ինչ-որ հասարակաց դպրատուն ստեղծել։ Դու գտար, որ ամենից նպատակահարմար է այդ պատմությունն սկսել այնտեղից, որտեղ որ ավարտել էր երանելի Թեոփանեսը[7]։ Ձեր [պատմությունների] նմանությունն ու մոտիկությունը վկայում են, որ նրա գործի շարունակողն ես դու և քո [գրածով] հույժ պանծացնում ես նրան և փոխադարձաբար նրանից ինչ-որ փայլ ստանում։*

*[Թեոփանեսն] իր պատմությունը հասցրեց մինչև կուրապաղատ Միքայել կայսեր թագավորությունը[8], իր մարդկանց դավաճանության հետևանքով բուլղարներից կրած նրա պարտությունը։ Նա հիշել էր Լևոնի[9] գահ բարձրանալը միայն, առանց ընթերցողներին պարզելու նրա որտեղից սերելու, ստացած կրթության մասին։ Իսկ մենք, կարծես գլխին հարմարեցնելով [մարմնի] մնացած մասերը, պատմությունը ներկայացնում ենք ամբողջական և ոչ անկատար և այն փոխանցում մոտ ու հեռու ապագայի փութեռանդ մարդկանց, նրանց օգուտ և ոչ վնաս ընձեռելով, քանզի կյանքի լավն ու վատը գիտենալը շահեկան է, դա սխալների առաջն է առնում։*

ԼԵՎՈՆ Ե ՀԱՅԿԱԶՆ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

# ԼԵՎՈՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Հիշյալ Լևոնի հայրենիքը Հայաստանն է, ծնողներից մեկը՝ ասորեստանցի, մյուսը՝ հենց հայ[10]։ Այն պատճառով, որ նրանք միմյանց հետ պիղծ համաձայնության գալով, զաղիր կերպով խողխողեցին իրենց ծնողներին, դատապարտվեցին աքսորի[11]։ Աքսորավայրում նրանք փախստականի թշվառ կյանքն էին քարշ տալիս և այնտեղ էլ լույս աշխարհ բերեցին հիշյալ գազանին[12]։ Լևոնը, դառնալով պատանի, ծննդավայրից տեղափոխվում է Անատոլիկոն բանակաթեմի սահմաններում գտնվող Պիդրա գյուղը, որտեղ էլ այր դառնալով, որպես քաջ պատերազմող և արյունռուշտ զինվոր, իր արիությամբ անուն հանեց։ Կայսրության կառքի սանձերը այն ժամանակ գտնվում էին Նիկեփորի ձեռքում (Բուլղարիայում նա թշնամու ավար դարձավ)։ Նիկեփորը Վարդանին, մականունը՝ Թուրք, որպես քաջ պատերազմողի և բազում այլ առաքինություններով օժտված մարդու, նշանակեց մոնոստրատեգոս՝ Արևելքի հինգ բանակաթեմերի գլխավոր ու վերակացու[13]։ Վերջինս, որ սիրում էր թշնամիներին պարտության մատնել և շարունակ երազում էր կայսր դառնալ, Լևոնի աժդահա ու զարմանալի հասակի վրա ապշած, ապա և նկատի առնելով նրա՝ հետաքրքիր զրուցակցի հանգամանքը, դասեց իր թիկնապահների և սպասավորների թվում։ Դրանից մի փոքր առաջ կամ հետո նա նույն բանին էր արժանացրել նաև Միքայել Թլվատին[14] և Գազուրոս[15] լճի [շրջանից] սերող Թովմային[16], երկուսն էլ հասարակ ու ողորմելի մարդիկ, որոնք ռազմական ղեկավարությանը հենց վերջերս էին հայտնի դարձել։ /2/ Բոլոր վերոհիշյալները Վարդանից կախման մեջ էին գտնվում և առաջ գնալու իրենց հույսերը նրա հետ կապում։ Վարդանը, որ գահի վրա աչք ուներ, իր մտադրությունն ու ցանկությունը հայտնում է Ֆիլոմելիոնի[17] վանքի մի վանականի և նրան խնդրում իր քայլերը ճիշտ ուղղությամբ տանելու և գահի գործը գլուխ բերելու վերաբերյալ աստծուն պաղատագին աղոթել։ Սակայն նա իսկույն ևեթ պատասխան տվեց, թե «պետք չէ, ով Վարդան, նման գործի խիզախել, քանզի դա պատճառ է դառնալու քո ունեցվածքի կորստյան, կուրացման, չարաչար դժբախտության։ Արդ, եթե դու ականջ կախես իմ խորհրդին, պետք է առանց հապաղելու հրաժարվես այդ մտքից, դրա շուրջ մի փորձիր մտածել անգամ»։ Վարդանը, լսելով նման խոսքեր, վհատվեց ու մռայլվեց և, ի վերջո, ընկճված ու տխուր դուրս եկավ սենյակից։ Վանականը, տեսնելով հիշյալ մարդկանց՝ Լևոնին, Մի-*

*քայելին և Թովմային, որոնք ձին բերեցին, որ Վարդանը հեծնի, ղորավարին հետ կանչեց։ Վարդանը, որևէ նոր ու կարևոր բան լսելու հույսով, իսկույն վերադարձավ։ Վանականը վերստին պաղատեց նրան՝ սեփական ձեռքով իր փոսը չփորի, ներկա երջանիկ վիճակը չփոխարինի դալիք դժբախտությամբ։ Մյուսների համար նա կանխագուշակեց, թե նրանցից առաջինն ու երկրորդը[18] ձեռք կգցեն գահը, բայց դու՝ ոչ։ Ինչ վերաբերում է երրորդին[19], ապա նա սոսկ կհռչակվի, գահ կբարձրանա, բայց բախտ չի ունենա, դեռ ավելին, նա իր հոգին չարաչար կավանդի։ Վարդանը, հոգում նման հարվածներ ստանալով, գույն առավ գույն տվեց, նա անհապաղ տան ճանապարհը բռնեց՝ վանականի հասցեին ամբարիշտ ու անարգական խոսքեր ուղղելով։ Նա [իր ընկերներին] հայտնեց իրենց վերաբերյալ վանականի արած գուշակությունները, որոնք այդ առթիվ կուշտ ծիծաղեցին։ [3] Ահա վանականի խոսքերին մնաս բարով ասելով, նա ինդիկտիոնի 11-րդ տարվա հուլիս ամսի տասնիննին Նիկեփոր կայսեր դեմ հսկայական բանակ ոտքի հանեց, իրեն ենթակա բանակաթեմերից չորսին համոզեց և իր հետևից տարավ (բացի Արմենիակներից, որոնք իրեն չհարեցին) և ապստամբություն բարձրացրեց։ Ծանր հարկերի սակ տքնող ժողովուրդը ատում էր Նիկեփորին[20], և այդ հանգամանքն էլ ահա, ի միջի այլոց, նրա ապստամբության առիթ ու դրդիչ դարձավ։ Բայց կար մի պատճառ ես։ Երբ Վարդանը հագարացիների դեմ հաղթանակներ տարավ, ձեռք բերած հսկայական քանակությամբ ավարը արդարորեն բաժանեց՝ նկատի առնելով յուրաքանչյուրի՝ պատերազմում ունեցած մասնակցությունը և ոչ նրա դեմքն ու գրաված դիրքը։ Զինվորներին թվաց, որ հենց նա է արժանի կայսր դառնալու։ Եվ ժողովրդի կողմից կայսր հռչակվելով, դեմոսի կողմից[21] արժանանալով բազում այլ հատուցումների ու մրցանակների (անգամ նրա անվան տաճար կառուցեցին), նա բռնեց Նիկոմեդիա տանող ճանապարհը։ Բայց Նիկեփոր կայսրը բավական զորեղ [Վարդանի բանակին], ոչնչով չզիջող բանակ ոտքի հանեց և Վարդանին, հակադիր զորքի մեծաթվությամբ, հուսաբեկ արեց։ Նիկեփորը համոզեց Վարդանին, քանի ուշ չէ՝ ներողություն խնդրի։ Այդ ընթացքում Լևոնը, ապա նաև Միքայելը, անցան կայսեր կողմը, առաջինն իր այդ քայլի համար որպես վարձք ստացավ ֆեդերատների [կոմեսի][22] պաշտոնը, Զենոնի թագավորական տունը և Դագիսթեոնը[23], իսկ մյուսը՝ կորտեի կոմեսի[24] պաշտոնը և Կարիանոսի տունը, այնպես արեցին, որ Վարդանն ստիպված սկսի իր գլխին գալիքի մասին մտահոգվել։ Նա իր և իր զինվորների համար կայսրից ներողություն խնդրելով, բռնեց*

դեպի Մալադինա[25] վերադառնալու ճանապարհը։ Այնտեղ նա ստացավ անձեռնմխելիության մասին երաշխիք և մի ոսկե փոքրիկ խաչ, որ Նիկեփորն էր կրում, որը որպես անվտանգության երաշխիք, նրան ուղարկեց։ Վարդանը գիշերով, լոկ Թովմայի ընկերակցությամբ, փախավ Հերակլիոսի վանքը, ջանալով գլխի [կայսերական] զարդերը հանել։ Վանահայրը թույլ չտվեց նրան այդ բանն անել, իսկ Վարդանը իր մեջքին կապած թրով իր գլխի խոպոպը կտրեց, աղքատիկ հանդերձներ հագավ և բռնեց դեպի Պրոտե կղզին[26] տանող ճանապարհը, որտեղ նա ուներ բարգավաճ կալված։ Կայսրը նրան թույլ տվեց հենց այնտեղ փակված մնալ։ Այսպիսով, ահա գալով [Պրոտե կղզին], նա ստացավ սովորական աղոթքները և վանականի սրբազան սքեմը, վերանվանվեց Սաբբա և սկսեց ճգնավորական խստաբարո կյանք վարել։ Շատ չանցած մի քանի լիկաոնացիներ[27] հարձակվելով վրան, կայսեր գիտությամբ նրան կուրացրին, որից հետո փախան աստծու սուրբ և մեծ տաճարը[28]։ Այսպիսով, իրականացավ Ֆիլոմելիոնի ճգնավոր վանականի գուշակությունը։ Սակայն Վարդանը աղոթեց իրեն կուրացնողների համար, որպես իր բարերարների, և շարունակեց ավելի չարքաշ կենցաղավարել։ Նա կտրականապես հրաժարվեց օգտագործել գինի, ձուկ և ձիթայուղ, ամենախիստ ձմռանն անգամ չէր կրում գլխարկ ու կոշիկներ։ Ի վերա ամենայնի նա ընդամենը մեկ հագուստ էր հագնում՝ ամռանը կաշվե խիտոն, ձմռանը՝ մազե։ Նրա կերած հացն էլ ցորենի հաց չէր, այլ տաք մոխրի մեջ եփած գարու ալյուրից պատրաստած։ Ահա այսպես էր նա անցկացնում իր օրերը, մինչև որ Լևոնը տիրացավ գահին։ Վարդանը նաև իր կնոջը վերանվանեց Աթանասիա, իսկ ողջ ունեցվածքը աղքատներին բաժանեց։ Ահա Վարդանի մասին այսքան։

4. Գալով Լևոնին ասենք, որ նա փառքի հասնելով, աննշան ու շարքային մարդուց հայտնի անձնավորություն դառնալով՝ ֆեդերատների կոմես, ամբարտավանացավ։ Նման պայմաններում էլ նա ապերախտությունից ձեռք չքաշեց, իր բարերարի հանդեպ երախտամոռ եղավ, թեև առժամանակ դա ցույց չէր տալիս։ Նա իսմայելացիների դեմ մղած անվերջ մարտերում սխրանքներ էր գործում, քանզի ռազմավարությամբ, իր ֆիզիկական ուժով ու ձեռք բերած փորձառությամբ շատ կարող էր։ Մի անգամ Նիկեփոր կայսեր կողմից նա զինվորներին բաժանելիք ռոճիկը ստացավ, բայց քանի որ կայսերական կարգադրությունները իր համար նշանակություն չունեին, նա ոչինչ չարեց, հետաձգեց զինվորներին հասանելիքը վճարել և Եվխայիտների ավանում[29] ժամանակն էր վատնում՝ անհոգ ու անփույթ։ Նա չէր հոգում ո՛չ պետական դրամների,

ո՛չ սեփական անձի, ո՛չ էլ իր զինվորների անվտանգության մասին։ Երբ հագարացիները, արշավելով սկսեցին ավարառել Հռոմայեցիների երկիրը, ինքը [Լևոնը] և ոչ այլ ոք, ավարը գրեց նրանց ձեռքը։ Ինքը ճիշտ է արագ փախուստի դիմելով փրկեց անձը, բայց դավաճանեց ռազմական գործին և քիչ մնաց թշնամու ձեռքը դներ դրամները։ Դրա պատճառով իրեն վստահած Նիկեփորից պատժվեց, զրկվեց պատվաստիճաններից և մեջքին ու կրծքին գանահար արվելով, ցմահ աքսորի դատապարտվեց։ Սակայն Նիկեփորը սկյութների[30] դեմ արշավանքի գնաց, և ինդիկտիոնի չորրորդ տարվա հուլիս ամսի քսանվեցին վիրավոր ընկավ, իսկ նրա որդի Ստավրակիոսը պատերազմում մահացու վերք ստացավ և երկու ամիս և ութ օր անց վախճանվեց, հոր հետ թագավորած լինելով ութ տարի և յոթ ամիս։ Եվ ահա, երբ Ռանգաբեի[31] ընտանիքից սերող և Մանգանայում բնակվող Միքայել կուրապաղատը, Նիկեփորի փեսան[32], որ Ստավրակիոսի՝ հոկտեմբեր ամսի երկուսին վրա հասած մահից հետո, ինդիկտիոնի հինգերորդ տարվա հոկտեմբեր ամսին ստացավ կայսերական իշխանությունը, Լևոնը [ներման արժանացավ] (դա, նոր գահ բարձրանալու առթիվ, հռոմեական կայսրերի մարդասիրության մասին սովորության դարձած արտահայտություն էր), աքսորից հետ կանչվեց և ընդգրկվեց Միքայելի կայսերական պալատի պահապան գնդում։ Շատ չանցած նա ստացավ պատրիկի պատվաստիճանը և նշանակվեց Անատոլիկոն բանակաթեմի զորավար[33]։ Այն ժամանակ նա վերականգնեց Միքայելի, իր վաղեմի ընկերոջ հետ ունեցած բարեկամությունը (նա, Վարդանին լքելու համար, նշանակվել էր կորտեի կոմես) և նրան, իր գաղտնիքներին հաղորդակից դարձնելով, արքունիքում և արքունիքից դուրս անցած-դարձածին իրազեկ էր։

Բայց քանի որ [Լևոնի] համար կոշտուկոպիտությունն ու վայրենությունը բնածին գծեր էին, նա շուտով մեջտեղ հանեց իր ապերախտությունը, և սրիկան պետության երկրորդ դեմքից ցանկացավ առաջինը դառնալ։ /5/ Այն ժամանակ բուլղարների առաջնորդ Կրումը կեղծավորաբար հաշտություն ու բարեկամություն էր առաջարկում, ուզում հաշտության պայմանագիր կնքել, բայց միայն այն պայմանով, որ շարունակվի իրեն կանոնավոր կերպով վճարվել տարեկան հարկը, ըստ անցյալում սահմանվածի[34], դրա վրա ավելացրած և այն, որ բուլղար ու Հռոմայեցի փախստականներին յուրաքանչյուր կողմ պարտավոր է հետ վերադարձնել, [Ռոմանիա] փախած բուլղար փախստականներին՝ բուլղարներին, [Բուլղարիա] փախած Հռոմայեցի փախստականներին՝ Հռոմայեցիներին[35]։ Փախստականների վերաբերյալ այս կետը սենատորներն

անընդունելի համարեցին, թեև Միքայել կայսրը, ցանկանալով գլուխ բերել խաղաղության գործը, միանգամայն համաձայնվել էր [բուլղարների] առաջնորդի առաջարկին։ Այդուհանդերձ հաղթանակեց սենատի կարծիքը, որի որոշումը կազմում ու վավերացնում էր մագիստրոս Թեոկտիստոսը։ Այսպիսով, բանակցությունները ապարդյուն վերջացան, և երկու կողմերն էլ պատրաստվեցին պատերազմի։ [Սենատի] որոշումն արդարորեն ճիշտ համարվեց, քանզի ո՞վ կարող է մարդասեր ու կարեկցող համարվել, եթե նա գազաններից ոչնչով չտարբերվող գաժան սկյութներին[16] է վերադարձնում ինչ-որ զանցանքի համար հայրենիքը (որից, ինչպես ասում են, քաղցր բան չկա), կնոջն ու երեխաներին լքած և հռոմայեցիների պետության մեջ, ինչպես եկեղեցու անձեռնմխելի բեմում, ապաստան հայցողին։ Այդ սարսափելի ու վայրենի [սկյութներին] մոտիկից ճանաչած շատերը, չկարողանալով դիմանալ, անվերջ հոսում են դեպի մեր քաղաքակիրթ ու մեղմ բարքերի տեր [երկիրը]։ Նրանց առաջնորդները, վախենալով, որ եթե այդպես գնա, իրենց երկիրը աստիճանաբար մարդաթափ կլինի, այդ հարցը բազմիցս, մեր օրերում էլ, բարձրացնում են։ Բայց, ինչպես առածն է ասում, ջուր ծեծեցին, քանզի հանդիպեցին աներեր մարդկանց։ /6/ Այսպիսով, ահա փոքր առ փոքր սկսեցին պատերազմի պատրաստություն տեսնել։ Միքայելը իր փոխզորավար Լևոնին հրամայեց զորքերով Անատոլիկոն բանակաթեմից անհապաղ [եվրոպական ափն] անցնել, բայց կարծելով, որ ի դեմս նրա օգնական ունի, անհաշտ թշնամի ձեռք բերեց։ Կրումը ամբարտավան խոսքեր էր ուղղում հռոմայեցիների հասցեին, սպառնում կոտորել մարդկանց, ամայացնել երկիրը, կտրատել ծառերը, կրակի տալ տները, վստահեցնում, որ ինքը, ինչպես հորդաբուխ գետ, մեր վրա թափվելով, ողողելու է բոլորին։ Կայսրը նրա դեմ արշավելով, լռեցրեց նրա չափ ու սահման չունեցող սպառնալիքները, ստիպեց նրան մնալ սեփական սահմաններում և այլևս չներխուժել և չավարառել մեր երկիրը։ Միքայելը բազում անգամներ նրան կոչ արեց ճակատամարտ տալ, բայց նա, գիտենալով իր թուլությունը, չէր համարձակվում, չէր հանդգնում կայսեր վրա ձեռք բարձրացնել։ Միքայելը գտնում էր, որ [Կրումի] թափը կոտրելն ու նրա լկտիության սանձ դնելը արդեն բավական է, և, մտածելով, որ ելքն անհայտ է, նրա հետ կռվի չբռնվել։ Նա ասում էր. «Մենք ի վիճակի չենք նրան ճակատ առ ճակատ պատերազմի ներքաշել, այլ բավական է նրան ստիպել մարտից խուսափել։ Արդ, ուժի դիմելով, ի՞նչ ենք շահում»։ Նա ուզում էր հանգիստ, կամաց-կամաց իր թագավորությունը վերադառնալ։ Լևոնը այդ բանն անհարմար

համարեց, ասաց, որ վայել չէ հռոմայեցիների կայսեր թշնամիներին թիկունք ցույց տալ։ Միքայելի այդ գերազանց ծրագիրը Լևոնը թիկունք ցույց տալ էր համարում, նա, ում միտքը ծուռ էր ու արատավոր, վատթար ու նենգ, ուղղված հռոմայեցիների համայն իշխանության տիրանալուն։ «Ով կայսր,—ասաց նա,—պետք է շարժվել նրանց վրա, այսօր եսականատես կլինեմ թշնամիների վրա պետության հաղթական հարձակման, քեզ ապավինած և քո աղոթքներով հուսադրված պատերազմող պետության»։ Միքայելը այդ խոսքերի վրա տեղի տվեց և, միտքը փոխելով, ճակատամարտ տալու կարգադրություն արեց։ Առաջին իսկ բախման ժամանակ Լևոնը, շուռ տալով թիկունքը, դիմեց փախուստի, նրա խելքն ու միտքը գահին տիրանալն էր։ Այդ պահին դա հայտնի չէր ո՛չ Միքայելին, ո՛չ էլ հակառակորդներին։ Ինչպես դա պատահում է պատերազմի ժամանակ, երբ դեռևս ոչ մի կողմ գերազանցության չէր հասել, ճակատամարտը նոր էր սկսվել, ու նրա ելքն անհայտ էր, և՛ բուլղարներին, և՛ մնացած բոլորին թվաց, թե այդ փախուստի մեջ ինչ-որ ռազմավարական խորամանկություն կա, որ փախուստով ուզում են ցիրուցան անել իրենց շարքերը և, ապա շրջվելով, պարտության մատնել։ Բայց երբ երկու կողմերն էլ համոզվեցին. որ փախուստը իսկապես փախուստ է և ոչ խորամանկության արտահայտություն, այն ժամանակ հակառակորդները հարձակման անցնելով փախուստի դիմողներին անխնա կոտորում էին։ Միքայելը, ունենալով փոքրաթիվ զորք, չփորձեց դիմադրություն ցույց տալ, այլ ջանաց սեփական անձը փրկել։ Ահա ոմանք գրավոր այսպես մեզ նկարագրեցին հիշյալ ճակատամարտը։ Բայց կան և այնպիսիք, որոնք վկայում են, թե հենց Լևոնն էր զինված ուժերը փրկողը, որ կայսերական տագմաներն են[37], որ դավաճանաբար չուզեցին մարտին մասնակից դառնալ և ցրիվ եկան, և ոչ Լևոնի գլխավորած զորամասը[38]։ Եվ ահա բուլղարական կողմը անսպասելիորեն գերակշռություն է ձեռք բերում, իսկ հռոմայեցիները, ծանր ու սարսափելի պարտություն կրելով, ջանում էին ճամփու դնել ու փրկել կայսեր։ Նա հասավ թագավորական պալատը, Լևոնին թողնելով ինչ-որ պատնեշի դեր խաղա, թույլ չտա թշնամիներին նոր ասպատակություններ գործել։ Լևոնը, հարմար առիթ ձեռք գցելով, զինվորներին կայսեր դեմ էր գրգռում, ստիպում նրանց լուտանքներ թափել նրա հասցեին, հիշեցնելով առակը, թե լավ չէ առյուծներին եղնիկն առաջնորդի։ Նա ասում էր, թե կայսրը փախուստի է դիմել ու կնոջ ծոցը մտել, իր զինվորներին, այսինքն՝ մեզ, թողել թշնամիների սրի բերանը։ Դեռ այս խոսակցությունները չտարածված,

*նա գործի լծվեց՝ շողոքորթ մարդկանց շաղակրատությունից ու աջակցությունից ոգևորված։ Եվ ահա նա կայսր է հռչակվում[39] և մի ակնթարթում շարքայինից կայսր դառնում։*

*7. Ահա այսպես նա զորքի կողմից կայսր հռչակվեց, բայց նրան համակել էին վախն ու սարսափը, նա մտածում էր հաշվեհարդարի մասին։ Թուցե և դա դերասանություն էր, բայց գուցե և ճշմարտություն, քանզի կարող էր մտորել նման արարքներին հաջորդող համապատասխան [պատիժը]։ Ովքեր ձգտում են ուրիշներին պատկանածը խլել, որպես կանոն այնքան հանդուգն չեն լինում, հատկապես երբ խոսքը արքունիքին է վերաբերում, թեև նա բանակել էր հեռուն, բաց երկնքի տակ։ Ալդուհանդերձ, քանի որ ճակատագրով նախատեսված էր, որ նա էլ պիտի պալատում բնակվի, չարագույն ոգին [Միքայելին] սարսափելի պատիժ սպառնաց, եթե նա [Լևոնի] հռչակումը հոժարությամբ չընդունի, քանզի [Լևոնը] աչքի առել էր բոլոր դժվարությունները, այդ թվում և հենց պալատ ժամանելու։ Ինչ որ եղավ։*

*8. Մի այր (նա Հովհաննես Հեքսաբուլիոսն էր), որին վստահված էր պարիսպների խնամքն ու հոգսը[40], երբ տեսավ, որ կայսեր [քաղաք] մուտք գործելուց[41] հետո Լևոնին են թողել պահապան, ասաց որ վատ են արել, որ նրան են զորքերի հրամանատար նշանակել (նա մարդուն հեռվից ճանաչելու մեծ վարպետ էր)։ Նա կայսեր խորհուրդ տվեց մի բան մտածի և Լևոնին անուշությամբ հեռացնի։ Բայց գառան մորթու մեջ թաքնված գաղանը պետք է որ լույս աշխարհ գար և փորձվեր, ինչպես հալոցում ոսկին՝ ասածս ընտրյալները[42]։ Այդ բանը բազմիցս և պարբերաբար տեղի է ունենում, իմ կարծիքով՝ դիվային պահանջով, այդպես եղավ Հոբի դեպքում, որպեսզի այդ ձևով երևան բարեպաշտները, և ջոկվեն ու մերժվեն արատավորները։ /9/ Զրույցները դեռ չվերջացած, համբավն առաջ գնաց ու մարդիկ տեղեկացան բռնակալի կայսր հռչակվելու մասին։ Երբ այդ լուրը մուտք գործեց քաղաք, բնակիչները քիչ մնաց խելագարվեին, հազիվ էին իրենց զսպում։ Նրանք սարսափում էին քաղաքացիական պատերազմից, որը բազմիցս քաղաքներ է մարդաթափ արել։ Կայսրը, թեև քար կտրեց, բայց դատողությունը չկորցրեց, նրան պարզապես քաջահայտ դարձավ [Լևոնի] ապերախտությունը։ Նա հանգիստ շշնջաց, թե լավ է ընթանալ աստծո կամքով։ Ապուշ կտրած ու իրարանցման մեջ գտնվող քաղաքացիներին նա հանգստացրեց, բոլորին հորդորեց իրեն ընդառաջ գնան, որպեսզի հանդարտ մնալով, փրկի քաղաքը, մաքուր ու անարատ պահի այն ցեղակիցների արյունահեղությունից։ Ոմանք դիմադրելու, պայքարի դուրս*

գալու կոչ էին անում, խոստանում հավատարիմ մնալ բարի ու հավատացյալ կայսեր, նույն մտքին էր և [Միքայելի] կինը՝ Պրոկոպիան, ինչպես և ոմն Մանուիլ Ամաղեկացի[43], որն այն ժամանակ պրոտոստրատոր[44] էր։ Բայց կայսրն ասաց, թե ինքը չի կամենում եղբայրների արյամբ ողողված թագավորություն։ Նա իր մտերիմ սպասավորներից մեկին կայսերական մի քանի նշանակներով խստագույնս հրամայեց գնալ [Լևոնի] մոտ[45]։ Պատմում են, որ այդ առթիվ [Միքայելի] կինը վատ զգաց և կարծես մոլեգնած, ուժգին աղաղակեց՝ ասելով, թե մի՞թե Բարկան[46] (նա այդպես կոչեց Լևոնի կնոջ) պիտի գլխին դնի մոդիոլոնը[47]։ [Միքայելը] նրան խիստ կշտամբեց և սեփական անձն աստծուն վստահելով, կատարվելիքն էր սպասում։ Հայտնեցին, թե բռնակալը արգելն մուտք է գործել Ոսկե դռներով[48], որ համայն սենատը Կարապետի տաճարում (նրան Ստուդիոսն էր ի հիմանց կառուցել) ձեռքերը աղաչական մեկնած դիմավորում է նրան, ուղեկցում ու ներբողում։ Մոտենալով պալատին, նա Խալկե[49] կոչվող վայրում պետք է կանգներ և մարդեղացած Աստված Բանի սուրբ պատկերի առջև մեզ համար աղոթեր։ [Լևոնը] զինվորական սովորության համաձայն առանց գոտիի կարմիր հանդերձ էր վրայից հագել (մասնագետներն այն կոչում են արծիվ կամ ծով)։ Ահա տեղում նա հանում է այն, իսկ Լևոնի ախոռապետ Միքայել Թլվատը[50] վերցնելով իսկույն հագնում է։ Շատերը այդ բանը համարեցին [Լևոնից] հետո նրա կայսր դառնալու կանխանշան։ Երբ հասան Սկյուլա (այդպես է կոչվում պալատի մուտքին մոտիկ գտնվող մի վայր), Լևոնի հետևից գնացող Միքայելը անզգուշորեն ոտքը դրեց նրա հագուստի ծայրին, այն աստիճան, որ Լևոնն զգաց և դրան ինչ-որ լուրջ բացատրություն տվեց։ Սակայն դա հետագայում կատարվեց։

10. Ահա Լևոնը մտավ քաղաք, իսկ Միքայելն իր զավակների ու կնոջ հետ մազերը խուզելով[51], աստծո Փարոս կոչվող տաճարը գնաց նրա բարեհաճության կոչ անելով։ Նա Փարոս է կոչվում, քանզի բոլորին լուսավորում է, գիշերները դեպի ապահով պատսպարան առաջնորդում՝ ինչպես Ալեքսանդրիայի Փարոսը, որին նման է և կրում է նրա անունը։ Ինչ վերաբերում է [Լևոնին], ապա նա գտավ, որ ճիշտ չէ [Միքայելին] տաճարից քաշել-հանել ու սպանել, դրա համար աքսորեց Պլատե[52] կղզին և հանդիստ թողեց, վրայից էլ նրան տարեկան որոշ դրամական գումար նշանակեց։ Նա այնտեղ վանականի սքեմը հագավ, իրեն վերանվանեց Աթանասիոս և, ասում են, երեսուներկու տարի ապրեց։ Նրա հետ էին և որդին՝ Եվստրատիոսը, որը քսան տարեկան

հասակում Լևոնի հրամանով խուզվեց ու ներքինացվեց, ինչպես և Նիկետասը, որը թեև երիտասարդ էր, հիկանատների կոմեսի[53] պաշտոնն ուներ. այն պատճառով, որ նա ցանկանում էր զինվորների և բաց երկնքի տակ գտնվողների սիրելին լինել և ամեն ինչին գիտակ, նա ևս այն ժամանակ խուզվեց, կոչվեց Իգնատիոս և հոր հետ վանականի կյանք էր վարում։ Ինչ վերաբերում է [Միքայելի] կնոջ, ապա [Լևոնը] նրան հեռացրեց ու մեկուսացրեց, Պրոկոպիայի կոչվող վանքը տեղափոխեց, թեև Միքայելը շատ պաղատեց այդ բանը չանել։ Միքայելը վախճանվեց 6302 թվականի[54] հունվարի 11-ին և թաղվեց նույն այդ կղզում՝ եկեղեցու աջ կողմում։ Եվստրատիոսը հոր մահից հետո ապրեց ևս [տասն]հինգ[55] տարի և ննջելով 6307 թվականին, թաղվեց եկեղեցու ձախ կողմում, իսկ Իգնատիոսը, որ նախապես Նիկետաս էր կոչվում և Կոստանդնուպոլսի պատրիարք էր եղել, բազում տարիներ անց վախճանվելով, իր սուրբ մարմինն ամփոփվեց Սատիրոսի կոչվող վանքում. այն մի փոքր առաջ ինքն էր ի հիմանց կառուցել։ Հիշյալ վանքը կոչվում է նաև Ծագողի։ Սատիրոսի էր կոչվում, որովհետև այդ վանքից մի փոքր հեռավորության վրա գտնվում էր հին Սատիրոսը, հեթանոսների կողմից Սատիրոսի պատվին կառուցված տաճարը։ Ահա այս տաճարին մոտիկ գտնվելու պատճառով, նրա անունով էլ հիշյալ վանքը այդպես կոչվեց։ Երբ Թեոփիլոս կայսրը կառուցում էր Բրիասի պալատը, նրա շինարարության համար օգտագործեց [Սատիրոսի տաճարից] հանած շինանյութը[56]։ Իսկ վանքը Ծագողի էր կոչվում հետևյալ պատճառով։ Երբ Նիկեփոր կայսրը մի անգամ այն տեղում, որտեղ այժմ վանքն է գտնվում, որս էր անում (վայրը ծառաշատ էր ու դժվարանցանելի, որսորդության համար), հանկարծ մի մեծ եղջերու հայտնվեց, որին հետապնդելով բռնեցին հենց այն տեղում, որտեղ այժմ վանքի բեմն է կառուցված։ Այդ տեղում ահա գտնվեց սյան վրա դրված մի հին զոհասեղան՝ հետևյալ արձանագրությամբ. «Սա Անդրեաս առաքյալի հաստատած ծագող Միքայել հրեշտակապետի զոհասեղանն է»։ Այդ բոլորը տեղի ունեցան ոչ թե այն ժամանակ, այլ շատ անց։

11. Այժմ վերադառնանք պատմության և ուսումնասիրենք պատճառը, որով, կարծես համաձայնության եկած, Միքայելն ամենևին չպայքարեց իշխանության համար (առածն ասում է, թե մրջյունն անգամ լեղի ունի)[57], իսկ Լևոնն էլ այդպես հանդուգն ոտքի ելավ այն զավթելու։ Իմ համոզմամբ քաղաքական գործիչների սովորելու և փորձ ձեռք բերելու ամենախսկական դպրոցը այն է, որ նրանց ցույց տրվի երևույթի անհայտ պատճառը, դեռ ավելին նաև այն, ինչ թաքնված է

մեզանից։ Ամեն մի պատմական երկ, որը դրանից զուրկ է ու մերկ, չգիտեմ, ի՞նչ օգուտ կարող է տալ մարդկանց։ Միքայելը մի ջահել սպասուհի ուներ, որ, ինչպես ոմանք պատմում են, մոլեգնության և այսահարության պահին գուշակում էր ու կանխատեսում ապագան։ Գտնվելով Բուկոլեոնի ծովափին[58], նա աղաղակում էր. «Իջի՛ր այնտեղից, իջի՛ր» և ավելի ուժեղ՝ «ով Միքայել, և հրաժարվի՛ր այն բանից, ինչ քեզ չի պատկանում»։ Նա հենց Միքայելին էր ուղղում իր խոսքերը։ Այդ բանը, որ բազում անգամներ կրկնվեց, հասավ անգամ նրանց ականջին, ովքեր ցանկանալով ուրախ ու զվարթ կյանք վարել, խուլ էին ձևանում։ Հուսաբեկությամբ համակող այդ ձայնը, թեև ուշացած, հասավ նաև կայսեր ականջին։ Եվ քանի որ յուրաքանչյուր մարդ ցանկություն ունի տխուր լուրը սիրելիների հետ բաժանել, Մելիսսենոսների ընտանիքին պատկանող և իրեն հարազատ թվացող ոմն Թեոդոտոսի, մականուն Կասսիտերաս[59], հայտնեց տարածված համբավի մասին, նրանից մի լավ ու փրկարար խորհուրդ ակնկալելով։ Նա խորհուրդ տվեց նրան, երբ հիշյալ աղջնակը դարձյալ այսահար լինի, ճշգրիտ տեղեկացնի ո՞րն է նրա տունը, ո՞վ պետք է թագավորի, ի՞նչ է նրա անունը և ինչպիսի մարդ լիներ։ Նա խոստացավ անձնապես հետաքրքրվել։ Պյութոնի ոգով[60] այսահար եղած աղջնակը, առանց ոչինչ թաքցնելու, ասաց. «Այսինչ ժամանակ, երբ դու ակրոպոլսում[61] ես լինելու, մուտք են գործելու երկու մարդիկ, մեկը, որ ջորու վրա է նստած լինելու, կոչվում է Լևոն, մյուսն՝ ուրիշ անուն է կրում։ Հենց այդ [Լևոնին] է բախտ վիճակվել տիրանալու թագավորությանը»։ Այդուհանդերձ այդ աստվածատյաց այրը երդվեց կայսեր, թե տարածված լուրերը բարբաջանք են, նրանց մեջ ճշմարիտ ոչինչ չկա և կատարվելիքի մասին նրան ոչինչ չասաց։ Բայց [Թեոդոտոս Կասսիտերասի] համար այդ խոսքերը ո՛չ բարբաջանք էին, ո՛չ էլ դատարկաբանություն։ Նա իսկույն գնաց և աստվածային Պավղոսի տաճարում գտավ այդ մարդուն, որի մասին լսել էր, թե որբերի խնամող է[62]։ Նա նրա հետ խորհրդակցեց, համաձայնության եկավ, նրան հուսադրեց ու վստահեցրեց, կոչ արեց արիանալ ու ուրախ լինել, քանզի, ասաց, կատարվելիքի մասին գաղտնիքը աստվածուստ եմ իմացել, որի համաձայն դու պարզապարզ կայսր ես հռչակվելու։ Ահա այս գաղտնի խոսակցությունը նախկին ուրվագծի վրա կարծես երկրորդ գույները քսելով, որոշակի պատկեր ստեղծեց (առաջին գույներ ասելով ես նկատի ունեմ Ֆիլոմելիոնի վանքի վանականի կանխագուշակությունը), և այլևս թագավորությունը ինչ-որ ուրվականի և աներևույթ բանի տեսք չուներ, այլ պարզ ու հստակ,

խսկապես իրականանալի։ Այս բանը Լևոնի արդեն հանգած, կարծես թառամած հույսի բոցը վերստին բորբոքեց, իսկ Միքայելին խորասուզեց անսահման հուսալքության խորխորատը, մեկի հոգու բուրգը կանգնեցրեց, մյուսինը՝ սասանեց։ Եվ դա արեց ոչ միայն այդ աղջիկը, այլ իրականում Կասսիտերասը, որին հավատ ընծայեցին, բայց նա խաբեց։ Վերադառնանք պատմությանը։

12. Լևոնը հենց որ ինդիկտիոնի 6-րդ տարվա հուլիս ամսին տիրացավ կայսերական իշխանության՝ հրապարակայնորեն գահ բարձրացավ[63], Միքայել Թլվատին (որի որդուն անցյալում սուրբ ավազանում կնքել ու որդեգրել էր) շնորհեց պատրիկի պատվաստիճանը, իսկ իր տարեկցին ու մանկության ընկերոջ Թովմային[64] նշանակեց ֆեդերատների տուրմարխ[65], Միքայելի պրոտոստրատոր Մանուիլին շնորհեց պատրիկի պատվաստիճանը և հայոց զորավարի պաշտոնը[66]։ Վերջինիս նա ասաց. «Պետք չէր, որ դու մասնակցեիր իմ դեմ ծագած պատերազմին, դառնայիր կայսեր և Պրոկոպիայի խորհրդականը»։ Իսկ նա աստանց քաշվելու պատասխանեց. «Բայց դու էլ չպետք է ձեռք բարձրացնեիր [քո] բարերարի, դեռ ավելին՝ քո որդիակցի[67] վրա»։ [Լևոնը] այդ խոսքերի վրա լռեց, այրի առաքինությունից ամաչած։ /13/ Լսելով, որ բուլղարների առաջնորդը[68] նախկին հաղթանակից ամբարտավանացած դարձյալ է ամայացնում հռոմեացիների երկիրը՝ կտրտում ծառերը, ավարառում ագարակները, գերեվարում բազում մարդկանց, քշում տանում բազմաթիվ անասուններ, հրկիզում տներ, մի խոսքով, որ նա դարձել է անտանելի, [Լևոնը] մտածեց նախ նրա մոտ դեսպանություն ուղարկել և հիշեցնել խաղաղության մասին, բայց երբ չհաջողվեց նրան համոզել, [քաղաքի] խախտված պարիսպները իր միջոցներով վերանորոգելով, անհապաղ շտապեց [այդ շրջանների] օգնության։ Լինելով Մեսեմբրիա քաղաքում[69], նա դիմեց հետևյալ ռազմավարական խորամանկության։ Բազում օրեր իրեն և բանակը խրամատավորելով մի վայրում, ամեն օր նստում էր ճաշակելու սեփական երկրից ստացված մթերքները։ [Հռոմայեցիները] ոչ միայն իրենց չէին զրկում սովորական ուտեստից, այլև արտակարգ ամեն ինչից։ Լսելով, որ մոտակայքում գտնվող, իր դեմ զենք բարձրացրած բուլղարները պարենի պակաս են զգում, [Լևոնը] գիշերով հանդուգն, դժվարությունները հաղթահարելու փորձ արեց։ Նա մեծաթիվ զինվորներով իր ճամբարած վայրից դուրս եկավ և իր գաղտնիքը մի հոգու հայտնելով, գնաց մի լեռան վրա դարանակալելու, նախօրոք տալով մարտ սկսելու ազդանշանը և նշելով ժամը։ Երբ օրը բացվեց, և զորավարը տեսավ, որ կայսրը

*բացակայում է, բոլորը կատարվածից անտեղյակ, վճռեցին, թե կայսրը հաստատ փախուստի է դիմել։ Դրա վրա հակառակորդները սրտապընդված, ամենևին չէին կարողանում հանգիստ իրենց տեղերը մնալ, նրանք ոտքի ելան, ցանկանալով [հռոմայեցիների] զինվորների հետ ձեռնամարտի բռնվել։ Երբ վրա հասավ գիշերը, Լևոնը անակնկալ իջավ դարանից և հարձակվեց վատ բան չսպասող թշնամիների վրա։ Նրանք, կայսեր փախուստին ապավինած, զենքերը մի կողմ էին գցել և քուն մտել։ Ազդանշանն առնելով, թշնամիների վրա ամեն կողմից խուժած հռոմայեցիները սոսկալի ավեր արեցին, ջարդ տվեցին, նրանց ճամբարի բոլոր զինվորները գլխովին կոտորվեցին և, ինչպես ասում են, չփրկվեց անգամ պյուրփորոս[70]։ Լևոնը գրոհելով, գերի վերցրեց ամեն տարիքի տեր մարդկանց, նա նրանց երեխաներին քարերին ու գետնին զարկելով[71], իր ճամբարը շտապեց։ Այդ լեռը այդ օրվանից «Լևոնի լեռ» կոչվեց, և այնտեղից բուլղարները մատնացույց անելով այն, իրենց գլուխն են շարժում, այն ժամանակ իրենց պատահած փորձանքը ամենևին չեն մոռանում[72]։*

*14. Այս հաջողությունը Լևոնին դարձրեց ավելի հանդուգն ու անպատկառ, այդ գծերը դումարվեցին իր բնածին դաժանությանը։ Նրա համար մեծ ու փոքր զանցանքի միջև տարբերություն գոյություն չուներ, նա բոլոր հանցագործների համար միևնույն վճիռն էր արձակում՝ կտրել նրա մարմնի որևէ կենսական անդամը և այն կախել՝ ի տես բոլորի։ Բոլորի հետ այդպես վարվելով, նա մարդկանց մեջ իր նկատմամբ ատելություն ու սարսափելի թշնամություն առաջացրեց։ Ում վրա որ գործադրեց սեփական սանձարձակ գաղանությունը, դա հարկավ արեց ոչ թե որպես պատիժ՝ բարքերի մեղմացմանն ուղղված։ Անգթորեն խեղելով մարդկանց, որպես հատուցում նրանց թշնամությունը վաստակեց և ոչ բարեկամությունը։*

*15. Երբ նա նման գործերով էր զբաղված, հիշեց Ֆիլոմելիոնի վանքի վանականին և որոշեց վերջինիս արած կանխագուշակության համար ինչ-որ բանով վարձահատույց լինել, խնդրել նրան պետության հաղթանակների համար [աղոթել]։ Սակայն նա արդեն վախճանվել էր, բայց մի նենգ ու կախարդող դև, բարեպաշտի տեսք ստանալով, ծերունու տանը բնավորվեց։ Ես չեմ կարող նրան մարդ կոչել, քանզի ամեն ինչ տակնուվրա արեց, խառնեց իրար և, ինչպես հնում իժը, կատարելապես ցնորված թշվառական Լևոնի ականջներին թույն թափեց։ Նա Սմբատ[73] էր կոչվում և, կայսերական սուրհանդակին անչափ պախարակելով, կայսեր հասցեին բացահայտ չարախոսում էր, աղաչում*

սուրհանդակին առանց քաշվելու նրան ասի ճշմարտությունն ամբողջությամբ, թե «Քանի դու հանդուրժում ես ինձ՝ մոլեկան կնոջ և խռովչի[71] (Նա իր սանձարձակ լեզվով այդպես էր անվանում թագավորած Իրենեին և սուրբ Տարասիոսին) պաշտած կուռքերը (ո՜վ նրա այդ անիծյալ լեզուն), երկար չես թագավորի»։ Նա կուռք էր անվանում սուրբ պատկերները։ Լևոնը, դևերի այդ իսկական կուռքը, տգիտության ստրուկը, ստվերից ավելի անձայն արարածը, պարտավոր էր արհամարհել նման խոսքերը, հակառակ դեպքում հրապարակայնորեն հանդես գար, եկեղեցու կառքը վարողին հստակ տեղեկացներ և հսկայական նշանակություն ունեցող այդ հարցի վերաբերյալ [եկեղեցական] ժողով գումարեր և ոչ թե դիմեր անողջախոհ մարդկանց, այն էլ այնպիսի մարդկանց, որոնք ոչ թե իր շահերի մասին են մտածում (վա՜յ այն բարեկամության, որի մեջ նենգություն կա), այլ հոգ են տանում ու ամեն ինչ կարգավորում, ելնելով սեփական շահերից։ Ահա Լևոնը կապվում է իր սիրելի Կասսիտերասի հետ և ամեն ինչի մասին նրան տեղյակ պահում։ Կասսիտերասն ուզելով չարիքը չարիքով բուժել, կատաղությունը՝ կատաղությամբ, է՛լ ավելի գրգռեց այն։ Նա տեղեկացնում է կայսեր, թե Մավրիանոսի էմբոլոնի[72] մոտ ապրում է սրբապատկերների վերաբերյալ նույն մտքերով ցնորված մեկը, և վստահեցնում, թե այդ մարդը գերհրեշտակ է, անվերջ արտասովոր բաներ է բարբաջում։ «Հենց դրան պետք է դիմել, ով կայսր, այդպիսի գաղտնիքների գիտուն մարդուն։ Եթե նրա ասածը դու կատարես, սխալած չես լինի»։ /16/ Ահա այդ խորհուրդը տալով, [Կասսիտերասը] որոշեց շտապել վանականի մոտ։ Խոսքախեղդ անելով նրան, ավելացրեց, թե «եկող գիշեր ես քո մոտ եմ բերելու ծպտված կայսեր, որն ուզում է հավատքի և հույժ կարևոր այլ հարցերի վերաբերյալ խորհուրդ հարցնել։ Դու վստահեցրու նրան, թե յոթանասուներկու տարի կթագավորի, նրան տասներեքերորդ առաքյալ կոչիր, ասա, որ ինքը ականատես կլինի գահի վրա բազմած [իր] որդիների որդիներին, եթե նա հավատքի հարցում ինչ-որ չափով համերաշխ լինի Լևոն Իսավրացուն։ Արդ, եթե նա տեղի չտա և մերժի, երդմամբ առ աստված սպառնացիր, թե աստված իրեն ոտով գլխով կկործանի, կորստյան կմատնի, վի՜ն ու գե՜ենր կգահավիժի»։ Ահա չարանենգորեն ու չարամտորեն սովորեցնելով դա, որոշված ժամանակ նա կայսեր բերում է հիշյալ վայրը։ Երբ կայսրը Թեոդոտոսի հետ մտան ներս, և սկսեցին գաղտնի բաների շուրջ խոսակցել, վանականն ասաց. «Վայել չէ՛ քեզ, ո՜վ կայսր, հանելով ծիրանին հասարակ մարդու կերպարանք ստանալ և շատերի խոսքի առարկա դառնալ»։ [Լե-

վոնը] դրա ասածի վրա քար կտրեց, ապշահար եղավ, նա ենթադրեց, թե աստվածային կանխագիտությամբ է կատարվել դա և, ինչպես ստվերը արձանի շուրջ, այդպես էր պտտվում այդ մարդու շուրջ։ Նրա ուշքն ու միտքը վանականի խոսքերն էին, որոնցից կախվեց, ինչպես կավե աման։ Այդ բոլորի մասին ասվում էր մեզանից առաջ չափածո բանաստեղծության ձևով։

17. Այսպիսով, ահա նա իսկույն հրամայում է սրբապատկերների վերացումը[76], իսկ պատրիարքից (նա Նիկեփորն էր)[77] պահանջում տալ իր գրավոր համաձայնությունը, հակառակ դեպքում սպառնում էր նրան աքսոր ուղարկել։ Պատրիարքը, որ արդեն գիտեր բռնակալի՝ սրբությունների նկատմամբ տածած խորշանքը, վճռեց, որ լավ է աքսոր գնալ, քան թե օժանդակել նման մարդուն և, վճռի համաձայն էլ, աքսորվեց։ Պատրիարքական աթոռը, որպես մրցանակ, ստացավ Թեոդոտոս Կասսիտերասը[78]՝ սուրբ Զատկի օրը։ Բայց անհրաժեշտ է հիշատակել նաև փաստերը։ Նիկեփորը, որպես պատրիարք, [Լևոնից] պահանջել էր սուրբ դավանանքի խոստովանությունը՝ արտասանել սուրբ հանգանակը[79]։ Լևոնն ասաց, թե այժմ այդ բանը չի անի, այլ կհետաձգի մինչև վերջնականապես տիրանա թագավորությանը։ Հետաձգումը վկայությունն է այն բանի, որ նրա մեջ ի ծնե էր առկա հերձվածի[80] մոլեգնությունը։ /18/ Ասվածից ավելի հստակ փաստ էլ կա։ Երբ նա առաջին անգամ կայսր հռչակվեց, պետք է գլխին թագ կապեր, նրա այդ գարշելի գլխի վրա թագը պետք է քահանայապետը դներ[81], որը, հպելով նրա գլխին, մատների տակ ոչ թե փափուկ մազեր զգաց, ինչպես բնական էր, այլ՝ փշեր ու տատասկ, իրականում հենց այդպես էր, նրա ձեռքը ցավագին ծակծկվեց կարծես սլաքներից։ Դա անցյալում տեղի ունեցավ։ Այսպիսով, ահա պատրիարքը, վճռի համաձայն աթոռազուրկ լինելով, աքսոր ուղարկվեց։ Պատմում են, որ երբ նա բեռնատար նավի վրա նավարկում էր, հեռու մի ծովափնյա վայրում նկատեց երանելի Թեոփանեսին[82], որը խնկարկությամբ ու ջահերով ողջունում էր իրեն, բարի խոստովանությամբ ճանապարհում։ Նիկեփորը, բնական է, ըստ արժանվույն փոխհատույց եղավ նրան՝ աղոթեց աստծուն նրա համար, մեկնելով ձեռքերը կարծես ողջագուրեց, հեռվից տալով վերջին համբույրը։ Ուղեկցողներից մեկի հարցին՝ ո՞ւմ է նա այդպես սիրով ու կաթոգին փոխհատույց լինում, նա մարգարեաբար ասաց. «Թեոփանես Խոստովանողին[83], Ագրոսի վանքի վանահոր»։ Այդ բանը տեղի ունեցավ շատ չանցած[84]։ Նիկեփորը նրան այլևս չտեսավ, իսկ Թեո-

փանեսն էլ կրեց խոստովանողի պսակը։ Պատրիարքի մասին ահա այսքան։

19. Լևոնն իր թագավորությունն սկսեց եկեղեցու գործերի նման տնօրինությամբ, փառամոլության ախտով ծայրաստիճան վարակված նա լծվեց հասարակաց գործերին, ինչպես իշամեղուն՝ իր հետ ամեն տեղ տանելով խայթը։ Նա անձամբ մարզում էր բանակը, Թրակիայի և Մակեդոնիայի բազմաթիվ շրջաններում անձամբ ի հիմանց կառուցում քաղաքներ, շրջագայում ամեն տեղ սարսափ ու երկյուղ ազդելու համար անգամ թշնամիներին։ Պատմում են, որ իր՝ նման գործունեության համար նույնիսկ սուրբ Նիկեփորը մի առիթով, արդեն նրա մահից հետո, ասել է, թե քաղաքը[85] թեև կորցրեց մի անօրեն մարդու, բայց և հասարակաց հոգացողի։ Նա ուժգին հարված հասցրեց իշխաններին ու կառավարիչներին, ոչ միայն քաղաքական, այլև ռազմական։ Ինքը լինելով անարծաթասեր, առաջ էր քաշում ծայրաստիճան անկաշառ մարդկանց, նկատի առնում նրանց արժանիքները և ոչ ունեցած հարստությունը[86]։ Նա ուզում էր հռչակ ստանալ նաև որպես արդարության ջատագով, բայց այդ մեկը չստացվեց։ Ընդհակառակը, նա արդարության դեմ էր գործում և Լավսիակոսում[87] նստած՝ բազմաթիվ կամայական վճիռներ էր արձակում։ Մի անգամ նրան բողոքով մեկը դիմեց, թե կնոջս են առևանգել, երևելի մարդկանցից մեկը փախցրել է իր կնոջը։ Նա ասաց. «Թեև բազմիցս եմ դիմել հյուպարքոսին[88], նա հետս խոսել անգամ հարմար չի գտնում»։ Երբ հյուպարքոսն անհապաղ ներկայացավ կայսեր և հաստատեց մարդու բողոքի ճշմարտացի լինելը, Լևոնը նրան պատասխանատվության ենթարկեց՝ պաշտոնանկ արեց և անչափ նեղեց, իսկ շնացողին հրամայեց դատի տալ։

Այդպիսի միջոցառումներով նա հաճոյանում էր ժողովրդին, այսպես ասած, նրա համակրանքը շահում։ /20/ Ինչ վերաբերում է հավատքի հարցերին, ապա նա այստեղ սոսկալի մոլեգնում էր, այն աստիճան, որ նրա համար վատ էր աստծո անունը հիշատակելն անգամ։ Երբ բուլղար կոչվող հոների հետ երդումներով հաստատված երեսնամյա հաշտություն էր կնքում[89], խաղաղության մասին՝ դաշնադրություն, պետք է այդ բանը երդումներով հաստատեր ու վավերացներ, սակայն որպես վկա չէր կոչում մեզանում ընդունվածներին՝ աստծուն, երկնային ուժերին կամ Քրիստոս աստծո մարմին տվող մորը, այլ կարծես բարեպաշտությունից հեռու բարբարոս հոգու տեր, վկայակոչում էր շներին, այն կենդանիներին[90], որոնց անօրեն ժողովուրդները զոհ են մատուցում։ Նա ահա զոհ էր մատուցում և չէր խորշում։ Եվ այն ժամա-



2—1069

նակ. երբ հնարավոր էր ապագայում մեր կողմից նրանց մեջ քրիստոնյաների հավատքը տարածել, ինքը հավատաց նրանց կրոնին։ Նա չէր քաշվում բացահայտ ամբարիշտ վարվելուց։ Նա, Տիրոջ խոսքերով ասած, հավատքի մարգարիտները խոզերի առաջ էր դցում[91], նման խոսքեր առոգանում խորշանքի արժանի այդ ամբարիշտ այրը։ Հավիտյան որդի ու հրո[92] և ոչ այլ բանի ճարակ լինելու արժանի այդ մարդը, որ վարում էր հռոմայեցիների թագավորությունն ու պետությունը, համայն հավատացյալ ու անհավատ ժողովուրդների ներկայության չէր ամաչում մասնակից դառնալ [բուլղարների] խորհուրդներին, կատարել դրանք։ Ճշմարիտ դավանանքը դավանողներին նա դառն ու դաժան խեղման է ենթարկում։ Մյուս կողմից նա նույն նպատակների համար իր համախոհներից[93] բաղկացած խմբեր ու կազմակերպություններ էր ստեղծում ու սարքում, նրանց պահում իր մոտ և նրանց գործունեությունից հսկայական օգուտ քաղում։ Նրանց թվում էր և Հովհաննես Քեռականը[94], ամեն մի շնորհքից զուրկ մեկը։ Ահա Լևոնը, սրանց հրամայելով նախագծել հավատքին վերաբերող պիղծ մի օրենք, սկսեց սրբապատկերների հալածանքները։ Նրան կարծես հրահրեց ու բորբոքեց, նրան երկինք հասցնելով (Լևոնը թեթևամիտ էր ու տխմար) հոգևոր պետը, կայսերական արքունիքի կղերի առաջնորդը։ Նա վաղուց էր Լևոնին թակարդ լարել, ջանացել, ինչպես Պրոտևսին[95], ծուղակը գցել, նրան իր կամքը թելադրել։ Դեռ որոշ ժամանակ եկեղեցիներում բարձրաձայն կարդացվում էր այն սուրբ քարոզը, թե. «Արդ ո՞ւմ նմանեցուցէք զՏէր, եւ որո՞ւմ նմանութեան նմանեցուցէք զնա։ Միթէ պատկե՞ր կոփեաց զնա հիւսն, կամ ոսկերի՞չ ձուլեաց ոսկի եւ պատեաց զնա ոսկով, ի նմանութիւն պատկերի կերպարանեաց զնա»[96]։ Այդ բանը բարձրաձայն կարդացվում էր Փարոսի տաճարում։ [Պատրիարքը] կամաց մոտենալով կայսեր, ասաց. «Ակա՛նջ դիր, ո՛վ կայսր. սուրբ ասույթին և ամենևին մի զղջա սկսածդ գործի համար։ Մի կողմ գցիր սուրբ համարվող պատկերները և հետևիր դրանք մերժողների ճշմարիտ հավատքին»։ Ահա, ինչպես ասացի, այդ խոսքից անտեղի հրահրված, իր ամբողջ թշվառ հոգին բորբոքեց և իր մոլեգնությունը բարեպաշտների վրա թափեց, իսկ ամբարիշտների վրա գրգռեց աստծո արդար բարկությունը։ Լևոնը հրաման արձակեց և բոլոր աքսորական եպիսկոպոսներին իր կողմը քաշելու նպատակով, հետ կանչեց, իսկ նրանց, ովքեր հակառակ իր գործադրած ջանքերին՝ սեփական կամքին հլու-հնազանդ դարձնելու, տեղի չէին տալիս, թույլ չէր տալիս հանդիպելու պատրիարքին, կարգալույծ էր հայտարարում և նահատակում։

21. Իսկ աստված, որ հախուռն չէ, այլ համբերող, փայլեցնում էր սուրը, բայց առայժմ այն գործի չէր դնում։ Նրանց գլխին մեկ մահտարաժամ էր թափվում, երաշտ ու սաստիկ տապ էր լինում, մեկ՝ երկրաշարժեր ու իրարանցումներ, մեկ օդում կրակ էր թափվում, մյուս կողմից եղբայրասպան ապստամբություններ էին տեղի ունենում, մի խոսքով ամենասարսափելի փորձանքները։ Բայց՝ այդ բոլորը չկարողացան սանձել խոզի նման դեպի անդունդը դիմող նրա հոգին։ Դրա համար ահա աստված ուղարկում է մահացու հարված հասցնող սուրը, որպեսզի սեպը սեպով հանվի, և չարը չարով բուժվի։ Այդ սրի դերը պիտի Միքայելը խաղար, որն այն ժամանակ ֆեդերատների [կոմեսի] պաշտոնն ուներ[97]։ Նա թեև մերկացվեց պետական դավաճանության մեջ, բայց, բաղում ջանք ու ճիգ գործադրելով, կարողացավ պրծնել։ Բայց Լևոնի դեմ մշտապես ատամ ունենալով, շուտով պետք է նրան զոհաբերության կենդանի դարձներ։ Համենայն դեպս Միքայելը նրա հասցեին շաղակրատ ու հանդուգն լեզու էր բանեցնում, չէր դադարում հրապարակայնորեն պարսավել նրա գազանաբարո խառնվածքը, մանավանդ, որ միասին էին մեծացել, բացի այդ վստահ էր իր անձնական քաջության։ Իսկ Լևոնը (ոչ ոք չի հանդուրժի բոլորի վրա իշխելով հանդերձ, պարտություն կրի մի հիմարից, եթե նա հիրավի ոչ միայն մարդկանց վրա է թագավոր, այլև կրքերի), Միքայելի ասածները լրտեսելու համար, ականջադիր[98] մարդիկ կցեց, որպեսզի նրա ասածները կարծես լաստանավի միջոցով իրեն հասնեն։ Լևոնը երկյուղով էր նայում ապագայի վրա, քանզի իր մտքից ամենևին չէր հանել Ֆիլոմելիոնի վանականի կանխագուշակությունները, համաձայն որոնց Լևոնից հետո Միքայելն է թագավորելու։ Միքայելին լրտեսողներից մեկը Հովհաննես Հեքսաբուլիոսն էր, մարդու բնավորությունն ու բնությունը ճանաչելու գործում շանորդի մեկը։ Այն պատճառով, որ երկար ժամանակ Միքայելը վերջ չէր տալիս իր բացբերանության, ոչ էլ ծանակելուն, այլ, ինչպես հորդացած գետ, անտեղի ափն էր թափում ամբողջ տիղմը, Լևոնին սպառնում կատարյալ կործանում։ Մի խոսքով նրա դեմ նա թշնամություն էր տածում։ Այդ բոլորը հասցնում էին կայսեր, որով Միքայելին ձերբակալում են։ Քննիչները հաստատում են նրա դեմ ներկայացված մեղադրանքները, և նա ամբաստանվում է ապստամբության նյութելու մեջ։ Քրիստոսի՝ աստծո Բանի աշխարհ գալու՝ մարդեղացման [տոնի] նախօրեն էր։ Այն պատճառով, որ հարցը ասեկրետներում[99] քննող կայսեր համար Միքայելի դավաճանական գործունեությունը միանգամայն բացահայտվեց և Միքայելի համար այլևս հնա-

*րավոր չէր խուսափել իր խիզախած քայլի համար կրելիք պատասխանատվությունից, նա մահվան դատապարտվեց, այն էլ ոչ սովորական մահապատժի։ Այն պետք է ի կատար ածվեր կայսեր ներկայության և նրա ձեռքով, կամ որովհետև կայսրը գտնվում էր ցասման ազդեցության տակ, կամ էլ նա ուղում էր հագուրդ տալ իր դաժանությանը։ Միքայելը պետք է կայսերական բաղանիքի հնոցի կրակի գոհը դառնար։ Վճիռն այդպիսին էր, և Լևոնը առաջինը գնաց եղերերգության ականատես լինելու։ Բայց [Լևոնի] կինը (սա Արշավիրի[100] դուստր Թեոդոսիան էր) դեպքին ներկա լինելով, կարծես ինչ-որ կախարդանքից բորբոքված, եռանդագին ամեն կերպ համոզում էր [Լևոնին] այդ մտքից հրաժարվի, ջանում նրան զսպել, անվանելով ամբարիշտ ու աստվածամարտ, որ [սբ. Ծննդյան] օրից անգամ չի խրտչում, երբ պետք է հաղորդություն ստանա։ Լևոնը, վախենալով աստծո սարսափելի սլատժից, երկյուղելով գրգռել նրա ցասումը, այն ժամանակ իրեն համար ճակատագրական քայլի դիմեց և Միքայելին փրկություն շնորհեց։ Նա Միքայելի պահպանությունը հանձնարարեց պապիասին[101], թեև կապանքների բանալին պահանջեց իրեն տանը։ Լևոնը սպառնաց և կնոջ՝ ասելով. «Դու, ով կին, շուտով կարժանանաս տեսնելու նաև իմ երեխաների գլխին գալիքին, թեև դու ինձ այսօր փրկեցիր այս մեղսագործությունից»։ Այդ խոսքերով նա կանխագուշակեց, կանխասաց ապագան։*

*22. Լևոնի հոգում մի վախ էր բույն դրել, որի պատճառը ինչ-որ գուշակություն էր այն մասին, թե նա այս ամբողջ մեծ երջանկությունն ու թագավորությունը կորցնելու է Քրիստոսի՝ մեր աստծո մարդեղության օրը։ Գուշակությունը սիբիլլական[102] էր, գրված կայսերական գրադարանի գրքերից մեկում, որը բովանդակում էր ոչ միայն սովորական գուշակություններ, այլ ապագա կայսրերի գունավոր դեմքեր ու պատկերներ։ Այնտեղ նկարված էր առյուծ գազանը[103], որի մեջքից մինչև փորը «խ»[104] տառն էր գծած։ Նրա հետևում նկարված էր մի այր, որը հարձակվում էր նրա վրա և նիզակը բարձրացրած գազանին «խ» տառի մեջտեղում մահացու հարված հասցնում։ Այդ [նկարի] իմաստը պարզաբանելու համար նա ցույց էր տվել շատերին, բայց միայն քվեստորի պաշտոնը վարողը մեկնեց իմաստը, թե Լևոն անունով ինչ-որ կայսր Քրիստոսի Ծննդյան տոնի օրը պիտի չարաչար սպանվի։*

*23. Նրան սարսափով էր պատում նաև մոր տեսիլքը, որին թեև նա այն ժամանակ ոչ մի նշանակություն չտվեց, բայց ներկա դեպքում այն ծանր քարի պես նստել էր նրա հոգու վրա։ Մոր տեսիլքում երևացել էր, որ Վլախեռնայի սուրբ տաճարում մշտապես հաճախում էր*

բազմաթիվ սպիտակազգեստ մարդկանցով շրջապատված մի աղջիկ, իսկ տաճարը լի էր արյամբ։ Այդ աղջիկը ներկաներից մեկին ասաց, որ նա մի կաթսա արյամբ լցնի և տա Լևոնի մոր՝ խմելու։ Մայրը, պատճառաբանելով իր բազում տարիների այրիությունը, ասաց, թե իրեն չի կարելի միս և ընդհանրապես մսեղեն ուտել, դրա համար ինքը կարիքը չունի և այդ կաթսայի։ Աղջիկը զայրացած պատասխանեց. «Սակայն քո որդին ինչպե՞ս ինձ անվերջ արյունլվա է անում, դրանով էլ իմ որդուն՝ աստծուն է զայրացնում»[105]։ Լևոնի մայրն ահա վառ գույներով պատմելով իր տեսիլքը, այն ժամանակվանից սկսած շատ էր պաղատում որդուն՝ պատկերակեզների աղանդից ձեռք քաշի։

24. Բայց գիշերային մի տեսիլք էլ էր նրան ոչ պակաս վախով պատել։ Անցյալում վախճանված երանելի Տարասիոս պատրիարքը երազում տեսել էր, որ Միքայել անունով մեկը [Լևոնի] վրա էր հարձակվել՝ մահացու հարված հասցնելու նպատակով և հրել նրան ժայռից անդունդը։ Բոլորի վրա գումարած նաև Ֆիլոմելիոն վանքի վանահոր [կանխատեսությունը], ինչպես և հանդերձների շտապ փոխելը[106]։ Ահա այդ բոլորը միասին սարսափեցնում ու դողի մեջ էին գցում նրան, խռովում հոգին, չէին թողնում նրան գիշերը քնել։ Ուշ գիշերը նա ավելի իմաստուն ու արքայավայել դատելով, ջարդեց դեպի պապիասը տանող դռները (նա շատ հզոր բազուկներ ուներ) և ուղղվեց դեպի նա։ Երբ մտավ [նրա] սենյակը, այնպիսի մի բանի ականատես եղավ, որ մնաց ապշահար։ Նա տեսավ, որ դատապարտյալը պապիասի մահճակալին առոք-փառոք պառկած է, իսկ պապիասը՝ գետնի վրա։ Լևոնը ձեռքերը երկարեց դեպի Միքայելը և նրա գլուխը, ցանկանալով իմանալ այն, ինչ դժբախտության ժամանակ է կատարվում, [մահապարտը] անհոգ ու քաղցր քո՞ւն է մտած, թե տագնապալի ու դժոխային։ Երբ համոզվեց, որ նա անուշ, ամեն մի մտահոգությունից զերծ քուն է մտած (անգամ նրան կպչելուց նա չզարթնեց), այդ անակնկալ տեսարանի առջև է՛լ ավելի զայրացավ։ Նա հեռացավ՝ չարաչար պատժելու մտադրությամբ ոչ միայն [Միքայելին], այլև պապիասին։ Դա չվրիպեց պապիասի մերձավորների աչքից. Միքայելի ժամապահներից մեկը, կարմիր կոշիկներից ճանաչելով [Լևոնին], ամեն ինչ պատմեց նրանց, որոնք անչափ տագնապած, անհաղթահարելի սարսափով համակված, փրկարար մի ելքի մասին էին մտածում։

25. Երբ սկսեց լուսանալ, Միքայելն ասաց, թե ուզում է Թեոկտիստոսի միջոցով (նրան հետագայում նա շնորհեց կանիկլիոսի պաշտոնը)[107] աստվածասեր[108] ոմանց իր հոգին ծանրաբեռնող մեղքերը խոս-

տոմանել։ Կայսրը նման բաներ թույլ տալիս էր ու արտոնում։ Միքայելն ասաց Թեոկտիստոսին. «Իմ բոլոր դավակիցներին սպանացիր, եթե նրանք որևէ վճռական քայլի չդիմեն՝ ինձ մահից ու բանտից փրկելու համար, իրենց մասին կայսեր տեղյակ կպահեմ»։ Դավակիցները, լսելով այդ բանը, հետևյալ ծրագիրն են նյութում։ Այն ժամանակվա սովորության համաձայն սրբազան կղերը հիմիկվա նման պալատի ներսում չէր օթևանում (այդ սովորությունը սկիզբ առավ հենց այդ ժամանակ), այլ սեփական բնակարաններում։ Տվյալ դեպքում, ժամվա երրորդ պահին, երբ կղերականները հավաքվեցին [Մեծ պալատի] Էլեֆանտինե կոչվող [դարպասի] առջև Տեր աստծուն առավոտյան օրհնանքն ուղղելու, դավադիրները, թևի տակ դաշույններ թաքցրած, խառնվեցին նրանց և, օգտվելով մթությունից, երբ հնարավոր չէր տարբերել հոգևորականի հանդերձանքը սովորականից, հանգիստ ներս սողոսկեցին և, մի մութ տեղում դարան մտնելով, ազդանշանի էին սպասում։ Երբ օրհներգը վերջանալու վրա էր, կայսրը երգողներին մոտիկ էր գտնվում։ Նա հաճախ նախերգիչի դերում էր հանդես գալիս, քանզի սիրում էր «Նրանք ըղձմսմբ անարգեցին արքային ամենեցուն» [օրհներգը]։ (Նա գեղեցիկ ձայն ուներ և իր ժամանակակիցների մեջ աչքի էր ընկնում իր քաղցրաձայնությամբ)։ Հենց այդ պահին դավադիրները հանկարծակի վրան խուժեցին, բայց նրանց առաջին հարձակումը հաջողություն չունեցավ, քանզի սխալմամբ Լևոնին շփոթեցին հոգևորականների գլխավորի հետ, որը և՛ դեմքով, և՛ կերպարանքով, ինչպես և նման գլխանոցով, մի քիչ նման էր Լևոնին։ Այն պատճառով, որ եղանակը ցուրտ էր ու խստաշունչ, երկուսն էլ նույնանման թիկնոց էին հագած, գլխին՝ շատ վառ գույնի գլխարկ։ Հոգևորականների գլխավորը խուսափեց վտանգից (նա իսկույն հանեց գլխարկը և, ցույց տալով ճաղատ գլուխը, փրկվեց), իսկ Լևոնը, թեև ապաստանեց [տաճարի] սրբության սրբոցը, չկարողացավ պրծնել և փորձեց պաշտպանվել։ Ձեռք գցելով բուրվառի շղթան կամ, ըստ ոմանց՝ սուրբ խաչը, ջանում էր դիմադրել իր վրա խուժողներին։ Սակայն հարձակվողները շատ-շատ էին, իր վրա խուժեցին ու հարվածեցին բոլորը միասին, իսկ նա պաշտպանվում էր և փայտե խաչով հետ մղում դաշույնների զարկերը։ Բայց, ինչպես գազանը, ամեն կողմից բախվելով, ուժասպառ եղավ։ Ապրելու հույսը կտրած, նա երդմնեցուցանող պաղատագին խոսքերով՝ հանուն տաճարում բնակություն հաստատած [աստվածային] զորության, դիմեց աժդահա ու հսկա մեկին, որ պատրաստվում էր հարված իջեցնել։ Նա Կրամբոնիտների ընտանիքից էր։ Սակայն նա, ասելով «երդումների

ժամանակը չէ, այլ սպանության, ի վերա ամենայնի երդվելով սուրբ զորության անունով, այնքան սարսափելի և ուժգին մի հարված իջեցրեց նրա թևին, որ անրակից շարաշար այն պոկվեց, խաչի թևերը ջարդուփշուր արեց ու չորս կողմը ցիրուցան։ Նա միաժամանակ կտրեց նրա գլուխը, մարմինը թողնելով կտրած ծառի նման[109]։

26. Լևոնն ահա այսպիսի վախճան ունեցավ դեկտեմբեր ամսին (գիշերվա ժամը տասն էր), թագավորելով յոթ տարի և հինգ ամիս։ Նա դաժան էր, դեռ ավելին, նաև ամբարիշտ՝ իր նախորդներից շատ ավելի։ Նրա այդ գծերը մթագնեցին հասարակաց գործերին նրա ցուցաբերած հոգատարությունը, բիծ դրեցին նրա ֆիզիկական ուժի ու քաջության վրա։ Պատմում են, որ երկնքից իսկույն ձայն լսվեց՝ նրա տապալումը շատերին ավետող։ Նավաստիներից ոմանք, լսելով այն, նշեցին այդ ձայնը լսելու ժամանակն ու գիշերը և հետագայում քննելով տեսան, որ դա ճշմարիտ էր։

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## ՄԻՔԱՅԵԼ ԱՄՈՐԱՑՈՒ՝ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այսպիսով, ինչպես ասվեց նախորդ գրքում, Միքայելի մարդիկ սպանեցին Լևոնին. նրա դիակը անգթաբար ու անխնա նրանք քարշ տվեցին և Սկյուլայի[2] միջոցով ձիարշավարանը տարան։ Նրանք արդեն ոչնչից չէին վախենում, քանզի կայսերական պալատում վխտում էին դավաճաններն ու դավադիրները։ Նրանք պալատից դուրս հանեցին նաև [Լևոնի] կնոջ իրենց չորս որդիներով հանդերձ՝ Սմբատին, որ թագադրվելով Կոստանդին էր կոչվել, Վասիլին, Գրիգորին և Թեոդոսիոսին։ Նավակ նստեցնելով նրանց տարան Պրոտե կղզին, որտեղ էլ ներքինացրին։ Թեոդոսիոսի կյանքի համար այդ գործողությունը ճակատագրական եղավ։ Նա մահացավ և թաղվեց հոր գերեզմանում։

2. Միքայելը, դեռ շղթաները ոտքերին (կապանքների բանալին ապահովության համար Լևոնն իր մոտ էր պահում, բայց այդ միջոցին կորել էր), պապիաս[3] հսկողության տակից հանվելով, նստեց կայսերական գահի վրա և, տվյալ պահին պալատում գտնվողների կողմից կայսր հռչակվելով, երկրպագության արժանացավ։ Կեսօրին արդեն համբավը տարածվել էր ամենուր։ Միքայելի կապանքները մուրճի օգնությամբ հազիվ էին ջարդել և նա, դեռ ձեռքերը չլվացած, առանց աստ-

ծո վախը մտաբերելու, անհրաժեշտ և ոչ մի բան չարած, աստծո մեծ տաճարը եկավ, ցանկանալով թագադրվել ձեռամբ պատրիարքի և համայն դեմոսի կողմից կայսր հռչակվել, քանզի իր միակ պաշտպաններն ու սատարը ոճրին մասնակից եղողներն էին, իր դավակիցները։ Մարդ կապչեր երկուսի էլ վստահության վրա։ Այն ժամանակ [Լևոնի] օգնության չհասավ այդ շողոքորթներից ու բարեկամներից և ոչ մեկը, բոլորը սողունների պես ծակ ու ծուկ էին մտել, իսկ Միքայելը ոչ ոքից չէր վախենում, նա արյունռուշտ էր և այդ գծերի օգնությամբ նա կարծես հաղթանակած էր վերադառնում՝ ոչ որպես դահիճ (սպանությունը հարկավ կատարվեց ամեն ինչ տնօրինող Նախախնամությամբ)[4], և անցնում Պլատիայով[5]։ Արդ, ամաչել է պետք ու ողբալ, ոչ այնքան այն բանի համար, որ նա [ճիշտ է] արդար կերպով արյուն հեղեց (թեև դա էլ ոչ մի գովելի բան չէ), այլ այն բանի համար, որ նա արյունը հեղեց աստվածային ու սուրբ տեղում, որտեղ ամեն օր մեր մեղքերի քավության համար հեղվում է Տիրոջ [արյունը]՝, և ոչ այլ, այդ բանին պատշաճ տեղում։

3. Արդ, սկսենք պատմել Միքայելի ծննդավայրի, նրա կենսագրության մասին։ Նա ծնվել էր Վերին Փռյուգիայի Ամորիոն[6] կոչվող քաղաքում, որտեղ մշտապես ապրում են հրեաներ և ինչ-որ աթինգանների[7] բազմություն։ Նրանց՝ միմյանց հետ ունեցած առնչությունից ու մշտական աղերսակցությունից բուսնում է նորատիպ, նորազգի գաղափարներով մի հերձված, որին հաղորդակից էր և [Միքայելը]՝ այդ բանը ծնողներից ժառանգելով։ Այդ հերձվածը, թեև մկրտությունն ընդունում է որպես փրկիչ խորհուրդ, հերձվածողները խոստովանում են այն, մկրտվել ցանկացողներին թույլատրում այդ բանն անել, բոլոր մնացած հարցերում հետևում[8] են մովսիսական օրենքին՝ բացառյալ թլփատությունը։ Այդ հերձվածի հետևորդները որպես ուսուցիչ և առաջնորդ ունեն մի հրեայի կամ հրեուհու, որը միանգամայն հրաժարվում է իր սեփական տանը [կատարել] սուրբ մկրտության [խորհուրդը]։ Հերձվածողները սրան են վստահում ոչ միայն իրենց հոգու տնօրինությունը, այլև ունեցվածքը։ [Միքայելը] ահա մանուկ հասակից առնչվելով այդ հերձվածին և հոգով ընդունելով այն, գիտակցության հարցում էլ անաղարտ չէր, այն կարծես անհավատության ինչ-որ խառնուրդ էր, որով նա և այդ հերձվածն աղավաղեց՝ նրան մոտիկ կանգնած լինելով, և քրիստոնյաների դավանանքն աղճատեց, մովսիսականությունն էլ խարդախեց։ Մինչ այս մինչ այն նա հարել էր այդ հերձվածին և, երբ հասակ առնելով տղամարդ դարձավ, նա ինչպես խաղողի որթի ծիլը,

իր մեջ փաթաթված ուներ անկրթությունն ու տգիտությունը։ Հատկապես այդ գծերի տեր լինելով ու այդ ոգով դաստիարակված, այդ ուղղությամբ էլ զարգանալով, թագավորական իշխանությունը ձեռք գցելուց հետո, դրանցով էր հաճախ պարծենում ու հպարտանում՝ ավելի քան սեփական թագով։ Նա և՛ անարգում էր, և՛ նենգությամբ բացասում տրամաբանությունը, քանզի այն ի չիք էր դարձնում իր փաստարկները, ի վիճակի էր համոզել ու հորդորել՝ չհետևել նրա հերձվածին ու դավանանքին։ Թեև կարելի է և սեփական հերձվածը դավանել և չանարգել մեր դավանանքը, հատկապես այն դեպքում, երբ ի վիճակի չէր ուժերը չափել այնքան ժամանակի ընթացքում իրենց իմաստությամբ փայլած այնքան մեծաթիվ մարդկանց հետ։ /4/ Այդուհանդերձ նա մեծարում էր սեփական [հերձվածը]։ Բայց նա կարող էր նախապես ասել, թե նորածին խոզերից որոնք գեր ու փարթամ են լինելու, որոնք՝ նիհար, նա գիտեր աքացի տվող ձիու մոտ ինչպես կանգնել, ինչպես վարպետությամբ խուսափել աքացի տվող ավանակից։ Նաև ջորիների հարցում էլ քաջագիտակ էր, գիտեր նրանցից որոնք են հարմար ու պիտանի բեռների փոխադրության համար, որոնք կարող են հեշտությամբ հեծյալին տանել՝ առանց որևէ վախից ազդվելու։ Բացի այդ նա մի հայացքով կարող էր դատել նաև ձիերի մասին, նրանցից որոնք են վազքում ուժեղ ու արագ, որոնք՝ պատերազմում դիմացկուն, որոշել ոչխարներից և կովերից որոնք են հեշտ ծննդաբերում, որ տեսակներն են շատ կաթ տալիս և հանդարտ են։ Բայց ամենազարմանալին այն է, որ նա կարողանում էր որոշել նորածին կենդանիներից որը որ մորից է ծնվել։ Ահա նրա մանկության ու հասուն տարիքում նրա ստացած դասերի ու պարծենալու նյութը։ /5/ Երբ նա հասակ էր առնում, համբերատար տանում ու հաղթահարում էր չքավորությունը, բայց և ջանում ամեն միջոցով դուրս գալ այդ վիճակից։ Երբ մի առիթով իր զորավարին ներկայացավ՝ իրեն մի կերպ ցույց տալու և իր թլվատ լեզվով նրա բարեհաճությունը շահելու, զորավարին ծանոթ ու մտերիմ մի աթինգան ասաց նրան, թե Միքայելը և ինչ-որ մի ուրիշը շատ չանցած նշանավոր մարդիկ են լինելու և շուտով անգամ թագավորության պիտի տիրանան։ Զորավարը՝ նման խոսքերից ոգևորված, կարծես ապագայից քաղելիք բերքը աչքի առջև ունենալով, վճռեց հեզությամբ հարմար առիթը ձեռքից չփախցնել, առիթ, որը կորցնելուց հետո, հեշտ ու դյուրին չի լինի վերստին ձեռք գցել։ Նա իսկույն սեղան է տալիս և, մնացած բոլորին մի կողմ թողած, այդ այրերին է ճաշի հրավիրում։ Երբ կերուխումը

թեժացավ, զորավարն իր դուստրերին էլ բերեց. տվեց նրանց, իր փեսաները համարելով: Երևույթի արտառոցության ու արտասովորության վրա նրանք սկզբում ապշեցին ու քար կտրեցին. բայց հետո համաձայնություն հայտնեցին ու հավանություն տվեցին, նրան ոչ թե մարդ, այլ թերևս աստված խոստովանելով:

6. Գուշակության արվեստը իր տրամադրության տակ կանխագուշակելու բազմաթիվ սուբյեկտներ ունի՝ թռչունների թռիչք, բազմազան երազներ, ամեն տեսակի զոհաբերության կենդանիների արտանշաններ և, որպեսզի ես մենակ լինելով շատերի հետ բանավեճի չբռնվեմ, խոսքը չեմ երկարում: [Գուշակության արվեստը] մաքուր [արվեստ] է, բայց ո՛չ ես, ոչ ողջախոհ մարդկանցից որևէ մեկը չի կարող ասել, որ այդ արվեստի մեջ մարդուն աստծուց հեռացնել ջանացող դևերից ոմանք անմասն չեն, թեև լսել ենք, որ անազնիվ ու ստոր, անհոգ ու անարգ կյանք վարող մարդիկ այդ [արվեստի] միջոցով ճշգրիտ իմացել են [կատարվելիքի] մասին: Արդ, ինչին եմ ես հետամուտ: Դրան, որ որևէ մեկը չկասկածի, թե [գուշակությամբ] զբաղվողները աստծո ներշնչմամբ են ապագան բացահայտում, որպեսզի նրանց խոտոր մտքի. նույնն է ասել սկզբունքի պատճառ աստծուն չհամարի, ոչ էլ ենթադրի, որ խոհեմ են այն մարդիկ, որոնք իրենց անձը գուշակներին են վստահում, քանզի տեսնում ենք, որ ամեն օր շատերն են սխալվում և իրենց կորստյան պատճառ դառնում: Թող նրանք կորստյան պատճառ Նախաշար վիշապը համարեն, որ աշխարհով մեկ շրջելով և իրեն հարմար գործիքներ[9] ձեռք բերելով, ոչ միայն այս կամ այն մարդու մեջ դնում է թագավորության ձգտելու սաղմը, այլ շատերի մեջ, որոնց համոզելով ու դրդելով հորդորում է գործի անցնել, մարդկանց կոտորել, եղբայրասպան պատերազմներ հրահրել, բազմիցս ոմանց վրա քարեր շպրտող կույրի նմանողությամբ. կույրը քարեր է շպրտում, բայց ի վիճակի չլինելով տեսնել, միայն կարող է գուշակել իր հարվածած օբյեկտի մասին: Այս բոլորը մեր նյութի հետ առնչություն չունեն, բայց դրանց վրա կանգ ենք առնում, որպեսզի ո՛չ նման գործերը, ո՛չ էլ ամենանենգ թագավորությունները հանկարծ աստծո հետ չկապվեն: Ասածս ես հիմնավորում եմ սուրբ գրքի վկայությամբ, որն ասում է. «Անձամբ թագաւորեցին, եւ ոչ ինեւ»[10]:

7. Միքայելը աթինգան գուշակի ասածի մեջ ինչ-որ աստվածային կանխասացություն տեսնելով, այդ առթիվ հիշելով և Ֆիլոմելիոնի [վանականի կանխագուշակությունը], որի մասին նախապես ասել եմ, ավելի հանդուգն ծրագրեց և իրականացրեց Լևոնի սպանությունը: Սա-

կայն այդ արարքը իր հոգին անվերջ խռովում էր, դրա համար շտա-
պեց հանդգնել, թափոր կազմած, սուրբ տաճարը գնալ։ Հարցն այն է,
որ նա իր առաջին բարերարի հանդեպ (խոսքը հիշյալ Վարդանի մա-
սին է) ստոր վարվեց, բայց ավելի ստոր՝ երկրորդի՝ Լևոնի հանդեպ,
քանզի, ի վերա ամենայնի, նրա որդուն, սուրբ ավազանում կնքելուց
հետո, որդեգրել էր։ Համենայն դեպս նա Լևոնի զավակների, մոր և
կնոջ բեռը թեթևացնելու համար նրա բռնագրավված կալվածներից
նրանց ինչ-որ մասհանում է կատարում, մեծահոգաբար հրամայում,
որ մայրն ու կինը ապահով բնակվեն այսպես կոչված Տերանց վան-
քում։ Ինչ վերաբերում է Լևոնի արու զավակներին, ինչպես ասվեց,
նրանք [աքսորվեցին] Պրոտե կղզին, որտեղ Կոստանդինը, ներքինաց-
վելուց հետո, համրացավ։ Նա պաղատում էր աստծուն՝ իր ձայնը վե-
րականգնվի, լեզուն բացվի, դարձյալ բարեձայն դառնա, նա աղաչում
էր և Գրիգոր Աստվածաբանին, որի [պատկերն] այնտեղ, ինչ-որ տե-
ղում վերականգնված էր։ Սուրբը ընդառաջ գնաց, և սուրբ Աստվա-
ծահայտնության տոնին նրա թախանձանքը կատարվեց։ [Կոստանդի-
նը] հայացքը նրա պատկերին գցած, լսում է նրա՝ իրեն ուղղված խոս-
քը. «Մոմը վերցրու և ընթերցիր»։ Կոստանդինն ունկնդիր եղավ այդ
խոսքերին, մտավ [տաճար] հստակ ու մաքուր ձայնով ընթերցեց
«Դարձյալ իմ Քրիստոսը» [աղոթքը]։ Այդ օրից սկսած ահա նա ան-
վերջ սկսեց ատել հոր ավանդած տխմարությունը, այպանել սրբա-
պատկերների հանդեպ նրա ունեցած ապերախտությունը։ Նա վերա-
կանգնում էր և անդադար երկրպագում սրբերի պատկերները։ Սակայն
այդ բոլորը տեղի ունեցան հետագայում, շատ ժամանակ անց։

8. Միքայելը, երբ տիրացավ ինքնակալ կայսեր իշխանության և
սկսեց իր կամքի համաձայն կառավարել, երանելի Նիկեփոր [պատ-
րիարքը] նրան նամակ գրեց, կոչ անելով վերահաստատել ճշմարիտ
դավանանքը՝ սրբապատկերները վերստին երկրպագության առարկա
դարձնել։ Միքայելը պատասխանեց նրան, թե «ես հավատքի սկզբունք-
ների հարցում փոփոխություններ կատարելու միտք չունեմ, ոչ էլ որևէ
հարձակում գործելու և վերացնելու արդեն ավանդվածն ու հաստատ-
վածը։ Թող յուրաքանչյուրը վարվի, ինչպես ինքն է ճիշտ գտնում, ըստ
իր կամքի, այդ բանի համար ոչ ոք չի պատժվի, նեղություն չի կրի»։
Նա մինչև վերջ հավատարիմ մնաց այդ սկզբունքին, նա, որ ի սկզբանե
անտի ճշմարիտ քրիստոնյա չէր։ Սակայն ինչքան որ ամրապնդում էր
իր իշխանությունը, նա իր չար բնությամբ ու դաժանությամբ այնքան
սաստկացնում էր պայքարը քրիստոնյաների և ցեղակիցների դեմ, մեկ

անարգում վանականներին, նրանց ամեն տեսակի սարսափների մատնելով, սոսկալի պատիժներ հորինելով, մեկ՝ մյուս հավատացյալներին բանտ էր նետում ու աքսոր ուղարկում: Մի փոքր անց պատրիարքական աթոռին նստած Մեթոդիոսին[11] և Սարդիսի այն ժամանակվա եպիսկոպոս Եվթիմիոսին, այն բանի համար, որ նրանք չենթարկվեցին իր կամքին, չհրաժարվեցին սրբապատկերները երկրպագել, քաղաքից արտաքսեց, սուրբ Մեթոդիոսին Ակրիտասին մոտիկ գտնվող Անդրեաս առաքյալի կղզում արգելափակեց, իսկ երանելի Եվթիմիոսին իր [Միքայելի] որդի Թեոփիլոսի ձեռքով արջառաչիլերի անխնա ծեծի տակ մեռցրեց: Նա ինչքան որ ճնշում էր գործում Քրիստոսի ժառանգավորների վրա և վայրի գազանի նման հոշոտում նրանց, նույնքան ազատություն[12] էր տալիս հրեաներին, հարկերից ազատում, քանզի բոլորից շատ նրանց էր սիրում ու գուրգուրում: Եթե նկարիչները գեղեցիկ կենդանիների նմանատիպություն են անում, սա Կոպրոնիմոսի[13] կյանքն իր համար օրինակ ու տիպար ունենալով. ջանում էր կատարելապես նրան նմանվել: Այդպիսով, նա հասնում է ամբարշտության գագաթնակետին, մեկ կարգադրում շաբաթ օրերը ծոմ պահել, մեկ աստվածային մարգարեների դեմ լեզուն սրում, մերժում հարությունն ի մեռելոց և դրա հետ կապված բարիքները: Նա պնդում էր, որ սատանա գոյություն չունի, քանզի այդ մասին չի վկայել Մովսեսը[14]: Նա կողմնակից էր պոռնկության, կարգադրում էր, որ միայն Բարձրյալի՝ աստծո անվամբ կարելի է երդվել, Հուդային ամբարշտորեն փրկության արժանացողների թվին դասում, չարամտորեն ու անտեղի ծանակում էր փրկիչ Ջասկի տոնը նշելը: Նա խորշանքով մերժում էր հունական ուսումը[15], իսկ մեր [քրիստոնեական]՝ աստվածայինն այն աստիճան էր անգոսնում, որ թույլ չէր տալիս սովորել անգամ պատանիներին, որպեսզի ոչ ոք և ոչ մի դեպքում հնարավորություն չունենա իր տխմարություններին ընդդիմանալու, քանդելու դրանք. որպեսզի սուր աչք և ճարտար լեզու ունենալով, նաև կրթություն ստանալով, չստիպի իրեն տեղի տալ: Նա այնքան դանդաղ էր տառերը գրում և վանկերն ընթերցում, որ մեկը ավելի արագ կկարդար մի ամբողջ գիրք, քան թե նա իր բթամտությամբ կարտասաներ սեփական անվան տառերը: Սակայն այդ մասին, ինչպես և այդ ժամանակ տեղի ունեցածի և ծաղրի արժանացածի մասին թողնենք ասեն սուրբ այրերը. առկա են նրա արարքները խարազանող բազում գրքեր, իսկ մենք շարունակենք պատմությունը, կանգ առնենք նրա սնաստված գործերի արդյունքների վրա:

9. Այս ժամանակները Արևելքում[16] քաղաքացիական պատերազմ

բռնկվեց, որն աշխարհը բազմապիսի դժբախտություններով ողողեց, մարդկության մեծ մասը ոչնչացրեց։ Հայրերը որդիների վրա սուր քաշեցին, եղբայրները՝ եղբայրների, ընկերները՝ շատ սիրելի ընկերների։ [Ապստամբների] պարագլուխը Թովման[17] էր, որի վերաբերյալ երկու տարբեր վարկածներ գոյություն ունեն։ Մենք մարդ արարած ենք, բացի այդ՝ դեպքերից շատ ժամանակ է անցել, մենք դրանց ականատես չենք եղել, սոսկ լսել ենք դրանց մասին։ Արդ, որպեսզի բոլոր հարցերում ճշմարտությունը ասած լինենք, չպետք է գրի առնենք մեզ հաղորդված վարկածներից մեկն ու մեկը։ Այդ դեպքերի վերաբերյալ նրման տարակարծությունն ու անորոշությունը մեր շարադրանքին ոչնչով չի վնասում։ Ընդհակառակը, այդ տարբեր, իրարամերժ կարծիքների առկայությունը մեր գործում այն ավելի վստահելի է դարձնում։ Հարկավ, լավագույնն այն կլիներ, որ տարակարծություններ չլինեին, իսկ մենք՝ մարդ արարածներս, ամեն ինչի մասին ճշգրիտ տեղյակ լինեինք։ Բայց քանի որ հոսած երկար ժամանակը մեր տեսադաշտը վարագուրել է, թուլացրել իմացության հնարավորությունը, անհրաժեշտ է և՛ զրույցներին, և՛ լուրերին հավատ ընծայելով, գոնե մասամբ եղելությունը լույս աշխարհ հանել և այն ամբողջապես Մոռացության գետը[18] չթափել։

10. Առաջին վարկածի համաձայն (ես այն եմ ընդունում, քանզի ունեմ մի քանի փաստաթղթերի հաստատուն վկայությունը) Թովման սերում էր հասարակ ու չքավոր, ի վերա ամենայնի՝ սլավոնածին[19] ծնողներից։ Այդ [սլավոնները] բազմիցս Արևելքում են վերաբնակեցվել[20]։ Թովման քարշ էր տալիս իր աղքատիկ գոյությունը և բախտ որոնելու համար փախչում է իր ծննդավայրից և գալիս մայրաքաղաք։ Նա սենատորներից մեկի[21] մոտ ծառայության է մտնում և, լինելով անառակի մեկը, փորձում պղծել տիրոջ մահիճն ու անկողինը։ Բայց բռնվելով և ի վիճակի չլինելով խայտառակության, կատարած արարքի համար հասանելիք պատժին դիմանալ, հագարացիների մոտ փախուստի է դիմում։ Իր բազմամյա, իրեն հատուկ [խայտառակ] գործունեությամբ (մոտավորապես նրա քսանհինգերորդ տարին էր ընթանում), ինչպես և Քրիստոսին՝ մեր աստծուն ուրանալու հանգամանքով, նա շահում է հագարացիների վստահությունը և, դառնալով զինվորական փաղանգի հրամանատար, քրիստոնյաների դեմ զենք է ճոճում։ Նա հագարացիներին խոստացավ զենքի ուժով նրանց ենթարկել հռոմայեցիների կայսրությունը[22]։ Որպեսզի հռոմայեցիների երկրում հայտնըվելով խուչընդոտի չհանդիպի, դեռ ավելին՝ որպեսզի բոլորին իր կողմը

*քաշի և պատերազմում իրեն ծառայեցնի, նա ազդարարեց ու տարփողեց այն լուրը, թե ինքը, իբր, Կոստանդինն է՝ Իրենեի որդին[23], այն Կոստանդինը, որի խելացնորությունն ու դաժանությունը անցյալում պատճառ դարձան, որ նա ոչ միայն թագավորությունից զրկվի, այլև իր աչքի լույսից[24], իսկ տվյալ պահին նա արդեն մյուս աշխարհն էր գնացած։ Քանի որ նրա նախաձեռնած գործի մեծությունն ու փայփայած հույսերը գործակից էին պահանջում (նա հասկանում էր, որ այլ կերպ չի կարող և՛ ցամաքում, և՛ ծովում գերակշռության հասնել), նա ինչ-որ մեկին է որդեգրում, նրան վերանվանում Կոստանդիոս, նրա անձը կեղծելով ցույց տալիս իր հոգու խելահեղությունը, և նրան բավարար ուժեր տալով՝ [Ռոմանիա] ուղարկում, մի այլ տեղից էլ ինքը մուտք գործում՝ հռոմայեցիների երկիրն ասպատակելու և ամայացնելու։ Այն ժամանակ պետության սանձերը գտնվում էին Լևոն Հայկազնի ձեռքում, դա նրա թագավորության վերջում էր[25]։ Ահա Լևոնը նրա դեմ ոչ այնքան հզոր զորամաս ուղարկեց, որի պատճառով այն պարտություն կրեց (հենց որ թշնամին նրա դեմ էր դուրս գալիս, նա փախուստի էր դիմում)։ Դա [Թովմային] դարձրեց ավելի հանդուգն, նա սկսեց իր հնարավորությունները գերագնահատել։ Ահա այս խռովության ու ապստամբության սկզբի մասին ըստ առաջին և կարևոր վարկածի։*

*11. Իսկ երկրորդ վարկածը Թովմայի անվանափոխության մասին[26] ոչինչ չի ասում, ըստ նրա, Թովման անցյալում Վարդանին էր հարել և գահին տիրացած Լևոնի կողմից պատիվների արժանացել։ Թովման, որ այն ժամանակ ֆեդերատների կոմես էր և ծառայում էր Անատոլիկոն բանակաթեմում, լսելով, որ Միքայելը սպանել է Լևոնին, ցանկացավ վրեժխնդիր ու քինախնդիր լինել (նա դեռ հնուց, մանկական տարիներից Միքայելին տանել չէր կարող)։ Բայց հակառակ որ նա Ֆիլոմելիոնի վանականի՝ իր վերաբերյալ արած կանխագուշակության առթիվ երկյուղ էր կրում, Միքայելի դեմ զորք է հանում, այն էլ ոչ թե փոքրաթիվ ու անկարող, այլ մեծաթիվ, քաջարի ու կռվող, նա իր հետ ուներ զենք կրելու ընդունակ ամեն տարիքի մարդիկ։ Միքայելի՝ բոլորի ատելության առարկա դառնալու մի այլ պատճառ էլ կար, այն, որ, ինչպես ասվեց, նա աթինգանների վնասակար աղանդին էր պատկանում, թլվատ լինելով, աչքի էր ընկնում իր անարիությամբ և թուլակամությամբ, բայց հատկապես այն բանի համար, որ նրա հոգին լեզվից պակաս թլվատ չէր։ Շատերն էին նրանից խորշում, տհաճ մարդ համարում։ Ինչ վերաբերում է Թովմային, թեև նա կաղ էր և ծագումով բարբարոս[27], ուներ*

հարգանք ներշնչող ալեհեր մազեր, նրան շատ էին սիրում, քանզի մանկուց մարդամոտ էր ու քաղցրաբարո, գծեր, որոնք դուր են գալիս շարքային զինվորներին։ Բացի այդ իր ֆիզիկական ուժով ոչ ոքի չէր զիջում։ Պետական հարկահավաքներին իր կողմը գրավելով, նա ջանաց առատաձեռնությամբ շատերին իրեն ենթարկել, աննշան մեկից դարձավ նշանավոր, տկարից՝ հզոր։ Խառնակությունների ու հարստանալու սիրահարներին նա իր կողմն էր գրավում՝ նրանց համոզելով ու ինչ-որ մտերմություն ցույց տալով, իսկ մյուսների, ովքեր քաղաքացիական կռիվների ողբալի հետևանքներին գիտակ էին, նրանց հանդեպ էլ բռնություն բանեցնելով, արհամարհելով նրանց կարծիքը։ Այդպիսով, ահա բռնկվում են քաղաքացիական կռիվներ, կարծես բացվում Նեղոսի ջրվեժները, որոնք երկիրն են ողողում ոչ թե ջրով, այլ արյամբ։ Ստրուկները մահատարած զենք են բարձրացնում տերերի վրա[28], զինվորները՝ տաքսեոտի[29], լոխագոսը[30]՝ զորավարի, որով համայն Ասիան տնքում էր, կորստյան մատնվում։ Մի շարք քաղաքներ, որոնք վախից հպատակվել էին Թովմային, նա մարդաթափ արեց, իսկ որոնք կայսեր հավատարիմ մնալով, բազմիցս դիմադրեցին, մեծ ջարդ կրելով ու գերեվարության ենթարկվելով, ստիպված էին վերջում հպատակություն հայտնել։ Այսպիսով, նրա հետևից գնաց համայն Ասիան, բացառությամբ Կատակիլայի զորավարության տակ գտնվող Օպսիկիոն [բանակաթեմը] և Օլբիանոսի [զորավարության տակ գտնվող] Արմենիակների [բանակաթեմը][31]։ Այդքան զորավարներից միայն սրանք էին Միքայելին հավատարիմ մնացել։ Այդ էր պատճառը, որ Միքայելը երախտագիտությամբ լցված նրանց, որպես իրեն չդավաճանածների, կայսերական գանձարանը վճարած այսպես կոչված պետական կապնիկոնի[32] մեկ միլիարեսիոնը[33] զիջեց։ Բոլոր [բանակաթեմերը], այդ թվում և սրանք, ի սկզբանե անտի որպես կապնիկոն վճարում էին երկու միլիարեսիոն։ Բայց այն ժամանակ սրանց մեկը նա զիջեց՝ իրեն ցուցաբերած բարյացակամության համար։

12. [Քաղաքացիական պատերազմի] լուրը հագարացիներին ուրախություն ու մեծ բերկրանք պատճառեց, և նրանք, հարմար առիթ ձեռք բերելով, աներկյուղ ասպատակում էին համայն երկիրն ու կղզիները, քանզի դիմադրող չկար։ Թովման, լսելով այդ մասին, վախ զգաց, քանզի մտածում էր, որ եթե ինքը հայրենիքի և մնացած Արևելքի մասին չհոգա, թույլ տա [հագարացիներին] գերեն ու գերեվարեն երեխաներին ու կանանց, այդ բանը կարող է իր կողմնակիցների շարքերում հուզում ու խռովություն առաջացնել։ Նա նպատակահարմար գտավ

առայժմ սանձել նրանց թափը՝ անձնապես երևալով և իր զորքերի քաջամարտությամբ սարսափ ազդելով, ապա խորամանկությամբ նրանց դրդել հաշտության։ Այդպես էլ եղավ։ Սարակինոսները տեսան, որ Թովման շրջվեց և ուժգնությամբ իրենց երկիրը ներխուժեց։ Նա բարբարոսական խոսքերով[34] դիմելով, նրանց հետ հաշտություն կնքեց և առաջարկեց իրեն դաշնակցեն, խոստանալով և ուխտելով տալ այն, ինչ նախապես ասվել է[35]՝ հռոմայեցիների երկիրը, ինչպես և նրանց պետությունը [սարակինոսներին] ենթարկել։ Նա իր հաշիվների մեջ չսխալվեց, դեռ ավելին, Անտիոքի՝ այն ժամանակ պատրիարքական աթոռը հափշտակած Հակոբից[36] թագ էլ ստացավ ու կայսր հռչակվեց[37] և մեծաթիվ զորք հավաքեց (ավելի ճիշտ արաբներն այն տվեցին՝ իրեն զորեղացնելու համար)։ Նրա բանակում էին ոչ միայն մեզ հարևան ու դրացի հագարացիները, այլև ավելի խորքերը բնակվողները, եգիպտացիներ, հնդիկներ, պարսիկներ, ասորիներ[38], հայեր, խալդեր, իբերներ, զեխեր, կաբիրներ[39] և բոլոր նրանք, ովքեր բաժանում են Մանիի գաղափարներն ու օրենքները[40]։ Սրանցով հզորացած և ամեն կողմից իրեն ապահով զգալով, նա լավագույնը համարեց իր ձեռնարկած գործի հետ միասին, փոխել նաև իր անունը, մեկին էլ որդեգրել, ինչպես այդ մասին նշել եմ[41]։

13. Այսպիսով, ահա նա ներխուժում ու ասպատակում է համայն Արևելքը, առանց տարիքի խտրության կոտորում բոլոր նրանց, ովքեր կամավոր չէին անցնում իր կողմը։ Կայսրը, լսելով այդ մասին, և ենթադրելով, որ տարածված լուրերը չափազանցություն են, Թովմայի դեմ ուղարկում է թույլ ու չնչին զորքեր, որոնց նա բախվելով, մի մասին կարծես ըմպելիք լինեին, ծարավածի պես խմեց, իսկ մյուսին փախուստի մատնելով, ավելի հանդուգն գործի լծվեց։ Նա դիեր[42] նավեր էլ հանդերձեց, նրանց հետևից եկող ցորենակիր և ձիակիր կլոր նավեր, որոնցով ձեռք գցեց բանակաթեմային նավատորմիղը[43]։ Նա հրամայեց ողջ նավատորմիղը գումարվի Լեսբոսում, իսկ ինքը, իր անպարտելիության վստահ, ասպատակում է համայն Արևելքը։ Գլխավորելով ութ բյուր հլու-հնազանդ մարդկանց, նա բռնեց դեպի Աբիդոս տանող ճանապարհը, մտադիր լինելով անցնել դիմացի ափը։ Ամենուր ասպատակ սփռելով, նա մոխրի ու փոշու վերածեց ոչ միայն փոքրիկ գյուղերը, այլև ավելի մեծ բնակավայրերը։ Մնացել էր մի բավական փարթամ գյուղ, որը չէր արժանացել մյուսների բախտին։ Ահա Թովման թույլ տվեց, որ այն էլ իրեն ենթակա փաղանգով իր որդեգիրը թալանի։ Վերջինս ինչ-որ դևերից կախարդված, գուշակությամբ փքված, նախորդ

օրը զինվորներին նշել էր իր՝ մայրաքաղաք մտնելու որոշակի օրը։ Բայց Թշվառականը շատ հանդուգն ձիավարելով, գլխին մեծ փորձանք բերեց։ Նա անկանոն առաջ էր շարժվում և ենթադրելով, որ [նշված] վայրում հակառակորդներ չկան, ընկնում է Օլբիանոսի լարած թակարդը։ Նրա գլուխն իսկույն կտրեցին և Միքայել կայսեր ուղարկեցին։ Վերջինս դրանից հետ չմնաց և, հաշվի չառնելով արարքի սարսափելիությունն ու կատարելու դժվարությունը, [որդեգրի] գլուխը հորն ուղարկեց։ Թովման, ստանալով այն, առանց տատամսելու ծովափնյա այդ վայրից (այն Հորկոսիոն[44] է կոչվում), հարմար սլահ ձեռք գցելով, երբ լուսինը ծածկված լինելով [երկրի ստվերով] չէր լուսավորված, բազում տեղերից անցնում է Թրակիա։ Միքայելը սակայն այդ մասին մտածել էր դեռ նախքան [Թովման Թրակիա] ոտք դներ, շրջելով համայն Թրակիայով՝ նա [զինվորներին] կոչ էր անում ապստամբի դեմ լինել աներեր, մինչև արյան վերջին կաթիլը աննենգ մնալ իրեն, չդըրժել դեպի կայսրը տածած հավատարմությունը, ձեռք չքաշել իրենց քաջությունից ու արիությունից։ Սակայն շատերի համար ակնհայտ էր, որ [Թովմային] դիմադրելը հնարավոր բան չէ։ Այդ էր պատճառը, որ երբ [Միքայելը] հեռացավ դեպի մայրաքաղաք, իսկ Թովման էլ անձամբ հայտնվեց, բոլորը հեշտությամբ վերջինիս կողմն անցան, նրանց համոզելու կարիքն անգամ պետք չեղավ, և նրա հրամանատարությամբ շարժվեցին մայրաքաղաքի վրա։

14. Սակայն այդ բանը կայսրը շատ շուտ իմացավ, նա Ասիայի ինչ-որ տեղում պահեստի թողնված մի զորաբանակ բերեց, բացի այդ Կատակիլասի և Օլբիանոսի միջոցով հավաքագրեց որոշ զորքեր ևս, քանզի արդեն սկսել էր գահին սպառնացող վտանգից վախենալ։ Նա ուշադրություն դարձրեց նաև ծովուժի վրա, փութանակի նախապատրաստվում էր ապստամբի ցամաքային և ծովային ուժերի դեմ պայքարի։ Նա այնպիսի դժնդակ ու ծանր դրության մեջ էր գտնվում, որ [ստիպված եղավ] ակրոպոլսից մինչև դիմացի ավանը երկարել շղթան և այդ ձևով անանցանելի դարձնել ներքին ուղին։ Սկյուրոսում, Կիկլադյան կղզիներից մեկում, աքսորական ապրում էր բազմիցս զորավարի պաշտոնը վարած մի այր, որ տվյալ պահին Միքայելի դեմ ոխ ուներ։ Նրա անունը Գրիգոր էր, մականունը՝ Պտերոտոս։ Սա Լևոն կայսեր եղբորորդին[45] [քեռորդին] էր և վերջերս նրա սպանությունից հետո աքսորվեց, քանզի երբ նա մտավ Միքայելին երկրպագելու, չլռեց, այլ Լևոնի հանդեպ մեծ սեր ու բարեկամություն տածելով, [Միքայելին] սաստիկ նախատեց, Լևոնի սպանության մեջ նրան մեղադրեց։ Միքայելն

այն ժամանակ նրան ասաց. «Ես հասկանում եմ, քո մեջ դառնություն է ծովացած, հասկանում եմ և անափ տխրությունդ»։ Այդ պահին նա տեղի տվեց, բայց երբ օր անց նրան Կիկլադների հիշյալ կղզին աքսորեց։ Թովման ահա ընկերացավ նրան և մոտ տասը հազար հոգիանոց ցամաքային զորաբանակի զորավար նշանակեց։ Իր ձեռք բերած նավատորմիղը նա ռազմական պատրաստության վիճակի բերեց, նրա վրա մի այլ զորավար կարգեց և որպես ինչ-որ առաջապահ [մայրաքաղաքի վրա] ուղարկեց, գտնելով, որ նպատակահարմար է ցամաքային և ծովային գործողությունները համագործակցված կատարել։ Եվ ահա ծովային ու ցամաքային ուժերը միաժամանակ հայտնվեցին նույն վայրում՝ Վլախեռնայի ծոցում (ձգված շղթան ոչ մի խոչընդոտ չպատճառեց հարձակվողներին, ոչ էլ օգուտ՝ պաշտպանվողներին), բայց նրանց ներկայությունը ոչ մի տպավորություն չգործեց, և նրանք իսկապես որ ոչ մի աչքի ընկնող բան չարեցին։ Միայն Թովման էր, որ ինչ-որ ճարտարագետների միջոցով խոյեր, կրիաներ և մի քանի պաշարողական մեքենաներ սարքեց, որոնցով ենթադրում էր պարիսպները սասանել։ Բացի այդ, նա որդեգրելով և խռովության գործակից դարձնելով վանականի սքեմը վերջերս դեն գցած, շառլատան ու աշխարհական դարձած սևադեմ ու սևահոգի ոմն Անաստասիոսի, մեծաթիվ ու զորեղ բանակով արշավեց մայրաքաղաքի վրա։ Նա կարծում էր, որ քաղաքացիները, Միքայելի հանդեպ ատելությամբ լցված, հենց որ իրեն տեսնեն, իր առջև պիտի բացեն [քաղաքի] դարպասները։ Բայց երբ այդ հույսերը ջուրն ընկան, դեռ ավելին, քաղաքացիներն սկսեցին իր վրա հայհոյանքներ ու լուտանքներ թափել, նա իր զորավարական տաղավարը և խարաքսը խփելով Պավլինոսի[46] վանքի մոտ, այնտեղ, որտեղ կառուցված է սրբոց Անարծաթից պալատանման տաճարը, մի զորամասի գլուխն անցած, սկսեց շրջել մինչև Եվքսինյան ծովը, Հիերոնն ու դրանից այն կողմ գտնվող ավանները, [բնակիչներին] համոզելու [իր կողմն անցնեն], որպեսզի իր թիկունքում որևէ թշնամի չունենա։ /14/[47] Երբ նա նման հարցերով էր զբաղված՝ մի քանի օր հետկացնելով նախապատրաստվելու [զգայախաբություն ունեցավ], նրա աչքին Միքայելը երևաց՝ պատերազմական դրոշը աստվածածնի տաճարի ծածկի վրա ամրացրած, որտեղից զորություն էր խնդրում ու ստանում ընդդեմ հակառակորդների, իսկ նրա որդի Թեոփիլոսն էլ՝ կենարար խաչափայտը և մեր աստծո՝ Քրիստոսի ամենասրբուհի մոր հանդերձները ձեռքին, հոգևորականների դասով թափոր կազմած, շրջում էր քաղաքի ամբողջ պարսպով մեկ։ Դա Թովմային ծայրաստիճան հու-

սարեկ արեց և քամելեոնի նման բազմիցս ծրագրերը փոխեց, հավատացած լինելով, որ ստիպված է մարտնչել ոչ միայն տեսանելի, այլև աներևույթ ուժերի դեմ։ Բայց այլ ելք չունենալով և իր հետևից գնացած այդպիսի մեծաթիվ ամբոխից հուսադրված, իր նման մտածմունքների ճիշտ կամ սխալ լինելու դատավորը թողեց ճակատամարտը լինի։ Հենց որ լույսը բացվեց, պատերազմական փողերը հնչեցնելով, զինվորներին մարտի հանեց։ Նա որդուն կարգադրեց մարտնչել ցամաքային պարիսպների երկայնքով, իսկ ինքը առաջնորդեց գլխավոր ուժերը, վերցրեց պաշարողական մեքենաների մեծ մասը, որոնցով պետք է քաղաքի պարիսպը հարվածեր, և հարձակվեց Վլախեռնայի շրջանում գտնվող աշտարակների վրա։ Նրանց հենելով համապատասխան բարձրության աստիճաններ, տարբեր տեղերում գործի դնելով կրիաներ ու խոյեր, ամեն կողմից հեղելով նետերի ու բաբաններից արձակվող քարերի տարափ, ամենուրեք անձամբ հայտնվելով, նա ուզում էր սարսափ ազդել քաղաքացիների վրա և տիրել քաղաքին։ Նա անուշադրության չմատնեց նաև ափամերձ պարիսպները, նավատորմիղով քաղաքը պաշարման մեջ առավ, սկսեց կրակ ու նետեր արձակել, ի վերա ամենայնի հրամայեց, որպեսզի քառանիստ պաշարողական մեքենաները անգթորեն, բայց ճիշտն ասած՝ ոչ վարպետորեն գործի գնել։ Սակայն իրեն ուղեկցող զինվորների այսպիսի մեծ ուժը ոչ մի արդյունքի չհասավ։ Նախ, նավատորմիղը հակառակ ուղղությամբ փչող քամուց ցիրուցան եղավ. ձմեռ խիստ էր։ Ինչ վերաբերում է ցամաքին, ապա քաղաքացիները քաջաբար էին կռվում, աշտարակներից ավելի առատ նետեր արձակում, որով նրա աստիճանները շարքից հանեցին, պաշարողական մեքենաները չկարողացան պարիսպներին հենել։ Այդ բոլորը էապես փոխեց իրադրությունը, ապացուցեց պատերազմ մղելու նրա անփորձությունը։ Նույնիսկ այն մեքենաները, որոնք հաջողվում էր հենել պատերին, լինելով շատ թույլ և ոչ մարտական, չէին կարողանում սասանել պարիսպները, ոչ էլ նպաստում էին, որ աշտարակների վրա կանգնած զինվորները նահանջեն։ Քաղաքացիներին պարզ դարձավ, որ իրերի վիճակն այնպիսին չէ, ինչ նախապես տարածում էին ու համբավում, որ հակառակորդները թույլ են և ղեկավարվում ու առաջնորդվում են շատ անկարող մտքի տեր մարդու կողմից, և պաշարված քաղաքը մեկից լցվեց քաջությամբ և սկսեց այնքան դիպուկ նետահարել, որ հակառակորդները, լքելով այդքան մեքենաները, իրենց փրկության մասին էին մտածում և ստիպված եղան բավական հեռու տեղում բանակել։ Երբ պաշարման գործն ընթացավ իր

սպասածին հակառակ, հանդիպեց ավելի համառ, քան ենթադրում էր, դիմադրության, բացի այդ եղանակն էլ գնալով վատթարացավ (ձմեռը վրա հասավ և Թրակիայում ավելի սաստիկ ձմեռ արեց, քան մնացած տեղերում), Թովման որոշեց ձմեռել և զորքը հետ քաշեց։

15. Երբ բացվեց մեղմ գարունը, Թովման ստիպեց զինվորների ամբոխին դուրս գալ որջերից ու քարայրներից. նա վճռեց Կոստանդնուպոլսի վրա գրոհել թե՛ ցամաքով և թե՛ ծովով։ Նա համոզվեց, որ Միքայելն այն չէ, նա որոշ քանակությամբ զորք հավաքել է, ինչպես և նավատորմիղ ձեռք բերել։ Թովման շարժվեց մարտնչելու հենց նույն տեղում, այն է՝ Վլախեռնայի ծոցում։ Արշալույսին, երբ հնչեց պատերազմական փողը և նա պետք է ցնցեր Վլախեռնայի պարիսպը, Միքայելը, պարիսպների բարձունքին կանգնած, դիմեց հակառակորդներից ոմանց, նրանց ներում խոստացավ, բազում բարիքներ, բավական է անցնեն իր կողմը, հեռու մնան իրենց ձեռքերը ցեղակիցների և եղբայրների արյամբ պղծելուց։ Բայց, ինչպես առածն է ասում, նա խուլ կարասը ածեց այդ խոսքերը և պատճառ դարձավ, որ նրանք ավելի լկտի դառնան, չէ՞ որ նրանց խնդրում են։ Նա այդ քայլով փաստորեն փարատեց նրանց վախը, իսկ Թովմային է՛լ ավելի աներեր ու հաստատուն դարձրեց։ Որով նրանք հանկարծակի, բազմաթիվ դարպասներից, որտեղ, որ իրենց չէին սպասում, պաշտպանների վրա խուժեցին։ Թովման մարտի բռնվեց և, նրանց մեծ վնաս պատճառելով, փայլուն հաղթանակ տարավ։ Բայց նա ավելի մեծ հաղթանակ տարավ ծովում, քան ցամաքի վրա, քանզի երբ կայսերական տրիերները[48] բաց ծով դուրս եկան և պետք է մարտ տային, երբ ապստամբների տորմիղը մարտի բռնվեց և սկսեց քարեր արձակել, չգիտեմ այդ տորմիղին ինչ պատահեց, ինչից երկյուղեց ու սարսափեց, որ նահանջեց դեպի ափը։ Նրանց անձնակազմի մի մասը համարձակ կերպով կայսեր կողմն անցավ, մյուսը փախավ ցամաքում գտնվող իրենց բանակատեղին, կտրականապես հրաժարվելով լինել ծովի վրա և մարտնչել այնտեղ։ Ահա Թովմայի տորմիղը, առանց կռվի բռնվելու, ցրիվ եկավ, նա ոչինչ չարեց, հակառակ որ նավերը շատ-շատ էին, և նրանց անձնակազմը՝ մեծաթիվ։

16. Իսկ վերոհիշյալ Գրիգորը, համոզվելով ապստամբի ծայրաստիճան ողորմելի լինելու մեջ և գիտենալով, որ գնալով նա ավելի ողորմելի է դառնալու, տեսնելով, թե նա հարբեցողի ու տխմարի մեկն է, անմասն խոհեմության, որով միայն ձեռք են բերվում հաղթանակները, իր հրամանատարության տակ գտնվող տագմայից[49] մի զորամաս վերցնելով, որոշում է խզել կապերը ապստամբի հետ։ Գրիգորը նախապես

համաձայնություն էր եկել կայսեր հետ վերջինիս կողմից ուղարկված Սուդիոսի [վանքի][50] վանականներից մեկի միջոցով։ Նա անցնում է ապստամբի թիկունքը, որով մի կողմից նրան սարսափահար է անում ու շփոթության մեջ գցում, մյուս կողմից էլ նման քայլով ուղում է կայսեր հանդեպ գործած մեղքերի համար ներում ու թողություն ստանալ, ինչպես և [փրկել] իր կնոջ և երեխաներին, որոնք իր՝ Թովմային հարելու առնչությամբ [կայսեր կողմից] բանտ էին նետվել։ Սակայն Գրիգորի քայլի մասին կայսրն անգամ չիմացավ։ Այնքան էր նա արտաքին աշխարհից կտրված, որ ոչ մոտակայքում, առավել ևս հեռուներում նրա կատարածի մասին տեղյակ չէր։ Թովման, վախենալով, որ [Գրիգորի շարժումը] կարող է լայն չափեր ստանալ, և ցանկանալով իր զինվորների մեջ սարսափ տարածել, զորքը քաղաքից չշարժեց։ Նա անհանգստացած էր հենց այն բանից, որ կարող են թիկունքից հարվածել, այդ էր իրեն մտահոգում։ Գրիգորի դեմ կռվելու, իր կարծիքով, կարող փոքրաթիվ զինվորներ առնելով, նա շարժվեց նրա վրա, պարտության մատնեց և, փախչելու ժամանակ բռնելով, սպանեց։ Այնուհետև անհապաղ վերադարձավ քաղաքը պաշարող զինվորների մոտ և նամակներով ամենուրեք թմբկահարում էր իր իբրև թե տարած հաղթանակը։ Նա հրաման տվեց Հելլադայում[51] խարիսխ գցած տորմիղին անհապաղ ճանապարհ ընկնել, նպատակ ունենալով վերստին, այս անգամ ավելի մեծ ուժերով գրոհել ծովափնյա շրջանների վրա։ Ահա այդ երեք հարյուր հիսուն նավերը՝ ռազմանավեր, դիերներ և ցորենակիր, բարենպաստ քամու օգնությամբ հասան և Թրակիայի Բյուրիդների նավահանգրստում խարիսխ գցեցին։ Կայսերական հրակիր նավատորմիղը[52] նրանցից թաքուն [մոտենալով], հենց այնտեղ գրոհում է նրանց վրա, նավերից շատերին տիրանում՝ զինվորներով հանդերձ, մի մասին էլ ուժգնորեն հրակեզ անում։ Նավերից շատ քչերը փրկվեցին, որոնք ձգտում էին մուտք գործել Վլախեռնայի ծոցը, ցամաքային զորքերին միանալու նպատակով, ինչ որ եղավ։ Թովման ահա ծովային գործերը այդպես էր վարում ու ղեկավարում։ Ինչ վերաբերում է ցամաքին, ապա այստեղ երկու կողմից էլ որպես կանոն հեռամարտ էր տեղի ունենում և սպանություններ. մեկ Միքայելը, մեկ նրա որդի Թեոփիլոսը, Օլբիանոսի և Կատակիլասի հետ նրանց վրա էին հարձակվում և երկու կողմերն էլ ուժգնորեն հարվածում ու նույնքան ուժգին հարվածներ ստանում։ Պայքարն անհավասար էր, ճակատ առ ճակատ, մեծ ու խիզախ կռիվ չկար, քանզի Միքայելը շատ էր զիջում, ի վիճակի չէր հակադրվել [Թովմայի] հետևակին ու հեծելազորին։

17. Ահա այսպիսին էր իրերի դրությունը, երբ բուլղարների թագավոր Մորտագոնը[53] (կայսեր պաշտպանված լինելու լուրը աշխարհով մեկ տարածվել էր) մի քանի հոգու ծածուկ կայսեր մոտ ուղարկեց՝ ինքնաբերաբար դաշնակցություն առաջարկելով և խոստանալով բավարար օգնություն ցուցաբերել[54]։ Բայց Միքայելը կամ իսկապես խղճալով և գթալով սեփական ժողովուրդը, գուցե և դրամն ափսոսալով (նա մյուս կայսրերից շատ ավելի ժլատ էր), նրա նախաձեռնությունը թեև ընդունելի համարեց, չէր ուզում նրանց օգնությունն ստանալ։ Բայց ապստամբից վախենալով՝ հայտնեց, թե ընդունում է օգնությունը։ Մորտագոնը, որ պատերազմասեր մարդ էր և ռազմավար ձեռք բերելու սիրահար, բացի այդ ուզում էր հաստատել, էլ ավելի կայուն դարձնել նախկին կայսր Լևոնի հետ կնքած երեսնամյա հաշտության պայմանագիրը[55], ապստամբի դեմ բանակ պատրաստեց և, ներխուժելով հռոմայեցիների սահմանները, այսպես կոչված Կեղուկտոս[56] վայրում բանակեց։ Լուրը, հարկավ, տարածվեց և անհնարին էր, որ այդ մասին ապստամբը չիմանար։ Բնական է, նա ցնցվեց, խելքը կորցրեց, բայց սթափվելով նրա դեմ հանելիք զորքն սկսեց հանդերձել։ Ենթադրելով, որ զորքը, եթե երկու մասի բաժանի, ծայրաստիճան կթուլանա ու խոցելի կդառնա (մայրաքաղաքի պաշտպանման համար շատ զորք էր պետք. շատ ու մարտունակ, քանզի Միքայելն իր հերթին կարողացել էր մեծաթիվ ռազմունակ զորքեր հավաքել և, արդեն իրեն վստահ էր զգում, բազմիցս նրանց մեծ կորուստներ պատճառել։ Բուլղարների բանակն էլ իր հերթին պահանջում էր ոչ փոքրաթիվ ու երկրորդական զորք, այլ մեծաթիվ ու մարտունակ), որ բանակը երկուսի տրոհելու դեպքում որևէ բարդ իրավիճակում, հակառակ իր հզորության, թշնամիների աչքին այն թույլ կերևա և հեշտությամբ պարտության կմատնվի, նա ամբողջ զորքով հեռանում է քաղաքից։ Իմանալով, որ ինքը Բուլղարից[57] հզոր է, նա զինվորներին հիշյալ վայրում մարտի է դասավորում և ճակատամարտ տալիս։ /18/ Երբ նրանք բախվեցին միմյանց, ապստամբը չարաչար պարտություն կրեց, նա թշնամուն չկոտորեց, բայց նրա կողմից ջարդ ստացավ։ Քանի որ փրկության այլ ելք չկար, նրանք փախուստի դիմեցին և դժվարանցանելի մի վայրում սրիվ եկած մտածում էին ինչպես ի մի հավաքվել։ Բուլղարների առաջնորդը ձեռք բերած գերիներով ու հսկայական ավարով վերադարձավ իր երկիրը՝ [Թովմայի] դեմ տարած հաղթանակի առթիվ փքված ու գոռոզացած։ Քաղաքի պաշտպանման համար առանձնացված ռազմածովային ուժերը, իմանալով կատարվածի մասին, անցնում են կայսեր

կողմը ու նրան միանում։ Իսկ ապստամբը, իրեն դաշնակցած դևերից այսահար, այնքան հանդուգն դարձավ, որ թեպետև ամեն կողմից հարվածներ ստացավ ու ջարդ կրեց, իր հսկայական զորքը գնալով նոսրացավ. ինքը ոչ մի բացահայտ հաղթանակ չտարավ՝ ո՛չ ճակատամարտում, ո՛չ էլ ամեն օր անթիվ մարդկանց կողմից քաղաքի պարիսպների դեմ գործի դրվող մեքենաների օգնությամբ, քաղաքից բազում ասպարեզներ հեռավորության վրա գտնվող բուսականությամբ հարուստ, ջրերով առատ, բանակելու համար Դիաբասիս կոչվող մի դաշտում դարձյալ բանակ դրեց։ Այդտեղից նա ասպատակություններ էր գործում, քաղաքի առաջ բնակվող ժողովուրդը թալանում ու բնակավայրերը կրակի տալիս, բայց, ինչպես և նախկինում, չէր [համարձակվում] քաղաքի բնակիչների դեմ հանդես գալ։ Այդ բանը Միքայելից չվրիպեց, և նա ուժեղ զորք կազմելով, իր հետ ունենալով նույն այն Օլբիանոսին և Կատակիլասին, որպես իր տագմաների վստահելի ու հավատարիմ [հրամանատարների], նրա դեմ արշավեց։ Միքայելը տեսավ, որ Թովման իրենից ո՛չ երկյուղեց, ո՛չ վախեցավ, ընդհակառակը շտապեց իրեն ընդդիմակայել, քանզի վճռել էր ամեն ինչ ճակատամարտում լուծել։ Ցանկանալով կայսեր պարտության մատնել ռազմագիտական խորամանկությամբ, նա իր խորամանկության զոհը դարձավ և իր նպատակին ամենևին չհասավ։ Թովման հրաման էր տվել ճակատամարտի հենց սկզբում կայսեր առջև փախուստի դիմել։ Նա չէր պատկերացնում իր զինվորների տրամադրությունը, զինվորներ, որոնք նրա պատճառով երկար ժամանակ կտրվել էին իրենց կանանցից ու զավակներից, իրենց ձեռքերը պղծել եղբայրական արյունով։ Նրանք ենթադրելով, որ բաց դաշտում երկար չեն լինելու, այլ քիչ ժամանակ, սկզբնական շրջանում ամեն ինչ հլու-հնազանդ տանում էին, բայց երբ ժամանակը երկարեց (երրորդ տարին էր ընթանում), և ամեն օր տեղի ունեցող դեպքերը իրենց համոզում էին, որ ձեռնարկել են անհնարին մի գործի, որ ծառայում են մի անհատի քմահաճույքին, նրա ցնորամտության. ահա նահանջի մասին տրված հրամանը երկնքից ընկած համարելով, այն ի կատար էին ածում ոչ ըստ Թովմայի մտահղացման, այլ իրենց շահերին համապատասխան։ Թովման նրանց կարգադրել էր նահանջեն այնքան, ինչքան դա անհրաժեշտ էր կայսեր ռազմաշարքը ցրելու համար, որից հետո պետք էր շրջվել և հակառակորդին գլխովին կոտորել։ Բայց [Թովմայի զինվորները], տեսնելով կայսեր՝ իրենց հետապնդող զորքի կարգ ու կանոնը, տակտիկական հմտությունը, որ սպասածի պես այն հեշտությամբ ցրիվ չեկավ, դիմեցին անկանոն փախուստի ու դեսուդեն ցրը-

վեցին։ Մնացածները քիչ-քիչ սկսեցին Միքայելի կողմն անցնել և նրան կայսր ճանաչել, իսկ Թովման մի քանի հոգով փախուստի է դիմում դեպի Ադրիանուպոլիս[58], ուր և կանգ է առնում։ Նրա խորթ որդին՝ որդեգիր Անաստասիոսը ևս փախուստի դիմելով, հասնում է Բյուզե քաղաքը[59]։ Իմ կարծիքով դա պատահականություն չէր, այլ մտածված քայլ, որպեսզի յուրաքանչյուրը, իր վրա բևեռելով կայսեր ուշադրությունը, հնարավորություն տա մյուսին շունչ քաշելու և իր համար պարեն հավաքելու։

19. Կայսրը կրնկակոխ հետապնդելով նրանց, վճռեց ամենից առաջ Թովմային օղակի մեջ առնել, որպեսզի այն, ինչ անցյալում իր՝ կայսեր գլխին էր եկել, Թովմային պատահի[60]։ Այսպես ահա Միքայելը շրջապատում է նրան, բայց չի ջանում նրան ջարդել պաշարողական մեքենաներով կամ այլ միջոցներով, քանզի խուսափում էր եղբայրասպան պատերազմից, ապա և չէր ուզում նման մեքենաների գաղտնիքը Սկյութիայի[61] բնակիչներն իմանան։ Նա ջանում էր Թովմային պարտության մատնել սովի, մթերքների պակասությամբ, քանզի հայտնի էր, որ քաղաքը[62] զգում է պարենի պակաս, այն ամբարած պարեն չունի։ Միքայելը այդ բանին տեղյակ լինելով, սկսեց ահա այդ ուղղությամբ գործել։ Պաշարյալը ամենից առաջ քաղաքից դուրս հանեց իր գործին ոչ պիտանի անասունները, ապա և բոլոր տարեց մարդկանց։ Նա իր բոլոր ձեռնարկումներում դիմում էր ոչ թե քաղցր խոսքին, այլ գործի դնում բռնակալի բիրտ կամքը։ Դա զարթնեցրեց ու նորոգեց նրա դեմ եղած ատելությունը։ Իսկ այնուհետև, երբ սովը գնալով սաստկացավ և ոչ մի տեղից հույս չկար, որովայնն էլ ճրնշում գործադրելով իր հարկը լրիվ էր պահանջում, Թովմայի զինվորներից ոմանք ինչ-որ դարպասներից ծածուկ դուրս էին գալիս, ոմանք էլ պարիսպներից պարաններով ցած իջնելով, գնում կայսեր էին հանձնվում, իսկ ոմանք էլ փախուստի էին դիմում դեպի [Թովմայի] որդին՝ Բյուզե քաղաքը։ Բայց քանի որ նրանք ոչ միայն ամենակարևոր մթերքների պակասն էին զգում, այլ անգամ սլիդծ ու անսուրբ[63] և ստիպված փտած մորթիներ ու կաշիներ էին ուտում, քաղաքում եղողներից ոմանք կայսեր հետ բանակցությունների մեջ մտան, իրենց գործած զանցանքների համար ներում խնդրեցին և, այն ստանալուց հետո, Թովմային ձերբակալելով, թշնամու մոտ բերեցին։ Միքայելը նախ նրա հետ վարվեց, ինչպես կայսրերը վարվում էին հնում, սովորույթ, որ արդեն վերստին կյանքի էր կոչվել, այն է՝ նրան իր ոտքերի տակ առավ, նրա ձեռքերն ու ոտքերը կտրեց և, ավանակի վրա նստեցնե-

լով, հրապարակայնորեն ծաղրուծանակի ենթարկեց։ Թովման լոկ մի բան էր անվերջ կրկնում՝ «Ողորմիր ինձ, թագավոր ճշմարիտ»[64]։ Կայսեր հարցին՝ իր հետ եղող ընկերների մեջ արդյոք կա՞ն այնպիսիք, որոնք իր հայացքներն են դավանում, [Թովման] շատերի անունը կտար, եթե մի այր, Հովհաննես Հեքսաբուլիոսը[65] չասեր. «Պետք չէ, ավելին, շատ վատ է, ո՛վ կայսր, հավատալ թշնամու՝ ընկերների դեմ արված ամբաստանությանը»։ Այդ խոսքով նա տառապյալ քաղաքացիներին, նրա ընկերներին սոսկալի պատիժներից փրկեց։ Ապստամբն ահա այդպես իր կյանքը կործանեց՝ խոշտանգվելով հոգին փչեց, ինչպես տանջամահ արվող մի անասուն՝ հոկտեմբեր ամսի կեսերին[66]։ [Ապստամբության] սկզբում իրեն թվում էր, թե մեծագործ է ու հանդուգն, նպատակը մինչև վերջ իրականացնելու կարող, բայց ընթացքում իրեն հանդես բերեց շատ, ակնկալվածից ավելի անկարող։ Ի՞նչն էր այդ փոփոխության պատճառը, իր թուլանա՞լը, թե՞ իր դեմ մարտնչողների հզորանալը, դժվար չէ ասել։ Քանի նա սեփական շրջանում էր մղում պատերազմը, որն իր ինքնավստահությամբ ու հանդըգնությամբ ոտքի հանեց, և [պետության] վիճակի կայունացման մասին հույս չկար, հաջողությունները շատ արագ էին ձեռք բերվում, ամեն ինչ ընթանում էր ըստ նրա նախագծածի։ Բայց երբ կարճ ժամանակում համայն Ասիան իրեն ենթարկելով, հզոր բանակով, առանց որևէ դիմադրության հանդիպելու անցավ Եվրոպա, լինելով անկիրթ ու անդաստիարակ, բռի ու խաբեբայի մեկը, գոռոզացավ ու փքվեց, խելքը կորցրեց, տարվեց չափ ու սահման չունեցող անառակությամբ ու գիջությամբ՝ օրն անցկացնելով հարբեցողությամբ ու մոլեգնությամբ։ Բայց ասվածով բավարարվենք, թույլ տանք մարդկանց սեփական խելքով դատեն, եթե չեն կամենում մեր պատմածին հավատալ[67]։ Ահա այդ մասին այսքանը բավական է։ Ինչ վերաբերում է Բյուզեում գտնվող [ապստամբ] զինվորներին, ապա նրանք, աչքի առաջ ունենալով իրենց գլխին կուտակվող ամպերը, շատ շուտով փոխեցին իրենց միտքը։ Տեղեկանալով Թովմայի գլխին պայթած աղետի մասին, նրանք նույն կերպ վարվեցին՝ Անաստասիոսին, ձեռքերն ու ոտքերը կապած տարան [կայսեր մոտ], և նա ստացավ նույն այն պատիժը, ինչ և իր հայրը և հոգին ավանդեց։

20. Սակայն Թրակիայի ծովափնյա Պանիոն և Հերակլիա[68] քաղաքների [ապստամբները], հակառակ [իրենց պարագլուխների] նման վախճանին, չէին հրաժարվում ապստամբի ծրագրից, այնքան սաստիկ էր Միքայելի դեմ եղած ատելությունը։ Դրա համար կային բա-

զում պատճառներ, բայց հիմնական պատճառը Միքայելի՝ սրբապատկերների դեմ արշավանքը չեղյալ հայտարարել չցանկանալն էր։ Այգուհանդերձ [Միքայելը] մոտեցավ այդ [քաղաքներին], և երբ այդ միջոցին երկրաշարժ եղավ, և Պանիոնի պարիսպը խորտակվեց. Միքայելի առջև հեշտությամբ ճանապարհ բացվեց։ Հերակլիան դեռ դիմանում էր, բայց երբ գրավվեցին նրա ափամերձ շրջանները, այն ևս ատանց արյունահեղության ընկավ, հրաժարվեց հետևել ապստամբի ծրագրին և կայսեր՝ հավատարիմ լինելու մասին առհավատչյա տվեց։

Ահա Թովմայի [ապստամբության] հետ կապված դեպքերը սկսվելուց հետո այսպիսի վախճան ունեցան, և կայսրը հաղթական վերադարձավ ցամաքային քաղաքների վրայով։ Նա նախկին ապստամբների դեմ ուրիշ վատ բան չարեց, այլ միայն [հաղթանակի] առթիվ [ձիարշավարանում] տեղի ունեցած մրցումների ժամանակ նրանց, ձեռքերը մեջքին կապած, անցկացրեց դաշտի միջով, իսկ մեղավորներից գլխավորներին աքսոր ուղարկեց։

Քիբեային և կողոնիացի Գազարենոսին, Թովմայի հավատարիմ մարդկանց[69], որոնցից առաջինը իր ձեռքում էր պահում Կաբալան[70], իսկ երկրորդը՝ Սանիանան[71] և այնտեղից հաճախակի ասպատակություններ էին գործում, ապրում ավազակությամբ ու բռնությամբ, Միքայելն անհապաղ խրիսովուլ[72] է ուղարկում, մագիստրոսի բարձր պատվաստիճան խոստանում, իրենց գործած մեղքերին՝ թողություն, ապա և տեղեկացնում Թովմայի մահվան մասին։ Սուրհանդակը թեև չկարողացավ նրանց համոզել, քանզի գոռոզ ու սանձարձակ հոգու տեր մարդիկ էին, նրան հաջողվեց ապստամբների մի քանի ավելի ցածրաստիճան ղեկավարների խորամանկությամբ կորզել, կայսեր կողմնակից դարձնել, համոզել, որ երբ [Քիբեան ու Գազարենոսը] դուրս գան հերթական ասպատակության, նրանց հետևից փակեն պարիսպների դարպասները և խռովակցության մեջ չմտնեն։ Այսպես էլ եղավ։ Երբ նրանք դարպասները փակ գտան, երկյուղով լցված անհապաղ Ասորիք տանող ճանապարհը բռնեցին, բայց ձերբակալվելով՝ իրենց հոգին կախաղանի վրա ավանդեցին։ Արժե պատմել և հետևյալի մասին, թե ինչպես Գազարենոսին նենգելով, պարիսպներից դուրս թողեցին։ Սուրհանդակը բարեկամացել էր քաղցր ձայն ունեցող մի գյուղացու, որը մեծ հաճույքով երգում էր այդ միապաղաղ գեղջկական երգերը։ [Սուրհանդակը] մի երգ հորինեց՝ ուղղված [Գազարենոսի] տնտեսին՝ հետևյալ անափոփայով[73]. «Լսի՛ր, տեր տնտես, ինչ է ասում Գյուբերիսը։ Եթե ինձ տաս Սանիանան, ես քեզ Նեոկեսարիայի մետրոպոլիտ կանեմ»։

Գյուղացին, երբ այդ երգը բազմիցս երգեց, դա գրավեց տնտեսի ուշադրությունը։ Նա հասկացավ երգի իմաստը, դժբախտությունն ուղղելու միջոցը, և երբ մի անգամ Գազարենոսը [քաղաքից] դուրս եկավ, նա հետևից փակեց դարպասները և նրան դրսում թողեց։ Ահա այսքան այդ բարձրադիր փոքր քաղաքների և Միքայելի կողմից նրանց վերագրավման մասին[74]։

20.[75] Բայց վիճակված չէր, որ պատուհասը այսքանով վերջ գտներ։ Երկու մայր ցամաքները, այն է՝ Ասիան և Եվրոպան, աստծո բարկությամբ ինչպես [մի մարմնի] գլուխն ու պոչը, սպանություններից, հրդեհներից, երկրաշարժերից, հափշտակություններից, եղբայրասպան կռիվներից, քաղաքների հուսաբեկ [բնակչության] գաղթերից, երկնային նշաններից, փոթորիկներից դեռ խելքի չեկած, որպեսզի պատուհասը կատարյալ լինի, այն հասավ տանջված կղզիներին՝ կարծես իրանին, որպեսզի ամբողջ մարմինը խեղված լինի։ Այդուհանդերձ այդ ամենը չկարողացան սթափեցնել աստված-մարդու պատկերը երկրպագել հրաժարվողներին։ /21/ Երբ Թովմայի՝ ապստամբություն բարձրացնելու մասին լուրը շատ չանցած տարածվեց ամենուր, Իբերիայի[76] ծոցում, օվկիանոսին մոտիկ բնակվող հագարացիները (սրանց բավական անց իսպանացիներ կոչեցին), նկատի ունենալով իրենց ժողովրդի ստվարաթվությունը, մտահոգված էին նրա վիճակով, քանզի տեսնում էին, որ երկրի արևմտյան մասը աղքատիկ է ու խղճուկ, հողը ոչ բարեբեր, ոչ էլ բերքառատ, նմանապես և Իբերիայի արևելյան ու հարավային մասերը (երկիրն իր ամբողջության մեջ պիտանի չէ որևէ կուլտուրայի մշակության համար, ոչ էլ բարեբեր է, բայց արևմտյան մասը, ինչպես ասվեց, մնացած երկրի համեմատությամբ էլ ավելի չորային է ու աղքատ), այդ պատճառով նման հաղթանդամ մարդկանց կերակրելու ու կարիքները բավարարելու անկարող, մարդկանց, որոնց աճը պայմանավորված է մթերքների առատությամբ և ոչ պակասությամբ, գնացին իրենց ամերմումնի Ապոխափսի[77] մոտ և խնդրեցին գաղութ հիմնել ու գաղթել, քանզի իրենց ստվարաթվությունն ու մթերքների պակասը նեղում է իրենց։ Ապոխափսը մեծ նավեր հանդերձեց, [այդ հագարացիներից] մեծաթիվ մարդկանց նավ նստեցրեց և արևելյան կողմում գտնվող և մեզ պատկանող կղզիների վրա առայժմ թալանի դուրս եկավ, իր հետագայի անելիքը գաղտնի պահելով։ Այդ ձևով նա ի կատար էր ածում նրանց ցանկությունը, ուրիշի ունեցվածքով կշտացնում նրանց, միաժամանակ նայում էր այդ կղզիներից ո՞րն է բարեբեր ու հարուստ՝ նրանց այնտեղ վերաբնակեցնելու համար։ Բազ-

մաթիվ կղզիների մոտենալով, նա չհանդիպեց մեծ կամ փոքր նավերով իրեն ընդդիմակայողների (բոլոր կղզիները զրկված էին նավերի օգնությունից, քանզի այն ժամանակ գնացել էին Կոստանդնուպոլսի վրա՝ Թովմային օգնելու). բոլոր կղզիներից, որոնց վրա նա ոտք էր դնում, ավար էր ձեռք բերում, սոնում։ Նա եկավ և Կրետե, հարձակում գործեց, ինչքան հնարավոր էր ասպատակեց այն, բնակչությունը գերեվարեց։ Ամեն կողմից տեղեկանալով երկրի բարեբերության մասին, որ [կղզին] հարուստ է բոլոր բարիքներով և բերքառատ է, ասաց. «Հենց սա է այն երկիրը, որից մեղր ու կաթ է ծորում»։ Այն ժամանակ նա ամեն տեսակի բարիքների տեր դարձավ և, տուն վերադառնալով, սկսեց տենդագին նավատորմիղ հանդերձել։ Երբ ձմեռը վերջացավ, և սկսվեց գարունը, քառասուն նավի վրա ռազմունակ մարդկանց նրստեցրեց, և, երբ փչեց նպաստավոր քամի, ուղիղ դեպի Կրետե նավեց, մնացած կղզիները բանի տեղ չդնելով։ Մոտենալով [Կրետեին], նա մտավ ու խարիսխ գցեց Խարաքս[78] կոչվող հրվանդանում։ Քանի որ ո՛չ իրենց մտնելու, ո՛չ էլ ափ դուրս գալու ժամանակ որևէ դժվարության չհանդիպեցին, նրանք դիմեցին ավարառության ու հափշտակության. և իրենց թալանն ու նախաձեռնությունը յուղի պես գնացին։ Նա հմուտ մարդկանց սովորական ասպատակության ուղարկեց՝ թշնամիներին գերեվարելու, իսկ ինքը մնացած մարդկանցով ուժեղ քամու ժամանակ, երբ թալանի ուղարկված մարդիկ բավական, ավելի քան տասը կամ տասնհինգ ասպարեզ, հեռացել էին, կրակի տվեց. հրկիզեց բոլոր նավերը, ոչ մեկը չխնայելով։ Երբ համայն զինվորները տեղի ունեցած արտասովոր դեպքի վրա ապշահար եղան (նրանք իսկույն նեթ վերադառնում էին), տեղի ունեցածի պատճառն էին ուզում սարսափահար իմանալ և նրան խիստ խոսքերով դիմեցին, նա, հիշեցնելով անցյալում իրենց քաշածները, ասաց. «Դուք ինքներդ գաղութ չէի՞ք ուզում, բարեբեր երկիր։ Իմ համոզմամբ սրանից լավը չկա, ես այստեղ եկա ձեր լավության համար, որպեսզի ինձ ազատեմ ձեր տաղտուկից»։ Երբ նրանք տագնապած հիշեցրին իրենց կանանց ու երեխաների մասին, նա ասաց. «Թող գերիածները ձեզ կին լինեն, շատ չանցած նրանցից երեխաներ էլ կունենաք»[79]։ Նման խոսքերից հանդարտած և սովածը ընդունելի համարելով, նրանք նախ մի խոր խրամ[80] փորեցին, նրա ներսում ցանկապատ սարքեցին, որից ահա մինչև օրս էլ այդ վայրը այդ խրամի անունն է կրում՝ Խանդաքս[81]։ Նրանք այնտեղ էին գիշերում՝ անհրաժեշտ պահակակետեր հաստատելով, և իրենց ավարն այնտեղ էին կուտակում։ /22/ Շատ չանցած կայսրն ամեն ինչի

մասին տեղեկացավ և պրոտոսպաթար Ֆոտինոսին, աստվածապսակյալ, երանելի Զոե կայսրուհու[82] նախապապին, որն այն ժամանակ Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր, նշանակեց Կրետեի գերագույն կառավարիչ։ Նա եղավ տեղում՝ կատարվածին ականատես ու ականջալուր, և, իրողությունը Միքայելին ավելի մռայլ գույներով ներկայացնելով, թշնամիներին այնտեղից վռնդելու կարող զորք պահանջեց։ Կայսրը զորավար Ֆոտինոսին օգնության, մեծ զորքով ու պատրաստությամբ, պրոտոսպաթար Դամիանոսին ուղարկեց, կայսերական ախոռապետին։ Նրանք միանալով իրար, հագարացիների դեմ պատերազմ ձեռնարկեցին, բայց ոչ մի արդյունքի չհասան։ Վերոհիշյալ Դամիանոսն ինքը հենց մարտի սկզբում վիրավորվեց ու սրի քաշվեց, դա պատճառ դարձավ, որ մնացածները, այլևս գիմադրելու, հաղթանակ տանելու մասին չէին մտածում, այլ պարտություն կրելով, փախուստի դիմեցին։ Փախուստի ժամանակ Ֆոտինոսն էլ միթիանի նավակի մեջ հազիվ Դիայում[83] փրկվեց և տեղի ունեցածի մասին անձամբ կայսեր տեղեկացրեց։ Բայց հակառակ իր փախուստի դիմած լինելուն, այն պատճառով, որ նա վայելում էր կայսեր մշտական հարգն ու պատիվը, Կրետեի զորավարության փոխարեն ստանում է Սիկիլիայինը։ /23/ Ինչ վերաբերում է դեռևս իրարանցման ու տագնապի մեջ գտնվող իսպանացիներին[84], ապա կղզու լեռներից մի վանական իջավ նրանց մոտ ու ասաց, թե իրենց համար կա ավելի հարմար տեղ՝ և՛ քաղաք կառուցելու, և՛ հաստատվելու ու տիրանալու համար։ Նա նրանց խանդաքսը ցույց տվեց, այն տեղը, որտեղ այժմ կառուցված է նրանց քաղաքը։ Քաղաքի կառավարիչն ահա այն ժամանակ դարձավ Ապոխափսը։ Նրանք այդ քաղաքից, կարծես ինչ-որ միջնաբերդից դուրս գալով, ասպատակում էին համայն կղզին, ոչ պակաս չափով նաև նրա մոտակայքում գտնվող այլ կղզիներ, այն աստիճան, որ անգամ այնտեղ բնակություն էին հաստատում, իրենց ենթարկելով դրանց տեղացի բնակիչներին։ Նրանց թեթևազեն հետևակայինները գրավեցին Կրետեի քսանինը քաղաք, և լոկ մեկ քաղաք մնաց անառիկ ու չտուժեց։ Այս, ճիշտ է, թեև հպատակություն հայտնեց, այդուհանդերձ նրա բնակչությունն անաղարտ պահեց իր նիստուկացը, քրիստոնեական հավատքը։ Այն ժամանակ էր, որ Գորտինեի[85] եպիսկոպոսը, տեղի չտալով Քրիստոսին ուրանալու նրանց պահանջին, մորթվեց, ինչպես զոհաբերության սուրբ կենդանի։ Նրա արյունը, ինչպես Աբելի և Զաքարիայի[86] արյունը, մնալով անջինջ, աղաղակում է առ աստված։ Նրա արյան մեջ սպունգը թաթախելով, մյուռոն են քամում, իսկ սպունգի

վրայի արյան գույնը ջնջել անհնարին է։ Այդ ժամանակներում հանուն Քրիստոսի մարտիրոսացած բազմաթիվ այլ մարդկանց դամբարաններ ու շիրիմներ կանգնեցվեցին այնտեղ, այդ թվում՝ տասը հուշակավոր վկաների։ Այն ժամանակ ահա այդ ձևով կրետացիք քրիստոնյաների շրջանից բռնի անջատվեցին[87]։

24. Երբ ժամանակի ընթացքում Միքայելը մի կերպ կարողացավ չորս կողմից իրեն հարվածող թշնամիներին հաղթահարել, նա պետք է աստծո մասին մտածեր, նրա բարկությունը մեղմեր, նրա գթասրտությունը գործով շահեր, սակայն նա գործում էր, երկիրը կառավարում քաղաքացիական օրենքներին հակառակ, կարծես իրեն փրկողը [աստված] չէր, այլ հենց ինքը։ Երբ իր կինը վախճանվեց, ուզենալով ժողովրդի աչքը մտնել՝ ցույց տալով, որ նրա վախճանը շատ է սգում, գաղտնի ու ծածուկ հրահանգներով կարգադրում էր սենատին[88] իրեն վերստին ամուսնանալու մասին որոշում ընդունել, այն էլ ոչ թե իրեն խնդրելով, այլ պարտադիր կարգով, հակառակ դեպքում թող սենատորները սպառնան ապստամբություն բարձրացնել, ասեն թե. «Լավ բան չէ կայսրը առանց կնոջ լինի, մեր կանայք էլ՝ տիրուհուց ու կայսրուհուց զուրկ»։ Ահա իբր թե նա տեղի տվեց այդ սարքովի խոսքերին, որոնք հնարավոր չէր, որ ժամանակի ընթացքում լույս աշխարհ չգային։ [Միքայելը] նախ և առաջ [սենատորներից] գրավոր պարտավորագիր պահանջեց, թե իր ապագա կնոջ և նրանից ծնվելիք երեխաներին իր մահից հետո մշտական սատար ու պաշտպան կկանգնեն, բնականաբար երեխաներին կայսրեր պիտի ճանաչեն, իսկ կնոջ՝ կայսրուհի[89], այսինքն՝ չլինելու բաների վերաբերյալ։ Միքայելն այդ ձևով ուզում էր տիրել ոչ միայն ներկայի վրա, այլև ապագայի, բայց դրա համար պետք էր, որ նա ամեն ինչ վստահեր ոչ թե [սենատորներին], այլ աստծուն, որով «թագաւորք թագաւորեն եւ բռունք ունին զերկիր»[90]։ Բոլոր դեպքերում համայն երկրի տիրակալը, բարեշնորհ կյանքի թշնամին, սենատի հրամանին տեղի տվեց և ակամայից համաձայնվեց ամուսնանալ։ Նա ամուսնացավ ոչ սովորական մի կնոջ հետ, այլ դեռ անցյալում աշխարհիկ կյանքից ու աշխարհից խորշող մեկի հետ, որ Քրիստոսին էր հարսնացել և դեռ երեխա հասակից առանձնացել էր ու ճգնավորել Իշխանաց կղզու վանքում, իր անձը աստծուն նվիրել։ Նրա անունը Եվփրոսինե էր, որ դժբախտություն էր ունեցել լինելու դուստրը Կոստանդնի[91], որին մայրն արդար կերպով կուրացրել էր։ Միքայելն ահա այդպես վարվեց, բայց դրանով նա աստծո գթությունը չշահեց, ընդհակառակը, բարկությունը բորբոքեց։

25. Միքայելը Կրետեն նվաճողների ու ասպատակողների դեմ վերստին զորք ուղարկեց։ Զորավարի անունը Կրատերոս էր, որ այն ժամանակ Կիբյուրրեոտների բանակաթեմի զորավարն էր։ Նա իրեն ենթակա, ինչպես և բոլոր մյուս բանակաթեմերից յոթանասուն դիերա առնելով, զենք ճոճելով, քաջաբար հարձակման անցավ։ Բայց քանի որ [հագարացիները] միտք չունեին տեղի տալ և վճռել էին մարտընչել, իրենց ուժն ու արիությունը ցույց տալ (սրանք մյուս հագարացիների համեմատությամբ ավելի ներհուն են), երկու կողմերը, երբ դեռ արեգակի ճառագայթները նոր էին տարածվում երկրի վրա, քաջաբար բախվում են միմյանց, ճակատամարտ տալիս։ Մինչև կեսօր և ոչ մի կողմը տեղի չտվեց, այլ արիաբար մարտնչելով, իրենց ուժն ու կարողությունը ցուցաբերեցին։ Երբ արևամուտին կրետացիք[92] հոգնած դիմեցին փախուստի, [հռոմայեցիները] նրանցից շատերին կոտորեցին, ավելի մեծ թվով [հագարացիների] էլ, որոնք զենքերը գցած փախչում էին, կրնկակոխ հետապնդելով, գերի վերցրին։ Եթե նրանք ջանք գործադրեին, քաղաքը նույն օրն իսկ կգրավեին, բայց վրա հասած գիշերը չափես փոխեց իրադրությունը, և հանգիստ պահանջող զինվորները ոչ թե փրկություն, այլ չարդ ստացան։ [Հռոմայեցիներին] թվում էր, թե արդեն հաղթանակ են տարել, նրանք վստահ էին, որ հաջորդ օրը թվական առումով նոսրացած [թշնամիներին] շուտով գերի կվերցնեն, այդ պատճառով նրանք իրենց տվեցին չափ ու սահման չունեցող կերուխումի, կարծես գտնվելիս լինեին սեփական և ոչ թշնամական երկրում, ամենևին չհոգացին ո՛չ պատերազմական օրենքով նախատեսված հերթապահության, ո՛չ էլ անվտանգությունն ապահովող ուրիշ միջոցների մասին, այլ միայն քնի։ Նրանք ամեն ինչ հեշտությամբ տակնուվրա անող ու կործանող անհոգության ու անփութության իշխանության տակ էին։ Եվ այսպիսով, մոտավորապես կեսգիշերին անել վիճակում գտնըվող և այդ պատճառով իսկ անքուն մնացած կրետացիք, իրենց դիտակների միջոցով իմանալով հռոմայեցիների ճամբարի՝ քնով ու գինով տարված լինելու մասին, անմիջապես հարձակման անցան և բոլորին սրի քաշեցին, ինչպես ասում են, բոթը տեղ հասցնող մի սուրհանդակ անգամ չփրկվեց և այնտեղից չվերադարձավ, այլ միայն զորավարը, որ փորձում էր փրկվել՝ առևտրական մի նավ նստելով։ Հագարացիների առաջնորդը, երբ ամենուրեք որոնելով նրան, չգտավ և իմացավ, որ նա փախուստի է դիմել, հրամանատարներին կարգադրեց բեռնատար նավերով նրան որոնեն։ Նրան բռնեցին Կո[93] կղզում և կախաղան հանելով սպանեցին։ Ահա այդ ճակատամարտի և պատ-

բազմի ժամանակ տեղի ունեցածը, որը հռոմայեցիների գլխին սոսկալի աղետներ բերեց։ Խոսքը ոչ միայն հիշյալ պատերազմում կրած պարտությանն է վերաբերում, այլ այն ժամանակվանից [Կրետեում] տիրած ու հաստատված բազմագլուխ հիդրային[94], որին թեև տարբեր տեղերում շարունակ գլխատում են, բայց դարձյալ բուսնում է՝ մի այլ տեղում։

26. Դրանից հետո ողջախոհ, խորաթափանց մտքի տեր մի փորձառու զինվորական, մականունը՝ Օորիֆաս, կայսերական հրամանով յուրաքանչյուր զինվորին քառասուն ոսկեդրամ ռոճիկ վճարելու պատճառով՝ այն ժամանակ քառասնական[95] անունն ստացած մի զորամաս կազմելով, սկսեց ասպատակել այն կղզիները, որտեղ [հագարացիները] փոքրաթիվ էին։ Նրանցից ոմանց նա որոգայթ լարելով էր որսում, ուրիշների դեմ բացեիբաց պատերազմ մղում, որով նա նրանց գլխովին ոչնչացրեց ու կործանեց։ Ինչ վերաբերում է [Կրետեին], ապա, ինչպես երևում է, [Նրա հոգսը] նա մեզ ժառանգեց։ [Կրետեի] մասին ահա թող ասված հոգա, թող հոգա նա նաև մեր մասին, որ գիշեր ու ցերեկ այդ [կղզու] համար հոգի ենք մաշեցնում[96]։

27. Նույն այդ ժամանակները Սիկիլիայում տուրմարխի պաշտոնը վարող ոմն Եվփեմիոս կաթոգին սիրահարվել էր վաղուց միանձնուհու սքեմը հագած և վանքում ճգնող մի կուսի և ամեն ձևով ջանում էր կյանքի կոչել իր սիրային զգացումները՝ նրան կնության առնել։ Քանի որ իր կատարելիք արարքի թարմ նախադեպը արդեն կար, որի իրականացման ոչինչ խանգարող կամ արգելող կար, ես նկատի ունեմ Միքայելին (ինչպես ասվեց, նա ևս հանդգնեց նման բանի), նա վանքից առևանգում է կուսին և, նրա կամքին հակառակ, տիրանում։ Կուսի եղբայրները դիմում են Միքայելին և նրան պատմում պատահարի մասին։ [Կայսրը] Սիկիլիայի զորավարին կարգադրում է քննել հարցը, և եթե պարզի, որ բողոքը հիմնավոր է, ըստ օրենքի նման արարքի հանդգնած Եվփեմիոսի քիթը կտրի։ Եվփեմիոսը, տեղեկանալով այդ մասին, օրենքի՝ իր անձի նկատմամբ կատարվելու հնարավորության, կայսեր սպառնալիքի, իր ստորադրյալների և պաշտոնակից մի քանի տուրմարխների հետ չարամիտ համաձայնության գալով, իր հարցով տեղ հասած զորավարի ժամանումից անմիջապես հետո փախուստի է դիմում Աֆրիկայի ամերմումնիի մոտ։ Նա խոստանում է նրան հպատակեցնել Սիկիլիան, վճարել բազում հարկեր, միայն թե նա իրեն կայսր հռչակի և օգնական [զորք] տա։ Ամերմումնին նրան հռոմայեցիների կայսր է հռչակում, տալիս բազում զորք, որով տիրանում

է Սիկիլիային. Հենց նրա [Եվփեմիոսի] ձեռքից է նա այն ստանում, և Սիկիլիայի կորուստը ունեցավ այլ հետևանքներ ևս։ Այդ մասին շատ հստակ տեղեկացնում է մեր ձեռքն ընկած ուղղագրության մասին Թեոգնոստոսի գրվածքը։ Ով ծանոթանա նրան, հանգամանորեն կտեղեկանա։ Ասենք այստեղ, որ Եվփեմիոսը շուտով, որպես իր ապստամբության և սեփական անօրինության վարձ, գլխատման է ենթարկվում։ Կայսերական հանդերձներ հագած՝ նա գնաց նաև դեպի Սիրակուսա[97] և իր զինվորների զորաշարքից ու թիկնապահներից հեռացած, քաղաքից մեկ նետընկեց հեռավորության վրա սկսեց [Սիրակուսայի] բընակչության հետ խոսել վեհապետի ու կայսեր պատշաճ տոնով։ [Քաղաքից] երկու եղբայրներ տեսան նրա մոտենալը և պայմանավորվելով հանդարտ մերձեցան նրան՝ իբրև թե կայսեր վայելող պատիվը հատուցելու։ Եվփեմիոսը ուրախությամբ ընդունում է նրանց կողմից իր կայար հռչակվելը, ունկնդրում նրանց, ապա մոտ կանչում, որ սիրալիր համբուրի։ Այն պահին, երբ նա գլուխը խոնարհեց ու շրթները հպեց եղբայրներից մեկի շրթներին, մյուս եղբայրը նրան մազերից պինդ բռնեց, իսկ առաջինն էլ գլուխը կտրեց։ Ահա Եվփեմիոսը այս կերպ ավանդեց հոգին։

23. Հագարացիներն այն ժամանակ ոչ միայն Սիկիլիային տիրեցին, այլև Կալաբրիային ու Լանգոբարդիային։ Նրանք ասպատակ էին սփռում, ավերում ու ոտնատակ անում համայն երկիրը՝ մինչև երանելի կայսր Վասիլի թագավորությունը [98]։ Բայց այդ մասին խոսք կլինի նրա պատմությանը նվիրված գրքում։ Ինչ վերաբերում է Միքայելին, ապա նա, թագավորելով ինը տարի և ութ ամիս, վախճանվեց միզակապություն հիվանդությունից։ Հիվանդությունն սկսվեց երիկամներից։ Նա հրաժարվեց սրբապատկերների[99] հանդեպ իր տածած ատելությունից, նա չէր ուզում մեր փրկության համար մարդեղացած Քրիստոսի պատկերը երկրպագել, դեռ ավելին, նա հեռացրեց սրբապատկերները երկրպագող Մեթոդիոսին ու Եվթիմիոսին, որոնց մասին խոսել ենք[100]։ Նա է՛լ ավելի բորբոքեց հագարացիների դեմ մղվող անհաշտ պատերազմը[101]։ Աստված նրա գործած հանցանքների համար մեր գլխին բերեց Թովմայի, կրետացիների, ապա նաև հիշյալ աֆրիկացիների փորձանքը։ Այն ժամանակ համայն Դալմատիան հռոմեական կայսրությունից անջատվեց, բոլորը ինքնուրույն ու անկախ դարձան՝ մինչև երանելի կայսր Վասիլի թագավորությունը։ Նրա օրերում նրանք դարձյալ հռոմայեցիներին հպատակվեցին։ Իրականացավ և Միքայելին վերաբերող գուշակությունը, որն ասում է.

Որբ Բաբելոնի վրա իշխի
Շատ ծանրալեզու և անչափ արծաթասեր օձը,
Երկրի վրա փորձանքներ են գալու։

Նրա մարմինն ամփոփվեց սուրբ Առաքելոց տաճարում, Հուստինիանոսի հերոոնում, թեսալական .կանաչ գույնի տապանում։

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

## ԹԵՈՓԻԼՈՍԻ՝ ՄԻՔԱՅԵԼԻ ՈՐԴՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Միքայել Թլվատի՝ ինր տարի և ութ ամիս տևած թագավորության ժամանակ տեղի ունեցած դեպքերի մասին խոսվեց նախորդ գրքում։ Միքայելի որդի Թեոփիլոսը, որն արդեն հասակ էր առել, ինդիկտիոնի ութերորդ տարվա հոկտեմբեր[1] ամսին ժառանգեց հայրական իշխանությունը։ Նա ցանկանում էր իրեն ներկայացնել արդարության ջերմ պաշտպան, քաղաքացիական օրենքների ճշմարիտ պահապան, բայց դա կեղծավորություն էր։ Իրականում նա իրեն հեռու էր պահում դավադիրներից, որպեսզի հանկարծ մեկն ու մեկն իր դեմ ոտնձգություն չկատարի։ Իր գլխին կախված վտանգից երկյուղելով, նա վճռեց իշխանությունը դավադրության միջոցով իր հոր տվողներին՝ Լևոնի դեմ ապստամբությունն բարձրացնողներին, գլխովին ոչնչացնել ու կոտորել։ Նման մտադրությամբ նա կարգադրեց՝ բոլոր նրանք, ովքեր տվյալ պահին օգտվում են կայսերական պատիվներից, ինչպես և նրանք, ովքեր անցյալում էին արժանացել կայսերական որևէ մեծարանքի, հավաքվեն Մագնավրայում[2]։ Երբ այդ բանը տեղի ունեցավ (հրամանը քամահրել ոչ ոք չէր համարձակվել), նա առայժմ իր հոգու դաժանությունը կարծես խավարի մեջ պահեց և հանդարտ ու մեղմ մի քանի խոսքով դիմեց նրանց. «Իմ ժողովուրդ ու կղեր։ Իմ հայրը կամենում էր ու ցանկանում բազում պատիվների, բարերարությունների ու նվերների արժանացնել նրանց, ովքեր իրեն սատար կանգնեցին և քաջաբար պայքարեցին հանուն թագավորության։ Բայց քանի որ նա վախճանվեց նախքան իր մտադրությունն իրականացնելը, ինձ կտակեց ոչ միայն թագավորությունը, այլև այդ մարդկանց նման բարերարություն անելու պարտականությունը։ Դրա համար թող ամեն մեկը մեջտեղ գա և իրեն մեզ ներկայացնի»։ Այդ խոսքերից խաբված և ապակողմնորոշված՝ յուրաքանչյուրն իրեն մերկացրեց և բոլորին բացահայտեց իր ինքնությունը։ Թեոփիլոսն անհապաղ հյուպարքոսին[3] կարգադրեց գոր-

ծել համաձայն քաղաքացիական օրենքի։ Նա ասաց նրան. «Սրանց հատուցիր ըստ իրենց գործած արարքների, ոչ միայն այն բանի համար, որ չերկյուղեցին աստծուց, իրենց աչքը մարդկային արյամբ պղծեցին, այլև այն բանի համար, որ թշվառականները Քրիստոսի օծած թագավորին սպանեցին»։ Այդ կարգադրությունն անելով, նա ավարտեց այդ առաջին ու զարմանալի ժողով կոչվածը։ Մարդ կարող է գովել կայսեր ասելով, թե նա վարվեց համաձայն օրենքների, բայց ես չեմ կարծում, որ այդպիսին կարող է գործ ունենալ շատ հեզ ու մեղմ հոգու տեր մարդու հետ։ Թեոփիլոսն ահա այդ ձևով ոչնչացրեց նրանց, արածի վրա պիտի ավելացնել մի գովելի ու բարի գործ՝ իր խորթ մոր Եվփրոսինեին արտաքսելն ու նրան ստիպելը վերադառնալ այն վանքը, որտեղ նա միանձնուհու սքեմ էր հագել, նրան, որին պատմությունը համարում է Միքայելի երկրորդ կին։ Ոչ մի օգուտ չտվեցին վերևում մեր հիշած գրավոր պարտավորություններն ու բազում երդումները[4], քանզի արքան ապօրինի էր։ Ի՞նչն էր դրա պատճառն ի վերջո։ Այն, որ նա ամուսնացավ ոչ Տիրոջ ապավինելով (հիրավի, թող առներ մեկին, որ օրինավոր լիներ, և ոչ նրան, ով Քրիստոսի հետ իրեն արդեն կապել էր)[5]։ Նա իր հանդգնությամբ, այդ սարսափելի երդումները սպահանջելով, պատճառ դարձավ բոլորին աստծուց հեռանալու։

2. Այդպիսիք էին ահա Թեոփիլոսի առաջին քայլերը։ Իսկ այնուհետև նա հանդես եկավ որպես արդարության պաշտպան, բոլոր վատ մարդկանց համար եղավ սարսափելի, իսկ բարի մարդկանց համար՝ հիացմունքի արժանի։ Վատերի համար սարսափելի, քանզի նա արդար էր և վատության ատեցող, բարիներն էլ հիանում էին նրանով, քանզի նա գիտուն էր ու խիստ։ Այդուհանդերձ չի կարելի ասել, որ նա միանգամայն զուրկ էր վատությունից։ Ճիշտ է, ինչպես նա էր ասում, հավատում էր Քրիստոսին և նրա մոր, բայց և հետևում էր հորից ժառանգած պատկերամարտների պիղծ հերձվածին[6], որով խռովում էր բարեպաշտ ու ամենասուրբ ժողովրդին, ամեն տեսակի փորձություններ մատնում։ Իր ողջ թագավորության ընթացքում նա նրան հանգիստ չտվեց, և դա էր պատճառը, որ նա պատերազմներում հաղթանակներ չէր տանում, այլ միշտ պարտվում էր և պատերազմից վերադառնում ոչ արքայավայել։

3. Այսպիսով, որպես արդարության պաշտպան ու նախանձախնդիր, ապա և հավատքի դեպի աստվածամայրը, նա յուրաքանչյուր շաբաթ[7], ձի նստած, թիկնապահների ուղեկցությամբ, Մեսե պողոտա-

յով[9] ու հրապարակով գնում էր Վլախեռնայի սուրբ տաճարը։ Նա գնում էր բոլորի գործերով զբաղվելու, բայց նախ և առաջ դրկյալների, որպեսզի վերջիններս կարողանան բողոքել իրենց նկատմամբ արված անօրինությունների դեմ, առանց կաշկանդվելու ինչ-որ չարագործի հատուցման սպառնալիքից, և երկրորդ, որպեսզի շուկայով անցնելիսականատես լինի վաճառվող ապրանքներին։ Նա շուկայում ամեն ինչի գինն էր հարցնում և այն էլ ոչ ի միջի այլոց, այլ մեծ վճռականությամբ ու պահանջկոտությամբ, ոչ որոշակի մի ապրանքի, այլ ամեն ինչի, ինչ կարող է մարդկանց կերակրել՝ լինի ուտելիք, լինի խմելիք, ամեն տեսակի կենցաղային իրերի և հագուստեղենի, մի խոսքով շուկայում եղած վաճառքի առարկա ամեն ինչի։ Այդ էր պատճառը, որ նա հազվադեպ էր շքերթի դուրս գալիս, նա մեծ ջանասիրություն ու հոգատարություն էր ցուցաբերում ժողովրդին հուզող հարցերի նկատմամբ՝ լինի դատարանում, լինի, ինչպես ասացինք, շաբաթվա այդ այցելությունների ժամանակ։

4. Քանի որ քաղաքի առաջ փռված տարածությունները շոյում են մարդու աչքը և կարծես հաճախ դեպի իրենց են կանչում կայսրերին, Թեոփիլոսը պալատի ծովահայաց պարիսպները հին տեղից տարավ դեպի Հելիականի կողմը[10] (այնտեղ, որտեղ անցյալում ջրավազան կար, և որի մեջ մի կայսերորդի էր խեղդվել), պարտեզներ տնկեց և այնտեղ էր ազատ ժամանակն անցկացնում, բերկրում ու զվարճանում, ինչպես ընդունված է։ Մի անգամ, երբ նա այնտեղ էր գտնվում և, ինչպես ասում են, ընթրիքի էր նստած, տասը հազար տարողությամբ մի նավ՝ առագաստները նպաստավոր քամուց բացած, նրանց ահագին ստվերով նավահանգիստը ծածկեց, այնպես, որ կայսրն ապշեց։ Կայսրը տեղն ու տեղը հարցրեց՝ ո՞ւմ է պատկանում այդ բեռնատար նավը և ինչպիսի՞ ապրանք է տեղափոխում։ Երբ նրան ասացին, թե կայսրուհու[11] նավն է (դա հնարավոր չէր թաքցնել), պատմում են, կայսրն այն ժամանակ բան չասաց ու չարեց, մինչև այն օրը, երբ սովորաբար Վլախեռնա էր գնում։ Երբ եկավ այդ օրը, և կայսրը ինչ-որ մեկի միջոցով իմացել էր հիշյալ նավի՝ նավահանգստում խարիսխ գցած լինելը, գնաց դեպի նավը տանող ճանապարհով։ Նա Բոսպորում էր գտնվում։ Կայսրը տեղ հասնելով, կանգնեց իր հերթի մեջ գտնվող նավախելի մոտ և հարցրեց սենատորների, այն էլ ոչ մեկ, այլ երկու, երեք անգամ, թե նրանցից ո՞վ պարենամթերքի կարիք ունի՝ ուտելիքի, խմելիքի կամ տան համար անհրաժեշտ որևէ այլ բանի։ Թեև հարցը սենատորներին բազմաթիվ անգամներ տրվեց, նրանք միայն մեկ անգամ սատաս-

խանեցին, թե մինչև քո տիրությունն ու թագավորությունը մենք շատ լավ էինք ապրում, ոչ մի բանի պակաս չէինք զգում։ Նրանք ավելացրին նաև, թե իրենց ուղղված հարցերի վերաբերյալ ոչինչ չգիտեն։ Կայսրն ասաց. «Մի՞թե դուք չգիտեք, որ ինձ, շնորհիվն աստուծո կայսր եղողին, կայսրուհին ու կողակիցս նավազի է վերածել»[12]։ Եվ դառնությամբ ավելացրեց. «Ո՞վ է երբևիցե տեսել հռոմայեցիների կայսրին, կամ նրա կնոջ վաճառական»։ Երբ սենատորները նրա ասածներն անպատասխան թողեցին, կայսրը հրաման տվեց նավի մարդիկ միայն նավից անհապաղ դուրս գան և նավը խարիսխներով, առագաստներով, մնացած բոլոր գույքով հանդերձ կրակի տան։ Հետո նա շատ բան ասաց կայսրուհուն, նրա գլխին լուտանքներ թափեց, անգամ սպառնաց սպանել, եթե նման բան փորձի վերստին անել։

5. Թեոդորան (կայսրուհու անունը դա էր) որպես ծննդավայր Պափլագոնիան էր փառավորում, Եբիսսա վայրը[13], որպես հայր՝ Մարինոս անունով մի նշանավոր, ոչ սովորական մեկին, պաշտոնով դրունգար[14] կամ ուրիշների ասելով՝ տուրմարխ[15], իսկ մայր՝ Թեոկտիստեին, որին նաև Ֆլորինա էին անվանում։ Երկուսն էլ բարեպաշտ դաստիարակություն էին ստացել, չէին մերժում, ինչպես այն ժամանակ բոլորը, սրբապատկերների երկրպագությունը, այլ արտակարգ պաշտում էին ու պատվում։ Թեոդորան կայսերական թագը վաղուց էր կապել, իսկ նրա մայր Թեոկտիստեն՝ ստացել զոստե պատրիկուհու պատվաստիճանը[16]։ Թեոկտիստեն իր տունը, այնտեղ, որտեղ այժմ կառուցված է ու հիմնարկված Գաստրիա վանքը[17] (տունը գնել էր այդ պատրիկ Նիկետասից), հրավիրում էր Թեոդորայի դուստրերին (նրանք հինգն էին՝ Թեկլան, Աննան, Անաստասիան, Պուլքերիան և Մարիան), ընդհանրապես կին արարածին հրապուրող նվերներ էր տալիս և, նրանց հետ անձնական խոսակցություն ունենալով, աղաչում պաղատում էր կնոջ թուլամորթություն հանդես չբերեն, այլ արիանան. իրենց մոր նման մտածեն ու գործեն, համբուրեն ու պագանեն սրբապատկերները, դեն շպրտեն իրենց հոր դավանած հերձվածը։ Այդ ասելուց հետո, նա սրբապատկերներն իր ձեռքն էր առնում (նրանք մի արկղի մեջ էին պահված), հպում դեմքին ու շուրթերին, օրհնում, որով բորբոքում էր նրանց սերը դեպի սրբապատկերները։ Նա հանապազ էր այդպես վարվում և բոցավառում թոռների սերը դեպի սրբապատկերները։ Դա չվրիպեց Թեոփիլոսի ուշադրությունից։ Նա դուստրերին հարց էր տալիս, թե տատն իրենց ի՞նչ է նվիրել, ի՞նչ լավ բան է իրենց արել։ Մնացած դուստրերը խելամիտ լինելով խուսափում էին դաշույնի պես սուր

հարցերին պատասխան տալ, բայց Պուլքերիան, լինելով երեխա ու մանկամիտ, պատմում էր տատի հյուրասիրությունների մասին, նրա տված բազմաթիվ մրգերի, չմոռանալով ավելացնել սրբապատկերների երկրպագության մասին։ Նա միամտաբար ասաց, թե տատը արկղի մեջ բազում կուկուներ[18] ունի, որոնք գնում է գլխին, դեմքին ու համբուրում։ Կայսրը, լսելով դա, կատաղեց։ Բայց [զոքանչի] դեմ որևէ ծանր ու դառն բան գործելուն խանգարում էր այդ կնոջ հանդեպ իր տածած հարգանքն ու ակնածանքը, ոչ պակաս չափով նաև նրա անսաստ լեզուն (նա առանց քաշվելու նրան ծաղր ու ծանակի էր ենթարկում, խարազանում՝ [սրբապատկերները] խոստովանողներին անվերջ հալածելու համար, վերևում հիշված հերձվածի համար, գրեթե միայնակ բացահայտում նրա նկատմամբ բոլորի տածած հակակրանքը)։ Նրան հաջողվեց միայն դուստրերի ոտքը [տատի տնից] կտրել, նա արգելում էր նրանց հաճախել այնտեղ։

6. Սրա նման մի բան էլ Թեոդորայի հետ կատարվեց։ Կայսեր մոտ ծառայում էր մի կուրտ մարդուկ՝ անունը Դենդերիս, որ հոմերական Թերսիտեսից[19] ոչնչով չէր տարբերվում։ Նրա անկապ-անկապ խոսելը մարդկանց ծիծաղն էր առաջացնում և նրա պատճառած զվարճության համար է, որ նրան պահում էին պալատում։ Սա մի անգամ վայրաբար մտնելով կայսրուհու ննջասենյակը, նրան գտավ սրբապատկերները գրկած, եռանդագին իր աչքերին մոտեցնելիս։ Հիմարը, տեսնելով դրանք, հարցրեց՝ ի՞նչ են, և էլ ավելի մոտեցավ։ Թեոդորան գեղջկական լեզվով ասաց. «Սրանք իմ լավ կուկուներն են, ես շատ եմ սիրում նրանց»։ Այդ պահին կայսրը սեղանատանը նստած ճաշում էր։ Երբ Դենդերիսը իսկույն ևեթ նրա մոտ եկավ, և կայսրը հարցրեց նրան՝ ո՞րտեղից է գալիս, նա ասաց, թե մայրիկի մոտից, նա Թեոդորային այդպես էր անվանում[20], թե նրա մոտ տեսել է լավ կուկուներ, որ նա բարձի տակից էր հանում։ Կայսրը գլխի ընկնելով, թե ինչ նկատի ունի նա, գազազեց և ճաշը վերջացնելով ուղիղ Թեոդորայի մոտ գնաց, նրա գլխին բազում լուտանքներ թափեց, իր սանձարձակ լեզվով նրան կռապաշտ անվանեց, բթամտի ասածը հերթով պատմեց։ Թեոդորան նրա բարկությունը մեղմելու համար հանպատրաստից ասաց. «Ո՜վ կայսր, դու սխալ ես հասկացել, ես իմ նաժիշտների հետ իմ հայելու մեջ էի նայում, իսկ Դենդերիսը դեմքերի անդրադարձումը տեսնելով, եկավ հիմարություններ ասաց տիրոջ ու կայսեր»։ Այդ ձևով նա այն ժամանակ իջեցրեց նրա բարկությունը, իսկ մի քանի օր հետո Դենդերիսին դաստիարակեց, խելք սովորեցրեց, որ այսուհետև լավ կու-

կուների մասին ոչ ոքի բան չասի։ Օրերից մի օր գինի խմելիս, Թեոփիլոսն ամբարտավանացած, տիրուհուն ծաղրելով, Դենդերիսին հարցրեց՝ չարունակո՞ւմ է արդյոք մայրիկը համբուրել լավ կուկուները։ Դենդերիսը աջ ձեռքով փակեց իր բերանը, իսկ ձախը դնելով հետույքին, պատասխանեց. «Կուկուների մասին լռիր, ո՛վ կայսր»։ Այդ մասին ահա այսքան։

7. Պատերազմում իր քաջությամբ աչքի ընկավ մի շատ լավ ձի և հզոր բազուկ ունեցող մի զինվոր։ Զորավարը[21], որին նա ենթարկվում էր, աչքը դրել էր այդ ձիու վրա, որը զինվորին բազում անգամներ մահից էր փրկել։ Զորավարը, թեև դիմեց ամեն միջոցի, զինվորին բազում խոստումներ տվեց, բազմիցս խնդրեց այդ ձին, անգամ բռնության դիմեց, բայց արդյունքի չհասավ, չկարողացավ իր ենթակային համոզել։ Դրա վրա նա հեռացնում է զինվորին իր գլխավորած զորամասից և նրա հասցեին բազում ամբաստանություններ է ներկայացնում Թեոփիլոսին։ Զինվորն իր տանն էր մնում, այդ ձիու վրա ուրախանալով։ Բավական ժամանակ էր անցել, և զինվորին դարձյալ պատերազմի կանչեցին, պատերազմ, որ դժբախտների համար կործանում է։ Այնպես պատահեց, որ այդ մարդու դժբախտության ժամանակ Թեոփիլոսը մի լավ ձի պահանջեց։ Նա պաշտոնավոր անձանց և զինվորականների նամակներ ուղարկեց, հրամայելով՝ այսպիսի ու այսպիսի [մի ձի] գտնեն և իրեն ուղարկեն։ Զորավարն առիթից օգտվելով, բռնությամբ զինվորից խլեց ձին և որպես սեփականը կայսեր ուղարկեց։ Ահա պատճառը, որով [զինվորը] զրկվեց ձիուց։ Անակնկալ մի դեպքի առթիվ կայսրը բոլորին (այդ թվում և որևէ պատճառով պաշտոնանկ արվածներին) հրամայեց պատերազմի գնալ։ Հիշյալ զինվորը ևս պատերազմի գնաց առանց լավ ձիու, որով կայսրը նրա մահվան պատճառ դարձավ, [անօգնական] թողնելով աղքատ կնոջ և երեխաներին[22]։ Իսկ կինն ի՞նչ արեց։ Լսելով, որ կայսրը իրեն դիմողներին ուշադիր լսում է, որ նա արդարության պաշտպան է, իր սիրած ամուսնու կորստից վառված, երեխաներին կերակրելու անկարող, գալիս է մայրաքաղաք։ Տեսնելով որոշակի օրը, իր ամուսնու ձիու վրա նստած, Վլախեռնա գնացող Թեոփիլոսին, նա ծնկաչոք ու աղիողորմ պաղատում է կայսեր՝ ձիու սանձերը բռնած, և բացատրում նրան, թե ձին իրն է, և իր ամուսնու սպանության պատճառը ինքը՝ կայսրն է, և ոչ մի ուրիշը։ Կայսրը կնոջ շիտակ խոսքի վրա ապշահար եղավ ու քար կտրեց, քանզի ասվածի մասին նա ոչ մի գաղափար չուներ։ Նա պատվիրեց առայժմ նրան պահեն, մինչև պալատ վերադառնալը։ Վերադառ-

նալով նա իսկույն կարգադրեց կանչեն կնոջ։ Նա սնհապաղ ներկայացավ և ամեն ինչ պարզ ու հստակ մեկ-մեկ պատմեց։ Կայսրը հրամայեց զորավարին ներկայանալ և ձիու գործով նրան խստագույնս հարցաքննեց։ Երբ զորավարը հավատացնում էր, թե ձին իր սնից և ոչ թե որևէ այլ տեղից է ուղարկել, այն չի հափշտակել, կայսրն առերեսեց կնոջ, որպես նրա ասածների քննիչ ու մեղադրիչ։ Զորավարը չկարողանալով կնոջ ներկայության խաբեությամբ իրեն արդարացնել, դարձավ մի ողորմելի պաշտպանություն հայցող, աղիողորմ ընկավ կայսեր ոտքերին։ Իսկ ինչպե՞ս վարվեց կայսրը։ Նա այդ կնոջ և նրա երեխաներին հայտարարեց զորավարի իրավահավասար ազգականներ և նրա ունեցվածքի ժառանգներ, իսկ զորավարին էլ պաշտոնանկ արեց։ Այդպիսով, բոլորին պարզ դարձավ կայսեր արդար դատաստանը, նրա թշնամական վերաբերմունքը հափշտակիչների հանդեպ։

8. Նա ոչ պակաս չափով սիրում էր կառուցողական գործը և նրա նկատմամբ հոգատարություն ցուցաբերում։ Նա ի հիմանց վերակառուցեց, կարծես նոր դարձրեց, գեղեցկացրեց ու բարձրացրեց առավել խախտված պարիսպները և դրանք թշնամիների համար անառիկ դարձրեց։ Այդ պարիսպները մինչև օրս էլ կրում են նրա անունը. նրանց վրա այդ մասին արձանագրություն կա։ Թեոփիլոսը բացի այդ անառականոցներից քշեց թեթև բարքի տեր կանանց, այդ ամբողջ վայրը մաքրեց և նրա տեղում իր անունը կրող շատ գեղեցիկ, հսկայական, օդասուն ու գողտրիկ հիվանդանոց կառուցեց. այդ ձևով նա մաքրեց աղետաբեր ախտերը, և մարդկանց փրկարար բուժում պարգևեց։ Այդպիսին էր նրա վերաբերմունքը թեթև բարքի տեր կանանց նկատմամբ։ Թեև պատմում են, որ նա ժամանակին, երբ անփույթ կյանք էր վարում, Թեոդորայի նաժիշտներից մեկի գեղեցկությունից գայթակղվեց և մեղանչեց նրա հետ, բայց համոզվելով, որ սայթաքել է (այդ բանը Թեոդորայի ուշադրությունից էլ չվրիպեց, և նա դարձավ մռայլ, դյուրագրգիռ, խոժոռ), Թեոդորային խոստովանեց, երդվեց՝ մեծ երկյուղածությամբ ձեռքերն առ աստված մեկնած, թե դա իր կյանքում առաջին մեղանչելն էր և ներողություն խնդրեց։ Թեոփիլոսը բացի այդ իր դուստրերի համար Կարիանոսի կոչվող տեղում[23], առատ դրամ ծախսելով, մի տուն և ապարանք կառուցեց, որոնք հիշեցնող մնացորդները և սյուները պահպանվել են մինչև օրս։

9. Քանի որ նա հին սովորության հետևելով ուզում էր հագարացիներին ցույց տալ կայսրության [վեհությունը], կամ էլ նրանց հետ ուրախությունը բաժանել, կամ, ավելի շուտ, ուզենալով նրանց աչքին

սարսափելի երևալ, այդ նպատակն իրագործելու համար անձնավորություն համարեց Հովհաննեսին, որն այն ժամանակ սինկելլոս[24] էր, իսկ անցյալում, ինչպես ասել ենք, եղել էր նրա ուսուցիչը։ Քանի որ նա քաղաքական հարցերում շատ հմուտ էր, բացի այդ նաև իր հերձվածի կողմնակից, բանավիճելու մեծ շնորհքով օժտված, սիրում էր նրան և իր բոլոր մերձավորներից որան ամենից շատ էր մեծարում։ Հենց դրա համար էլ ահա նրան Ասորիքի առաջնորդի[25] մոտ ուղարկեց, նրան տալով բազմաթիվ [նվերներ], որոնք այլազգիների շրջանում հռոմայեցիների թագավորության նկատմամբ հիացմունք են առաջացնում, ինչպես և սարսուռ, ապա և չորս կենտինարից ավելի ոսկու գումար[26]։ Թեոփիլոսը նվերները ուղարկեց ամերմումնիին[27], որպես ընծա, ինչ վերաբերում է ոսկուն, ապա այն արված էր Հովհաննեսին՝ այն առատորեն բաժանելու համար, հանուն ցուցադրության ու [կայսրության փառքի] տարածման։ Քանզի մարդիկ ապշած ասելու են, եթե կայսեր կողմից ուղարկված մարդը իրավունք ունի իր հայեցողությամբ ոսկին ավազի նման ցրիվ տալ, ապա նրան ուղարկողը պիտի որ ոսկու բլուրներ ունենա։ Բացի այդ և նույն նպատակով կայսրը նրան տվեց երկու ոսկե, թանկագին քարերով ագուցված սպասներ, որոնք հասարակ, ռամիկ լեզվով խերնիվուքսեստա[28] են կոչում, իսկ պատվիրակին ամեն կերպ մեծարեց ու զարդարեց։ Պատվիրակը հասնելով Բաղդադ[29], ներքուստ՝ իր մտքի խորաթափանցությամբ ու ճոխ լեզվով, իսկ արտաքուստ՝ իր փայլուն հանդերձանքով ու շքեղությամբ, մեծ, միայն հռոմայեցիների կայսրին վայելող նվերներ տալով իր մոտ ուղարկվողներին ու եկողներին, հսկայական տպավորություն գործեց։ Այդ ամենի պատճառով մարդիկ սքանչանում էին նրա վրա, և նրա անունը լայնորեն տարածվեց։ Հենց որ ոտք դրեց բարբարոսների սահմանները, նա բոլորին ապշեցրեց՝ իրեն դիմավորողներին և միայն կայսեր առողջությամբ հետաքրքրվողներին առատ նվերներ ու ոսկի բաշխելով, շլացրեց։ Այնուհետև գնաց դեպի Իսմայիլը[30] և, անձամբ ներկայանալով, նրան փոխանցեց կայսեր խոսքերը, որից հետո մեկնեց հանգստանալու [իրեն տրամադրված] օթևանը։ Ցանկանալով է՛լ ավելի փառավորել հռոմայեցիների պետությունը, իրեն, ինչպիսի գործով էլ՝ մեծ թե փոքր, դիմողներին, արծաթե մի ամանի մեջ ոսկի էր լցնում և նվիրում։ Երբ մի անգամ բարբարոսների հետ ճաշի էր նստած, նա իր ծառաներին կարգադրեց վերոհիշյալ երկու լվացամաններից մեկը, որն ինքը գործածում էր, դիտավորյալ կորցնեն։ Երբ այդ գեղեցիկ, սքանչելի ու հոյակապ իրի կորստյան առթիվ մեծ աղմուկ բարձրացավ, բոլոր բարբա-

րոսները չափազանց տխրեցին և երկար հարցուփորձ արեցին, ու խուզարկություններ, ինչպես ասում են, բոլոր պարանները թափ տվեցին՝ գողացված իրը լույս աշխարհ բերելու համար, պատվիրակը հրամայեց լվացմանի մյուսը հանել՝ «թող այս մեկը փչանա» ասելով։ Սարակինոսներին ապշեցրեց այն, որ նա դադարեցրեց իրի որոնումները։ Դրա վրա ամերմումնին, իր փառասիրությամբ ուզենալով հետը մրցել և նվաստ չերևալ, նրան այլ նվերներ շնորհեց, որոնք սակայն նրա վրա ոչ մի տպավորություն չգործեցին, նա, կարծես սովորական հող լիներ, թափեց նրա առաջ։ Դրա վրա ամերմումնին բանտից նոր ազատված և գերության ցնցոտիները գեղեցիկ հանդերձանքով փոխարինած հարյուր ռազմագերի տվեց։ Հովհաննեսը, թեև անչափ դրվատեց, ընդունելի համարեց ամերմումնիի այդ մեծ նվերը, բայց չվերցրեց։ Նա ասաց. առայժմ նրանք թող իրենց՝ արաբների մոտ հանգիստ ու ազատ մնան, մինչև ինքը գլուխ բերի նրանց փոխանակման գործը՝ սարակինոս ռազմագերիների տալով, ստանա մերիններին։ Դա ապշեցրեց Սարակինոսին[31] և այնուհետև նրան որպես հարազատի և ոչ օտարի հաճախակի իր մոտ էր կանչում, ցույց տալիս իր գանձերը, իր պալատների գեղեցկությունը, իր մեծափառությունը և, մինչև նրան առոք-փառոք դեպի Կոստանդնուպոլիս ճանապարհ դնելը, այդպես պատիվների էր արժանացնում։ Նա Ասորիքի վրայով ճամփա ընկավ դեպի Թեոփիլոսը և հանդիպելով նրան, համոզեց Բրիասի պալատը[32] կառուցի սարակինոսների [պալատի] նմանողությամբ՝ ոճով ու բազմազանությամբ ոչնչով չտարբերվի նրանից։ Շինարարական աշխատանքներին հետևում էր [կայսրը], որոնք նա գլուխ բերեց համաձայն Հովհաննեսի բացատրություններին։ [Ճարտարապետը] Պատրիկես էր կոչվում, նա արժանացել էր պատրիկի պատվաստիճանին։ [Կայսրը] պալատին միայն մի բան ավելացրեց, այն, որ ննջասենյակի մոտ մեր ամենասրբուհի տիրուհի աստվածածնի անվան տաճար կառուցեց, իսկ միջյալ պալատի բակում՝ արտակարգ գեղեցկությամբ, չափերով շատ ուրիշները գերազանցող եռակոնխ տաճարը, որի կենտրոնական կոնխը նվիրված է [Միքայել] հրեշտակապետի անվան, իսկ երկու կողքի կոնխերը՝ նահատակ կանանց սուրբ անվան։

10. Թեոփիլոսն ահա նման հարցերում մեծագործ ու զարմանալի մարդու համբավ ուներ։ Սակայն ինչպիսի՞ն էր նա մեզ՝ բարեպաշտներիս և սուրբ ու աստվածային պատկերները երկրպագողներիս համար։ Նա ժանտ էր ու դաժան, ջանք էր թափում գերազանցել բոլոր սարսափելի պատկերամարտներին։ Իրենից առաջ իշխողներից (նրանք

Լևոնն էր և իր՝ Թեոփիլոսի հայր Միքայելը) առաջինը կարգադրել էր սրբապատկերների վրա, որտեղ էլ նրանք նկարված լինեն, չգրվի «սուրբ» բառը, քանզի, ըստ նրա, միայն աստծուն է վայել այդ բառը վերագրել և ոչ այլ ոքի: Բայց նա ճիշտ չէր դատում: Եթե աստված մարդկանց հաղորդեց անգամ ավելի վեհ «աստված» բառը, մարդկանց, որոնք թեև բնությամբ այդպիսիք չեն, այդուհանդերձ մարգարեի բերանով ասաց. «Ես ասացի թէ աստուածք իցէք»[33], մի՞թե նա կզրկեր նրանց շատ ավելի հասարակ «սուրբ» բառից: Միքայելն ահա դա էր կարգադրել, իսկ մյուսը՝ Լևոնը, արգելեց նրանց երկրպագությունն անգամ: Իսկ ես, ասում էր Թեոփիլոսը, դեմ եմ նրանց նկարելուն ու պատկերելուն անգամ, և քանի որ դրանք դատարկ բաներ են, ապա կարիք չկա նրանց համար խելքը կորցնել, այլ անհրաժեշտ է հոգ տանել միայն ճշմարտության մասին: Այսպիսով, սկսեցին բոլոր եկեղեցիներից սրբապատկերները վար առնել և նրանց փոխարեն գազանների և թռչունների պատկերներ կախել ու նկարել: Դա Թեոփիլոսի վայրենի ու ստոր մտածելակերպի գրավականն է: Սկսվեց պիղծ մարդկանց կողմից թանկարժեք սուրբ իրերի՝ հրապարակներում ծաղրուծանակի ենթարկելը, դրանք գետին էին շպրտվում ու կրակի տրվում. պատվական իրերը սովորական առարկաներ էին համարվում, եթե իրենց վրա սրբերի կերպարներ էին ագուցված ունենում: Պետական բանտերը լցվեցին սրբապատկերները պաշտողներով, սրբապատկերները նկարողներով, վանականներով, եպիսկոպոսներով, հոգևոր հովիվներով և նրանց հոտով: Լեռներն ու քարայրները նրանցով լցվեցին, որոնք, ինչպես ոճրագործներ, սովից ու ծարավից մեռան, ոչ պակաս [ցավագին], քան սարսափելի պաշարման ժամանակ: Առայժմ նա հրամայեց արգելել վանականների մուտքը քաղաքները, կարգադրեց նրանց, որպես գարշելիների, անխտիր վտարել, նրանք չհամարձակվեն անգամ գյուղերում երևալ, իսկ նրանց վանքերն ու անապատները ակումբների ու պանդոկների վերածեց: [Վանականներից] ոմանք, որոնք բացարձակապես չցանկացան դավաճանել առաքինության ու սրբազան սքեմին, սովից ու տառապանքներից մեռան, ուրիշներն էլ նման տառապանքներին դիմանալու անկարող, անգոսնեցին սքեմը և մի կերպ ապահովեցին իրենց փրկությունը: Իսկ ավելի անհոգ կյանքի սիրահարները նախընտրեցին սանձարձակ ու անառակ կյանքը՝ արհամարհելով սուրբ շարականներն ու տաղերը[34], սրբազան հանդերձները: Բռնակալը դեմ էր անգամ եկեղեցիներում հավաքվելուն, որը հաճախ անկարգ կերպով

դեպի կրքերի անդունդը գլորվող մարդկանց համար պահպանիչ, զսպող մի սանձ է։

11. Այդուհանդերձ բացարձակապես չվերացան միանգամայն անկեղծ ու ազատ խոսող մարդիկ։ Ջերմեռանդներից ոմանք առանձինառանձին, ոմանք միասին. ինչպես Աբրաամիտների վանքի[35] վանականները, մեր սուրբ հայրեր սուրբ Դիոնիսիոսի, Հիերոթեոսի և Իրենեոսի[36] ասույթների հիման վրա, տրամաբանորեն ապացուցում էին նրբան, որ վանական հաստատությունն ու հիմնարկությունը ո՛չ երեկ, ո՛չ էլ առաջին օրը ստեղծվեց, այլ շատ վաղուց, այն էլ մարդկանց ցանկալի։ Նրանք ապացուցում էին նաև, որ սրբապատկերներ նկարելը առաքյալների համար անսովոր ու օտարոտի չէր. հենց սուրբ Ղուկասն էր, որ նկարեց աստվածածնի կերպարը[37], իսկ ինքը՝ Քրիստոսը, մեր տերն ու աստվածը, երեսը ինչ-որ դաստառակով սրբելով, մեզ ավանդեց իր անձեռակերտ պատկերը[38]։ Այս ամենասուրբ այրերն իրենց համդուգն խոսքով գրգռեցին բռնակալի մոլեգնությունն ու վայրենությունը և, նրա կողմից բազում լլկանքների ենթարկվելով, քաղաքից վտարվեցին։ Նրանք տարվեցին Եվքսինյան պոնտոսի [ափին] գտնվող Կարապետի, այսպես կոչված Ցոբերոսի աղոթարանը և, անտանելի գանահարությունից կատարելապես հյուծված, իրենց հոգին ավանդեցին։ Նրանց սուրբ մարմինները, որոնք երկար ժամանակ այդպես նետված թողեցին, չարժանացնելով անգամ թաղման, մնացին անեղծ ու անաղարտ, մինչև որ հայտնաբերվեցին հավատացյալների կողմից և հողին հանձնվեցին, Քրիստոսի համար նահատակված մարդկանց վայել պատիվների արժանանալով։

12. Սրանց օրինակին մի այլ վանական, որ վերջերս էր սքեմը հագել և ջերմեռանդությամբ լցվել, որոշեց բանադատել բռնակալին և, եթե հնարավոր է, համոզել նրան սրբապատկերների հարցում տեղի տալ։ Անձամբ հանդիպելով նրան, նա բազում այլ կովանների թվում, առաջ քաշեց և Պողոս առաքյալի ասույթը, թե եթե որևէ մեկը «աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն ձեզ, նզովեալ լիցի»[39]. Թեոփիլոսը տեսնելով, որ սա ավելի գիտակ է և բանավեճի մեջ իրենից հզոր, բազում չարչարանքի ենթարկեց, Հովհաննեսի, իր՝ Թեոփիլոսի ուսուցչի ու դաստիարակի մոտ ուղարկեց, կարգադրելով դիալեկտիկական ապացույցների օգնությամբ նրան պարտության մատնել։ Բայց քաջ մարտիկը ոչ թե սոփեստական ու դիալեկտիկական ապացույցներով, այլ առաքելական ու ավետարանական ասույթներով նրան ձկից ավելի անբարբառ դարձրեց։ Որոշ ժամանակ տեղում մնա-

լով, նա ելավ գնաց, այսպես կոչված Կալոն Օրոս[40], որտեղ հանդիպեց Իգնատիոս անունով աստվածակիր մի մարդու, որին արժանացրեց ձեռնադրության։ Նա մանրամասն գուշակեց տեղի ունենալիք դեպքերի և գալիք կայսրերի մասին և, ապրելով մինչև աստվածասեր Լևոն կայսեր[41] և նրա զավակների ժամանակները, ի Տեր փոխեցավ։

13. Քանի որ բռնակալը վճռել էր բոլոր սրբապատկերներ նկարողներին ոչնչացնել (ապրել ցանկացողները պետք է պատկերները թքակոծ անեին որպես պիղծ, գետին շպրտեին ու ոտնակոխ անեին), ի միջի այլոց որոշեց ստիպել և վանական Ղազարոսին (նա ժամանակի նկարչական արվեստի նշանավոր գործիչ էր), բայց տեսավ, որ նրա վրա ամենևին չեն ազդում գովասանքները, որ մտքի խորաթափանցությամբ գերազանցում է իրեն, բացի այդ իրեն դատապարտում է, այն էլ ոչ թե մեկ կամ երկու, այլ բազում անգամներ։ Դրա համար կայսրը նրան այն աստիճան խոշտանգեց, որ մարմնի մսերը արյան հետ էին հոսում, շատերին թվաց, թե մեռել է նա։ Բայց երբ լսեց, որ վերստին բանտ նետվածը լավացել է և շարունակում է իր արվեստով զբաղվել՝ տախտակի վրա սրբերի պատկերներ նկարել, հրամայեց նրա ափերին շիկացած թիթեղի թերթեր դնեն։ Կրակը այրում, լափում էր նրա մսերը, մինչև որ չդիմանալով, կիսամեռ գետին տապալվեց։ Բայց [աստվածային] շնորհքը պահպանեց նրան, որպեսզի գալիք մարդկանց օրինակ ծառայի։ Երբ [Թեոփիլոսը] լսեց, որ սուրբն իր վերջին շունչն է փչում, կայսրուհու և իր մի քանի մերձավորների պաղատանքին ընդառաջելով, նրան բանտից ազատեց։ Նա գնաց ծվարեց Ֆոբերոսի մականվանյալ Կարապետի տաճարը։ Այնտեղ, երբ վերքերը դեռ ապաքինված չէին, նա նկարեց մինչև օրս պահպանված և բազում ցավեր ամոքող Կարապետի պատկերը։ Այն ժամանակ վիճակն անհա այդպիսին էր, բայց բռնակալի մահից հետո, երբ ուղղափառությունը վերստին փայլատակեց, նա իր սեփական ձեռքերով վերականգնեց աստված-մարդու՝ Հիսուս Քրիստոսի խալկեի պատկերը։ Երբ հռչակավոր Թեոդորան նրան կանչեց, որպեսզի իր ամուսնուն քավություն շնորհի և [աստծուց] նրա համար ներում խնդրի, նա ասաց. «Ո՜վ կայսրուհի, աստված անարդար չէ, նա աչքաթող չի անի և ձեր սերը դեպի նա, հանուն աստուծո ձեր տարած խոնջանքը հաշվի կառնի և [Թեոփիլոսի] դեպի աստված ունեցած ատելությունն ու անչափ մոլեգնությունը, բայց նախապատվությունը կտա ձեզ»։ Բայց դրանք հետագայում տեղի ունեցան։

14. Մի անգամ, շատերից լսած լինելով Թեոփանես Խոստովանողի և նրա եղբայր Թեոդորոսի[42] շատ ուսյալ լինելու մասին, նրանց Լավ-

սիակոսի տրիկլինը հրավիրեց՝ հրապարակայնորեն հավատքի մասին արտահայտվելու։ [Թեոփիլոսն] ասաց. «Ասե՛ք տեսնեմ, ո՛վ նզովյալներդ, սուրբ գրքի ո՞ր ասույթների վրա հույսը դրած համարձակվում եք երկրպագել կուռքերին (նա անսանձ ու պիղծ լեզվով այդպես էր կոչում սրբապատկերները) և բազում ողջամիտ մարդկանց հավատացնում, որ լավ է այդպես վարվել»։ Այդ ասելուց հետո, նա ավելի բարձրաձայն այլ հայհոյական ու զազիր խոսքեր էր ուղղում Քրիստոս աստուծո պատկերին։ Այդ երանելի այրերն ասացին. «Թող պապանձվի աստուծո դեմ անօրեն խոսքեր արտաբերող բերանը» և այդ խոսքերով սանձեցին նրա լկտիությունը (անարդար թագավորը չի հանդուրժում իր հասցեին արված բացահայտ քննադատությունը)։ Նա առայժմ կեղծավորաբար շողոքորթելով նրանց, սրբապատկերների երկրպագության օգտին մարգարեների վկայություններն էր պահանջում։ Երանելի Թեոփանեսը բերեց Եսայի մարգարեի մի ասույթ, բայց Թեոփիլոսը հակաճառեց, թե ասույթը դրան չի վերաբերում, միաժամանակ բացելով սեփական [սուրբ] գիրքը, իր ասածի ստույգ լինելն էր հաստատում։ Սուրբը բարձրագոչ ասաց, թե նա աղավաղել է ոչ միայն տվյալ գիրքը, այլև իր ձեռքից անցած բոլոր գրքերը և պահանջեց իրեն բերեն Թովմայիտես կոչվող [տրիկլինի][43] պատրիարքական մատենադարանի այսինչ տեղում գտնվող սուրբ գիրքը, ի հաստատումն ասվածների։ Երբ մարդ ուղարկվեց, որն իսկույն բերեց այն, կայսրը դիտմամբ չէր գտնում ասույթի տեղը և ամոթով մնաց, քանզի այլ տեղ էր բացում։ Երբ երանելի Թեոփանեսը մատով ցույց տվեց ու բացատրեց, թե երեք թերթ շրջելուց հետո կհասնես որոնածիդ, ահա այն ժամանակ նա չկարողացավ դիմանալ այրերի շիտակ խոսքին։ Համոզվելով, որ նրանք են ճիշտ, իր՝ մինչև այստեղ ցուցաբերած կեղծ մեծահոգությունից հրաժարվելով, մեջտեղ հանեց իր գազանային բարքերը։ Ասելով, որ «Արդար չէ, որ կայսրը նման այրերից անարգվի», հրամայեց նրանց Լավսիակոսի միջնապարտեզը տանել, մահակի երկու հարյուրական հարված հասցնել և նրանց ճակատին բարբարոսաբար դաջել իր հորինած յամբական հետևյալ դատարկաբանությունը.

Այն ժամանակ, երբ բոլորը ցանկանում են գալ այն քաղաքը[44],
Որտեղ Քրիստոսի սրբազան ոտքերը
Աշխարհի շենքի հենարան ծառայեցին,
Այդ սրբազան վայրում երևացին սրանք՝
Սնոտիապաշտ մոլորության այդ չար ամանները։

Իրենց անհավատությամբ և ամբարշտությամբ
նրանք այնտեղ շատ խայտառակ վատթար բաներ գործեցին,
Դրա համար որպես ուրացողներ այնտեղից վտարվեցին,
և ապաստանելով պետության [մայրա]քաղաքում,
Հրաժարվեցին իրենց անօրեն հիմարություններից։
Այդ պատճառով [նրանց ճակատին] դաջեցին՝ ինչպես
չարագործների,
Դատապարտեցին և վերստին վտարեցին[15]։

Հրամանն իսկույն ի կատար ածվեց, որով նրանք իրենց գլխին կապած եղան խոստովանողի և նահատակի պսակը, իսկ այդ գոռոզն ու բոլոր թշվառականներից ամենաթշվառականը բոլորի աչքին երևաց որպես ամբարիշտ և հալածիչ, երբևիցե հանդես եկած խայտառակներից ամենախայտառակը։

15. Բացի այդ, նա ուրիշ վանականների հետ բանտ նետեց նաև սուրբ քաղաքի[16] սինկելլոս Միքայելին, ենթադրելով, որ նրան, երկարատև լլկանքների դատապարտելով, կկարողանա ծնկի բերել։

Ահա այսպիսիք էին հավատացյալ ու սուրբ արանց հանդեպ նրա գործած տխմարությունները, այդպես էր նա անարգում մեր փրկության համար հայտնված Մարդուն՝ ճշմարիտ աստծուն, այդպես չարչարում ու անլուր խոշտանգումների ենթարկում Նրա սուրբ սպասավորներին, այն էլ ոչ թե կարճ ու սահմանափակ ժամանակ, այլ իր ամբողջ կյանքի ընթացքում։ /16/Նա շարականներ ու ոտանավորներ երգի վերածելով, ստիպում էր երգել։ Այդ թվում և չորրորդ ձայնեղանակի «Օրհնեցէք»-ը ութերորդի՝ «Լսիր կույս» երգին հարմարեցնելով և հանգ տալով, կարգադրեց ի լուր ամենքի երգել աստուծո եկեղեցում։ Այդ առթիվ պատմում են, որ Թեոփիլոսը սիրում էր երգասացություն, ինչպես հայրերն իրենց զավակներին, և մի լուսավոր տոնի ժամանակ մեծ եկեղեցում ցույց տվեց իր առատաձեռնությունը՝ նրա կղերին այդ [երգը] կատարելու համար տվեց հարյուր լիտր ոսկի։ Ասում են, որ Ծաղկազարդի «Ելեք ազգեր, ելեք և ժողովուրդներ» ոտանավորը նրա հոգու ծնունդ է։

17. Այն պատճառով, որ բնությունից նա չէր օժտվել գլխի խիտ մազերով, դրանք նոսր էին, կարգադրեց համայն պետության սահմաններում մարդիկ իրենց մազերը կարճ կտրեն, ոչ մի հռոմայեցու թույլ չտվեց ծոծրակից ցած մազ թողնել, կարգադրությունը չկատարողին խարազանի բազում հարվածներ հասցնել և բերել հռոմայեցի նախնիների վսեմության, քանզի հենց այդպիսի մազերով էին նրանք աչքի

ընկնում։ Այդ առթիվ նա օրենք էլ հրապարակեց՝ ոչ ոք չհամարձակվի ծոծրակից ցած մազ թողնել։

18. Անհրաժեշտ էր պատշաճ ձևով տնօրինել նաև իր և իր ընտանիքի գործերը, քանզի հինդ դուստրերի հայր էր, բայց չուներ արու զավակ։ Ամենակրտսեր դստեր, Մարիային, որին նա մյուսներից անչափ շատ էր սիրում, որոշեց ամուսնացնել։ Դստեր ամուսինը կոչվում էր Ալեքսիոս, մականունը՝ Մուսելե[47]։ Նա գեղեցիկ արտաքինով, ծաղկուն հասակով մեկն էր, սերում էր Կրենիտների տոհմից[48], հայերի երկրից։ Նա բնակվում էր ակրոպոլսի կողմում, այսպես կոչված Կրենիտիսսայի կացարաններում։ Թեոփիլոսը նրան շնորհեց նախ անթիպատ պատրիկի պատվաստիճանը՝ իր դստեր դուրդուրելու համար, այնուհետև՝ մագիստրոսի, իսկ վերջում նրան կեսար էլ հռչակեց և, մեծաթիվ զորքեր տալով, կարևոր գործով Լանգոբարդիա ուղարկեց։ Նա գնաց և հաջողությամբ կատարեց իր պարտականությունը՝ ըստ կայսեր ցանկության։ Դրա պատճառով կայսեր սերը նրա նկատմամբ գնալով ուժեղանում էր, բայց միաժամանակ բորբոքվում էր և մարդկանց նախանձը։ Ոմանք սկսեցին վատաբանել և չարախոսել նրան, թե իբր աչք ունի թագավորության վրա և պիտի որ ժամանակ գա, երբ այբր հաղթի թոյին[49]։ Կեսար Ալեքսիոսը, լսելով իր դեմ հորինված զրպարտանքի մասին և մարդկանց նախանձից երկյուղելով, շատ պաղատեց կայսեր՝ գթա և թույլ տա վանք քաշվի։ Բայց հենց Թեոփիլոսը չհամաձայնվեց դրան՝ որպեսզի դուստրը այրի չմնա։ Այդ պատճառով ահա հիշյալ կեսարը շատ խաղաղ կյանք վարեց, շարունակելով իր պետական ծառայությունները։ Բայց երբ Թեոփիլոսը որդի ունեցավ՝ Միքայելին[50], իսկ իր դուստրը՝ կեսարի կինը վախճանվեց, նրան այն աստիճան պատվեց, որ նրա աճյունը արծաթապատ դագաղի մեջ ամփոփելով[51], շիրմի վրա յամբերով հրահանդ փորագրեց, թե մարդ ինչպիսի հանցանք էլ գործի, եթե նա ապաստանի այնտեղ, նա անձեռնմխելիության իրավունք ունի։ Ինչ վերաբերում է Ալեքսիոսին, ապա նա թաքուն կերպով հեռացավ և վտնականի սքեմը հագավ։ Երբ Թեոփիլոսին չհաջողվեց նրան համոզել հրաժարվել վանականի սքեմից, այն բանի համար, որ նա չկամեցավ իր հետ լինել և նախընտրեց մի ինչ-որ ծածուկ անկյունում ապրել, բազում պարսավանքների ենթարկեց, սակայն վերջում ներեց, որպես պարգև Խրիսուպոլսում գտնվող կայսերական վանքը շնորհեց[52], ապա Բյուրսեոսի վանքը, ինչպես և այն, որ Էլեայում է գտնվում, բայց Ալեքսիոսը մնում էր Խրիսուպոլսի [վանքում]։ Երբ մի օր նա պտույտի

գնալով, եղավ Անթեմիոսի թաղում, որտեղ այն ժամանակ գտնվում էր կայսերական զինանոցի շենքը և ասում էր, թե յուրաքանչյուր վանք իր կառուցողի :անունն է անմահացնում, կայսրը նրան ստիպեց գնել այդ շենքը և սեփական [վանք] կառուցել։ Այդ բանը կատարվեց կայսրուհի Թեոդորայի, իր զոքանչի միջոցով[53]։ Նա շատ գեղեցիկ ձևափոխեց այն, վանքի կերպարանք տվեց, իսկ կյանքին հրաժեշտ տալուց հետո այնտեղ ամփոփվեց։ Ասվածի վկան են շիրիմը և նրա վրայի իր գիմաքանդակը։ Ալեքսիոսի եղբայր Թեոդոսիոսն էլ իր կից թաղվեց։ Նա արժանացել էր պատրիկի պատվաստիճանին և իր փայլուն կենցաղավարության բազմաթիվ ապացույցները թողեց այդ վանքում։

19. Հագարացիները նեղություն էին պատճառում, Իբրահիմի[54] բազմաբյուր զինվորները հռոմայեցիների վրա արշավանքներ էին գործում։ Թեոփիլոսը ինքնասիրությունից և սխրանքներ կատարելու ցանկությունից գրգված պատերազմի է գնում, մտածելով միայն քաջության ու խիզախության մասին։ Անգամ եթե որևէ վախ էլ զգում էր, այն էլ փարատում էր ու վանում իր հետ եղող այրերի պատերազմական փորձն ու արիությունը։ Այդ այրերը կոչվում էին Թեոֆոբոս և Մանուիլ[55]։ Մանուիլը շատ խիզախ մարդ էր, բոլոր հակառակորդներին քաջ հայտնի, քանզի նա ծննդով հայ էր[56]։ Լևոնի [թագավորության] ժամանակ նա Անատոլիկոն բանակաթեմի զորքերի հրամանատարն էր, իսկ [Թեոփիլոսի] նախորդի՝ Միքայելի օրոք՝ առաջին ախոռապետը. սրան պրոտոստրատոր են անվանում։ Մենք պատմելու ենք նաև Թեոֆոբոսի մասին, թե ինչու և ինչպես Պարսկաստանից սերելով, կայսրը ծանոթացավ նրան և կնության տվեց իր քրոջը։ Թագավորական ծագումով մի պարսիկ, դեսպանությամբ Կոստանդնուպոլիս գալով, ապօրինի, ծածուկ ու գաղտնի կենակցությամբ որդի ունենալով՝ հիշյալ Թեոֆոբոսին, վերադարձավ իր երկիրը։ Պարսկական անխախտ օրենքի համաձայն ոչ ոք չի կարող գահին նստել, եթե նա թագավորական բնտանիքից չի սերում։ Անդադար պատերազմների, հագարացիների հալածանքների պատճառով թագավորական տոհմի ներկայացուցիչներն այստեղ-այնտեղ տարագրվելով սպառվել էին։ Պարսկաստանում ապրողների շրջանում համառ կերպով ուրբեր էին տարածվում, թե Բյուզանդիոնում Թեոֆոբոս անունով (այն ժամանակ իր հոր կողմից նորածնին այդ անունն էր տրվել) մեկը կա, դրա համար պարսից մեծամեծները որոշեցին թաքուն մարդիկ ուղարկել նրան հետամուտ լինելու։ Հասնելով մեր [մայրաքաղաքը], նրանք դժվարությամբ գտան նրան (նա մոր հետ Օքսիայում[57] էր բնակվում)։ Քանի որ իրենց որոնածին

ճանաչեցին ու բացահայտեցին ոչ միայն նրա պատկերից, այլև բնավորությունից ու մարմնի նշաններից, դրա վրա գումարած նաև հարևաններից մեկի վկայությունը, թե այդ կինն իրոք պարսկի հետ հարաբերություններ է ունեցել (գոյություն չունի գաղտնիք, որի մասին շատերը չիմանան), ուղարկվածներն իրենց ինքնությունը բացահայտում են կայսեր և տեղեկացնում իրենց գլխին եկած դժբախտության մասին։ Նրանք խոստանում են նրան խաղաղություն, հաշտություն և [պարսից] համայն ժողովրդի հպատակեցում կայսեր, եթե նա չմերժի իրենց խնդրանքը և [Թեոֆոբոսին] իրենց տա։ Կայսրը նրանց խոստումներից ուրախացավ և համոզվելով, որ իրողությունն այդ է, որ կա, Թեոֆոբոսին թույլ տվեց բնակվել արքունիքում և ուսմամբ ու կրթությամբ պարապել։

20. Թեոֆոբոսի մասին գոյություն ունի և մի այլ վարկած (լավ է երկուսի մասին էլ խոսել), որը թեև նախորդից սկզբնական մասով մի փոքր տարբերվում է, մնացածում գրեթե նման է, համընկնում է վերոհիշյալին։ Այս երկրորդ վարկածի համաձայն Թեոֆոբոսի պօրինի հայրը ամենևին էլ դեսպան չէր։ Սովորաբար պատերազմների ժամանակ տեղի ունեցող ինչ-որ դեպքի ժամանակ, սրա հայրը ևս, որ թագավոր էր, կամ գուցե թագավորի մերձավոր ազգականներից, Պարսկաստանից փախչում է և դալիս մայրաքաղաք, որտեղ թշվառ կյանք էր քարշ տալիս։ Ահա այստեղ նա աշխատում էր մի խանութպան կնոջ մոտ, որին սիրեց և այնուհետև օրինական կարգով Թեոֆոբոսին ունեցավ։ Սակայն մարդը վախճանվեց, իսկ պարսիկները աստղաբաշխության ու գուշակության միջոցով (ասում են, թե պարսիկների շրջանում այդ գիտությունները մինչև օրս ծաղկում են) տեղեկանալով Թեոֆոբոսի գոյության մասին, երբ նրան հետամուտ էին՝ գոյություն ունի՞ արդյոք որևէ տեղում թագավորական ցեղից սերող մեկը, և իմանալով, որ իսկապես կա, անհապաղ գնում են Կոստանդնուպոլիս՝ իրենց որոնածին գտնելու։ Երբ նրան հայտնաբերեցին, իրողությունը հայտնի դարձավ կայսեր։ Երկիր վերադարձած նվիրակների միջոցով Պարսկաստանում բոլորին հայտնի դարձավ Թեոֆոբոսի հայտնաբերման ու գոյության մասին, և բոլորը լավ ու ցանկալի համարեցին հագարացիների դեմ մի ապստամբություն կազմակերպել և մտնել հոռոմայեցիների գերիշխանության ներքո, եթե բախտ ունենան արժանանալու [իրենց] ցեղակից առաջնորդի[58]։ /21/ Այնպես պատահեց, որ պարսից առաջնորդ Բաբեկը հինգ տարի էր, ինչ յոթ հազար հոգով ապստամբել էր ամերմումնիի[59] դեմ։ Ահա Բաբեկը, սեր տածելով դեպի Թեոֆո-

բոսը և Սարակինոսի դեմ ապստամբած լինելու համար երկյուղ զգալով, մուտք է գործում հռոմեական պետության սահմանները, գալիս Սինոպ քաղաքը և սեփական անձը և համայն ժողովրդին հպատակեցնում կայսեր[60]։ Այդ էր պատճառը, որ Թեոփիլոս կայսրը Թեոֆոբոսին շնորհեց պատրիկի պատվաստիճանը և կնության տվեց իր քրոջը։ Թեոփիլոսը կարգադրեց նաև, որ պարսիկներից յուրաքանչյուրը բարեկամանա, խնամիական կապեր հաստատի հռոմայեցիների հետ, նրանցից շատերին շնորհեց թագավորական ընտանիքին պատկանող անձանց վայել պաշտոններ։ Բացի այդ, նա նրանց զինվորագրեց, «Պարսկական» կոչվող մի գունդ ստեղծեց և հրամայեց, որ նրանք միանան հագարացիների դեմ պատերազմի գնացող հռոմայեցիների բանակին[61]։

22. Թեոփիլոսը այս բոլորից քաջալերված, մանավանդ որ այլուստ էլ տեղյակ էր նրանց գործած սխրանքների մասին, հագարացիների և մեր վրա արշաված Իբրահիմի դեմ պատերազմի գնաց։ Երբ սարակինոսների առաջնորդն ու Թեոփիլոսը մերձեցան միմյանց, կայսրը իր անելիքի մասին խորհրդի կարիք ունեցավ։ Մանուիլն ասաց, թե նպատակահարմար չէ, որ հռոմայեցիների կայսրը մենամարտի ամերմումնիի դեմ, այլ մի զորամաս վերցնելով, թող ճակատի թշնամիների դեմ և այդ բանն անի ցերեկը։ Ինչ վերաբերում է Թեոֆոբոսին, ապա նա գտնում էր, որ կայսրը պետք է ռազմաշարքի գլխին լինի, հարձակման անցնի գիշեր ժամանակ՝ պարսից հետևակազորով, իսկ եթե կարիքը զգացվի, հեծելազորը գործի անցնի և օղակի թշնամիներին։ Սակայն նա չկարողացավ կայսեր համոզել, քանզի շատերը կայսեր ասացին, թե Թեոֆոբոսը ցանկանում է սեփականացնել հռոմայեցիների փառքը, դրա համար է ուզում գիշեր ժամանակ պատերազմել։ Բոլոր դեպքերում որոշվեց ճակատամարտը տալ օր ցերեկով։ Իբրահիմը կամ պարծենկոտությունից, գուցե և երկյուղից դեպի կայսրը, զորքի մի մասն առնելով հեռացավ և կայսեր դեմ պատերազմի ուղարկեց Աբուխազարին՝ ութ բյուր զինվորներով։ Թեև երկար ժամանակ երկու կողմերն էլ շատ համառ ու քաջաբար կռվեցին, ի վերջո սխոլերն[62] իրենց գոմեստիկոսով տեղի տվեցին ու ստիպվեցին փախուստի դիմել։ Դրա վրա Թեոփիլոսը, վախենալով իր անձը վտանգի ենթարկել, կայսերական փաղանգով և երկու հազար պարսիկներով, որոնց մեջ էր Թեոֆոբոսը, փախավ ու մի լեռան վրա փրկվեց։ Մինչև երեկո նրա շուրջը կատաղի կռիվ էր, սարակինոսները հույս ունեին կայսեր գերի վերցնել, իսկ վերջինիս պաշտպանները ջանում էին, որ նա թշնամիների ձեռքը չընկնի։ Երբ արդեն մթնեց, կայսեր հետ եղողները ծափ էին տալիս, եր-

*ռում էին, ձևացնում, թե ուրախության մեջ են։ Նրանք փանդիռներով, փողերի ձայնով օդն էին թնդացնում, ուզենալով թշնամիների մեջ երկյուղ տարածել։ Այդպես էլ եղավ։ Նրանք վախենալով հարձակման ենթարկվել ու շրջապատման մեջ ընկնել, վեց մղոն նահանջեցին։ Իրենց տրված այդ փոքր հնարավորությունից օգտվելով, կայսեր շուրջ եղողները գիշերով հեռուն փախուստի դիմեցին ու փրկվեցին, կայսեր լքած և թշնամիներին թիկունք ցույց տված զորամասի մոտ մազապուրծ եղան։ Կայսրն իրեն լքած զորամասին շատ նախատեց, իսկ Թեոփոբոսի զինվորներին արտակարգ փառք ու պատվի արժանացրեց։ Այդ էր պատճառը, որ պարսիկները Թեոփոբոսին շատ, կաթոգին սիրեցին և ինչ-որ անճառելի բերկրությունից թևավորված աղաչում էին նրան գլխավորի իրենց պատերազմը հագարացիների դեմ, հավաստիացնում նրան, թե իրենց անպարտելի զորությամբ կհաղթեն նրանց։ Այդ էր պատճառը, որ կայսրն էլ էր ուզում, որ Թեոփոբոսը իշխի նրանց վրա*[63]*։*

*23. Հաջորդ տարին Թեոփիլոսը՝ զորքի գլուխն անցած դարձյալ պատերազմի է գնում և իրենց նախորդ հաղթանակից շատ ինքնավստահ դարձած ու գոռոզացած իսմայելացիների հետ բախվում խարսիանոն [բանակաթեմում], շատերին՝ շուրջ քսանհինգ հազար հոգու գերեվարում և մեծ հաղթանակով մայրաքաղաք վերադառնում*[64]*։ Հագարացի ռազմագերիների մեջ կար և ձեռքերի ճարպկությամբ աչքի ընկնող մեկը։ Սխոլերի դոմեստիկոսը գրավոր դրվատեց ու վկան դարձավ պատերազմում նրա ցուցաբերած քաջագործությունների, հաստատեց, որ նա վարպետ է ձիավարության մեջ, ֆիզիկական ամենի ուժով օժտված և ձի նստած կարող է մեծ հմտությամբ ու վարպետությամբ երկու նիզակով գերազանցել իր վրա հարձակվողներին։ Երբ ձիարշավարանում կատարվում էր դոմեստիկոսի հաղթական շքերթը, առջևից այդ ռազմագերին էր գնում, սլարթևանասակ ու փառաւեղ, կարծես իր մասին ասված խոսքերի հաստատում։ Կայսրը, որ մի անգամ տեսել էր նրան, ապա և նրա մասին ասված դրվատական խոսքերից հափրշտակվել, հրամայեց մարդուն ձի նստի և, երկու նիզակ վերցնելով, ամբողջ քաղաքին ցույց տա իր հմտությունն ու կտրիճությունը։ Երբ այդ բանը կատարվեց, և նրան ականատես եղած ավելի անտեղյակ մարդիկ բավականություն ստացան, Թեոդորոս Կրատերոս կոչվածը, որը շատ չանցած գլխավորեց 42 սուրբ վկաների փաղանգը, մոտենալով կայսեր՝ սկսեց ծիծաղել հագարացու վրա, ասելով, որ նա ոչ մի քաջարի ու զարմանալու բան էլ չարեց։ Կայսրը դրանից դայրացած*

ասաց. «Իսկ դու, ո՜վ կնաբարո[65] ու անարի, կարո՞ղ ես ինքդ նմանբան անել»։ Նա իսկույն պատասխանեց. «Ո՜վ կայսր, ես չեմ սովորել երկու նիզակ օգտագործել և չեմ կարող, քանզի պատերազմում նմանտխմարության կարիքը չկա։ Բայց ես, օգտագործելով մեկ նիզակ, աստուծով հաստատ վստահ եմ, որ նրան ձիուց գետին կգլորեմ»։ Կայսրը, չկարողանալով տանել նրա հանդգնությունը, իր կյանքով երդվեց, թե. սրբին[66] մահվան կդատապարտի, եթե նա իր ասածը գործով չհաստատի։ Թեոդորոսը ձի նստեց և նիզակն առնելով, մի քանի շրջանցումներով սարակինոսին իսկույն գետին գլորեց, թույլ չտվեց նրան այլևս գոռոզանալ։ Կայսրը, տեսնելով սարակինոսին մի ներքինու և ոչ ինչոր քաջարի մարդու կողմից գետին տապալված, ամաչեց։ Նա խորամանկ էր, պատկառելով այրի առաքինությունը, ինչպես և քաղաքացիներից ամաչելով, նրան հանդերձներ ու զգեստներ նվիրեց։

24. Դարձյալ գարուն բացվեց, և երկու կողմերն էլ պատերազմի պատրաստություն էին տեսնում։ Թեոփիլոսը, մեծաքանակ զորք հավաքելով, սարակինոսների դեմ արշավեց, իր հետ տանելով բանտից ազատված սուրբ Մեթոդիոսին[67]։ Առաջին անգամը չէր, որ Մեթոդիոսին իր հետ էր տանում, այլ մշտապես այդպես էր անում և նրան իր մոտ պահում, կամ որովհետև նա իրեն, Մեթոդիոսին հատուկ իմաստությամբ մթին և շատերի համար անհասկանալի հարցերը իրեն պարզում, հասկանալի էր դարձնում (Թեոփիլոսը շատ էր սիրում հետազոտել անծանոթ բաները), կամ էլ զգուշանալով նրա հնարավոր որևէ խռովությունից, իր՝ սրբապատկերների դեմ մղած պատերազմի պատճառով, քանզի հայտնի էր, որ այրը շատ էր հարգում ու ակնածում քաղաքացիների բարեպաշտությունն ու աստվածասիրությունը։ Դրա համար ահա նա խոհեմ էր համարում նրան իր հետ տանել և չթողնել հետևում։ Երբ զորքերը բախվեցին միմյանց, և իսմայելացիները գերակշռության հասան, կայսրն ընկավ թշնամիների օղակի մեջ, և նրա կյանքին վտանգ էր սպառնում։ Սպարապետ[68] Մանուիլը սարսափելի, շատ սարսափելի բան համարեց կայսեր գերեվարությունը և իր զինվորներին գոտեպնդեց հետևյալ խոսքերով. «Ո՜վ զինվորներ, մեղուներից ամաչեցեք, որոնք սիրուց տարված թռչում են մայր մեղվի[69] հետևից»։ Նա ճեղքեց օղակը, նետվեց ներս, ինչպես իր կորյունների համար նետվող առյուծը, կայսեր որոնելով։ Նա նրան գտավ հոգնատանջ, վախեցած՝ փրկվելու հույսը կտրած։ Թեոփիլոսը պատճառաբանում էր, թե իբր չի ցանկացել փախչել՝ լքելով զինվորներին։ Մանուիլն ասաց նրան. «Ո՜վ կայսր, եկ, հետևիր ինձ, թշնամու օղակը կտրողին և

-ղատերին կոտորողին»։ Երբ Մանուիլը [շրջապատումից] դուրս գալով, տեսավ, որ սարսափահար եղած ու սահմոկած կայսրն իրեն չի հետևել, բազում զինվորներով դարձյալ ճեղքեց օղակը, ցանկանալով նրան դուրս բերել։ Երբ իրեն այս անգամ ևս չհաջողվեց նրան դուրս հանել, կայսեր շրջապատող օղակը երրորդ անգամ նա քաջաբար ճեղքեց և Թեոփիլոսին այնքան մոտեցավ, որ նրան կրող ձիուն փոկերով կապեց և դուրս քաշեց։ Այն վախը, թե հռոմայեցիների կայսրը կարող է գերի ընկնել և թշնամիների կոխան դառնալ, խռովել էր մարդու հոգին։ Դրա համար նա փախուստն առավել արագությամբ ու հմտությամբ կատարեց, կայսրին սպառնաց սպանել, եթե իրեն չհետևի։ Փոքրաթիվ զինվորներ մարտով պաշտպանում էին նրանց փախուստը, որով Մանուիլը հազիվհազ կարողացավ կայսեր փրկել վերահաս վտանգից և հասցնել իր բանակատեղին։ Կայսրը նկատի առավ դա, Մանուիլին ըստ արժանվույն պատվեց, պետք եղած նվերները շնորհեց և հաճախ նրան իր բարերարն ու փրկիչն էր անվանում։

25. Բայց նախանձը հաղթեց նրան և նա, ով բազում, բյուրավոր թշնամիների դեմ սխրանքներ էր գործել, թշնամուց կայսեր փրկել, պարտվեց սակավաթիվ յուրայինների կողմից։ Նրան հիմարորեն զրպարտեցին ու ամբաստանեցին պետական դավաճանության ու դավադրության մեջ և նա, տեսնելով, որ իր նկատմամբ մարդկանց նախանձը անչափ շատ է (այդ մասին նա իմանում էր իր հավատարիմ մի մարդու կողմից, որ անցյալում իր՝ Մանուիլի ծառան էր, իսկ տվյալ պահին բախտի բերմամբ ծառայում էր Թեոփիլոսին որպես մատռվակ, հենց նա իրեն ասաց, թե կայսրը որոշել է իրեն կուրացնել), հանդգնում է ապստամբության և փախուստի դիմում հագարացիների մոտ, որոնք համարելով նրան նշանավոր մարդ, մեծ պատիվների արժանացրին[70]։ Նա մեծապես նեղում էր [սարակինոսներին] սահմանակից կորմատներ[71] կոչվող թշնամիներին և իր մեծ փորձով ու արտակարգ խոհեմությամբ նրանց դեմ մեծ հաղթանակներ տանում։ Կարևոր է ասել, որ նա այդ սխրանքները գործում էր [արաբական] բանտերում գտնվող հռոմայեցի ռազմագերիներով, որոնց համար երաշխիք էր տվել, թե փախուստի չեն դիմի։ Ասում են, թե այն ժամանակ նրանք նվաճեցին և ամերմումնիին հպատակեցրին Խորասանը և ոչ միայն իրենց քաջությամբ, այլև իրենց արտասովոր ու զանազանվող արտաքինով։ Նրանց այլատեսակ հանդերձանքն ու տարբեր լեզուն թշնամիներին երկյուղով էր պատում։ Մանուիլը փրկեց [սարակինոսներին] նաև իրենց վնաս հասցնող ու պատուհասող բազում վայրի գազաններից և [սարակինոս-

ներին] մեծ բարիք գործելով, շատ սիրվեց և՛ իր՝ առաջնորդի[2], և՛ նրա ծերակույտի կողմից։

26. Կայսրը, լսելով այդ բոլորի մասին, զղջաց, շատ վշտացավ, դիմեց ամեն քայլի՝ այրին հետ կանչելու, նրա վերադարձը գլուխ բերելու համար։ Պատմում են, որ այն ժամանակ բանտարկված ռազմագերիների փոխանակության գործով գնացող վանական Իաննեսին[73] հանձնարարված էր Մանուիլի հետ հաշտության մասին բանակցություններ վարի և նրան հայրենիք վերադարձնի. այդ առթիվ այդ վանականի և նրանից առաջ այնտեղ բազում գնացողների միջոցով նրան խրիսովուլ[74] ուղարկեց և անձեռնմխելիության մասին երդմնագիր։ Իաննեսը հիշյալ [փաստաթղթերով] այնպես բացահայտ չհանդիպեց ու չտեսակցեց [Մանուիլի] հետ, այլ շատերից ծածուկ ու թաքուն։ Թեոփիլոսի առաջարկությամբ Իաննեսը մեր երկրից ուղարկվեց զգեստները փոխած, նմանեցված Երուսաղեմ ուխտի գնացող ցնցոտիազգեստ իբերներին և վանականներին։ Ահա նրանց մեջ խառնելով, նրան Բաղդադ[75] ուղարկեց, Մանուիլի ապրած տանը հաճախելու որպես մուրացիկ և նրան հայտնելու կայսեր զղջման մասին։ Որպես ասածների վկա նրան տվեց կայսեր թալիսմանն ու խրիսովուլը, որոնք նրան ավետում էին [կայսեր] համակրությունն ու իր գործած հանցագործությունների կատարյալ ներում[76]։ Մանուիլը, երբ իր ձեռքն առավ դրանք, հոգին ալեկոծվեց, նա մտածում էր տունդարձի մասին։ Բայց քանի որ և՛ անցած ժամանակը, և՛ թշնամիների դեմ նրա մեծագործությունները, որոնց մասին մենք վերը պատմեցինք, ոչ թե նվազեցրել, այլ ընդհակառակը օրավուր աճեցրել էին արաբների վստահությունը նրա անձի նկատմամբ, նա դիմում է ամերմումնիին՝ ասելով, թե մեծ ցանկություն ունի հռոմայեցիների դեմ արշավելու՝ վրեժ լուծելու համար կայսեր առջև իրեն ամբաստանած թշնամիներից, որոնք Կապադովկիայում են բնակվում։ Իր ծրագիրը էլ ավելի հավաստի ներկայացնելու համար նա խնդրեց, որ իրեն ընկերակցի նաև ամերմումնիի որդին։ Իսմայիլը[77] խնդրանքին հավանություն տվեց և նրան ուղարկեց՝ ում դեմ որ նա ցանկանում էր։ Մոտենալով հռոմայեցիների սահմաններին, նա իր գաղտնիքը բացում է Կապադովկիայի զորավարին[78]՝ հռոմայեցիների երկիր վերադառնալու իր ցանկության մասին։ Միաժամանակ նա հրահանգեց, որ անհրաժեշտ է այս տեղում դարան ու որոգայթ լարել, որպեսզի երբ ես այնտեղ հասնեմ, սարակինոսների հրոսակները մի այլ տեղ ուղարկելով, դարանակալողների հետ ինքս գամ հռոմայեցիների երկիրը։ Այդպես էլ եղավ։ Երբ նա մոտեցավ պայմա-

:նավորված վայրին, կաթոգին գրկախառնվեց Իսմայիլի որդուն և ասաց. «Որդյա՛կ, ողջ-առողջ գնա դեպի հայրդ։ Իսկ ես, իմացիր, գնում եմ հենց իմ իսկական կայսեր ու տիրոջ մոտ»։ Եվ այսպես, նա ողջ-առողջ այնտեղից եկավ մայրաքաղաք[79], Վլախեռնայի սուրբ տաճարը, քաջ գիտենալով, որ Թեոփիլոսը իր նկատմամբ մեծ վստահություն է տածում։ Եվ ահա նա ստանում է մագիստրոսի պատվաստիճանը և այնուհետև դառնում նրա որդիակիցը[80], առաջ քաշվելով նաև սխոլերի դոմեստիկոսի աստիճանին։ Կան և պատմողներ, որոնց համաձայն Մանուիլը, ճիշտ է, փախուստի դիմեց հագարացիների մոտ և, ինչպես ասվեց, վերադարձավ Թեոփիլոսի ջանքերով, բայց նա ոչ թե Թեոփիլոսի ժամանակ, դավաճանության մեջ մեղադրվելով, փախուստի էր դիմել, այլ Միքայել Թլվատի, Թեոփիլոսի հոր, կամ այն պատճառով, որ ատում էր նրան, կամ էլ երկյուղելով նրա վաղեմի ոխակալությունից։

Կոստանդնուպոլսի պատրիարք է ձեռնադրվում Իոաննեսը[81], ապրիլ ամսի մեկին, կիրակի օր։ Նա ստացավ այդ կոչումը որպես իր ամբարշտության ու անհավատության համար մրցանակ, այն բանի համար, որ չէր երկրպագում սրբապատկերները։

27. Թեոփիլոսը պրպտող միտք ուներ, նա շատ էր ուզում իմանալ ապագա կայսրերի մասին։ Նա ոմանց միջոցով իմացել էր, որ այդ պատերազմների ժամանակ գերվել էր մի հագարացի կին, որ կանխագուշակելու շնորհք ունի։ Թեոփիլոսն այդ կնոջ իր մոտ կանչեց և հարցուփորձ արեց՝ ովքեր են բաղում տարիներ թագավորելու։ Նա գուշակեց, թե «Քո գահը ժառանգելու են որդիդ ու կինդ», և այնուհետև ասաց, թե գահին երկար ժամանակով տիրելու են Մարտինակիոսները։ Դրա վրա Թեոփիլոսը տեղն ու տեղը այդ Մարտինակեսին, որ իրեն ինչ-որ ազգական էլ էր գալիս, վանական խուզեց, իսկ նրա տունն էլ աստուծո և վանականների կացարանի վերածեց։ Բայց այդ կինը ոչ միայն դա, այլ շատ ուրիշ լինելիքների մասին գուշակեց, նա հայտնեց, թե Իոաննեսը հեռացվելու է պատրիարքական աթոռից, աներկբա ասաց սրբապատկերների վերականգնման մասին։ Դա Թեոփիլոսի հոգին տրտմությամբ լցրեց, նա չէր հաշտվում այդ մտքի հետ, դրա համար նա անվերջ, բաղում անգամներ այդ մասին խոսեց իր կնոջ հետ, ապա և լոդոթետ Թեոկտիստոսին հորդորեց և բաղում երդումներով հարկավորեց, որպեսզի ո՛չ Իոաննեսը աքսորվի, ո՛չ էլ սրբապատկերները արժանանան երկրպագության։ Թեոփիլոսը թագավորության շուրջ այդքան պրպտումներ ու որոնումներ կատարեց, որ Իոաննեսի տաշտագուշակությամբ հստակ տե-

սավ ապագայում իշխանությունը ստանալիք Վասիլին։ Կինը բացահայտեց նաև Կոստանդին Տրիֆիլիոսի հետ կատարվելիքի մասին՝ ընդառաջ գնալով Թեոփիլոսի՝ այդ մասին իմանալու աղաչանքին ու ցանկությանը։ Նա ասաց, թե Վասիլի թագավորության օրոք [Կոստանդին Տրիֆիլիոսին] ու իր որդիները հոգևորականի սքեմ են հագնելու, ինչ՛որ եղավ։ Նա գուշակեց նաև զինվորական ցուցանակների պատասխանատուի մասին, թե մահապատժի է ենթարկվելու ձիարշավարանի սֆենդոնեում, և որ նրա ունեցվածքը գրավվելու է հօգուտ կայսերական գանձարանի։ Այդ բոլորը համաձայն Պլատոնի...[82]

23. Հաջորդ տարի և՛ հագարացիները, և՛ Թեոփիլոսը դուրս եկան միմյանց դեմ պատերազմի, բայց, իրարից երկյուղելով, բացարձակապես ոչինչ չարած, յուրաքանչյուրն իր երկիրը վերադարձավ։ Այդ նույն ժամանակները և՛ Խազարիայի խաքանը, և՛ Պեխը[83] Թեոփիլոս կայսեր մոտ դեսպաններ ուղարկեցին, թույլտվություն խնդրելով կառուցել իրենց կողմից Սարկել կոչվող բերդը[84], որ թարգմանաբար Սպիտակ տուն է նշանակում։ Այն գտնվում է Տանայիս գետի[85] մոտ, որ այս կողմից պածինակների[86], իսկ այն կողմից՝ խազարների միջև սահմանագիծ է։ Խազարների՝ ամեն տարի փոփոխվող երեք հարյուր տաքսեոտներ[37] այն կողմում են տեղակայված։ Թեոփիլոսը խնդրանքին ու աղերսանքին ընդառաջ գնաց և սպաթարոկանդիդատ Պետրոնասին մականունը Կամատերոս, կայսերական խելանդիոններով և Պափլագոնիայի կատեպանով այնտեղ ուղարկեց, հրամայելով նրանց հայցը գլուխ բերել։ Պետրոնասը հենց որ հասավ Խերսոն, երկայն նավերն այնտեղ մի մոտիկ տեղում քաշեց ցամաքը, իսկ զինվորներին կլոր նավերի մեջ նստեցնելով, նավարկեց մինչև Տանայիս, այնտեղ, որտեղ պետք էր նրանց համար քաղաք[88] կառուցել։ Այն պատճառով, որ տեղում քարը պակասում էր, նա փոքր գետաքարերից կիր պատրաստեց, իսկ կավից էլ հնոցի մեջ աղյուսներ թրծելով, բազմաթիվ բանվորների օգնությամբ իրեն հանձնարարված գործը հոյակապ գլուխ բերեց և մայրաքաղաք վերադարձավ։ Ելնելով տեղացի մարդկանց հետ ունեցած իր շփումից և երկրի մասին ձեռք բերած ծանոթությունից, նա Խերսոնի վերաբերյալ կայսեր իր կարծիքը հայտնեց ու խորհուրդ տվեց. «Եթե դու վստահես նրանց իշխաններին ու առաջնորդներին և այնտեղ չհաստատես քո սեփական զորավարներին, չես կարողանա այդ երկրամասի ու վայրերի վրա լիակատար տիրել»։ Երբևիցե մեզանից զորավար չէր ուղարկվել նրանց գործերը տնօրինելու, ամեն ինչ վարում էր այսպես կոչված պրոտևոնը[89]՝ քաղաքապետի[90] հետ միասին։ Դրա

վրա Թեոփիլոս կայսրը հենց այդ վերոհիշյալ Պետրոնասին ուղարկեց այնտեղ, նկատի ունենալով երկրամասին նրա քաջատեղյակ լինելը, շնորհելով պրոտոսպաթարի պատվաստիճանը և զորավարի պաշտոնը։ Կայսրը պրոտևոնին ու մյուսներին կարգադրեց անվերապահորեն ենթարկվել նրան։ Այն ժամանակներից ահա սկիզբ առավ մինչև օրս հարատևող, այստեղից Խերսոնի զորավարներ նշանակելու կարգը[1]։ Սարկելի կառուցումն ահա այդպես կատարվեց, խերսոնցիներին էլ այստեղից զորավարներ ուղարկելու սովորությունը այսպես սկիզբ առավ։

29. Թեոփիլոսը դարձյալ արշավում է հագարացիների դեմ, այս անգամ ավելի մեծ ուժերով, որովհետև չէր ուզում իր հորից պակաս խիզախ երևալ։ Նա ավելի շատ է խորանում Ասորիքի մեջ, ասպատակ սփռելով ու ամայացնելով երկիրը, ավարառելով ու գերեվարելով, գրավելով ու գետնին հավասարեցնելով երկու քաղաք, այդ թվում և Սողոպետրան[92] ամերմումնիի ծննդավայրը, նախապես պաշարելով այն։ Ամերմումնին Թեոփիլոսին նամակ գրեց և կոչ արեց հեռանալ իր ծննդավայրից, բայց նրա ասածին ականջ կախող չկար։ Այդ բոլորը կատարելուց հետո, Թեոփիլոսը վերադարձավ մայրաքաղաք, Թեոփոբոսին պարտավորեցրեց կարգավորել պարսից գործերը և շտապ իր մոտ վերադառնալ։ Պարսիկները սակայն Սինոպում նրան ձեռք գցելով, իր կամքին հակառակ թագավոր հռչակեցին[93], բայց նա և՛ ամոթից, և՛ կայսեր վախից դեմ էր դրան, նա հասկացնում էր նրանց, թե այդ հանդգնությունն իրենց վրա էժան չի նստի։ Դրա վրա նրանք, հակառակ որ կայսեր վախը իրենց էլ ավելի էր համակել, կառչած մնացին իրենց վճռին, [Թեոփոբոսին] էլ սիրտ էին տալիս։ Վերջինս, սակայն, տեղի ունեցածի մասին ծածուկ տեղեկացրեց կայսեր, երդումներով վստահեցրեց նրան, թե կատարվածի համար ինքը մեղավոր չէ, այլ նրանք։ Կայսրը ուրախությամբ ընդունեց նրա նախաձեռնությունը և նրան արքունիք հրավիրեց՝ նախկին շքին արժանացնելու, բացի այդ նա մնացած [պարսիկներին] քավություն շնորհեց, գործած զանցանքներին՝ ներում, և թույլ տվեց գնալ Սինոպ և Ամաստրիս։ Սակայն երբ նրանք անչափ բազմացան, բազմամարդ դարձան՝ մինչև երեք բյուր հոգի, կայսրը գտավ, որ նպատակահարմար չէ նրանց ազատ ու անգործ թողնել, նա լուրջ մտածելով, յուրաքանչյուր բանակաթեմն ուղարկեց երկուհազարական հոգի՝ զորավարների հրամաններին ենթակա։ Նրանց վրա նա անդամ տուրմարխներ կարգեց։ Դրանից է ահա, որ տուրմաներն այն բանակաթեմերի, որտեղ նրանց գրեցին, մինչև օրս պարսիկների տուրմաներ են կոչվում։ Թեոփիլոսը նրանց հանդգնությունը համարեց շատ

լկտի ու անամոթ, և դա պատճառ դարձավ, որ նրանց ցրիվ տան ու մասնատեն[94], իսկ Թեոֆոբոսին էլ՝ շատ չանցած կյանքից զրկվելու։ Այդ բանի համար մի երկրորդ պատճառ էլ կար, որի մասին իր տեղում կասվի։

30. Ամերմումնին իր ծննդավայրի առման ու ավերման առթիվ այնքան տխրեց, որ Բաբելոնում, Փյունիկեում, Կյուլե Ասորիքում, Պաղեստինում և Ստորին Լիբիայում զորահավաք հայտարարեց, կարգադրեց բոլոր զինվորներին իրենց վահանների վրա «Ամորիոն» գրեն, անամոթաբար հասկացնել տալով, որ մտադիր է նրա վրա արշավելու[95]։ Զորքը հավաքվեց ու ծովացավ Տարսոնում։ Ամերմումնիի հոգին իր ծննդավայրի հետ կատարված խայտառակության առթիվ մոլեգնությամբ էր բորբոքվել։ Նրա դեմ դուրս եկավ Թեոփիլոսը և հասավ Ամորիոնից երեք օրվա ճանապարհ հեռավորության վրա գտնվող Դորիլեոնը[96]։ Նրան խորհուրդ էին տալիս Ամորիոնի բնակչությունը տեղափոխել և առայժմ սարակինոսների անկասելի թափի առաջ խույս տալ (ամերմումնին շատ էր հզորացել և անհամար զորք բերել), բայց Թեոփիլոսը այդ բանը անհարմար գտավ ու անարի, նա ձեռնտու և քաջություն ցուցաբերելու հարմար համարեց [Ամորիոնը] ամրացնել և քաջարի զորավարի խոհեմությամբ այն փրկել։ Այդ զորավարը պատրիկ Աետիոսն էր, Անատոլիկոն բանակաթեմի զորավարը։ Այն պատճառով, որ Աետիոսը աշխատող մարդկանց կարիքն էր զգում, Թեոփիլոսը նրանց էլ ուղարկեց, որպեսզի նա կարողանա թշնամուն ամեն կողմից դիմակայել և հաղթել։ Բացի այդ, նա Աետիոսին հեգեմոններ[97] ու հրամանատարներ ուղարկեց, մի փոքր անց նահատակված Թեոդորոս Կրատերոսին, Թեոփիլոսին և Բաբուցիկոսին[98], որոնք ոչ միայն այդ զորքը գլխավորեցին, այլև քառասուներկու մարտիրոսաց փաղանգը[99]։

31. Երբ սարակինոսների գոռոզացած առաջնորդը զորքի գլուխն անցած եկավ Տարսոն, առանց որևէ մեկի հետ խորհրդակցելու, հարցուփորձ անելու, նպատակահարմար գտավ շարժվելու դեպի Ամորիոն, բայց նախօրոք կամենալով փորձել հռոմեական բանակի հզորությունը, զորքի մի մասը տալով որդուն, կայսեր դեմ ուղարկեց, դատելով այսպես. «Եթե նա հաղթանակ տանի, ապա բոլոր դեպքերում հաղթանակը կվերաբերի նաև հոր, իսկ եթե հնարավոր չէ հաղթանակ տանել, լավ է տեղում հանգիստ մնալ»։ Ահա [ամերմումնիի որդին], իր հետ վերցնելով Ամերին, Մելիտենեի այն ժամանակվա կառավարչին[100], շուրջ տասը հազար թուրք, հայերից բաղկացած ամբողջ բանակով և

իշխանաց իշխանով[101], շարժվեց Դազիմոնի[102] վրա։ Թեոփիլոսն էլ իր հերթին նրա դեմ դուրս եկավ, ունենալով պարսիկներից և Արևմուտքից ու Արևելքից հավաքագրած զինվորներից բաղկացած հզոր բանակ։ Հասնելով Անզեն[103] կոչվող վայրը, նախքան բախվելը նա ցանկացավ տեսնել հակառակորդների զորաբանակը։ Սխոլերի դոմեստիկոս Մանուիլը առնելով [կայսեր], նրան տարավ շրջապատի վրա իր բարձրությամբ իշխող մի բլուր։ Կայսեր թվաց, թե սարակինոսների բազմությունն այնքան էլ մեծ չէ։ Մանուիլը դրան համաձայն չէր, նա հավատացած էր, թե նիզակների թիվը հավասար չէ զինվորների թվին։ Նա խորաթափանց մտածելով, ասաց. «ո՜վ կայսր, նիզակներից բաղկացած անտառը դու կրկնապատկիր»։ Երբ համոզվեցին, որ հակառակորդների զորքը ավելի հզոր է սեփական զորքից, որոշեցին լրջորեն խորհրդակցել։ Մանուիլն ու Թեոֆոբոսը խորհուրդ տվեցին թշնամիների վրա հարձակվել գիշեր ժամանակ։ Բայց ուրիշներն էլ, ընդհակառակը, ասացին, թե նպատակահարմար է օր ցերեկով հարձակվել։ Կայսրը համաձայնություն տվեց վերջին կարծիքին։ Հենց որ լույսը բացվեց, սկըսվեց սոսկալի ճակատամարտ, կայսերական տագմաները քաջաբար կովեցին և, իսմայելացիները ռազմի դաշտը լքելով, փախուստի դիմեցին։ Սակայն թուրքերը համառ նետաձգությամբ[104] իսմայելացիներին հետապնդող հռոմայեցիների զինվորներին ստիպեցին դադարեցնել հետապնդումը, իսկ սարակինոսներին էլ համոզեցին կանգնել, փախուստի չդիմել։ Նրանք դարձյալ ռազմաշարք կազմեցին և քաջաբար, հեռահար նետաձգությամբ ճակատամարտի ելքի նժարը իրենց կողմը թեքեցին։ Հռոմայեցի զինվորները չէին կարողանում մոտենալ նրանց, բացի այդ ի վիճակի էլ չէին հեռվից նկատել նրանց, քանզի սաստիկ [նետահար] էին լինում, և փախուստի դիմեցին, լքելով կայսեր։ Այդ բանն անել կամ այդ ուղղությամբ մտածել համարձակվողները կայսերական տագմաների հրամանատարներն ու պարսիկները չէին, նրանք տեղում մնալով ջանում էին ամեն կողմից իրենց շրջապատած և հարվածող թշնամիներից կայսեր փրկել։ Նրանք գլխովին կկորչեին, եթե վրա չհասներ գիշերը և չտեղար կարճատև անձրև, որը թուլացրեց հակառակորդների աղեղների լարերը, որոնցով նրանք մարտնչում էին և գերակշռության էին հասել, իսկ իրենց էլ նետերի հարվածներից շունչ քաշել տվեց, մի կերպ փրկվելու հնարավորություն։ /32/ Երբ եկավ խորը գիշերը, և Մանուիլը պարեկությամբ էր զբաղված, նրա ականջին հասավ պարսիկ զինվորների՝ սարակինոսների լեզվով վերջիններիս հետ խոսակցությունը, նրանց պայմանավորվելը՝ դավաճանել հռոմեական զորքին

և վերադառնալ իրենց նախկին տիրոջ մոտ, որին լքել-հեռացել էին։ Մանուիլը լսածը գաղտնի հայտնում է կայսեր և պահանջում նրանից, չսպասելով գերի ընկնելուն, մեծամեծների հետ փրկի սեփական անձը։ Կայսեր հարցին՝ «ինչպե՞ս կլինի ինձ հետ մնացած այսքան զինվորների փրկության գործը», նա պատասխանեց. «Ո՜վ կայսր, աստծուց փրկվելը միայն քեզ է վերաբերում, իսկ սրանք իրենց գործը շատ շուտ կտնօրինեն»։ Արշալույսին կայսրը դիմեց փախուստի և փրկվեց Խիլիոկոմոնում[105]։ Դասալիք եղած զորավարները, կայսեր մոտ գնալով, ասացին, թե իրենք՝ պատերազմում կայսեր լքողները, ապրելու արժանի չեն և քաշելով իրենց թրերը արտասվալից դրին նրա ոտքերի առջև։ Բայց Թեոփիլոսը, իրերի նման դարձանալի ելքից նրանցից ավելի հուզված, ասաց. «Եթե ինձ աստված փրկեց, դուք էլ կփրկվեք՝ թշնամու դեմ մարտնչելով»։

Թշնամիների ռազմագիտական քայլը, պարսիկների գիշերային խուսակցությունը, ապա նաև [նրանց] պայմանավորվելը [սարակինոսների հետ]. Թեոփոբոսի թշնամիների՝ նրան մահապատժի ենթարկելու կողմնակիցների ձեռքին մի երկրորդ պատճառ ու նրան ամբաստանելու հարմար առիթ եղավ, /33/ իսկ ամերմումնիի համար էլ, որ լսել էր տարված մեծ հաղթանակի մասին, Ամորիոնի վրա հարձակվելու։ Կայսեր ծննդավայրի վրա արշավող երկու բանակները՝ ամերմումնիի և նախապես համառ մարտնչած նրա որդու, միացան միմյանց և [քաղաքը] օղակի մեջ առան։ Թեոփիլոսը, վերադառնալով Դորիլեոն, առայժմ փորձում էր ամերմումնիին նվերներ տալ, որպեսզի նա [Ամորիոնից] հեռանա, գնա իր երկիրը։ Բայց նա, հոգու խորքում պահած լինելով ծննդավայրի[106] առման ու ավերման առթիվ ճաշակած [դառնությունը], տեղի չտվեց, դեռ ավելին, նա արհամարհեց Թեոփիլոսին, նրան անվանեց ստրուկ և երկչոտ, ծաղր ու ծանակի ենթարկեց նրան այն բանի համար, որ փորձում է իրեն համոզել [հեռանալ Ամորիոնից] ու նախքան դեպքերը, այլ հիմա, երբ նա՝ Թեոփիլոսը, անելանելի վիճակում է գտնվում։ Ամերմումնին իր մոտ ժամանած Թեոփիլոսի դեսպաններին վար դրեց, որպեսզի նրանք դեպքերի ականատես վկաները ռառնան։ /34/ Պաշարումը երկարեց, և քաղաքը կործանումից կխուսափեր, մի կողմը թեև ամեն միջոցով պաշարման մեջ էր այն պահում, սակայն մյուսը համառ դիմադրություն էր ցուցաբերում. երկու կողմերն էլ բազում զոհեր էին տալիս։ Հագարացիների ջանքերն ի դերև էին գալիս, նրանց քիթը գետնին քսվեց, քանզի բազում զոհեր էին իրենք տալիս. քաղաքի առումից հետո այնտեղ հաշվեցին շուրջ

յոթանասուն հազար սպանված։ Բայց [Ամորիոնին] վիճակված չէր խուսափել ստոր՝ բարձրից պատուհասող սրից, դրա պատճառը օրըստօրե լայն ծավալ ստացող հերձվածն էր[107], այդ առթիվ սրբությունների անարգվելը։ Եվ ահա մի ռամիկ (այդ թշվառականի անունը Բոյիդիցես էր)[108] այն ժամանակ, երբ [սարակինոսները] որոշել էին հեռանալ և խայտառակ կերպով վերադառնալ իրենց երկիրը, նա սլաքով մի նամակ արձակեց դեպի սարակինոսները, որով հայտնում էր. «Ո՞վ դուք, այսքան տառապելուց հետո որոշել եք գնա՞լ, ձեր այդքան խոնջանքն ու հոգնությունը ինչ է, իզո՞ւր էին։ Արդ, դուք եկեք այն բուրգի մոտ, որի վրա քարե ցլիկ կա դրված, իսկ ցածում՝ մարմարե առյուծ կանգնեցված։ Հենց այնտեղ ղուք կհանդիպեք ինձ, ձեր կողմնակցին ու համախոհին։ Բացի այդ, այստեղ պաշտպանությունն ավելի թույլ է, այստեղից ձեզ կհաջողվի գրավել [քաղաքը], իմ ծառայությունն էլ բարձրը կգնահատեք»։ Ընդառաջ գնալով նրա խոսքին, ահա եկան ու գրոհով քաղաք մտան, ձեռք գցածին բախելով ու սրակոտոր անելով։ Ոչ ոք չխուսափեց մահից, բոլորը կոտորվում գետին էին փռվում, և արյունը գետի նման հոսում էր։ Ահա այսպես գրավվեց Ամորիոնը, այն ամենաանօրեն ձևով անօրենների ձեռքը մատնվեց, կենդանի մնացին միայն նրանք, որոնք Բաղդադ քշվեցին, այն է՝ բանակաթեմերի մեծամեծները և ամենաերևելի մարդիկ, նրանց թվում էին և 42 նահատակները[109]։ Բոլոր մնացածները թշնամու սրի զոհը դարձան։ Թեոփիլոսը ամերմումնիին երկրորդ անգամ դեսպաններ ուղարկեց, առաջարկեց երկու հարյուր կենտինար ոսկով[110] փրկագնել և թշնամիների ձեռքից ազատել ռազմագերիներին, եթե ոչ բոլորին, թեկուզ իր ազգականներին և դաշնակիցներին։ Ամերմումնին չափազանց գոռոզ ու փքված ետ ուղարկեց և՛ առաջին, և՛ երկրորդ դեսպաններին, ծանակելով Թեոփիլոսին ու նրա հասցեին լուտանքներ թափելով, թե. «Այդքան քիչ կենտինար [ոսկո՞վ] եք ուզում փրկագնել, երբ դուք փառամոլությամբ որպես նվեր մինչև հազար կենտինար եք ծախսել»[111]։ Թեոփիլոսը սրտի նոպա ունեցավ և կարծես ինչ-որ կրակից վառված ու տանջված, հովանալու համար ջուր էր ուզում։ Նրան ձյան ջուր տվեցին։ Նրա սրտի տապը թեև մի փոքր իջավ, բայց խմած ջրից էլ թանչով հիվանդացավ, հիվանդություն, որ և իրեն առավ տարավ։ Ահա Ամորիոնում կատարվածի մասին այսքան։

35 Հագարացին, իր երկիրը վերադառնալով, հիշյալ զորահրամանատարներին կալանդների մեջ առնելով, մթին բանտում արգելափակեց։ Նա կարգադրեց նրանց տալ միայն մի քիչ ջուր ու հաց։ Զնդանում

այնքան մութ էր, որ կեսօր ժամանակ անգամ լույս չէր մտնում, նրանք իրար էին ջոկում միայն ձայնից, րացի պահակներից էլ մարդ չէին տեսնում և ապրում էին կարծես ամենահեռավոր մի անապատում։ Նրանք ահա ամբողջ յոթը տարի այդ չարչարանքները քաշեցին։ Մարտ ամսի հինգին Ամորիոնը [Թշնամուն] մատնող քրիստոսուրաց Բոյիդիցեսը, գալով բանտ, ձայն տվեց Կոստանդնին, խոհեմ ու զարգացած այրին (այս Կոստանդինը հիշյալ պատմության համաձայն ծառայում էր պատրիկի մոտ)[112] ու ասաց, թե բանտարկվածներից և ոչ ոք չպետք է իր մոտ լինի և իմ գաղտնիքները լսի։ Երբ Կոստանդինն ասաց, թե իր մոտ ոչ ոք չկա, նա շարունակեց. «Եկ իմ մոտ, ո՜վ ամենասիրելի ու քաղցր հոգյակ, դու գիտես, որ ես քեզ վաղուց եմ սիրում, համաձայնվիր պատրիկի հետ վաղը խալիֆայի հետ աղոթել և հավատուրաց լինել, որպեսզի սրի ու խոշտանգումների զոհ չդառնաք։ Խալիֆան դա շատ է ուզում, նա այդ մասին է մտածում, և ես օգտակար համարեցի քեզ, հավատարիմ ընկերոջ, տեղյակ պահել։ Համաձայնվիր առերես նրա հետ աղոթել, իսկ հոգուդ խորքում հավատա խորագետ աստծուն։ Այդպես վարվելով և դուք չեք զրկվի նրա [շնորհելիք] հավիտենական կյանքից»։ Բայց անպարտելիին այդ խոսքերը չմեղկացրին, նա չխաբվեց։ «Հեռացիր ինձնից, անօրենության մշակ,— ասաց նա,— հեռացիր», որից հետո գնաց։ Նա պատրիկին խոսակցության մասին ոչինչ չասաց, որպեսզի նա հանկարծ թուլակամություն հանդես չբերի, այլ միայն տեղեկացրեց, թե վաղը մեզ մահապատժի են ենթարկելու։ Պատրիկն աստծուն գոհանամ ասաց, իրեն վերաբերող ինչ պետք էր արեց, և Կոստանդնի միջոցով իր հետ բանտում գտնվողներին ոտքի հանեց հսկման։ /36/ Առավոտյան սարսափազդու արտաքինով մի իշխան եկավ և կարգադրեց բանտից դուրս գան միայն գլխավորները։ Դուրս եկան քառասուներկու այրեր, որից հետո նա կարգադրեց փակել այն։ Նա հարցրեց՝ քանի՞ տարի է, ինչ բանտում են։ Ցանկանալով նրանց իր հիմարությունների ունկնդիրներ դարձնել, նա այլ դատարկ խոսքեր էլ ասաց։ Նրանք պատասխանեցին, թե յոթերորդ տարին է և, սուրբ գրքի ասույթներով քաջաբար հակադրվելով նրանց ասածներին, մահվան դատապարտվեցին։ Երբ եկան Եփրատ գետի ափը, ուր կառուցված է նրանց Սամառա քաղաքը, այդ սրիկան փորձում էր Թեոդորոս Կրատերոսին գայթակղել, մտածելով, որ գուցե կհաջողվի նրան համոզել մահից հրաժարվել։ «Բայց դու, ո՜վ Թեոդորոս,— ասաց նրան,— այդ ինչպե՞ս հույս ունես մահվամբ գնալու աստված, երբ արհամարհում ես փրկության վերաբերյալ նրա հրա-

հանգները։ Դու անցյալում հոգևորական չէի՞ր ու հետո աշխարհական դարձել, ձեռքերդ արյամբ չե՞ս պղծել պատերազմներում, դրանք աղտեղությամբ ու ապականությամբ չե՞ս ողողել»։ Թեոդորոսը տեղն ու տեղը պատասխանեց. «Հենց դրա համար ես չեմ զլանա իմ արյունը հեղել տալ, որպեսզի աստված իմ մեղքերի փրկագին ու քավություն համարելով դա, պարգևի ինձ իր արքայությունը այնպես, ինչպես քո ծառաներից մեկը, եթե փախչի և ապա դարձյալ վերադառնալով քեզ սիրելի ծառայություն մատուցի, նա ներման կարժանանա և ոչ անբարյացակամ վերաբերմունքի»։ Այդ ասելով նա, կարծես օլիմպիական խաղերի հաղթող լիներ, մտավ ասպարեզ և, վանելով պատրիկ Կոստանդնին համակած վախն ու երկյուղը, ասաց. «Եկ, ո՛վ Քրիստոսի զինվոր, դու, որ երկրային արքայից նշանակվել ես մեր բոլորի գլխավոր, առաջինն էլ ընդունիր մարտիրոսի պսակը»։ Սրբազգյաց Կոստանդինն ասաց. «Բայց այդ աստիճանը ավելի քեզ էր վայելում, քանզի դու ավելի քաջ ու հզոր ես, որով դու քեզ առաջինը մահին հանձնելով, ինձ քո հաջորդը կունենաս»։ Իրար սիրտ տալով նրանք գնացին դեպի մարտիրոսական մահը՝ յուրաքանչյուրն իր ունեցած աշխարհիկ աստիճանի հերթականությամբ։ Բոլորն ապշել էին, տեսնելով, թե ինչպես նրանք այդպես աներեր ու արի նահատակվեցին։ Բայց դա հետագայում կատարվեց[113]։

37. Այն ժամանակ Թեոփիլոս կայսրը, չկարողանալով տանել հագարացիներից կրած պարտությունն ու խայտառակությունը, պատրիկ Թեոդոսիոսին (Բաբուցիկոսի անունն այդպես էր) Ֆրանկիայի ռեքսի[114] մոտ ուղարկեց՝ նրանից հզոր ու մեծաթիվ զորք խնդրելու։ Նա երբեք էլ չէր համարել, որ պարտություն է կրել իր զինվորների թուլության կամ թուլամորթության պատճառով, այլ միայն ու միայն նրանց մարտից խուսափելու և, նույնն է ասել, դավաճանության։ Բայց չարաբախտ Թեոփիլոսը (նա այդպիսի հորջորջանք ստացավ պատերազմներում մշտապես պարտություն կրելու պատճառով) կօգտվեր իր հրավիրած այլազգիների ուժից ու հզորությունից (ռեքսը ուրախությամբ համաձայնվեց օգնություն տալ կայսեր) և վերստին հագարացիների դեմ կարշավեր, եթե առաքելության ուղարկված Թեոդոսիոսը մինչ այդ չվախճանվեր։ Նրա մահը խանգարեց այդ զորքի մայրաքաղաք գալուն, իսկ կայսեր համակած թանչը նրան դեպի մահ էր տանում և ոչ դեպի սենք։

38. Բայց ժամանակն է Թեոփոբոսի հարցին անդրադառնալ և այն բոլորին պարզ դարձնել։ Ե՛վ նրա առաջարկությունը՝ հագարացիներին

ճակատամարտ տալ գիշեր ժամանակ (այդ մասին վերևում խոսք եղավ), և՛ սարակինոսների հետ տեղի ունեցած գիշերային գաղտնի խոսակցությունը, ապա և բուսած այլևայլ և բազմացած մեղադրանքները՝ պետական դավաճանության մասին, այդ մարդուն դարձրին ատելի ու ահարկու։ Եվ քանի որ հնարավոր չէր համառել, նա գիտեր, որ Թեոփիլոսը դյուրախաբ մարդ էր, երեխաներով, կանանցով ու մի քանի երևելի մարդկանցով փախուստի է դիմում դեպի Ամաստրիս (սա պոնտական քաղաք է)։ Նրա դեմ անհապաղ զորք է ուղարկվում, տեղի է ունենում համառ պատերազմ՝ որպես կայսեր բացահայտված թշնամու դեմ։ Այդ զորքի հրամանատարն էր վիգլայի դրունգար Օորիֆաս կոչվածը։ Բայց Թեոֆոբոսը, իր մեջ ունենալով վախն աստուծո, գտավ, որ արդար բան չէ իրեն՝ քրիստոնյա մարդուն, հրճվել հավատացյալ մարդկանց արյունահեղությամբ։ Եվ ահա կայսեր տված երդումներից խաբված, այդ երդումների վրա հույսը դրած, տեղի տվեց ու վերադարձավ կայսեր մոտ։ Սակայն Թեոփիլոսը դրժելով իր երդումները, նրան Բուկոլեոնում[115] բանտարկեց և հրամայեց հսկել նրան։ Օրերից մի օր Թեոփիլոսն իմանալով, որ Թեոֆոբոսը մահամերձ է, հրամայում է գիշեր ժամանակ այդ մոտիկ մարդուն գլխատեն և նրա գլուխը, որպես [իր համար] ինչ-որ դառն ու ցավագին պատանք, իրեն բերեն։ Երբ հրամանի համաձայն գլուխն իրեն բերեցին, նա սեփական ձեռքով բռնելով նրա քիթը, ասաց. «Այժմ ոչ դու Թեոֆոբոս ես, ոչ էլ ես՝ Թեոփիլոս»[116]։ Կան մարդիկ, որոնք Թեոֆոբոսի մահը վերագրում են Օորիֆասին և ոչ Թեոփիլոսին, պատմում են, որ երբ Թեոֆոբոսը հավատ ընծայեց Օորիֆասի խոսքերին, վերջինս գիշերով ծածուկ գլխատեց նրան։ Դա է պատճառը, որ մինչև օրս պարսիկների մեջ տարածված է այն կարծիքը, որ Թեոֆոբոսը չի մահանա, նա անմահ է։ Դա հետևանք է այն բանի, որ նրա մահապատիժը ծածուկ տեղի ունեցավ և ոչ բացահայտ։

39. Նույն այդ ժամանակները կրետացիք[117] համայն նավատորմիղով դուրս գալով, ավերում ու գերեվարում էին Թրակեսիոն [բանակաթեմի] ափամերձ շրջանները։ Նրանց ամբարտավանությունն ու ռազմական խորամանկությունն այն աստիճանի հասան, որ նրանք ասպատակում էին ոչ միայն ծովափը, այլև սրերը քաշած հարձակումներ էին գործում Լատրոս կոչվող լեռան[118] շրջանի վրանաբնակ վանականների վրա և այն մյուսիացիների ավար դարձնում[119]։ Բայց երբ նրանք ցամաք դուրս եկան, հիշյալ բանակաթեմի այդ ժամանակվա զորավար Կոստանդին Կոնտոմիտեսը դելֆինների նման նրանց քաջաբար սրի



6—1069

*քաշեց և գլխովին ոչնչացրեց։ [Թեոփիլոսի] թագավորության ժամանակ, ինդիկտիոնի ութերորդ տարվա հոկտեմբեր ամսին[120], հռոմայեցիների նավատորմիղը Թասոս կղզու ափերին պարտության մատնվելով, ամբողջովին կորավ։ Դրանից հետո էլ իսմայելացիների զորքը չդադարեց Կյուկլադյան և մնացած բոլոր կղզիներն ասպատակելուց։ Բացի այդ, նաև զորքով Աբազգիա ուղարկված Թեոֆոբոսն[121] ու Թեոդորայի եղբայր Վարդասը[122] նույնպես մեծ ջարդ կերան, և այնտեղից շատ քչերը վերադարձան[123]։ Ի վերա ամենայնի նրա ողջ թագավորության ժամանակ մշտական երաշտ էր, խստաշունչ ձմեռ, փոփոխական ու վատ եղանակ, որոնք վնասում էին երկրագործության ու մարդկանց։ Դրանից էլ ավա անվերջ հացի պակաս ու սով, անվերջ երկրաշարժեր։*

*40. Երբ փորհարությունից ու պալարախտից նա իր մարմնի ողջ նյութը սպառեց և հոգին, այլևս մնալու տեղ չգտնելով, ուզում էր նրա մարմնից դուրս թռչել ու հեռանալ, նա սկսեց մտատանջվել որդու և կնոջ ապագայի հարցով։ Երբ բժիշկների օգնությամբ նրա վիճակը մի փոքր թեթևացավ, և նա կարողացավ անկողնից վեր կենալ, նա բոլորին Մագնավրայի [պալատում] հավաքելով, շատ խորը հառաչեց ու ասաց. «Այսպիսի հիվանդության ու փոթորկի հանդիպած մեկ ուրիշը իր ծաղիկ հասակը կողբար և այդքան երջանկությունը։ Ի սկզբանե անտի ինձ սարսափելիորեն չարակնող նախանձը հիմա իմ վրա է տնկել իր աչքը և տանում է ինձ այս աշխարհից։ Իսկ ես, իմ աչքի առջև ունենալով կնոջս այրիությունը, որդուս չարաբախտությունն ու որբությունը, նրանց, ո-րոնք լավ դաստիարակություն ստացան և բարի ծառաներ ունեցան, այն, որ նրանք [կարող է] զրկվեն իմ սենատի ու ծերակույտի [հովանուց], ո՜վ ներկաներ, ողբում եմ ու լալիս, որ ձեզ, այնքան բարի ու մտերիմ մարդկանց թողնելով, գնում եմ դեպի ինձ անծանոթ կյանքը, փառքի փոխարեն ստանալու այն, ինչի մասին գաղափար էլ չունեմ։ Այդուհանդերձ հիշեցեք ինձ, որի ձայնն էլ չեք լսելու, ձայն, որ եղել են դեպքեր, դառն է եղել՝ անհրաժեշտաբար, հանուն օգուտի։ Իմ մահից հետո ձեր բարեմտությունը պահպանեցեք և փոխանցեցեք այն որդուս ու կնոջս, մշտապես հիշելով, որ մարդ ինչ ցանի, այն էլ կհնձի»։ Լսելով կայսեր՝ բոլորին առինքնող ու վեհացնող խոսքերը, ամենքն արտասվեցին։ Հնարավոր չէ նկարագրել ներկաների հեծեծանքն ու ողբը։*

*41. Նա մի քիչ էլ ապրեց և հունվար ամսի քսանին վախճանվեց, թագավորելով տասներկու տարի և երեք ամիս։ Նա իր ամբողջ կյանքի ընթացքում, գարշանք տածելով ուղղափառ հավատքը դավանողների նկատմամբ, անգթաբար նրանց գլխին տարվա բոլոր եղանակներին մըշ-*

տապես ձմեռ էր թափում։ Հենց դրա համար է, որ բոլոր մարդիկ նրան «չարաբախտ» կոչեցին, և այդ հորջորջումը կարծես իրեն ժառանգություն մնաց, քանզի նա թշնամիների դեմ կայսեր վայել ու գովքի արժանի ոչ մի հաղթանակ չտարավ, նա չկարողացավ անցյալում կրած պարտության վրեժն առնել, թեև իր ողջ կյանքում թշնամիների դեմ տասնութ անգամ պատերազմի գնաց, այդքան անգամ նրանց բախվեց՝ տալով ոչ սովորական ճակատամարտեր։ Արդ, թող այստեղ ավարտենք նրա մահվան մասին խոսքը, գնանք առաջ, պատմենք պալատի շուրջ նրա կառուցած շինությունների մասին, քանզի նրանք շատ նշանավոր են ու արժանի հիշատակության[124]։

42. Այդ բոլոր շինությունները քո դիմաց կտեսնես, երբ Կյուրիոսից[125] ներս մտնես։ Նախ՝ Կարիանոսը[126]։ Նա այդպես է կոչվում, քանզի կարիանոս քարից[127] շինած լայն գետի տպավորություն թողնող աստիճաններ ունի։ [Կարիանոսը] այժմ ծառայում է որպես մետաքսե հագուստների հանգերձարան և է [Թեոփիլոսի] ջանքերի արգասիքը, ինչպես և նրա հարևանությամբ գտնվող ոսկեզօծ առաստաղով Տրիկոնխը[128]։ Նա այգպես է կոչվում իր ձևի պատճառով. ունի երեք խորան, որոնցից մեկը կառուցված է արևելյան կողմում և հենվում է չորս հռոմեական սյուների վրա, իսկ մյուս երկուսը կողքերին՝ մեկը հյուսիսային կողմում, մյուսը՝ հարավային։ Շենքի արևմտյան կողմը հենված է երկու սյուների վրա, որոնք երեք ելքի դուռ են կազմում։ Մեջտեղի դուռը շինված է արծաթից, իսկ նրա երկու կողմերում եղածները՝ փայլեցրած պղնձից։ Ելքը տանում է գեպի այսպես կոչված Սիգման. նա այդպես է կոչվում շենքի՝ այդ տառի ձևն ունենալու պատճառով[129]։ Այն իր որմերի գեղեցկությամբ հար և նման է Տրիկոնխին. երկուսն էլ գույնզգույն մարմարներով են երեսապատված։ Բայց այս մեկի ծածկը ամրակուռ է ու հոյակապ, քանզի նստած է ղոկիմիտես մարմարից[130] պատրաստված տասնհինգ սյուների վրա։ Իսկ ստորաքսով[131] նրա առաջին հարկն իջնես, միևնույն պատկերին կհանդիպես՝ այն կանգնած է տասնինը սյուների վրա, իսկ ճեմասրահը սալահատակված է պիպերատոս մարմարով[132]։ Ճեմասրահի մոտ, ավելի ներսկեկ դեպի արևելյան կողմը, ճարտարապետը կառուցել է ինչ-որ Տետրասերոն։ Սա ևս բաղկացած է երեք խորանից՝ նրանից վերև գտնվող Տրիկոնխին հար և նման։ Ճարտարապետը, ի տարբերություն Տրիկոնխի, սրա մեկ խորանը արևելյան կողմում է ներառել, մյուս երկուսը՝ արևմտյան և հարավային։ Ինչ վերաբերում է հյուսիսային կողմին, ապա այստեղ կա երկու՝ բուն պիպերատոս սյուների վրա կանգնած Մյուս-

տերիոն[313]։ Այսպիսի, իր էության համապատասխան անուն ունի այն։ Դրա՝ այդպես կոչվելու պատճառն այն է, որ ինչպես քարայրում, լսողներին անաղարտ է վերադարձնում արձագանքը։ Եթե մեկը մոտենա արևելյան կամ արևմտյան խորանի պատին և ծածուկ մի բան ասի, տրամագծորեն հակառակ կողմում գտնվողը, եթե ականջը պատին դնի, այդ ծածուկ ձայնը կլսի։ Ահա նման զարմանահրաշ բան է կատարվում այստեղ։

43. Այս շենքին կպած՝ կառուցված է և Սիգմայի սյունասրահը, որի մասին նախապես խոսեցինք։ Դրանից դուրս է գտնվում բացօթյա բակ, որի մեջտեղում կա պղնձե ջրավազան՝ արծաթե պռունկով։ [Ջուրը հոսում էր] ոսկեզօծ կոնի միջով, որով այն կոչվում է Տրիկոնխի փաղտնի ավազան, և իր այս անունը պարտական է մոտակայքում կառուցված Մյուստերիոնին և եռախորան շենքին։ Նրանից դուրս, մոտիկ տեղում շինված են պրիկոնեսիոս[34]՝ սպիտակ մարմարից աստիճաններ, հիշյալ աստիճանների մեջտեղում՝ երկու, եղեգի պես բարակ սյուների վրա հենված մարմարե կամար։ Այնտեղ, Սիգմայի լայն տեղում, շինված են և երկու պղնձե առյուծի գլուխներ՝ երախները բաց, որտեղից հոսող ջուրը լցնում է Սիգմայի առաջ գտնվող ամբողջ ավազանը, դիտողին հրսկայական հաճույք պատճառելով։ Ավազանը պաշտոնական ընդունելությունների ժամանակ լցված էր լինում ընկույզով, պիստակով, նշով, ապա և մայրի ծառի ընկույզով. իսկ կոնից հոսում էր բուրավետ գինի։ Բոլորը կարող էին խմել այնտեղից և ներկաներից հատկապես նրանք, որոնք խմելու հակում ունեին, մեծ հաճույք էին ստանում։ Բոլոր ներկաները հաճույք էին ստանում երգիչներից և ամենից առաջ՝ նվագակցությամբ երգողներից։ Համայն դեմոսն[135] ու իշխանավորները, պերատիկա տագմաների հետ[136] աստիճանների վրա կանգնած, կատարում էին թագավորական արարողակարգը, իրենց մեջտեղում, մարմարյա հիշյալ կամարում ունենալով, եթե տվյալ պահին քաղաքում էին գտնվում, սխոլերի դոմեստիկոսին, էքսկուբիտոսի և երկու դեմարքոսների հետ պրասինոսի և վենետոսի[137]. ընդ որում դոմեստիկոսի մոտ կանգնած էր լինում վենետների դեմարքոսը[138], իսկ էքսկուբիտոսի մոտ՝ պրասինոսները։ Դոմեստիկոսի և էքսկուբիտոսի բացակայության դեպքում, կանգնած էին լինում միայն դեմարքոսները։ Սրանց բոլորին գլխավորում էր կայսրը, որ, բերկրալի, ոսկե, թանկագին քարերով ագուցված գահի վրա բազմած, արարողակարգը սահմանող[139], ինչպես և թագավորական գրքերի համաձայն, տեղից վեր չէր կենում, քանի ականատես չի եղել, չի ըմբոշխնել այդ ուրախությունը։ Ահա այսպիսիք

*էին և նման նպատակների էին ծառայում Թեոփիլոսի կառույցները։ Նա այնքան էր սիրում դրանք, որ սովորական գործերն ու ամենօրյա երթերը հենց Տրիկոնխոնում էր կատարում։ Այնտեղ, մեջտեղի՝ արծաթե դռան դեմ դիմաց, թեսալական, այն է՝ կանաչ գույնի մարմարից պատրաստված չորս սյուների վրա բարձրանում է կամար, որի ուղիղ դիմացը, միջյալ աստիճաններին մոտ, Սիգմայի արևմտյան կողմում գտնվող տրիկլինները[140] Թեոփիլոսի կառույցներն են։ Ավելի ցած տրիկլինի անունը Պիքսիտես է, մյուսը, որ ավելի բարձր է, անուն չունի, այնտեղ բնակվում է արքունիքի կղերը։ Պիքսիտեսի կողքին [չափածո] տողեր են փորագրված, որոնք ասեկրետ Ստեփանոսի, մականունը՝ Կապետոլիտես, հորինածներն են։ Ինչ վերաբերում է Սիգմայի ճեմասրահի փորագրվածներին, ապա դրանք տիեզերական վարդապետինն են (նրա անունը Իգնատիոս էր)[141]։ Ձախ կողմում, Սիգմայից արևելք, հարում է մի այլ տրիկլին, որը Էրոս է կոչվում[142], բայց ծառայում էր որպես [Թեոփիլոսի] զինապահեստ։ Այստեղ կարելի էր տեսնել ոչ այլ ինչ, այլ միայն ամեն տեսակի զենքեր և նկարազարդ վահաններ, որոնցով, ինչպես սպասելի էր, պատերն էին հարդարում։ Ահա այսպիսիք էին Տրիկոնխից արևմուտք կառուցված շենքերը։ Իսկ նրա արևելյան կողմում կարող ես տեսնել Մարգարիտես կոչվածը։ Սա մի տրիկլին է, որ ի հիմանց Թեոփիլոսն է կառուցել։ Նրա առաստաղը կանգնած է բազմերանգ վարդագույն ութ սյուների վրա, պատերը հարդարված են ամենաբազմազան կենդանիների պատկերներով, ամբողջ հատակը շախմատաձև սալահատակված է պրիկոննեսիոս մարմարով։ Դու կարող ես տեսնել նաև նրա ներսում գտնվող ննջասենյակը, որի՝ ոսկով խայտաճամուկ գմբեթը պահում են չորս բաթյունիոս սյուներ[143], նրանցից արևելք և հարավ թեսալական մարմարից պատրաստված չորսական այլ սյուների վրա հենված էին սյունազարդ գավիթները։ Պատերն ու հատակը Մարգարիտեսի տրիկլինի նման շատ գեղեցիկ ե-րեսապատված ու սալահատակված էին։ Թեոփիլոսն այս ննջասենյակում մնում էր, սկսած գարնանային օրհավասարից մինչև աշնանային օրհավասարը։ Երբ վրա էր հասնում ձմեռը, նա փոխադրվում էր Կարիանոս տրիկլինում[144] գտնվող մյուս ննջասենյակը։ Սա ևս ինքն էր կառուցել, պաշտպանվելու համար հարավից փչող ուժեղ ու սաստիկ քամիներից։ Այժմ այն ծառայում է որպես պապիասի[145] բնակարան։ Պակաս դիտարժան չէ և այնտեղ գտնվող հյուսիսահայաց հելիակոնը[146], որ նույնպես ինքն է կառուցել։ Այնտեղից երևում էր հին ցուկանիստերիոնը[147], որն այն ժամանակ նշված տեղում էր գտնվում։ Այնտեղ [հետագայում]*

*ձրանելի Վասիլ կայսրը կառուցեց Նոր եկեղեցին, երկու ավազանները և միջնապարտեզը։ Ահա սրանք են [Մարգարիտեսի] արևելյան կողմում [Թեոփիլոսի] կառույցները։ Ինչ վերաբերում է հարավային կողմին, ապա նա այստեղ առաջ ձգեց հելիակոնները, ինչպես այդ մասին ասացինք, տնկեց ցայսօր գոյություն ունեցող պարտեզները, իսկ նրանց կից կառուցեց կուբուկլիոնները*[148] *այսպես կոչված Կամիլասը, և նրան մոտիկ գտնվող երկրորդ կուբուկլիոնը։ Վերջինիս կից և նույն շարքի վրա է գտնվում երրորդը, որն այժմ ծառայում է որպես կայսրուհու հանդերձարան։ Կամիլասի ոսկե խայտաճամուկ առաստաղը հենվում է թեսալական՝ կանաչ մարմարից պատրաստված վեց սյուների վրա, որոնք ներքևում նույն մարմարով են երեսապատված, իսկ վերևում ոսկեգույն խորանարդիկներից մոզայիկա է՝ պտուղներ քաղող մարդկանց պատկերով։ Հատակը սալահատակված է պրիկոնեսիոս մարմարով։ Սրան հպած կառուցված է երկու բեմ ունեցող աղոթարան, մեկը նվիրված է ամենասուրբ տիրուհի աստվածածնին, մյուսը՝ Միքայել հրեշտակապետին։ Սրանից ներքև գտնվում է միջնահարկը, որի մարմարե վանդակապատ պատշգամբը նայում է դեպի խրիստոտրիկլին և այժմ քրիստոսասեր Կոստանդին Ծիրանածին կայսեր կողմից գրադարանի է վերածվել։ Հենց այնտեղ է սեղանատունը*[149]*, որի որմերը պատված են փայլեցված բաթյունիոս մարմարով, իսկ ամբողջ հատակն էլ բազմերանգ մոզայիկայով։ Կամիլասից հետո եկող երկրորդ կուբուկլիոնի առաստաղը նման է նախորդին, այն հենված է դոկիմիտես մարմարից պատրաստված չորս սյուների վրա, իսկ հատակը սալահատակված է պրիկոնեսիոս մարմարով։ Սրա պատերը ևս, ինչպես նախորդի, վերևի մասում զարդարված են ոսկեգույն մոզայիկայով, որի մեջ կանաչ խորանարդիկներով ծառեր և զարդանկարներ են արված։ Սրանից ցած, Մեսոպատոս կոչված հարկը նախատեսված է կանանց բաժնում ծառայող ներքինիների համար։ Իսկ երրորդ հարկը*[150]*, կուբուկլիոնով, որն այժմ ծառայում է որպես կայսրուհու հանդերձարան, սրանց նմանատիպ առաստաղ ունի, իսկ հատակը սալահատակված է պրիկոննեսիոս՝ սպիտակ մարմարով։ Բոլոր պատերը, ոչ այն ժամանակ, այլ հետագայում, Թեոփիլոսի որդի Միքայելի կողմից զարդարվեցին սրբապատկերներով։ Սրան կից գտնվող ու նրան կպած միահարկ շենքի առաստաղը հենված է յոթ կարիանոս սյուների վրա, հինգը՝ հարավային կողմում, երկուսը՝ արևելյան, այն ամրակուռ, զույգ որմերով է կառուցված՝ հռոմեական, պեգանուսիոս*[151]*, կարիանոս, ապա և թեսալական կանաչ գույնի մարմարե տախտակներով գեղեցիկ երեսապատված։ Այդ [շենքը]*

Մուսիկոս է կոչվում՝ մարմարների խորանարդիկներով շախմատաձև ճշգրիտ մոզայիկայի պատճառով։ Նրա հատակը հղկված բազմերանգ ու գեղեցիկ մարմարներով է սալահատակված։ Դրան ականատես լինելով, թվում է, թե բազմապիսի ծաղիկներով լի մարգագետին է դա։ Սրա կողքին, արևմտյան մասում, կցված է մի կուբուկլիոն, որ մարմարների գեղեցկությամբ, ամեն ինչով նման է [Մուսիկոսին]։ Սրա առաստաղը ևս կանգնած է հինգ կարիանոս սյուների վրա, որոնցից երեքը հարավային կողմում են, երկուսը՝ արևմտյան։ Սրան անմիջականորեն հարում է մի այլ, երկու մասի բաժանված [կուբուկլիոն], որը կայսրուհու ննջասենյակին մոտիկ է գտնվում։ Այստեղ քրիստոսասեր Լևոն կայսրը[152] սուրբ Աննայի աղոթարան կառուցեց, որի առաստաղը ևս հենված է չորս՝ բաթյունինոս սյուների վրա, հատակը սալահատակված է պրիկոնեսիոս՝ սպիտակ մարմարով, իսկ որմերը երեսապատված են բաթյունինոս մարմարի սալերով։ Այս մեկը, ինչպես ասացինք, կայսրուհու ննջասենյակին մոտիկ է։ Մուսիկոսից արևմուտք գտնվող [կուբուկլիոնից] աստիճաններով կարելի է իջնել հիշյալ ննջասենյակը, ինչպես և մուաքը։ Այդտեղից կարելի է մուտք գործել Կենուրգիոն[153], ննջասենյակը և տրիկլինոսը, որը երանելի կայսր Վասիլը կառուցեց, ինչպես և դեպի հինգերորդ կուբուկլիոնի սյունազարդ գավիթը, որտեղ գտնվում է երանելի կայսր Վասիլի կողմից կառուցված սուրբ Պողոսի աղոթարանը։

44. Այս բոլորը կառուցել է Թեոփիլոս կայսրը, պալատի հյուսիսային և հարավային կողմում։ Մենք նրանց մասին [սույն] պատմության մեջ գրեցինք, քանզի չուզեցինք նրա գործերը, ինչպիսիք էլ նրանք եղած լինեն, մոռացության մատնել, ցանկանալով, որպեսզի մարդիկ իմանան նրա նախասիրությունների մասին։ Բացի այդ, նա ոսկեգույն մոզայիկայով զարդարեց տրիկլինները՝ Լավսիակոս կոչվածը և Հուստինիանոսի[154]։ Նա էր, որ բռնակալ Վասիլիսկոսի պալատի խոյակները հանեց ու Լավսիակոսում տեղադրեց։ Նա կառուցեց և մի այլ տրիկլինոս՝ չորս փառավոր ու պայծառ կուբուկլիոններով, որոնցից երկուսը նայում են դեպի Կամիլասից հետո եկող երկրորդ կուբուկլիոնի միջնահարկը։ Այս տրիկլինոսի ոսկեփայլ առաստաղը չորս կամարների վրա է նստած և գտնվում է Ծիրանի [պալատի] մոտ։ Նա Ծիրանի է կոչվում այն բանի համար, որ կայսրուհին դեռ հին ժամանակներից. բրումալիայի[155] տոնակատարության ժամանակ իշխանուհիներին այստեղ էր բաժանում ծիրանի կնրպասները։ Նրա կառուցած մյուս երկու կուբուկլիոնները գտնվում են Լավսիակոսի կողմում, որտեղից դեպի

Լավսիակոս նայող պատշգամբ կա։ Թեոփիլոսը թեև դրանց հատակները պրիկոնեսիոս մարմարով սալահատակեց, սակայն պատերը սլաճուձեց ոչ թե մարմարով, այլ ներկով։ Հրդեհը սակայն ոչնչացրեց դրանք։ [Թեոփիլոսի] ավագ դուստր Թեկլան ի հիմանց [կառուցեց] Վլախեռնայի գեղեցկագույն կուբուկլիոնը։ Այստեղ կառուցված է և նախավկա Թեկլայի աղոթարանը։ Թեկլան, անկողնուն գամված, հենց այստեղ ավանդեց իր հոգին։

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

## ՄԻՔԱՅԵԼԻ՝ ԹԵՈՓԻԼՈՍԻ ՈՐԴՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ահա այսպիսի վախճան ունեցավ Թեոփիլոսը։ Թագավորությունը ժառանգեց նրա որդի Միքայելը[1], որի՝ իր մոր՝ Թեոդորայի կողմից աշխարհ գալու երրորդ տարին էր ընթանում։ Պետական գործերը վարում էին Թեոփիլոսի նշանակած հոգաբարձուներ ու խնամակալներ[2]՝ ներքինի Թեոկտիստոսը, որն այն ժամանակ կանիկլիոս[3] էր և դրոմոսի լոգոթետ[4], կայսրուհու եղբայր պատրիկ Վարդասը և թագուհու հորեղբայր մագիստրոս Մանուիլը[5]՝ ազգությամբ հայ։ Քաղաքական վիճակը կայուն էր, պետական գործերն առայժմ լավ էին ընթանում։ Օրակարգի հարց էր և սրբապատկերների պաշտամունքի վերականգնումը, նրանց վաղնջական ակնածության արժանացնելը։ Մանուիլը մահիճ ընկավ դժնդակ ու ծանր հիվանդությամբ։ Ստուդիոս [վանքի] վանականները նրան այցելության եկան (Մանուիլը նրանց հանդեպ մեծ վստահություն էր տածում) և խոստանում էին միանգամայն դյուրին ու վաղվաղակի ապաքինում, եթե նա լոկ կամենա երկրպագել սրբապատկերները և համոզի կառավարողներին ամբողջ երկրով մեկ այդ բանն օրինականացնել։ Լեոնարնակ այլ բազում աստվածակիր հայրեր ևս, որ նրան մտերմացել էին դեռ այն ժամանակ, երբ նա Արմենիակների բանակաթեմի զորավարն էր, նրան այցելեցին և նույնը խնդրեցին։ Նա խոստացավ ուղղափառություն դավանել և նրանց խնդրանքը կատարել, միայն թե ապաքինվի։ Ինչ որ եղավ այդ վանականների՝ առ աստված հղած աղոթքներով ու նրանց փութեռանդությամբ։ /2/ Երբ [Մանուիլն] առողջացավ, վանականները լծվեցին գործի, նրանք Մանուիլին պաղատում էին հիշել աստծուն տված իր խոստումները, և նրանց հաջողվեց աստվածային եռանդ ներարկել նրան։ Նա իր մտադրությունը հայտնեց խնամակալներին,

համոզեց նրանց պետական գործերին բարի սկիզբ տալ, նրանց միտքը հեղաշրջեց, այնպես արեց, որ իր նման մտածեն, որից հետո մտավ Թեոդորայի մոտ՝ հարցի շուրջ խորհրդակցելու։ Թեոդորան, լինելով աստվածասեր կին, իսկական թագուհի, լսելով ուղղափառության մասին, ասաց. «Դա իմ մշտական ցանկությունն է, ես երբեք չեմ դադարել դրա շուրջ մտածել, բայց այդ հերձվածի կողմնակից՝ մեծաթիվ սենատորներն ու իշխանավորները, մինչև օրս խանգարում էին, ո[չ] պակաս չափով նաև եկեղեցու [այսպես ասած] պաշտպան մետրոպոլիտները, առավել ևս պատրիարքը, որն իր հորդորներով ու անվերջ խորհուրդներով էլ ավելի զարգացրեց իմ ամուսնու՝ իր ծնողներից ժառանգած այդ հերձվածի արմատը, այն ավելի կայուն դարձրեց, պատճառ դարձավ, որ նա [պատկերապաշտների] նկատմամբ ծանր պատիժներ կիրառի, նրանց խոշտանգումների ենթարկի, խոշտանգումներ, որոնք հենց ինքը [պատրիարքն] էր օրավուր հնարում սուրբ մարդկանց դեմ, դառնալով, այդ թշվառականը, նման արհավիրքների ուսուցիչն ու դաստիարակը»։ [Խնամակալները] հարցրեցին. «Բայց, ո՛վ տիրուհի, եթե դու այդպես ես խորհում և լավագույն մտադրություններ ունես, ի՞նչն է քեզ խանգարում, ի՞նչը թույլ չի տալիս իրականացնելու այդ համաժողովրդական ուրախությունը»։ [Թեոդորան] անհապաղ կանչել տվեց վիգլայի գրունգարին (նա Կոստանդինն էր՝, հետագայում դրոմոսի լոգոթետի պաշտոնը վարած Թովմայի հայրը), հայտնեց պատրիարքին, թե ամեն տեղից ժամանած բազում բարեպաշտ մարդիկ և վանականներ մեր թագավորությանը խնդրեցին ամենասուրբ պատկերների վերականգնման մասին հրաման տալ։ Եթե նա դրան համամիտ է ու համաձայն, ապա աստծո եկեղեցին թող ստանա իր վաղեմի շուքը։ Նա ասաց. «Եթե տարակուսում ես և հակառակ կարծիքի ես, հրաժարվիր պատրիարքական աթոռից ու հեռացիր քաղաքից։ Գնա, մի քիչ մնա քո պրոաստիոնում[7], մինչև որ սուրբ հայրերը քեզ հետ ժողովի նստեն։ Այնտեղ վերջնականապես հարցը քննության կենթարկվի, բանավեճ կլինի, և քեզ կհամոզեն, որ [սրբապատկերների] վերաբերյալ քո թյուր կարծիքը փոխես»։ /3/ Երբ կայսրական կարգադրությունը բերեցին նրան, նա ընկողմանած էր պատրիարքարանի թետտալոսի (դա տրիկլին է՝ այդ անունով) դարգիճի վրա։ Լսելով կարգադրությունը, նա կայծակնահար եղավ, լրաբերին բան չասաց, այլ միայն թե՝ այդ մասին լրջորեն կմտածի, և, նրան ճամփու դնելով, իսկույն մի դանակ առավ ու կտրեց իր որովայնի երակները։ Նա ուզում էր այդպես առատ արյունահոսությամբ, բայց իր կյանքին

ոչ մի վտանգ չսպառնացող նման քայլով, շատերին սահմոկել, նրանց գութը շարժել։ Եկեղեցին մեկեն լցվեց աղմուկ-աղաղակով, լուրը հասավ և կայսրուհուն, թե վերջինիս հրամանով ղրունգարը պատրիարքին մորթել է։ Տարածված լուրերի իսկությունը քննելու ուղարկվեց Վարդաս պատրիկը, որը շատ հեշտությամբ բացահայտեց, որ վերքերը միտումնավոր են հասցված, կեղծակերպումը ծածկել հնարավոր չէր, քանզի իրենք՝ սպասավորները, նրա դեմ վկայեցին, բացի՛ այդ մեջտեղ բերվեց հատիչ գործիքը (գա նշտար էր)[8]։ Ահա դրանից հետո, նման դրրդապատճառով ու հաշվով ինքնասպանություն գործելու մեջ բացահայտված այդ թշվառականը վտարվեց, վռնդվեց եկեղեցուց և արգելափակվեց Պսիքա կոչվող իր պրոաստիոնում։ Պատրիարքական աթոռին նստեց բազում չարչարանքներով ու տառապանքներով առաքինությունն անաղարտ պահպանած, բազում տարիներ բանտում անցկացրած և դրանից մազերը թափած, եկեղեցու առաջնորդությունն ու ղեկը աստծուց և կայսրուհի Թեոդորայից ստացողը։ Նա եկեղեցու անհաղթ թևարկու մեծ Մեթոդիոսն էր[9]։

4. Տե՛ս, թե ինչպես այդ մարդուն սատար կանգնած և ոչ հակառակորդ եղած կինը, երկրում եղած բոլոր ուղղափառներին ի մի հավաքելով, պատվիրեց առանց քաշվելու արտահայտեն իրենց միտքը։ Նա ասաց. «Ո՜վ աստծո ժառանգավորներ ու հայրեր, ես ամենայն սիրահոժարությամբ ձեզ եմ հանձնում, ընձեռում սրբազան ու ամենասուրբ պատկերների վերականգնման գործը և ակնկալում, որ դուք ցանկաք արդար կերպով շնորհահատույց լինել ինձ, տիրուհուն, այն էլ ոչ թե չնչին ու համեստ չափով, որը շնորհք անգամ չհամարվի։ Դա և՛ ձեզ՝ հատուցողներիդ, և՛ ինձ՝ խնդրողիս համար անվայել ու անպատշաճ կլինի, այնպես արեք, որ ձեր արած շնորհքը լինի օգտակար ու սնայուն, աստծուն ընդունելի։ [Ձեր] այդ շնորհքը աստծո կողմից քավություն, ներում և թողություն կլինի իմ ամուսնու ու կայսեր [սրբապատկերների] դեմ գործած մեղքերի համար։ Հակառակ դեպքում ես այլևս ձեզ չեմ անսա, սրբապատկերների երկրպագություն ու վերականգնում չի լինի, ոչ էլ եկեղեցու վերականգնում»։ /5/ Նա ասաց ու լռեց։ Ուղղափառ ժողովականները և նրանց առաջնորդ Մեթոդիոսը պատասխանեցին. «Ով քո, տիրուհի՛, պահանջդ արդար է, մենք չենք ժխտում։ Քանզի արդարությունը պահանջում է, բարեպաշտներին ու իշխողներին արժանավայել, առատաբար փոխհատույց լինել, անհրաժեշտ շնորհքը ցուցաբերել, եթե տիրողը բռնակալ չէ, այլ ունի աստվածահաճո նպատակներ։ Բայց մենք աստծո հրամանով մյուս աշխար-

հը գնացած մարդուն[10] ի վիճակի չենք փրկել, այդ բանը մեր ուժերից վեր է։ Աստված վստահել է մեզ երկնքի բանալիները՝ բոլոր ցանկացողների առջև բացելու նրա [դռները], սակայն նրանց, որոնք դեռևս այս աշխարհում են գտնվում, նախքան նրանց մյուս աշխարհը գնալը։ Կարող ենք այդպես վարվել և մահամերձների նկատմամբ, եթե նրանց գործած մեղքերը չնչին են և քավելի։ Բայց ովքեր այս աշխարհից արդեն գնացել են վատ հավատով, և որոնց դատաստանը կասկած չի հարուցում, նրանց հանցանքները զանց առնելը մեր գործը չէ»։ /6/ Տիրուհին իրապես կամ ձևացնելով, որ իր մեջ վերստին է բորբոքվել սերը դեպի իր ամուսինը (ճիշտ է, որ բորբոքվել էր, մենք համամիտ ենք դրան), երդումներով հավաստիացնում էր այդ սրբազան ժողովականներին, թե [իր ամուսնու] վերջին շունչը փչելու պահին ինքը շատ է կոծել, ողբացել ամեն ինչ, նկարագրել նրան այն [փորձանքները], որ գալու են այդ հերձվածի համար մեր՝ այս քաղաքում ատելի դարձածների գլխին՝ աղոթքի վերացում, անեծքի շատացում, ժողովրդի ապստամբություն, որի վրա նա՝ [Թեոփիլոսը] ապաշավեց հերձվածի համար, խնդրեց իրեն [սրբապատկերներ] բերեն, որոնք նա կաթոգին համբուրեց (ես դրանք իր ձեռքը տվեցի), որից հետո իր հոգին այն տանող հրեշտակներին ավանդեց»[11]։ Նրանք, լսելով Թեոդորայի պատմածը և նրա հանդեպ հարգանքով լցված (նա չափից ավելի քրիստոսասեր էր), համաձայնվեցին սրբապատկերների վերականգնման, ապա և միահամուռ ասացին, թե [Թեոփիլոսը] եթե իր այդ մեղքի հարցում իսկապես զղջացել է, նա աստծուց քավություն կստանա, որի վերաբերյալ տիրուհուն գրավոր հավաստագիր տվեցին[12]։ Այդպիսի քայլով նրանք վերստին տիրացան եկեղեցուն, սրբազնագույն Մեթոդիոսին տըվեցին քահանայապետի պատիվը և, սուրբ պահոց առաջին կիրակին կայսրուհու հետ միասին մեր ամենասուրբ տիրուհու՝ աստվածածնի Վլախեռնայի սուրբ տաճարում հսկելուց հետո, առավոտյան թափորով գալիս են Աստված-Բանի մեծ տաճարը[13]։ Եկեղեցին վերստին ձեռք բերեց իր կարգուկանոնը. սուրբ խորհուրդը կատարվեց անաղարտ կերպով։ Ուղղափառ եկեղեցին ահա այսպես բարգավաճում էր. սուրբ գրքի ասելով նորոգվում ինչպես արծիվ[14], իսկ երկրի բոլոր հերձվածող [հոգևորականները], կարգալույծ են արվում, այդ թվում և նրանց քահանայապետը. նա Հովհաննեսն էր, որ իր ամբարշտության համար բարեպաշտները Իաննես կոչեցին։ Նա ո՛չ եկվոր էր, ո՛չ էլ օտարական, այլ բնիկ՝ այս մայրաքաղաքի ծնունդ (բայց, ինչպես ասում են,

այգում էլ է տատասկ բուսնում), այն էլ ոչ սովորական, այլ այսպես կոչված Մորոխարզամիոսների[15] շատ ազնվական ընտանիքից։

7. Որպեսզի սույն պատմության մեջ նրա մասին էլ հիշած լինենք, ասենք, որ անցյալում նա Օրմիզգասի պալատի Սերգիոս և Բակքոս վկաների վանքի վանահայրն էր[16], կայսերական կղերի կազմում էր և Միքայել Թլվատի արտակարգ սիրելին, կամ լոկ այն բանի համար, որ Հովհաննեսն իր հերձվածին հաղորդակից էր, կամ էլ որովհետև շատ զարգացած մարդու համբավ ուներ։ Բոլոր դեպքերում նա սիրված էր և նշանակվեց Թեոփիլոսի ուսուցիչ։ Երբ [Թեոփիլոսը] իր ձեռքը վերցրեց կայսրության սանձերը, նախ նրան սինկելլոսի պատիվը շնորհեց, իսկ հետո դարձրեց Կոստանդնուպոլսի պատրիարք. Հովհաննեսը տաշտագուշակությամբ ու հմայությամբ ինչ-որ բաներ էր կանխագուշակել նրան։ Դրանց էությունը հետևյալն էր։ Անհավատ ու դաժան մի ցեղ, երեք առաջնորդների գլխավորությամբ, ասպատակել էր ու ավարառել հռոմայեցիների երկիրը։ Թեոփիլոսն ու համայն հպատակ ժողովուրդը, բնական է, համակվեցին տրտմությամբ։ Հովհաննեսն ասաց, թե տրտմությունը կվերանա, և ինքն արիությամբ և ուրախությամբ կլցվի, եթե հետևի լոկ իր խորհրդին։ Հարցը հետևյալն է։ Ձիարշավարանի խրամի[17] մոտ կանգնեցված պղնձե սյուների թվում, ասում են, թե կար և երեք գլխանի մի սյուն էլ։ Այդ գլուխները ինչ-որ վհկությամբ նմանություն էին հանդես բերում այդ ցեղի առաջնորդներին։ Հովհաննեսը կարգադրեց այդ գլուխների թվով հսկա մուրճեր սարքել և տալ արտակարգ զորության տեր երեք մարդու։ Որից հետո պետք է գիշերվա մի ժամին նրանք կանգնեին հիշյալ արձանի մոտ՝ մուրճերը բարձրացրած։ Իր հրամանով նրանք բոլորը միասին պետք է մուրճերն ահռելի ուժով միաժամանակ իջեցնեն և մի հարվածով ու զարկով կտրեն այդ գլուխները։ Այդ խոսքերը Թեոփիլոսին դուր եկան, նա ապշած էլ մնաց և հրամայեց գործին ընթացք տալ։ Մոտակա գիշերներից մեկում մուրճերը կրող մարդիկ եկան հիշյալ վայրը։ Հովհաննեսը, որը չճանաչվելու համար ծպտված էր ռամիկի հանդերձով, իր մեջ կախարդական խոսքեր ասելով, [ցեղի] առաջնորդների զորությունը փոխադրեց արձանի մեջ, կամ, ավելի ճիշտ, արձանի մեջ եղած զորությունը կախարդությամբ խորտակեց։ Նա երեքից յուրաքանչյուրին հրամայեց հզոր և ուժգին հարված իջեցնի։ Երկուսը շատ ուժգին հարված իջեցնելով, կտրեցին արձանի երկու գլուխները։ Երրորդի հարվածն ավելի թույլ էր և գլուխը, թեև մի փոքր ծռվեց, բայց մարմնից չանջատվեց։ Նույն բանն անհա կատարվեց և [ցեղի] առաջնորդների հետ։ Նը-

րանց մեջ կռիվ ծագեց, այն վերաճեց ներցեղային պատերազմի, որի ժամանակ առաջնորդներից մեկին հաջողվեց հաղթել և գլխատմամբ սպանել մյուս երկուսին։ Երրորդը, թեև փրկվեց, վիրավոր էր։ Ահա ոչ մի հաջողության չհասած, ընդհակառակը փորձանքի հանդիպած այդ ցեղը փախուստի դիմեց դեպի սեփական երկիրը։ Կախարդության մասին այսքան։ /8/ Այս կախարդը Արշավիր անունով մի հարազատ եղբայր ուներ, որ պատահաբար Թեոփիլոսի կողմից արժանացել էր պատրիկի պատվաստիճանին։ Սա սուրբ Փոկասի վանքում Եվքսինյան Պոնտոսից դուրս նավարկողի ձախ կողմում մի պրոաստիոն ուներ, որտեղ կային վիթխարի շենքեր, շքեղ սյունաշարքեր, բաղնիք, ինչպես և ջրամբարներ։ Պատմում են, որ պատրիարքը հաճախ էր լինում այնտեղ, ուր կառուցել էր տվել ստորգետնյա մի կացարան, Տրոփոնիոսի[18] [վանքում] եղածի հար և նմանը։ Բացվող դարպասի հետևում մի ինչ-որ դռնակ կար, որտեղից ցանկացողը բազում աստիճաններով կարող էր իջնել այդ կացարանը։ Հենց դա էլ նրա սադայելական գործատունն էր։ Նա այնտեղ աղախիններ էր պահում, մայրապետներ, դեռես գեղեցիկ պահպանված կանանց, որոնց հետ հարաբերվում էր։ Այդտեղ կատարվում էին լյարդագուշակություններ, տաշտագուշակություններ, մոգություններ ու մեռած մարդկանց ոգեկոչումներ, որոնց ընթացքում նա որպես գործակից ու օգնական էր օգտագործում այդ կանանց։ Հաճախ պատահում էր, որ դևերի գործակցությամբ նա ճիշտ բաներ էր կանխագուշակում, այն էլ ոչ միայն Թեոփիլոսին, այլև նրա ուրիշ համախոհներին։ Սակայն նրա այս պիղծ կացարանը հետագայում վաճառվեց Վասիլին, այն ժամանակվա պարակիմոմենոսին, որի եղբոր կողմից սուրբ վանքի վերածվեց, այն էլ ոչ միայն դա, այլև մնացածները ևս, ինչ որ ինքը կարևոր էր համարում։ Ինչ վերաբերում է սուրբ [Փոկասի] վանքին, ապա այն ի հիմանց կառուցվեց։

9. Ահա, ինչպես ասվեց, այն ժամանակ նա և նրա ամբողջ ավազակախումբը կարգալույծ արվեց, բայց նրանք հանգիստ չէին մնում, դեռ ավելին, սրբապատկերների դեմ հիմարություններ էին թույլ տալիս։ Կարգալույծ արվելուց հետո Հովհաննեսը մի վանք աքսորվեց, որի առաստաղի վրա սրբապատկեր էր նկարած։ Պատկերված սուրբը աչքերը հառած, լարված նրան էր նայում։ Հովհաննեսը, չկարողանալով նրա՝ վերևից իջնող հայացքին դիմանալ, կարգադրեց մի ծառայի ջրնջել այն, փորել աչքերը, լոկ մի պատճառաբանությամբ, թե «չեմ կարող նրա երեսին նայել»։ Տիրուհին լսելով այդ մասին, [հրամայեց] Հովհաննեսին խարազանահարության և գանահարության ենթարկել։

/10/ Բայց դրանից հետո էլ նա հանգիստ չմնաց։ Փորձեցին սուրբ Մեթոդիոսին զրպարտել՝ մենածին երեխայի տեր կնոջ հետ հարաբերվելու մեջ (զրպարտողը Մետրոփանեսն էր, որ շատ չանցած Զմյուռնիայի եպիսկոպոս դարձավ)[19]։ Զրպարտողները ոսկու բավական մեծ գումարով կաշառեցին այդ կնոջ, խոստացան դարձյալ տալ, եթե նա իրենց համագործակցի, որից հետո կայսրուհուն և վերջինիս որդու խնամակալներին [Մեթոդիոսի դեմ] բազմաթիվ մեղադրանքներ ներկայացրին։ Անհապաղ բազում աշխարհականներից ու հոգևորականներից բաղկացած ատյան ու դատարան գումարվեց։ Ներկա էին բարեպաշտներ ու ամբարիշտներ, վանականներ, բոլոր նրանք, որոնք ի վիճակի էին լսել կամ խոսել։ Նրանց մի մասը արտաքոց զրպարտության պատճառով ամոթից գլխահակ էր եղել, մյուսին համակել էր անխառն ուրախություն ու հրճվանքը։ Ամբաստանողները բարձրացան ատյան, իսկ կինն էլ ներկայացավ որպես ամբաստանության ապացույց։ Հենց որ կինը մեջտեղ եկավ, Մեթոդիոսն առանց քաշվելու, բոլորին լսելի ձայնով հարց տվեց նրան (կինն իրեն վաղուց ծանոթ էր, բայց ոչ հետին իմաստով). «ինչպե՞ս ես, տիկին, ինչպե՞ս են այս ու այն», նկատի ունենալով կնոջ ամուսնուն և մերձավորներին։ Մեթոդիոսը շատ շիտակ մարդ էր։ [Հակառակորդները] ավելի բարձր գոռալով՝ ուրախությունից հալվում էին, ավելի խիստ մեղադրանքներ ներկայացնում, և վերջը ամեն ինչ իր բառերով ասացին։ Մեթոդիոսը հենց որ հասու եղավ մեղադրանքի էության, նախանձախնդրությամբ բորբոքված, մտահոգված այն բանի համար, որ ինքը կարող է պատճառ դառնալ եկեղեցու և առ Քրիստոս հավատքի վտանգման, դատելով, որ ամաչելու տեղը չէ, ոչ էլ վախենալու ու հեզություն ցույց տալու, աթոռից վեր ելավ և զգեստը բարձրացնելով ցույց տվեց իր սեռական օրգանները, որոնք հրաշագործված լինելով, սովորական տեսք չունեին։ Նա պատմեց հրաշագործության մասին, թե ինչպես ինքը շատ վաղուց գնացել էր ավագ Հռոմ, երբ դեռևս տոփանքը ծաղկուն, փթթած վիճակում էր, երբ իրեն խռովում էին մարմնական կիրքն ու ցանկությունը։ Իրեն վտանգված համարելով, կիրքը հաղթահարելու անզոր, երկու ձեռքերը մեկնեց դեպի տաճարը և գերագույն առաքյալ Պետրոսից օգնություն ու աջակցություն աղերսեց։ [Երկարատև] աղոթքից խոնջացած, նա ննջեց և երազում տեսավ առաքյալին։ Նա ձեռքով հպել էր այդ տեղին և շիջանել կրքի կրակը, ավելացնելով հետևյալ խոսքերը. «Ո՛վ Մեթոդիոս, դու պրծար կրքերի տիրապետությունից»։ Այս այդ ձևով Մեթոդիոսը համոզեց այդ բարձր Ժողովը, արդարության թշնամիներին խայտառակ արեց։ Մանուիլ մա-

գիստրոսը նրանցից պահանջեց հետ վերցնեն իրենց ամբաստանությունները, այդ կնոջ էլ սպառնաց մահապատժի ենթարկել, եթե չխոստովանի ողջ իսկությունը։ Նա իսկույն բացահայտում է, մեջտեղ հանում ողջ խարդախությունը, ասում, թե այսքան ու այսքան ոսկով են իրեն գնել, ավելացնելով, որ ոսկին իմ արկղիկներից մեկում է պահված, ինչպես որ ինձ տրվեց՝ նրանց կնիքներով կնքված։ Անհապաղ մարդ ուղարկեցին և կնոջ ցուցմունքներով ոսկին գտան արկղիկի մեջ և բերեցին։ Պատրիարքը խղճաց նրանց և իշխանավորներին խնդրեց չպատժեն, չպատուհասեն, թեև արժանի էին այդ բանին։ Նրանք ներման արժանացան, բայց որպես պատիժ պարտավորվեցին ամեն տարի ուղղափառության տոնին[20] Վլախեռնայի աստվածամոր սուրբ տաճարից ջահերով գան իմաստության սուրբ և հռչակավոր տաճարը[21]՝ յսելու այդ օրվա՝ իրենց ուղղված նզովքը՝ սրբապատկերների հանդեպ տածած խորշանքի համար։ Այդ սովորությունը գոյատևեց երկար ժամանակ, մինչև նրանց մահը։ Ահա [սրբապատկերների] հերձվածը մեծ չափեր ստանալով, ատծո կողմից նման վախճանի հասավ։ Վերըստին պայծառացան սրբապատկերների աստվածային կերպարները, որոնք մենք պատկերում ենք ու պաշտում՝ սրբացնելով ոչ թե [նյութը], այլ նրանց միջոցով հարաբերականորեն հարգանք ու պատիվ ենք փոխանցում նրանց նախատիպերին։

11. Այդ տոնի առթիվ Թեոդորան եկեղեցու համայն կազմի համար հյուրասիրություն կազմակերպեց Կարիանոսի պալատում, որը, ինչպես նախապես ասացինք, Թեոփիլոսն էր կառուցել իր դուստրերի համար։ Հոգևորականներից ու խոստովանողներից ոչ ոք չէր բացակայում, նրանց մեջ էին նաև Զմյուռնիայի եպիսկոպոս Թեոփանեսը և նրա եղբայր Թեոդորոսը։ Կերուխումն ավարտվելու վրա էր, և պետք է անցնեին քաղցրավենիքներին ու խմորեղենին, երբ կայսրուհին անդուլ նայում էր [Թեոփանեսի և Թեոդորոսի] ճակատին ծեծած տառերին[22] և խոր հոգոց հանում։ Նրանք, կարծես խոսքը մեկ արած, իրենց հայացքը խաչաձևեցին կայսրուհու հայացքին, տեսան, թե ինչպես է նա ուշադիր նայում իրենց։ Նրանք հարց տվեցին. «Ի՞նչն է պատճառը, ո՛վ տիրուհի, որ այդպես ուշադիր նայում ես մեզ»։ Նա պատասխանեց, թե «հիանում եմ այդ տառերը ձեր [ճակատին ծեծելու առթիվ] հանդես բերած տոկունության վրա, ինչպես և ձեր նկատմամբ այդ բանն անողի դաժանության»։ Երանելի Թեոփանեսը, առանց որևէ վախի. հաշվի չառնելով [սուրբ հայրերի] դրանից առաջ Թեոփիլոսի մեղքերը քավելու հանգամանքը[23], ասաց. «Այս գրության համար ես քո ամուս-

նու՝ կայսեր հետ բացեիբաց պիտի դատի նստեմ ատյանում»։ Կայսրուհին այդ խոսքերի վրա շատ ախրեց ու սրտասվալից ասաց. «Ձեր խոստումները, ձեր դրավոր խոստովանությունները ուրեմն ոչ միայն քավեցին [նրա մեղքերը], այլ, ընդհակառակը, կոչում ու առաջնորդում են դեպի դատաստան»։ Պատրիարքը և մյուս հոգևորականներն իսկույն տեղից վեր կենալով, ասացին. «Ո՛չ, կայսրուհի, նա, ինչպես ասացինք, [քավություն] կարժանանա, դու սրանց անվայելչությանը ուշադրություն մի դարձրու»։ Այս ձևով ահա խոսակցությունը վերջ գտավ, և եկեղեցին խաղաղվեց։

12. [Այն ժամանակ] հանդես եկավ և մի այլ՝ այսպես կոչված Ձելիկների աղանդը՝ իր առաջնորդ ոմն Ձելիի գլխավորությամբ։ Նախկինում նա ասեկրետի[24] պաշտոնն ուներ և կայսերական մի տոնահանդեսի ժամանակ, հրաժարվելով [հերձվածից], ընդունեց բարեպաշտությունը։ Հերձվածի կողմնակիցները, մկրտվողի նոր հանդերձներ հագած, արժանացան միայն մեռոնով օծվելուն և առոք-փառոք կատարյալ [քրիստոնյա] դարձան։

13. Բուլղարիայի իշխանը (նա Բոգորիսն էր)[25] լսելով, որ [հռոմայեցիների] թագավորությունը կնոջ ձեռքում է գտնվում, սկսեց ավելի անպատկառություն հանդես բերել։ Նա Թեոդորայի մոտ դեսպաններ էլ ուղարկեց, հաղորդելով, թե որոշել է չեղյալ հայտարարել հաշտության պայմանագիրը և արշավել հռոմայեցիների երկրի վրա։ Թեոդորան տղամարդու պես, արիաբար նրան հայտնեց. «Ես կընդդիմակայեմ քեզ և հույս ունեմ հաղթել քեզ։ Բայց եթե աստված մի արասցե դու ինձ հաղթես, այդ դեպքում ես ես քեզ գերազանցած կլինեմ, հաղթանակը բացահայտ իմը կլինի, քանզի դու հաղթած կլինես կնոջ և ոչ տղամարդու»։ Դրա վրա [Բոգորիսը] ոչինչ չդիմեց, չհամարձակվեց անխոհեմ քայլ անել և բարեկամական պայմանագիրը վերականգնեց[26]։ /14/ Թեոդորան կամ երազների ու տեսիլքների ազդեցությամբ, կամ էլ ուրիշ բանի, Բուլղարիայի իշխանի մոտ փնտրեց, շատ որոնեց փաղուց գերի ընկած մի վանականի, անունը՝ Թեոդորոս, մականունը՝ Կուփարաս։ Նա Բուլղարիայի իշխանին նամակ գրեց, պահանջելով գտնել նրան, խոստանալով որպես փրկագին վճարել՝ ինչ որ նա ցանկանա։ Իրեն ընձեռված առիթից օգտվելով, [Բոգորիսն] էլ որոշեց գրավել ժամանակին հռոմայեցիների ձեռքը գերի ընկած և տվյալ պահին կայսերական արքունիքում պահվող քրոջ հարցով։ Քույրը քրիստոնեություն էր ընդունել, գիրության մեջ գրագիտություն սովորել, բացի այդ նա արտակարգ հիացած էր քրիստոնյաների կարգ ու կա-

նոնի, բարեպաշտության ու հավատքի վրա։ Երբ իրեն հաջողվեց եղբոր մոտ վերադառնալ, նա անդադար դրվատում էր [քրիստոնյաների կրոնը], աղաչում նրան ընդունել այն, նրա մեջ բարեպաշտության սերմեր սերմանում։ Բոգորիսը, որ հիշյալ Կուփարասի կողմից մի փոքր կրթվել էր և [քրիստոնեական] խորհուրդներին հաղորդակից դարձել (նրան վերադարձնելով, որպես փոխհատուցում ստացել էր իր քրոջ), այնուամենայնիվ մնացել էր ինչպիսին որ էր, անհավատությամբ գերված, նա շարունակում էր պաշտել սեփական կրոնը։ Սակայն՝նրա վրա թափվեց աստծո ուղարկած պատուհաս (դա սովն էր՝ ամենածանր ու ամենասարսափելի, մարդկանց վերադաստիարակող ու հեղափոխող), որ հափշտակել էր ու մաշում նրա երկիրը։ Պատուհասը ստիպեց նրան փորձանքից փրկվելու համար կոչ անել Թեոդորոսից և հարազատ քրոջից հիացական խոսքերով բազմիցս լսած և նրանց կողմից պաշտվող աստծուն։ Աղետից ձերբազատվելով, նա դառնում է բարեպաշտ, մայրաքաղաքից ուղարկված եպիսկոպոսի ձեռքով արժանանում մկրտության և կայսեր անունով Միքայել վերանվանվում[27]։ /15/ Պատմում են, որ մի բան էլ տեղի ունեցավ։ Իշխան Բոգորիսը որսի մեծ սիրահար էր, ցանկացավ, որ իր տներից մեկում, որտեղ որ նա մշտապես լինում էր, որսի տեսարաններ նկարեն, որպեսզի այդ աչք շոյող պատկերները գիշերն էլ դիտի։ Ահա նման ցանկությամբ հափշտակված՝ նա իր մոտ է հրավիրում մեր՝ հռոմայեցի նկարիչներից մեկին, անունը՝ Մեթոդիոս[28]։ Երբ Մեթոդիոսը ներկայացավ նրան, Բոգորիսը ինչ-որ աստվածային նախախնամությամբ նրան կարգադրեց նկարել ոչ թե ռազմիկների նախճիրը մարտի դաշտում, ոչ էլ կենդանիների ու գազանների սպանությունը, այլ ինչ-որ (նկարիչը) ցանկանար, սոսկ մի բան ավելացնելով, թե ուզում է պատկերվածը մարդկանց մեջ սարսուռ ու զմայլանք առաջացնի։ Նկարիչը գտավ, որ մարդկանց մեջ սարսուռ կառաջացնի միայն Քրիստոսի երկրորդ գալստյան պատկերը, դրա համար էլ դա նկարեց՝ մի կողմում իրենց կրած տառապանքների համար դափնեպսակ ստացող արդարներին, մյուս կողմում՝ մեղավորներին, որոնք իրենց գործած մեղքերի համար պատժի են արժանանում՝ վռնդվում, շպրտվում իրենց՝ դեռ այս կյանքում խոստացված դժոխքը։ Երբ նկարն ավարտվեց, և Բոգորիսը դիտեց այն, [մեղավորների] տեսքի առաջ իր մեջ աստծո սարսուռն զգաց և, հաղորդակից լինելով մեր աստվածային խորհուրդներին, ուշ գիշերով ընդունեց սուրբ մկրտությունը։ Երբ այդ բանն իմացվեց, համայն ժողովուրդն ապստամբեց իր դեմ, բայց ինքը փոքրաթիվ զինվորներով նրանց ծնկի բերեց։ Իր ծոցում



7—1069

կրելով աստվածային խաչի նշանը և շրջելով երկրով մեկ, նա մնացյալներին այլևս ոչ թե ծածուկ, այլ բացահայտ քրիստոնյա դարձրեց, այն էլ նրանց ցանկությամբ։ Այսպիսով ահա աստվածասլաշտ դառնալով, նա տիրուհուն նամակ գրեց, ասաց, որ իր ժողովրդի բազմաթիվ լինելու պատճառով, երկիրը փոքր է գալիս, և նրանից, որպես արդեն մի մարմին դարձած, իրար հետ անխախտ հավատքով ու բարեկամությամբ կապված, ավելի՝ համարձակ նոր հողեր խնդրեց։ Նա խոստանում էր հպատակություն և հավիտենական ու անսասան խաղաղություն։ [Թեոդորան] սիրով ընդառաջեց նրա խնդրանքին և Սիդերայից[29] (որը հոռմայեցիների և բուլղարների միջև սահման էր) մինչև Դեբելտոս[30] (նրանք այն Զագորա են անվանում)[31] ընկած՝ այն ժամանակ անմարդաբնակ տարածությունը նրան զիջեց։ Ահա այդ ձևով համայն Բուլղարիան բարեպաշտություն ընդունեց[32], աստված ինքը կոչ արեց նրանց ճանաչեն իրեն՝ փոքրիկ կայծերի ու պատուհասների միջոցով։ Արժանանալով և հոռմեական երկրամասի, կարծես մի երկրորդ ավետման երկրի, հոռմայեցիների հետ կայուն հարաբերություններ հաստատեցին։

16. Ահա այսպիսի փայլուն հաջողություններ ձեռք բերվեցին Արևմուտքում, որոնց առթիվ [Թեոդորայի] համբավը տարածվեց ամենուր։ Այդ հաջողություններից բերկրացած և կարծես ցանկանալով հաղթական ավելի մեծ հուշարձան կանգնեցնել, նա փորձեց Արևելքի պավլիկյաններին էլ բարեպաշտության բերել, իսկ եթե դա չհաջողվի՝ կոտորել ու ոչնչացնել նրանց։ Դա մեր երկիրը ողողեց բազում փորձանքներով։ Կայսրուհին մի քանի իշխանավորներ[33] ուղարկեց (նրանց անուններն էին՝ Արգիրոսի որդի, Դուկասի որդի և Սուդալիս)[34], որոնք նրանց ցցահան էին անում, սրի քաշում, ծովահեղձ անում։ Կոտորվածների թիվը շուրջ տասը բյուր հոգի էր, նրանց ունեցվածքը բռնագրավվեց և կայսերական գանձարանը մուտք գործեց։ Անատոլիկոն բանակաթեմի զորավար Թեոդոտոս Մելիսսենոսի մոտ ծառայում էր Կարբեաս անունով մեկը[35], որ պրոտոմանդատորի[36] աստիճանն ուներ։ Նա դավանում էր պավլիկյանների հավատքը և դրանով պարծենում։ Սա, լսելով, որ իր հայրը ցցահան է արվել, այդ բանը մեծագույն դժբախտություն համարեց և, գործերը կարգի բերելով, իր հինգ հազար աղանդակիցների հետ փախավ Մելիտենեի այն ժամանակվա ամիրա Ամերի մոտ[37], այնտեղից էլ՝ ամերմումնիի, որի կողմից փառավոր ընդունելության արժանացան։ Փոխադարձ ապահովության մասին համաձայնության գալով, շատ չանցած նրանք դուրս եկան՝ ավարա-

ռելու Հռոմեական կայսրության տարածքը։ Աղանդավորներն այնքան բազմացան, որ սկսեցին իրենց համար քաղաքներ կառուցել՝ այսպես կոչված Արգաուսը[38] և Ամարան։ Երբ սկսեցին այնտեղ հոսել նույն հերձվածը դավանողների նոր բազմություններ, նրանք հիմնադրեցին մի այլ [քաղաք], որը Տեֆրիկե[39] կոչեցին։ Նրանք անչափ բազմացան և հանդգնում էին այդ քաղաքներից արշավանքներ գործել և անվերջ ավարառել հռոմեական երկրի տարածքը, նրանց հետ նաև Մելիտենեի [ամիրա] Ամերը (սրա անունը շատերն աղավաղելով, Ամբրոն կոչեցին)[40], Տարսոնի [ամիրա] Ալին[41] և նույն ինքը՝ Թշվառական Կարբեասը։ Սրանցից Ալին, որն ուղարկվել էր հայոց ինչ-որ նահանգ կառավարելու[42], իսկույն տեղում սպանվում է, իր ողջ բանակն էլ բնաջնջվում[43], իսկ Ամերը իր կառավարչակից Սկլերոսի[44] (նա այդպես էր կոչվում) հետ թշնամացած, նրա հետ ներցեղային պատերազմի բռնվեց և արյունաքամ էր լինում։ Նա գտնում էր, որ հազիվ նրա դեմ կարող է պատերազմել և ոչ ուրիշների դեմ էլ։ Նրանց հակամարտությունն այն աստիճան սաստկացավ, այնքան համառությամբ էին նրանք միմյանց դեմ մաքառում, որ հիսուն հազար հոգուց մի փոքր ավելի թիվ կազմող նրանց ռազմիկներից հազիվ տասը հազարը մնաց։ Երբ [Ամերն] իր թշնամիներին ընկճեց, միանալով Կարբեասին դարձյալ հանդգնեց հռոմայեցիների դեմ զենք ճոճել։ Նրանց դեմ դուրս եկավ Պետրոնասը, որն այն ժամանակ վարում էր դոմեստիկոսի պաշտոնը։ Այդ պաշտոնը Վարդասին էր տրված, բայց քանի որ նա որպես խնամակալ զբաղված էր, նպատակահարմար գտավ այդ պաշտոնի իրական վարումը թողնել իր եղբոր, Թրակեսիոն բանակաթեմի զորավար Պետրոնասին։

17. Միքայել կայսրն ուզում էր, մշտական փափագ ուներ իսմայելացիների դեմ պատերազմել, արշավանքի գնալ (նա արդեն դուրս էր եկել մանկական հասակից և առնականանում էր)։ Թեև այդ մասին էր մտածում, այնուամենայնիվ որոշեց ազգականական հարցերից սկսել, ինչ չպետք է աներ։ Դա իր սեփական կարծիքը չէր, այլ խնամակալ Վարդասի վճիռն ու կամքը։ Ինչու համար և ինչպես դա տեղի ունեցավ, պատմությունը կասի, քանզի պատմությունը ճշմարիտ խուլ ու համր է, անշունչ մի մարմին, եթե ցույց չի տալիս իրադարձությունների դրդապատճառները։ Սակայն եթե մենք, այդ ընթացքում հոսած ժամանակի պատճառով, որոշ դեպքերի լավ ծանոթ չենք, թող հետաքրքրասերները մեր հանդեպ ներողամիտ լինեն, քանզի մենք ցանկանում ենք գրի առնել ճշմարիտը և ոչ կարծեցյալը, մի բան, որ տարա-

կուսանքի մեջ է գցում անգամ շարքային ընթերցողին։ Բայց եթե պատճառը հայտնի է, այն պետք է հասցնել, պարզաբանել ընթերցողներին, քանզի միայն ու միայն այդ կերպ կարելի է նրանց օգտակար լինել։

18. Այս Վարդասին համակել էր գահին տիրանալու մի ստոր սեր, այն էլ ոչ սովորական, որ մեկ բորբոքվում, մեկ բանականության ուժի առաջ սանձվում է, այլ խելահեղ ու անհաղթահարելի։ Պատմությունը մի փոքր հեռվից սկսելու համար ասենք, որ արքունիքի մոտ բնակվող [կայսեր] խնամակալներ Մանուիլի և Թեոկտիստոսի միջև գժտություն առաջացավ, որը հիմք էր տալիս Թեոկտիստոսին [Մանուիլին] մեղադրելու պետական դավաճանության մեջ։ Մանուիլին այդ բանը գաղտնի ու շտապ հասցրին և նա, երկյուղ զգալով, բացի այդ, տեսնելով, որ նախանձը անհաղթահարելի է ու դժվարասանձելի, միտք դղացավ նրան սրախողխող անել ու մեջտեղից վերացնել, հենց որ Թեոկտիստոսը հեռանա պալատից։ Նա գնում է իր տունը, որ գտնվում էր Ասպարի ջրամբարի մոտ (այն նա հետագայում վանքի վերածեց և այնտեղ էլ թաղվեց)։ Ահա նա ամեն օր այստեղ էր գալիս և տեղեկանում արքունիքում անցած-դարձածի մասին։ Վարդասը [Մանուիլին] ոչ թե իր, այլ Թեոկտիստոսի ձեռքով հրապարակից վերացրեց, այսպես ասած՝ դեն շպրտեց, բախտի բերմամբ իր ծրագրածն իրականացնելու հարցում գործակից ձեռք բերեց։ Այսուհետև նա մտադիր էր այլևս ոչ թե ուրիշի, այլ սեփական ուժերով ծրագրածը գլուխ բերել, առայժմ Թեոկտիստոսին տապալել, որպեսզի նախ և առաջ իր առաջընթացին խոչընդոտ չդառնա, իսկ մյուս կողմից պրծնի այն մեծ խայտառակությունից՝ իր հարսի հետ հարաբերվելու ամբաստանությունից, որ Թեոկտիստոսն անվերջ իրեն էր ներկայացնում։ /19/ Միքայել կայսրը անկիրթ ու անտաշ մի դաստիարակ ուներ։ Կայսրը Վարդասից, Թեոկտիստոսից և [իր] մորից պահանջում էր այդ դաստիարակին կայսերական ամենաբարձր պաշտոնները շնորհել, բարձրագույն տիտղոսները։ Թեոկտիստոսը դեմ էր դրան, մտադիր չէր ընթանալ կայսեր քմահաճույքի համաձայն։ Նա ասում էր, թե կայսրության գործերը պետք է պատշաճ ձևով վարել և ոչ անարժան։ Վարդասն այդ դաստիարակին դարձնելով իր նենգ ծրագրերի գործակատարը, անվերջ պղտորում էր և՛ նրա, և՛ կայսեր հոգին, նրանց լարում Թեոկտիստոսի դեմ. Նա շատ բաներ էր ասում Միքայելին պետության կառավարման վերաբերյալ, թե «այն վատ է տնօրինվում, որ թագավորությունը թեև քեզ է ժառանգություն թողնվել, սակայն Թեոկտիստոսը քեզ դրանից հեռու է պահում, նա մտադիր է, քո մոր կամ նրա դուստրերից մեկնումեկի հետ

ամուսնանալ, իսկ քեզ, իր հարազատ որդուն, կուրացնել»[45]։ Նման խոսքերով, կարծես նետերով նա խոցեց կայսեր սիրտը, արյունը պղտորեց, և որպեսզի այդ բանը կանխվի, ասաց, թե պետք է շտապ խոհեմ քայլերի դիմել։ Նրանք այդ առթիվ բազմիցս հանդիպելով միմյանց, միահամուռ կերպով վճռեցին Թեոկտիստոսին մեջտեղից վերացնել՝ կամ ահաբեկչության, կամ աքսոր ուղարկելով[46]։ Որոշումն արդեն ընդունվել էր, մնում էր այն անհապաղ ի կատար ածել։ Որոշվեց, որ զեկուցագրերի քննությունից հետո, երբ Թեոկտիստոսը դուրս գա Լավսիակոս գնալու համար, կայսրը նրանից մի փոքր անց դուրս գա և պրեպոզիտոսներին սոսկ կոչ անի՝ «վերացրեք նրան»։ Այդ պահին Վարդասը ժողովի էր նստած Լավսիակոսում։ Հենց որ Թեոկտիստոսը դուրս եկավ, լսեց Միքայելի ազդանշանը և որոշեց փախուստով փրկվել։ Նա փախավ դեպի ձիարշավարան՝ դեպի ասեկրետիաները։ Ասեկրետների շենքն այն ժամանակ այնտեղ էր գտնվում։ Սակայն ինքը մենակ էր, իսկ իր վրա հարձակվողները՝ շատ, որով նա բռնվեց։ Վարդասը թուրը մերկացրած մեջտեղ եկավ և սպառնում էր անձամբ սրախողխող անել բոլոր նրանց, ովքեր կփորձեին խանգարել ձերբակալվածի սպանությանը։ Այդուհանդերձ այն ժամանակ ոչ ոք չհամարձակվեց Թեոկտիստոսին ձեռք տալ։ Նրան տարան Սկյուլա՝ առայժմ բանտարկելու, մինչև նրա մասին վճիռ կայացվի[47]։ Բայց քանի որ որոշել էին սպանել նրան, բայց միաժամանակ երկյուղում էին կայսրուհուց, և որպեսզի Թեոկտիստոսն այդ ընթացքում ազատ չարձակվի, հետերիայից[48] թուրը մերկացրած մի զինվոր ուղարկեցին՝ նրան սպանելու։ Թեոկտիստոսը, տեսնելով թրով իր վրա եկող մարդուն, հարվածից խուսափելու համար նստարանի տակ թաքնվեց։ Բայց այդ բանն իրեն չհաջողվեց, որովայնին հարված ստացավ, փորոտիքը դուրս թափվեց, և նա մեռավ։ Ասում են, որ այն ժամանակ Մանուիլը մարգարե դարձավ և Վարդասին պարզիպարզո կանխագուշակեց.

«Քանի որ դու Թեոկտիստոսին խողխողելու համար թուր մերկացրիր, ամեն օր խողխողվելու պատրաստ եղիր»։

20. Թեոկտիստոսն ահա այսպիսի վախճան ունեցավ[49]։ Նրա խողխողումից հետո կանիկլիոսի պաշտոնն ու պատիվը Վարդասն իր վրա վերցրեց։ Իսկ Թեոդորան կատարվածին հասու լինելով, հերարձակ այս ու այն կողմ էր ընկնում, աղիողորմ ողբում, նա պալատը ողողեց լաց ու կոծով, անեծք թափեց երկուսի գլխին էլ, ասելով. «Ո՜վ խայտառակ ու ամենազարշելի գազաններ։ Նաև դու, ապերախտ ծնունդ[50], քո երկրորդ հոր քեզ արած լավությունները այդ կե՞րպ ես հատուցում»։

Ապա ողբերգականորեն եղբոր դիմելով, ասաց. «Ո՛վ չարաչկն ու նենգ ղն, պղծեցիր դու իմ կողմից մաքուր ու սուրբ պահպանված իշխանությունը։ Աստված բարձրից տեսնում է ձեր ժպիրհությունը, նա հաստատ երկուսիդ էլ նույնպիսի բռնի մահվան կարժանացնի»։ Որից հետո նա ձեռքերը մեկնեց ու կարծես մարգարեացավ. «Տե՛ր, ես ականատես կլինեմ, ես կտանեմ այս մարդու թափված արյան վրիժուց խնդրությունը»։ Նրանք, չկարողանալով այլևս տանել Թեոդորայի բազում անեծքներն ու պարսավանքները, և քանի որ Վարդասր հետամուտ էր իր մտադրությունն իրականացնել, որոշեցին սրան էլ [պալատից] դուրս հանեն, որպեսզի իրենց ուզածը հեշտ ու հանգիստ իրականացնեն։ Թեոդորան շատ լավ էր հասկանում դա (նա խոհեմ կին էր, կարողանում էր ամեն ինչ տեսնել ու գլխի ընկնել), մտածում էր, թե կարիք չկա հակադրվել, դեմ էր արյունահեղության, ցեղակիցների պատուհասի պատճառ դառնալուն։ Ինչ վերաբերում է առկա դրամին, որ տվյալ պահին պալատի գանձարանում էր կուտակված, որոշեց նրա մասին սենատին իրազեկ դարձնել։ Դրանով նա ուզում էր մի կողմից խոչընդոտել այդ դրամի անխնա շռայլումն իր որդու կողմից, իսկ մյուս կողմից՝ ապացուցել իր ազնվությունը։ Նա ի լուր ամենքի հայտարարեց, թե կայսերական գանձարանում կա հազար իննսուն կենտինար ոսկի ու մոտ երեք հազար կենտինար արծաթ[51], որոնց հայթայթողն ու կուտակողը իր ամուսինն էր, իսկ ինքը, Թեոդորան, չէր սիրում դրանք ծախսել ու շռայլել։

21. Թեև կայսերական գանձն այդքան շատ էր, Միքայելի հիմարության ու անսահման փառասիրության պատճառով ոչ մի օգտակար բանի վրա չծախսվեց։ Նա ձիարշավների ամենամեծ սիրահարը լինելով, դեմ չէր անձամբ կառավար լինել (ավաղ, այդ օրերին այդպես նվաստացած հռոմայեցիների պետության)։ Նա իր խաղընկերների ու իր հետ կառք վարողների երեխաների կնքահայրն էր դառնում և այդ առթիվ յուրաքանչյուրին տալիս էր հիսուն, քառասուն, ամենաքիչը՝ երեսուն լիտր ոսկի, և այդ ձևով դատարկում կայսերական գանձարանը։ Մի անգամ մի ոմն պատրիկի (նրա անունը Հիմերիոս էր, որին դեմքի տգեղության պատճառով խոզ էին կոչում), նրա ոչ սովորական զազրախոսության և ճաշի ժամանակ կայսեր և նրա սեղանակիցների ներկայությամբ իր գարշելի որովայնից անօրինակ ուժգին փուք բաց թողնելու համար, այնքան ուժգին, որ իրենց լուսավորող ջահը հանգցրեց, ահա այդ աննման «հրաշքի» համար նրան հարյուր լիտր ոսկի տվեց։ Քիլասի, ժամանակին իր հետ կառք վարողի որդուն կնքելու առ-

թիվ նմանապես հարյուր լիտր ոսկի տվեց։ Ահա այդպես անտեղի էր նա պետական դրամները վատնում։ Այսպես ահա կարճ ժամանակվա ընթացքում նա այդ հսկայական գումարը նման թատերական ներկայացումների ու անօրինությունների վրա վատնեց (նա ձիարշավների մեծ սիրահար էր)։ Վրա հասավ կայսերական նվերների բաժանման ժամանակը, բացի այդ թշնամու բանակներին ընդդիմակայող զինվորներին պետք է ռոճիկ տրվեր, բայց դրամ չկար։ Եվ նա ստիպված հալեցրեց հռչակավոր ոսկե սոսին, երկու ոսկե առյուծները, զուտ ոսկուց, կոփման եղանակով պատրաստված երկու գրիֆոնները, զուտ ոսկուց կերտված երաժշտական գործիքը, ապա և կայսերական թանգարանի այլևայլ գլուխգործոցներ, որոնց քաշը երկու հարյուր կենտինարից պակաս չէր։ Ահա հալեցնելով դրանք տվեց կայսերական փողերանոցին՝ դրամ հատելու։ Միջոցների կարիք զգալով, նա վերջում հալեցնելու և դրամ հատելու տվեց նաև իդիկոնում[52] պահվող կայսրերի, թագուհիների և սենատորների զուտ ոսկուց և ոսկեթել մի քանի հանդերձներ։ Բայց այնուամենայնիվ նա չհասցրեց դրանք հալեցնել, քանզի այն աշխարհը գնաց։ Երանելի Վասիլը տիրանալով իշխանության, գտնելով դրանք դեռևս ձեռք չտված, [Միքայելի] կարգադրությունը չեղյալ հայտարարեց։ Նա հրամայեց հատել այժմ սենզատոն[53] կոչվող դրամը։ Այդքան հարստությունից նրա ձեռքն անցավ ընդամենը երեք կենտինար ոսկի և ինը պարկ միլիարիսիա, որոնք և պետականացրեց, այդ մասին բոլորին տեղյակ պահեց, սենատորներին դառնորեն գանգատվելով՝ ի՞նչ միջոցներով պետք է ինքը պետությունը կառավարի։

22. Բայց այս բոլորը ժամանակ անց տեղի ունեցան։ Թեոդորան սովորություն ուներ հաճախակի այցելել Վլախեռնայի սուրբ տաճարը՝ աստծուն աղոթելու և լոգանք ընդունելու։ Ահա երբ մի անգամ նա ուշ ժամանակ [Վլախեռնա] էր գնացել, Միքայելն ու Վարդասը Պետրոնասին՝ [կայսրուհու] եղբոր ուղարկեցին և նրան իր դուստրերի հետ մայրապետ խուզելով, Կարիանոսի պալատում արգելափակեցին։ Այնուհետև ոչ թե մեկ, այլ երկիցս մարդ ուղարկելով, նրանց մոտ եղած հարստությունն առան-տարան, թողնելով իրենց գոյությունը պահեն, ինչպես սովորական մասնավոր մարդիկ, և ոչ ինչպես վայել է թագուհուն։ Թեոդորան շատ չանցած մյուս աշխարհը գնաց։ Երանելի կայսր Վասիլը նրա աճյունը Գաստրիոն կոչվող վանքում ամփոփեց։ Նա այնտեղ ուղարկեց նաև Թեոդորայի դուստրերին, այդ՝ իրենց տատի[54] վանքում անբասիր ապրելու և կենցաղավարելու։ Թեոդորան ահա այսպես վախճանվեց, բարի ու բարեպաշտ մարդու հիշատակ թողնելով, և ոչ

*Նրանց պես՝ նենգ։ Նախորդ գրքում արդեն ասվել է, թե Թեոդորան որտեղից էր սերում, ինչ ծնողներից, ինչպիսի պարագաներում մուտք գործեց արքունիք և թե քանի դուստր նա ունեցավ։ Այս գրքում խոսք կլինի նրա մնացած ազգականության մասին։ Վերևում արդեն ասվեց նրա երկու եղբայրների մասին, Թրակեսիոն բանակաթեմի զորավար, այն ժամանակ պատրիկի պատվաստիճանն ունեցող Պետրոնասի, ինչպես և Վարդասի, որին Թեոփիլոսը, ընթացիկ կայսերական երթերից մեկում անհարմար մի արարք թույլ տալու մեջ բռնելով, Հորոլոգիոնում[55] ճիպոտի վաթսուն հարված հասցնել տվեց։ Թեոդորան ուներ և երեք քույր, մեկը բարեհունչ Կալոմարիա անունն էր կրում[56], մյուսները կոչվում էին Սոփիա և Իրենե։ Սոփիան կնության տրվեց Կոստանդին Բաբուցիկոսին[57], Կալոմարիան՝ այն ժամանակ պատրիկի, իսկ հետագայում մագիստրոսի պատվաստիճան ունեցող Արշավիրին, իսկ Իրենեն՝ հետագայում պատրիարքական աթոռին նստած Փոտի[58] մայր Իրենեի եղբոր։ [Իրենեն] նրանից ունեցավ երկու որդի, Ստեփանոս մագիստրոսին[59] և նրա եղբայր Վարդաս մագիստրոսին, Սիկիլիայի բանակաթեմի զորավար Կոստանդին Կոնտոմիտեսի փեսային (դրա պատճառով էլ նա ստացավ Կոնտոմիտես մականունը), այստեղից էլ ահա [Թեոդորայի քույր Իրենեի] բարեկամական կապը պատրիարք Փոտի հետ, քանզի այդ երկու մագիստրոսները Փոտի մոր եղբորորդիներն էին։ Վերոհիշյալ մայրը, երբ իր առաջին ամուսինը մեռավ, այլևս չէր ուզում ապրել նաև երկրորդի մահը, դրա համար մնաց այրի։ Նա ապրում էր քրոջ հետ պալատում, կրում կոպիտ ու համեստ հանդերձներ, այն էլ սև գույնի։ Նա հյուպարքոսի, քաղաքի պարիսպների պահակապետի[60], նումերոսների [հետերիայի հետերիարխի] հետ յուրաքանչյուր ամսվա առաջին օրը սխոլարիոսներով ոտքով գնում էր Խալկեի, Պրետորիոնի և Նումերոսների բանտերում արգելափակվածների մոտ, մեկ առ մեկ հարցափորձ անում նրանց բանտարկվելու պատճառների մասին, ոմանց գործերն անձամբ ինքն էր կարգավորում, ուրիշներինը՝ դիմելով քրոջ։ Նա բոլոր բանտարկյալներին մեծ-մեծ նվերներ ու նպաստներ էր տալիս։ [Թեոդորայի] կանացի գծով ազգականության մասին ահա այսքան։*

*23. Ինչ վերաբերում է Վարդասին, ապա նա ամբողջությամբ կրլանված էր կայսրության խնամակալի և կառավարչի պարտականություններով։ Նրան մյուսներից ավելի էին սիրում, որպես կայսեր ազգականի։ Կարծես որպես իր քրոջ դեմ տարած հաղթանակի մրցանակ, նա ստացավ նաև կուրապաղատի պատվաստիճանը և, ինչպես ասվեց,*

աղվամաղը դեռ նոր բուսնող Միքայելի հետ ամբողջ զորքով պատերազմի գնաց Իսմայելացիների և Ամերի դեմ։ Ոտք դնելով թշնամու տարածքը, նրանք հասնում են ու պաշարում Սամոսատ կոչվող անառիկագույն քաղաքը։ Այնտեղ նրանք համոզվեցին, որ արդեն գործ ունեն ոչ թե Թեոդորայի, այլ շատ խորամանկ մարդկանց հետ։ Պաշարման երրորդ օրն էր, կիրակի, և պետք է կատարեին սուրբ հաղորդության խորհրդի արարողությունն ու հաղորդվեին, սակայն այդ բանն անում էին՝ առանց ձեռք առնելու նախազգուշական միջոցները, կամ էլ, անփորձ լինելով, բանի տեղ չէին դնում քաղաքում պաշարվածներին։ Նրանք ենթադրում էին, որ նրանցից և ոչ ոք չի հանդգնի հռոմայեցիների կայսեր վրա ձեռք բարձրացնել։ Եվ ահա հաղորդության սուրբ խորհրդի պահին [թշնամիները] քաղաքի ամեն տեղից զենքերով դուրս խուժեցին։ Չկար մի հռոմայեցի, որ փախուստի չդիմեր։ Ինքը՝ Միքայելը մի կերպ ձի նստեց, նա չփորձեց անգամ ընդդիմակայել և, փախուստի դիմելով, մի կերպ փրկվեց, տեղում թողնելով և վրանները, և՛ սպասարկող անձնակազմը։ Պատմում են, թե այնտեղ ի միջի այլոց աչքի ընկավ և նախապես հիշատակված Կարբեասը, Տեփրիկեի կառուցողը[61], որը կոտորեց ոչ միայն բազում շարքայինների, այլև գերեց մեծամեծ զորավարների՝ Աբեսալոմ Յանգոտուբոսին, Սիոն պալատինոսին և այլ, շուրջ հարյուր փոխզորավարների ու տուրմարխների։ Հիշյալ զորավարները պատերազմի ավարտից հետո բանտ նետվեցին, նրանց ազգականները որպես փրկագին Կարբեասին բազում դրամ ուղարկեցին։ Երբ դրամը Կարբեասն իր ձեռքն առավ, առանց քաշվելու հարցրեց Սիոնին՝ ինչպիսի վերաբերմունք ունի նա դեպի սեռական հարցերը, կարողանո՞ւմ է արդյոք։ Երբ Սիոնը բացասական պատասխան տվեց, Կարբեասը նույն հարցով դիմեց Աբեսալոմին, որը, համոզվելով նրա վատթարությանն ու ստորությանը, բայց գուցե և իրականում դա այդպես էր, դրական պատասխան տվեց, ասաց, թե կարողանում է։ Կարբեասն ասաց նրան. «Դու փրկագնվում ես և ազատվում կապանքներից», և նրան ազատ արձակեց, իսկ Սիոնին ասաց. «Աստված չի ուզում, որ դու բանտից ազատվես»։ Նրա փրկության համար իրեն տրված փրկագինը հանձնելով նրան, բանտ նետեց, որտեղ էլ նա իր հոգին ավանդեց։

24. Պատերազմից անցել էր երկու տարի։ Միքայելը, լսելով, որ հռոմայեցիների վրա են արշավում երեք բյուր հոգի, ցանկացավ իր կրած պարտության րիծը վերացնել և, մինչև չորս բյուր Թրակացի և մակեդոնացի[62] զինվորներ հավաքելով, փութաց [Ամերի] դեմ։ Նա

*բանակեց Կելարիոն[63] կոչվող խոտառատ մի դաշտում, իսկ Ամերը, ռազմավարական խորամանկության դիմելով, շտապեց դեպի Խոնարիոն՝ գլխավոր ճանապարհից հեռու վայրով։ Մոտենալով Խոնարիոնին, նա բախվեց Միքայելին ու քաջաբար պատերազմելով ստիպեց նրան փախուստի դիմել։ Բայց նա կարող էր փախչել այնքան, ինչքան ձիերն ի վիճակի էին առանց կանգնելու սուրալ։ Երբ կեսօր եղավ, և կիզիչ արեգակը կրակ էր թափում, նրանք ստիպվեցին Անզեն կոչվող դժվարամատչելի, քարքարոտ, որից և դժվարանցանելի լեռնային մի վայր բարձրանալ։ Ահա կայսրը փախչելով այնտեղ, բանակ դրեց, իսկ նրան կրնկակոխ հետևող Ամերը օղակի մեջ առնելով նրան, փորձեց ցանցը գցել։ Նա անտարակույս նրան գերի կվերցներ, եթե կայսերական հզոր տագմաները համառորեն չընդդիմակայեին, և եթե չնպաստեր տեղանքի բարձրադիր ու [թշնամիների] նկատմամբ գերակշռող դիրքը։ Հիշյալ հանգամանքները մի կերպ փրկեցին նրանց։ Երբ նրանք այնտեղ մահու կենաց կռիվ էին մղում, Միքայելը Մանուիլից պահանջեց իրենց երկուսի համար փրկարար մի խորհուրդ տալ։ Նա խորհուրդ տվեց վրայից հանել այն ամենը, ինչ մատնում էր նրա կայսր լինելը, հագնել հասարակ մարդու զգեստներ և ընտիր ու հզոր զինվորներով ճեղքելով թշնամու փաղանգների օղակը, շրջապատումից հաջող դուրս գալ։ Միքայելի երկրորդ հարցին՝ ինչպես կլինի մնացող զումակում ծառայողների փրկության գործը, Մանուիլը պատասխանեց. «Ո՛վ կայսր, կարևորը քո անվնաս փրկությունն է, նրանց մասին աստված կհոգա։ Քանզի կայսեր և ինչ-որ շարքային հռոմայեցու՝ թշնամու կողմից գերվելը հավասարազոր բաներ չեն»։ Կայսրը փոխեց հանդերձները և ամբողջությամբ Մանուիլին ապավինելով, հետամուտ էր, երբ Մանուիլը ուրիշների հետ կճեղքեր փաղանգը, նրա հետևից դուրս գալ։ Սակայն, երբ սարսափելի պահը եկավ, թշնամիների ռազմաշարքի մոտ եղան, Միքայելը վախից կատարյալ ուժաթափ, նախընտրեց մարտից խուսափել և Մանուիլին չհետևել։ Երբ Մանուիլը ճեղքելով փաղանգը փրկվեց և չորս դին նայելով կայսրին չտեսավ և վախենալով, որ նա կարող է վտանգի ենթարկվել, հետ շտապեց։ Երբ դարձյալ միմյանց բախվեցին և սարակինոսներին սարսափ համակեց, Ամերը վճռեց հեռանալ՝ աղբյուրներ գտնելու ու պարեն հայթայթելու[64]։ Նա հնչեցրեց նահանջի ազդանշանը։ Միքայելն ահա առիթից օգտվելով, հանգիստ մի կերպ փրկվեց ու մայրաքաղաք վերադարձավ[65]։*

*25. Հազիվ երկու տարի էր անցել, և Ամերը քառասուն հազարանոց զորքով դարձյալ արշավեց։ Օգտվելով դիմադրողի բացակայու-*

թյունից, նա ասպատակ սփռեց ու գերեվարեց Արմենիակների բանակաթեմը և ծովափնյա Ամիսոսը[66]։ Պատմում են, որ այն ժամանակ արեց այն, ինչ խելահեղ Քսերքսեսը, հրամայեց մահակներով ծովը հարվածել, որովհետև այն թույլ չէր տալիս իրեն ընդարձակել իր ասպատակությունները և բավարարվել մերձակա տարածքով[67]։ Միքայելը դրանից վշտացած ու անհանգստացած, հրամայեց Թրակեսիոն բանակաթեմի զորավար Պետրոնասին, կայսրուհու եղբոր, գլխավորել հռոմայեցիների զորքերը, ամբողջ ուժով շարժվել Ամերի վրա, թույլ չտալ, որ նա շարունակի ամայացնել հռոմայեցիների երկիրը։ Այն ժամանակ կայսերական տագմաների և սխոլաների հրամանատարն էր Վարդասի Անտիգոնոս անունով շատ երիտասարդ, մոտ տասնիննամյա որդին։ Ինձ[68] զարմանք է պատճառում, որ [Վարդասը], ինչպես պատմում են, ողջամիտ ու խոհեմ մարդու հավակնություն ունեցող մի մարդ, ծանր ու սարսափելի իրադրության պայմաններում անգամ [սպարապետի] պաշտոնը չէր ուզում ուրիշին զիջած լինել, ցանկանում էր ամեն ինչ ինքը լափել, իր վրա վերցնել։ Այսպես թե այնպես, տվյալ դեպքում [սպարապետի] պաշտոնը նա ձևականորեն տվեց եղբորը։ Պետրոնասը, ստանալով կայսեր կարգադրությունը՝ զինվել թշնամու դեմ և սխրանքներ գործել, իրար անցավ։ Խորհելով՝ ինչպես անել, որ իրերի ելքը բարեհաջող լինի, նա գնաց Եփեսոսի մոտ գտնվող Սուրբ լեռը [խորհուրդ հարցնելու], հրաժարվելու այդ գործից, կամ էլ ի վերուստ օգնություն աղերսելու։ Նրա այնտեղ լինելու ժամանակ լուր տարածվեց, որ ինքնաբերաբար իր մոտ է գալիս բարձրահասակ, մշտապես բոկոտն այն նշանավոր Հովհաննես վանականը, որն իր ժամանակը Լատրոսում[69] էր անցկացնում։ Նա անապատականի կյանք էր վարում և օրում իր խցից դուրս չէր եկել, մի բան, որ մարդկանց զարմանքն էր առաջացնում։ Պատրիկը, լսելով այրի մասին, որ ավանակ նստած՝ մոտերքում է գտնվում, գնաց նրա տեսության։ Հովհաննեսն առանց տատանվելու ասաց. «Ենթարկվիր կայսերական կարգադրություններին և գնա սարակինոսների դեմ, քանզի աստված քեզ կպահի եթե որևէ այլ չարխափանի փոխարեն բոլորի վահանների վրա նկարված լինի աստծուն սիրելի Հովհաննեսի հստակ [պատկերը]»։ Նա ավելացրեց նաև, որ «այստեղ գալու միակ նպատակս հենց այդ էր»։ Պետրոնասը նրա աղոթքներով գոտեպնդված, ամբողջ զորքով՝ ժայռերով ու ձորերով բնականորեն ամրացված Պոսոն[70] կոչվող վայրում հասնում է Ամերին։ Պոսոնի մոտ հյուսիսից հարավ Լալակաոն անունով մի գետ է հոսում[71], նրան մոտիկ մարգագետին էլ կա, որ գեղջկական

բարբառով Գյուրին է կոչվում[72]։ Պետրոնասն իմացավ, որ Ամերը այնտեղ է բանակ դրել և ամեն կերպ ջանաց փակել նրա նահանջի ճանապարհը, նրան փախչելու հնարավորությունից զրկել։ Արմենիակների, Բուկելլարների, Կողոնիայի և Պափլագոնիայի զորավարներին անհապաղ ուղարկեց՝ պատվարելու հյուսիսային կողմը, իսկ հարավայինը՝ Անատոլիկոն, Օպսիկիոն և Կապադովկիայի զորավարներին, Սելևկիայի և Խարսիանոնի կլեյսուրարխների հետ[73]։ Ինքը՝ Պետրոնասը, կայսերական չորս տագմաներով և Թրակիայի ու Մակեդոնիայի զորավարներով (կարգի համաձայն, բուլղարների հետ խաղաղություն տիրելու դեպքում. նրանք պարտավոր են արշավանքի դուրս գալ ու մարտնչել Անատոլիկոն բանակաթեմի զորքերի հետ) պատվարեց արևմտյան կողմը. իր հետ ունենալով Թրակեսիոն [բանակաթեմի] զորքերը։ Ամերը, համոզվելով, որ հռոմայեցիներն իրեն գազանի նման օղակել, ծուղակն են գցել, անհրաժեշտ գտավ դիմել գուշակության։ Նա ռազմագերիներից մեկին կանչեց ու հարցրեց և՛ վայրի անունը, և՛ մարգագետնի, և՛ գետի։ Ռազմագերին, [տեղանունները] մի փոքր աղավաղելով, Պոսոնի փոխարեն Պտոսոն ասաց։ Դրանից Ամերի համար պարզ դարձավ իր անկման մասին[74], ապա Լալականի փոխարեն՝ գետի անունը Լաոս կակոսինի ձևափոխեց[75], իսկ Գյուրիս կոչվող մարգագետնի անման համահնչունությունից եզրակացրեց, թե հռոմայեցիների կողմից ամուր շրջափակման մեջ է ընկնելու[76]։ Այդուհանդերձ նա ասաց. «Չպետք է երկյուղել, այլ ոտքի կանգնել և վաղվա ճակատամարտի համար արիանալ»։ Նա հրամայեց բոլորին զենք կապել, թրերն այնքան փայլեցնել, որ նորի կերպարանք ստանան։ Երբ լույսը բացվեց, նա միտք արեց՝ ինչպես հաղթահարի հռոմայեցիներին։ Նա նպատակահարմար գտավ հռոմայեցիների օղակը ճեղքել հյուսիսային կողմում, այնտեղից ելք փնտրել, բայց երբ դժվարամատչելի տեղանքը և այնտեղ կանգնած զորավարների տոկունությունը նրան թույլ չտվեցին այդ բանն անել, ստիպված հարձակվեց հարավային կողմի վրա։ Բայց այստեղ էլ հակառակորդների նույնպիսի ռազմաշարքի հանդիպելով, վճռեց, մնացած կողմերը թողած, հարձակվել այն տեղի վրա, որտեղ գիտեր, որ նրան է խփած, և պահպանում է Պետրոնասը։ Այդ բանին հրապուրում էր տեղանքը, որը տափարակ էր ու դյուրամատչելի։ Ամերն ահա աղմուկ-աղաղակով թշնամիների վրա խուժելով, համոզվեց, որ հռոմայեցիները ոչ միայն տեղի չեն տալիս, այլ նրանք իրենից հզոր են, իրեն ընդդիմակայում են արիաբար, ուժեղ դիմադրություն ցուցաբերում։ Նա մի փոքր շվարեց, բայց սթափվելով, դարձյալ ուժեղ հարձակում գոր-

ծեց՝ իրեն շրջափակումից դուրս բերելու և իջնելու տեղ ապահովելու համար։ Բայց հռոմայեցիները կրկին տեղի չտվեցին, ընդհակառակը դիմադրեցին և հետ մղեցին, սեղմելով օղակը ստիպեցին, որ նրանք էլ իրենց շարքերը սեղմեն։ Երբ Ամերը տեսավ, որ հյուսիսային և հարավային կողմերը պահողներն ամեն տեղից [իր վրա] են խուժում. փրկության հույսերը կտրած, կարծես կայծակնահար եղած բանականությամբ, առանց մտածելու՝ ուղղվեց սրերի վրա։ Ինքը մահացու հարված ստանալով, չարաչար սպանվեց, իսկ իր զինվորներից և ոչ սեկը չփրկվեց։ Հռոմայեցիները, լսելով, որ Ամերի որդին ինչ-որ փաղանգով հաջողացրել է փախուստի դիմել, նրան հետապնդում և ոչ շատ հեռու տեղում[77] հասնում ու նրա զորքի հետ գերում է Խարսիանոնի կլեյսուրարխը[78] և բերում հանձնում Պետրոնասին։ Պետրոնասնահա Ամերի դեմ այսպիսի հաղթանակ տանելով[79], այնուհետև մեծ հարգանք էր տածում վանականի հանդեպ, ակնածում նրան, նոր մարգարե անվանում։ Իր հոգուն վերաբերող հարցերը նրա վրա դնելով, Պետրոնասը մուտք է գործում մայրաքաղաք՝ վանականին էլ իր հետ բերելով, կայսեր ու Վարդասի առջև մեծապես դրվատելով այդ այրի առաքինությունը։ Այնուհետև Պետրոնասն անունով դոմեստիկոս չէր, այդ պատիվն այժմ նա ստանում է կայսրից։ Ինչ վերաբերում է վանականին, ապա նա ի վերուստ իմանալով իր՝ շուտով առ աստված փոխվելու մասին, այդ բանը հայտնի դարձրեց Պետրոնասին։ Վերջինս ողբագին հարցրեց. «Ով իմ սիրելի հովիվ, հեռանալով այստեղից, ո՞ւր, այս աշխարհո՞ւմ ես թողնում ինձ՝ քո գառան։ Վախենում եմ դարձյալ սայթաքեմ և վերջս ավելի վատ լինի, քան անցյալս»[80]։ Վանականի հարցին՝ «Ուզո՞ւմ ես հետևել ինձ», Պետրոնասը պատասխանեց. «Այո, հայր, մեծ սիրով»։ Պետրոնասը տուն վերադառնալով. ինքը ևս հիվանդացավ, որի մասին աբրային տեղյակ պահեց։ Վերջինս պատասխանեց ու ասաց, թե «քիչ հետո դու ինձ հետ կլինես, ինչպես ուզեցիր»։ Մի քանի օր անց վանականը կանչվեց առ աստված. իսկ Պետրոնասն էլ հենց նույն պահին, կարծես ազդանշանով, առոք-փառոք հետևեց նրան։ Նրանց՝ այս աշխարհից հեռանալը ժամանակով այնպես զուգադիպեց, որ մեկը մյուսի մահը չիմացավ. թեև գտնվում էին իրարից ոչ շատ հեռու։ Ահա, պատմածի համաձայն Պետրոնասն այսպիսի մահվամբ վախճանվեց։ Նրանից առաջ ինչ-որ հիվանդությունից հոգին ավանդեց և Մանուիլը[81]։

26. Վարդասն աստիճանաբար բարձրանում էր. նա իրար հետևից կայսրից ստանում էր պատվաստիճաններ և, կարծես չփացած երիտա-

սարդ ու փառասերի մեկը, փոխում գույնզգույն գողտրիկ հանդերձները։ Նա առաջ էր գնում, դեպի կեսարի փառքն ու պատիվը, քանզի Միքայելին պետական գործերն այնքան չէին հուզում, ինչքան թատերական ներկայացումներն ու ձիարշավարանները։ Եվ, որ ամենավատն է. նա չէր բավարարվում սոսկ հանդիսատեսի դերում հանդես գալով։ Դրա վրա այնքան ժամանակ էր ծախսում, այլև ինքն անձամբ, հռոմայեցիների կայսրն էր ձիավարում, գառնում բոլորի ծաղր ու ծանակի առարկան, իսկական կրկես։ Արդ, Վարդասը քեռորդու խնամակալն էր և ամեն ինչ անում էր այդ ստրկամիտին ուղղելու համար։ Բայց ոչնչի չհասնելով, նա առայժմ վարում էր պետական գործերը, ապա մտածում հարմար առիթով թագավորության տիրանալու։ Բայց այդ բոլորը նա ծրագրում էր կատարել հետագայում, իսկ այն ժամանակ նա աշխարհիկ գիտության մասին հոգալով (երկար տարիներ, տիրողների տգիտության ու անգրագիտության պատճառով, այն անկում էր ապրում ու չքանալու վրա էր)։ Մագնավրայում[82] մաթեմատիկոսների դասախոսություններ կազմակերպեց, ձգտելով ու ջանալով այդ գիտությունը վերստին ծաղկեցնել ու զարգացնել։ Սակայն այդ, իր գործերի մեջ լավագույնն ու հռչակավորը ի վիճակի չէր սրբելու իր մեջ առկա ախտերը։ Այդ դպրոցում փիլիսոփայության առարկան վարում էր այն մեծ փիլիսոփա Լևոնը[83], որ պատրիարք Իոաննեսին ազգական էր գալիս, նա նրա հորեղբորորդին էր։ Նա Թեսաղոնիկեի եպիսկոպոսն էր. բայց տվյալ պահին՝ կարգալույծ և, զբաղմունք չունենալով, այս դպրոցում պաշտոն ստացավ՝ անգրագիտությունը քշելու, հեռու մղելու։

27. Արժե հիշատակել և այն մասին, թե ինչպես այսպիսի այրին ծանոթացավ այն ժամանակվա տիրակալը։ Խոսքը Թեոփիլոսի մասին է, Միքայելի հարազատ հոր։ [Լևոնը] թեպետև այդքան խորն էր ուսումնասիրել մաթեմատիկա գիտությունը, այնքան հմտացել բոլոր գիտություններին, այն է փիլիսոփայության և նրա եղբայրներ թվաբանության, երկրաչափության և աստղաբաշխության, ապա և բազմահռչակ երաժշտության, մեծ ջանասիրությամբ բնածին խելքով ու անվրդով կենցաղավարությամբ բոլորից շատ խորացել նրանց մեջ, անշուք մի կացարանում էր մնում, որտեղ և ուսուցանում էր իր աշակերտներին, նրանց հասու դարձնում ինչ գիտության, որ ցանկանում էին։ Ժամանակի ընթացքում նրա բազում աշակերտներ ուսման մեջ հաջողությունների հասան։ Նրա աշակերտներից մի երիտասարդ, որ կատարելապես խորամուխ էր եղել երկրաչափության գիտության և

դարձել մի զորավարի քարտուղար, ցանկանալով առաջ գնալ, սիրով մասնակից դարձավ նրա արշավանքներին։ Պատերազմի ժամանակ նա ուղեկցել էր զորավարին և, չգիտեմ ինչպես, հագարացիների ձեռքը գերի ընկել։ Լինելով երիտասարդ, նա տրվեց ներսեի մի [արաբի] ծառայելու։ Այն ժամանակ իսմայելացիների ամերմումնին Մամուն անունով մեկն էր[61], որ հունական գիտություններով էր պարապում, հատկապես երկրաչափությամբ։ Մի առիթով երիտասարդի տերը խոսք բացեց ամերմումնիի՝ մաթեմատիկայի նկատմամբ ցուցաբերած հոժարության ու հոգատարության մասին և, երբ անցավ երկրաչափության, երիտասարդն ասաց, թե ցանկանում է լսել նրան և նրա ուսուցիչներին, քանզի ինքն էլ մի քիչ գիտակ է երկրաչափության արվեստին։ Երբ ամերմումնին իմացավ ռազմագերու մասին, մեծ ուրախությամբ նրան հրավիրեց և հարցուփորձ արեց՝ հասո՞ւ է արդյոք այդ արվեստին։ Երիտասարդը դրական պատասխան տվեց, բայց բարբարոսի դեռևս տարակուսելով նրա խոսքերին, ասաց, թե երկնքի տակ իր ուսուցիչներից [լավը] գոյություն չունի։ Երիտասարդը ցանկություն հայտնեց ծանոթանալու նրանց, լսել նրանց դասախոսությունները։ Նրանք իսկույն ներկայացան և սկսեցին ուսուցանել՝ եռանկյունիներ, քառակուսիներ գծելով, ապա ներկայացրին Էվկլիդեսի կանոնները։ Նրանք ինչ որ դասավանդում էին, այդ անում էին խիզախորեն ու դիտականորեն, ասելով, թե սա այսպես է կոչվում, դա՝ այդպես, բայց ամենևին չէին պատճառաբանում, թե ինչո՞ւ է դա այդպես և այդպես կոչվում։ Այդ մասին նրանք ոչ մի խելքը գլխին բացատրություն չտվեցին, ոչ թե որովհետև լեզվից էին խեղճ, այլ այն պատճառով, որ անուսում էին ու անտեղյակ։ Երիտասարդը տեսնելով, թե ինչպես են նրանք փքվել ու ամբարտավանացել [իրենց] գծած սխեմաներով, ասաց. «Ո՛վ դուք, յուրաքանչյուր տեսականի և գործնականի հարցում կարևորը պատճառն է և ինչուն, իսկ դուք կանգ եք առնում սոսկ գույի վրա, համարելով ոչ կարևոր՝ անտեսում եք դրանց պատճառները։ Դուք նույն բաներն եք ասում և՛ սովորողին, և՛ հարցի մասին ոչ մի գաղափար չունեցող անուսումին»։ Նրանք զարմացած խնդրեցին նրան պարզաբանի և ուսուցանի դրանց պատճառները և երբ տեսան, որ նա դրանց պատճառների վերաբերյալ հստակ բացատրություն է տալիս, ասում, թե սա այդպես է կոչվում ու գրվում այս պատճառով, իսկ դա՝ այն, երբ նրանց միտքը լուսավորվեց և ասվածներին հասու եղան, սկսեցին ապշահար հարցնել՝ Բյուզանդիոնում քանի՞ այդպիսի գիտնական այր կա։ Երբ նա ասաց, թե շատ, իրեն էլ դասեց ոչ թե ուսուցիչ-

ների, այլ աշակերտների թվին, նրանք պարծյալ դիմեցին հարցով, այս անգամ ուսուցչի մասին. կենդանի՞ է նա արդյոք, կա՞։ Նա պատասխանեց. «Այո՛, կա», և դրվատեց նրա առաքինությունները, ասելով, թե չքավոր կյանք է վարում, որ շատերն անտեղյակ են իմաստությամբ փայլատակող այդ մարդու գոյությանը[85]։ Մամունն իսկույն նրան այսպիսի բովանդակությամբ նամակ է գրում. «Ինչպես պտղից ենք ծառի մասին գաղափար կազմում, մենք աշակերտից ճանաչեցինք ուսուցչին։ Արդ, դու քո գիտելիքներով, մտքի խորաթափանցությամբ, գոյերի գիտության այդքան հմուտ, որ անծանոթ ես մնացել քո համաքաղաքացիներին, չես ճաշակել քո իմաստության ու գիտելիքների պտուղները, նրանց կողմից ոչ մի պատվի չես արժանացել, մի մերժիր գալ մեզ մոտ և մեզ փոխանցել քո գիտելիքները։ Եթե այդ կատարվի, ապա սարակինոսների համայն ժողովուրդը կխոնարհի իր գլուխը քո առջև, դու կարժանանաս հարստության ու նվերների, այնքան շատ, ինչքան ոչ ոք»։ Երիտասարդին նա նվերներ տվեց, այդ նամակը նրան ընծեռեց և հրամայեց գտնել ուսուցչին։ Նա երիտասարդին խոստացավ պատիվներ, ընծաներ և, եթե ցանկանա տուն վերադառնալ, ապա դրա վերաբերյալ թույլտվություն, միայն թե [ուսուցչին] համոզի թողնել հռոմայեցիների երկիրը։ Երիտասարդը ժամանելով մայրաքաղաք, անձամբ ներկայացավ ուսուցչին։ Նրա կերպարը իրեն բոցավառեց, ջերմությամբ լցրեց, և նա չկարողացավ իր արցունքները զսպել։ Արտասուքները ոչ միայն այտերն էին ողողում, այլև պարանոցն ու կուրծքը։ Սկզբում ուսուցիչը քար կտրեց, նա չիմացավ երիտասարդի ով լինելը, տեղի ունեցածի պատճառները, քանզի երիտասարդի դեմքը ժամանակից ու գերության տառապանքներից այլափոխվել էր, նա նման չէր իր իմացածին։ Երբ նա աստիճանաբար սկսեց ծանոթացնել իրեն, հայտնեց իր անունն ու ստացած դասերը, ապա սկսեց պատմել գերության մասին, իր փրկության, այստեղ ժամանելու պատճառի մասին և հանձնեց նամակը, ապա այն ժամանակ նրանք սկսեցին միասին ողբալ ու կոծել։ Ուսուցիչը սակայն, խորհելով, որ թշնամիներից ստացած նամակը, եթե դա բացահայտվի, կարող է իր գլխին փորձանք բերել, դիմում է լոգոթետին (նա Թեոկտիստոսն էր, որ Վարդասի զոհը դարձավ), գերի ընկած իր աշակերտի մասին պատմում ամեն ինչ և հանձնում ամիրմումնիի նամակը։ Ահա սա է այդ այրի՝ կայսեր ծանոթ ու մտերիմ դառնալու պատճառը։ Այդ աշակերտն ահա և այդ նամակը Լևոնի՝ մինչ այդ ստվերի մեջ գտնվող իմաստությունը լույս աշխարհ հանեցին, դուրս բերեցին նրան այդ թշվառությունից ու աղ-

քատութիւնից։ Լոգոթետը նամակը ցույց տվեց Թեոփիլոսին, վերջինս հրավիրեց Լևոնին, առատ դրամ տվեց և կարգադրեց պետության հաշվին դասավանդել Քառասուն սրբոց տաճարում։ Փոքր անց Մամունը համոզվելով, որ փիլիսոփան մտադիր չէ հայրենիքը օտարության հետ փոխել, գրավոր նրան ներկայացնում է երկրաչափական ու աստղաբաշխական խնդիրներ և մի քանի այլ դժվարհասկանալի հարցեր, խնդրելով ստանալ նրանց լուծումը։ Լևոնը հանգամանորեն տվեց յուրաքանչյուրի բացատրությունը, շարադրեց նրանց լուծումը և, ընթերցողի զարմանքն առաջացնելու համար, դրանց վրա ավելացրեց և մի քանի կանխատեսություններ։ Ամերմումնին ստանալով դրանք, նրա հանդեպ լցվեց այնքան մեծ սիրով, այնքան հիացավ փիլիսոփայության և մաթեմատիկայի նրա իմացությամբ, որ բարձրագոչ աղաղակեց։ Սրով նա իսկույն այս անգամ ոչ թե նրան, այլ Թեոփիլոսին նամակ գրեց՝ հետևյալ բովանդակությամբ, թե «Ուզում էի անձամբ քո մոտ գալ, բարեկամի և աշակերտի պարտականությունը կատարելու, բայց քանի որ իմ իշխանությունն ի վերուստ է, իսկ ինձ հպատակ ու ենթակա բազում ժողովուրդը թույլ չի տալիս այդ բանն անելու, խնդրում եմ փիլիսոփայության և մյուս գիտությունների մեջ քաջահամբավ քո այդ այրին կարճ ժամանակով իմ մոտ ուղարկես, ջանաս նրան համոզել դասավանդի ինձ իր գիտությունը և մասնակից դարձնի իր գիտելիքներին, քանզի ես դրանց հանդեպ մեծ սեր եմ տածում։ Իմ այլալեզու և այլակրոն լինելու հանգամանքը ամենևին չի ազդի նրա՝ ժամանակին վերադառնալու հարցում։ Նկատի առնելով հայցողի այդպիսին լինելու հանգամանքը, կարծում եմ, որ խնդրանքս բարեկամ ու պիտանի մարդկանց կողմից դրական կլուծվի։ Այդ առթիվ որպես շնորհակալություն քեզ է տրվելու քսան կենտինար [ոսկի], իսկ խաղաղությունն ու հաշտության պայմանագրերը կպահպանվեն հավիտյանս ու մշտապես»։ Ահա այդքան էր նա գնահատում Լևոնի՝ նրա մոտ գնալն ու ներկայանալը։ Թեոփիլոսը սեփական զարդը՝ գոյի իմացությունը, որի համար բոլորը հիանում են հռոմայեցիների վրա և նրանց նկատմամբ լցվում ակնածանքով, ուրիշին տալը, հեթանոսին ընձեռելը անխոհեմ քայլ համարելով, ընդառաջ չգնաց, Լևոնին վերաբերվեց ավելի մեծ հարգանքով։ Նա հրամայեց պատրիարքական աթոռին տիրող Հովհաննեսին, որ նա իմաստությամբ լի այդ մարդուն, որ և իր՝ Հովհաննեսի ազգական էր գալիս, ձեռնադրի Թեսաղոնիկեի սպիսկոպոս։ /28/ Երբ նա իր ձեռնադրությունից հետո եկավ Թեսաղոնիկե, թեև իր առաքինության համար արժանացավ բոլորի հարգանքին ու պատվին, բայց

Նրան առավել ևս մեծարեցին հետևյալ պատճառով։ Այն միջոցին, հացահատիկի ծլման ժամանակ, հողը ստերջ էր, անբերրի, և սովամահության սպառնալիք ստեղծվեց։ Լևոնը, տեսնելով դա, գթաց մարդկանց, հորդորեց չընկճվել, ասաց, որ նրանք աղետի զոհ չեն դառնա, եթե ապավինեն աստծուն և իր օգնությանը։ Նա աստղաբաշխությունից գիտեր, որ որոշակի ժամանակ, առանձին աստղերի ծագման և փուլերի միջոցին, գետնի վրա տեղի է ունենում ջրի ինչ-որ հոսք, երկնային մարմինների փոխադարձ հարմոնիա։ Հենց այդ ժամանակ էլ նա սերմերը ցանեց, և գարնան վերջին ու ամռան սկզբին այնպիսի մեծ բերք ստացվեց, որ իրենց բավական էր բազում տարիների համար։ Բոլոր դեպքերում այդ հսկայական բերքն աստված պարգևեց, ընդառաջ գնալով դժվար վիճակում գտնվողների աղաչանքներին ու պաղատանքներին և ոչ [Լևոնի] այդ գործում ցուցաբերած նանիր ջանքերին։ Եղածը, բնական է, է՛լ ավելի բորբոքեց Թեսաղոնիկեցիների սերն ու գուրգուրանքը այդ մարդու նկատմամբ։ /29/ Բազում մարդիկ հիանում էին նրա իմաստության վրա, այն բանի, թե ինչպես է նա հասել բոլոր գիտությունների գագաթը։ Պատմում են, թե ինքն այդ առնչությամբ իր մտերիմներից մեկին ասել է, թե քերականության ու քերթողության [արվեստը] նա սովորել է, երբ ապրում էր Կոստանդնուպոլսում, իսկ ճարտասանություն, փիլիսոփայություն և թվաբանություն՝ երբ բնակվում էր Անդրոս կղզում։ Այնտեղ նա հանդիպել էր մի իմաստուն մարդու, որից սովորեց միայն սկզբունքներն ու մի քանի դրույթներ, և քանի որ գիտության ծարավը չէր կարողանում հագեցնել, նա շրջում էր կղզու խորքերը, լինում վանքերում, որոնում ու գտնում էր այնտեղ պահվող գրքերը, որոնք առնելով գնում էր լեռնագագաթները և ավելի խորությամբ ուսումնասիրելով, հասնում գիտության կատարը։ Սովորելուց հագեցած, նա վերադառնում է մայրաքաղաք՝ ցանկացողների ուղեղում ցանելու գիտությունների սերմերը։ Բայց այդ բոլորը անցյալում տեղի ունեցան։ Իսկ այժմ, երեք տարի անց (այդքան ժամանակ էր նա վարել պաշտոնը), կարգալույծ եղած, նա դարձյալ անցավ ուսուցչական աշխատանքի, նա գլխավորեց Մագնավրայի փիլիսոփայության դպրոցը, իսկ նրա աշակերտ Թեոդորոսը վարում էր երկրաչափության վարժարանը, Թեոդեգիոսը՝ աստղաբաշխության, Կոմիտասը՝ հունարեն լեզվի քերականության։ Վարդասը սրանց առատ վարձատրում էր, լինելով ուսումնասեր, հաճախ այցելում ու բարձրացնում սովորողների ոգին, և որոշված ժամանակվա ընթացքում գիտե-

լիքներին նա կարծես թևեր տվեց, թևավորեց, նպաստեց առաջընթացին։

30. Բացի վերոհիշյալից, Վարդասը մշտապես զբաղվում էր և ձիարշավարանի մրցավարությամբ[86], իր համար պատվի հարց էր համարում դրա սիրահարի համբավին արժանանալը։ Այդ համբավը լայնորեն կտարածվեր, եթե տեղի ունեցած դեպքերը դրան չխանգարեին։ Նա դարձյալ տակնուվրա արեց, իրար խառնեց եկեղեցու գործերը, փոխանակ խաղաղեցնելու այն, պատճառ դարձավ նրանում կագ ու կռիվ, փորձություն ու ավեր տարածվելուն, և, բնական է, ոչ թե բարի անուն վաստակեց, այլ վատ։ Արդ, Կոստանդնուպոլսի պատրիարքական աթոռին ընդամենը չորս տարի նստած Մեթոդիոսի վախճանվելու առթիվ պատրիարքական աթոռին են նստեցնում և տիեզերական [եկեղեցու] սանձերը վստահում ամեն բարեպաշտությամբ ու առաքինությամբ օժտված վանական Իգնատիոսին[87], Սատյուրոսի վանքի վանահոր, որ Նիկեփոր կայսեր թոռն էր և Միքայելի որդին։ Մի քանի տարի անց Իգնատիոսը, սուրբ կանոնների հիման վրա, Վարդասին արգելեց եկեղեցի մտնել առանց որևէ պատճառի և հիմքի իր սեփական կնոջ վռնդելու և իր հարսի հետ կապվելու համար։ Սակայն Վարդասին եկեղեցուց վտարելու մասին Իգնատիոսի սահմանած տույժը Վարդասը շուռ տվեց Իգնատիոսի վրա։ Մի կողմ թողած այդ այրին սովով ու ծարավով չարչարելը, նրան դետին տապալելն ու գանակոծ անելը, մարմնական սաստկագույն վնասվածքներ հասցնելը, ես կանգ կառնեմ միայն մի բանի վրա և ապա կշարունակեմ պատմությունը։ /31/ Վարդասը Իգնատիոսին արգելարան նետեց, դաժան ու ժանտ արգելարան։ Այն Սուրբ Առաքելոց տաճարում էր, բայց ոչ այդ մեծ ու սրբազան տաճարի ներսում, այլ գերեզմանոցում, որ կոչվում է [Սուրբ Առաքելոց] գերեզմանոց[88]։ Նրան ահա այնտեղ, Կոպրոնիմոսի ինչ-որ շիրիմում արգելափակեցին՝ սառր և ցուրտ, առածի լեզվով ասած՝ սանդաթակից ավելի մերկ վիճակում, իսկ իրենք բարձրից ջանում էին, որ նա հիվանդանա ցրտից ու սառնամանիքից առաջացող ախտով, այն է՝ թանչով ու ներքին կարևոր օրգանների, անչափ ցրտահարությունից առաջացած փորհարությամբ, և հասցնեն դառը մահվան։ Եվ նա արդարև հոգին կավանդեր իրեն հսկողների դաժանությունից ու բրտությունից (նրանք էին՝ Հովհաննես Գորգոնիտեսը, Նիկողայոս Սկուտելոպտեսը և Թեոդորոս Մորոսը), եթե գթացող մեկը (նա Կոստանդին Արմենիակոսն էր)[89] նրանց բացակայությանը, իր ճաշելու ժամանակ, այդ մարդուն այնտեղից չհաներ և մի քիչ գինի ու հաց չտար, չնչին հոգատարու-

*թյամբ մի փոքր չամոքեր նրա տառապանքները։ Երբ [Վարդասը] գտավ, որ [Իգնատիոսը] բավարար չափով կրել է իր պատիժը, այդ այրին աքսորեց Միտիլենե կղզին։ Այն պատճառով, որ եպիսկոպոսներից ոմանք ընդդիմացան, կատարված մեծ անիրավության դեմ բողոքեցին և սպառնացին չճանաչել որևէ ուրիշին [պատրիարք] և հրաժարական տալ, Վարդասը դրանից ծագելիք տակնուվրայությունից վախեցած, վճռեց սրանց էլ խաբեությամբ ու խորամանկությամբ հաղթահարել։ Նրանցից յուրաքանչյուրին նա առանձին-առանձին և ծածուկ իր մոտ էր հրավիրում և խոստանում տալ ոչ փոքր ու սովորական մի բան, այլ հենց Կոստանդնուպոլսի [պատրիարքական] աթոռը, միայն թե լքեն Իգնատիոսին։ Երբ բոլորը փառասիրության առաջ տեղի տվեցին, իսկական ու օրինավոր [պատրիարքի] վերաբերյալ այլևս ոչ ոք չէր հակաճառում, ահա այն ժամանակ ասաց, թե իր խոստացածը կայսրն է կատարելու, որ իրենք իրենց պարկեշտ ու համեստ պահեն, երբ [կայսեր] մոտ հրավիրվեն, ամենևին իրենց խոստացվածի մասին չակնարկեն, որպեսզի նա էլ, ասաց, հիացած մնա ձեր առաքինության վրա։ Այսպիսով, Վարդասը յուրաքանչյուրին առանձին-առանձին Միքայելի մոտ հրավիրելով, համոզում էր մեկից չնետվել [պատրիարքի] պատվին արժանանալու։ Ահա սրանք միայն ողջույնի արժանանալով և [համեստորեն] հրաժարվելով [առաջարկված պատվից], լռելյայն խայտառակ եղան. փառասիրությունից մղված նրանք առաքինություն ցուցաբերեցին, իսկ իրենց փառասիրությունն էլ հագուրդ չստացավ, քանի որ Իգնատիոսին վատաբար ու չարանենգորեն մատնեցին։ /32 Երբ նրանք մարդ-արարած լինելով այդպես խաբվեցին, [Վարդասը] Կոստանդնուպոլսի [պատրիարքական] աթոռը տվեց Փոտին, իր իմաստությամբ հայտնի մի աշխարհականի, որ պրոտասեկրետի պատիվն ուներ։ Իրենց որոշումը հաստատուն հիմքերի վրա դրած լինելու մտահոգությամբ, Նրանք[90] Հռոմից այլ նպատակով [պատկերամարտների դեմ] առաքված նվիրակներին հետ կանչեցին և Իգնատիոսի դեմ հետագայում տեղի ունենալիք ժողովը նախապատրաստեցին։ Նրանք Սուրբ Առաքելոց տաճարում Նրան հրապարակայնորեն կարգալույծ հայտարարեցին[91] և, երբ աքսորից նրան հետ կանչեցին, որոնցքի հարվածով ջարդեցին երեսն ու ատամները, բոլոր հոգևորականների սեր տվեցին այնպես, ինչպես երկրի վրա նմանը չէր եղել։ Բազում գրքեր են պետք գրի առնելու, իսկ համայն ժամանակը չի բավարարի պատմելու համար [Վարդասի] բոլոր հոգևորականների գլխին բերած փորձանքների մասին, նա ամեն օր բանտ էր նետում ու*

աքսոր ուղարկում, դաժան խոշտանգումների ենթարկում՝ ստիպելու համար նրանց համագործակցել Փոտին։

33. Հենց դա էր պատճառը, որ այն ժամանակ, երբ Միքայելը խմայելացիների դեմ արշավանքի էր գնացել, ռոսները[92], հարձակվելով, ավերում էին հռոմայեցիների երկիրը (ռոսները սկյութական վայրենի, կոշտ ու կոպիտ ցեղ են)։ Նրանք [ասպատակում էին] հենց Պոնտոսը, նաև Եվքսինյանը[93], կրակ գցեցին ու պաշարեցին անգամ քաղաքը։ Սակայն նրանց վրա թափվեց աստծո բարկությունը, և նրանք տունդարձի ճանապարհը բռնեցին։ Աստծո ողորմածությունն էր շարժել եկեղեցու ղեկակալ Փոտր[94]։ Շատ չանցած մայրաքաղաք ժամանեցին նրանց բանագնացները, պաղատելով իրենց [ժողովրդին] արժանացնել սուրբ մկրտության, ինչ որ եղավ։

34. Ահա մեկ կողմից [երկիրը] սրանք էին տակնուվրա անում, իսկ մյուս կողմից ծով դուրս եկած Կրետեի նավատորմիղը[95]՝ շուրջ քսան կումբարիա, յոթը գալեա և մի քանի սատուրա[96]։ Այն թալանում ու գերեվարում էր՝ մեկ Կյուկլադյան կղզիները շրջելով, մեկ համայն ծովափը, ընդհուպ մինչև Պրիկոննեսոս։ Մնացածը ոչնչացնում, քարուքանդ էին անում անվերջ երկրաշարժերը։ Մեր Տիրոջ և Փրկչի Համբարձման տոնին երկրաշարժը գետին տապալեց Հեքսակիոնիոնի հարավային՝ երրորդ մասը, գեղեցիկ տաճարներ, փառավոր տներ, ինչպես և սյուներ՝ քաղաքի Ոսկե դռների մոտ գտնվող Նիկեի արձանով սյունը։ Երկրաշարժը սասանեց ու տապալեց և Դևտերոնում[97]. սուրբ Աննայի մոտ ամուր կանգնած սյուները։ Լևոն Մաթեմատիկոսը, տեսնելով Դևտերոնի փուլ եկած սյունը, գուշակեց, թե դա բացահայտ, կայսեր անկման մասին է վկայում։ Շատ ժամանակ է պետք պատմելու համար նաև Իսավրիայում և յուրաքանչյուր նահանգում [երկրաշարժի հետևանքով] գետերի և աղբյուրների ցամաքելու մասին։

Կայսրը այդ բոլորը բանի տեղ չդնելով, իրեն ամբողջությամբ տվեց ձիարշավական մրցումներին, որոնք տեղի էին ունենում Եվքսինոսում կառուցված սուրբ Մամասի տաճարի մոտ գտնվող [ձիարշավարանում]։ /35/ Մի անգամ, բայց թող նախապես պատմեմ մի միջոցի մասին, ջահի, որով մի ակնթարթում կայսեր տեղեկացնում էր. իրազեկ դարձնում սարակինոսների՝ մեր երկիրն արշավելու մասին։ Կիլիկիայի Տարսոն [քաղաքի] մոտ կա Լուլոն[98] անունով մի ամրություն ու բերդ։ Նրա պահպանության համար կոչված [զինվորները] սարակինոսների հարձակումը նկատելուն պես, ջահերի միջոցով այդ մասին իրազեկ են դարձնում Արգեոս[99] լեռան պահապաններին, նրանք

*իրենց հերթին՝ Իսամոսի, վերջինները՝ Էգիլոսի, իսկ սրանք էլ՝ Մամասի լեռան պահապաններին։ Հաջորդում էր Կյուրիզոսը[100]; ապա Մոկիլոսը[101], որտեղից էլ սուրբ Ավքսենտիոսի լեռան[102] պահապանները կարճ ժամանակում տեղյակ էին պահում Փարոսի հելիակոնում՝ այդ բանի համար նշանակված հսկիչներին։ Երբ մի անգամ Միքայելը վկա Մամասի հիշյալ տաճարի մոտ գտնվող [ձիարշավարանում] պետք է ձի նստեր և տվել էր մրցումներն սկսելու ազդանշանը, Փարոսի ջահի սպասարկողները պապիասի միջոցով նրան տեղեկացրին այլազգիների արշավանքի մասին։ Կայսրն այն աստիճան սոսկաց ու սարսափեց այն բանի համար, որ հանդիսատեսները նման լուրի առթիվ չեն գա տեսնելու իր ձիավարությունը, ինչքան մահու և կենաց կռիվ մղող մեկը, և կամ նա, ով ջանում է հեռու մնալ արշավող թշնամիներից։ Ահա այդպես էր առանց ամաչելու մասնակցում ներկայացումներին։ Եվ որպեսզի ոչ ոք պակաս չմնա իր մրցումներից, հանդիսատեսների եռանդը այդ ջահերից հաղորդվող դժնդակ լուրերից չսառչի, նա հրամայեց մերձակա ջահերն այլևս չգործեն, [թշնամու արշավանքների մասին] լուրերը խոր լռության մատնեն և երկարատև մոռացության[103]։*

36. *Որպեսզի ավելի պարզ դառնա այդ մարդու ընկածությունն ու հիմարությունը, պատմեմ մի այլ դեպքի մասին։ Նա կանգնած էր կառքի վրա և պետք է կտրեր մեկնագիծը (նա հանդես էր գալիս որպես վենետ, պրասինոս էր լոգոթետ Կոստանդինը, հայրը պատրիկ Թովմայի, որ դրոմոսի լոգոթետ դարձավ, սպիտակ՝ Քիլասը, իսկ ռուսիոս՝ Կրասասը[104]։ Անգործ չէր մնացել անգամ պրոտասեկրետը[105], ինչպես և դրոմոսի պրոտոնոտարը[106], որոնցից առաջինը հանդես էր գալիս որպես վենետների կոմբինոգրաֆոս[107], իսկ մյուսը՝ պրասինոսների)։ Ահա սրանք ձիավարի համազգեստները հագած, կանգնած էին կառքի վրա, երբ վրա հասավ բոթն այն մասին, թե Ամերը ասպատակում ու տակնուվրա է անում Թրակեսիոն բանակաթեմը, որ նա մոտենում է Մալագինային, և սպասվում են աննախադեպ փորձություններ։ Այդ լուրից պրոտոնոտարը վատ եղավ, նա վհատված Միքայելին հայտնեց սխոլերի դոմեստիկոսից ստացած զեկույցի մասին, բերեց և ցույց տվեց նրա նամակը։ Իսկ Միքայելը։ Նա ասաց. «Ո՛վ դու, ինչպե՞ս ես հանդգնում ինձ համար այնքան կարևոր այս մրցման ժամանակ բան խոսել, երբ իմ միակ մտահոգությունը միջին ձախ (կառավարին)[108] ուղղույ դուրս հանելն է։ Այս ամբողջ մրցման իմաստն էլ ի՞նչն է»։*

37. *Նա ոչ միայն հափշտակված էր. ես կասեի՝ տառապում էր*

[ձիարշավների] կրքով, նա ավելի մեծ խայտառակություններ էր թույլ տալիս, չափի զգացումը բացարձակապես կորցնելով, անհարմար արարքներ կատարում, անչափ ոտնահարում իր կայսերական արժանապատվությունը։ Նա մի անգամ փողոցում հանդիպելով բաղնիքից վերադարձող, ամանը ձեռքին մի կնոջ, որի որդուն էր որդեգրել, ձիուց ցած թռավ, իրեն ուղեկցող սենատորներին մոտակայքում գտնվող պալատն ուղարկեց, իսկ ինքը, ընկերանալով խայտառակ ու մթին ինչ-որ մարդուկների, կնոջ հետ գնաց, նրա ձեռքից վերցնելով ամանը և ասելով. «Եկ, մի քաշվիր, ո՛վ կին, ինձ ընդունիր քո տանը, որտեղ կա սև հաց և սպիտակ պանիր»։ Ես անհրաժեշտ եմ գտնում այստեղ կրկնել նրա օգտագործած բառերը[109]։ Երբ կինը, այդ արտառոց երևույթից ապապանձված ու ապշած, ո՛չ սեղանին սփռոց գցեց, ո՛չ էլ դրա վրա բան դրեց, Միքայելն իսկույն կնոջ ձեռքից վերցնելով բաղնիքից բերած դեռ թաց սավանը, բարակ լաթի տեղ, որով ծածկում են սեղանը, փռեց սեղանին, ապա կնոջից առնելով բանալին, ամեն ինչ դարձավ՝ կայսր, սեղան գցող, խոհարար, մատուցող։ Այդ կնոջ աղքատիկ արկղում ինչ որ կար չկար հանելով, նա նրա հետ ճաշեց ու ընթրեց, ասելով, թե նմանվում եմ իմ Քրիստոս-աստծուն[110]։ Այնտեղից նա ոտքով շարժվեց դեպի պալատ, նախկին կայսրերին դատապարտելով որպես հիմար, գոռոզ ու փքված, կայսրեր, որոնք, եթե ի վիճակի լինեին լսել նրա հիմարությունները, կասեին. «Քեզ պետք էր ոչ թե այդպես ցոփ կյանք վարեիր ու խաղերով տարվեիր և մեր գոռոզությունը կշտամբեիր, այլ պատերազմում առաջամարտիկ լինեիր, քշով բավարարվեիր, զինվորներին սիրեիր և նրանց հետ ճաշի նստեիր և ոչ թե շուկայի փչացած կանանց հետ»։ Այդ բոլորը Միքայելին ատելի էին դարձնում, նրա դեմ շարժում աստծո արդար զայրույթը։

38. Բայց որ ամենավատն էր, իր խումբը բաղկացած էր ամեն մի սրիկայության ընդունակ սատյուրոսներից[111]։ Ճիշտը կլիներ նրանց համարել Դիոնիսոսի հետևորդներ։ Միքայելը սրանց նկատմամբ հարգանք ու պատիվ էր տածում, սրբությունների անգոսնելով, նրանց քահանայական ոսկեթել զգեստներ, եմիփորոններ էր հագցնում և ստիպում խայտառակ ու պիղծ ձևով կատարել սուրբ [պատարագը]։ Այդ [սրիկաների] գլխավորին, Գրյուլոս կոչվածին, նա պատրիարք էր անվանում, մնացած տասնմեկին՝ նշանավոր ու փառավորյալ աթոռների մետրոպոլիտներ։ Ահա Միքայելը նրանց հետ էր հաղորդվում և թագավորելու պահանջ չէր զգում։ Որովհետև նրան համարում էին և հորջորջում Կոլոնիայի մետրոպոլիտ։ Քանի որ պետք է և՛ երգեին, և՛ [սուրբ]

*խորհուրդները կատարեին, երգերը կատարում էին կիթառով, մեկ՝ մեղմ ու լալագին, խորհուրդների նմանողությամբ, մեկ՝ անզուսպ թափով և ուժգին, իբրև թե որպես քահանա քարոզ էին կարդում։ Նրանք ոսկե, մարգարիտներով ագուցված սպասների մեջ քացախ և մանանեխ էին լցնում և նրանցով հաղորդություն տալիս ցանկացողներին և այդ ձևով ծաղրուծանակի ենթարկում [հաղորդության սուրբ] խորհուրդը։ Այդ Գրյուլոսը հանրային շքերթների ժամանակ ավանակ էր նստում և իրեն ուղեկցող ունենալով նման աղմկարար խումբը, երանության մեջ էր։ Մի անգամ, եկեղեցական թափորի ժամանակ նա հանդիպեց հոգևորականների ուղեկցությամբ գնացող երանելի Իգնատիոս պատրիարքին։ Գրյուլոսը, տեսնելով նրան, ուրախությամբ գործի լծվեց, սկսեց [կիթառ] նվագել։ Բարձրացնելով փիլոնը, իր համախոհներով սկսեց ավելի ուժգին հնչեցնել կիթառները և այդ սրբազան մարդկանց գլխին ամենախայտառակ հայհոյանքները թափեց։ /39/ Դեռևս մոր՝ Թեոդորայի կենդանության, երբ նա, Թեոդորան, պալատում էր մնում, Միքայելը հրավիրեց նրան, որպես երանելի Իգնատիոս ծպտված [Գրյուլոսից] օրհնություն ստանալու։ Այդ ամենասուրբ կինը, երբ ակնածանքով ու հարգանքով եկավ դեպի նա, երկրպագեց ու օրհնություն աղերսեց (Գրյուլոսը դյուրությամբ թաքցրել էր մորուքը, և Թեոդորան միաժամանակ չճանաչեց նրան), նա իսկույն գարշահոտությամբ լի փուք հանեց ու անվայել խոսքեր ասաց, որի վրա Թեոդորան և բարեպաշտ մարդիկ նրա գլխին անեծքներ թափեցին։ Թեոդորան կանխագուշակեց էլ, Միքայելին ասաց, թե նա չի արժանանա աստծո նախախնամության ու հովանավորության։*

*Բայց ուղիղ ճանապարհից խոտորված և առաքինությունից հրաժարած մարդուն անկարելի է վերադառնալ և ընթանալ երանելի ճանապարհով։ Նրանք ոչ միայն փորձանքը հեռու չվանեցին, այլ հենց իրենց մոտեցրին, նման [խայտառակությունների] այդ կաղմակերպիչներն ու հորինողները։ Ամենից առաջ փորձանքն իր գլխին բերեց Վարդասը, ավելի ճիշտ՝ Վարդասից առաջ Թեոկտիստոսը, կանիկլիոսի պաշտոնը վարողը, կամ այն պատճառով, որ նա ջանում էր ամբողջությամբ հաճոյանալ [Վարդասին], կամ էլ, որովհետև [երկուսն էլ], լինելով խնամակալներ, չփորձեցին փակել նենգ խորհուրդների ճանապարհը։ Գուցե և այն պատճառով, որ նրանցից մեկը ջանում էր չարիքի առաջն առնել, իսկ մյուսը, թեև նրան համամիտ չէր, բայց մեքենայություններով ձևացնում էր, թե ուզում է նույնպես կանխած լինել, բայց իրականում ընթացք էր տալիս։ Մենք մեր ժամանակներում հան-*

դիպել ենք նման մարդկանց։ Բոլոր դեպքերում նրանք իրենք իրենց գլխին փորձանքը բերեցին։ Թեոկտիստոսը, ինչպես ասվեց, սրախողխող արվեց, բացի այդ, նա ինչ գործ էլ նախաձեռնում էր, հաջողության չէր հասնում։ Նա թեպետև բազում անգամներ և բազում բանակների հրամանատար նշանակվեց, բազմաթիվ թշնամիների՚ դեմ արշավեց, ո՛չ ներկայումս, ո՛չ անցյալում և ոչ մի հաղթանակ չտարած, վերադարձավ, հակառակ իր բանակի՝ թշնամու նկատմամբ ունեցած թվական գերակշռության։ Նա պարտություն էր կրում, բնաջնջման ենթարկում զորքերը, չգիտեմ պատճառը, կամ որովհետև զուրկ էր խելամտությունից ու ճարտար լեզվից, անփորձ՝ պատերազմներում սխրանքներ գործելուն, կամ երբևիցե չէր ուսումնասիրել ռազմական գործը, գուցե և ավելի լուրջ, մեզ համար անիմանալի պատճառով, քան են դրանք, որոնք թվարկեցինք։ Մի անգամ, երբ արեգակի երկու խավարում տեղի ունեցավ, նրան զորավար նշանակեցին և աբաղգների դեմ ուղարկեցին[112], սակայն նա չարաչար աստծո պատժին արժանացավ. նրա զինվորների մի մասը նավաբեկության հանդիպելով խորտակվեց, իսկ մյուսը, թեև ցամաքով գնաց, նրանց դժբախտության հաղորդակից դարձավ։ Բանակն ահա այդ ձևով կորստյան մատնվեց։ Շատ չանցած նա ավելի հանդուգն կերպով դիմեց պատերազմի, բայց ավելի քան չորս բյուր զինվոր կորցրեց։ Այնուհետև, արշավելով Կրետեի արաբների դեմ, ցանկանալով գլուխ պրծացնել, փախուստի դիմեց, իր զինվորներից շատերին լքելով տեղում, և դառն ու դատարկ վերադարձավ։ Ահա նրա անցյալի գործունեության մասին։ /40/ Իսկ այժմ մի քանի պերճախոս նշաններ՝ գիսավոր աստղերի երևալը, երազները, կանխագուշակում էին Վարդասի գլխին գալիք փորձանքների մասին, բայց կատարվելիքը ինքն իրեն չէր լինելու, ոչ էլ անբացատրելի բերմամբ, այլ ինչ-որ նախախնամությամբ Նրա, ով չի կամենում մահը մեղավորի, այլ նրա դարձը[113]։ Երազում նա տեսավ, որ ինքը Միքայելի հետ համաժողովրդական տոնախմբության ժամանակ թափորով գնում է դեպի աստվածային տաճարը, որի անունը Սոփիա է։ Երբ հասան և տաճարի մեջտեղում եղան, երևացին հրեշտակի արտաքինով, ինչ-որ երկու՝ սպիտակ զգեստներ հագածներ։ Երբ Միքայելն ու Վարդասը ավելի առաջ գնացին, մի բան միայն տեսան՝ գահի վրա բազմած մի ծերունու (նրանք ենթադրեցին, թե նա գերագույն առաքյալ Պետրոսն է), նրա ոտքերի առաջ թավալ եկած Իգնատիոսին, որը պաղատում էր նրան՝ ականատես լինել իրեն չարչարած մարդկանց պատժի ենթարկվելուն։ [Ծերունին] կարծես [Իգնատիոսին] կարեկ-

ցելով, ասաց, թե շուտով այդ բանը կտեսնի։ Նա պետերից մեկին (Վարդասի աչքին նրանք երկու հոգի երևացին՝ ոսկեթել հանդերձներ հագած) մի փոքր դաշույն տալով, ասաց. «Գնա՛ տաճարի ձախ կողմը և այս դաշույնով կտոր-կտոր արա ատծո ցասումը գրգռողին»։ Նա այդպես բնութագրեց կեսարին, «իսկ մյուսին՝ անառակ որդուն» (Նա այդպես անվանեց կայսեր)՝ «տար աջ կողմը և ասա, թե նա արժանանում է նույն դատաստանին»։ Երազը դրանով վերջացավ։ Բայց դա երազ չէր, այլ իրականություն[114]։ /41/ Առայժմ նա Միքայելի հետ համայն զորքը նախապատրաստեց ընդդեմ Կրետեի [արաբների] և այդ առթիվ ջահերով գնաց մեր ամենասուրբ տիրուհու՝ աստվածածնի Հոդեգոյ կոչվող տաճարը՝ հրաժեշտ տալու։ Երբ նա մոտեցավ սրբություն սրբոցին, հանկարծ իր ուսերի վրայից քղամիդը սահեց, և նա զգաց, որ նորանոր փորձություններ են սպասվում։ Քաղաքից դուրս գալու որոշված ժամանակից մեկ օր առաջ, կամ իր նախաձեռնությամբ, կամ էլ կատարվելիքից մղված, նա հավաքեց իր ընկերներին և, միասին սեղան նստելուց հետո, պարգևեց նաև, հիշել իր տածած բարեկամությունը և, կարծես մահամերձ լիներ, նրանց լեգատներ[115] նվիրեց։ Պետք էր սրանց վերջակետ դրվեր։ Ահա շարժվելով դեպի Կրետե, նրանք ափ ելան Թրակեսիոն բանակաթեմի Կեպոյ կոչվող վայրը, իսկ ծառաները, նրանցից առաջ տեղ հասնելով, ջանասիրությամբ ու փութով վրաններն էին խփում։ Ահա այստեղ, կամ նախախնամությամբ, կամ էլ անգիտությամբ, Միքայելի վրանը խփում են դաշտում, տափարակ վայրում, իսկ կեսարի վրանը՝ բլրի վրա, շրջապատի վրա գերիշխող տեղում։ Միքայելի մարդիկ այդ բանը երկնքից իջած պարգև, անակնկալ բարեդիպություն համարելով, սկսեցին բացեիբաց ամբաստանել կեսարին, դատապարտել արարքը և [կեսարի] դեմ դավեր նյութել։ Բայց նրանց ընկճում էր և ծրագիրը կատարելու գործում իրենց անվճռականությամբ լցնում կեսարի գերակշռող ուժը. սխոլերի դոմեստիկոս Անտիգոնոսը, լինելով նրա որդին, կեսարին էր ենթարկվում ու հետևում և ոչ կայսեր, նմանապես և մյուս զորավարները, դրոմոսի լոգոթետը, անունը Սմբատ[116], որ լինելով [կեսարի] փեսան՝ նրա դստեր ամուսինը, ստիպված էր անվերապահորեն նրան համախոհ լինել։ Սակայն [կեսարի հակառակորդները] այդուհանդերձ կարողացան նրան թաքուն իրենց կողմը քաշել, և աներոջ սպանությունը ավելի շուտ նա գլուխ բերեց։ Երբ վճիռը կայացվեց, որոգայթը լարվեց, գործն ի կատար ածողները պատրաստ էին, ազդանշանը տալու նախապատրաստվեց հենց Սմբատը և ոչ այլ ոք։ Սմբատը, զորաշարքից

դուրս գալով. սկսեց հրամանատարների զեկուցագրերի ընթերցումը և տվեց ազդանշանը։ Դա իր դեմքը խաչակնքելն էր։ Սակայն գործը հապաղում էր, մարդիկ անվճռականություն էին հանդես բերում, քանզի կեսարի հետերիան առկա էր, իրենց դեմառդեմ կանգնած։ Միքայելը վախենալով, թե կբացահայտվի, և դաշույնի հարվածը ինքը կստանա, վստահելի մեկի միջոցով սրտապնդում, գոտեպնդում էր իր մարդկանց՝ խոստումներով ու պատիվներ ուխտելով։ Կեսարը վտանգից զերծ կմնար, կփուսափեր մահից, քանի որ [իր դավադիրները] վախից սառել էին ու վհատվել։ Բայց Միքայելը պրոկրիսիարիոսի[117] միջոցով հայտնեց Վասիլին[118] (սա պարակիմոմենոս էր)[119] դրության ծայրաստիճան վտանգավոր լինելու մասին, իր կյանքին սպառնացող վտանգի մասին և նրան դրդեց կեսարի սպանության գործը գլուխ բերել։ Վասիլը, դրության հասու լինելով, կայսեր կյանքին սպառնացող վտանգից սարսափած, համոզում է [դավադիրներին] արիանալ, դիմելով նրանց «ո՛վ քաջեր ու հոգով խիզախներ» կոչով, նրանց հանկարծակի թևավորեց և առաջ մղեց դեպի պայքար։ Վարդասը. տեսնելով նրանց սրերը մերկացրած, ցնցվեց, իմացավ, որ ուզում են իրեն սպանել։ Նա իրեն կայսեր ոտքերին գցեց։ Բայց վիճակված չէր մահից խուսափել։ Նրան իսկույն քաշում են այնտեղից և սրախողխող անում ինդիկտիոնի տասնչորսերորդ տարվա[120] ապրիլ ամսի քսանմեկին։ Ապա, կտրելով նրա սեռական օրգանները, կախում են նիզակի ծայրից՝ ի ցույց բոլորի և տոնում իրենց հաղթանակը։ Դեպքի առթիվ մեծ աղմուկ բարձրացավ, տակնուվրայություններ եղան[121]։ Տեսնելու էր և Միքայելին, ինչպես նա քիչ էր մնացել զոհ դառնար։ Վիգլայի դրունգարը (նա Կոստանդինն էր)[122] միջամտելով ցրեց ամբոխը, կեռցե գոչեց ի պատիվ [Միքայելի] և օգտագործեց զինված ուժերը ապստամբների դեմ։ Այսպես Վարդասն այդ ձևով մահկանացուն կնքեց, իսկ կայսեր՝ Բյուզանդիոն վերադառնալու պատճառով Կրետեի դեմ պատրաստված բանակը ցրվեց։

42. Վարդասը դեպքից երկու-երեք օր առաջ [իր սպանությունը] կանխագուշակող մի այլ նշանի էլ հասու եղավ։ Թեոդորան, ի վերուստ կամ որևէ մեկից տեղեկանալով կատարվելիքի մասին, նրան, կարծես հանելուկ լիներ, մի շատ գեղեցիկ, ոսկե կաքավներով զարդարված հանդերձ ուղարկեց, որը սակայն Վարդասի վրա շատ կարճ եկավ։ Այն, որ նրա վրա կաքավներ էին գործված և ոչ այլ թռչուններ, ապա և նրա կարճությունը գուշակում էին, որ [Վարդասը] շատ շուտով դավադրության զոհ է դառնալու։

43. Ինչևիցե։ Կայսրն ահա վերադարձավ, և քանի որ ինքը զավակ չուներ, Վասիլին որդեգրեց և նրան շնորհեց մագիստրոսի պատվաստիճանը։ Բայց որովհետև ժամանակը գնում էր, իսկ Միքայելը պետության ղեկը վարելու ընդունակություններ հանդես չէր բերում, հենց ինքը գիտակցում էր իր անկարողությունը, բացի այդ, իր ականջին լուրեր էին հասնում, որ հռոմեական պետությունը իր ապաշնորհ կառավարման պատճառով, սենասը ապստամբություն ու խռովություն է նախապատրաստում, շատ ցանկալի թագը նա դնում է [Վասիլի] գլխին և Հոգեգալստյան օրը՝ ինդիկտիոնի տասնչորսերորդ տարվա մայիս ամսի քսանվեցին աստծո իմաստության անունը կրող մեծ եկեղեցում[123] նրան կայսր է հռչակում ու հայտարարում։ Թե ով էր այս Վասիլը, որտեղից նա եկավ, ինչպես նրա մասին կայսրն իմացավ, կասվի իր՝ Վասիլի պատմության մեջ։ Իսկ այժմ. արժանանալով կայսերական փառքին, նա իր ձեռքն առավ թագավորության սանձերը, բայց հեռու մնաց ամեն օր տեղի ունեցող մրցումներից ու ձիարշավներից, ամենապիղծ սուտ պատրիարք Գրյուլոսի խայտառակություններից, որոնց սակայն անտեղի մասնակից էր դառնում Միքայելը։ /44/ Բոլորն ասում են, թե լավից էլ, վատից էլ հագենալ կա, փորձը դրա ճշմարիտ վկան է։ Իսկ այն ժամանակվա տիրակալ Միքայելը, ինչպես պատմում են, ո՛չ ձիարշավներից, ո՛չ հարբեցողությունից և մյուս խայտառակություններից հագենալ չուներ։ Վասիլը փորձում էր արգելել, Միքայելին դրանցից հեռու պահել՝ մեկ հորդոր կարդալով, մեկ ասելով, թե նա իր նկատմամբ քաղաքացիների ատելությունն է գրգռում, հոգևորականների նրղովքները, որ բացառված չէ, որ սենատը իր դեմ ապստամբություն բարձրացնի։ Վասիլը կարծես նկարիչ լիներ, պատկերում էր նրան [ամեն ինչը], բայց և այնպես ոչնչի չհասավ, [ընդհակառակը] նրա թշնամությունը շահեց։ Որդեգիրը ոչ թե բարեկամ, այլ թշնամի ու ատելի համարվեց։ Այդ էր պատճառը, որ Միքայելը շատ չանցած մի ուրիշի էլ, որն այն ժամանակ կայսերական դրոմոնի թիավարն էր (նա Վասիլիկինոս էր կոչվում, հյուպարքոսի պաշտոնը երկրորդ անգամ ստացած այն Կապնոգենեսի եղբայրը), մեջտեղ բերելով, հագցրեց ծիրանին, գլխին թագ դրեց, թագավորական կոշիկներ հագցրեց և ձեռքից բռնած՝ բերեց սենատ և սենատորներին ասաց. «Ո՛վ այրեր, ես պետք է հենց սկզբից սրան այս հրաշալի զարդերին արժանացնեի.

Նախ իր արտաքինն է կոչում իշխանության,
ապա և թագը կարծես գլխի հետ մի մարմին է,
Նրա ամեն ինչը համապատասխանում է այդ պատվին,

և ինչքան ավելի նպատակահարմար է սրան դարձնեմ կայսր, քան թե Վասիլին։ Ես զղջում եմ, որ Վասիլին եմ կայսր դարձրել»։ Սա եղավ նրա տապալման սկիզբը։ Այս խոսքերի վրա բոլորն ապշեցին, քար կտրեցին, տեսան, թե ինչպես առասպելական գիգանտների պես ամեն օր թագավորներ են բուսնում։ Այսուհետև [Միքայելի] դեպի Վասիլն ունեցած ատելությունը գնալով խորացավ, այն կրակից էլ ավելի սաստիկ դարձավ, դրա կպչանն ու պատճառը Վասիլի՝ իրենց լպիրշություններին մասնակից չդառնալն էր, նրանց խայտառակություններին չհետևելը։ Միքայելը չափը չունեցող հարբեցողությունից այն աստիճան էր հիմարացել, որ հարբածության պահին սարսափելի, ավելի քան սարսափելի հրամաններ էր արձակում։ Նա կարգադրում էր մեկի ականջները կտրել, մի ուրիշի՝ քիթը, երրորդի՝ գլուխը։ Եթե չլինեին գթացող մարդիկ, որոնք անտեսում էին հրամանները և նրանց ի կատար ածելը հետաձգում, հավատացած լինելով, որ Միքայելը կզղջա, հրամանը չեղյալ կհայտարարի, ինչպես որ իրականում լինում էլ էր, ապա բոլոր նրա մերձավորներն ու հավատարիմ մարդիկ ոչնչանալու էին։ Քիչ էր մնացել Վասիլն էլ նրանց հետ ոչնչանար, բազմիցս դառնալով նրա սանձարձակ հարբեցողության խաղալիքը։ Վասիլը համբերում էր ու սպասում, ենթադրելով, որ նա խելքի կգա։ Բայց դա լինելու բան չէր, քանզի անհնարին է, ինչպես էլ արվի, կառքի՝ հենց սկզբից ծռված անիվին տալ նախնական ուղիղությունը։ Այսպիսով, ահա Միքայելը Վասիլի դեմ էլ ավելի մեծ դավեր էր նյութում։ Նրա միտքն այն էր, որ որսի ժամանակ իր թիկնապահներից մեկը նիզակը փոխանակ գազանի, Վասիլի վրա արձակի այն։ Բայց կարգադրությունն ստացողը որսի ճանապարհին այդ մասին Վասիլին տեղյակ պահեց։ Ճիշտ է, հրամանն ստացողը նիզակն արձակեց, բայց վրիպեց, որով մահվան մոտիկ գտնվող Վասիլը փրկվեց մահին կոխած աստծո կողմից[124]։ Երբ կատարվածը բոլորին պարզ ու հայտնի դարձավ, սրվեց Միքայելի դեմ ուղղված դաշույնը։ Որպեսզի Վասիլն էլ փոքր առաջ սրախողխող արված կեսարի բախտին չարժանանա, իսկ նրանից առաջ՝ Թեոկտիստոսի, կամ սենատորների վճռով, կամ էլ Վասիլի հանդեպ սիրալիր տրամադրվածների (նրանց ևս մահ էր սպառնում), Միքայելը վեց հազար երեք հարյուր յոթանասունվեց թվին, ինդիկտիոնի առաջին տարվա[125] սեպտեմբեր ամսի քսանչորսին, գիշերվա երրորդ ժամին, մեծ վկա Մամասի պալատում կայսերական սենեկապանների կողմից սրի է քաշվում[126]։ Նա իր մոր՝ Թեոդորայի հետ թագավորեց տասնչորս տարի,

միահեծան՝ տասնմեկ, իսկ վերջում, Վասիլի հետ՝ մեկ տարի և երեք ամիս։

45. Միքայելի բեմական ու թատերական նախասիրությունների կողքին այդուհանդերձ պետք է հիշել և նրա գովասանքի արժանի գործերը։ Դրվատանքի արժանի են աստծո իմաստության հռչակավոր տաճարին նրա նվիրաբերած, ժրաջանորեն ու ջերմեռանդությամբ պատրաստված ընծաները։ Քանզի հին և սրբազան, երբևիցե տաճարների համար արվեստագործած ափսեներից և ոչ մեկը իր մեծությամբ չի կարող համեմատության մեջ դրվել [նրա նվիրածի հետ], եղածների և ոչ մեկի շքեղությունն ու գեղեցկությունը չէր երևում, քանզի ամեն գեղեցիկն ու թանկագինը այդ [ափսեի] վրա էր ի մի հավաքվել։ Բաժակն էլ այդ ափսեին շատ էր հարիր։ Պետք է հիշատակել և այդ տաճարի լուսավորության համար պատրաստված ջահը, որ պոլիկանդելոն[127] են անվանում։ Այն ոչնչով չէր զիջում հիշյալներին, նա ևս ամբողջությամբ ոսկուց էր՝ վաթսուն լիտր ծանրությամբ։ Սա ևս եղած [ջահերից] շատ էր տարբերվում, և մարդիկ ջահերի մեջ առաջնությունն ու պատիվը սրան են տալիս։

## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ[1]

## ԵՐԱՆԵԼԻ ՎԱՍԻԼ ԿԱՅՍԵՐ ԿՅԱՆՔԻ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ[2], ՈՐ ՆՐԱ ԹՈՌ՝ ԿԱՄԱՎՆ ԱՍՏԾՈ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍՐ ԿՈՍՏԱՆԴԻՆԸ ՋԱՆԱՍԻՐՈՒԹՅԱՄԲ ԲԱՂԵՑ ԶԱՆԱԶԱՆ ՇԱՐԱԴՐԱՆՔՆԵՐԻՑ ԵՎ ՎՍՏԱՀԵՑ ԳՐՔԻՆ

1. Ես մեծ ցանկություն և մղում ունեի պատմության հավերժական և անմա՛ բերանի օգնությամբ ամենակարևոր դեպքերի փորձն ու իմացությունը հաղորդել, մտադիր էի, ինչ էլ լինի, գրի առնել Հռոմեական կայսրության Բյուզանդիոնի ժամանակաշրջանի կայսրերի, նրանց ենթակա իշխանավորների, զորավարների և ենթազորավարների՝ յուրաքանչյուրի կատարած ամենակարևոր գործերը։ Բայց դա գլուխ բերելու համար երկար ժամանակ, մեծ աշխատանք էր պետք, ապա և բազում գրքերի առկայություն, պետական գործերից որոշ դադար, մի բան, որից մենք զուրկ էինք։ Այդ իսկ պատճառով ես ստիպված գտա մի երկրորդ ելք, այն է՝ սկզբից մինչև վերջ շարադրել մեկ կայսեր կյանքն ու ամբողջ գործունեությունը, կայսր, որ կայսերական իշխա-

նությունը անչափ վնհացրեց, որի անունը հոմանիշ է թագավորության[3], ով հռոմայեցիների պետության և գործերին անչափ օգտակար եղավ։ Ես մտահոգված էի, որպեսզի երկար ժամանակը ապագա սերունդների համար մոռացության չմատնի փարթամացած ծառի[4] արմատը, ակը, որպեսզի հենց Վասիլի ընտանիքի անդամը[5] լինի առաքինության տիպարը մատնացույց անողը, արձանը կանգնեցնողը։ Վասիլի, որից նրա սերունդները պիտի օրինակ վերցնեն։ Եթե աստված մեզ կյանք տա, և մի փոքր շունչ քաշենք հիվանդություններից, եթե դրսից որևէ մեկը չխանգարի, գուցե շարադրենք մինչև մեզ հարատևած նրա տոհմի պատմությունը և ամբողջացնենք այն։

2. Արդ, խնդրո առարկա անձնավորությունը՝ Վասիլ կայսրը, ծագումով Մակեդոնիայից էր[6], ազգությամբ հայ[7] Արշակունի[8]։ Այն պատճառով, որ վաղեմի Արշակը[9], որն իշխեց պարթևների վրա, հռչակվեց իր առաքինությամբ և մեծ փառքի հասավ, հետագայում և՛ պարթևների, և՛ հայերի, և՛ մարերի համար օրենք դարձավ, որ իրենց վրա ոչ մի այլ հարստությունից թագավոր չիշխի, այլ միայն Արշակի, միայն նրա սերնդից։ Այդպիսով, վերոհիշյալ ժողովուրդների վրա թագավորում էին այդ հարստության շառավիղները։ Հայերի արքան երբ վախճանվեց, ապստամբություն բռնկվեց և գահակալական պայքար ծավալվեց։ Արտավանն ու Կլեյենեսը[10] ոչ միայն կորցրին իրենց նախնյաց իշխանությունը, այլև կյանքից զրկվելու վտանգ կար, դրա համար նրանք փախչելով ապաստան գտան թագավորանիստ Կոստանդնուպոլիս քաղաքում։ Այն ժամանակ հռոմայեցիների իշխանությունը գտնվում էր Զենոնի աներոջ՝ Լևոն Մեծի[11] ձեռքում։ Նա ընդունեց այս մարդկանց, իրենց ազնվական ծագման արժանի պատվասիրեց և թագավորանիստ քաղաքում ապրելու տեղն ու անհրաժեշտ ապրուստը ապահովեց։ Այն ժամանակ պարսից արքան իմանալով, որ խնդրո առարկա մարդիկ փախել են հայրենիքից և ապաստանել թագավորանիստ քաղաքը և թե կայսրերի կողմից ինչպիսի սիրալիր ընդունելության են արժանացել, նամակ գրեց նրանց և հետ կանչեց, իբրև թե որպես բարեկամի, խոստանալով վերականգնել նրանց հայրենական գահի վրա, բայց նա մտադիր էր այդ ճանապարհով իրեն ենթարկել [հայոց] ժողովրդին։ Երբ նրանք ստացան պարսից արքայի նամակը և մտածմունքի մեջ էին իրենց անելիքի շուրջը, նրանց սպասավորներից մեկը այդ մասին տեղեկացնում է կայսեր և նրան հանձնում նամակը։ Երբ պարզ դարձավ, որ պարսից արքայի՝ նրանց հրավիրելու նպատակը առավելապես [հայ] ժողովրդին իրեն ենթարկելն էր, քան նրանց իշխանության վե-

բականգնելը, և դա ո՛չ հրավիրվողների, ո՛չ էլ հռոմայեցիների պետության էր ձեռնտու, նրանք մտածում են այնպես անել, որ պարսիկների ծրագրերը ի դերև գան։ Կայսրը նրանց փախստյան առաջն առնելու նպատակով, ավելի ընդարձակ կալվածներ շնորհելու և ավելի ապահով վիճակ ստեղծելու պատրվակով, պատշաճ ձևով Մակեդոնիայի Նիկե քաղաքը վերաբնակեցրեց կանանցով ու երեխաներով (կանայք նրանց մոտ էին եկել հետագայում՝ Թաքուն)։ Որոշ ժամանակ անց, երբ սարակինոսներն աստիճանաբար հզորացան, ամերմումնին[12] վաղեմի Արշակունիների շառավիղների հանդեպ նույն քայլին դիմեց և նամակ գրելով նրանց հրավիրեց, իբրև թե իրենց նախնյաց իշխանության և գահին տիրանալու համար։ Հերակլ կայսրը[13] այդ բանն իմացավ. նամակը կայսեր էր ընձեռվել։ Նա հասկացավ, որ սարակինոսները հրավիրում են նրանց ոչ թե ինչ-որ շնորհ անելու, այլ իրենց՝ խորամանկների սեփական իշխանության ընդարձակման համար (սարակինոսները հուսով էին, որ եթե Արշակի շառավիղներին իրենց ձեռքի տակ ունենան, ապա կարող են [հայ] ժողովրդին հեշտությամբ իրենց կողմը գրավել, որովհետև վերջինս սեր էր տածում դեպի հին Արշակը)։ Ահա դրա համար կայսրը առավել ապահովության պատրվակով [Արշակի շառավիղներին] իսկույն տեղափոխեց Ֆիլիպպե, որը նույնպես Մակեդոնիայի քաղաքներից մեկն էր։ Այնուհետև, ավելի նշանավոր քաղաքում բնակեցնելու և ավելի բարձր դիրքի արժանացնելու բարուրանքով, նրանց տեղափոխեց Ադրիանուպոլիս քաղաքը։ Վայրը [հայերին] դուր եկավ, նրանք այնտեղ զգում էին ինչպես հարազատ երկրում և սեփական ժողովրդի մեջ, կարողություն կուտակեցին, անաղարտ ու մաքուր պահելով իրենց ազնվական ծագումն ու ազգային դեմքը։

3. Տարիներ հետո, երբ թագավորում էր Կոստանդինն իր մոր՝ Իրենի[14] հետ, այն Մայիկտեսը[15], որ նույնպես Արշակի արյունակիցն էր, ինչ-որ դեսպանությամբ կամ գործով գալիս է հռչակավոր Կոստանդնուպոլիս քաղաքը։ Նա պատահմամբ հանդիպում է իր մի ցեղակցին, որ Լևոն էր կոչվում. Նրա արտաքինից և հագուստից կռահեց, որ նա պատահական կամ նվաստ անձնավորություն չէ, այլ ազնվական և հայտնի մարդ։ Նա խոսակցության բռնվեց նրա հետ, մտերմացավ և բարեկամացավ, մանավանդ, երբ իմացավ նրա [հայկական] ծագման մասին։ Այդ մարդու առաքինությունները գնահատելով, նախընտրեց նրա տանը բնակվել, օտարի հետ, քան թե սեփական տանը։ Ապա և խնամիացավ նրա հետ, կնության առնելով նրա դուստրերից մեկին։ Ահա այս զույգից ծնվեց հայրը այն անձնավորության, որին է նվիր-

*ված սույն պատմությունը։ Նա հասակ առավ, ստացավ սքանչելի կրթություն ու դաստիարակություն և աչքի ընկավ իր հոյակապ կազմվածքով և ֆիզիկական արտակարգ ուժով։ Նա օժտված էր ամեն տեսակ առաքինություններով, և շատերն էին ուղում նրա հետ խնամիանալ։ Ադրիանուպոլսում էր ապրում մի ազնվական համեստ կին, որն իր ամուսնու մահից հետո խոհեմությամբ էր տանում այրիությունը (համբավ էր տարածվել, որն ամենևին էլ անհիմն չէր, որ նա Մեծն Կոստանդնից էր սերում)[16]։ Իր ապրած շրջանակում եղած կանանցից նա ամենից շատ այս կնոջ գնահատեց և ամուսնացավ նրա դստեր հետ, որն ազնիվ էր, գեղեցիկ մարմնով և ամոթխած։ Ահա սրանցից առաջացավ թագավորական այս արմատը՝ Վասիլը, որ, ինչպես ասվեց, հոր կողմից սերում էր Արշակից, իսկ մայրը ազգակցական կապ ուներ Մեծն Կոստանդնի հետ[17]. և՛ հոր, և՛ մոր կողմից նա ստացավ Ալեքսանդրի վեհությունը։ Ահա այսպիսի ծնողներից էր սերում Վասիլը[18]. հենց սկզբից էլ նա ուներ իր ապագա փառքի մասին վկայող բազում ապացույցներ. գլխի շուրջը՝ առաջին մազերի բուսնելու ժամանակ՝ կարմիր գիծ էր երևում, իսկ խանձարուրի վրա՝ ծիրանու գույն։*

*4. Մինչև այդ ժամանակ Արշակի շառավիղների սերունդը պարփակված էր, ինչպես առանձին տոհմ, թեև բնակվելով Ադրիանուպոլսում, հաճախ էր խնամիանում տեղացիների հետ։ Երբ բուլղարների իշխան Կրումը[19], դրժելով հռոմայեցիների հետ կնքած հաշտությունը, պաշարեց Ադրիանուպոլիսը և երկար ժամանակ մնալով այնտեղ, վերջը ստիպեց պարենի պակասությունից տանջվող [բնակիչներին] որոշ պայմաններով տալ քաղաքը, նա բոլոր բնակիչներին, այդ քաղաքի եպիսկոպոս Մանուիլի հետ, Բուլղարիա տեղափոխեց[20]։ Բուլղարների երկիր բռնագաղթվեցին նաև Վասիլի ծնողները, դեռ խանձարուրում գտնվող իրենց երեխայի հետ։ Այդ հրաշալի եպիսկոպոսը և նրա հետ եղած ժողովուրդն այնտեղ անարատ պահեցին իրենց քրիստոնեական հավատքը և բուլղարներից շատերին Քրիստոսի ճշմարիտ հավատքի կողմը ձգեցին (բուլղարների ժողովուրդը դեռ բարեպաշտություն չէր ընդունել)[21]. Նրանք ամենուրեք սերմանեցին քրիստոնեական վարդապետության սերմերը՝ սկյութներին[22] կռապաշտության մոլորությունից հեռացնելով և բերելով դեպի լույսն աստվածաճանաչության։ Դա շատ զայրացրեց Կրումի հաջորդ Մուտրագոնին[23], որ չկարողանալով համոզել սրբազնագույն եպիսկոպոս Մանուիլին և շատ այլ մարդկանց, ովքեր աչքի էին ընկել այդ գործում, հրաժարվել Քրիստոսից, անողոքաբար տանջեց և մարտիրոսական մահվան ենթարկեց։ Վասիլի բազմաթիվ*



9—1069

ազգականներ արժանացան մարտիրոսի փառքին, այնպես որ Վասիլը անմասն չէ նաև նման փառքից։ Բայց աստված այցելեց իր ժողովրդին և հոգաց նրանց [հայրենիք] վերադարձի մասին. (բուլղարների իշխանը ի վիճակի չլինելով երկար ժամանակ դիմադրել հռոմեական ուժերին, նորից ենթարկվելու նշաններ էր ցույց տալիս)։ Երբ իշխանն իր մոտ հավաքեց հայրենիք վերադարձող քրիստոնյա ժողովրդին, տեսավ մանուկ Վասիլին՝ գեղադեմ և շնորհալի, ժպտադեմ ու թովռան, իր մոտ կանչեց և մի շատ մեծ խնձոր սվեց։ Մանուկը. առանց որևէ չար մտադրության, անվախ հենվեց իշխանի ծնկներին և իր բնական անմիջականությամբ ընդգծեց իր աղնվական ծագումը, այն աստիճան, որ իշխանը զարմացավ, իսկ նրա թիկնապահները ծածուկ կատակեցին։

5. Կարճ ասած, աստծո գթությամբ հայրենիք վերադարձավ գերի քշված քրիստոնյա ամբողջ ժողովուրդը, այդ թվում նաև Վասիլի ծնողները, իրենց ամենաթանկագին որդու հետ։ Վասիլի հետ, դեռ մանկության օրերին մի հրաշալի բան կատարվեց, որը կանխագուշակություն էր ապագա հաջողությունների։ Ես կարծում եմ, որ սխալ կլինի լռությամբ անցնել դրա կողքով։ Ամառ ժամանակ նրա ծնողները գնացել էին իրենց սեփական դաշտը և ղեկավարում էին հնձվորների աշխատանքը, դրդում նրանց ավելի լավ աշխատել։ Օրը կես եղավ, սրևն իր կեսօրվա ճառագայթներով արդեն շատ էր այրում, և նրանք հասկերից ինչ-որ վրան հյուսեցին և այնտեղ պառկեցրին երեխային քնելու, որպեսզի կիզիչ արևի ջերմությունն անվնաս անցկացնի։ Երբ նրանք հնձվորներով էին զբաղված, մի արծիվ վայր խուժեց, նստեց վրանի վրա և, բացելով իր թևերը, երեխայի վրա ստվեր արեց։ Այդ բանը տեսնողները աղաղակ բարձրացրին, վախեցան, որ արծիվը կարող է երեխային կործանել։ Հոգատար և մանկասեր մայրը աճապարեց դեպի որդին։ Նա տեսավ, որ արծիվն իր թևերով ստվեր է անում որդուն, տեսավ, որ նա ամենևին չվախեցավ իրենից, այլ ընդհակառակը՝ կարծես ուրախությամբ էր իրեն նայում, բայց այդ պահին ուրիշ բան անել չկարողացավ և արծվի վրա քար շպրտեց։ Արծիվը թռավ և հեռացավ։ Բայց երբ մայրը վերադարձավ իր ամուսնու և աշխատողների մոտ, արծիվն առաջվա պես եկավ և մանկան վրա ստվեր արեց. տեսնողները նորից աղաղակ բարձրացրին, մայրը վազեց որդու `մոտ, քար շպրտեց, արծիվը հեռացավ, իսկ մայրը դարձյալ վերադարձավ աշխատողների մոտ։ Նախախնամությունը, ցանկանալով ցույց տալ, որ դա պատահական դեպք չէ, այլ կատարվում էր աստվածային կան-

խագիտությամբ, նույն բանը երրորդ անգամ կրկնվեց, այն է՝ արծիվը ճախրեց մանկան վրա, տեսնողներն աղաղակեցին, մայրը շտապեց դեպի արծիվը, իսկ արծիվը հազիվ պոկվեց ու հեռացավ։ Դա այդպես է. աստված կատարվելիք մեծ իրադարձությունների մասին միշտ դեռ շատ առաջ նշաններ և ապացույցներ է տալիս։ Նման դեպքը հետագայում ևս հաճախ էր պատահում նրան, և քնած ժամանակ արծիվը բազմիցս նրան ստվեր էր անում[24]։ Բայց մայրն այն ժամանակ դեպքին ոչ մի նշանակություն չէր տալիս։ Նախքան բացահայտվեին Վասիլի առաքինությունները, այդ նշաններին, ինչքան էլ դրանք ուշագրավ լինեին, կարևորություն չէին տալիս, բացատրություն չէին փնտրում, ոչ ոքի մտքովն անգամ չէր անցնում, որ երբևիցե կարող է համեստ ու հասարակ այդ տանը նման բախտ մուտք գործել։ Այն պատճառով, որ այս հարցի շուրջ երկարաբանելը կարող է Վասիլին գովաբանելու ինչ-որ ձև համարվել, որ նրա մասին լավ բան ասելու նյութ չունենալն է մեզ ստիպում ծանրաբեռնել շարադրանքը, ահա նման կարծիք չստեղծվելու համար մի կողմ ենք թողնում այսպիսի պատմությունները, ինչպես և այն ամենը, ինչ վերաբերում է նրա մանկության տարիներին։ Այժմ փութանք անցնել առաջ, հրաժարվելով անվերջ գովասանքներից, որոնք համարում ենք ոչ գովելի բան։

6. Մանկան դաստիարակության գործն իր վրա էր վերցրել հայրը, նա էր որդու անելիքի և ասելիքի խորհրդատուն, նա էր նրա ուսուցիչն ու դաստիարակը՝ բոլոր կարևոր ու գովելի արարքների։ Վասիլը կենտավրոս Քիրոնի կարիքը չզգաց, ինչպես Աքիլլեսը, ոչ էլ օրենսդիրներ Լիկուրգոսի և Սոլոնի, նա արտաքին կամ օտար [գիտությունների] ուսման կարիքն էլ չզգաց. նա միմիայն հոր մոտ ստացավ բարձր դաստիարակություն, սովորեց լինել ակնածող ու բարեպաշտ՝ դեպի աստվածայինը, ամոթխած ու հնազանդ՝ ծնողների հանդեպ, զիջող դեպի տարեցները, բարեմիտ ու անկեղծ՝ դեպի տարեկիցներն ու ազգականները, ենթարկվող՝ իշխանավորներին և ողորմած՝ չքավորների հանդեպ։ Նա ամեն ինչում փայլեց իր առաքինություններով, դեռ պատանի հասակում աչքի ընկավ իր խոհեմությամբ ու արիությամբ։ Նա սիրում էր և անչափ գնահատում չափավորությունը, ամենևին չէր արհամարհում հասարակ մարդկանց։ Ահա այդ էր պատճառը, որ նա բոլորի սիրելին էր և ցանկալին։

7. Երբ նա մանկությունից անցնում է պատանեկության հասակին և ձեռնամուխ լինում տղամարդուն վայել գործերի, վախճանվում է նրա հայրը և գնում հանդերձյալ աշխարհը։ Տունը լցվեց սուգ ու ողբով, այ-

րիացավ Վասիլի մայրը, որբացավ այդ ամենահզորը։ Ծնունդ առան վիշտն ու թախիծը, դրա վրա գումարվեցին նաև ապրուստ հայթայթելու, տան, մոր և եղբայրների հոգսերը։ Նա չնչին էր համարում երկրագործության տված օգուտը, այդ աշխատանքն իսկ անվայել, ուստի որոշեց գնալ թագավորանիստ քաղաքը, ցուցաբերել իր անձնական առաքինությունները և այդ ճանապարհով ձեռք բերել և՛ իր, և՛ իր ընտանիքի կարիքները հոգալու միջոցներ, ավելի օգտակար և պիտանի լինել նրանց։ Նա գիտեր, որ մարդկանց լավագույն ընդունակությունները ծաղկում են հենց մեծ քաղաքներում, մանավանդ մայրաքաղաքներում, որ մյուսներից մի քիչ ավելի աչքի ընկնող մարդը փայլուն բախտի է արժանանում։ Նա գիտեր, որ մարդկանց առաքինությունները նվազ հայտնի, երկրորդական քաղաքներում բթանում են ու խամրում, ինչպես գյուղերում, որ եթե այդ առաքինությունները հանդես բերելու ասպարեզ չլինի, ոչ էլ գնահատող մարդիկ, ապա դրանք խունանում են և թառամում։ Այդ պատճառով նա ձեռնտու և օգտակար համարեց գնալ թագավորանիստ քաղաքը։ Բայց նրան հետ էր քաշում և ձեռքն ու ոտքը կապում դեպի մայրը տածած սերը, նրա բեռը թեթևացնելու ցանկությունը, մանավանդ որ մայրը հանգիստ ծերություն էր ուզում և պահանջում, որ որդին իր մոտ մնա և ցուցաբերի պետք եղած օժանդակությունն ու հոգատարությունը։

8. Բայց քանի որ պիտի աստծո կամքը կատարվեր, այն, որ Վասիլը աստիճանաբար բարձրանալով հասներ այն տեղը, որն իր համար էր կանխորոշված, երազներն ի վերջո համոզում են մորը լինել դիջող տեղի տալ նրա քաղաք գնալու բուռն ցանկության առաջ։ Դեռ ավելին, հենց ինքը՝ մայրը սկսեց խթանել և դրդել որդուն գնալ թագավորանիստ քաղաքը՝ ցույց տալու իր հոգու վեհությունը, իր արտակարգ քաջությունը։ Մայրը երազում տեսել էր, որ իրենից ինչ-որ հսկա մի ծառ է բուսել (այնպես, ինչպես Կյուրոսի մայրը երազում տեսել էր իրենից բուսած որթատունկը), մի ծաղկաշատ ու մրգաշատ ծառ՝ իր տան վրա կանգնած։ Գետնից բարձրացող նրա հսկայական բունը ոսկուց էր, ճյուղերն ու տերևները նույնպես ոսկե։ Նա այդ մասին պատմեց երազներ մեկնող մի մտերիմ մարդու և նրանից պատասխան ստացավ, թե դա նշանակում է, որ իր որդին արժանանալու է փայլուն և մեծ բախտի։ Փոքր անց նա երազում տեսնում է մի ծերունու, որի բերանից հուր էր ժայթքում. Նա շարունակ ասում էր նրան, թե աստված քո սիրելի որդի Վասիլին տալու է հռոմեական թագավորության գայիսոնը, և դու պետք է դրդես նրան գնալ Կոստանդնուպոլիս։ Վասիլի

մայրը, այդ ավետիսից ուրախացած ու բերկրացած, երկրպագեց ծերունուն և հարցրեց. «Դու ո՞վ ես, տե՛ր, որ արժանի համարեցիր ինձ. երևալ և բերել նման ավետիսներ»։ Նա պատասխանեց. «Ես Եղիա Թեսբացին եմ»[25] ու անհետացավ։ Նա զարթնեց և այդ բարի երազներից, ավելի ճիշտ, աստվածային հայտնություններից թևավորված ու կյանքստացած, հենց ինքը սկսեց դրդել որդուն գնալ թագավորանիստ քաղաքը, որպես մայր նա խորհուրդ տվեց և աղաչեց նրան, որ իր հոգում մշտապես պահի երկյուղն աստծո, իմանա, որ նախախնամությանաչքը միշտ տեսնում է նրա յուրաքանչյուր արարքն ու մտածմունքը, այդ պատճառով թող նա ոչ մի վատ բան չգործի, այլ իր անձնականառաքինությունները պետք եղած ձևով դրսևորի, ոչ մի դեպքում չնսեմացնի իր նախնիների ազնվազարմությունը։

9. Դուրս գալով Թրակիայի Մակեդոնիայից, նա գնաց դեպի քաղաքների թագուհին, նպատակ ունենալով մտերմանալ ուժեղներից և երևելիներից մեկն ու մեկի հետ, մտնել նրա մոտ ծառայության և սպասավորության[26]։ Կտրելով միջանկյալ ճանապարհը և հասնելով թագավորանիստ քաղաքի Ոսկե դռները, օր ցերեկով անցավ նրանցից ներս, մոտեցավ հենց այդ դռների մերձակայքում գտնվող սուրբ վկա Դիոմեդեսի մենաստանին և ճանապարհորդությունից հոգնատանջ, նրա դարպասի առաջ, պատերի տակ անհոգ պառկեց՝ հանգստանալու։ Գիշերվա առաջին պահին վանահոր[27] երազում գալիս է վկա Դիոմեդեսը և հրամայում նրան դուրս գալ դեպի վանքի դարպասը, «Վասիլ» կանչել և նրան, ով պատասխանի իր կոչին, վանք հրավիրել և հյուրընկալել, տալով սնունդ, օթևան, հագուստ, ամեն մի օժանդակություն և մատուցել իր ծառայությունը, քանզի նրան աստված թագավոր է օծելու և նա է, որ պետք է վերականգնի և փառավորի այդ վանքը։ Վանահայրը այդ տեսիլքը համարեց երևակայության արգասիք, մտքի սին ստեղծագործություն և ոչ մի նշանակություն չտվեց։ Դարձյալ ննջելով, երկրորդ անգամ է լսում նույն բանի մասին։ Բայց լինելով քնաթաթախ, կիսաքուն վիճակում ոչինչ չարեց։ Նա երրորդ անգամ է տեսնում վկային, որն արդեն նրան հրամայում էր ոչ թե առաջվա պես հեզ ու հանդարտ, այլ սաստիկ սպառնալով փորձանքի ենթարկել, եթե շտապ չկատարի ասվածը։ Այս անգամ նա հազիվհազ սթափվեց, աչքերից քշեց մահվան հարևան քունը, գնաց դարպասի մոտ և, վկայի հրամանի համաձայն, «Վասիլ» կանչեց։ Նա իսկույն պատասխանեց. «Ահա ես, տեր, ի՞նչ ես հրամայում քո ծառային»։ Վանահայրը նրան վանք հրավիրեց։ Տեսնելով, որ կեղտոտ է ու փոշոտ, դեմքն արևակեզ, մար-

դասիրաբար անհրաժեշտ հոգատարություն և օգնություն ցուցաբերեց։ Այնուհետև խնդրելով Վասիլին ոչ ոքի չհայտնել, իր մեջ պահել գաղտնիքը, նրան հայտնեց վկայի մարգարեությունը և երաշխիք խնդրեց Վասիլից, որ գուշակության իրականացումից հետո նա կհիշի այդ։ Վասիլը դա անհնարին բան համարեց ու մերժեց, ընդհակառակը, խնդրեց վանահոր միջնորդությունը որևէ հայտնի մարդու մոտ ծառայության ընդունվելու համար, մի բան, որ վանահայրը սիրով կատարեց։ Նա Վասիլին ներկայացրեց Միքայել կայսեր[28] և կեսար[29] Վարդասի մի ազգականին, որին փաղաքշորեն Թեոփիլիցես[30] էին անվանում, մականունը՝ Պեղևոմենոս։ Վերջինս այդ վանքի հանդեպ մտերմություն էր ցույց տալիս և հաճախ էր այնտեղ սիրով լինում։ Այս Թեոփիլիցեսը ուրախ մարդ էր, մեծահոգի և շատ էր ցանկանում իր ծառայության մեջ ունենալ ազնվական, գեղեցիկ, երիտասարդ, քաջությամբ և կորովի մարմնով աչքի ընկնող տղամարդկանց և նրանցով հպարտանալ ու պարծենալ։ Նա այդ տղամարդկանց իսկույն հագցնում էր մետաքսե հանդերձներ և այլ համազգեստներ։ Ահա այս մարդկանց թվին դասվեց և երիտասարդ նորակոչիկ Վասիլը։ Թեոփիլոսը տեսնելով, որ Վասիլը ֆիզիկական ուժով և մտավոր ընդունակություններով մնացածներին շատ էր գերազանցում, նրան նշանակեց իր պրոտոստրատորը։ Սերը նրա նկատմամբ օրեցօր աճում էր. նա հիանում էր նրա անձնական բաբեմասնություններով, նրա, ով աչքի էր ընկնում և՛ ֆիզիկական ուժով, և՛ մտավոր ընդունակություններով, իսկ բոլոր հրամանները կատարում էր արագ և անթերի։

10. Վասիլի մայրը անվերջ մտահոգության մեջ էր որդու համար, որովհետև ոչ մի լուր չէր ստանում նրա բարեհաջող տեղավորվելու մասին։ Նա հուսաբեկ էր եղել և տրտմության մեջ ընկել, երբ դարձյալ երազում տեսնում է բուկում նոճու նման մի ծառ՝ ոսկե տերևներով, ոսկե ճյուղերով ու բնով, որի գագաթին նստած էր իր որդի Վասիլը։ Նա զարթնեց և հաջորդ օրը երազը պատմեց բարեպաշտ մի կնոջ, որը գիշեր-ցերեկ Աննայի[31] նման չէր հեռանում աստծո տաճարից և ժամանակն անց էր կացնում աղոթքներով ու պահեցողությամբ։ Այդ կինը նրան ասաց՝ ուրախ լինել որդու համար, և մեկնեց երազը, թե այն հաստատ վկայում է, որ քո որդին հռոմայեցիների կայսր պիտի դառնա։ Նախապես իմացածի վրա ահա այս էլ գումարվեց, և մայրն այլևս որդու համար չէր տխրում ու թախծում, այլ հուսադրված կորով ստացավ, թևավորվեց երկնային օժանդակությունից, դարձյալ երջանիկ զգաց իրեն։

11. Այն ժամանակները Վասիլի տեր Թեոփիլոսին կայսր Միքայելը և կեսար Վարդասը ինչ-որ պետական գործով Պելոպոնես էին ուղարկել։ Թեոփիլոսին ուղեկցում էր նաև Վասիլը, որ կատարում էր իրեն հանձնարարված պարտականությունները։ Վերոհիշյալ Թեոփիլոսը, հասնելով Աքայայի Պատրա քաղաքը, մտավ նախակոչ Անդրեաս առաքյալի տաճարը՝ աղոթելու, իսկ Վասիլը ծառայության հանգամանքների բերումով չկարողացավ ուղեկցել նրան և ստիպված եղավ ավելի ուշ մենակ գնալ այգ տաճարը՝ հատուցելու դեպի առաքյալը տածած հարգանքը։ Այնտեղ սպասավորող մի վանական, որ ժամանակի մեծ մասն անց էր կացնում առաքյալի տաճարում, երբ Թեոփիլոսը ներս մտավ, ոտքի չկանգնեց, որևէ բան չմաղթեց, ոչ էլ որևէ բան ասաց նրան։ Նա ամենևին չերկյուղեց նրա հետ եղող թիկնապահներից, անգամ նրա փառահեղ արտաքինից։ Բայց հետո, երբ Վասիլը ներս մտավ, նա, ինչպես դա արվում է ինչ-որ շատ երևելի մարդկանց նկատմամբ, ոտքի կանգնեց և նրան ողջունեց սովորաբար կայսրերին ուղղվող ողջույնով։ Պատահմամբ այնտեղ գտնվող մարդիկ, ականատես և ականջալուր լինելով դեպքին, այդ մասին հայտնեցին տեղի մեծահարուստ և աղնվական մի կնոջ, որն իր ամուսնու անունով կոչվում էր Դանելիս[32]։ Կինը փորձով գիտեր, որ վանականը կանխատեսելու շնորհքով է օժտված։ Առանց հապաղելու՝ նա իր մոտ հրավիրեց նրան և սկսեց պախարակել. «Ո՛վ հոգևոր հայր, դու ինձ այսքան ժամանակ է գիտես, որ ես այս վայրում և՛ դիրքով, և՛ իշխանությամբ շատերից բարձր եմ, բայց երբ հանդիպում ես ինձ, ո՛չ ոտքի ես կանգնում, ո՛չ էլ ողջունում, նման պատիվ դու չես ցուցաբերել նաև ո՛չ իմ որդուն, ո՛չ էլ թոռանս։ Արդ, ինչո՞վ բացատրել այն, որ դու կանգնում ես և թագավորավայել պատվում հասարակ ու անհայտ մի օտարականի»։ Բարեպաշտ վանականը պատասխանեց և ասաց. «Իմ կարծիքով նա պատահական մեկը չէ, իմ տեսածը Քրիստոսի կողմից օծված հռոմայեցիների մեծ կայսրն է, դրա համար կանգնեցի և ողջունեցի։ Եթե մեկը արժանանում է աստծո պատվին, ապա պարտադիր է, որ նրան պատվեն նաև մարդիկ»։ Վասիլի տերը այդ վայրերում որոշ ժամանակ մնալով և, կատարելով իրեն վստահված պետական պարտականությունները, որոշեց վերադառնալ թագավորանիստ քաղաքը։ Վասիլը սակայն տկարության պատճառով մնաց տեղում։ Նա անհրաժեշտ հոգատարության հանդիպելով առողջացավ և պատրաստվում էր նույնպես վերադառնալ։ Բայց վերոհիշյալ կինը՝ Դանելիսը, հրավիրեց նրան և արտակարգ շուքով ընդունեց։ Նա շատ խոհեմ ու հեռատես վարվեց, ինչպես այն մարդը, որ

սերմ է գցում բերրի հողի մեջ, բազմապատիկը քաղելու ակնկալությամբ։ Նա Վասիլին տվեց բազում ոսկի, իր սպասավորության համար երեսուն ստրուկ, ինչպես նաև մեծ հարստություն՝ հանդերձների և այլ զանազան իրերի ձևով, նախօրոք ոչ մի բան չխնդրելով նրանից, այլ սոսկ այն, որ նա իր որդի Հովհաննեսի հոգևոր եղբայրը դառնա[33]։ Վասիլը մի կողմից տեսնելով իր համեստ դիրքը, մյուս կողմից՝ կնոջ փառահեղությունը, անհարմար գտավ դիմել նման քայլի և մերժեց առաջարկը։ Բայց երբ շատ խնդրեցին, տեղի տվեց։ Դրանից հետո Դանելիսը կարծես ավելի համարձակություն ստացած, պարզ ասաց նրան, թե աստծո համար դու մեծ մարդ ես, նա քեզ մեծ պատվի է արժանացնելու, և ես քեզնից ոչինչ չեմ խնդրում կամ պահանջում, այլ միայն այն, որ դու սիրես մեզ և մեր հանդեպ ողորմած լինես։ Վասիլը պատասխանեց, որ եթե դա իրականանա, թող դառնա ամբողջ գավառի տերը։ Դրանից հետո նա ճամփա ընկավ և գնաց թագավորանիստ քաղաքը՝ իր տիրոջ մոտ։ Ձեռք բերած դրամով նա Մակեդոնիայում գնեց մեծ կալվածներ և բոլոր իր ազգականներին բարեկեցիկ դարձրեց, ինքն էլ հարուստ դարձավ՝ ինչպես առաքինություններով, այնպես էլ կալվածներով և դրամով։ Բայց և այնպես նա իր տիրոջ մոտ մնաց և ծառայում էր նրան[34]։

12. Մի օր սխոլերի դոմեստիկոս պատրիկ Անտիգոնոսը արքունի ապարանքին կից կայսերական տներում ճոխ ընդունելություն կազմակերպեց և իր հոր՝ Վարդասին նշանակեց հեստիատոր[35] և դետիմոն[36]։ Կեսարը ճաշկերույթի գնաց՝ իր հետ վերցնելով սենատորների մեծ մասին, իր ազգականներին և մտերիմներին։ Նրանց թվում նաև բուլղար բարեկամներին[37], որոնք սովորաբար այն ժամանակները թագավորանիստ քաղաքում էին լինում։ Ճաշկերույթին, որպես կեսարի ազգական, ներկա էր նաև Վասիլի տեր Թեոփիլոսը՝ ինչպես և պատրիկ Կոստանդինը, այժմյան դրոմոսի լոգոթետ[38], մեծ և անկաշառագույն փիլիսոփա, նշանավոր պատրիկ Թովմայի հայրը[39]։ Բուլղարներն ի բնե ինքնահավան և պարծենկոտ մարդիկ են։ Նրանք այն ժամանակ իրենց հետ էին բերել մի բուլղարի, որը շատ ուժեղ ըմբիշ էր և համարյա թե ոչ ոքի չէր հաջողվել նրան մարտում զգետնել։ Բուլղարները ոչ միայն հպարտանում էին նրանով, այլ չափից դուրս պարծենում։ Կերուխումը երկարեց, և ուրախությունը սեղանի շուրջ ծավալվեց, երբ այդ կարճահասակ Թեոփիլոսն ասաց կեսարին, թե, տե՛ր, ես մի մարդ ունեմ, որը, եթե թույլ տաս, կըմբշամարտի այս անուն հանած բուլղարի հետ։ Հոռոմայեցիների համար դա մեծ խայտառակություն է, և ոչ ոք

չի փակի բուլղարների պարծենկոտ բերանը, եթե սա առանց պարտվելու գնա Բուլղարիա։ Կեսարը թույլատրեց։ Վերոհիշյալ պատրիկ Կոստանդինը, որը նույնպես ծագումով հայ էր և այդ պատճառով Վասիլին շատ սիրելի, տեսավ, որ այն վայրը, որտեղ պետք է ըմբշամարտեն, թաց է. վախենալով, որ հանկարծ Վասիլի ոտքը կսայթաքի, կեսարից խնդրեց գետնին փայտի թեփ շաղ տան։ Այդ անելուց հետո Վասիլը կռվի բռնվեց բուլղարի հետ, նրան իսկույն սեղմեց, ճզմեց և, կարծես խոտի թեթև խուրձ լիներ, անհոգի մարմին, կամ էլ չոր ու թեթև բրդի դեզ, հեշտությամբ բարձրացրեց սեղանի վրա և շպրտեց։ Մարդ չկար, որ չհիանար Վասիլի վրա, չգովեր նրան։ Նույնիսկ բուլղարներն ապշեցին Վասիլի անչափ ճարպկության և ուժի վրա և պապանձվեցին։ Ահա այդ օրից սկսած՝ ամբողջ քաղաքով մեկ սկսեց տարածվել Վասիլի համբավը. նրա անունը ամենքի շրթներին էր, և բոլորը հիանում էին նրանով։

13. Միքայել կայսրը աղնվացեղ, սիրուն ու բարձրահասակ, բայց և անսանձելի, անկարգ, ըմբոստ ու անսաստ մի ձի ուներ։ Բոլորը հիանում էին նրա գեղեցկությամբ ու արագավազությամբ։ Բայց երբ նա հանկարծ կապը կտրեր կամ որևէ ձևով ազատ արձակվեր, շատ դժվար էր նրան սանձահարել, և նա մեծ գլխացավանք էր պատճառում ձիապաններին։ Մի օր կայսրը այդ ձին հեծած որսի է դուրս գալիս և գուրգի հարվածով խփում մի նապաստակ։ Կայսրն ուրախացած իջնում է ձիուց, որ գնա նապաստակին մորթի։ Ձին ազատություն ստանալով՝ փախչում է։ Շատ մարդիկ են ընկնում նրա հետևից, նրանց թվում և ախոռապետները, մանգլավիտներ և նրանց սպասավորները, բայց անհնարին է լինում ձին բռնել։ Կայսրը զայրացած հրամայում է ձին բռնել և կտրել նրա հետևի ոտքերը։ Կեսար Վարդասը խնդրում է կայսեր, որպեսզի մի փոքր անկարգության համար իզուր տեղը կորստյան չմատնի հոյակապ ձիուն։ Վասիլն իր տիրոջ մոտ էր և նրան դիմելով՝ ասաց. «Եթե ես մոտենամ կայսեր ձիուն և իմ ձիու վրայից թռնեմ կայսեր ձիու վրա, ապա կայսրը չի՞ զայրանա իմ վրա, չէ՞ որ ձին զարդարված է կայսերական ֆալարներով»[40]։ Այդ մասին հաղորդեցին կայսեր, իսկ վերջինս թույլատրեց, և Վասիլը պատրաստակամությամբ ու վարպետորեն գործը գլուխ բերեց։ Կայսրը, տեսնելով այդ, հիացավ նրա քաջությամբ, ապա նաև նրա վարպետությամբ ու խոհեմությամբ և իսկույն Թեոփիլիցեսից վերցնելով, դասեց նրան կայսերական ստրատորների[41] շարքը։ Տեսնելով, որ Վասիլը ամեն ինչում շատ է տարբերվում մյուսներից, սիրեց և կապվեց նրա հետ։ Իսկ երբ նա բազմիցս

-աչքի ընկավ կայսեր առաջ, վերջինս նրան բարձրացրեց պրոտոստրատորի աստիճանին։

14. Մի օր հայտարարվեց, թե որսի են գնալու Ֆիլոպատիոն[42] կոչված վայրը։ Մասնակցում էր նաև պրոտոստրատորը, որը կարգի համաձայն, ձի հեծած գնում էր կայսեր առջևից, իր գոտուն կապված թագավորական գուրզը, որը սովորաբար վարդուկիոն[43] էր կոչվում։ Որսի մասնակիցների բարձրացրած աղմուկից վախեցած, անտառից դուրս թռավ մի հսկայական գայլ. բոլորը սարսափեցին ու չփոթվեցին։ Վասիլը հարձակվեց նրա վրա, շպրտեց թագավորական վարդուկիոնը, որը դիպչելով գազանի գանգին, փշրեց այն։ Կեսարը, որը կարգի համաձայն գնում էր կայսեր հետևից, տեսնելով կատարվածը, իրեն ուղեկցող մտերիմներից ոմանց ասաց. «Ես գիտեմ, այս մարդն է, որ մեր ամբողջ տոհմը պիտի կործանի»։ Նրա կանխատեսությունը բխում էր այն բանից, որ Վասիլի համար ամեն ինչ բարեհաջող ու բարեպատեհ վախճան էր ունենում, մի բան, որ իր հերթին ուժեղացնում էր կայսեր համակրանքը դեպի նա։ Եվ դա դեռ բոլորը չէր. պատմում են, որ կեսարն այն ժամանակ ամենաիմաստուն Լևոն փիլիսոփայի[44] հետ բազմիցս ունեցած խոսակցության ընթացքում լսել էր, թե ձեր տոհմը, ըստ իս, կկործանվի մի պատանու ձեռքով, իսկ հետագայում, երբ Վասիլն արդեն հրապարակ դուրս եկավ, Լևոնը մատնացույց անելով նրան, ասաց կեսարին. «Երբ ես խոսում էի ձեր տեղը գրավողի մասին, հենց սրան նկատի ունեի»։ Այդ էր պատճառը, որ կեսարը կասկածանքով էր նայում Վասիլին և շարունակ որոգայթներ լարում նրա դեմ, թեպետև անզոր էր կանխել աստվածային, նախօրոք որոշված կամքը։ Ճակատագիրը ոչ այնքան անսպասելի է, ինչքան անխուսափելի։ Թեև այս բոլորը շեղում է բուն նյութից, բայց և այնպես հարցի հետ առնչություն ունի։

15. Կայսրը շատ էր սիրում որսի գնալ և, մի փոքր անց, պտույտ կատարելու համար գնաց Արմամենտարիա[45] կոչվող վայրը։ Տեղում սեղան արվեց, որին մասնակցեց և կայսրը իր հարազատ մոր՝ Թեոդորայի, իր ազգականների և սենատորներից ամենամտերիմների հետ։ Կայսեր թույլտվությամբ հրավիրվեց նաև պրոտոստրատորը, և նա ես նստեց սեղանի շուրջը։ Թագուհի Թեոդորան սկսեց ավելի հանախակի նայել և վերից վար չափել, ավելի ուշադիր ուսումնասիրել և զննել Վասիլին։ Մի փոքր անց ինչ-որ նշան տեսնելով նրա վրա, ուշաթափվեց։ Ջրով ու վարդաջրով հազիվ ուշքի բերեցին նրան, որից հետո ներկաները հեռացան։ Երբ նա ուշքի եկավ, սթափվեց, իր որդին՝ կայսրը,

հարցրեց, ի՞նչ պատահեց, ինչո՞ւ այսպես հանկարծակի ուշաթափվեց: Մայրը հազիվ սթափված ասաց. «Ո՛վ տեր և իմ որդի: Նա, ում մասին քո հայրն[46] ասում էր, թե մեր տոհմը կործանելու է, հենց սա է, որին դու Վասիլ ես անվանում. այն նշանները, որոնց մասին ասաց քո հայրը, հենց այդ մարդն ունի: Ես մի պահ պատկերացրի ամբողջ դժբախտությունը, մեր կործանումը իմ աչքի առաջ եկավ, դրա համար շփոթվեցի և ուշաթափվեցի»: Կայսրը հանգստացրեց մորը, ուշքի բերեց և մխիթարելով, ասաց. «Դու սխալվում ես, մայր, այս մարդը հասարակ մեկն է, շատ միամիտ: Նա մի բան ունի միայն, քաջություն, ինչպես հնում Սամփսոնը, և ուրիշ ոչինչ, նա մեր օրերում հանդես եկած ինչ-որ Ենակ է կամ Նեբրովդ[47], դու նրանից մի երկյուղիր, մի ունեցիր որևէ չար կասկած»: Ահա այն ժամանակ աստծո կողմից պահպանվող Վասիլը այսպես խուսափեց այդ կոհակից:

16. Այդ տարիներին կայսեր պարակիմոմենոսն էր ներքինի պատրիկ Դամիանոսը, ազգությամբ սլավոն: Սա տառապում էր իշխանամոլության ախտով և հաճախ մեղադրում էր կայսեր առջև ոմանց, թե նրանք ինչպես հարկն է չեն վարում պետական գործերը: Նա հատկապես ընդգծում էր կայսեր մորեղբոր՝ կեսար Վարդասի անունը, թե նա զավթել է իշխանության մեծ մասը, թե նա հաճախ դուրս է գալիս իր իրավունքների սահմաններից: Նա քննադատում էր կեսարի ղեկավարման ոճը, իրականությունը ծուռ հայելու մեջ ցույց տալով կայսեր: Կեսարը իր մտերիմ ընկերներից և հարազատ խորհրդատուներից ու խորհրդականներից իմանալով այդ մասին, լարվեց Դամիանոսի դեմ: Նա կայսեր առաջ շատ չարախոսեց նրան, իր ամբաստանությունը վարպետորեն ձևակերպեց և կարողացավ ի չիք դարձնել կայսեր դեպի Դամիանոսն ունեցած բարյացակամ վերաբերմունքը: Նա նույնիսկ համոզեց կայսեր Դամիանոսին հեռացնել գրաված պաշտոնից: Դամիանոսի պաշտոնանկ արվելուց հետո նրա պաշտոնը որոշ ժամանակ թափուր մնաց: Նախախնամության կամքի առջև խոհեմությունն անզոր է, իսկ խորամանկությունն իր փորած փոսի մեջ է ընկնում: Երբ կեսարը և շատ ուրիշներ կայսեր խորհուրդ էին տալիս և թաքուն ջանքեր թափում, որ այդ պաշտոնը տրվի այս կամ այն անձնավորության, կայսրը նրանց համար միանգամայն անսպասելի Վասիլին է նշանակում պարակիմոմենոս[48], պատվելով նրան պատրիկի պատվաստիճանով և կնության տալով մարմնով ու դեմքով գեղեցիկ, համեստությամբ գրեթե բոլոր ազնվական կանանց գերազանցող մի աղջկա, այն ժամանակ ազնվությամբ ու խոհեմությամբ հռչակված Ինգերի[49] դստեր: Երբ այդ

կատարվեց, վերջացավ, և կեսարը տեսավ, որ կայսեր համակրանքը դեպի Վասիլը օրեցօր աճում է, նախանձից վառվում էր, սարսափում ապագայից[50], նա հայհոյում էր ու կշտամբում, անվանելով անխելք ու չարամիտ նրանց, ովքեր իրեն խորհուրդ էին տվել և դրդել Դամիանոսի ոտքի տակը փորել, ասելով. «Ես պետք եղածից ավելի հավատք ընծայեցի նրանց և մի աղվես դուրս շպրտելով, նրա տեղ մի առյուծ ներս բերեցի, որը մեզ բոլորիս լափելու է ու կուլ տալու»։

17. Միքայել կայսրը իր մորեղբայր կեսար Վարդասի հետ արշավանքի էր դուրս եկել դեպի Կրետե։ Կեսարը սկսել էր ավելի խիստ քաղաքականություն վարել, իրեն վերապահում էր շատ ավելի լայն իրավունքներ և հրամաններ արձակում։ Այդ պատճառով կեսարի դեմ ավելի հաճախ էին բողոքներ հղվում Միքայել կայսեր։ Երբ նրանք հասան Կեպոյ վայրը (այն գտնվում է Թրակեսիոն բանակաթեմում, Մեանդրոս գետի ափին), կամ պատահմամբ, կամ էլ շտապողականության պատճառով կայսեր վրանը խփվեց տափարակ և ցածրադիր վայրում, իսկ կեսարի վրանը՝ ցից և բարձր տեղում։ Նրանք, ովքեր դեռ վաղուց չէին կարողանում կեսարին հանդուրժել և ատում էին նրան, ուզեցին օգտվել առիթից և բազում մեղադրանքներ բարդեցին նրա վրա, թե նա այն աստիճան է ամբարտավանացել, որ սկսել է բացահայտորեն անարգել ինքնակալին, որ փառասիրությունը նրան հասցրել է այնտեղ, որ, չբավարարվելով մինչ այդ արածով, ջանացել է, որպեսզի ինքնակալի վրանը ցածր և հասարակ երևա, իսկ սեփականը՝ ամեն տեղից նկատվող և բարձր։ Կայսրը հավատաց նրանց խոսքերին և միացավ նրա դեմ կազմակերպված դավադրության, համաձայնվեց նրան սպանելու մտքին ու վճռին։ Բայց և այնպես նա ի վիճակի չէր բացահայտ նրա դեմ որևէ բան ասելու կամ արտահայտելու, որովհետև կեսարը փաստորեն իրեն հավասար դիրք էր գրավում, մի չափ իշխանության մասնակից էր, ապա և այն պատճառով, որ բոլորը վախենում էին նրա հետերիայից՝ թիկնապահ զորքից և կազմակերպությունից. բոլոր իշխանավորներն ու զորավարները նրա կողմնակիցներն էին, նրան էին ենթարկվում, քան կայսեր, քանզի նա ավելի հմուտ էր պետական գործերում և բոլոր հարցերին ճիշտ լուծում էր տալիս, և, որ ամենակարևորն է, կեսարի որդին՝ անթիպատ պատրիկ Անտիգոնոսը այն ժամանակ կայսերական սխոլերի դոմեստիկոսն էր։ Հակառակ դրան, կայսրը գտավ այնպիսի մարդկանց, որոնք միացան իր ծրագրին և խոստացան իրականացնել կեսարի սպանությունը։ Առավոտյան, ընդունված կարգի համաձայն, կեսարը, թեև վատ նա-

խաղգացումներ ուներ, եկավ կայսեր վրանը, իրենց անելիքի շուրջը խորհրդակցելու։ Կայսրը ենթադրելով, որ նրան սպանելու համար աոիթը ներկայացել է, նշան արեց պատրիկ Սմբատին[51], որն այն ժամանակ դրոմոսի լոգոթետն էր (նա կեսարի փեսան էր, ամուսնացել էր նրա դստեր հետ և համամիտ էր կեսարի կյանքի դեմ ուղղված ծրագրին), որպեսզի նա գնա և ներս բերի նրանց, ովքեր պետք է կեսարին սպանեին։ Նա դուրս եկավ, տվեց նախապես որոշված ազդանշանը, այն է՝ դեմքը խաչակնքեց, բայց սպանությունն ի կատար ածողները վախկոտ գտնվելով երկյուղեցին, այդ սարսափելի ու ահավոր արարքը կատարելու պահին վարանեցին և այդպիսով, ժամանակ վատնվեց։ Կայսրն ընկավ անելանելի վիճակի մեջ. արքունիքի ինչ-որ սպասավորի միջոցով նա իմացավ, որ նրանք վախեցել են, վհատվել, որ որոշել են գործը հետաձգել, գործ, որ միայն խիղախ միտքն ու խելքը, քաջությունը կարող է իսկապես իրագործել։ Կայսրը իր հավատարիմ մարդկանցից մեկին ուղարկում է պարակիմոմենոս պատրիկ Վասիլի մոտ և երկյուղով հայտնում նրան, որ եթե անհապաղ չքաջալերես այս ձեռնարկության համար նախատեսված մարդկանց և չդրդես նրանց իսկույն գործի անցնել, ապա հաստատ գիտեմ, որ ես եմ սպանվելու նրա կողմից, քանզի անհնարին բան է, որ նա չիմանա իմ՝ իր դեմ ծրագրածը և վերջին հաշվով փաստորեն դուք կլինեք ինձ սպանողները ու խողխողողները։ Վասիլը, լսելով այդ, անհանգստացավ, որ հանկարծ դժբախտություն կպատահի. նա ավելի համարձակ դարձրեց վախկոտներին, երկչոտներին՝ քաջարի և դրդեց ի կատար ածել կայսեր ծրագիրը։ Նրանք կարծես մոլեգնած, իսկույն խուժեցին կայսեր վրանը։ Կեսարին պարզ դարձավ, և դա իհարկե այդպես է, որ իր վրա են նրանք գալիս և ընկավ կայսեր ոտքերին։ Դավադիրները նրան քաշեցին այնտեղից և կայսեր ներկայությամբ սրախողխող արեցին[52]։ Ապրիլ ամսի տասնմեկն էր, ինդիկտիոնի տասնչորսերորդ տարին։ Կայսրն իսկույն չեղյալ է հայտարարում արշավանքը և վերադառնում թագավորանիստ քաղաքը։

18. Նախախնամությունը Վասիլին խոհեմորեն առաջ էր մղում ցանկացած ուղղությամբ։ Արշավանքից վերադառնալուց անմիջապես հետո կայսրը որդեգրում է նրան (ինքը ոչ մի երեխա չուներ) և արժանացնում մագիստրոսի ամենափառավոր պատվաստիճանին։ Լոգոթետ Սմբատը այդ առիթով նախանձից պայթում էր։ Չկարողանալով տեսնել օրեցօր բարգավաճող և իր նախանձը գրգռող մարդուն՝ պատճառաբանելով, որ չի կարող այլևս թագավորանիստ քաղաքում ապրել, նա հրաժարվում է իր զբաղեցրած պաշտոնից և խնդրում Հոնիայի, այ-

սինքն՝ Թրակեսիոն բանակաթեմի զորավարությունը։ Կայսրը ընդառաջեց խնդրանքին և նրան նշանակեց նշյալ բանակաթեմի զորավար։ Փոքր անց պետական գործերը սկսեցին սպառնադին ալեկոծվել, իշխանությունը ցնցվում էր, փնտրում իրեն կայունացնողին։ Կայսրը ամեն ինչի ընդունակ էր, բացի պետական գործերն ինչպես հարկն է տնօրինելուց։ Անցյալում նա շատ բանի մասին գաղափար չուներ, իշխանության խնամակալ կեսարը պետք եղածն անում էր, և փաստորեն նրա ձեռքում էին գտնվում պետական գործերը և երկրի կառավարման ամբողջ հոգսը։ Այժմ և՛ սենատորները, և՛ պետական գործիչները, գրեթե բոլորը, ովքեր պետական գործերի հետ որևէ առնչություն ունեին, ապա նաև զորքն ու ամբողջ քաղաքային բնակչությունը դժգոհություն էին արտահայտում և բողոքում կայսեր դեմ։ Կայսրն իր մտերմագույն մարդկանցից իմացավ այդ մասին և կարծես մի փոքր սթափվեց։ Նա համոզվեց ոչ միայն իր՝ դեպի հասարակաց գործերն ունեցած անհոգ ու անգոսնելի վերաբերմունքի, այլև իր անընդունակության մասին։ Նա վախեցավ, որ ամբոխը խռովություն և ապստամբություն կբարձրացնի, ուստի որոշեց իշխանության և պետական գործերի աջակից ունենալ և քանի որ մի փոքր առաջ որդեգրել էր Վասիլին, որին համարում էր ոչ միայն քաջ, այլև շատ խոհեմ մարդ և համոզված էր, որ նա կարող է դարմանել երկրի կառավարման գործում իր ունեցած անընդունակությունը, բացի այդ, քանի որ այդ բանին էր մղում նաև աստվածային նախախնամությունը, նա հաստատում է իր որոշումը՝ Վասիլին կայսր հայտարարելու մասին։ Այն պատճառով, որ նման մտադրության իրականացմանը համագործակցում էր աստված, սուրբ Պենտեկոստեի օրը, երբ Հոր Մխիթարիչ Հոգին նստեց մեր Քրիստոս աստծո աշակերտների վրա, աստվածային իմաստության անունը կրող հռչակավոր տաճարում[53] Վասիլի գլխին դրվում է թագավորական թագը՝ ձեռամբ օրվա կայսր Միքայելի, և ընտրությամբ ու որոշմամբ Քրիստոսի՝ հավիտենական թագավորի։ Մայիս ամսվա քսանմեկն էր, հռոմայեցիների ինդիկտիոնի տասնչորսերորդ տարին[54]։

19. Սմբատն իր կառավարած բանակաթեմում իմանալով այդ դեպքի մասին, չկարողացավ իրեն կրծոտող նախանձը մարդավայել զսպել և իր նման մի ուրիշ մոլեգինի, Օպսիկիոն բանակաթեմի զորավար պատրիկ Պեգանի[55] հետ վճռում են ապստամբություն բարձրացնել և անմտորեն խռովություն կազմակերպել։ Նրանք համոզում են իրենց ենթակա զորքերին, դիմում գործի և որպեսզի ժողովրդական զանգվածներին խաբեն, ցույց տան, որ ապստամբությունն ուղղված

չէ կայսեր դեմ, փառաբանում են Միքայելին, իսկ Վասիլին նախատում և նրա հասցեին բյուր լուտանքներ թափում։ Ահա նման հիմարություններով ամբարտավանացած, ամառ ժամանակ նրանք Թագավորանիստ քաղաքում ապրող բազմաթիվ զինատների[56] ագարակները կրակի են տալիս, գրավում նավահանգիստներում գտնվող բազմաթիվ նավեր, որոնք նավարկում էին դեպի Թագավորանիստ քաղաքը և հրկիզում։ Բայց երբ վրա հասավ ձմեռը, խռովարարները քիչ-քիչ և գաղտագողի փախուստի դիմեցին ու ցրվեցին։ Չարագործության պարագլուխները, տեսնելով այդ բանը, փորձեցին փրկություն գտնել՝ փախուստի դիմելով։ Սմբատն ապաստանում է Տափակ Քար[57] կոչվող ամրոցում, իսկ Պեգանն ամրանում է Կոտիայոնում[58]։ Բայց դա չփրկեց նրանց։ Կայսեր մարդիկ ձերբակալեցին նրանց և շղթայակապ բերեցին նրա մոտ։ Կայսրն այն ժամանակ գտնվում էր սուրբ Մամասի պալատներում։ Տեսնելով նրանց, շատ սպառնաց ու պախարակեց նրանց հիմարությունն ու ըմբոստությունը, սաստիկ գանահարության ենթարկեց և դատի տվեց։ Սմբատի աչքերը կուրացրին, մեկ ձեռքը կտրեցին ու աքսորեցին, իսկ Պեգանին նույնպես աչքերը խավարեցրին. Բրով կտրեցին նաև քիթը և նմանապես աքսորեցին[59]։ Ազնվազարմ կայսր Վասիլը, երբ իր ձեռքը վերցրեց միանիշխանությունը, սրանց աքսորից վերադարձրեց, պատվեց նվերներով, ինչպես նախքան ապստամբությունը բարձրացնելը, ոչ մի հիշաչարություն չցուցաբերեց նրանց հանդեպ։ Նա հաճախ մինչև անգամ նրանց հետ սեղան էր նստում և մխիթարում, բարերարություններով թեթևացնում անմտությամբ իրենց գլխին բերած փորձանքի բեռը։

Բայց այդ տեղի ունեցավ հետագայում։ Այն ժամանակ իրականացավ երեք հարյուր հիսուն տարի առաջ ամենահեռատես քահանա և վանական, ծագումով նույնպես Արշակունի Իսահակի կանխագուշակումը և մարգարեությունը։ Նա տեսիլք էր տեսել և իմացել, որ այդքան ժամանակ անց Արշակի շառավիղներից մեկը պետք է կրի Հռոմեական կայսրության գայիսոնը[60]։ Այդ բանը տեղի ունեցավ իշխանավորների, ամբողջ ժողովրդի, զորքի և զորավարների, հռոմեական տիրապետության բոլոր շրջանների և քաղաքների բնակչության ցանկությամբ։ Քանզի բոլորն էին մաղթում, որ իշխանության գլուխ անցնի փոքր-ինչ բախտ ունեցող անձնավորություն, որ տեղյակ լիներ, թե ինչպես մեծահարուստ մարդիկ ճնշում են չքավորներին, անօրեն կերպով կեղեքում նրան, գիտենար, որ նրանք քայքայման եզրին են հասել, և թե ինչպես են ցեղակիցները ստրկացվում։ Այդպիսին էր վիճա-

կը Միքայելի թագավորության ժամանակ, և դրա պատճառն այն էր, որ կայսրը առավելապես ուրիշ գործերով էր տարված և ցանկություն չուներ նման բաներով հետաքրքրվելու։

20. Արդ, քանի որ խոսքը դրան հասավ, ապա նպատակահարմար եմ գտնում մի փոքր ընդհատել Վասիլ կայսեր պատմությունը և սկըզբից համառոտակի պատմել Միքայել կայսեր կենցաղավարության մասին, ցույց տալ, թե ինչպիսի հակումներ ուներ նա, ինչի վրա էր վատնում իր ամբողջ ժամանակը, եռանդն ու պետական դրամները, որպեսզի իմանալ ցանկացող ամեն մարդ համոզվի, որ Վասիլի իշխանության գլուխ գալը հիրավի ի վերուստ էր (այլ կերպ հնարավոր չէր վիճակը բարելավել), որ ինքը՝ Միքայելն էր պատճառը, որ իրեն՝ Միքայելի դեմ սուր ճոճեն, հենց ինքն էր, որ հզորացրեց իրեն սպանողների աջը և մղեց իրեն սպանելու։ Նա անչափ թերացավ իր պարտականությունների մեջ և ծայրաստիճան անօրեն ու խայտառակ կյանք սկսեց վարել. Նա ծաղր ու ծանակի ենթարկեց ու անարգեց անգամ սրբությունները, պետությունը, բնության օրենքները։ Նա իր շուրջ հավաքեց լպիրշ, պիղծ, չարանենգ մարդկանց մի ամբողջ ոհմակ, խայտառակեց թագավորական մեծության վեհ անունը։ Թշվառականն իրեն տվեց զվարճությունների, հարբեցողության, հակաբնական խառնակությունների, խայտառակ պատմություններ պատմելուն, այլա նաև տարվեց ձիավարությամբ և ձիարշավարանով և դրանից բխող մոլեգնության և խելագարության։ Նման մարդկանց վրա էր նա չարաչար ծախսում պետության դրամները։ Եվ որ ամենից սարսափելին է, նա այպանում և ծաղրուծանակի էր ենթարկում մեր հավատքի նշանակները՝ իրեն շրջապատող ծաղրածուներին և խայտառակ մարդկանց մեր բարեպաշտ քահանաների սքեմը հագցնելով։ Նա ծաղրի, հեգնանքի և ծիծաղի արժանի համարեց դրանք։ Ես մի քանի դեպք կպատմեմ, որպեսզի այդ քչից դուք պարդ պատկերացում ունենաք։

21. Նա կառավար էր ու, կառապանի համազգեստ հագած, նըստում էր ձի լծած կառքի վրա և մրցակիցների հետ մրցում վազքուղիներում, մայրաքաղաքում և պալատում, ապա նաև դրսում՝ Մամաս վկայի վանքի մոտ գտնվող արքայական կացարաններում՝ այդ բանի վրա հսկայական գումարներ վատնելով։ Զինվորականները վերածվեցին թատերական գործիչների, և հռոմեական գանձերը փոխանակ զորքերի վրա ծախսվելու, հոսում էին թատերական ներկայացումների վրա և դեպի շաղակրատների հավաքատեղիները։ Կայսերական գանձերը շռայլվում էին և առատորեն ծախսվում լպիրշ, անօրեն գինարբուքների

և անառակությունների վրա, և որովհետև այդ մասին բոլորը գիտեն ու տեղյակ են, դրա վրա կանգ չեմ առնում։ Ես այժմ կպատմեմ, թե ինչպես նա ծաղրուծանակի էր ենթարկում սրբությունները։ Իր ընկերներից՝ պիղծ ու լպիրշ իգացողներից մեկին պատրիարք անվանեց, իսկ նման տասնմեկ հոգու մետրոպոլիտ հորջորջեց, ինքն էլ դարձավ տասներկուերորդը։ Այդ մասին ես հիմա կասեմ։ Նա այդ անիծյալ և ամենապիղծ Գրյուլլոսին պատրիարք կոչեց, քահանայապետական ոսկեզօծ և գերափայլ հանդերձանքը հագցրեց և նրա ուսին գցեց եմիփորոն։ Նա, ինչպես ասվեց, ուրիշ տասնմեկ հոգու մետրոպոլիտ կարգեց և իր այդ համախոհներից մի խումբ ստեղծեց, իսկ որպես տասներկուերորդ՝ իրեն Կոլոնիայի արքեպիսկոպոս հորջորջեց։ Նա յուրաքանչյուրին տվեց մի-մի կիթառ՝ քահանայական հանդերձանքի տակից կրելու համար, և հրամայեց հագուստի տակից նվագել։ Այդպիսով, նրանց հետ ծաղր ու պարով իբրև թե սուրբ խորհուրդներն ու պատարագն էր կատարում ու մատուցում պիղծերի մեջ ամենապիղծը և ամբարիշտների մեջ ամենաամբարիշտը։ Երբ իբրև թե խորհրդավոր աղոթքն էր ասվում, պետք է որ կիթառները ավելի մեղմ նվագակցեին, իսկ երբ քահանայի՝ ժողովրդին դիմելու պահն էր գալիս և ժողովրդի՝ նրան պատասխանելու, ապա պետք էր, որ կիթառները բարձր հնչեին, որպեսզի նրանց մեղեդին բոլորը լսեին։ Ապա մանանեխ և քացախ լցնելով արծաթե և ոսկե, թանկագին քարերով և մարգարիտներով ագուցված սրբազան անոթների մեջ, անոթներ, որոնք սուրբ արարողությունների ընթացքում արդեն բազմիցս օգտագործվել էին, հաղորդություն էին տալիս իրենց նմաններին՝ ծիծաղով և անամոթ խոսքերով, զզվելի ու գարշելի շարժուձևերով։

22. Մի անգամ, երբ սրբազնագույն պատրիարք Իգնատիոսը իր եկեղեցական համայն դասով ու խմբով քաղաքում սովորական երգեցողությամբ ու կարգ ու կանոնով թափոր կազմած գնում էր դեպի ինչ-որ տաճար, հանդիպում է դիմացից եկող կայսեր ամբարիշտ և պիղծ հրոսակապետ Գրյուլլոսին, որը հոգևորականի զգեստ էր հագել և էշ հեծել՝ իր ամբարշտագույն մետրոպոլիտների, իր ողջ թատերախմբի. սատիրների ոհմակի ու խմբի ուղեկցությամբ. որոնք իրենց արարքները գուսանների պես երգում էին։ Երբ մոտեցան Իգնատիոսին, վեր բարձրացրին իրենց փիլոնները, ավելի բարձր հնչեցրին կիթառները և սուրբ երգի եղանակով սկսեցին պոռնկական խոսքեր արտասանել ու երգեր երգել, Պանի ու Սատիրոսի պարեր պարել ու թմբկահարել և, հոգևորականներին ու քահանայապետին, որպես իրենց հա-

կառակորդների, ծաղրուծանակի ենթարկելով, շարունակեցին իրենց ապաշխարհական խմբապարն ու թափորը։ Աստծո քահանայապետը հետաքրքրվեց, թե ովքե՞ր են սրանք, ո՞ւմ դրդմամբ և ի՞նչ առիթով էին հավաքվել և իմանալով, շատ խոր հառաչեց, ողբաց նրանց պարսգրլխին ու գլխավոր մեղավորին, արտասվալից պաղատեց աստծուն, որ վերջ տա նման ամբարշտության և խայտառակության, տարտարոս ուղարկի ամբարիշտներին, որպեսզի սրբությունները չպղծվեն, խորհուրդները ծաղրուծանակի չենթարկվեն և, շարունակելով շարականը, ճանապարհ ընկավ։

23. Մի ուրիշ անգամ էլ այս անմիտ և խելակորույս կայսրը, իբրև թե երանելի պատրիարք Իգնատիոսին անարգելու, ինչպես և իր մոր[61] ծանակելու մտադրությամբ, այսպիսի մի բան մտահղացավ։ Նա պայծառագույն Խրիստոտրիկլինում կայսերական գահի վրա բազմեց և իրեն շատ մոտիկ, որպես իրական պատրիարքի, նստեցրեց քահանայապետական հանդերձանքը հագած ամենախայտառակ Գրյուլլոսին՝ ցուցաբերելով դեպի նա աստծո քահանայապետին վայել պատիվներ։ Ապա գլխաշորով թաքցրեց Գրյուլլոսի գարշելի մորուքը և ներքինի սենեկապաններից մեկի միջոցով հայտնեց իր մոր, թե սրբագնագույն պատրիարք Իգնատիոսը այստեղ է՝ իր մոտ նստած, և եթե ուզում ես արժանանալ նրա աղոթքին, ե՛կ և ինձ հետ միասին ստացիր։ Բարեպաշտ և աստվածասեր կինը, որ անչափ սեր և ջերմ հավատք էր տածում դեպի սրբագնագույն Իգնատիոսը, երբ լսեց այդ մասին, շտապեց այնտեղ։ Նա ամոթխածությունից չհանդգնեց նրա դեմքին նայել անգամ։ Ստորության մասին անտեղյակ, նա ընկավ, ինչպես ինքն էր կարծում, այդ սուրբ քահանայապետի ոտքերը և պաղատեց աղոթել իր համար։ Իսկ ամենապիղծը աթոռից մի փոքր բարձրացավ, մեջքը շուռ տվեց կնոջը և գարշելի նստատեղից էշի զռռոց հանեց, ասելով նրան, թե, տիրուհի, հանկարծ չասես, թե քեզ սրան էլ չարժանացրինք։ Կայսրը՝ ամենախայտառակը, քահ-քահ արեց, մի կուշտ ծիծաղեց։ Նրանք երկուսով շատ հոհռացին, ավելի ճիշտ, խելքները թռցրած, հիմարություններ դուրս տվեցին։ Կայսրուհին հասկացավ խաբեությունն ու նենգությունը, խոր հառաչեց եղածի համար և, բազում անեծք թափելով որդու գլխին, վերջը ասաց նրան. «Ահա, չար որդի, աստված վերցրեց իր ձեռքը քո վրայից և տվեց քեզ անպետք ուղեղ, որպեսզի անվայել գործեր անես»։ Այդ ասելուց հետո լաց ու կոծով, մազերը փետելով հեռացավ։ Ահա այդ ազնվական կայսեր երեխայությունները, այս-

պիսին էր սրբությունների և սուրբ մարդկանց հանդեպ նրա ունեցած հարգանքն ու ակնածանքը։

24. Ամեն օրահա նման և ավելի վատ բաների վրա էր նա իր թագավորության ժամանակը վատնում։ Վասիլին ընդունելուց և նրան բարձր դիրքի արժանացնելուց հետո էլ նա շարունակում էր նույնն անել։ Վասիլն իր տեսածից ու լսածից շատ էր դժգոհում ու տխրում, ուզում էր կյանքին վերջ տալ։ Ցանկանալով ամեն մի հնարավոր օգնություն ցուցաբերած լինել, հոգ տանելով բաց չթողնել որևէ հնարավորություն, որ կարող էր օգտակար լինել վիճակն ուղղելու, նա փորձեց ուրիշների միջոցով կայսեր հեռու պահել նման բաներից և ճիշտ ուղու վրա բերել, իսկ այնուհետև հանդգնեց նույնիսկ անձնապես, սեփական մղումով խոհեմորեն խրատել կայսեր, որպեսզի հնարավորին չափ հեռու պահեր նրան նման ամբարիշտ արարքներից։ Նա հեզ ու խոնարհ ձևով ասաց նրան. «Ո՛վ տեր և կայսր. ես որ արժանացել եմ քո այսքան բարերարություններին, պարգևներին, պարտավոր եմ զգում անհրաժեշտ խորհուրդը տալ, առաջարկել լավագույնը, հիշեցնել օգտակարի և փրկարարի մասին։ Ամբողջ քաղաքն ու սենատը ատում են մեզ, իմացիր, ո՛վ տեր, ատում են» (նա իրեն էլ ատելիների թվին էր դասում, թեև նրա հրեշավոր արարքներից և ոչ մեկի հետ առնչություն չուներ)։ «Աստծո քահանայապետերը անիծել են մեզ, բոլորը մեզ պախարակում են ու վարսավում։ Եթե մենք մի պահ կարող ենք մարդկային երկյուղն արհամարհել, բայց աստծո ցասումից չենք կարող չսարսափել և չերկյուղել, ե՛կ չփորձենք նրա զայրույթն ու բարկությունը»։ Բայց նրա խրատը քար ցանել էր[62], ծովի հետ խոսել և եթովպացուն սպիտակեցնելու փորձ անել, որովհետև ստորությունը մինչև ուղն ու ծուծն էր ներծծվել։ Նա խուլ էր ամեն մի փրկարար խոսքի հանդեպ, փակել էր իր ականջները, ինչպես իժը՝ երգերի հանդեպ։ Նա ոչ միայն չփոխվեց, ընդհակառակը, սկսեց ատել Վասիլին, խորշել նրանից և իր նման սրիկա ընկերների հետ նրան զրպարտում էր ու ծաղրում, հասկացնել էր տալիս, որ ինքը սառել է Վասիլից, մի բան, որ նա սկսեց բացահայտ ցույց տալ։ Զազրելիներն ու ամբարտավանները, իմանալով իրերի դրության մասին, լարվեցին Վասիլի դեմ, հորինեցին մեղադրանքներ, իրենց թշնամանքը վարպետորեն քողարկելով։ Նրա համեստությունը քմահաճություն էին անվանում, հաճույքներին մասնակից չլինելը՝ թշնամանք, իսկ իրենց հետ չմեղսագործելը արհամարհանքի հետ կապեցին։ «Նա ինչպե՞ս կարող է քեզ սիրել,—ասում էին նրանք կայսեր,—եթե չի ուրախանում քո ուրա-

խումբյամբ, եթե չի ուզում քեզ հաճույք պատճառած լինել։ Կայսրը տեղի տվեց նրանց խոսքերի առաջ, հավատաց նրանց ասածին և որոշեց Վասիլին սպանել։ Նա այդ բանն իրականացնելու համար առիթ էր որոնում, բայց չէր գտնում։ Կայսրն այն աստիճան մոլեգին դարձավ, որ նույնիսկ որոշեց գաղտագողի սպանել նրան և ոճրագործ հրոսակախմբից մի քանիսին, որոնց ամեն ինչ վստահում էր, դրդեց, որ երբ դուրս գան որսի, գազանին նիզակահարելու պատրվակի տակ Վասիլի վրա նետեն նիզակը և սպանեն։ Պատմում են, որ մեկը այդպես էլ արեց, նրա վրա շպրտեց նիզակը, որը սակայն վրիպեց և կողքից անցնելով խրվեց գետնի մեջ, իսկ նիզակը նետողի ձին, հանկարծակի սանձակոտոր լինելով, սլացավ ու հեծյալին անդունդ գլորեց, որտեղ նա մահացավ[63]։ Պատմում են, որ նա մահամերձ վիճակում, թեև ուշացած, զղջաց իր արածը և ընկերներին պատվիրեց այդ անմեղ մարդու հանդեպ այլևս չհամարձակվեն որևէ ոճիր գործել, թե չէ իրենք էլ կարժանանան իր վախճանին։ Նա կանչեց մի բարեպաշտ մարդու և իր՝ մինչ այդ գործած այլ մեղքերի ու անօրինությունների թվում խոստովանեց և այս մեկը։

25. Երբ կայսրը չկարողացավ նրան սպանելու որևէ առիթ կամ պատճառ գտնել, մի ուրիշ նենգ ու անօրեն քայլի դիմեց։ Նա որոշեց կայսերակից ունենալ և այդ ոճրագործ հրոսակախմբի անդամներից մեկին՝ Վասիլիկինոսին, մի թշվառական, պիղծ, կուրտ ու ցոփ մարդու, ծագումով Նիկոմիդացի, հետագայում երկիցս հյուպարքոսի պաշտոնը վարած Կոստանդին Կապնոգենեսի եղբորը, այդ պատվին արժանացրեց։ Նա այն ժամանակ ծառայում էր կայսերական տրիերայում որպես թիավար։ Միքայելն ահա, այս տխրահռչակ Վասիլիկինոսի գլխին հոյակապ ու նախանձելի թագ դրեց, հագցրեց կայսերական փառավոր ծիրանին, ամբողջությամբ ոսկեթել քղամիդը, կարմիր, թանկագին քարերով ագուցված կոշիկներն ու կայսերական մյուս նշանակները[64] և ձեռքից բռնած ներկայացրեց սենատին՝ սլասավորելով նրան, ինչպես հնում Ներոնը՝ համբավավոր էրոսին, և բառացի ասաց հետևյալը.

«Տեսե՛ք բոլորդ և հիացեք, մի՞թե արժանի չէ նա կայսր լինելու։ Նախ իր արտաքինն է կոչում իշխանության, ապա և թագը կարծես գլխի հետ մի մարմին է։ Նրա ամեն ինչը համապատասխանում է այդ պատվին։ Ինչքան ավելի նպատակահարմար է սրան դարձնեմ կայսր, քան թե Վասիլին»[65]։

Պալատականները նման բաների ականատես և ականջալուր լինե-

լով՝ շփոթվեցին, ապշեցին խելակորույս կայսեր անխելքության և հիմարության վրա։ Չափ ու սահման չունեցող հարբեցողությունը, անօրեն և զազրելի կենցաղավարությունը խելագար էին դարձրել նրան և շարքից հանել։

26. Նրան բնորոշ էին ոչ միայն հաճույքների սիրահար Դիոնիսոսի[66] ուրախ, անհոգ, կնատ, անչափ փափկակյաց, խելքը կորցնելու աստիճան հարբեցողությամբ տարվելու հատկությունները, Դիոնիսոսի, որին աշխատում էր նմանվել։ Նա միաժամանակ ուներ նաև էրինիաների և Տիտանների[67] արյունռուշտ հատկանիշները. շատ հաճախ զվարճալի խնջույքը ողբերգությամբ էր վերջանում։ Գինուց և ուրախությունից հարբած՝ նա անօրինաբար գլորվում էր ամեն տեսակ ամբարշտությունների մեջ։ Երբ նա գիտակցությունը կորցնելու չափ հարբած էր լինում, ցնորվում էր այն աստիճան, որ սկսում էր ոճիրներ գործել, անմեղ մարդկանց դատապարտել հրեշային պատիժների և մահվան։ Նա հրամայում էր սպասավորներին, թե սրան ու նրան ձերբակալեցեք և հանձնեցեք դահճին, մի ուրիշի՝ աչքերը հանեցեք, մի այլի՝ ձեռքերն ու ոտքերը կտրեցեք, այս մեկին գլխատեցեք, մյուսին՝ ողջակեզ արեք։ Սպասավորները գիտենալով, որ նա ցնորված վիճակում է վճիռներ արձակում, կալանավորում էին խնդրո առարկա մարդկանց, բայց վճիռն ի կատար չէին ածում։ Բայց հաճախ պատահում էր, որ նրանք ձերբակալվածներից որևէ մեկի հանդեպ վատ տրամադրված լինելով, օգտվում էին կայսեր հրամանից և անմեղ մարդուն պատժում։ Սպասավորներն այնուհետև գիտակցությունը կորցրած այդ ողորմելի թշվառականին պառկեցնում էին խոզավորական մահճին, և նա ստրկի նման հանձնվում էր մահվան հարևանին՝ քնին[68]։ Լուսաբացին, երբ արդեն գինու գոլորշիներն ու թանձր խավարը ցրվում էին նրա ուղեղից, նա վեր էր կենում, բայց երեկոյան տեղի ունեցածի մասին ոչինչ չէր հիշում։ Նա հաճախ ուզում էր տեսնել նրանց, որոնց իր հարբած ժամանակ մահվան էր դատապարտել։ Թիկնապահներից և սպասավորներից իմանալով նրանց հանդեպ իր ընդունած վճռի մասին, նա զղջում էր և հառաչում։ Լինում էին դեպքեր, երբ իր փնտրած մարդիկ գտնվում էին, բայց պատահում էր և այնպես, երբ իր անօրինությունների համար զղջալն ավելորդ էր, քանի որ դատապարտվածներից ոմանք արդեն մահապատժի էին ենթարկված։ Երբ նորից էր երեկոն վրա հասնում, նա մինչև ուշ գիշեր սաստիկ հարբում էր, և կրկնվում էր նույն պատմությունը՝ չարագործություն և զազրագործություն։ Արդ, կա՞ արդյոք մեկը, ով անգամ քարե սիրտ ունենա, անզգամ լինի, որ լսելով այս

բոլորի մասին՝ չվրդովվի, նրա մեջ չբորբոքվի անմեղ տեղը ղոհվողների վրեժն առնելու զգացումը։ Ինձ թվում է, որ աշխարհի ամենահեզ մարդն անգամ՝ Դավիթը[69], չէր դիմանա այդ տականքի այս աստիճան սանձարձակ հարբեցողությանը։ Չի կարելի մեծահոգի լինել ապուշության և անզգամության հանդեպ։

27. Երբ կուտակված դրամը նման ձևով գրեթե ամբողջությամբ սպառվեց, անհրաժեշտություն առաջացավ առավել ևս ծանրացնել հարկատուների բեռը, բռնագրավել նրանց ունեցվածքը, որպեսզի կայսրը կառավարների, պոռնիկների և անառակ մարդկանց վրա ծախսելու միջոցներ ունենա։ Իր հոր՝ Թեոփիլոսի թողած և կայսերական գանձարանում պահվող ինը հարյուր յոթանասուն կենտինար[70] հնչուն ոսկին, չհաշված արծաթը, ապա և այդ բոլորի վրա իր մոր՝ Թեոդորայի ավելացրած երեսուն կենտինարը, որով կլորացավ հազար կենտինար գումարը, իր միահեծան իշխանության ոչ լրիվ տասնչորս տարվա ընթացքում ծախսեց ու շռայլեց։ Նրա մահից հետո ընդամենը երեք կենտինար[71] միայն գտնվեց։ Ով ինչպե՞ս չէր ցամաքի այն, եթե անգամ գետի պես հոսեր, երբ այդպես անամոթաբար և անառակորեն այն ցրիվ էր տրվում։ Քիլաս կոչվող կառավարի որդուն, մի անգամ ընդունելով, ամբողջ մի կենտինար նվիրեց։ Պատրիկ Հեմերիոսին, որին տգեղության պատճառով կայսրը խոզ էր անվանում (եթե նկատի առնենք նրա խոզավայել, աղտեղի կենցաղավարությունը, իսկապես որ արժանի էր նման ածականի), այն բանի համար, որ մի անգամ իր ներկայությամբ այնպես արտասովոր հայհոյել և փողոցայինի պես շաղակրատել էր, այն բանի համար, որ շիկնելու հատկությունը բացարձակապես կորցրած, ոչ մի անամոթության առաջ կանգ չառավ և իր գարշելի նստատեղից անչափ ուժեղ որոտ բաց թողեց, այնքան ուժեղ և սաստիկ, որ նույնիսկ հանգցրեց վառված ջահը, ահա այդ բոլորի համար նրան հիսուն լիտր պարգև շնորհեց, կարծես նա հերակլյան ինչ-որ սխրանք գործած լիներ։ Նրա նմաններին էլ նա այդպես չափից դուրս պարգևներ էր տալիս։ Եթե այդպես վարվեր զինվորների, երկրի պաշտպանների, արժանի մարդկանց նկատմամբ, եթե նա այդպիսի պատրաստակամություն ցուցաբերեր իրենց լավ գործերով աչքի ընկած մարդկանց նկատմամբ, կարելի էր դա մեծահոգության, առատաձեռնության, պատվասիրության արտահայտություն համարել։ Բայց երբ դրամը անհիտ կերպով ցրիվ էր տրվում միմոսներին, կառավարներին, պարողներին, զազրախոսներին, շողոքորթներին և ամեն տեսակ աղտեղությամբ լի մարդկանց, իսկ կարևոր գործերի վրա մեկ օրոլոս[72]

անգամ չէր ծախսվում, ապա դա ապացույց է շռայլության, հիմարության և ապուշության: Երբ դրամն սպառվեց, ինչպես ասվեց, ստիպված սկսեցին տաճարները և բարեգործական հաստատությունները կողոպտել, նրանց ունեցվածքը հափշտակել: Իրենց հարստությամբ աչքի ընկնող բոլոր մարդիկ սպանվում էին ու կոտորվում: Այդ էր պատճառը, որ իշխանության գլուխ կանգնած բոլոր մեծամեծները և սենատի խելամիտ գործիչները համաձայնության գալով, կայսերական ննջասենյակի պահապան զինվորների օգնությամբ, սուրբ վկա Մամասի պալատում սպանում են Միքայելին, նրան, ով այն աստիճան հարբած քուն էր մտել, որ իր սպանվելն անգամ չզգաց: Այնպես, ինչպես մարդիկ, խուսափելով վտանգավոր բնությամբ օժտված կարիճների և իժերի խայթոցից, սպանում են նրանց, ահա այդպես էլ նրանք շտապեցին սպանել Թունալի և ոճրագործ մարդկանց, քանի վերջիններիս կողմից հարված չեն ստացել և չեն սպանվել, համոզված լինելով, որ նրանցից վտանգ է սպառնում: Ահա նման վախճան ունեցավ նա, ով և՛ անձնական կյանքում, և՛ պետական գործերում զազրելի և կործանարար կյանք էր վարում, արժանի իր կենցաղավարությանը[73]:

28. Գերագույն իշխանությունն իսկույն ստանում է մինչ այդ երկրորդ տեղում գտնվող Վասիլը և պատվական սենատի, ստորադրյալ տագմանների, ամբողջ բանակի և քաղաքային ամբոխի կողմից միահեծան ինքնակալ հռչակվում[74], նա, որին նրանք մինչ այդ էլ ցանկանում էին և աստծուց աղերսում իրենց պաղատական աղոթքներով: Նա հենց որ ստացավ միահեծան իշխանությունը, ապավինեց աստծուն, պետության սանձերն էլ նրան հանձնեց, բառացիորեն ասելով հետևյալ աղոթքը. «Քրիստո՛ս, թագավո՛ր, ստանալով թագավորությունը քո կամքով, քեզ եմ հանձնում այն և ինձ»: Ապա անմիջապես կանչեց ամենաերևելի սենատորներին և աստիճանավորներին, նրանց ներկայությամբ բացեց կայսերական գանձարանը, որտեղ հսկայական գումարներից ոչինչ չէր մնացել, բացի այն երեք կենտինարից, որոնց մասին մի փոքր առաջ ասացի: Կայսրը պահանջեց ծախսերի ցուցակը, որ գտնվում էր մի ծերունի ներքինու՝ պրոտոսպաթար Վասիլի մոտ, իմացավ, թե ինչի վրա են ծախսվել դրամները, և այդ հարցը դրեց երևելիների քննարկմանը: Նրանք միահամուռ կերպով պահանջեցին հետ գանձել և պետական գանձարանը վերադարձնել որոշ մարդկանց ապօրինի կերպով ստացած գումարները, բայց կայսրը ծայրահեղության չդիմեց, հրամայեց, որ յուրաքանչյուրը պետական գանձարանը վերադարձնի իր ստացած գումարի կեսը: Այդպիսով, նրանք թեև բո-

*լորովին արժանի չէին որևէ զիջողության, ստացած պարգևներից ահագին բան այնուամենայնիվ իրենց մնաց. կայսերական գանձարանը մուտք գործեց երեք հարյուր կենտինար, որոնք կայսրը սկսեց տնօրինել և ծախսել հրատապ և անհրաժեշտ միջոցառումների վրա։*

*29. Այն օրվանից, երբ Վասիլը տիրացավ միահեծան իշխանության, հռոմեական պետության գործերը շրջվեցին դեպի լավը, Թագավորանիստ քաղաքը հասան բազմաթիվ հաղթանակների ավետիսներ, ավետիսներ բազում ռազմագերիների փրկության մասին, և դա վկայությունն է այդ բանի աստվածահաճո լինելու մասին։ Կայսրը Թափորով գնաց աստվածային իմաստության մեծ տաճարը[75], գոհություն հայտնեց ամեն ինչի համար, իսկ վերադարձին հպատակներին առատ դրամ բաժանեց, բայց ոչ պետական գումարներից (այդպիսիք չկային), այլ իր սեփական, որ նախապես ուներ։ Նրա կինը՝ կայսրուհի Եվդոկիան, որդիների՝ Կոստանդնի և Լևոնի հետ նույնպես իր սեփական գումարներից բազում դրամ նվիրեց բոլոր քաղաքացիներին, թեև այն ժամանակ էլ կայսրը, ինչպես ասվեց, դրամի պակասություն էր զգում։ Իր իշխանության օրոք աստծո օգնությամբ նա ձեռք բերեց և այլ շատ դրամ, ի ողորմություն չքավորների և արդարության։ Իդիկոնում[76] էլ ոսկի հայտնաբերվեց, որ գոյացել էր նախկին կայսր Միքայելին՝ արվեստի լավագույն գործերը հալել տալուց, ես նկատի ունեմ ոսկե սոսին, ոսկեձույլ երկու գրիփոնները, կոփած ոսկե երկու առյուծները, ոսկեձույլ օրգանոնը, սալա և սեղանի զանազան ոսկե առարկաները, կայսերական և օգոստոսական զգեստները, մեծամեծ իշխանների հանդերձները, որոնք բոլորը ոսկե թելերով էին գործված։ Միքայելը այդ բոլորը հալել էր տվել, ինչպես ասվեց, և մտադիր էր իր զվարճությունների վրա ծախսել։ Բայց ավելի շուտ նա մեջտեղից վերացավ, և ոսկին լույս աշխարհ եկավ։ Դրանից դրամ հատեցին կայսեր ամեն տեսակի ծախսերը ծածկելու համար։ Փող է պետք[77], ասում է, առանց փողի ոչ մի անհրաժեշտ բան չես կարող անել։ Այդ մասին կասեմ հետո։*

*30. Երբ աստվածային նախախնամությամբ Վասիլը իր ձեռքը վերցրեց իշխանության ղեկը, ինչպես պատմում են, իսկույն ջանաց ցույց տալ, թե արժանի է այդ բարձր պատվին։ Նա գիշեր-ցերեկ մի բանի մասին էր մտածում, այն, որպեսզի իր բոլոր հպատակների համար որևէ բարեգործություն անի, որպեսզի պետական գործերը ազնվորեն, արմատապես բարեփոխվեն։ Ամենից առաջ նա անկաշառորեն ընտրեց և ղեկավար պաշտոնների նշանակեց իր նման լավագույն մարդ-*

կանց, որոնք, լինելով այդպիսիք, ապա և գիտենալով, որ գտնվում են կայսեր մշտական ուշադրության կենտրոնում, առաջին հերթին մտահոգվեցին սեփական ձեռքերը մաքուր պահել, ամեն տեսակ չարաշահումներից հեռու մնալ, ապա և բոլոր առաքինություններից ավելի արդարությունն ապահովել, ամենուրեք հավասարությունը պաշտպանել, հարուստների կողմից չքավորներին չճնշելն ապահովել, անարդարացի կերպով որևէ մեկին չվնասել, աղքատին ու չքավորին ուժեղից պաշտպանել, մի քիչ շունչ քաշել տալ նրանց ովքեր այնքան փորձանքների էին հանդիպել, որ արդեն հոգեվարքի մեջ էին և մահվան եզրին, նոր ուժ տալ նրանց և աշխատել, որ բոլորը ձեռք բերեն վաղեմի բարեկեցիկ կյանքը։ Նրանց՝ հենց սկզբից ձեռնարկած դրական գործունեության (բոլոր ընտրվածները այդպես լավն էին), կայսեր այդ հարցում ցուցաբերած ջանասիրության և աշալրջության պատճառով, ապա և այն պատճառով, որ նրանք աշխատում էին ամեն ինչում միմյանց գերազանցել, ամենուրեք իսկույն իսպառ վերացավ անարդարությունը, տիրեց բացարձակ արդարությունը, և անցյալում Բրիարեոսի[76] ձեռքերից էլ երկար ձեռքերը, որոնք ձգվում էին ուրիշի ունեցվածքի վրա, թմրեցին ու կարծես կարճացան. աղքատների թուլացած անդամները նոր լիցք ստացան, քանզի յուրաքանչյուրը կարողացավ աներկյուղ մշակել իր հողակտորը, պտուղներ ստանալ իր այգուց, նաև պապենական ձիթենուց, թզենուց, առանց վախենալու, թե որևէ մեկը կարող է սեփականացնել այդ. յուրաքանչյուրը հնարավորություն ստացավ իր սեփական, սլապենական այդ ծառերի ստվերի տակ հանգստանալ։ Բարեպաշտ կայսրը նման վիճակ ստեղծեց իր տիրապետության տակ ապրող հպատակ բոլոր մարդկանց համար, լինեին նրանք գյուղացի, թե քաղաքացի։ Եվ եթե որևէ տեղ գտնվում էր դեռ ինչ-որ չարության ծառ, որ այնքան ամուր էր կանգնած, որ տեղական իշխանությունները ի վիճակի չէին ուղղել կամ արմատախիլ անել, կայսրն անձնապես կամ ուղղում էր այն, կամ որևէ ձևով բուժում։ Գերագույն տերը, նպատակ ունենալով ամեն տեղից բնաջնջել անարդարությունը, օրենքներ հրապարակեց ու ամբողջ երկրով մեկ տարածեց և ժամանակի ընթացքում սովորություն դարձած կաշառակերությունն արմատախիլ արեց ու վերացրեց։ Երկրից արտաքսված իրավահավասարությունը և արդարությունը վերադարձան և սկսեցին գործել կյանքում ու մարդկանց մեջ։

31. Համոզմունքներով ու սկզբունքներով բարեպաշտ և անկաշառ, ապա և փորձառու դատավորներին, որոնք ստիպված էին իրենց գոյության միջոցները հայթայթել դասեր տալով, ամենացածր աստիճանից

բարձրացրեց, տվեց ամենամյա ռոճիկ, ուտեստ և նրանց հաստատեց գրեթե ամեն մի փողոցում և յուրաքանչյուր բարեպաշտ հիմնարկության մեջ։ Կայսրը հոգնաջան աշխատանքով և մեծ ծախսերով մաքրեց, վերանորոգեց հոշակավոր և զարմանահրաշ Խալկե կոչվող շենքը, որը երկար ժամանակի բեռից, ապա և իշխողների անտարբերության, գուցե և հրձիգության պատճառով բազում տեղերից փուլ էր եկել և առաստաղը տուժել. այն ղարձրեց քաղաքացիական դատարան, ավելի հեղինակավոր, քան եղել են Արիոպագոսն ու Հելիեյան[79]։ Անարդարության զոհերին նա արդարության պտուղները վայելել տվեց՝ ոչ միայն ընտրրյալ դատավորներին կյանքի կոչելով և պաշտոններ տալով, այլև հանապազօրյա ուտեստ մատակարարելով այն խեղճերին, ովքեր ուժեղների բռնությունների հետևանքով ստիպված էին լինում շարունակ մայրաքաղաք գալ։ Կայսրը երկյուղելով, որ բողոքարկողներից ոմանք, ուտեստեղենի պակասություն զգալով, կթողնեն-կհեռանան մայրաքաղաքից, նախքան իրենց հարցը դատարանում կլսվեր, բավարար միջոցներ առանձնացրեց՝ կերակրելու համար նրանց այնքան ժամանակ, քանի դեռ չի կայացել դատավորի որոշումը։ Եվ դա դեռ բոլորը չէր։ Նա որոշեց մեկընդմիշտ արմատախիլ անել անարդարությունը և անձամբ ձեռնարկեց այդ գործը։ Երբ նա արշավանքներից և կամ զանազան երկրներից ժամանող դեսպանությունների հետ զբաղվելուց ազատ ժամանակ էր գտնում, դուրս էր գալիս պալատից և գնում այսպես կոչված Գենիկոնը[80], որտեղ էին դիմում ամեն տեղից եկած մարդիկ, բողոքելու իրենց պաշտոնը չարաշահող և անարդարություն գործող պետական հարկահավաքների դեմ։ Այդ դատարանը նման էր հասարակաց պրիտանեյոնին[81], որտեղ մարդիկ դիմում էին իրենց անձնական գործերով։ Կայսրն այստեղ մեծ ջանասիրությամբ ու անչափ հոգատարությամբ քննում էր հարցերը, պաշտպանում անարդարության զոհերին, պաշտոնազրկում անարդարություն գործողներին, և դա արդարացի պատիժ էր, որպեսզի մեկ էլ չհամարձակվեն նման բաներ թույլ տալ։ Պատմում են, որ տարիներ անց կայսրը նման գործերով գնացել էր դատարան, ի պաշտպանություն անարդարության զոհերի։ Դատարանում չկար և ոչ մի բողոքարկող։ Ենթադրելով, որ մարդիկ քաշվում են իր մոտ գալ, թիկնապահներին քաղաքի զանազան կողմերն ուղարկեց հարցնելու՝ կա՞ արդյոք որևէ բողոք ունեցող մարդ։ Նրանք վերադարձան՝ ասելով, որ ոչ մի բողոքող չգտան։ Պատմում են, որ ազնիվ կայսրն արտասվեց ուրախությունից և գոհանամ ասաց աստծուն։ Տեսնելով, որ նենգ մարդկանց համար, այնուամենայնիվ, անար-

դարություն գործելու մի դուռ բաց է մնացել, այն, որ հարկերի գանձման ժամանակ, տեղ շահելու պատրվակի տակ, գործածում են Հին [հարկա]ցուցակները, որտեղ ամբողջի մասերը և մասնիկները, այն է՝ կեսը, վեցերորդ և տասներկուերորդ մասերը նշված են նիշերով. Նա որոշեց անարդարության այդ դուռն էլ փակել և հրամայեց [նոր] հարկացուցակներ կազմել, որտեղ հարկի գումարը գրված լինի պարզ, տառերով, այնքան պարզ, որ գյուղացիների համար էլ ընթեռնելի լինի, ոչ թե նիշերով, այլ լրիվ։ Այդ առթիվ նա կարգադրեց, որ [նոր հարկացուցակների] թղթի, գրության և գրիչների ծախսը իր սեփական միջոցներից տրվի՝ չքավորներին չծանրաբեռնելու համար։ Հպատակների հանդեպ նրա ունեցած անհուն հոգատարության վկայությունն այն էր, որ նա չէր ուզում, որպեսզի մեկը մյուսին ճնշի։ Ահա այսպիսին էր Վասիլը քաղաքական և պետական գործերում։

32. Նա չուզեց անուշադիր լինել նաև աստծո եկեղեցիների հանդեպ (եկեղեցիներն էլ, այնուամենայնիվ, աշխարհիկ նավի մեջ ստորվելով, ինքնակալի տնօրինության տակ են, իսկ վերջինս շատ աստվածասեր էր ու աստվածավախ)։ Նա տեսավ, որ եկեղեցին էլ ալեկոծության ու շփոթության մեջ է, նա էլ մասնակից էր դարձել նախկին իշխողի ժամանակ տիրող ընդհանուր ապականության, նրա օրինավոր պետը վտարվել էր իր սթոռից և հոտից, նրա փոխարեն ուրիշն էր նշանակվել։ Վասիլը այդ հարցում էլ չգլացավ, ողջ երկրի աստծո քահանայապետերի ընդհանուր ժողով գումարեց և հնարավորության սահմաններում դադարեցրեց ալեկոծությունը, օրինականացրեց նախորդ յոթերորդ սուրբ ժողովը[82], դեռևս իրենց գոյությունը պահպանող պատկերամարտ հերետիկոսներին նզովքի ենթարկեց և կանոնական կերպով եկեղեցուն շնորհեց իսկական փեսային, որդիներին՝ հորը. պատրիարքին նա պաշտոնանկ արեց[83] այնքան ժամանակով, քանի նորընտրին տերը չէր կանչել։ Ահա այսպես նա բարեհաջող կերպով կարգավորեց եկեղեցու գործերը և իր ջանասիրությամբ ու հոգատարությամբ հնարավոր անդորրը հաստատեց այնտեղ։

33. Քաղաքացիական օրենքներն էլ նա գտավ անորոշությամբ ու խառնաշփոթությամբ լի, լավն ու վատը իրար խառնված. մի տեղ կողք կողքի էին բերված գործող և ուժը կորցրած օրենքները։ Ահա այստեղ էլ նա անհրաժեշտ կարգ ու կանոն հաստատեց, չեղյալ հայտարարեց ուժը կորցրած օրենքները, գործող բազմաթիվ օրենքներ բարեփոխեց և պետք եղած օրենքը գրքում ավելի դյուրին գտնելու

համար, ինչպես սինոպսիսում, առանձին գլուխների բաժանեց և վերացրեց նախկին խառնաշփոթությունը[84]։

34. Բայց լավի կողքին միշտ նախանձն է բուսնում, ինչպես որ բաղցր փայտի մեջ աճում է որդը։ Երկրի բարօրությանը նախանձող չար ոգիները նենգ մարդկանց միջոցով են փորձում խանգարել լավի ընթացքը։ Նման մարդիկ, այն է՝ Սմբատն ու Գեորգիոսը[85], դավադրություն են նյութում կայսեր կյանքի դեմ՝ ստոր և ամբարիշտ մարդկանց խմբով։ Բայց քանի որ աստված բացարձակապես չէր ուզում թույլ տալ, ոչ էլ հանդուրժում էր, որ վատությունը, իր կրած պարտությունից դուրս գալու համար, նույնիսկ կարճ ժամանակով փորձ անի մարտնչել և երկրից վերացնել օրինականությունն ու արդարությունը, նենգ ծրագրերը բացահայտվում են դավադիրներից մեկի միջոցով։ Նրանք դատի տրվեցին և օրենքով դատապարտվեցին պատժի առավելագույն չափին, այն է՝ լիակատար պաշտոնազրկման, ամբողջ ունեցվածքի բռնագրավման ու մահապատժի։ Բայց ազնիվ կայսեր մարդասիրությամբ ստոր դավադրության մասնակիցները դատապարտվեցին միայն կուրացման։ Կայսրը նրանց ունեցվածքի մի մասը միայն կբռնագրավեր, եթե համոզված լիներ, որ նման չափազանց մարդասիրական վերաբերմունքը պատճառ չի դառնա ուրիշներին էլ գնալու նրանց ճանապարհով, երբ արդեն նա ստիպված կլիներ դիմելու ավելի ծայրահեղ միջոցների։ Դրա համար վերոհիշյալ պատիժը սահմանելով՝ նա դավադիրներին հնարավորություն տվեց զղջալու, իսկ մնացած ստոր մարդկանց՝ խելքի գալու։ Անարդարորեն ուրիշի կյանքի դեմ ձեռք բարձրացնել ցանկացողների թափը կոտրելու և նրանց բոլոր հույսերն ի դերև հանելու նպատակով Վասիլը կայսեր աստիճանի է բարձրացնում իր ավագագույն որդիներին՝ Կոստանդինին և Լևոնին[86], որոնք արդեն արքային վայել կրթություն ու դաստիարակություն էին ստանում և աչքի էին ընկնում իշխելու կարողություններով։ Դրանով նա կարծես իշխանությունն ամրապնդեց բազում ու ամուր արմատներով, որոնց վրա աճեցրեց թագավորության ազնվազարմ ծառը։

35. Քանի որ շարադրանքս այս ուղղությամբ գնաց, ապա ցանկանում եմ խոսել նրա մյուս երեխաների մասին ևս, պատմել, թե ինչպես նա յուրաքանչյուրի նկատմամբ անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերեց։ Աստված Վասիլին տվեց ավելի շատ և լավ երեխաներ, քան հնում ունենում էին բաբեպաշտ և երանելի մարդիկ։ Փոքր անց նա կայսերական թագը կապում է նաև երրորդ որդու՝ Ալեքսանդրի գլխին, իսկ կրտսերագույն որդուն նվիրում աստծուն[87], ինչպես Աբրա-

համը՝ Իսահակին, հոգևորական դարձնելով և ընծայաբերելով աստծու եկեղեցուն։ Դուստրերին, որոնք թվով հավասար էին որդիներին, հրաշակավոր վկա Եվփեմիայի սուրբ վանքին է ընծայաբերում, որպես ցանկալի նվեր և ընծա հանձնում աստծուն, զարդարելով անմահ փեսա Քրիստոսի[33] անարատ և անբիծ կույս հարսնացուների սքեմով և հանդերձանքով։ Այս բոլորը թեպետև տեղի ունեցան հետագայում, բայց թող այստեղ ասվի դրանց մասին. ինչպես որ նրանք իրենց չորս եղբայրների հետ բնական կապ ունեն, ապա և տվյալ պատմության մեջ թող միասին հանդես գան։

36. Երբ ներքին գործերն արդեն բարեհաջող վիճակում էին, բարեպաշտ և աստվածահաճո ձևով տնօրինված, բոլորի նկատմամբ ունեցած ջերմեռանդ հոգատարությունը նրան դրդեց գնալ արտասահմանյան արշավանքների, որպեսզի իր անձնական ջանքերով, արիությամբ ու քաջագործությամբ ընդարձակի պետության սահմանները, հեռացնի և վտարի թշնամուն։ Ահա այս հարցում էլ նա չսխալվեց. նախ և առաջ նոր զորահավաք հայտարարեց, և զինվորների ընտրություն կատարեց, անհրաժեշտ միջոցներ առանձնացնելով՝ հզոր բանակ կազմեց, որովհետև նախկին բանակի կազմը նվազել էր պարգևատրումների, ռոճիկի և թագավորական ուտեստի կրճատման պատճառով։ Այնուհետև այդ բանակը նա մարզեց ռազմագիտական ձեռնարկներով, հոգնեցուցիչ աշխատանքով պատերազմական գործերում փորձառու դարձրեց, սովորեցրեց լինել ծայրաստիճան կարգապահ և հնազանդ։ Եվ ահա այդ զորքով նա արշավեց բարբարոսների դեմ՝ հանուն ցեղակիցների, ազգակիցների և հպատակների։ Նա դիտեր, որ առանց սովորելու մարդ չի կարող ամենաբիրտ ու կոպիտ արհեստներին անգամ տիրապետել, առանց ուսուցչի նույնիսկ կոշկակար հնարավոր չէ դառնալ, խոսք լինել, իհարկե, չի կարող ավելի կարևոր արհեստներին տիրապետելու մասին։ Եթե սոսկ ցանկությամբ, առանց սովորելու և մեծ փորձ ձեռք բերելու հնարավոր լիներ տիրապետել պատերազմական գիտությանն ու արվեստին, ապա պետք է ընդունել, որ անխելք էին և դատարկաբանությամբ զբաղվեցին նրանք, ովքեր մանրամասն ուսումնասիրություններ գրեցին պատերազմական արվեստի մասին. անթիվ անհամար հաղթական դափնիներ նվաճած մեծագույն կայսրերից ու զորավարներից և ոչ մեկը չհամարձակվեց տգետ ու անփորձ զորքով թշնամու վրա հարձակվել։ Չսովորողը չի կարող որևէ բան գիտենալ, ոչ էլ անվարժն ու չմարզվածը մարտի դուրս գալ։ Դրա համար ահա ազնիվ կայսրը զորամասերը նախապես մարզեց և համալրեց, նորա-

*կոչիկներին տեղաբաշխեց հին զորքի մեջ և անհրաժեշտ միջոցների հատկացմամբ ու նվիրատվություններով ամրապնդեց նրանց մկանները, հզորացրեց նրանց աչքը և նրանցով հարձակվեց թշնամիների վրա և բազում հաջողություններ և բյուր հաղթանակներ ձեռք բերեց։ Այժմ ես այդ մասին համառոտակի կպատմեմ։*

*37. Ահա կարգի բերելով քաղաքի գործերը և ազատվելով այլ հոգսերից, գարնան սկզբին նա զինվեց և գլխավորեց բանակը, ցանկանալով, որպես իսկական արքա, հարազատ ժողովրդի համար իրեն վրտանգների ենթարկել. նա կամովին իր վրա վերցրեց տառապանքների ու չարչարանքների բեռը՝ հպատակ ժողովրդի անվտանգության համար։ Այն ժամանակներր Տեֆրիկեի առաջնորդը, որին Խրիսոխիր էին անվանում, իրեն քաջ ու խոհեմ մարդ համարելով, դաժան փորձությունների էր ենթարկում հոռմայեցիների երկիրն ու մարդկանց, ամեն օր գերեվարում բազում գյուղացիների և այդ առթիվ անչափ փքվել էր ու գոռոզացել։ Ահա այդ փքվածն ու ամբարտավանը չհամարձակվեց բացահայտ դիմադրել իր վրա արշավող քաջ զորքին, դիմադրել խիզախ ու խոհեմ կայսեր։ Նա նահանջեց, մտադիր լինելով պաշտպանել և ամրացնել իր քաղաքը միայն։ Կայսրը ոչ մի խոչընդոտի չհանդիպելով, ասպատակեց, գրավեց, ավերեց ու հրկիզեց Խրիսոխիրին ենթակա բոլոր շրջանները և գյուղաքաղաքները, ձեռք բերեց անհամար ավար ու գերիներ։ Նա հարձակվեց հենց Տեֆրիկե քաղաքի վրա, փորձեց նետաձգությամբ ու ոչ երկարատև պաշարմամբ գրավել այն։ Բայց ավելի երկարատև պաշարման մտքից նա հրաժարվեց, որովհետև համոզվեց, որ դժվար է քաղաքր գրավել, պարիսպներն ամուր էին, պաշտպանվող բարբարոսներն անթիվ, ապա նաև առատ պարենով ապահովված։ Այդ բոլորից բացի իր մեծաքանակ զորքը կարճ ժամանակվա ընթացքում շրջանն ամբողջությամբ ամայացրել էր և ողջ պարենը գրեթե սպառել։ Վասիլը ավերակ դարձրեց Տեֆրիկեի շուրջ գտնվող Աբարա, Սպաթե և մի քանի այլ ամրոցներ և, վերցնելով իր ոչ մի կորուստ չկրած ամբողջ զորքն ու ձեռք բերած ավարն ու գերիներին, որոնց մասին խոսք եղավ վերևում, վերադարձավ[89]։*

*38. Իսմայելացիների Տարանտա[90] կոչվող մյուս քաղաքը, Տեֆրիկեի մեծ կոտորածը տեսնելով, դեսպաններ ուղարկեց կայսեր մոտ խաղաղություն աղերսելով և առաջարկելով դաշնակցել։ Ամենահզոր կայսրը ինչքան որ դիմադրություն ցույց ավողների հանդեպ խիզախություն էր ցուցաբերում, այնքան էլ գիջողականություն՝ ենթարկվողներին։ Նա ընդառաջեց դեսպաններին, խաղաղություն խնդրողներին խա-*

ղաղություն շնորհեց և նրանց այսուհետև թշնամիներից դաշնակից դարձրեց։ Այդ բանից հետո շատերը, այդ թվում և Կուրտիկ անունով մի հայ, որն այն ժամանակ տիրում էր Լոկանային[91] և շարունակ ասպատակություններ էր գործում հռոմեական երկրի ծայրագույն շրջանները, դիմեց կայսեր, նրան հանձնեց իր քաղաքը, զենքերը և իր ժողովրդին, հպատակվեց ինքնակալին. նա հիացել էր քաջ, միաժամանակ բարի, բայց նույն ժամանակ արդար կայսեր վրա։

39. Քանի դեռ թշնամիներն իրենց ուշադրությունը սևեռել էին կայսեր վրա, սպասելով տեսնել, թե որ կողմից կհարձակվի նա, որպեսզի այդ, վտանգի ենթարկված կողմը պաշտպանեն, կայսրը Զապետրա կոչվող քաղաքի դեմ ընտիր զինվորների մի խումբ է ուղարկում։ Վերջիններս փութանակի անցնելով ճանապարհի նեղանցքներով, հարձակվում են քաղաքի վրա և գրոհով վերցնում այն, շատերին տեղում կոտորում, ձեռք բերում բազում գերիներ և մեծ ավար, ազատում երկար ժամանակ բանտերում արգելափակված մարդկանց։ Այնուհետև նրանք հրի են մատնում ճանապարհին ընկած շրջանները, ավերում Սամոսատը և նույն թափով անցնում Եփրատ գետը. իրենց ոչ ոք չփորձեց դիմադրել, որովհետև կայսրը նրանց պաշարման մեջ էր պահում։ Ձեռք բերելով բազում գերիներ, նրանք վերադարձան ինքնակալի մոտ, որ դեռ գտնվում էր Զարնուխ գետի[92] մոտ, այնտեղ, որտեղ Կերամիսիոնն[93] է գտնվում։ Թվում էր, թե նա ոչ մի բանի անձնապես չէր մասնակցում, բայց ամեն ինչ կատարվում էր նրա գերիմաստուն ղեկավարությամբ։

40. Կայսրն ամբողջ զորքով դուրս է գալիս այնտեղից և շարժվում Մելիտենեի վրա։ Ամառ ժամանակ հասնելով Եփրատի ափը, տեսնում է, որ գետը հորդել է ու ծովացել։ Նա վախկոտություն, իր զորքի համար անարժան համարեց նստել, սպասել, որ գետը խաղաղվի և որոշեց կամրջել այն, շտապեց այդ գործը գլուխ բերելու անհրաժեշտ պատրաստություն տեսնել։ Ցանկանալով այդ դժվարին գործում ոգևորել զինվորներին, որպեսզի նրանք դյուրությամբ տանեն դժվարությունները, ապա և իրեն կոփելու համար, որպեսզի անակնկալ փորձության հանդիպելու դեպքում չշփոթվի և անփորձ չերևա, զինվորների հետ միասին եռանդով գործի լծվեց և իր ուսերի վրա դեպի կամուրջն էր կրում ամենից ծանր բեռները։ Այնտեղ կարելի էր տեսնել, թե ինչպես նույն ծանրության բեռը, որ կայսրը իր ուսերի վրա հեշտությամբ էր կրում, երեք զինվոր հազիվ կարողանում էին տանել։ Ահա այսպես անցնելով Եփրատը, իսկույն գրավեց Ռապսակիոն կոչվող ամրոցը։ Նա խաղտիքի ու Կոլոնիայի բանակաթեմերի զորքերին հատուկ հրա-

ման տվեց՝ ասպատակել Եփրատ և Արսինոս[94] գետերի միջև ընկած շրջանները և այդ զորքերի օգնությամբ բազում ավար ու գերիներ ձեռք բերեց, գրավեց Կուրտիկիոսի, Խախոն, Ամեր, Մուրինիքս և Աբդելա[95] ամրոցները։ Ինքն անձամբ Մելիտենեի վրա հարձակվեց, որտեղ բարբարոսների և զինվորների հսկայական բազմություն կար, որոնք բարբարոսական աղաղակներով ու գոչյուններով քաղաքի առջև նրան դիմադրություն ցույց տվեցին։ Կայսրը հենց այնտեղ ցուցաբերեց իր անձնական առաքինությունները. նրա հմտության ու քաջության վրա շատ հիացան ոչ միայն զինվորները, այլև թշնամիները։ Նա խոհեմորեն ու արիությամբ թշնամիների դեմ մարտի բռնվեց, ձեռնամարտում աչքի ընկավ իր քաջությամբ ու համարձակությամբ, վտանգավոր պահին հանդես բերեց պաղարյունություն ու անվեհերություն, առաջինն ինքը իր դեմ գտնվողներին փախուստի մատնեց և գլխովին կոտորեց։ Իր զինվորները, նույն ձևով յուրաքանչյուրն իր դեմ գտնվողներին կոտորելով, հալածեցին մինչև քաղաքը։ Քաղաքի առջև գտնվող դաշտում փռվեցին բազում դիակներ, պարիսպների առջևից հոսող առուն կարմիր ներկվեց, շատերը գերի վերցվեցին, ուրիշները վախից անձնատուր եղան, իսկ մնացածներն էլ փակվեցին քաղաքում և ամենևին չէին մտածում դուրս գալ։ Այստեղ կայսրը մտածում էր բաբաններ, ամեն տեսակի պաշարողական մեքենաներ բերել և պաշարողական գործում քաջություն ու կորով ցուցաբերել, բայց տեսավ, որ քաղաքը ամուր պարիսպներով է շրջափակված, պարիսպների վրա պաշտպանվողների մեծ բազմություն կա և համոզվեց, որ դժվար է գրավել քաղաքը։ Բացի այդ, նա դասալիքներից տեղեկացավ, որ քաղաքը ապահովված է նաև առատ պարենով, որ չի վախենում երկարատև պաշարումից, դրա վրա ահա նա շարժվեց այնտեղից ու հարձակվեց մանիքեցիների[96] երկրի վրա։ Նա կտրատեց այդ երկրի ծառերը, հրկիզեց տները և ամեն ինչ ավերեց, հրի մատնեց և գետնին հավասարեցրեց նրանց Արգաութ կոչվող ամրոցը, ապա նաև Կուտակիոն, Ստեփանոս և Ռախատ կոչվողները, որից հետո իր զինվորներին առատ պարգևներ տվեց, յուրաքանչյուր աչքի ընկածին պարգևատրեց և մեծ ավարով ու հաղթական դափնիներով թագավորանիստ քաղաքը վերադարձավ։ Նա մուտք գործեց Ոսկե դարբասով, ինչպես հնում մեծափառ Հռոմի ինքնակալները հաղթարշավ կազմակերպելիս։ Ընդունելով դեմոսի հաղթական կոչերն ու բարեմաղթությունները, անհապաղ, հենց ճանապարհից նա գնաց աստվածային իմաստության մեծ տաճարը՝ աղոթելու և աստծուն գոհություն հայտնելու։ Նա այնտեղ հաղթական պսակով պսակ-

վեց ժամանակի պատրիարքի[97] կողմից, որից հետո գնաց պալատ։

41. Նորից են կլանում նրան պետական հոգսերը՝ տարբեր ժողովուրդների մոտից ժամանած դեսպանությունների ընդունման հարցերը։ Մի փոքր վայելելով իր երեխաների և կնոջ մոտ լինելու հաճույքը և շրջելով քաղաքում գտնվող սուրբ տաճարներն ու աղոթելով, նա վերստին է լծվում հանապազօրյա քաղաքական և դատական գործերին՝ ցուցաբերելով իր հպատակների հանդեպ ունեցած խնամքն ու անսահման հոգատարությունը։ Նա առանց զլանալու ամեն օր գնում էր սուրբ և աստվածային տաճարը և աղերսում տիրոջ՝ Միքայել հրեշտակապետին և Եղիա մարգարեին՝ աստծո միջնորդներ վկայակոչելով, որ չվախճանվի, քանի չի տեսել Խրիսոխիրի կործանումը և նրա պիղծ գլխին չի գամել երեք նետ։ Ինչ որ կատարվեց հետագայում։ Վերոհիշյալ Խրիսոխիրը հաջորդ տարին ներխուժեց հռոմայեցիների երկիրը և սկսեց ասպատակել այն։ Ընդունված կարգի համաձայն կայսրը նրա դեմ է ուղարկում սխոլերի գոմեստիկոսին[98]։ Նա իր հետ վերցրեց հռոմեական ողջ զորքը, բայց որովհետև վախենում էր Խրիսոխիրի հետ բացահայտ ճակատ առ ճակատ մարտի բռնվել, հռոմեական զորքերով առայժմ հետևում էր նրան որոշ հեռավորության վրա, մասնակի հարձակումներ գործում նրա վրա և հնարավորություն չէր տալիս Խրիսոխիրին աներկյուղ տարածվել երկրով մեկ։ Բարբարոսը մեկ գործի էր անցնում, մեկ հանգիստ մնում, բայց վերջը, քանի որ այդ բանին էր ստիպում նաև ժամանակը, որոշեց իր երկիրը վերադառնալ։ Մեծ ավարով նա իր երկիրն էր շտապում, երբ սխոլերի դոմեստիկոսը երկու զորավարների կարգադրեց, այն է՝ Խարսիանոնի և Արմենիակների բանակաթեմերի, որ յուրաքանչյուրն իր զորամասով հետևեն և հետապնդեն Խրիսոխիրին մինչև Վաթիռիաքս[99]։ Եթե նա այնտեղից հռոմեական սահմանների վրա զորք նետի, ապա այդ մասին հայտնեն դոմեստիկոսին, իսկ եթե ուղիղ շարժվի և մուտք գործի իր որջը, թողնեն և իսկույն իր մոտ վերադառնան։ /42/ Բարբարոսական զորքը երեկոյան մոտ հասավ Վաթիռիաքս և ճամբարեց լեռան ստորոտում։ Հռոմայեցի զորավարները դիրքեր գրավեցին այդ վայրի բարձունքներում։ Այն ժամանակ, երբ վերջիններս մտածում էին իրենց անելիքի շուրջը, երկու բանակաթեմերի զինվորների, տաքսիարքոսների և լոխագոսների միջև վեճ է ծագում՝ առաջնության շուրջը։ Խարսիանոնցիք իրենց էին վերագրում քաջության մենաշնորհը, իսկ Արմենիակները չէին ուզում նրանց զիջել ռազմական արիության առաջնությունը։ Վեճը տաքացավ. կրքերը բորբոքվեցին, երբ Արմենիակների զորաբանակի հրամանա-

տարներն ասացին. «Ինչո՞ւ եք իզուր տեղը խոսքերով հերոս դառնում, սնապարծորեն մենք մեզ գովում։ Մարդ գործով պիտի ապացուցի իր քաջ լինելը։ Թշնամին մոտիկ է և նրա դեմ կռվելիս կերևան քաջերը, մարտում հանդես բերած արիությունից կարելի կլինի որոշել լավագույններին»։ Ահա զորավարներն այս խոսքերը լսելուց հետո, ապա նաև տեսնելով զորքի քաջ կռվելու պատրաստակամությունը, բացի այդ, համոզված լինելով, որ տեղանքն էլ իրենց համար նպաստավոր է (հարթավայրում ճամբարած թշնամու վրա իրենք բարձրից պիտի հարձակվեին), զորքը բաժանում են երկու մասի։ Որոշվեց, որ նրա ընտիր մասը՝ շուրջ վեց հարյուր հոգի, զորավարների գլխավորությամբ հարձակվի բարբարոսների զորքի վրա, իսկ հռոմեական զորքի մնացած՝ փոքր մասը բարձունքում մեծաքանակ լինելու պատրանք ստեղծի։ Հարմար ժամանակ, ազդանշանը տրվելուց հետո, առաջինները պիտի հարձակվեն թշնամիների վրա, իսկ մնացածները շատ բարձր աղաղակ պիտի բարձրացնեն և հնչեցնեն փողերը. փողերի ձայնին կարձագանքեն լեռները, և աղմուկը շշմեցուցիչ կլինի։ Ահա այդ վեց հարյուր հոգին հագնում են իրենց զրահները և գիշերով գաղտագողի մոտենում թշնամու ճամբարին։ Նախքան այգաբացը, երբ դեռ արևը լրիվ չէր անցել երկրի ստորին կիսագունդը, մեծ աղմուկ բարձրացնելով և բոլորը միասին «խաչը հաղթեց» գոռալով, հարձակվում են թշնամու վրա։ Նրանց հետ միասին աղաղակ են բարձրացնում լեռան վրա գտնըվողները և բոլոր մնացածները։ Բարբարոսները անակնկալից շփոթվեցին, ժամանակ չունեցան մարտաշարք կազմելու, հնարավորություն չունեցան իմանալու իրենց վրա հարձակվող զորքի ճշգրիտ թիվը, ի վիճակի չեղան հանպատրաստից փրկության որևէ այլ ելք գտնելու և փախուստի դիմեցին։ Նրանց բոլորի մեջ սարսափ գցողն ու կորստյան առաջնորդողը, հիրավի, կայսեր աղոթքներն էին։ Հռոմայեցիների մի մասը հարձակման անցավ, մյուսը, որ մարտի չբռնվեց, այն է՝ զորավարները, տագմաները և սխոլերի դոմեստիկոսը, կարգադրության համաձայն աղմուկ աղաղակ բարձրացրին, մի բան, որ ավելի մեծ շփոթություն ու սարսափ առաջացրեց թշնամու շարքերում։ Վերջինս հալածական եղավ մինչև երեսուն մղոն տարածության վրա, որն ամբողջությամբ ծածկվեց անհամար դիակներով։ /43/ Պատմում են, որ պարծենկոտ ու գոռոզ Խրիսոխիրին, երբ նա իր մի քանի մերձավորների հետ փախուստի էր դիմում, սկսեց հետապնդել Պուլադ[100] անունով մի հռոմայեցի։ Սա Տեֆրիկեում գերի էր, բայց իր սրամտությամբ ու շնորհքով դրաձել էր Խրիսոխիրի մտերիմն ու մերձավորը։

Ահա բարբարոսը տեսնելով, թե ինչպիսի եռանդով ու ոգևորությամբ է հալածում իրեն Պուլադը, շուռ եկավ ու ասաց. «Ո՛վ թշվառական Պուլադ, ես քեզ ի՞նչ վատություն եմ արել, որ այսպես մոլեգին հալածում ես ինձ, կամենալով սպանել»։ Նա կտրուկ պատասխան տվեց, թե՝ «պատրոն, համոզված եմ, որ աստված կօգնի ինձ այսօր փոխհատուց լինելու քո բարերարությանը, դրա համար եմ քեզ հալածում»։ Խրիսոխիրը հուսաբեկ ու սարսափահար սլանում էր առաջ, իսկ Պուլադը համարձակ, երիտասարդական ավյունով և կորովով հալածում էր նրան։ Հալածականը հանդիպում է մի խոր փոսի, որի վրայով ձին վախենում էր ցատկել և ծառս եղավ։ Երբ Խրիսոխիրը մտահոգված էր այդ դժվարությունը հաղթահարելու գործով, Պուլադը նիզակի հարված է հասցնում նրա կողին։ Նա ցավից գալարվելով՝ ձիուց ցած գլորվեց։ Նրա մերձավորներից Դիակոնիցես[101] անունով մեկը, իջնելով իր ձիուց, դիմեց տապալված տիրոջ օգնության. նրա գլուխն իր ծնկներին դնելով, սկսեց ողբալ պատահարը։ Ահա այդ միջոցին Պուլադին միացան և ուրիշները, որոնք իրենց ձիերից իջնելով, մահամերձ, դեռևս հոգեվարքի մեջ գտնըվող Խըիսոխիրի գլուխը կտրեցին, իսկ Դիակոնիցեսին մնացածների հետ գերիների թվին դասեցին։ Ահա այդ պիղծ մարդիկ անակնկալորեն պարտության մատնվեցին, և քրիստոնեությունն հաղթանակեց։ Ավետիսների հետ մեկտեղ անհապաղ կայսեր է ուղարկվում Խրիսոխիրի գլուխը։ Այն ժամանակ կայսրը այսպես կոչված Պետրիոնում[102] էր գտնվում, որտեղ էր և իր դուստրերի վանքը։ Երբ Խրիսոխիրի գլուխը բերեցին, կայսրը վերհիշեց իր աղոթքները, իր հոգու աչքերը հառեց աստծուն, ով ի կատար է ածում խնդրանքը բոլոր նրանց, ովքեր արտասվալից նրան են դիմում, որից հետո հրամայեց նետ ու աղեղ տան. ձգելով լարը, նա երեք նետ գամեց նրա թշվառական գանգին և հարվածներից ոչ մեկը չվրիպեց։ Ամբարիշտի մահը նա արժանի քավությունը համարեց այն բյուրավոր զոհերի համար, որոնց մահվան պատճառ դարձավ նա իր իշխանության բազում տարիների ընթացքում։ Աստծո օգնությամբ ահա այսպիսի վախճան ունեցան Խըիսոխիրը և Տեֆրիկեի ծաղկած հզորությունը, աստված, որ ընդառաջ գնաց բարեպաշտ կայսր Վասիլի բազում թախանձանքներին։

44. Ամեն տեսակի առաքինություններով օժտված, անբիծ և աստվածահաճո կյանք վարած երանելի պատրիարք Իգնատիոսը, հասնելով խոր ծերության, հեռացավ այս աշխարհի կյանքից դեպի ավելի լավը, բոլորի կողմից երանի ստանալով։ Եկեղեցու ղեկավարությունը կայսրը խելամտորեն կրկին Փոտին[103] հանձնեց, օրինական ու կանոնական

ձեռով թագավորանիստ քաղաքի [պատրիարքական] թափուր աթոռին նստեցրեց. Փոտին, որը նախապես ոչ խելամտորեն հակադրվել էր իրեն։ Դրանից առաջ էլ Վասիլը սիրալիր վերաբերմունք էր ցույց տալիս նրան. այդ բանի պատճառը Փոտի շատ իմաստուն և առաքինի մարդ լինելն էր, և եթե նրան անցյալում հեռացրել էր աթոռից, դրա պատճառը օրինականության դեմ ամենևին մեղանչած չլինելու ցանկությունն էր. հակառակ դրան, կայսրը ամեն ինչ անում էր Փոտին մխիթարելու համար, իրավունք տվեց բնակվել պալատում և իր որդիների դաստիարակն ու ուսուցիչը դարձրեց։ Կայսրը ջանք էր թափում իր կարողությունների սահմաններում ոչ ոքի չնեղացնել, նա բոլորի հանդեպ սիրալիր էր ու բարեհամբույր, և եթե կարելի էր որևէ կերպ մարդուն մխիթարել, ապա նա չէր զլանում այդ բանում։

45. Թեպետև Վասիլն իր հպատակների հանդեպ հոր և խնամակալի նման հոգատար էր, այնուամենայնիվ կային և իրեն աստղ, ավելի ճիշտ՝ նախանձող մարդիկ, ովքեր դավեր էին նյութում նրա կյանքի դեմ։ Կուրկուաս կոչվածը[104] հարստությունից ու փափկակեցությունից հղփացած, ցանկացավ բռնատիրել և, իր շուրջ հավաքելով համախոհ դավադիրների մի բազմություն, գործի անցնելու համար առիթ էր որոնում։ Բայց դավադիրներից մեկը կայսեր հայտնեց նախապատրաստվող մեքենայության մասին, և այդ նենգ մարդիկ դատի տրվեցին։ Բայց ազնիվ կայսեր մարդասիրությունը կրկին անգամ մեղմեց օրենքների խստությունը, և մեղմ դատավճիռներ կայացվեցին։ Դավադրության պարագլուխը կուրացվեց, իսկ մնացածները մարմնական պատիժներ ստացան միայն, մարդասիրորեն խրատվեցին՝ մազերից զրկվեցին[105]։ Նրանք ավելի շատ հոր կողմից խրատվեցին, քան թե տիրոջ։

46. Բոլորի հանդեպ ունեցած հոգսը, ինչպես և նորանոր դափնիներ քաղելու ձգտումը կայսեր հանգիստ չէին տալիս։ Նա ամենից առաջ մտածեց հռոմեական պետության համար մեծ նշանակություն ունեցող ամենաանառիկ Լուլոն ամրոցի[105] մասին, որը բացարձակապես անուշադրության էր մատնված, զրկված էր անհրաժեշտ միջոցներից, մի բան, որ պատճառ դարձավ, որ նա իր պաշտպաններով հանդերձ ընկնի հագարացիների ձեռքը։ Վերջիններս, վայրի անվտանգությունն ապահովելու համար, ամրացրին այն և պաշտպանում էին։ Ահա կայսրը, իր խոհեմությամբ ու հոգատարությամբ, առատ միջոցների հատկացմամբ, քաղցր խոսքով ու բռնությամբ վերցրեց այն բարբարոսների ձեռքից և վերստին հռոմեական գերիշխանության ենթարկեց[107]։ Դրա

վրա Մելուոս ամրոցն[108] էլ կամովին անցավ կայսեր կողմը և ինքնակալին իրեն տեր հռչակեց։ Իսկ մանիքեցիների Կատաբատալա[109] կոչվող քաղաքը այդ նույն ժամանակներր գրավեց իր զորավարների միջոցով։ Բայց նրան ուրիշների ձեռքով նվաճված դաշինները չէին ուրախացնում, ընդհակառակը՝ տխրեցնում էին, որ հաղթանակները ձեռք էին բերվում ոչ իր անձնական ջանքերով և իր սեփական անձը վտանգների ենթարկելով։ Դրա համար նա դարձյալ հարձակվեց Աստրիսի վրա, իր հետ վերցնելով Կոստանդինին՝ անդրանիկ որդուն, որպեսզի նա որպես քաջ կորյուն, թշնամու արյան համն առնի, լինի անվախ՝ վտանգների հանդեպ, որպեսզի հենց ինքը՝ Վասիլը, դառնա նրա ռազմագիտության ուսուցիչը։ Հասնելով Արգեոս [լեռան] մոտ գտնվող Կապադովկիայի առաջին քաղաք Կեսարիան, իր զորքից ընտրյալ մարդկանց, ինչպես հարկն է զինելուց հետո, նրանցից մի խումբ առանձնացրեց և ուղարկեց առաջ՝ լրտեսելու և հետախուզելու, որից հետո ինքը՝ գլխավորելով հարվածող ուժը, ամբողջ զորքով շարժվեց՝ դիմադրող թշնամուն հետ մղելու համար։ Փութանակի անցնելով անապատի միջով, գրոհով վերցրին Պսիլոկաստելլոն և Պարամոկաստելլոն ամրոցները, գերեցին հանդիպած թշնամուն։ Ճաղատ կոչվող ամրոցի բնակիչներն իրենց վրա խուժող զորքից սարսափած, կամովին անցան կայսեր կողմը, իսկ Ամբրոնի որդի Ապավդելեն՝ Անազարբայի ամիրան, որը (քանի դեռ կայսրը հեռու էր գտնվում, բարբարոսաբար հոխորտում էր) մելիտենացիների զորամասի հետ միասին որոշեց փախուստով փրկվել՝ հետքը կորցնելու ջանք թափելով։ Այս ավերիչ արշավանքի ընթացքում գրավվեցին նաև Կայսոս, այն է՝ Կատասամա [ամրոցը], Ռոքամ, այն է՝ Էնդելեխոն [ամրոցը], ապա նաև Անդալը և այսպես կոչված Էրիմոսիկեա [ամրոցները]։ Այն ժամանակ էր, որ Տայիլի որդի Սեմասը, որը պաշտպանում էր Տավրոսի լեռնանցքները և, անակնկալ հարձակումներ գործելով, ասպատակում էր հռոմեական պետության սահմանամերձ շրջանները, կայսեր կողմն անցավ։

47. Ոչ ոք թող չզարմանա, ոչ էլ մեզ մեղադրի, որ այս մեծագործությունները սեղմ ու համառոտ ենք շարադրում, կարծես թվարկելով։ Պարզապես պատմությունը տալիս ենք տեղի ունեցած դեպքերի արագությամբ, դրա համար էլ ահա այն ընդհանուր գծերով է տրված և Թռուցիկ է։ Այդ դեպքերը ավելի արագ կատարվեցին, քան մենք այժմ խոսում ենք նրանց մասին։ Պատճառը նաև այն է, որ դեպքերից բավական ժամանակ է անցել, և յուրաքանչյուրի մանրամասնությունները, գրի առնված չլինելու պատճառով, անհետացել են հիշողությու-

նից։ Մենք չգիտենք և չենք կարող հաղորդել, թե ինչպե՞ս ճակատեցին, ինչպե՞ս հարձակվեցին կամ գրոհեցին, ճակատն ինչպե՞ս լայնացրին կամ նեղացրին, իրադրության հարմար ինչպիսի՞ ռազմավարական հնարանքների դիմեցին. մենք չենք կարող մասնակի կամ նախասիրության առարկա հարցերի վրա մանրամասն կանգ առնել, մի բան, որից շարադրանքի ծավալն ընդարձակվում է, մենք չուզեցինք ընդգրկել, առանց ստուգելու վերցնել այն, ինչ փաստերի վրա չէր հիմնված, թեև այդ մասին ընդհանրապես շատ է խոսվում, որպեսզի չստեղծվի այն կարծիքը, թե կայսեր վերաբերյալ ներկայացնում ենք ստահոդ [պատմություն], տեղի չունեցած դեպքերի շարադրանք, նամանավանդ, որ կենդանության ժամանակ նա չէր սիրում իրեն գովաբանող խոսքերին ականջ դնել։ Եթե մենք չենք կարող կամ չենք ուզում գրի առնել այն, ինչի մասին բոլորն են վկայում, ապա դրա պատճառը շարադրանքը կասկած հարուցող փաստերով ծանրաբեռնելուց խուսափելն է։ Բայց այդ մասին խոսքը կարճենք և վերադառնանք մեր ընդհատված պատմությանը։

48. Կայսրն այնուհետև զորքով անցավ Օնոպնիկտես և Սարոս կոչվող գետերը և եկավ Կուկուսոս[101], կրակի տվեց այնտեղի մացառուտները, ծառերը կտրատելով՝ դժվարամատչելի վայրերը մատչելի դարձրեց և պարտության մատնեց դարանակալած [թշնամիներին]։ Հասնելով Կալլիպոլիս և Պադասիա, շարունակեց իր ճանապարհը դժվարանցանելի վայրերով, որտեղ իջավ ձիուց, հետիոտն անցավ լեռնանցքների միջով, անձնական օրինակով բարձրացրեց իր զինվորների ոգին։ Երբ հարձակվեց Գերմանիկիայի վրա, հակառակորդները գլխովին նահանջեցին և փակվեցին պարիսպների հետևը. թշնամիներից ոչ ոք չէր համարձակվում կռվի բռնվել։ Դրա վրա կայսրը քաղաքի ամբողջ շրջակայքը հրի մատնեց, պարսպից դուրս գտնվող գեղեցիկ շենքերը հիմնահատակ ավերեց, որից հետո շարժվեց դեպի Ադատա[111]։ Քաղաքի պաշտպանները չհամարձակվեցին բաց դաշտում պատերազմել և, պարփակվելով պարիսպների մեջ, որոշեցին դիմադրել։ Կայսրը թալանեց ինչ որ քաղաքի պարիսպներից դուրս էր գտնվում, ապա գրոհով վերցրեց մոտակայքում գտնվող Գերոնտ անունը կրող փոքր քաղաքը, իր զինվորներին թույլատրեց թալանել այն, որպեսզի ձեռք բերած ավարը նրանց համար խթան հանդիսանա դիմանալու դժվարություններին։ Այնուհետև իր զինվորներով նա հարձակվեց պարիսպների վրա և գործի դրեց պաշարողական մեքենաները։ Նա մեծ հույս ուներ, որ նման մեծ զորքով հնարավոր կլինի գրոհով վերցնել քաղաքը։ Բայց տեսնելով,

որ պարիսպների հետևում պատսպարված թշնամիներն իրենց գլխին եկած փորձություններից չեն վհատվում (այն հանգամանքը, որ իրենց հայրենիքը գրեթե անգունդի եզրին է հասել, նրանց ամենևին չի սարսափեցնում), հարցուփորձ արեց՝ կարելի՞ է արդյոք նրանց մի կերպ համոզել, որ տեղի տան։ Տեղացիներից մեկն ասաց նրան, թե մի բարեպաշտ մարդ կամ ի վերուստ, կամ գիտական ինչ-որ եղանակով իմացել է և [քաղաքի բնակիչներին] հայտնել, թե վերուստ կանխորոշված է, որ այս քաղաքը գրավվելու է ոչ թե քո կողմից, որ այժմ պաշարում ես այն, այլ քո ազգականներից մեկի, որի անունը Կոստանգին է. ահա դրա համար է, որ նրանք այդպես չեն վհատվում փորձություններից։ Վասիլը մատնացույց արեց որդուն, ասաց, որ Կոստանդին է նրա անունը, որ կանխագուշակումը չի իրականանա, որովհետև հենց հիմա է քաղաքը գրավվելու։ Դրա վրա բացատրողը պատասխանեց, թե խոսքը այս Կոստանդնի մասին չէ, սա այն չէ, ով կործանելու է քաղաքը, այլ շատ ժամանակ անց՝ քո ազգականներից մի ուրիշը։ Կայսրը կարծես զայրացավ այս խոսքերի վրա, որոշեց գործով ցույց տալ, որ դատարկ խոսք է նրանց ասածը, ավելի եռանդով լծվեց նախապատրաստական աշխատանքներին և ավելի մեծ ջանասիրությամբ ձեռնամուխ եղավ պաշարման գործին։ Բայց տեսնելով, որ հակառակ իր գործադրած ջանքերին, գործն առաջ չի գնում, որևէ այլ հույս ներշնչող ելք էլ չէր գտնում, ապա նաև համոզվելով, որ իր բազմաքանակ զորքը ցրտաշունչ վայրերում, բաց երկնքի տակ կարող է ծանր կացության մատնվի, նախընտրելի համարեց իր մարդկանց փրկությունը, քան թշնամիներին պարտության մատնելը, որոշեց, նախքան ձմռան վրա հասնելը, հեռանալ այնտեղից։ Այս մասին ահա այսքան։ Բայց մենք ապշել ենք այն բանի վրա, որ այսքան ժամանակ անց ականատես եղանք կանխագուշակման իրականացմանը, թե ինչպես կենցաղով ու դավանանքով ամբարիշտ այդ բարբարոսները նախօրոք հավաստի կերպով իմացել էին ճշմարտությունը։ Վասիլը չկարողացավ գրավել քաղաքը, բայց այժմ, մեր օրերում Կոստանդին Ծիրանածինը, ամենաիմաստուն Լևոնի որդին և Վասիլի թոռը գլուխ բերեց այդ գործը։ Ադատայի բնակչության լիակատար կորստյան հասցնելու սխրագործության առթիվ շատ տեղին են Հոմերոսի խոսքերը. «Ինչքան լավ է, որ իր մահից հետո մարդ որդի է թողնում՝ պատժելու նրանց, ովքեր համարձակվել են ձեռք բարձրացնել պապենական պետության վրա»։ Բայց վերադառնանք մեր պատմության և շարունակենք մեր խոսքը։

49. Զորքը ձեռք բերեց հսկայական քանակությամբ գերիներ և

ռազմավար, բայց կայսրը, նկատի ունենալով երկար ու դժվարին ճանապարհը, հրաման տվեց գերիներից բեռնաթափվել՝ սրախողխող անելով նրանց։ Ահա Հագարի հետնորդներին[112] սարսափահար անելուց հետո՝ նա վերադարձավ։ Ենթագրելով, որ կիրճերից անցնելիս հնարավոր է [թշնամու] որևէ հարձակում (նա գտնում էր, որ վատն է այն զորավարը, որն ասում է, թե «ես այդ չէի սպասում»), կարևոր կետերը զորամասեր ուղարկեց, որոնք գերի վերցրին նրանցից շատերին, ովքեր նպատակ ունեին ուրիշներին գերեվարելու։ Այդ շրջանների կառավարիչ Աբդելոմելը, տեսնելով այդ, կայսեր մոտ դեսպաններ ուղարկեց՝ հաշտություն և խաղաղություն աղերսելով, խոստանալով նրան հանձնել ամրոցներն ու շրջանները և լինել նրա երախտապարտ ծառան։ Կայսրն ընդառաջեց նրա խնդրանքին, տվեց ինչ որ հայցում էր, որից հետո նա դարձավ կայսեր կամավոր դաշնակիցն ընդդեմ իր՝ Աբդելոմելի ցեղակիցների։ Այնտեղից կայսրն անցավ Արգեոս լեռը և, հասնելով Կեսարիա, ստացավ Կոլոնիայի և Լուլոնի դեմ տարած հաղթանակների ավետիսները։ Ավետիսներին հաջորդեցին Տարսոնի ամրոցներից և մանիքեական քաղաքներից ձեռք բերված հաղթանակի իրեղեն ապացույցները՝ հսկայական քանակությամբ ավար և ռազմագերիներ։ Այնտեղ բերվեց նաև քրդերի[113] մի մեծ ամբոխ. կայսրը հրամայեց քրդերին կոտորել, քանզի նրանք գրեթե ոչ մի բանի պիտանի չէին, բացի այդ, զորքը այնքան էր ծանրաբեռնված, որ չէր ուզում ունենալ մի ավելորդ գլխացավանք։ Վերադարձին, հասնելով Միդեոն, նվերներ բաշխեց իր զինվորներին, յուրաքանչյուրին իր ցուցաբերած սխրանքի համեմատ բարձրացրեց ու պատվասիրեց և ձմեռելու նպատակով ճամփա ելավ։ Հասնելով Թագավորանիստ քաղաքը, հին սովորության համաձայն պատրիարքից ստացավ հաղթական դափնեպսակը և ժողովրդի կողմից հաղթական կեցցեները[114]։

50. Ժամանակի ընթացքում Տեֆրիկեն խամրեց ու ամբողջությամբ հանգեց. սակայն սկսեց ծաղկել ու բարգավաճել տարսոնցիների հզորությունը. Հռոմեական պետության ծայրամասերը դարձյալ սկսեցին բռնության ենթարկվել նման մարդկանց կողմից։ Այն ժամանակ ծագումով սկյութացի Անդրեասը[115], հակառակ իր փոքրաթիվ զորքին, բազմիցս պարտության մատնեց նրանց, շատերին կոտորեց և գերեվարեց նրանցից, ովքեր անասնակեր հայթայթելու համար դուրս էին գալիս և մեկուսանում հիմնական զորաբանակից։ Եվ այն պատճառով, որ նա ամեն օր քաջության և խոհեմության բազում օրինակներ էր ցույց տալիս, կայսրը նրան շնորհեց պատրիկի պասվաստիճանը և

նշանակեց սխոլերի դոմեստիկոս։ Դրանից հետո, օժտված լինելով շատ ավելի մեծ իշխանությամբ և ուժով, նա հաճախ բացահայտ կռվի էր բռնվում մելիտենացիների և տարոնցիների հետ և հաղթող դուրս գալիս։ Տարոնի ամիրան մի առիթով Անդրեասին նամակ գրեց, որն առլեցուն էր մեր աստծո՝ Հիսուս Քրիստոսի և նրա ամենասուրբ մոր հասցեին ուղղված լուտանքներով ու հիմարություններով. թե «Տեսնեմ, ինչպե՞ս պիտի օգնի քեզ Մարիամի որդին և նրան բերողը, երբ ես ծանր ուժով քո վրա գամ»։ Նա, ստանալով հայհոյական նամակը, արտասվալից դրեց այն որդուն գրկած աստվածամոր պատկերի առջև և ասաց. «Տե՛ս, ո՛վ մայր Բանի և աստծո, և դու, որ նախ քան զամենայն հավիտյանս ի հորե և ժամանակ առաջ՝ ի մորե, թե ինչպես ամբարտավանացավ և հայհոյեց քո ընտրյալ ժողովրդին այս բարբարոս և փքյալ նոր Սենեքերիմը[116]. նեցուկ կանգնիր և պաշտպանիր քո ծառաներին, թող բոլոր ժողովուրդներն իմանան զորությունը քո թագավորության»։ Նա այդպես արտասվալից ու սրտաբեկ աղոթելով և նման բառերով դիմելով աստծուն, գլխավորեց հռոմեական զորքերը դեպի Տարոն։ Հասնելով Պողանդոս[117] կոչվող վայրը, որտեղից հոսում է համանուն գետը, հանդիպում է իրեն գիմադրելու դուրս եկած բարբարոսական զորքին։ Ապավինած լինելով աստծուն, այս քաջարին իր ամբողջ զորքով հարձակվեց, նախապես հորդորելով այն և իր խոհեմությունն ու սխրանքն ընդգծող բազում գործեր կատարեց։ Իրեն ենթակա փոխզորավարները, տաքսիարքոսները, լոխագոսները և ամբողջ զորքը նույնպիսի քաջությամբ մարտնչեցին, բարբարոսների բազմամբոխ [զորքը] փախուստի մատնեցին ու գլխովին ջարդեցին։ Ամենից առաջ սպանվեց ամիրան, ինչպես և նրա ընտիր թիկնապահ զինվորները։ Վտանգից խուսափել կարողացան և Տարոնում ապաստան գրտան միայն այն քչերը, որոնք գտնվում էին պատնեշի վրա, կամ էլ բավական հեռու տեղում։ Անդրեասը իր սպանված զինվորներին հանձնեց հողին, իսկ թշնամիների դիակները դիզելով մի տեղ, նրանցից մի մեծ բլուր կազմեց, հաղթական մի կոթող, և բազում ավարով ու գերիներով տուն վերադարձավ։ Իր խոհեմությամբ տարած հաղթանակը նա աստծուն վերագրեց։ Երկյուղելով, որ նորանոր հաղթանակներ ձեռք բերելու ագահությունը, շատերի հետևից ընկնելը կարող է գրգռել նախանձոտ Նեմեսիսին[118], և ձեռք բերվածն էլ կորստյան կմատնվի (դա շատ հաճախ է պատահում), հրաժարվեց նոր քայլ անելուց։ Կատարվածի մասին նա զեկուցեց կայսեր, բայց իր զորակիցների նախանձը հնարավորություն չտվեց նրան ստանալու իր կատարած գործի արժանի

մրցանակը։ Նրանք շարունակ լուրեր էին տարածում, մեղադրում Անդրեասին, որ նա իբր դավաճանաբար չուզենալով մարտնչել, չթողեց հռոմայեցիներին գրավել Տարսոնը, և նրանք այդ ուղղությամբ կայսեր մոտ որոշակի կարծիք էին ստեղծում։ Նրանք ասում էին, թե «Աստված քաղաքն արդեն մեր ձեռքն էր մատնել, եթե նա շարունակեր հաղթարշավը (ձեռք բերած հաջողություններից ոգևոր թև էր առել), բայց զորավարի անհոգության պատճառով կորցրինք այն»։ Նրանք այնքան շատ էին կրկնում այդ խոսքերը, որ կայսրը հավատաց նրանց (չէ՞ որ հաճույք պատճառող խոսքերը հաճախ խելոք մարդկանց էլ թյուրիմացության մեջ են գցում)։ Նա Անդրեասին պաշտոնանկ արեց՝ թշնամիների դեմ տարած հաղթանակը վախճանին չհասցնելու համար, և նրա փոխարեն տագմաների և ամբողջ զորքի գլխավոր հրամանատար նշանակեց Կեստային, որի մականունն էր Ստիպպիոտես[119]։ Սա թեթևամտորեն խոստանում էր Տարսոնը գրավել և բազում այլ սխրանքներ գործել։ /51/ Վերցնելով հռոմեական բոլոր զորքերը, նա հարձակվեց Տարսոնի վրա և ապացուցեց, որ Անդրեասը ոչ թե դավաճան էր ու վախկոտ, այլ ընդունակ, խելացի ու գերազանց զորավար։ Բարբարոսներին համարելով պատրաստի ավար, Կեստան անհրաժեշտ ոչ մի նախապատրաստություն չտեսավ, նախօրոք դիրքեր չգրավեց և ռազմագիտական ոչ մի փորձառու և խոհեմ քայլ չարած, անխոհեմ կերպով, ապա և անմիտ համարձակությամբ եկավ Տարսոնի մոտ՝ Խրիսոբուլլոն կոչվող վայրը։ Բարբարոսները հետախուզությամբ պարզել էին, որ նա նախազգուշական միջոցներ ձեռք չի առել, ամուր դիրքեր չի գրավել, ճամբարի առաջ ոչ ցանկապատ, ոչ էլ խրամատ է քաշել, որ նա խոհեմ զորավարների նախապատրաստական միջոցառումներից և ոչ մեկին չի դիմել, դրա համար որոշեցին խլել հաղթանակը։ Նրանք գիշերով հարձակվեցին անպատրաստ ու անհոգ Կեստայի վրա և, ինչպես հետո պարզվեց, գործի դրին իմաստուն ռազմավարություն՝ իրենց անելանելի և դժվարին դրության մեջ։ Նախկին պարտությունից հետո նրանց թիվը շատ էր նվազել. գտնվելով դժվարին վիճակում, նրանք ստիպված էին դիմել խորամանկության։ Մեծ թվով ձիեր հավաքելով և նրանց պոչերին չոր մորթիներ կապելով, բազում տեղերից հռոմեական ճամբարի վրա բաց թողեցին։ Այնուհետև իրենք էլ տարբեր վայրերից թմբուկ հարելով, սրերը մերկացրած՝ հարձակվեցին հռոմայեցիների ճամբարի վրա։ Հռոմայեցի զինվորների մեջ առաջացավ սարսափ ու խուճապ, ձիերն ու զինվորները խառնվեցին իրար. բարբարոսները հաղթեցին և հռոմայեցիներին մեծ ջարդ ավեցին։ Վեր-

ցիններից շատերը խառնաշփոթության մեջ, իրար կոխկրտելով ու ոտնատակ տալով, անփառունակ վախճան ունեցան։ Իսմայելացիները, այսպիսով, անակնկալ ու անսպասելի հաղթանակ տարան։ Նրանք կտրեցին հռոմեական պետության ջլերը և թմբկահարությամբ, բարբարոսական գոռում-գոչյունով հաղթական երգեր էին երգում։ Նախանձն ահա հիմար զորավարի օգնությամբ հաղթեց հռոմայեցիներին, և շարունակ նեմեսիսը հաջողություններ ձեռք բերած հռոմայեցիների դեմ այսպիսի հաղթական կոթող կանգնեցրեց։

Ահա այսպիսին էր իրավիճակն Արևելքում՝ Վասիլի բարեպաշտ թագավորության ժամանակ։ [52] Ես այժմ կպատմեմ, թե ինչ կատարվեց Արևմուտքում։ Միքայելի թագավորության ժամանակ ամեն ինչի շարքում Արևմուտքի գործերն էլ էին աչքաթող արված։ Իտալիան գրեթե ամբողջությամբ, այն, որ մեր Նոր Հռոմին էր ենթակա և Սիկիլիայի մեծ մասը գրավվել էր հարևան կարթագենացիների զորքերից և բարբարոսներին հարկատու էր դարձել։ Պաննոնիայում[120], Դալմատիայում, նաև նրանցից այն կողմ ապրող սկյութները[121], այն է՝ խորվաթները, սերբերը, զախլումներն ու տերվունիոտները, կանալիտները, դիոկլեաիաններն ու ռենտանները դուրս էին եկել ի սկզբանե անտի իրենց վրա տարածված հռոմեական գերիշխանությունից և դարձել էին ինքնավար ու ինքնիշխան, կառավարվում էին միայն իրենց սեփական իշխանների կողմից։ Շատերը, ցանկանալով առավել ևս տարբերվել [հռոմայեցիներից], սուրբ մկրտությունից հրաժարվեցին, որպեսզի հռոմայեցիների հետ ունեցած բարեկամության և նրանց գերիշխանության մասին վկայող ոչ մի հետք չմնա։

53. Արևմուտքում վիճակն ահա այսպիսին էր. անիշխանություն ու խառնակություն էր տիրում այնտեղ, երբ այդ բոլորի վրա բարդվեցին և Կարքեդոնի հագարացիները։ Նրանք Սոլդանոսին, Սամբասին և Կալֆուսին, որոնք իրենց ցեղակիցներից համարվում էին ամենից աչքի ընկնող չարագործները և փորձառու պատերազմողներ, իրենց պարագլուխ կարգելով, նրբառնվեց ռազմանավից բաղկացած նավատորմիղով արշավեցին Դալմատիայի վրա, գրավեցին զանազան քաղաքներ, այդ թվում Բուտոման, Ռոսան և Ստորին Դեկատորան։ Եվ քանի որ դևսլքերը ընթանում էին թշնամիների համար բարեհաջող, նրանք հարձակվեցին ամբողջ երկրի մայրաքաղաք Ռաուսիոնի[122] վրա և երկարատև պաշարման ենթարկեցին։ Նրանք հանպատրաստից չկարողացան այն գրավել, որովհետև պաշտպանները մարտնչում էին արիաբար, ինչպես ասում են, մահու և կենաց պայքար էին մղում։ Ռաու-

սիոնում երկարատև պաշարման ենթարկվածները սկսեցին տառապել և ամեն ինչի պակասն զգալ, դրա պատճառով կայսեր մոտ[123] դեսպաններ ուղարկեցին, թեև քաջատեղյակ էին, որ ինքնակալը այլ գործերով էր զբաղված։ Նրանք խնդրում էին ողորմած լինել, պաշտպան կանգնել, քանի չեն ընկել քրիստոսուրացների ձեռքը։ Բայց դեսպանները դեռ ճանապարհին էին, չէին հասել մայրաքաղաք, երբ այդ միջոցին սպանվում է ստոր կայսրը, և բացարձակ իշխանությունը ստանում է բոլորի մասին միշտ հոգացող ու արթուն Վասիլը։ Նա, ով անցյալում ևս նման դեպքերի առթիվ շատ էր դժգոհում և ցավ զգում, ուշադիր լսեց դեսպանների զեկուցումը և իր հավատակիցների գլխին եկած փորձանքները իր սեփականը համարելով, դիմեց նախապատրաստական աշխատանքի՝ օգնություն աղերսողներին օգնության հասնելու։ Նա հարյուր նավից բաղկացած նավատորմիղ պատրաստեց, անհրաժեշտ բոլոր միջոցները ձեռք առավ, ընտրեց մի շատ խոհեմ ու փորձառու մարդու, պատրիկ Նիկետասին, որին մականվանում էին Օորիֆաս, և ծովակալ նշանակելով, թշնամիների դեմ ուղարկեց որպես շանթ և փոթորիկ։ Քաղաքի պաշարմամբ զբաղված Աֆրիկայի սարակինոսները, դասալիքների միջոցով իմացել էին, թե ռաուսիոնցիք կայսեր մոտ դեսպանություն են ուղարկել, իրենց, սարակինոսների դեմ օգնական զորք աղերսելու։ Քաղաքի շուտափույթ գրավման մասին հույսեր չունենալով, ապա նաև երկյուղելով կայսրից ակնկալված օգնությունից, նրանք վերացնում են պաշարումը և հեռանում այդ վայրերից։ Անցնելով Իտալիայի այն շրջանից, որ Լանգոբարդիա է կոչվում, նրանք գրոհով վերցնում են Բարիս[124] ամրոցը և, այնտեղ վրաններ խփելով, ամեն օր հարձակում էին գործում մերձակա շրջանների վրա, անգամ խիզախում արշավել դեպի ավելի հեռու ընկած շրջանները։ Այդ ճանապարհով կամաց-կամաց ամբողջությամբ նվաճեցին Լանգոբարդիան, ընդհուպ մինչև անցյալում փառավոր Հռոմ քաղաքը։ Ահա այդպիսին էր վիճակը [Արևմուտքում]։

54. Վերոհիշյալ ցեղերը, այն է՝ խորվաթները, սերբերը և մյուսները, տեսնելով հռոմեական զորքի օգնությամբ Դալմատիայում տեղի ունեցածը, ապա նաև լսելով հռոմայեցիների նոր կայսեր ներողամիտ, անչափ արդար ու առաքինի լինելու մասին, նախընտրեցին ենթարկվել կայսեր իշխանության, քան թե համառել ունենալ սեփական, բայց խախուտ տերություն։ Նրանք որոշեցին վերստին անցնել նախկին ստրկության ներքո, հռոմեական ծառայության տակ։ Այդ նպատակով ահա նրանք ևս դեսպաններ ուղարկեցին կայսեր մոտ, նրանք, ովքեր

ապստամբել էին, ապա և հավատուրաց դարձել, միանգամայն հրաժարվել սուրբ մկրտությունից, հիշեցին, թե ինչպես իրենք ի սկզբանե անտի հռոմայեցիների ծառայության մեջ էին, ինչպես իրենք ժամանակին օգտակար են եղել նրանց և խնդրեցին, որ իրենք կրկին անցնեն հռոմեական պետության մարդասիրական լծի տակ, ենթարկվեն նրա պետին։ Կայսրը հաճույքով ընդառաջեց նրանց խելացի խնդրանքին, նա նախապես ևս շատ էր մտահոգված նրանց համար, չէ՞ որ իր պետության ոչ փոքր մասն էր անջատվել և հափշտակվել, ընդունեց նրանց, ինչպես մարդասեր հայրը անխոհեմաբար հեռացած, բայց այնուհետև զղջացած և վերադարձած որդուն։ Դեսպաններին նա իսկույն հետ ուղարկեց՝ վասիլիկոսի և հոգևորականների հետ միասին, մտածելով նախ և առաջ կորստից փրկել նրանց հոգիները՝ նախկին հավատքին վերադարձնելով, անգիտությամբ կամ անխոհեմությամբ գործած իրենց մեղքերին քավություն տալ։ Այս աստվածահաճո գործը գլուխ բերելուց հետո, երբ բոլորն էլ ընդունեցին սուրբ մկրտությունը և վերստին հռոմեական հպատակներ դարձան, վերոհիշյալ շրջանների վրա ամբողջությամբ տարածվեց կայսեր իշխանությունը. ամենքը ինքնակալի մարդասեր հրամանով իրենց կառավարման համար ցեղակիցներից ղեկավարներ ստացան։ Կայսրը նրանց կառավարիչների պաշտոնը փողով չէր տալիս. այդ դեպքում շատ տվողն ու չափից ավելի եռանդ ցուցաբերողը պիտի դառնար հպատակ ժողովրդի կառավարիչ։ Նա խոհեմ կերպով կառավարիչ էր նշանակում հենց նրանց առաջադրրածներին, այսպես ասած նրանց ձեռնադրածներին, որպես ընտրովի իշխանների, որոնք պարտավոր էին հայրաբար վերաբերվել իրենց հանդեպ։ Այս մասին առա այսքան[125]։

55. Միքայելի ապաշնորհ ու անհոգ թագավորության ժամանակ հռոմեական տիրապետության սահմաններն անցած բարբարոսները, թեև դիմադրության հանդիպեցին, այդ մասին արդեն ասվել է, բայց այնուամենայնիվ մնացին Իտալիայում և անվերջ ավարառում էին և անողոքաբար Բալանի ենթարկում այն։ Նրանք գրավեցին մոտ հարյուր հիսուն բերդ, մի մասը մատնությամբ, մյուսը՝ պաշարելով։ Կայսրը, լսելով այդ մասին, շատ էր տխրում և անվերջ մտածում մի ելք գտնել, վերջնականապես պարտության մատնելու թշնամուն, գոնե հետ մղելու նրան և հռոմեական տիրապետության սահմաններից դուրս շպրտելու։ Նա ռաուսիոնցիների և դալմատացիների ամբողջ ժողովրդին որպես օգնություն արդեն ուղարկել էր զինված ուժեր, որոնց գլխավորում էր, ինչպես ասվեց, Նիկետաս Օորիֆասը, բայց վերջինս հա-

*մոզվեց, որ իր այդ ուժերը ի վիճակի չեն հաղթահարելու բարբարոսների այդքան բազմությունը, նամանավանդ, որ հաճախ ստիպված էին լինում ճակատամարտ տալ միջերկրյա շրջաններում, ծովափից շատ հեռու, իսկ դա ծովային հետևակի համար վտանգավոր էր և ուժերից վեր։ Վասիլը նպատակահարմար չգտավ նոր ուժեր ուղարկել այստեղ, ար?ավանքի մեծ ծախսերի հետ կապված լինելու պատճառով, ապա և այն պատճառով, որ այդ [զորքը] այստեղի վայրերի համար էր պետք։ Նա խոհեմություն ունեցավ դեսպանություն ուղարկելու Ֆրանկիայի ռեքս Լուդովիկոսի և Հռոմի պապի մոտ[126]՝ խնդրելով օգնության հասնել տեղի զորքերին և նրանց հետ ճակատ կազմած՝ դուրս գալ Բաբիսում հաստատված հագարացիների դեմ։ Նա միաժամանակ հրաման տվեց մի փոքր առաջ հիշատակածս սլավոնական երկրներին՝ մասնակցություն ունենալ այգ գործին, Ռաուսիոնի բնակիչների և իրենց տեղական նավերի օգնությամբ անցնելով դալմատացիների ծովը։ Երբ բոլորը միացան, մի հսկայական բանակ ստեղծվեց. դրան գումարվեց և հռոմեական ծովակալը, մի շատ խոհեմ ու քաջ մարդ, որով Բարիսը շուտով գրավվեց։ Բերդը, երկրամասը և գերեվարված ամբողջ ժողովուրդը դարձյալ անցնում է հռոմեական տիրապետությանը, այնտեղ են վերադառնում շրջանի բնիկները։ Ֆրանկիայի ռեքսը Սոլդանոսին և վերջինիս հրամանների տակ գտնվող զորքը գերի է վերցնում և տանում Կապուա. վերջինս, ինչպես և Բենեվենդոսը, դեռ իրեն էին ենթարկվում։ Արևմուտքում կայսեր ձեռնարկած առաջին արշավանքն ահա այսպիսի վախճան ունեցավ, և այնտեղից ձեռք բերված ավարով ու փառքով զարդարվեց մայրաքաղաքը։*

*56. Որովհետև ընդունված է պատմությունը ունկնդիրներին հաճելի դարձնելու նպատակով հաճախ դիմել գեղումների՝ ճոխացնելու համար շարագրանքը, ապա պատմենք նաև, թե ինչ պատահեց Ֆրանկիայի ռեքսի և Աֆրիկայի ամիրա Սոլդանոսի, ինչպես նաև Կապուայի և Բենեվենդոսի բնակիչների հետ։ Սոլդանոսը Կապուայում Ֆրանկիայի ռեքսի ձեռքում մնաց երկու տարի, բայց այդ ընթացքում ոչ ոք երբևիցե նրա դեմքին ժպիտ չտեսավ։ Ռեքսը ոսկի խոստացավ այն մարդուն, ով կկարողանար ստիպել Սոլդանոսին ժպտալ։ Մեկը հայտնեց ռեքսին, թե ինքը խոժոռ Սոլդանոսին տեսել է ժպտալիս և իր ասածը վկաներով հաստատեց։ Ռեքսը կանչեց Սոլդանոսին և հետաքրքրվեց այգ փոփոխության՝ նրա ժպտադեմ դառնալու պատճառներով։ Նա պատասխանեց. «Մի սայլ տեսա, ուշադրություն գարձրեցի նրա անիվների վրա, թե ինչպես նրանց՝ վերևում գտնվող մասն իջնում է ցած,*

իսկ ցածինն էլ բարձրանում վեր։ Դրա մեջ ես մարդկանց ճակատագրի անորոշություն ու փոփոխականության արտացոլումը տեսա և ժպտացի, համոզվեցի, որ փոփոխության ենթակա բաներով ենք ոգևորվում. հիշելով իմ վիճակը, ես անհնարին չգտա այն, որ եթե բարձրից գլորվեցի ցած, ապա պետք է, որ ցածից էլ դարձյալ վեր բարձրանամ»[127], Ռեքսը, լսելով այդ, համոզվեց մարդու ասածի ճշմարտացիության մեջ և այսուհետև նրան ավելի մեծահոգաբար էր վերաբերվում, լինում նրա մոտ։ /57/ Բայց Սողդանոսը լինելով նենգ մարդ և պունիկյան[128] խորամանկությունների քաջ գիտակ, ուզեց, մեկին մյուսի դեմ լարելով. իր փրկության գործը գլուխ բերել։ Կապուա և Բենեվենդոս ամրոցների իշխանները, նրան համարելով կյանքի մեծ փորձ ունեցող, խոհեմ և իմաստուն մարդ, որը երջանկությունից դժբախտության մեջ է գլորվել, հաճախ էին այցելում նրան։ Սողդանոսը ձևացնում էր, որ համակրում է նրանց և ուզում է ռեքսի մի գաղտնիքը հայտնել, բայց վախենում է, որ հանկարծ կմատնեն իրեն և գլխին փորձանք կբերեն։ Երբ նրանք երդվեցին, որ այդ մասին ոչինչ չեն ասի, նա հայտնեց, որ ռեքսը որոշել է ձեզ բոլորիդ շղթայակապ իր երկիրը՝ Ֆրանկիա տանել, որովհետև այդ եղանակով միայն կարող է հուսալի կերպով տիրել ձեր քաղաքներին։ Նրանք ամենևին էլ հավատ չընծայեցին նրա խոսքերին և ուզում էին ավելի ճշգրիտ բան իմանալ։ Այս անգամ Սողդանոսը դիմում է ռեքսին և նույն ոգով ասում, թե դու հուսալիորեն չես կարող տիրել այս բերդերին, քանի նրանց իշխանները այստեղ են մնում։ Եթե ուզում ես հաստատուն տիրել այս [բերդերին], սրանց փութանակի շղթայիր և Ֆրանկիա ուղարկիր։ Ռեքսը համոզվեց նրա ասածին և հրամայեց շտապ կարգով ինչ-որ անհետաձգելի գործի համար շղթաներ կոփել։ Սողդանոսն այդ միջոցին դարձյալ հանդիպում է իշխաններին և ասում. «Դուք դեռ շարունակում եք չհավատալ իմ խոսքերին. հետաքրքրվեցեք և իմացեք, թե բոլոր երկաթագործները ռեքսի հրամանով ի՞նչ են պատրաստում։ Եթե տեսնեք, որ շղթաներ և կապանքներ են կոփում, մի կասկածեք ձեր փրկության համար ասված խոսքերի վրա»։ Իշխաններն այդ ընթացքում համոզվեցին, որ բարբարոսի ասածը ճիշտ է և այլևս ոչ մի բանի վրա չկասկածելով, ռեքսից պաշտպանվելու ուղիների մասին էին մտածում։ Երբ մի քիչ հետո նա որսի գնաց, հետևից փակեցին դարպասները և այլևս թույլ չտվեցին նրան ներս մտնել։ Ռեքսը հանպատրաստից ոչինչ անել ի վիճակի չլինելով, իր երկիրը վերադարձավ։ /58/ Եվ ահա Սողդանոսը գալիս է իշխանների մոտ՝ հատուցում խնդրելու իր հայտնած գաղտնիքի համար, այն

է՝ թույլ տրվի իրեն գնալ իր հայրենիքը։ Նրան թույլ տվեցին և նա գնաց Կարքեդոն[129], իր ձեռքը վերցրեց սեփական իշխանությունը։ Ապացուցելու համար, որ իսկապես ստոր է, նա արշավում է Կապուայի և Բենեվենդոսի վրա՝ իր փրկության համար փոխհատույց լինելու նրանց իշխաններին։ Վերջիններս օգնության խնդրանքով դիմում են ռեքսին, բայց նա հայհոյանքներով վռնդում է՝ ասելով, որ շատ ուրախ է իրենց կորստյան առթիվ։ Բերդերի իշխանները սուրհանդակ են ուղարկում կայսեր մոտ, որը, լինելով կարեկցող ու մարդասեր, շտապ կարգով սուրհանդակին հետ է ուղարկում հաղորդելու, թե օգնությունն անհապաղ կհասնի։ Բայց լրաբերը, նախքան իրեն ուղարկողներին կայսեր պատասխանը հասցնելը, ընկնում է թշնամիների ձեռքը։ Սոլդանոսն ասում է նրան. «Եթե դու կատարես իմ ասածը, ոչ միայն կփրկվես, այլև նվերներ կստանաս»։ Երբ նա համաձայնվեց հրամանը կատարել, Սոլդանոսն ասաց. «Ես ուզում եմ, որ դու գնաս և բերդի [պարիսպների] առաջ կանգնելով, ներսում գտնվողներին ասես, թե ես իմ պարտականությունն արեցի, ինձ տրված հրամանները կատարեցի, բայց կայսրից օգնություն չկա, նա մերժեց ձեր խնդրանքը»։ Սուրհանդակը խոստացավ այդպես էլ անել և Սոլդանոսի ծառաների ուղեկցությամբ գնաց քաղաքացիներին հայտնելու այդ մասին։ Երբ մոտեցավ պարսպին, խնդրեց, որ քաղաքի զինվորները գան լսելու իր ասելիքը. «Թեև մահս աչքիս առաջ է, ասաց, հենց հիմա պիտի սրախողխող արվեմ, բայց չեմ կարող թաքցնել ճշմարտությունը։ Միայն խնդրում եմ ձեզ և երդվեցնում, իմ փոխարեն զավակներիս և կնոջս հատուցում տվեք, քանզի ես, ո՛վ իմ տերեր, թեև թշնամիների ձեռքում եմ, բայց կատարել եմ իմ պարտականությունը, հայտնել ձեր խնդրանքը հռոմայեցիների կայսեր. այնտեղից շուտով օգնություն կգա։ Արդ, քաջ եղեք, մի վհատվեք, քանզի գալիս է փրկարարը, թեև ոչ իմ»։ Սոլդանոսի ծառաները լսելով այդ, կատաղեցին, որ խաբված են և իսկույն նրան սրախողխող արեցին։ Կայսեր ակնկալվող օգնությունից երկյուղած՝ Սոլդանոսը վերացրեց պաշարումը և իր երկիրը վերադարձավ։ Այսուհետև այդ բերդերի իշխանները հավատարիմ մնացին կայսեր և բերդերը դրին նրա գերիշխանության ներքո։

59. Այն ժամանակները հագարացիների մի նավատորմիղ ևս հանդես եկավ հռոմեական պետության դեմ։ Բայց կայսեր անվերջ աղոթքներով առ աստված, խելացի կարգադրություններով և հմուտ կառավարմամբ հռոմայեցիները հաղթեցին, իսկ հագարացիները խայտառակ պարտության մատնվեցին։ Տարսոնի ամիրան, որին էսման[130] էին կո-

չում, կոմբարիա կոչվող երեսուն վիթխարի նավերից բաղկացած նավատորմիղ կազմելով, հարձակվել էր Էվրիպոս[131] ամրոցի վրա։ Հելլադայի զորավարը[132] (նա Օյնիատեսն էր) կայսերական հրամանի համաձայն ամբողջ Հելլադայի զենք կրելու ընդունակ բնակչությունը նախապատրաստեց ամրոցը պաշտպանելու, պարիսպների վրա պատրաստեց պաշտպանական անհրաժեշտ դիրքեր։ Ամրոցի պաշտպանները տեսնելով, որ նավերը մոտենում են պարիսպներին, և որ բարբարոսները նետերի տարափ արձակելով փորձում են իրենց՝ ամրոցի պաշտպաններին հետ մղել ու փախուստի մատնել, լցվեցին քաջությամբ ու կորովով և արիաբար դիմադրում էին։ Նրանք քարձիգ բաբաններով ու նետաձիգ մեքենաներով, ապա և ձեռքերով քարեր էին շպրտում և բազմաթիվ բարբարոսներ կոտորեցին։ Բացի այդ, օգտվելով նպաստավոր քամուց, նավերից շատերը հեղուկ կրակով[133] հրո ճարակ դարձրին։ Բարբարոսը անելանելի վիճակում էր և վհատության մեջ. գիտենալով, որ փողի սիրույն շատերն են իրենց կյանքը կամովին վտանգների ենթարկում, [ճամբարի] ցանկապատի առջև մի մեծ վահան դրեց, լցրեց այն ոսկով ու ասաց. «Սա որպես մրցանակ և պարգև, դրան գումարած նաև հարյուր ընտիր կույսերի, ես տալիս եմ նրան, ով առաջինը կմտնի քաղաք և կապահովի ցեղակիցների հաղթանակը»։ Քաղաքի պաշտպանները տեսնելով այդ, հասկացան դրա իմաստը։ Ոգևորող խոսքերով միմյանց սրտապնդելով, նրանք ազդանշանով մեկից բացեցին դարպասները և քաջաբար հարձակվեցին բարբարոսների վրա։ Մեծ կոտորած տեղի ունեցավ, ամիրան էլ ստացավ մահացու հարված և գետին տապալվեց, իսկ մնացածները դիմեցին փախուստի։ Հալածողները հետապնդեցին նրանց մինչև նավերը և ձեռքերն ընկածին կոտորում էին։ Բարբարոսների ջարդը կատարյալ էր։ Կենդանի մնացածները լցվեցին մի քանի նավերի մեջ ու խայտառակ կերպով իրենց երկիրը փախան։ Ահա բարբարոսական նավատորմիղը գլխովին պարտության մատնվեց և անփառունակ հեռացավ, այն էլ առանց հռոմեական ծովային ուժի միջամտության, այլ կայսեր աղոթքներով միայն ու դիմադրողների քաջության շնորհիվ։

60. Հազիվ էր Տարսոնի վրայից ամպը ցրվել, երբ Կրետեում կրրկին փոթորիկ բարձրացավ։ Այդ կղզու ամիրա Սայիդ Ապոքապսը, իր գործակից ոմն Փոտի՝ պատերազմող ու գործունյա մի մարդու հետ քսանյոթ կոմբարիայով, որոնց համապատասխան նաև բազմաթիվ փոքրր ծովահենական նավերով և պենտեկոնտորներով, որոնց շատերը կոչում են սեկտուրա և գալեա, արշավեցին հռոմեական տիրապետու-

Ձյունների վրա և ամբողջ Էգեական ծովը ավարի առան։ Նրանք հաճախ հասնում էին նույնիսկ Հելլեսպոնտոսի Պրիկոնեսոսը, շատերին էին գերեվարում ու կոտորում: Կրետացիների այս նավատորմիղի վրա հարձակվեց վերոհիշյալ պատրիկ Նիկետասը, նա, ում վիճակվել էր գլխավորել հռոմեական նավատորմիղը։ Մեծ ծովամարտ տալով, նա հեղուկ կրակով մեկից հրդեհեց կրետական քսան նավ, իսկ նրանց մեջ գտնվող բարբարոսները դարձան սրի, հրո և ջրի ճարակ։ Ջրասույզ չեղած նավերը փախուստով միայն կարողացան իրենց փրկությունն ապահովել։

61. Հակառակ այն բանի, որ կրետացիք ահա նման կորուստներ կրեցին և պարտված վերադարձան, այնուամենայնիվ հանդիստ չմնացին և ծովային գործերին նորից ձեռք մեկնեցին. վերևում հիշատակածս Փոտի ծովակալությամբ նրանք սկսեցին փորձության ենթարկել և թալանել հատկապես մայրաքաղաքից հեռու ընկած շրջանները, այն է՝ Պելոպոնեսը և նրանից ցած գտնվող կղզիները։ Հռոմեական տրիերաներով նրանց դեմ է ուղարկվում ականավոր ծովակալ Նիկետաս Օորիֆասը, որը նպաստավոր քամու օգնությամբ մի քանի օրում հասնում է Պելոպոնես։ Խարիսխ գցելով Կենխրեոն նավահանգստում և իմանալով, որ բարբարոսները սկսել են թալանել Պելոպոնեսի արևմտյան շրջանները, այն է՝ Մեթոնեն, Պատրան և նրանց սահմանակից Կորրնթոսի շրջանները, խոհեմ և իմաստուն քայլի է դիմում. որոշում է Պելոպոնեսը չշրջանցել ծովով, չնավարկել Մալեասի [թերակղզով]՝ չկտրել հազար մղոն տարածությունը և չկորցնել թանկագին ժամանակը։ Հենց տեղն ու տեղը, փութանակի, ունենալով բազմաթիվ աշխատող ձեռքեր և փորձառություն, նա Կորնթոսի նեղուցի ցամաքի վրայով մյուս կողմը քաշեց նավերը[34] և անցավ գործի։ Հանկարծակի հայտնվելով, նա սարսափահար արեց և շփոթության մեջ գցեց միանգամայն անտեղյակ թշնամուն։ Նախորդ ճակատամարտից ստացած վախը դեռ չէր փարատվել, երբ այս անակնկալ հարձակումն էլ վրա հասավ, և [թշնամին] հնարավորություն չունեցավ դիմադրելու ու կռվի բռնվելու փորձ անգամ անելու։ [Նիկետասը] թշնամու նավերի մի մասը կրակի տվեց, մյուսը ջրասույզ արեց, բարբարոսներից ոմանց խողխողեց, մյուս մասը ծովի հատակն ուղարկեց, նրանց հրամանատարին էլ սպանեց, իսկ մնացածներին ստիպեց ցրիվ գալ կղզու չորս կողմը։ Վերջիններիս նա հետագայում որսաց և զանազան պատիժների ենթարկեց, ոմանց մորթազերծ արեց, հատկապես նրանց, ովքեր ուրացել էին Քրիստոսի մկրտությունը, ասելով, որ [մկրտությունից] է զրկում նրանց և ոչ թե

նրանց պատկանող որևէ այլ բանից։ Իսկ ուրիշներին սարսափելի տանջանքների ենթարկեց՝ ծոծրակից մինչև գարշապարը փոկ քաշելով։ Ոմանց գերանի ծայրին կապելով բարձրից գցեց կուպրով լի կաթսաների մեջ, ասելով, որ արժանացնում է նրանց մկրտության՝ դանջալի և մթին։ Ահա այսպես խայտառակեց նրանց և իրենց կատարած չարագործություններին վայել պատիժներ տվեց. այսուհետև նրանք սարսափում էին հռոմեական շրջանների վրա արշավանքի դուրս գալուց։

Ահա այս կերպ ցրվեցին հարավային քամիները, և հռոմեական պետության նավը անվտանգ նավարկում էր այնտեղից /62/, երբ արևմուտքում դարձյալ սարսափելի փոթորիկ բարձրացավ[135], Աֆրիկայի ամերմումնին, վաթսուն հսկայական նավեր պատրաստելով, հարձակվեց հռոմեական տիրապետության վրա և թալանելով ու գերեվարելով՝ հասավ մինչև Կեֆալոնիա և Զակինթոս կղզիները։ Կայսրը, իմանալով այդ մասին, անհապաղ օգնության հասավ. նա ուղարկեց ծովակալին (նա Նասարն էր)՝ բազմաթիվ տրիերներից, դիերներից և այլ արագընթաց նավերից բաղկացած մեծ նավատորմիղով։ Նասարը կարճ ճանապարհով, նպաստավոր քամու օգնությամբ, շուտով հասավ Մեթոնե, բայց թշնամիների վրա անմիջապես հարձակվել չկարողացավ։ Պատճառը հետևյալն էր. թիավարներից շատերը, վախենալով վտանգից, փոքր խմբերով թաքուն փախուստի դիմեցին։ Նրանց դասալքությունը պատճառ դարձավ նավերի ընթացքի դանդաղեցման, որովհետև նավերն արդեն չէին կարող մեծ թափով կտրել ալիքները և հարձակվել ակառակորդների վրա։ [Նասարը] գտավ, որ այդպես զինաթափ եղած չի կարելի թշնամու դեմ դուրս գալ և սուրհանդակի միջոցով իրադրության մասին տեղյակ պահեց կայսեր։ Վերջինս, առանց հապաղելու, հատուկ մարդկանց ուղարկեց, բոլոր դասալիքներին որսաց և բանտնեց։ Ձեռքերը ցեղակիցների արյամբ ներկելուն դեմ լինելով, բայց կամենալով մնացած թիավարների մեջ սարսափ տարածել, որպեսզի նրանց չար օրինակին չհետևեն և դասալիք կամ անփույթ չլինեն, խոհեմ որոշում է ընդունում. փիգլայի դրունգարին հրաման է տալիս Պրետորիոնում բանտարկված երեսուն մահապարտ ոճրագործներին[136] գիշերով դուրս հանել, դեմքերին մուր քսել, մորուքներն ու գլխի մազերը խանձել և անճանաչելի դարձնել։ Նրանց խստորեն կարգադրել, որ չհամարձակվեն ձայն, ծպտուն հանել, հրամանը չկատարողին սպառնալով մահապատժով։ Ահա սրանց, որպես դասալիք եղած թիավարների պարագլուխների, ձիարշավարանում մտրակահարել, ձեռքերը մեջքին կապած ման ածել քաղաքի հրապարակում։ Այնուհետև, ոտքերը կալանդ-

ների մեջ հագցրած, Պելոպոնես ուղարկել, որպեսզի իրենց արժանի պատիժն ստանան հենց այնտեղ, որտեղից փախել են[137]։ Այգ գործը գրվեց Պելոպոնեսի զորավար Հովհաննեսի վրա, որի մականունն էր Կրետացի։ Սա կայսերական հրամանի համաձայն, Մեթոնեում, ուղարկված կալանավորների թվին համապատասխան, ցցեր տնկեց և նրանց որպես դասալիքների պարագլուխների ցցահան արեց։ Հռոմեական նավատորմիղի նավաստիները, ականջալուր և ականատես լինելով կատարվածին, դատապարտեցին նրանց որպես վախկոտների և թշվառականների, իսկ իրենք էլ ձեռք բերեցին դժվարությունները հաղթահարելու կամք, դեն գցեցին թուլամորթությունն ու թափթփվածությունը և խնդրում էին ծովակալին շտապ կարգով իրենց առաջնորդել հակառակորդների դեմ։

63. [Ծովակալը] զորքի նվազած մասը համալրեց Պելոպոնեսի զինվորներով և մարդայիտներով[138] և, [Պելոպոնեսի] զորավարին գործակից վերցնելով, հարձակման նախապատրաստություն տեսավ։ Սարակինոսները, որ համոզվել էին հռոմեական նավաստիների երկչոտ լինելու մեջ, իզուր տեղ ժամանակ վատնած չլինելու համար, շատ հանգիստ դուրս էին գալիս իրենց նավերից և թալանում մերձակա շրջաններն ու կղզիները, երբ հանկարծակի և աննկատելիորեն նրանց մոտեցավ հռոմեական ծովային հետևակը։ Զորավարի ազդանշանով [ծովային հետևակը] գիշերով անակնկալ հարձակում գործեց թշնամիների վրա, որոնք ո՛չ գիմադրելու ժամանակ գտան, ո՛չ էլ կռվի բռնվելու և չարաչար սրակոտոր եղան. Նրանց նավերը իրենց զինվորներով և ունեցվածքով հանդերձ հրո ճարակ դարձան։ Կրակից զերծ մնացած նավերը Նասարը բերեց Մեթոնե և նվիրաբերեց աստծո եկեղեցուն. Նա իր զինվորներին թույլ տվեց օգտվել ձեռք բերված ավարից և գերիներից, որից հետո փութանակի կատարվածի մասին տեղեկացրեց կայսեր, հարցրեց այսուհետև ի՞նչ անել, ո՞ւր գնալ։ Կայսրը հաջողության համար գովեց նրան և հրամայեց առաջ շարժվել։

64. Տեսնելով, որ գործը հաջողություններից գոտեպնդվել է, [Նասարն] անցնում է Սիկիլիա և Պանորմոն և ավարառում Կարքեդոնի հագարացիներին հարկատու այնտեղի քաղաքները։ Նա գրավում է բազմաթիվ բեռնատար և այլ նավեր, որոնք բեռնված էին հսկայական քանակությամբ ձիթայուղով և արժեքավոր շատ այլ բաներով։ Պատմում են, որ այդ ձիթայուղը բերելուց հետո նրա գինն այնքան ընկավ, որ լիտրը վաճառում էին մեկ օբոլոսով։ /65/ Նույն նավատորմիղը, անցնելով Իտալիայի շրջանները և միանալով կայսեր պրոտովեստիա-

րիոս[139] Պրոկոպիոսի և թրակացիների ու մակեդոնացիների այն ժամանակվա զորավար Լևոնի, որին Ապոստյուպես էին մականվանում, գլխավորած հռոմեական հետևակին և այրուձիին, հռոմեական պետության համար շատ օգտակար գործեր արեց։ Նասարը Ստելե կոչվող կղզում պարտության մատնեց Աֆրիկայից կրկին դուրս եկած [հագարացիների] նավատորմիղը, բարբարոսների ձեռքից ազատագրեց, բացառությամբ մի քանիսի, Կալաբրիայում և Լանգոբարդիայում հագարացիների ձեռքն անցած գրեթե բոլոր ամրոցները և նրանց վրա հաստատեց հռոմեական իշխանությունը։ Ծովային ուժերն, այսպիսով, անմասն լինելով նենգության, նախանձին ու մախանքին, կարողացան հսկայական ավար ձեռք բերել, հաղթական [դափնե]պսակներով վերադառնալ կայսեր մոտ և ամբողջ պետությունը լցնել բերկրանքով։ Նրանք բազմաթիվ առիթներ ընձեռեցին կայսեր, գոհություն ու շնորհակալություն հայտնելու աստծուն։

6. Բայց հետևակն, այնուամենայնիվ, չկարողացավ խուսափել նախանձից, թեև արի ու փառավոր գործեր կատարեց, բայց այս կռվի ժամանակ առաջացած վեճի ու գժտության պատճառով կորցրեց գերագույն հրամանատարին։ Լևոնը լարվել էր Պրոկոպիոսի դեմ։ Երբ թշնամիների հետ մարտի բռնվեցին, թրակացիներին ու մակեդոնացիներին գլխավորող և աջ թևում մարտնչող Ապոստյուպեսը կարողացավ պարտության մատնել թշնամիներին և նրանց մեծ ջարդ տվեց։ Բայց սկլավենների և արևմտյան զորքերի հետ [ձախ] թևում ճակատած Պրոկոպիոսին հակառակորդները դժվարին դրության մեջ գցեցին։ Զորակից [Ապոստյուպեսը] դժվարին կացության մեջ գտնվող զորքին օգնության չհասավ, որովհետև գժտված էր Պրոկոպիոսի հետ. վերջինիս գլխավորած թևն, այսպիսով, գլխովին փախուստի մատնվեց. [Պրոկոպիոսն] էլ փախուստի ժամանակ սրախողխող արվեց և իր ձիով հանդերձ գետին տապալվեց։ Ճակատամարտնահա այսպիսի վախճան ունեցավ։ Լևոնը, իր գժտության պատճառով տեղի ունեցած պատահարը սքողելու համար, ցանկացավ մի հերոսություն ևս գործել։ Նա իր զորքով և Պրոկոպիոսի՝ փախուստով փրկված զինվորներով հարձակվեց Տարանտա ամրոցի վրա, որ դեռ հագարացիների ձեռքում էր, և գրոհով վերցրեց այն, իսկ տեղում գտնվող բոլոր զինվորներին գերեվարեց։ Նա թույլատրեց զորքին զբաղվել թալանով, կայսեր համար էլ բազում ավար բերեց։ Բայց կայսրը ամենևին էլ գոհ չմնաց դրանից. ոչ էլ պարգևատրեց Լևոնին որպես հերոսի։ Նա հարցուփորձ անելով իմացավ, որ [զորավարների] միջև ծագած գժտությունն էր պատճա-

*ռը, որ մարտում ընկավ համազորավարը, դրա համար Լևոնին պաշտոնանկ անելով, աքսորեց իր՝ Լևոնի ղլյակը, որ գտնվում էր Կոտիայոնի մոտ։*

*67. Բայց դրանից հետո էլ Ապոստյուպեսի գլխին նման փորձանքներ եկան։ Պրոտոստրատոր Վայանոսը և կուբիկուլարիոս Խամարետոսը՝ [Ապոստյուպեսի] ամենամերձավոր մարդը, համաձայնության եկան և իրենց տիրոջ դեմ կայսեր ուղղված մի ամբաստանագիր հորինեցին, որտեղ իմիջիայլոց հայտնվում էր, որ պրոտովեստիարիոս Պրոկոպիոսի մահը ծրագրված էր իրենց տիրոջ կողմից. նրան մեղադրում էին նաև պետական դավաճանության և այլ ծանր ու լուրջ հանցանքների մեջ։ Խամարետոսը վերցրեց ամբաստանագիրը և մտնելով մայրաքաղաք՝ հանձնեց այն կայսեր։ Բայց դա չվրիպեց Ապոստյուպեսի որդիների՝ Վարդասի[140] և Դավթի ուշադրությունից, որոնք սրախողխող են անում և սպանում Վայանոսին։ Իրենց արարքի համար կայսեր [դատաստանի] երկյուղն զգալով, որոշում են իրենց հոր հետ Ասորիք փախչել։ Կայսրն իմացավ այդ մասին և առանց հապաղելու մանգլավիտ Վարցապեդոնին[141] ուղարկեց նրանց բռնելու և իր մոտ բերելու։ Նա նրանց հասավ Կապպադովկիայում, որտեղից նրանք փութանակի ճամփա էին ընկել դեպի Ասորիք։ Երբ Վարցապեդոնը, կայսերական հրամանի համաձայն, փորձեց նրանց ձերբակալել, հանդիպեց համառ դիմադրության։ Այս ընդհարման ու բախման ժամանակ Ապոստյուպեսի երկու որդիները սպանվում են, իսկ ինքը՝ Ապոստյուպեսը, ձերբակալվում է և շղթայակապ բերվում կայսեր մոտ, որն այն ժամանակ գտնվում էր Հիերիայի պալատում։ Կայսեր հրամանով նա հանձնվեց մագիստրոս Մանուիլի դատաստանին։ Իր դեմ ներկայացված մեղադրանքների, այդ թվում և թշնամիների մոտ փախչելու փորձ անելու համար[142], նա զրկվեց մեկ աչքից և մեկ ձեռքից, որից հետո իր կյանքի օրերը սպառեց աքսորում՝ Մեսեմբրիայում[143]։ Այսպիսի վախճան ունեցավ ահա ընդհանրապես անարգ Ապոստյուպեսը։*

*68. Այն միջոցին, երբ կայսրն իր զորավարներով զբաղված էր Արևմուտքով, Հարավի արաբները շունչ քաշեցին և ենթադրելով, որ հռոմայեցիները անգործության են մատնված, անհոգ ու անփույթ նստած են, լցվեցին եռանդով և որոշեցին կրկին ձեռք մեկնել ծովային գործերին։ Եգիպտոսի և Ասորիքի ծովափնյա քաղաքներում նավեր շինելով, նրանք վճռեցին արշավել հռոմայեցիների ենթակա ցամաքի ու ծովի վրա։ Նրանք գտան, որ նախապես անհրաժեշտ է հետախույզների միջոցով իմանալ, թե ինչ վիճակում են կայսեր գործերը. հանարեն*

իմացող և հույնի զգեստներ հագած մի մարդու ուղարկեցին, որ պետք է ամեն ինչ իմանար և իրենց հայտներ։ Մշտարթուն, հասարակաց հոգսերով ապրող և ամեն ինչ կանխատեսող կայսեր ուշադրությունից չվրիպեցին Ասորիքում կառուցվող նավերը, այդ պատճառով նա իր հերթին ավելի շատ տրիերներ ու դիերներ շինեց և, ծովային ուժերը կենտրոնացնելով մայրաքաղաքում, սպասում էր, թե ինչ ցույց կտա ապագան։ Բայց, որպեսզի նավաստիները անգործ մնալով չվարակվեն անհնազանդության ախտով, հրամայեց աշխատել այն ժամանակ պալատի բակում կառուցվող մեր փրկիչ Հիսուս Քրիստոսի, հրեշտակապետաց և Եղիա Թեսբացու տաճարի շինարարության վրա. [Թշնամու] նավատորմիղի՝ Ասորիքի սահմաններից դուրս գալու դեպքում այս [նավաստիները] ևս ուղարկվելու էին նրանց ընդդիմակայելու։ Ասորիքից ժամանած լրտեսը, տեսնելով նավերի բազմաթվությունը, ուղարկվելու պատրաստ զորքը, մանրամասն հետախուզելով ու լրտեսելով, վերադարձավ և զեկուցեց իրեն ուղարկողներին։ Վերջիններս ստանալով կայսեր տեսած պատրաստությունների մասին անակնկալ լուրը, վախեցան և որոշեցին հանգիստ մնալ, դադարեցրին նավերով արշավելու նախապատրաստությունները։ Բայց և այնպես նավաստիների բազմությունը մնաց մայրաքաղաքում և զբաղված էր վերոհիշյալ գործով։

69. Կարքեդոնի բարբարոսները, իրենց կրած պարտություններից հետո, երկյուղ զգացին, որ հռոմեական նավատորմիղը կփրձի նաև իրենց [քաղաքի] վրա հարձակվել։ Այդ պատճառով իրենք ևս բազմաթիվ նավեր շինեցին։ Բայց երբ գարունն անցավ և տեսան, որ կայսրը զորք չի ուղարկել, ենթադրեցին, որ կայսեր զորքը զբաղված է ուրիշների դեմ մղվող պատերազմներով, և հանդգնեցին Սիկիլիայի վրա արշավել։ Գալով [կղզու] մայրաքաղաքը, այն է՝ Սիրակուսա, պաշարեցին այն և սկսեցին թալանել ու ավարի առնել նրա արվարձանները և [քաղաքի] շրջակայքը։ Սիկիլիայի զորավարը այդ մասին հայտնեց կայսեր, և Ասորիքի դեմ ուղարկվելու պատրաստված ռազմական ուժը զորավար Ադրիանոսի գլխավորությամբ առաքվեց Սիկիլիա. այդ ժամանակ նա էր ծովային ուժերի հրամանատարը։ Նա, թագավորանիստ քաղաքից դուրս գալով, չհանդիպեց նպաստավոր, համընթաց քամու և, մի կերպ հասնելով Պելոպոնես, խարիսխ գցեց Մոնեմվասիայի Հիերաքս նավահանգստում, սպասելով հաջողակ քամու։ Եթե անհոգ մարդ չլիներ, եթե նրա երակների մեջ արյունը եռար, նա կնավարկեր նույնիսկ քամուն հակառակ, անհողմության դեպքում կթիավարեր և կփութար ծրագրի իրականացմանը։ Բայց նշված նավահանգըս-

*տում նա անչափ ժամավաճառ եղավ, իսկ հագարացիներն օղակն էլ ավելի սեղմեցին, դիմեցին ամեն մի միջոցի, աճապարեցին իրենց մրտադրությունն իրականացնելու, քանի պաշարվածներին օգնության չեն հասել։ Քաղաքը գրավվեց գրոհով, պաշտպանների մեծ կոտորած տեղի ունեցավ, քաղաքի ամբողջ բնակչությունը գերեվարվեց, առկա հարստությունը թշնամիների ձեռքը ավար ընկավ, քաղաքը հիմնահատակ կործանվեց, և նրա սուրբ տաճարները կրակի տրվեցին։ Հոչակավոր և գեղեցիկ քաղաքը, որ բազմիցս պարտության էր մատնել իր վրա հարձակված անհամար հունական և բարբարոսական զորքերին, ավերակների վերածվեց։ [70] Դեպքի մասին Ադրիանոսը տեղեկացավ հետևյալ կերպ. Պելոպոնեսում Մոնեմվասիայից, այսինքն՝ այնտեղից, որտեղ խարիսխ էր գցել հռոմեական նավատորմիղը, ոչ հեռու Հելոս անունով մի վայր կա, որն իր անունը ստացել է շուրջը գտնվող խիտ ու ստվար անտառներից։ Այնտեղ դիվային ուժ էր թաքնված, և որպեսզի նա իբրև թե անվնաս պահի արածող հոտերը, արժանացել էր տեղի հովիվների լուրջ հոգատարության։ Դևերից մի քանիսը ուրախ խոսակցում էին, և հովիվները լսեցին նրանցից, թե երեկ Սիրակուսան գրավվեց, որ քաղաքն ամբողջությամբ հիմնահատակ կործանվեց և կրակի տրվեց։ Հովիվները իրենց լսածը պատմեցին ոմանց և լուրը բերնեբերան հասավ Ադրիանոսին։ Վերջինս իսկույն իր մոտ կանչեց հովիվներին և մանրամասն հարցուփորձ արեց. հովիվների ասածը և իր լսածը համընկան։ Նա ցանկություն հայտնեց ականջալուր լինելու [դևերի խոսակցության] և հովիվների հետ գնաց նշված վայրը։ Հովիվների միջոցով հարց տվեց դևերին, թե Սիրակուսան ե՞րբ կգրավվի ու պատասխան ստացավ, թե Սիրակուսան արդեն գրավվել է։ Նա տխրեց ու նեղդրության մեջ ընկավ, բայց իրեն հանգստացրեց այն մտքով, թե չպետք է չար ոգիների ասածներին հավատալ, որովհետև նրանք կանխագուշակելու կարողություն չունեն։ Նա անգիտանում էր, որ դա ոչ թե կանխագուշակություն էր, այլ կատարվածի, եղած-վերջացածի բացահայտումը. դևերն իրենց արագաշարժությամբ ավելի շուտ են տեղ հասնում, քան այն մարդիկ, ովքեր գալիս են հաղորդելու կատարվածը։ Նա դեռ տարակուսանքի մեջ էր, բայց տասը օր անց, կոտորածից փրկված սելոպոնեսցի մարդայիտներից և տաքսատոսներից ոմանք պատմեցին այդ ավերածությունների մասին, որոնց ականատես էին եղել իրենք։ Ադրիանոսը նրանցից այդ լուրն ստանալով, նավատորմիղով փութանակի (գնալու ժամանակ հակառակ ուղղությամբ փչող քամին վերադառնալու համար արդեն նպաստավոր էր) հասնում է Թագավորա-*

նիստ քաղաքը և ապաստան հայցում աստծո իմաստության անունը կրող տաճարում։ Բայց սարսափելի փորձանքը կայսեր սրտաբեկ էր արել, նրա զայրույթն ու զգացած ցավը չափ ու սահման չունեին և Ադրիանոսին պատժից չփրկեցին ո՛չ աստծո տաճարը, ո՛չ էլ նրա համար միջնորդող պատրիարքը։ Ճիշտ է, վերջինս նրան մահապատժից փրկեց, թեև դրան արժանի էր, բայց նրան չհաջողվեց միանգամայն զերծ պահել այն չափավոր պատժից, որն ուրիշների համար էլ կարող էր դաս լինել։ Կայսրը կարող էր իր անձնական հարցերի առթիվ բորբոքված զայրույթը չափավորել և սանձել, բայց նա միանգամայն անզիջող էր, երբ հարցը վերաբերում էր հասարակաց շահերին։

71. Արևմուտքում ահա դարձյալ հզորացան թշնամիները։ Սպասվում էր, որ նրանք այս հաջողությունից թևավորված, ավելի առաջ կանցնեն և կծավալեն իրենց սրշավանքները։ Դրա համար թրակացիներից, մակեդոնացիներից և ընտիր խարսիանոնցիներից ու կապադովկացիներից բաղկացած զորքով նրանց դեմ է ուղարկվում Լանգոբարդիայի զորքերի հրամանատար կապադովկացի Ստեփանոսը, որին Մաքսենտիոս էլ էին անվանում։ Նա, հասնելով նշված վայրը, փորձեց գրավել սարակինոսների ձեռքում գտնվող Ամանտիա քաղաքը. լինելով դանդաղաշարժ և անփույթ, բայց ավելի ճիշտ վախկոտ ու փափկակյաց, նա այդպիսի զորքով չկարողացավ հաջողության հասնել և այդ պատճառով պաշտոնանկ արվեց։ Նրան փոխարինում է Նիկեփորը, Փոկաս մականվանյալը[144], եռանդուն, արթուն, ֆիզիկական ուժով ու մտավոր կարողություններով օժտված մի համեստ մարդ, որն իր հետ վերցրեց Արևելքի հրամանատարներին ենթարկվող մեծ զորք և այն Դիակոնիցեսին[145], որ ժամանակին Տեֆրիկեում Խրիսոխիրին էր ծառայում՝ Մանիի հավատքը դավանող[146] մի մեծ զորամասով։ Նիկեփորը, գլխավորելով Ստեփանոսի զորքերը, ցուցաբերեց խոհեմություն, պատերազմական արիություն և սխրանք։ Նա իսկույն գրավեց Ամանտիա քաղաքը, դիմադրություն ցուցաբերած թշնամիներին փախուստի մատնեց ու նրանց մեծ ջարդ տվեց, վերստին հռոմեական տիրապետության ենթարկեց Տրոպաս կոչվող ամրոցը և սուրբ Սևերինայինը. մարտում և կռիվներում նա հաղթեց հագարացիներին, նրանցից գրաված ավարով լիացրեց իր զորքը։ Այդպիսի գործեր նա արեց երանելի կայսր Վասիլի կենդանության օրոք. պակասը նա լրացրեց հետագայում, ամենահեզ և ամենաիմաստուն կայսր Լևոնի, [Վասիլի] որդու ժամանակ։ Թեև ժամանակագրական տեսակետից այս մարտերը իրար չեն հաջորդել, ինչ-

պես սույն պատմության մեջ է ցույց տրված, բայց յուրաքանչյուր դեպքի ճշգրիտ ժամանակը հայտնի չլինելու պատճառով, բոլորը մի տեղում շարադրվեց՝ իրար հետևից։

Ահա այն, ինչ ես լսեցի անմիջականորեն Վասիլ կայսեր, ինչպես և նրա զորահրամանատարների միջոցով արածի մասին՝ ցամաքում և ծովում, Արևելքում և Արևմուտքում։

72. Անհրաժեշտ է դարձյալ կանգ առնել այն գործերի վրա, որ կայսրն իրագործեց անձնապես, պատմել, թե ինչպես նա մշտապես ապրում էր հասարակաց հոգսերով, միտքն անվերջ զբաղված էր լինում ժողովրդի ցավերով, թե ինչպես նա խոհեմաբար էր տնօրինում գործերը։ Նա ուշադիր ունկնդրում էր պատմական զրույցներ, քաղաքական խրատներ, բարոյախոսական դասեր, եկեղեցու հայրերի հոգևոր հորդորները և խորհուրդները։ Բայց և զբաղվում էր գրական գործունեությամբ։ Նա հետազոտում էր զորավարների, ինքնակալների կյանքն ու գործունեությունը, արարքներն ու պատերազմական սխրանքները, ուշադրություն դարձնում նրանց լավագույն ու գովելի կողմերի վրա, ջանալով նմանվել նրանց։ Մանրակրկիտ քննության ենթարկելով աստվածահաճո, բարեպաշտ կյանք վարած մարդկանց կենսագրությունը, նա աշխատում էր զսպել իր հոգու բռնկումները, ցանկանալով ցույց տալ, որ ինքնակալ լինելուց բացի, նախ և առաջ հենց ինքն է, Վասիլը, դրանից նա շատ օգուտ քաղեց։ Այդ էր պատճառը, որ նա անչափ մեծ ցանկություն ուներ ծանոթություն հաստատելու, հարաբերվելու և զրուցելու դեռևս կենդանի մնացած այն երանելի մարդկանց հետ, ովքեր այս [երկրային] կյանքում աննյութական և երկնային կենցաղ էին վարում։ Լինելով ծայրաստիճան բարեպաշտ մարդ, նա ոչ թե նրանց էր հրավիրում, այլ, անտեսելով կայսերական մեծությունը, ինքն էր նրանց մոտ գնում, արժանանում նրանց մաղթանքներին ու աղոթքներին, ավելի աստվածավախ դառնում և ընթանում աստծո արդար ճանապարհով։ Այդ էր պատճառը, որ նրա մոտ միշտ կարելի էր տեսնել առաքինության [քառ]ավետարանը։ Մարդիկ հիանում էին նրա քաջությամբ և ողջամտությամբ, խոհեմությամբ և արդարամտությամբ։ Նա մշտապես ձգտում էր դեպի ավելի լավը, և կարծես կյանքը վերադարձնել էր վաղեմի կարգ ու կանոնին։ Նա անվերջ հոգ էր տանում, որ հպատակները լինեն բարեկեցիկ, որպեսզի մեկը մյուսին վնաս չհասցնի։ Ղեկավար պաշտոններին տիրացած մարդիկ ջանք էին թափում նմանվելու տիրոջ, լինելու բարեպաշտ, ունենալու ակնածանք դեպի քահանաներն ու վանականները, լինելու ողորմած՝ չքավորների հանդեպ, բոլորի հետ վարվելու արդարացի և առանց կողմնապահության։ Քանզի

Հենց կայսեր պատգամն էր և հրամանը, որ հզորը չպետք է ճնշի թույլին, իսկ ստորադրյալը պետք չէ անարգի և բանսարկի վերադրյալին, նրան, ով պետք է եղբոր նման գուրգուրա և սիրի չքավորին, որն իր հերթին պետք է աղոթի վերադրյալի համար, որպես հասարակաց հոր և փրկչի, անկեղծորեն ցանկանա, որ Տերը երջանկություն պարգևի։ Իր կյանքն ահա նա այսպես էր տնօրինում։ Բայց ապավինելով աստծո նախախնամությանը, նա շատ բան էր սովորում և երազներից։ Երբ նա հոգսով տարված մտնում էր իր ննջասենյակը և հասարակաց ինչ-որ հարցով մտազբաղ տանջվում, հաճախ երազում տեսնում էր կատարվելիքը, հուսադրվում էր ու հանգստացնում իր հոգեկան տագնապը։ Իվ զարմանալու ոչինչ չկա, որ նախախնամությունը խրախուսում էր և ուղղում դեպի բարին, հայտնում ապագան նրանց, ովքեր երկրային իշխանությունը ծառայություն են համարում, մեզ՝ մահկանացուներիս սրբավայել են սպասարկում, բարի օրինակ ցույց տալիս։

73. Քանի որ խոսքն այլ ուղղությամբ ընթացավ, և հնարավորություն չունեցա իր տեղում պատմել, արդ նպատակահարմար գտա ճակատամարտերի և պատերազմական դեպքերի շարադրանքն ավարտելով, կանգ առնել այդ հարցի վրա ևս։ Ես նկատի ունեմ այն, թե ինչպես կայսրը չմոռացավ փոխհատույց լինել նրանց, ովքեր իրեն աջակցություն էին ցույց տվել, երբ դեռ նա շարքային մի անձնավորություն էր, ովքեր խնդրել էին հիշել իրենց փայլուն դիրքի հասնելիս։ Խոսքը սուրբ Դիոմեդեսի վանքի վանահոր և պելոպոնեսցի կնոջ՝ Դանելիսի մասին[147] է, որոնց Վասիլը փոխհատույց եղավ շատ ավելիով, քան նրանք ակնկալում էին։ Նա մեծ վկա Դիոմեդեսի [տաճարը] փառավոր կերպով պայծառացրեց՝ թանկարժեք նվիրատվություններով, բազում գրքերի, սպասքների և շքեղ հանդերձների պարգևումով, իսկ վկայի անունը կրող վանքը ունեոր դարձրեց լայնատարած կալվածքների տված մեծ ու առատ եկամուտներով. ամեն տեսակետից ապահով դարձրեց և այն ոչ մի բանի կարիք չէր զգում այլևս։ Վանքի համար նա հոյակապ շենքեր կառուցեց և ամեն ինչով լիացրեց ու հարստացրեց։ [74] Հենց որ իշխանության տիրացավ, նա հրավիրեց Դանելիսի որդուն և պատվեց պրոտոսպաթարի աստիճանով, շատ սիրալիր վերաբերվեց նրան, չէ՞ որ նա իր հոգևոր եղբայրն էր։ Երբ նրա զառամյալ մայրը ցանկություն և մեծ փափագ հայտնեց տեսնել կայսեր և պատկառելի հասակում մեծ պատվի արժանանալ (բարեպաշտ վանականը կանխագուշակել էր այդ բանը, և դրա համար նա Վասիլին օգտակար էր եղել և սիրալիր կերպով հյուրընկալել), կայսրը թույլ տվեց և նա առոք-փառոք, մեծ շքա-

*խմբով ու բազմաթիվ ծառաներով մայրաքաղաք եկավ։ Քանի որ նա ի վիճակի չէր ո՛չ կառք նստել, ո՛չ ձի, ապա և լինելով շատ հարուստ սովորել էր փափկակեցության, պառկեց դեսպակի վրա և հրամայեց իր ստրուկներից երեք հարյուր[148] ընտիր, թիկնեղ երիտասարդների, որ տասական հոգի փոխեփոխ կրեն իր դեսպակը։ Այդ կերպ նա կտրեց Պելոպոնեսից մինչև Թագավորանիստ քաղաքն ընկած տարածությունը։ Կայսրը նրա պատվին Մագնավրայում փառավոր և մեծ ընդունելություն կազմակերպեց, այն կարգով, ինչ հռոմեական կայսրերը սովորաբար ընդունում էին օտար պետության մեծ և հռչակավոր առաջնորդներին։ Նա իր հետ թանկարժեք նվերներ էր բերել, որոնց նմանը օտար թագավորներից գրեթե և ոչ մեկը մինչ այդ չէր բերել հռոմայեցիների կայսեր. հինգ հարյուր ստրուկ, այդ թվում՝ հարյուր գեղադեմ ներքինիներ։ Այդ մեծահարուստ զառամյալ կինը, ըստ երևույթին, գիտեր, որ արքունիքում ավելի շատ ներքինի է լինում, քան ամառ ժամանակ ոչխարների փարախում՝ ճանճեր։ Նա նրանց նախօրոք տեղավորեց [արքունիքում] այն նպատակով, որպեսզի, եթե երբևիցե պալատ գա, նրանք որպես իր նախկին ծառաները, սպասարկեն իրեն։ Կային և հարյուր կին սկիաստրիա[149], հարյուր սիդոնական[150] երփներանգ գործվածքներ, որ շատերն այժմ իրենց անգիտությամբ աղավաղելով անունը կոչում են սենդես, հարյուր լինոմալոտարիա[151] (վատ չէ նրանց ժողովրդական հորջորջումը տալ), կտավե երկու հարյուր բարակ ամալիա և այլն, որոնք սարդի ոստայնից էլ բարակ էին, և յուրաքանչյուրը կարելի էր տեղավորել եղեգե խողովակի մեջ, սրանք էլ հարյուր հատ, ապա նաև մեծ քանակությամբ արծաթե և ոսկե դանազան սպասներ։ /75/ Նա ուշադրության արժանացավ, փառավոր հյուրընկալվեց՝ իր պատկառելիության և ազնվական ծագմանը պատշաճող ձևով, արժանացավ կայսերամայր կոչվելու [պատվին], մասնակից դարձավ կայսերական բազում ընդունելությունների և պատիվների, ուրախություն և բերկրանք ըմբոշխնեց, լիացավ ստացած փոխհատուցմամբ և խոստովանեց, որ դա շատ ավելին էր, քան իր տվածը։ Այդ էր պատճառը, որ նա մեծահոգաբար իր նվերների վրա ավելացրեց Պելոպոնեսի ոչ փոքր մասը, որ իր կալվածն էր, և առատաձեռն ձևով այն նվիրեց իր որդուն, այն է՝ կայսեր։ Որոշ ժամանակ նա այդ մեծ քաղաքում մնաց՝ վայելելով և ըմբոշխնելով, և ապա վերադարձավ իր հայրենի երկիրը. նա կարծես այդ շրջանների տիրուհին էր և այսուհետև տեղում արժանացավ շատ ավելի մեծ պատիվների։ Նա վերադարձավ այն ձևով, ինչ ձևով գնաց[152]։ /76/ Այդ ժամանակներում էր, որ սկրս-*

վեց կառուցումը այս հիանալի և գեղատեսիլ տաճարի, որը մենք Նոր բազիլիկ եկեղեցի[153] ենք անվանում և նվիրված է մեր փրկիչ Հիսուս Քրիստոսին, հրեշտակապետ Միքայելին և Եղիա Թեսբացուն։ Այդ կինը վերցրեց եկեղեցու հատակի չափերը, գործել տվեց և ուղարկեց հսկայական և զարմանահրաշ գորգեր, որոնք մեզ մոտ կոչվում են ապո տես էվքես[154], որոնցով պետք էր ամբողջ հատակը ծածկվեր, հատակ, որ զանազան թանկագին քարերով էր պատրաստված, խճանկարների ձևով իրար հարմարեցված և կողք կողքի դրված, որոնք դրսևորում էին սիրամարգերի երփներանգությունն ու գեղեցկությունը։ Բացի այդ, նա ամեն տարի, քանի կայսրը կենդանի էր, նվերներ էր ուղարկում իր ստացածից ոչ պակաս։ Այդ կինը երկար ապրեց, կայսեր մահից հետո էլ։ Դեռ կենդանի էր մարգարե վանականը[155], որն ասաց, թե իրեն երկու տարվա կյանք է մնացել. այդ առիթով նա ցանկություն հայտնեց գնալ և տեսնել նաև կայսեր որդուն՝ Լևոնին, որն արդեն ինքնակալական իշխանություն էր ստացել։ Եվ ահա նա նույն ձևով ընտիր պատանիների կրած դեսպակի վրա շատ հանգիստ, առանց որևէ դժվարության, կտրեց այնքան երկար ճանապարհը, տեսավ ամենաիմաստուն և հեզ Լևոն կայսեր, նրան էլ նվիրեց հոյակապ ընծաներ. իր կայքի ժառանգորդը նշանակեց (իր՝ Դանելիսի որդի Հովհաննեսն արդեն վախճանված էր) և խնդրեց կայսերական ներկայացուցիչ ուղարկվի՝ իր ունեցվածքն արձանագրելու և ընդունելու համար, որից հետո բռնեց վերադարձի ճանապարհը, դեպի իրեն սնուցած հայրենի հողը, խնդրելով բարի կայսեր, որ այդ հողին հանձնվի իր հողեղեն մարմինը։ Տեղ հասնելով, նա փոքր անց վախճանվեց։ /77/ Զառամյալ կնոջ ցանկության և կտակի կամակատար նշանակված պրոտոսպաթար Զենոբիոսը տեղ հասնելով, Նավպակտոսի բերդը, կնոջ ազգական Դանիելից իմացավ նրա մյուս աշխարհ փոխվելու մասին։ Նրա թողած կտակի պատճենը ձեռքին՝ նա մտավ Դանելիսի տունը, ամեն ինչ տնօրինեց համաձայն այդ կնոջ ցանկության և թողած կտակի։ Նա գտավ հնչուն բաղում ոսկի, ինչպես և այլ կարողություն՝ արծաթեղեն, ոսկեղեն, հանդերձներ, սպասներ, ստրուկներ և անասուններ. այդ բոլորը մասնավոր մի մարդու համար անչափ մեծ հարստություն էր, ավելի ճիշտ թագավորական սեփականության քիչ զիջող։ Այն պատճառով, որ նրա ստրուկներն անթիվ անհամար էին, կայսերական հրամանի համաձայն նրանց մի մասը՝ երեք հազար մարմին, Լանգոբարդիայի բանակաթեմն ուղարկվեց. ազատ գաղթականություն[156]։ Մնացած կալվածները, դրամն ու ստրուկները բաժանվեցին՝ համաձայն նրա կտակի. կայսեր, այն է

նրա ժառանգին, որպես սեփական ժառանգություն հասավ ի միջի այլոց ութսուն պրոաստիոն։

Ժամանակագրական տեսակետից այդ բոլորը տեղի ունեցան շատ ավելի առաջ, քան շարադրածս պատմական իրադարձությունները, մասամբ էլ բավական ժամանակ անց։ Ճիշտ է, տվյալ պատմության համար այդ մասին գրելն այնքան էլ հրատապ չէր, բայց ի հարգանս այդ զառամյալ կնոջ, ապա և նրա հարստությունը, ազնվազարմությունն ու պատկառելիությունը ցույց տալու նպատակով, շեղման կարգով թող այստեղ արձանագրված լինի։

78. Քրիստոսասեր կայսր Վասիլը պատերազմական գործողությունների ընդմիջումներում (պատերազմներ, որոնց նա ինչպես ագոնոթետ[157] անհրաժեշտ ընթացքն էր տալիս՝ իր ենթակաների միջոցով), մեծ հոգատարությամբ առատ միջոցներ էր հատկացնում ու տրամադրում՝ վերականգնելու սուրբ և աստվածային բազմաթիվ տաճարներ, որոնք անցյալում երկրաշարժերի ժամանակ ճեղքեր էին ստացել, ճեղքեր, որոնք սպառնում էին կործանել դրանց, կամ էլ ամբողջությամբ փլվել էին։ Նա ոչ միայն ամրացնում էր [տաճարները], պետք եղած շինարարությամբ վերականգնում խարխլված մասերը, ոչ միայն կանխում էր փլուզումները, այլև գեղեցկություն էր հաղորդում նրանց և նախկին կատարելությունը և նորաշենի տեսք։ Խոսենք ամեն մեկի մասին առանձին[158]։

79. Աստծո մեծ իմաստության անունը կրող հռչակավոր և աստվածային տաճարի արևմտյան, մեծ և երկինք խոյացող խորանը մեծ ճեղք էր ստացել, և երկյուղ կար, որ շուտով փուլ կգա։ Կայսրը փորձառու վարպետների օգնությամբ ամրացրեց այն ու նորոգեց, ապահով և հուսալի դարձրեց։ Նա այդ խորանի վրա աստվածամոր կերպարը նկարեց անսերմ հղությամբ ծնված որդուն ձեռքերին, իսկ նրանց երկու կողմում՝ գլխավոր առաքյալներ Պետրոսին և Պողոսին։ Նա միջոցներ հատկացրեց և ջանասիրորեն վերացրեց տաճարի մնացած խարխուլ մասերը։ Նա ոչ միայն վերանորոգեց խարխուլ պատերը, այլև սեփական նվիրատվություններով ավելացրեց նրա նվազած եկամուտները. պակասում էր յուղը, և վտանգ կար, որ կհանգչեն սուրբ կանթեղները, դրա առաջն առնելու համար կայսրը նվիրաբերեց Մանտեա կոչվող ոսկայական կալվածը և մեկընդմիշտ ապահովեց կանթեղների լույսը։ Այս սրբազան տաճարի սպասավորներին նա ապահովեց առատ պարենով՝ նշված կալվածի հարուստ եկամտից, որով նա նրանց սպասավորությունը դարձրեց անպակաս ու մշտական։

80. Նա հենապատերով ամրացրեց նաև Սուրբ Առաքելոց վեհաշուք և մեծ տաճարը, որ խարխլվել էր և վաղեմի չքեղությունից զրկվել. ճեղքեր ստացած մասերը վերանորոգեց, ժամանակի ընթացքում ձեռք բերած կնճիռները հարթեց և նախկին շուքը տվեց ու նորակերտ դարձրեց։ Նա վերաշինեց նաև փուլ եկած, անցյալի շքեղությունից զրկված Պեգեի Աստվածամոր սուրբ տաճարը և նախկինից ավելի գեղեցիկ դարձրեց այն։ Նա ի հիմանց վերակառուցեց և նախկինից ավելի ամուր դարձրեց նաև Աստվածածնի մի այլ տաճար, Սիգմա կոչվողը, որ ամբողջությամբ ավերակ էր դարձել։ Նա ի հիմանց վերաշինեց Ավրիլիանեում գտնվող Ստեփանոս Նախավկայի հիմնահատակ կործանված տաճարը՝ Մկրտչի, այն է՝ Հովհաննես Կարապետի, Ստրովիլեայում և Մակեդոնիեններում գտնվող [երկու] սուրբ վկայարաններից մեկը ի հիմանց վերաշինեց, իսկ մյուսի՝ հիմնական մասը։ Բացի այդ, նա հին ավերակներից մաքրեց և նորոգեց Փիլիպպոս առաքյալի և նրանից արևմուտք գտնվող Ղուկաս ավետարանչի սրբարանները։ /81/ Պատշաճ ուշադրության արժանացրեց և ամբողջովին վերանորոգեց Մոկիոս մարտիրոսի մեծ վկայարանը, որը բազմաթիվ ճեղքեր էր ստացել. նրա ավագ խորանը հիմնահատակ քանդվել էր, ավերելով և սուրբ սեղանը. նա անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերեց և կատարելապես ոտքի կանգնեցրեց այն։ Նաև նրան կից, արևմտյան կողմում գտնվող Անդրեաս Նախակոչ առաքյալի տաճարը, որը ծայրահեղ անուշադրության մատնվելով՝ ճեղքեր էր ստացել։ Հիմքից վերականգնեց և սուրբ Ռոմանոսի սուրբ տաճարը, որը նույնպես փուլ էր եկել։ Դևտերոնում գտնվող սուրբ Աննայի և Քրիստոսի վկա Դեմետրիոսի [տաճարները] նորակերտ դարձրեց ու շքեղ։ Տեսնելով, որ Ռավդոսի աստվածամոր տաճարին կից գտնվող Էմիլիանոս վկայի [տաճարը], չդիմանալով ժամանակի բեռին, ավերակ էր դարձել, նորոգեց՝ երկու կողմից հենապատերով ամրացնելով։ /82/ Նազարիոս վկայի սուրբ վկայարանը, որ վաղուց կառուցված լինելով ոչ միայն փուլ էր եկել, այլ նրա հետքն անգամ չէր մնացել, վերստին կառուցեց, և այն իր շքեղությամբ ու գեղեցկությամբ շատ էր գերազանցում նախկինը։ Դոմնինոսի սյունաշարքեր կոչվող վայրում նա վերանորոգեց և վեհաշուք դարձրեց Քրիստոսի՝ մեր աստծո սուրբ Հարության տաճարը, ապա և վկա Անաստասիայի գեղեցիկ տաճարը, նրա փայտե ծածկը փոխարինեց քարե ծածկով և հիանալի կերպով պերճազարդեց։ Տեսնելով, որ մեծ վկա Պլատոնի տաճարի ծածկը նույնպես վնասվել է, նորը կառուցեց, վկայարանն ամրացրեց անհրաժեշտ հենապատերով։ Բարեհաղթ վկաներ Հեսրանն

*պերիոսի և Զոնի սուրբ վկայարանին, որը գրեթե հողին էր հավասարվել, նախկին տեսքը տվեց. Նորոգեց և Հեպտասկալոնում[159] գտնվող Ակակիոս վկայի սուրբ տաճարը, որ համարյա թե խարխուլ էր և փլվելու վրա. Նա ամեն տեսակի հենապատերով ապահովեց այն, նրա փլուզման առաջն առավ և ոտքի կանգնեցրեց։ Պետրիոնում գտնվող Եղիա մարգարեի տաճարը, որը կարծես հոգին ավանդելու վրա էր, նա ամրացրեց, շքեղ կառույց գարձրեց, իսկ նրա շրջակայքում գտնվող ձնշող, խղճուկ տները քանդեց և ազատեց տաճարը դրանց հարևանությունից։*

*83. Բայց ինչո՞ւ ենք կանգ առնում նրա գործունեության մանրուքների վրա (թեև դրանք մեծագործություններ են) և չենք խոսում նրա մեծ ու զարմանահրաշ գլուխգործոցի մասին, որին նա անձնապես լծվեց և իր ձեռքով կառուցեց արքունիքի բակում[160]։ Այս մեկը միայն բավարար ապացույց է նրա՝ սա աստված տածած ակնածանքի, նրա մտահղացումների վեհության ու զարմանալիության մասին։ Կարծես ցանկանալով փոխհատույց լինել իրենց բարեհաճության համար տեր Քրիստոսին, հրեշտակապետ Գաբրիելին և նախանձավոր Եղիա Թեսբացուն, ով իր մորը մարգարեացավ որդու թագավորական [գահին] բարձրանալու մասին, ահա նրանց անվան և հիշատակի հավերժացման, ինչպես և աստվածածնի և առաջին քահանայապետ Նիկողայոսի սուրբ և գեղեցիկ տաճարը կառուցեց[161], որի մեջ զուգորգվեցին արվեստն ու պերճանքը, ջերմ հավատքն ու մեծ ակնածանքը. ամեն տեղից գեղեցկագույն իրերը նրա շինարարության վրա օգտագործվեցին, ե համոզված եմ, որ այդ մասին լսելը քիչ է, սեփական աչքով պետք է տեսնել։ Մարգարիտներով. ոսկով ու արծաթով, երփներանգ մարմարիոններով, խճանկարներով, մետաքսով հարսի նման պճնված տաճարը նա ընծայաբերեց փեսա Քրիստոսին։ /84/ Տաճարի առաստաղը, որ հինգ կիսագնդերից էր կազմված, պսպղում է ոսկուց, սրբապատկերների գեղեցկությունը կայծկլտում է աստղերի նման։ Ծածկը պղնձե է, որ ոսկու տպավորություն է թողնում։ Աջ ու ձախ պատերը պերճազարդված են թանկարժեք, գույնզգույն մարմարիոնով, տաճարի ավագ խորանը ոսկով, արծաթով, թանկագին քարերով ու մարգարիտներով է զարդարված ու պաճուճված։ Ֆեմի վանգակապասը, նրա սյունաշարը և վերևում եղածը, որ քիվի տպավորություն է թողնում, ապա նաև ներսի նստարաններն ու նրանց առջևի աստիճանները, բոլորը ոսկեջրած արծաթից են, պատվական քարերով՝ մարգարիտներով ագուցված։ Ամբողջ հատակը փառահեղ կերպով ծածկված է մետաքսյա գործ-*

վածքներով կամ սիդոնյան գորգերով։ Ամեն ինչ պերճազարդվեց ու պաճուճվեց. հատակի մարմարյա տախտակները և դրանք պարփակող խճանկար գոտիները աչքի են ընկնում իրենց երփներանգությամբ և հիանալի ներդաշնակությամբ։ Ամեն ինչ պսպղում է արտակարգ գեղեցկությամբ։ Կայսրը տաճարին հատկացրեց բազմաթիվ՝ երգասացներ, մեծ եկամուտներ նշանակեց, կարգադրելով սրբարանի հոգևոր հովիվներին ծախսել արդար և առատաձեռն։ Նման գործերում ցուցաբերած առատաձեռնությամբ նա գերազանցեց իր բոլոր նախորդներին։

85. Կարճ ասած, ահա ներքուստ այսպիսին է տաճարը, եթե հնարավոր է, իհարկե, մի քանի խոսքով ներկայացնել դիտողներին այսպիսի ապշեցնող գլուխգործոցը։ Իսկ ինչպիսի՞ն էր նա դրսից։ Արևմտյան կողմում, տաճարի արտաքին գավթում, երկու շատրվան կա, մեկը՝ հարավային կողմում, մյուսը՝ հյուսիսային, արվեստի մեծագործություններ, նյութի փայլ և ճարտարապետի հմտություն։ Հարավայինը կառուցված է եգիպտական քարից, որին մենք սովորաբար հռոմեական ենք անվանում։ Նրա շուրջը կարելի տեսնել դրակոններ՝ քանդակագործական գերազանց աշխատանք։ Նրա մեջտեղում բարձրանում է կոնաձև, ծակոտկեն, պարուրաձև մի սյուն, որի շուրջը կարծես պար են բռնել սպիտակ, սնամեջ փոքր սյուներ, որոնք ծածկված են պսակով։ Այդ սյուների վերևից հորդառատ ջուրը հոսում է ավազանի մեջ։ Հյուսիսային կողմում գտնվողը կառուցված է սագարիոս կոչվող քարից, որը ոմանք օստրիտես են անվանում։ Նրա հատակի մեջտեղում նույնպես ծակոտկեն, պարուրաձև սյուն է բարձրանում՝ սպիտակ քարից պատրաստված։ Ավազանի [սյուների] պսակի շուրջը վարպետը պղնձե աքաղաղներ, նոխազներ և խոյեր սարքեց, որոնց բերանից ինչ-որ խողովակի միջով ջուրը հոսում է ավազանի մեջ։ Այնտեղ կարելի է տեսնել նաև գավաթներ, որոնց հատակից այն ժամանակ գինի էր բխում, ի հագեցումն անցորդաց։ /86/ Սրբարանի դռնից դուրս սկիզբ է առնում երկար, գլանաձև մի սյունաշար, որի առաստաղը զարդարված է մարտիրոսների սխրանքներն ու մաքառումը ներկայացնող պատկերներով, մի բան, որ աչքդ է շոյում, հոգիդ աստվածասեր դարձնում. մարտիրոսների սխրանքները դրդում են քեզ օրինակ վերցնել նրանցից, նույնիսկ գերազանցել նրանց։ Հարավային. ծովահայաց դռներից դուրս գալով, եթե թեքվես դեպի արևելք, կհանդիպես հյուսիսայինի երկարությամբ և լայնությամբ մի այլ վազքուղի[162], որը նույնպես ձգվում է մինչև թագավորական բակը[163]. այնտեղ սովորաբար կայսրերը և երևելի մարդկանց որդիները, ձիերի վրա նստած,



13—1069

գնդակ էին խաղում։ Երանելի կայսրն անցյալում այդ բակում գտնվող տները գնեց, հիմնահատակ քանդեց, տարածությունը մաքրեց և բակի ծովահայաց կողմում գեղեցիկ տներ կառուցեց, որոնք հատկացրեց վերոհիշյալ տաճարին, որպես գանձարան և շտեմարան։ Բակում գտնվող տները (բակ, որն անցյալում կայսրերն օգտագործում էին մարմնամարզական նպատակներով) ստսծո տաճարի կառուցման աշխատանքներին խանգարում էին, այդ էր պատճառը, որ ստիպված գնեցին և քանդեցին։ Երկու սյունաշարերի միջև, տաճարի արևելյան կողմում գտնվող տարածության վրա, նույնպես Նոր Եղեմից արևելք, կայսրը պարտեզ տնկեց՝ բազմատեսակ տունկերով լի և հորդառատ ջրով ապահովված։ Մենք նրա դիրքի պատճառով սովորաբար Միջնապարտեզ ենք անվանում այն։

Բայց այդ մասին ասվածը բավական է, թե չէ մեզ անճաշակության մեջ կմեղադրեն։ /87/ Անցնենք սակայն, գեղեցիկի սիրահար ինքնակալի մնացած գործերին։ Նա կայսրերից ո՞ր մեկին չգերազանցեց իր մեծածախս ու շքեղ շինարարությամբ, նոր ձևերի օգտագործմամբ, ամեն մի զարմանահրաշ գործում հանդես բերած տաղանդով։ Նա գերազանցեց նրանց ոչ միայն այդ շքեղ, գեղեցիկ, մեծածախս տաճարների շինարարությամբ, այլև թագավորական հոյակապ կացարանների, որտեղ զուգորդված էին թանկագին գեղեցիկի հետ, գեղեցիկի հետ՝ անչափ օգտակարն ու հրաշագեղը։ Այն պատճառով, որ ոչ բոլորին է վիճակված ականատես լինելու նման գեղեցկության, իսկ այդ մասին միայն ականատեսը կարող է լիակատար պատկերացում ունենալ, ստիպված եմ գրավոր ներկայացնել, որպեսզի ըստ արժանվույն հիանան նրանց արարչի վրա, և որպեսզի արքունի գանձապետները այդ մասին որոշակի գաղափար ունենան։ Պալատի հենց արևելյան կողմում կառուցված է Եղիա Թեսբացու տաճարը, որը ոչ միայն ներսից է շքեղ ու գեղեցիկ, այլև սրտաքուստ։ Առաստաղը առատ ոսկուց պսպղում էր, այն ամբողջությամբ ծածկված էր խճանկարներով. ժամանակի ընթացքում հորդառատ անձրևներից, ձյունից ու բքից այդ հրաշագեղությունն զգալի չափով տուժել է։ Այս տաճարին կից նա կառուցեց բազմաշարշար և ամենահամբերող վկա Կղեմեսին նվիրված աղոթարանը, որտեղ ամփոփեց նրա գանգը և այլ բազում մարտիրոսների սուրբ մասունքները, որոնցից ինքը [կայսրը] և նրանից հետո եկողները ստանում են հոգու ու մարմնի կորով։ Դրանց կից է գտնվում նրա կառուցած՝ մեր փրկչին և ստծուն նվիրված աղոթատունը, որի շքեղությունն ու հիասքանչությունը ականատես չեղողները չեն հավա-

տա, որ այնքան շատ արծաթ, ոսկի, թանկագին քարեր ու բազում մարգարիտներ են նրա հարդարման վրա ծախսվել։ Բովանդակ հատակը դրվագված պինդ արծաթից է պատրաստված՝ էնկավսիսով[164]. այստեղ աչքի է զարնում ոսկերիչների վարպետությունը։ Աջ և ձախ պատերի վրա նույնպես առատորեն է օգտագործված արծաթը՝ ոսկով ու զանազան թանկագին քարերով և պսպղուն մարգարիտներով պաճուճված։ Այս սրբազան տան ավագ խորանը բաժանող վանդակապատը, աստվա՜ծ իմ[165], ինչքա՜ն հարստություն էր[166] պարունակում. սյուներն ու նրանց խարիսխները ամբողջությամբ արծաթից են, իսկ նրանց վրայից ձգվող արխիտրավը՝ ամբողջությամբ մաքուր ոսկուց, հնդկական ողջ հարստությամբ ողողված։ Այստեղ, բազմաթիվ տեղերում Տիրոջ՝ աստված-մարդու կերպարն է դրոշմված խիմևսիսի[167] եղանակով։ Ես անկարող եմ պատմելու, թե ավագ խորանում ինչ գեղեցկություն, սուրբ [սպասեղեն], գանձ է սյարփակված. եթե նա աղիտոն է, ապա և խոսքի համար էլ աբատոն է[168]։ Շարունակելն անիմաստ է, նախընտրելի է լռել։ Ահա սրանք են պալատի այսպես ասած արեելյան գեղեցկությունները, որոնց ծնունդ տվողը երանելի կայսր Վասիլի ջերմ հավատքն էր [առ աստված]։

88. Շինարարություն կատարվեց այլ վայրերում ևս. կառուցվեց սուրբ քարոզիչ Պողոսի սրբազան աղոթարանը, որի արարիչը նույն մարդն է, նրա առատաձեռնությունը։ Սրա հատակի վրա ևս արծաթ է օգտագործված, արծաթով են պարփակված հատակի մարմարյա շըրջանակները։ Իր ճոխությամբ և շքեղությամբ նա ամենևին չի զիջում մյուս կառույցներին։ Ապա և գլխավոր առաքյալ Պետրոսին նվիրված սուրբ տաճարը, որ նա կառուցեց Մարկիանոսի սյունաշարի ծայրում, կարծես ծայրագույն աշտարակ լիներ. Նրան միացվեց և հրեշտակապետի աղոթարանը։ Հենց նրա վերևում է գտնվում աստվածամոր տաճարը։ Նա ինչպիսի՜ գեղեցկություն ու արտակարգ շքեղություն տվեց նրան, և կգտնվի՞ արդյոք մեկը, որ դիտելով [տաճարը], չշոյվի նրա աչքը, բերկրանքով ու բավականությամբ չլցվի նրա հոգին։

89. Վասիլ կայսեր հենց արքունիքում կառուցած [շենքերը], որոնք պալատների պալատներ[169] էին, անզուգական գործեր, ավելի հմուտ պատմողի, ավելի կատարյալ գրողի կարոտն են զգում։ Այս նորաշեն շենքը, որ Կենուրգիոն է կոչվում և ի հիմանց նա կառուցեց, ո՛ր մի դիտողին չի ապշեցնի։ Այն իր վրա է կրում շարքի կանգնած տասնվեց սյուն, որոնցից ութը թեսալական քարից են պատրաստված կանաչ գույնի, վեցը՝ օնիքս կոչվող քարից, որոնց քանդակագործը

*զարդարեց գեղեցիկ բազմաթիվ քանդակներով՝ որթատունկ, զանազան կենդանիների կերպարներ։ Մնացած երկու սյուները, թեև նրանք էլ օնիքսից էին պատրաստված, բայց քանդակագործները նրանց այլ ձև տվեցին, առուակոսներով վերացրին մակերեսի հարթությունը. վարպետը ցանկացավ զանազանություն մտցնել, բազմազանության մեջ տեսնելով բարեձևն ու գեղեցիկը։ Շենքն ամբողջությամբ, սյուների վերևից սկսած մինչև առաստաղը, և արևելյան կիսագունդը զարդարվեց գեղեցիկ խճանկարներով։ Ամենից առաջ պատկերված էր մեծագործության արարիչը, մարտակից զորավարների շրջապատում, որոնք որպես նվերներ բերում են նրան իր գրաված քաղաքների [նկարները]։ Դրանից վերև, առաստաղի վրա, պատկերված են կայսեր հերակլյան սխրանքները, հպատակների համար կատարած հոգնաջան աշխատանքը, ռազմի դաշտում ցուցաբերած քաջագործությունները և աստծո պարգևած հաղթանակները։ Ներքևում, կարծես աստղերից պայծառացած երկնքի տակ, գտնվում է նույն ինքնակալի կողմից վարպետորեն կառուցված գեղեցիկ ու ճոխ, բազմաձևությամբ աչքի ընկնող ննջասենյակը, որն իր հիասքանչությամբ գրեթե անմրցելի է։ Հատակի հենց մեջտեղում փայլուն խճաքարերով վարպետորեն պատկերված է մարտական թռչուն սիրամարգը, որն առնված է կարիական լավ հղկված քարից պատրաստված շրջանակի մեջ, որտեղից նույն քարից պատրաստված ճառագայթներ ճաճանչվում են դեպի մի այլ, ավելի մեծ շրջանակ։ Այս [շրջանակից] դուրս գտնվող [հատակի] քառակուսի տարածությունը ծածկված է թեսալական քարով, որ կանաչ գույն ունի, ստեղծելով առվակի կամ գետի տպավորություն։ [Հատակի] չորս անկյուններում գույնզգույն և նուրբ խճաքարերից չորս արծիվ է պատկերված, որոնք այնքան բնական են, որ կարծես կենդանի են և ճախրելու պատրաստ։ Յուրաքանչյուր պատր ծածկված է այլակեր բազմերանգ տախտակներով՝ ստեղծելով ծաղիկների տպավորություն։ Սրանց վերևում գտնվում է, ոսկով պաճուճված ծաղկազարդ [գոտի], որը պատերի վրա բաժանող գիծ է քաշում։ Սրան հաջորդում է մի այլ շքեղություն՝ ոսկե խճաքարերով պատրաստված մի պատկեր, գահի վրա բազմած մեծագործության արարիչ ինքնակալը և նրա կին Եվդոկիան՝ թագավորական հանդերձներ հագած և թագերը կապած։ Նրանց զավակները, կարծես պայծառ աստղեր, պատկերված են դահլիճի շուրջը, նույնպես թագավորական հանդերձներ հագած և թագերով զարդարված։ Որդիները պատկերված են աստծո պատվիրանները բովանդակող գրքերը ձեռքին, պատվիրաններ, որոնց հիման վրա էին դաստիարակ-*

վել. դուստրերը պատկերված են նույնպես աստվածային օրենքները բովանդակող ինչ-որ գրքեր բռնած։ Վարպետը հավանաբար ուզում էր ցույց տալ, որ ոչ միայն որդիները, այլև դուստրերը իրազեկ են սուրբ գրոց, որ անմասն չեն աստվածային իմաստությանը։ Թեպետև նրանց հայրը, կյանքի դժվարին պայմանների բերումով, չկարողացավ ժամանակին պետք եղած կրթությունն ստանալ, բայց և այնպես նա իր երեխաներին մասնակից դարձրեց իմաստությանը։ Նա այդ բանն ուզեց ընդգծել ոչ միայն պատմության բերանով, այլև դիտողներին ցույց տալ նկարված, ոչ սոսկ պատմական երկերում շարադրված։ Այս դքեղությունը պատկերված է չորս պատերի վրա՝ մինչև առաստաղը։ Այս ննջասենյակի առաստաղը թաղակապ չէ, այլ հարթ՝ պատերի վրա նստած։ Նա պսպղուն է, ամբողջությամբ ոսկով պաճուճված։ Մեջտեղում կանաչ ապակուց պատրաստված հաղթական խաչն է պատկերված, որի շուրջը կարելի է տեսնել երկնքի աստղերի պես պսպղացող երանելի կայսեր, նրա բոլոր երեխաներին և կողակցին՝ ձեռքերը դեպի աստված և կենարար խաչի նշանը մեկնած, առանց խոսքի ասելով, թե այս հաղթական նշանով է, որ մեր թագավորության օրերում կատարվեց և իրականացավ ամեն մի բարի և աստվածահաճո գործ։ Այնտեղ դրված կա նաև աստծուն ուղղված գոհանալ՝ ծնողների կողմից զավակների համար ասված, ինչպես և զավակների կողմից՝ ծնողների համար։ Ծնողների կողմից ասվածը բառացի հետևյալն է. «Գոհանամ զքեզ, աստված, անսահման բարի, թագավոր թագավորաց, որ արժանացրիր մեզ ունենալու քո հրաշալիքների վեհությանը շնորհապարտ զավակներ։ Պահպանիր դու նրանց, կամքով քո. թող նրանցից ոչ ոք չշեղվի պատվիրաններից քո, որպեսզի այդ բանում էլ շնորհակալ լինենք բարությանը քո»։ Իսկ զավակների գոհանամը հետևյալն է. «Գոհանամք զքեզ, Բանն աստուծո, որ դավթական չքավորությունից բարձրացրիր մեր հորը և օծեցիր նրան օծմամբ քո սուրբ հոգու։ Պահպանիր նրան ձեռամբ քո և մորը մեր, արժանացնելով նրանց և մեզ քո թագավորությանը երկնային»։ Ահա այսքան ննջասենյակի արվեստի հիասքանչ գործերի մասին։

90. Նույն ձեռքի և մտքի գործ է և Մարկիանոսի սյունաշարերում գտնվող վիթխարի տրիկլինը, որ կոչվում է նաև Պենտակուբուկլոն և աչքի է ընկնում իր արտակարգ գեղեցկությամբ ու շքեղությամբ։ Նրա մոտ է գտնվում և վերևում հիշատակված օդագնաց Պողոսի շքեղ աղոթարանը, որին միանում է ամենաիմաստուն Լևոնի կառուցած Վարթարանը, որին միանում է ամենաիմաստուն Լևոնի կառուցած Վարվառա վկայի [աղոթարանը]։ Ապա նաև թագավորական մյուս կացա-

րանները, որոնք գտնվում են խրիստոտրիկլինից արևելք, մի փոքր բարձրադիր տեղում, Նոր եկեղեցուց արևմուտք և բարձր խոյանալու պատճառով Արծիվ անունն ստացան։ Այս բոլորը, ապա և այստեղ գտնվող աստվածածնի գեղեցիկ, անչափ գողտրիկ աղոթարանը նույն կայսեր գործերն են։ Շինարարության վրա առատորեն օգտագործված թանկագին նյութերը, ապա և նոր ձևերն ու վեհությունը ընդգծում են այդ այրի մեծահոգությունն ու դեպի գեղեցիկն ունեցած սերը։ Կայսրը խորեգոսն[170] էր ու արարիչը նաև սրանցից արևմուտք գտնվող բրգաձև բնակարանների, ինչպես և աստծո և Բանի մոր մի այլ աղոթարանի, որոնք իրենց անսովոր և նորաձև կառուցվածքով շատ են գերազանցում այլ շինություններին։ Նրանցից ցած, Մոնոթիրոն կոչվող մուտքի մոտ գտնվող Հովհան Աստվածաբանի շատ գողտրիկ աղոթարանը, ինչպես և այնտեղ սկիզբ առնող բարձր, արևոտ, մարմարյա հատակով սյունաշարը, որ ձգվում է մինչև Փարոսը[171], նույն կայսրը կառուցեց, ինչպես և նրա արևելյան կողմում գտնվող ամրակուռ շենքերը, որոնցից մեկը գանձատունն է, իսկ մյուսը վեստիարիոնի[172] դեր է խաղում։ Նրանք շատ հաջող զուգակցում են գեղեցիկն ապահովի հետ։ Հիասքանչ, լայնատարած ու հոյակապ պալատական բաղնիքի շնորհալի կառուցողն էլ նա էր, բաղնիքի, որ միաժամանակ և՛ գեղեցիկ գործ էր, և՛ ծառայում էր հաճույքի, մարմնական ապաքինման ու հանգստի։ Այն գտնվում է Ֆիալե[173] կոչվողից վերև, իսկ վերջինս իր անունը պարտական է նախկինում այստեղ կանգնած վենետների «կողմի» քարե ֆիալեին։ Մյուս «կողմի» ֆիալեն, ես նկատի ունեմ պրասինոսների, գտնվում էր արքունիքի զավթի արևելյան մասում, որը սուրբ տաճարի կառուցման առթիվ քանդվեց, որով վերջ տրվեց և այս վայրում տեղի ունեցող «կողմերի» գործունեության, ինչպես և այստեղ տեղի ունեցող միջոցառումներին։

91. Այս բոլորից բացի, նույն ազնիվ կայսեր գործն են և Մանգանա[174] կոչվող թագավորական տունը, Նոր կոչվող տունը, որոնք նա կառուցեց հետևյալ նպատակով. նա չէր ուզում իր սեփական կարիքների համար, կամ ամեն տարի իր կազմակերպած ընդունելությունների վրա ծախսել պետական գումարները, որոնք գոյանում էին հպատակներից հավաքվող հարկերից։ Նա չէր ուզում հրավիրյալներին սեղան տալ, ի հաշիվ ուրիշների թափած քրտինքի, դրա համար մտածեց այդ շենքերը կառուցել, որոնց հատկացրեց երկրագործությունից ստացվող զգալի եկամուտներ, և, այսպիսով, թագավորական խրախճանքը և՛ իր ժամանակ, և՛ իրենից հետո ամիշտ պետք է կայանար առատ և արդար

միջոցների հաշվին։ Նույն կայսրը Պեգե կոչվող վայրում գտնվող կայսերական պանդոկները և կացարանները ձևափոխելու նպատակով ի հիմանց կառուցեց. նրանց կից նա կառուցեց և գեղեցիկ տաճարներ, այդ թվում և սուրբ մարգարե Եղիայի սրբազան տաճարը, նրա հաջորդ և աշակերտ Եղիշեի, մեր առաջին բարեպաշտ կայսր Կոստանդին Մեծի, քառասուներկու նոր վկաների, ապա նաև երկու այլ աղոթատներ, կառուցված հանուն և ի փառս աստվածամոր։ Հիերիայի պալատում նա կառուցեց նույն Եղիա մարգարեի սուրբ աղոթարանը, որը գեղեցկությամբ ու ոչնչով չի զիջում մյուսներից և ոչ մեկին։

92. Կայսերական կացարաններից բացի նման ձևափոխություններ և վերափոխություններ կատարվեցին մի հսկայական ջրամբարի վրա, որն անցյալում կառուցել էր քաղաքի հիմնադիր [Կոստանդին] կայսրը, իսկ Հերակլ կայսրը այն հողով էր լցրել ու ցամաքեցրել. նրա տեղում տնկվել էին ծառեր ու տունկեր։ Խնդրո առարկա ջրամբարը նման էր կայսերական պալատների ներսում գտնվող ջրամբարին, Մագնավրայի առջևում եղողին, ինչպես և նրան, որ Հուստինիանոսի տրիկլինի և էկթեսիսի միջև էր։ Սրանք էլ [ժամանակին] լի էին ջրով, այնտեղ կայսրերի հաճույքի համար ձկներ էին բազմացվում, ինչպես և ձկնորսությամբ զբաղվելու, բայց [Հերակլ] կայսրը հող լցրեց դրանց մեջ և պարտեզներ տնկեց։ Պատճառը Ստեփանոս մաթեմատիկոսն[175] էր, որ կայսեր ծննդյան առթիվ գուշակել էր, թե ջուրն է լինելու նրա մահվան պատճառը[176]։ Նույն այդ պատճառով պարտեզի վերածվեց և Հիերիայի ջրավազանը։ Երանելի կայսր Վասիլը տեսնելով, որ տվյալ վայրն ունի պարտեզներ տնկելու բավարար հողատարածություններ, բայց զգում է խմելու ջրի պակաս, բազում աշխատող ձեռքերի օգնությամբ նախկին [ջրավազանի] մեջ լցված հողը դատարկեց, հող, որի վրա բույսեր էին աճում, և նախկին տեսքը տվեց, պարտեզի տեղ խոշոր և մրշտական ջրամբար ստեղծեց։

Պալատի շրջանում երանելի և բարեպաշտ կայսեր ջանասիրորեն կատարածի մասին ահա այսքան։ /93/ Վերջացնելով պալատին նվիրված շարադրանքը, անցնենք թագավորանիստ քաղաքում և նրա շրջակայքում ինքնակալի ձեռնարկած սրբարանների կառուցման և վերակառուցման հարցին։ Նա տեսնելով, որ կյանքի հոգսերից տառապող քաղաքային բիրտ ու կոպիտ ամբոխը իր ժամանակը Ֆորոս[177] կոչվող հրապարակում է անցկացնում, իսկ մոտակայքում իր հոգու ցավերն ապաքինող աղոթարան չկա, այդ հրապարակում ահա կառուցում է աստվածածնի սուրբ և հոյակապ տաճարը, որը մի կողմից պետք է

անձրևոտ եղանակների կամ սառնամանիքների ժամանակ ամբոխի համար ապաստարանի դեր խաղար, իսկ մյուս կողմից՝ հոգու փրկության հաճելի նեցուկ և ապավեն։ Կայսրը տեսնելով, որ Խալկոպրատիայում[178] գտնվող փառավորյալ աստվածածնի մյուս սուրբ տաճարը՝ սրբազնագույն և սուրբ գերեզմանի [տաճարը], շատ է համեստ ու անպաճույճ, երկու կողմից լուսավոր խորաններ կառուցեց, գմբեթը բարձրացրեց. տաճարը լուսավորվեց ճաճանչափայլ լույսով։ Հենց նա էր, որ մտածեց Սիրոս կոչվող տեղում գտնվող հրեշտակապետի սուրբ տաճարի մասին, մարդասիրաբար հոգաց և օժանդակեց նրա շուրջն ապրող չքավորների մասին։ Նա տաճարին փայլ տվեց, այժմյան ճոխություն, նրա եկամուտներն ավելացրեց, սպասարկող անձնակազմը կարիքից ազատեց, բացի այդ նա առատ ողորմություն տվեց չքավորներին։ Պուլքերիանեում գտնվող սուրբ վկա Լավրենտիոսի փուլ եկած հսկայական տաճարը վերականգնեց, շատ շքեղ տեսք տալով նրան։ Քաղաքի շրջակայքում նա շուրջ հարյուր եկեղեցի կառուցեց, ապա և աղքատանոցներ, հյուրանոցներ, հիվանդանոցներ, ծերանոցներ և վանքեր, իսկ ավերվածներից շատերը վերանորոգեց։

94. Նա աստվածասիրաբար ու ջերմեռանդությամբ նման մեծագործություններ էր կատարում ոչ միայն քաղաքում։ Նույն հոգատարությունը նա ցուցաբերում էր և քաղաքից դուրս։ Նա վերականգնեց, հենապատերով ամրացրեց և պայծառացրեց նաև Հեբդոմոնում[179] գտնվող ավետարանիչ առաքյալ Հովհան Աստվածաբանի տաճարը, որ, չդիմանալով երկար ժամանակի բեռին, տուժել էր։ Ապա և դրան մոտ գտնվող Կարապետի տաճարը, որ բազում տարիներ առաջ փուլ էր եկել, և տաճարի տեղում ավերակներ էին միայն մնացել։ Նա մաքրեց ավերակների աղբն ու հողը և հոգատարությամբ շատ կարճ ժամանակամիջոցում հռչակավոր և մեծ տաճարներին չզիջող [եկեղեցի] կառուցեց։ Հռեգիոնում գտնվող գլխավոր առաքյալի տաճարը մտնել հնարավոր չէր, որովհետև փլվելու վախ կար։ Կայսրը քանդեց այն և ի հիմանց նորը կառուցեց՝ իր հավերժ և անջնջելի հիշատակի համար։ Նա վերականգնեց և նախկինից էլ ավելի ճոխ դարձրեց Կալլինիկոս վկայի փլված, գետնին հավասարված տաճարը, որ Բաթիրսուս գետի վրա գցված Հուստինիանոսի կամուրջների մոտ էր գտնվում։ Ստենոն[180] կոչվող տեղում (ես նկատի ունեմ Եվքսինյան պարանոցը) նա աստվածահաճությամբ ու աստվածասիրաբար սուրբ Փոկասի սրբազնագույն տաճարը կառուցեց, բարեպաշտ վանականների մի եղբայրություն հաստատեց այնտեղ, աստվածագումար մենաստան և հոգիների բուժարան

դարձրեց, իսկ շրջանն էլ շինարարություններով և ագարակներով զարդարեց։ Այս բոլորից բացի, նա Սոսթենիոսում վերստին կառուցեց նաև Հրեշտակապետ Միքայելի սուրբ տաճարը, որ, ժամանակի բեռին չդիմանալով, խարխլվել էր, բազմաթիվ ճեղքեր ստացել, արդեն փլվելու վրա էր և շատ անպաճույճ տեսք էր ընդունել։ Կայսրը վերականգնեց այն, տվեց նախկին կատարելությունը և ամեն տեսակի չքեղություն։ Այսպես հոգատար էր երանելի կայսր Վասիլը սուրբ տաճարների վերականգնման հարցերում, և հենց այստեղ է, որ ամենից առաջ երևան է գալիս մարդու առ աստված տածած սերը։

95. Գիտենալով, որ աստծուն ամենից ավելի հաճույք է պատճառում հոգիների փրկությունը, որ անարգից պատվականը հանողը Քրիստոսի բերան է համարվում[181], այդ առաքելական գործում էլ նա չգլացավ և չանգոսնեց։ Նա ամենից առաջ համոզեց քրիստոնեությունն ընդունել հրեաների անհավատ և քարսիրտ ժողովրդին[182]։ Նա հրամայեց, որ իրենց դավանանքի հավատամքով ներկայանան բանավեճի և կամ ցույց տան իրենց դավանանքի ճշմարիտ լինելու մասին զորեղ և անհակաճառելի փաստերը, կամ համաձայնվեն, որ օրենքի և մարգարեների գլուխը Քրիստոսն է, ընդունեն, որ օրենքը նման է ստվերի, որ արեգական լույսի փայլատակման հետ ցրվում է, ընդունեն տիրոջ վարդապետությունը և մկրտվեն։ Նա խոստացավ քրիստոնեությունն ընդունողներին պաշտոններ շնորհել, վճարած հարկերի բեռից և իրավազուրկ վիճակից ազատել ու լիիրավ դարձնել[183]։ Այդ ճանապարհով նա շատերին փրկեց իրենց անզգամությունից և ձգեց դեպի դավանանքը Քրիստոսի, թեպետև նրանցից շատերը, կայսեր վախճանվելուց հետո, շների նման դեպի իրենց փսխածը վերադարձան[184]։ Բայց եթե նրանք, ավելի ճիշտ նրանցից ոմանք, հնդիկների[185] նման չփոխվեցին, այնուամենայնիվ աստվածասեր կայսրը իր գործի վարձն աստծուց լրիվ պետք է ստանար, հենց իր ջերմեռանդության համար։

96. Նա զբաղվեց նաև բուլղար ժողովրդի հարցով։ Այս ժողովուրդը, որ մինչ այդ կարծես բարեպաշտություն էր ընդունել՝ քրիստոնյա դարձել, այդուհանդերձ ճշմարիտ հավատքի մեջ դեռ չէր ամրացել, անկայուն վիճակում էր, գյուրությամբ երերում էր ու տատանվում, ինչպես տերևները՝ քամուց։ Բայց կայսեր անդուլ հորդորներով, [նրանց մեծամեծներին] փառահեղ հյուրընկալություն ցուցաբերելով, ապա նաև սրտատվասիրությամբ ու առատաձեռն նվիրատվությամբ, համոզեց նրանց արքեպիսկոպոս ընդունել և երկրում եպիսկոպոսությունների խիտ ցանց հաստատել, ապա նաև լեռներից ու քարայրներից կանչված ս

կայսեր կողմից այնտեղ ուղարկված բարեպաշտ վանականների օգնությամբ, այդ ժողովուրդը հրաժարվեց իր պապենական սովորություններից և ամբողջությամբ ընկավ Քրիստոսի ուռկանը[186]։

97. Ոսկու, արծաթի, մետաքսյա հանդերձների առատ բաշխմամբ նա իրեն ձգեց, մերձեցրեց նաև ռոսների ամենաանհաղթահարելի և ամենաանաստված ժողովրդին, նրա հետ հաշտության պայմանագիր կնքեց, համոզեց փրկչական մկրտությունն ընդունել, ապա և պատրիարք Իգնատիոսի կողմից ձեռնադրված արքեպիսկոպոս։ Երբ վերջինս ժամանեց վերոհիշյալ ժողովրդի երկիրը, սիրով ընդունվեց։ Այդ ցեղի իշխանը հպատակների ժողով հրավիրեց, որը գլխավորեց ինքը, և ծերերը, որոնք բոլորից ավելի նախապաշարված էին դարավոր սովորություններով, քննության առան իրենց և քրիստոնյաների ռավանանքի հարցը։ Նրանք ներս հրավիրեցին իրենց մոտ ժամանած քահանայապետին։ Իշխանը նրան հարցափորձ արեց, թե ի՞նչ է նա քարոզելու իրենց և վարդապետելու։ Նա ներկայացրեց սուրբ ավետարանի սրբազան մատյանը, պատմեց մեր Փրկչի և աստծո մի քանի հրաշքների մասին, ինչպես և Հին կտակարանում տրված աստծո հրաշագործությունների պատմությունը։ Ռոսները կտրականապես ասացին. «Եթե մենք ականատես չլինենք որևէ նման բանի, ամենից առաջ այն բանի, ինչ դու պատմեցիր հնոց նետված երեք մանուկների մասին[187], ամենևին չենք հավատա քեզ, ոչ էլ կշարունակենք լսել քո ասածները»։ Նա, վստահ լինելով Քրիստոսի խոսքի ճշմարտությանը, թե «զոր ինչ խնդրիցէք յանուն իմ՝ արարից զայն» և «որ հաւատայն յիս, զգործս զոր ես գործեմ, և նա գործեսցէ, և մեծամեծս եւս քան զնոյնս գործեսցէ»[188], ապա և գիտենալով, որ իր արածը հանուն ցուցադրության չէ, այլ հոգիների փրկության, ասաց. «Թեև չի կարելի փորձել տեր աստծուն[189], բայց եթե հոգով կամենում եք գալ առ աստված, պահանջեցեք ինչ որ ուզում եք, և աստված անպայման կկատարի այդ՝ ձեր հավատքի համար, թող թե մենք հասարակ մահկանացուներ ենք և աննշան մարդիկ»։ Նրանք պահանջեցին քրիստոնյաների հավատո մատյանը, այն է՝ աստվածային սուրբ ավետարանը դցվի իրենց վառած կրակի մեջ։ Եթե մնա անվնաս և անկեղ, կընդունեն նրա քարոզած աստծուն։ Այդ ասվելուց հետո քահանան մեկնեց ձեռքերը, աչքերը հառեց առ աստված և ասաց. «Մեկ անգամ ևս փառավորիր քո սուրբ անունը, Հիսուս Քրիստոս, տեր աստված, հաչս համայն այդ ժողովրդի», և սուրբ ավետարանի մատյանը գցվեց վառվող խարույկի մեջ։ Անցան բազում ժամեր, խարույկը հանգցրին և սուրբ մատյանը

գտան անվնաս ու անեղծ, կրակից նա ոչ մի վնաս չէր կրել, չէր ենթարկվել որևէ փոփոխության։ Մատյանի փականի վրա եղած ծոպերն անգամ որևէ վնաս կամ փոփոխություն չէին կրել։ Բարբարոսները, տեսնելով այդ սարսափելի հրաշքը, ապշեցին և առանց վարանման սկսեցին մկրտվել։

98. Երբ խելամիտ Վասիլ կայսեր թագավորության ժամանակ նման գործեր էին կատարվում, ամեն ինչ բարեհաջող վախճան էր ունենում, ըստ կայսեր ցանկության, երբ կյանքն օրեցօր բարեկեցիկ էր դառնում և քաղաքում ու պալատում ուրախություն էր, երբ գրեթե բոլոր կղզիներում և մայր ցամաքներում խաղաղություն էր տիրում, հանկարծակի արքունիքի վրա խուժեց դժբախտությունների փոթորիկ, ամպրոպ ու մրրիկ։ Պալատում տարածվեց լաց ու կոծ և իլիական վիշտ, կատարվեց կսկծալի ողբերգություն։ Կայսեր ամենասիրելի, անդրանիկ որդին՝ Կոստանդինը, իր ծաղիկ, մատաղ հասակում, երբ եռանդագին սկսել էր մրցել հոր հետ սխրագործությունների մեջ. ծանր հիվանդացավ և մի քանի օր տառապեց ջերմությամբ։ Սաստիկ բարձր ջերմությունը շատ արագ վատնեց նրա կենսական հյութերը, և նա հոգին ավանդեց[190], մեծ սգի մեջ դցելով հորը։ Կոփված տղամարդը, սակայն, անասելի դժբախտությունների ժամանակ պարտավոր էր իրեն զսպել։ Լինելով մահկանացու, Վասիլը գիտեր, որ որդին էլ էր մահկանացու։ Դժբախտության վրա չափից շատ ողբալը նա համարեց ցածր, տղամարդուն անվայել և, թողնելով կանանց, շուտով ուշքի եկավ ու քաջանուն Հոբի շնորհակալական խոսքերն ասաց. «Տէր ետ և Տէր առ. որպէս Տեառն հաճոյ թուեցաւ՝ նոյնպէս եւ եղեւ. եղիցի անուն Տեառն օրհնեալ»։ Զարմանալու ի՞նչ կա, ասաց նա, եթե տվողն ետ առավ. այդպես էր նա որոշել, երբ տվեց։ Նա ավելի մտահոգված էր վախճանվածի մոր և եղբայրներին մխիթարելով։ Ապա դարձյալ լծվեց իր հանապազօրյա գործին՝ որբերին պաշտպան կանգնելուն, այրիներին օգնություն տալուն, զինվորներին ու չքավորներին՝ նպաստ, նեցուկ կանգնելուն անիրավվածներին. նա սիրալիր կերպով ու բարյացակամությամբ լսում էր տիրոջից վախեցողներին։ Նրա համար ուղեցույց էին օգտակարն ու փրկարարը, այն, ինչ արժանանում է երկնային թագավորության։

99. Իշխանավորներն ու կառավարիչները հաճախ սովորություն ունեն, իրենց՝ հավատարմությունն ընդգծելու մտադրությամբ, ավելացնել հարկերը, ձեռք առնել միջոցներ, որոնք կարող են նպաստել [պետության] եկամուտների ավելացմանը։ Նրանք ենթադրում են, որ այդ

ճանապարհով կարող են ամրապնդել իրենց դիրքը։ Մի անգամ գենիկոնի [լոգոթետի][191] պաշտոնն ունեցողը նույն այդ միտումով ազնիվ կայսեր խորհուրդ տվեց հռոմեական տիրապետության բոլոր բանակաթեմերը ուղարկել այսպես կոչված էպոպտներին ու էքսիսոտներին[192], որպեսզի, ինչպես ասաց, այն ագարակներն ու գյուղերը, որոնք ժամանակի ընթացքում այլևայլ պատճառներով անտերունչ էին դարձել, տան ուրիշներին և այդպիսով կայսերական գանձարանին մեծ եկամուտ բերեն։ Կայսրը ձևացրեց, որ համամիտ է նրա խորհրդին և նրան հրամայեց այդ գործը հաջողությամբ իրագործող մարդկանց ընտրել և իրեն ներկայացնել։ Պետական գանձապահն իր կարծիքով լավագույններին ընտրեց։ Ընտրյալների ցուցակը ներկայացնելով կայսեր, նա կշտամբանքի արժանի համարվեց և խիստ պարսավանքի ենթարկվեց, որ այդ գործի համար նման մարդկանց է առաջադրել։ Գանձապահն ասաց, որ պաշտոնյաների մեջ դրանցից լավը չկա։ Կայսրը պատասխանեց, թե՝ «ես դեմ եմ այս նախաձեռնության. եթե հնարավոր լիներ այդ գործն ինքս անձամբ կկատարեի, բայց քանի որ գտնում եմ, որ դա անվայել է և անիրագործելի[193]. ստիպված իմ հույսերը պետության երկու մագիստրոսների վրա[194] եմ դնում, այդ պարտականության կատարումը վստահում եմ նրանց, որովհետև նրանք և՛ պատկառելի տարիք ունեն, և՛ մեծ փորձ, իրենց վստահված պետական պարտականությունները երկար տարիների պաշտոնավարության ընթացքում կատարել են անթերի, ուղղամիտ և առաքինի կերպով։ Արդ, ասաց, դու ինքդ գնա և հայտնիր նրանց այս գործի օգտակարության մասին, հաղորդիր և իմ կարծիքն այդ առթիվ։ Եթե նրանք համամիտ լինեն ընթացք տալու դրան, ես կողջունեմ այդ միտքը և կստորագրեմ դրա տակ»։ Բայց երբ այդ մասին լսեցին երկու մագիստրոսները, ապշեցին, և, պատճառ բռնելով իրենց ծերությունը, հասարակաց հոգսերով սաստիկ ծանրաբեռնվածությունը, խնդրեցին ազատել իրենց նման ծառայության բեռից։ Ուղարկվողը ձեռնունայն վերադարձավ կայսեր մոտ և զեկուցեց մագիստրոսների վճռի մասին։ Կայսրը, լսելով այդ, ասաց. «Իմ գնալը համարվում է անվայել, պայծառափայլ մագիստրոսները չեն ուզում իրենց վրա վերցնել այս գործը, իսկ ես էլ չունեմ նախաձեռնությունն իրականացնող ուրիշ վստահելի մարդ, դրա համար ահա որոշել եմ քննության ներկայացված հարցին ընթացք չտալ։ Ավելի լավ է, ասաց նա, որ վատ մարդկանցից ոմանք ապօրինաբար ինձնից օգուտ քաղեն, քան թե որևէ մեկը վնաս կրի և փորձանքի հանդիպի»։ Իր ամբողջ ինքնակալության ժամանակ, ահա, հռոմեական տիրապետության տակ

գտնվող բոլոր բանակաթեմերի ժողովուրդը, չքավորներին կից գտնվող գյուղերն ու ագարակները, ի վայելումն նրանց, չտեսան ոչ էպոպտես և ոչ էլ էքսիսոտ, մնացին ազատ, և նրանց մասին նախատեսված օրենքը չեղյալ հայտարարվեց։ Ահա այսպիսին էր բարի կայսրը՝ բոլոր հպատակների, հատկապես գյուղական բնակչության նկատմամբ ցուցաբերելով հայրական հոգատարություն և խնամք։

100. Բայց նախանձը արքունիքում մի նոր այլեկոծություն ու փոթորիկ բարձրացրեց, շփոթություն և իրարանցում առաջացնելով հենց իրեն՝ բնության դեմ։ Կայսեր շատ սիրելի որդի Կոստանդնի մահից դեռ քիչ ժամանակ էր անցել, նրա համար մխիթարություն և հույս էր դարձել երկրորդ որդին՝ Լևոնը։ Բայց դևերի նախանձ ցեղը չհանդուրժեց կայսերական իշխանությունը ժառանգողի անվրդով, խաղաղ, բարեպաշտ և հեզ բնավորությունը, հպատակ ժողովրդի վերաբերյալ նրա թագավորության ժամանակ ակնկալվող բարեկեցությունն ու բարգավաճումը։ Ահա դրա համար այդ [ցեղը] դուրս է գալիս նրա դեմ մարտի՝ հետևյալ ձևով. երանելի Վասիլը ուներ Սանդաբարենոս անունով մի շատ սիրելի և վստահելի վանական և քահանա համարվող բարեկամ և հմուտ օգնական։ Հակառակ, որ կայսրը սիրում էր նրան, բայց մարդկանց մոտ նա բարի համբավ ու վարկ չուներ։ Այդ էր պատճառը, որ Լևոնը հաճախ էր ծաղրում նրան, անվանելով խաբեբա ու շառլատան, կայսրին ճիշտ ճամփից խոտորող։ Դա այդ խարդախի և նենգի ականջը հասավ։ Ձևացնելով, որ նա բարի Լևոնի ընկերն է ու բարեկամը, ասաց նրան, թե «դու արդեն պատանի ես, հորդ սիրելին, ապա ինչո՞ւ գաղտնի չես կրում թուր կամ դաշույն։ Երբ հորդ հետ ձի հեծած դուրս ես գալիս ագարակները, դու պետք է օգնես նրան, երբ նրա վրա հարձակվի որևէ գազան, եթե նրա դեմ որևէ դավադրություն նյութվի, դու չպետք է անդեն լինես, այլ պետք է մի բան ունենաս, որով կարողանաս մարտնչել հորդ ոսոխների դեմ»։ Լևոնը նենգության անտեղյակ, չհասկացավ այդ մարդու խորամանկությունը (ով ընդունակ չէ չարագործության, նա դժվար է կռահում նենգությունը), նա ընդունեց խորհուրդը և համաձայնվեց կոշիկի մեջ դաշույն պահել։ Երբ նենգամիտը տեսավ, որ խորհուրդն ի կատար է ածված, տեղեկացնում է կայսեր, թե «որդիդ մտադիր է քեզ սպանել, եթե չես հավատում, ապա երբ մայրաքաղաքից դուրս գաս որսի կամ որևէ այլ նպատակով, հրամայիր նրա ոտքից հանել սանդալները, և եթե դաշույն գտնվի այնտեղ, իմացիր, որ քո սպանության համար է այն նախապատրաստված»։ Հայտարարվեց կայսեր որսի դուրս գալու մասին, և նրա հետ

մեկնեցին բոլոր նրանք, ովքեր ընդունված կարգի համաձայն մասնակից են դառնում։ Հասնելով մի վայր, կայսրը ձևացնում է, թե դաշույնի կարիք է զգում և փութանակի փնտրում այն։ Որդին ներկայացավ և հոր կասկածներին անտեղյակ, առանց որևէ հետին մտքի հանեց և հորը տվեց իր կրած դաշույնը։ Հենց որ դա կատարվեց, նրա դեմ հարուցված մեղադրանքն իսկույն ճշմարիտ համարվեց, իսկ Լևոնի չըքմեղանքը՝ սին ու կեղծ։ Նրանք իսկույն վերադարձան արքունիք։ Կայսրը, որդու վրա զայրացած, զրկեց նրան կարմիր կոշիկներից[195] և Մարգարիտես կոչվող կայսերական տներից մեկում արգելափակեց։ Ոսոխ և վրիժառու [Սանդաբարենոսը] դրդում էր կայսեր Լևոնի աչքերի լույսը խավարեցնել[196], մի բան, որ արքունի քահանայապետը և սենատը թույլ չտվեցին անել, բայց այնուամենայնիվ Վասիլը նրան բանտից չազատեց։ Երկար ժամանակ անցավ, հայրական զգացմունքները չէին խոսում նրա մեջ, ընդհակառակը, չար ոգիները քարացնում էին դրանք։ Սենատի մեծամեծները բազմիցս ցանկացան միջնորդել հոր առջև՝ որդու օգտին, բայց ամեն անգամ ինչ-որ բան խանգարում էր. նրանք իրենց որոշածն իրականացնելու պատեհ առիթ համարեցին հետևյալը. /101/ պալատում, կախված վանդակի մեջ կար ուրիշի ասածը կրկնող, շատախոս մի թռչուն, որին թութակ են անվանում։ Ոմանք սովորեցրել էին նրան, գուցե և այլ ճանապարհով նա էր սովորել, և հաճախ կրկնում էր. «Վա՜յ, վա՜յ քեզ, տեր Լևոն»։ Մի օր կայսեր մոտ ճաշկերույթ էր, և նրա հետ սեղան էին նստել սենատի առաջին մարդիկ։ Երբ թռչունը բազմիցս կրկնեց վերոհիշյալ խոսքը, սեղանակիցները տխրեցին, խղճահարվեցին և դադարեցրին կերուխումը։ Կայսրը դիմելով նրանց, հարցրեց՝ ինչո՞ւ են վերջ տվել խնջույքին։ Նրանք արտասվալից աչքերով պատասխանեցին. «Ինչպե՞ս շարունակենք, երբ այս անբան թռչունը պախարակում է մեզ՝ բանական և տիրասեր համարվողներիս, երբ նա իր տիրոջն է կոչում, իսկ մենք խնջույքներով տարված մոռացել ենք անմեղ տիրոջ։ Եթե նա իսկապես մեղավոր է՝ հոր վրա է բարձրացրել իր աջը՝ մենք մեր ձեռքով կսպանենք նրան և կհագենանք նրա արյամբ։ Բայց եթե նա անմեղ է, իր դեմ ներկայացված մեղադրանքներն անհիմն, ապա մինչև ե՞րբ բանսարկու լեզուն պիտի նրա դեմ հաղթող լինի»։ Այս խոսքերից կայսրը մեղմացավ, հրամայեց նստել և մտածել հարցի շուրջը։ Շատ չանցած նրա մեջ խոսեց հայրական զգացմունքը։ Նա որդուն բանտից հանեց և իր մոտ հրավիրեց, նրա սգավորի հանդերձները փոխեց, կարգադրեց կտրել արգելափակման ընթացքում աճած մազերը և թագավորական նախկին շուքին ու պատվին արժանացրեց։

102. Շատ չանցած կայսրը հիվանդանում է մահացու ախտով, որն հետևեց թանչին։ Վերջինս իր հերթին առաջացել էր որսի ժամանակ, երբ նա ձիուց ցած էր գլորվել։ Ահա այս հիվանդությունը կամաց-կամաց սկսեց նրան հալումաշ անել։ Նա վախճանվեց[197]՝ նախօրոք պետության գործերը գերազանց կարգավորելով, նշանակելով իր հաջորդին, բոլոր հարցերը խոհեմաբար տնօրինելով։ Բարձր ջերմությունն ամբողջությամբ վատնել էր ու քամել նրա կենսական հյութը։ Նա իր նախորդի՝ Միքայելի հետ թագավորեց մեկ տարի, տասնինը տարի միահեծան, քաղաքական հարցերում իրեն դրսևորեց գերազանց, ցուցաբերեց ռազմագիտական խոր գիտելիքներ, պետության սահմաններն ընդարձակեց, հպատակների հանդեպ գործադրվող անիրավությունն ու բռնությունը վերացրեց։ Եվ միանգամայն պատշաճում են նրան օրինակելի թագավորի մասին Հոմերոսի խոսքերը. «և թագավոր բարի, և հզոր ու քաջ պատերազմող»[198]։ Բացարձակ իշխանությունն ստանում է նա, ով և՛ բնության օրենքով, և՛ իր առաքինություններով կոչված է հայրենական ժառանգության տիրանալու, կենդանի որդիներից ավագագույնը, ամենաբարի և ամենաիմաստուն Լևոնը, որին ցանկանում էր հպատակ ժողովուրդը և աղոթում դրա համար։

Մենք մեր ուժերի ներածի չափով շարադրեցինք երանելի Վասիլ կայսեր բարեպաշտ թագավորության պատմությունը, այն, ինչ դեռ ժամանակը մոռացության չէր տվել, ապա և նրա իշխանությունն ստանալու նախորդող ժամանակաշրջանի, նրա ողջ կյանքի ճշմարտացի պատմությունը։

## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

# ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԼԵՎՈՆ ԿԱՅՍԵՐ[1]

Վասիլի մահից հետո թագավորեց նրա որդի Լևոնը՝ քսանհինգ տարի և յոթ ամիս։ Նրա եղբայր Ստեփանոսը, լինելով հոգևորական և սինկելլոս, Փոտ պատրիարքի մոտ էր, նրա կողմից էր առաջ քաշվում ու դաստիարակություն ստանում։ Կայսրը հոգևորականներով, կերոններով ու կառքերով ստրատելատ Անդրեասին և այլ սենատորների Խրիսուպոլիս ուղարկեց և Միքայելի աճյունը գերեզմանից հանել տալով, նոճու ծառի փայտից պատրաստված դագաղի մեջ, դեսպակի վրա դրած, շուքով, կայսերական պատիվներով, քաղաք բերեցին, օրհներգությամբ այն մինչև Սուրբ Առաքելոց [տաճարը] ուղեկցեցին և շիրիմում ամփոփեցին[2]։ Ուղեկցողների մեջ էին նաև նրա եղբայրները։

2. Դրանից հետո կայսրը վերոհիշյալ ստրատելատ Անդրեասին, անցյալում դրոմոսի լոգոթետի պաշտոնը վարած Հովհաննես Հագիոպոլիտեսի, շատ զարգացած մեկի հետ սուրբ Սոփիա ուղարկեց։ Նրանք բեմ բարձրանալով, ի լուր ամենքի ընթերցեցին Փոտ պատրիարքի դեմ ուղղված ամբաստանագիրը, և նրան [պատրիարքական] աթոռից ցած առնելով, աքսորեցին Արմոնիանների Բորգոնի[3] մականվանյալ վանքը։ Կայսրը պատրիարք նշանակեց իր եղբայր Ստեփանոս սինկելլոսին[4], որին ձեռնադրեց պրոտոթրոնոս[5] Թեոփանեսը։ Ստեփանոսը պատրիարքի պաշտոնում ապրեց վեց տարի և հինգ ամիս և հոգին ավանդելով, թաղվեց Սիկեոն վանքում։

3. Կայսրը Ստիլիանոս Զաուցեսին[6] շնորհեց մագիստրոսի պատվաստիճանը և նշանակեց դրոմոսի լոգոթետ։

4. Հյուպսիլե կոչվող քաղաքը[7] հանձնվեց հագարացիներին, որոնք նրա ողջ բնակչությունը գերի քշեցին։ Սոֆիեի[8] մոտ մեծ հրդեհ ծագեց, ի միջի այլոց ճարակ դարձավ նաև սուրբ առաքյալ Թովմայի տաճարը, որը Լևոն կայսրը հոյակապ վերականգնեց։

5. Կայսրը Եվխայիտա մարդ ուղարկեց և Թեոդորոս Սանտաբարենոսին քաղաք բերել տվեց։ Սխոլերի դոմեստիկոս Անդրեասը և մագիստրոս Ստեփանոսը՝ Կալոմարիայի մականվանյալը, որոնք Սանտա-

բարենոսի կողմից բազմիցս էին Վասիլ կայսեր առաջ զրպարտվել, հայտնեցին [Լևոն] կայսեր, թե Փոտն ու Թեոդորոս Սանտաբարենոսը ցանկացել են կայսր հռչակել Փոտի ազգականներից մեկին։ Դրա վրա կայսեր հրամանով երկուսին էլ Պեգեի պալատը բերեցին և նույնի կարգադրությամբ էլ տնային կալանքի ենթարկեցին։ Նրանց դեմ ներկայացված մեղադրանքների քննության համար ուղարկվեցին նույն Ստեփանոս մագիստրոսը, Անդրեաս դոմեստիկոսը, պատրիկներ Կրատերոսն[9] ու Գումերը[10] և Հովհաննես Հագիոպոլիտեսը։ Նրանք Փոտ պատրիարքին բերելով, արդ ու պատվով դահ նստեցրին, իրենք էլ նստեցին և սկսեցին հարցաքննությունը։ Անդրեաս դոմեստիկոսը հարցրեց պատրիարքին. «Ո՛վ տեր, ճանաչո՞ւմ ես Թեոդորոս աբբային»։ Նա պատասխանեց. «Ես Թեոդորոս աբբա չեմ ճանաչում»։ Անդրեասը հարցրեց. «Աբբա Թեոդորոս Սանտաբարենոսին չե՞ս ճանաչում»։ Պատրիարքն ասաց. «Ես ճանաչում եմ վանական Թեոդորոսին, Եվխայիտայի արքեպիսկոպոսին»։ Երբ Սանտաբարենոսին ներս հրավիրեցին, Անդրեասն ասաց նրան. «Կայսրը քեզ հարց է տալիս՝ ո՞ւր են թագավորությանս դրամներն ու իրերը»։ Նա պատասխանեց. «Նրա մոտ, ում տվել էր այդ ժամանակվա կայսրը։ Արդ, քանի որ այժմ կայսրը պահանջում է, նա իրավունք ունի հետ վերցնել դրանք»։ Անդրեասի հարցին, «ասա, ո՞ւմ էիր ուզում կայսր անել, երբ [Լևոն] կայսեր հոր՝ իր որդուն կուրացնելու խորհուրդ էիր տալիս, քո՞ ազգականին, թե՞ պատրիարքի», նա պատասխանեց. «Ինձ ներկայացված մեղադրանքների էությունն ինձ անծանոթ է»։ Ստեփանոս մագիստրոսն ասաց. «Դու չէի՞ր կայսեր խորհուրդ տվողը այդ հարցի շուրջ պատրիարքին հարցաքննության ենթարկելու»։ Դրա վրա [Սանտաբարենոսն] իսկույն իրեն պատրիարքի ոտքերին գցեց ու ասաց. «Երդվեցնում եմ քեզ, տե՛ր, հանուն աստծո, ինձ կարգալույծ արա և հետո, երբ այլևս հոգևորական չեմ լինի, թող ինձ պատժեն որպես ոճրագործի։ Ես նման բաներ կայսեր չեմ ասել»։ Պատրիարքն ասաց. «Տե՛ր Թեոդորոս, երդվում եմ իմ հոգու փրկությամբ, դու արքեպիսկոպոս ես և այդպիսին էլ կմնաս»։ Անդրեասը այդ խոսքերի վրա զայրացած, ասաց. «Աբբա՛, դու խորհուրդ չտվեցի՞ր կայսեր, որպեսզի նա իմ միջոցով պատրիարքին հարցաքննության ենթարկի»։ Սանտաբարենոսը պատասխանեց, թե ոչնչի տեղյակ չէ։ Նրանք, վերադառնալով կայսեր մոտ, զեկուցեցին հարցաքննության արդյունքները։ Կայսրը պատրիարքի դեմ որևէ ճշմարտանման մեղադրանք ձեռք չբերելու առթիվ սարսափելի զայրացած ու բարկացած, մարդ ուղարկեց ու Սանտաբարենոսին սաստիկ գանա-



14—1069

*հարելով, Աթենք աքսորեց։ Այնուհետև նա այնտեղ մարդ ուղարկեց և կուրացնելով նրան Արևելք աքսորեց։ Բազում տարիներ անց նա նրան աքսորից հետ կանչեց, քաղաք մտցրեց, կարգադրելով Նոր եկեղեցուց նրան մթերաբաժին տրվի։ Սանտաբարենոսը վախճանվեց Կոստանդնի և նրա մոր Զոեի թագավորության ժամանակ։*

*6. Լևոնի թագավորության օրոք[11] Լոնգիբարգիայի դուքսը, որ Ֆրանկիայի ռեքսի փեսան էր եղել, կայսեր դեմ ապստամբություն բարձրացրեց և համայն երկիրն իրեն ենթարկեց։ Կայսրը, իմանալով այդ մասին, էգիոնի ապստամբությունը[12] ճնշելու համար արևմտյան բոլոր բանակաթեմերի զորքերով սեղանապետ Կոստանդնին ուղարկեց։ Ճակատամարտում Կոստանդնի զորքերը պարտություն կրեցին և սրի քաշվեցին, հազիվ Կոստանդինը փրկվեց։ Այն ժամանակ օրվա վեցերորդ ժամին արեգակի խավարում էլ եղավ[13], այն աստիճան, որ աստղերն անգամ երևացին, փչեցին սաստիկ քամիներ, կայծակ ու որոտ. սուրբ Կոստանդնի հրապարակի աստիճանների վրա յոթ հոգի շանթահար եղան։*

*7. Հագարացիները պաշարմամբ գրավեցին Սամոսը, ուրիշների թվում դերի վերցրին և նրա զորավար[14] Պասպալասին։ Լևոն կայսրը Զաուցեսին շնորհեց վասիլեոպատորի պատվաստիճանը[15], որի հիմնադիրը ինքը Լևոնն էր։ Քանզի [Լևոնը] արդեն սիրել էր [Զաուցեսի] դստեր, որի ամուսին Թեոդորոսին, մականունը Գունիացիցես[16], թունավորել սպանել էին։*

*8. Ստեփանոս պատրիարքի վախճանվելու առթիվ նրա փոխարեն պատրիարք ձեռնադրվեց Անտոնիոսը, մականունը Կավլեաս[17]։*

*9. Լուր հասավ, որ Բուլղարիայի իշխան Սիմեոնը[18] որոշել է հռոմայեցիների դեմ արշավել, որպես առիթ օգտագործելով հետևյալ հանգամանքը։ Վասիլեոպատոր Զաուցեսը ուներ Մուսիկոս անունով ներքինի մի ծառա, որն ընկերացավ հելլադացի[19] շահամոլ ու դրամապաշտ առևտրականներ Ստավրակիոսի և Կոսմասի հետ։ Վերջիններս, ցանկանալով Մուսիկոսի միջնորդությունից օգուտ քաղել, բուլղարների հետ առևտուր անելու վայրը տեղափոխեցին Թեսաղոնիկե[20]։ Այստեղ նրանք առևտրի մեջ խաբում էին բուլղարներին։ Երբ բուլղարներն այդ մասին Սիմեոնին հայտնեցին, վերջինս դիմեց Լևոն կայսեր։ Լևոնը Զաուցեսի հանդեպ տածած մտերմության առաջ տեղի տալով, ամեն ինչ գրպարտություն էր համարում։ Սիմեոնը՝ գազազած, հռոմայեցիների դեմ զենք բարձրացրեց[21]։ Կայսրը նրա դեմ ստրատելատ Կրենիտեսին[22] ուղարկեց, տալով բազում զորք ու հրամանատարներ։ Մակե-*

դոնիայում տեղի ունեցած ճակատամարտում հռոմայեցիները պարտվում են, հենց Կրենիտեսը, ինչպես և հայազգի Կուրտիկեսը[23] և շատ ուրիշներ սրախողխող են լինում։ Սիմեոնը Լևոն կայսեր հետերիայում ծառայող խազարների էլ գերի վերցրեց, որոնց քթերը կտրելով քաղաք ուղարկեց՝ համոթ հռոմայեցիների։ Կայսրը, տեսնելով նրանց, լցվեց զայրույթով և Նիկետասին, մականունը Սկլերոս, թուրքերին[24] նվերներ տալու և նրանց Սիմեոնի դեմ պատերազմի հանելու նպատակով, դրոմոններով Դանուբ գետն ուղարկեց։ [Նիկետասը] հանդիպեց [թուրքերին], համոզեց նրանց Սիմեոնի դեմ զենք բարձրացնել և, նրանցից պատանդներ վերցնելով, կայսեր մոտ վերադարձավ։ Կայսրը որոշեց բուլղարների դեմ պատերազմել և՛ ցամաքով, և՛ ծովով։ Նա ծովով Եվստաթիոս դրունգարին ուղարկեց, իսկ ցամաքով՝ պատրիկ Նիկեփոր Փոկասին[25], որն Անդրեասի վախճանվելուց հետո սխոլերի դոմեստիկոս էր դարձել։ Երբ սրանք հասան Բուլղարիա, կայսրը Սիմեոնի մոտ քվեստոր Կոստանդինակիոսին ուղարկեց, քանզի դեռևս հույս ուներ պահպանել խաղաղությունը և ուզում էր [Սիմեոնի] հետ դաշինք կնքել։ Սիմեոնը ենթադրելով, որ Կոստանդինակիոսը ինչ-որ նենգ նպատակով է իր մոտ ժամանել, նրան ձեռք գցելով, բանտ նետեց։ Երբ Սիմեոնը իր ուշադրությունը Նիկեփորի բանակի վրա էր բևեռել, թուրքերը ներխուժելով համայն Բուլղարիան ասպատակեցին։ Սիմեոնը, լսելով այդ մասին, դարձավ թուրքերի դեմ։ Վերջիններս անցնելով [Դանուբը], բուլղարների հետ պատերազմի են բռնվում և գլխովին պարտության մատնում նրանց։ Սիմեոնը հազիվ փրկվեց Դրիստրայում[26]։ Թուրքերը կայսեր խնդրեցին, որ նա գնի իրենց ձեռք գցած բուլղար ռազմագերիներին, ինչ որ նա արեց, նրանց գնման համար քաղաքացիներ[27] ուղարկելով։ Սիմեոնը դրունգար Եվստաթիոսի միջոցով կայսրից խաղաղություն էր աղերսում։ Կայսրը դրան ընդառաջ գնաց և այդ գործով Լևոն Խիրոսֆակտեսին ուղարկեց, իսկ դոմեստիկոս Նիկեփորը և դրունգար Եվստաթիոսը հրաման ստացան իրենց զորքերով վերադառնալ։ Սակայն Սիմեոնը Լևոն Խիրոսֆակտեսին ոչ միայն տեսության չարժանացրեց, այլ բանտ նետեց, իսկ արշավելով թուրքերի դեմ, բոլորին սրի քաշեց. քանզի նրանք չկարողացան հռոմայեցիներից օգնություն ստանալ։ [Սիմեոնը] իր տարած հաղթանակի առթիվ փքված վերադառնալով, Լևոն [Խիրոսֆակտեսին] ասաց. «Քանի չեմ ստացել բոլոր բուլղար ռազմագերիներին, խաղաղություն չեմ կնքի»։ Կայսրը համաձայնվեց ռազմագերիներին վերադարձնել։ Եվ այսպիսով, Լևոն [Խիրոսֆակտե-

*սի] հետ [Բյուզանդիոն] եկավ բուլղար Թեոդորոսը, Սիմեոնի մտերիմը, որը և ստացավ նրանց։*

*10. Այն պատճառով, որ կայսրը շատ էր սիրում դոմեստիկոս Նիկեփորին, վասիլեոպատոր Զաուցեսը նրա մեջ ապագա ախոյան էր տեսնում և դրա համար ուզում էր նրա հետ խնամիական կապեր հաստատել։ [Նիկեփորը] մերժեց դա, որպեսզի Լևոն կայսեր կասկածելու առիթ չտա։ Դրա վրա Զաուցեսը՝ դագաղած, նրան դրպարտեց և պաշտոնանկ արեց։ Նրա փոխարեն սխոլերի դոմեստիկոս նշանակվեց մագիստրոս Կատակալոնը[28]։ Նիկեփորը երկար ժամանակ անգործ մնալուց հետո դարձյալ զորավար է նշանակվում՝ Թրակեսիոն բանակաթեմի։ Նա իր ողջ կյանքում պատերազմներում բազմաթիվ ու հոյակապ սխրանքներ գործեց, հագարացիների և այլ ժողովուրդների դեմ բազում հաղթանակներ տարավ և պատկառելի հասակում իր մահով վախճանվեց, թողնելով որդիներ Վարդասին և Լևոնին։ Վարդասը, լինելով Լևոն կայսեր անչափ մտերիմը, սիրված էր և գուրգուրանքի արժանացած, նա կայսեր համար ծառայություններ էր կատարում։ Իսկ կայսրը, ինչպես ասվեց, Կատակալոնին դոմեստիկոս նշանակելով Սիմեոնի դեմ ուղարկեց, նրա հետ միասին նաև պրոտովեստիարիոս Թեոդոսիոս պատրիկին[29]։ Արևելյան բոլոր բանակաթեմերի և տագմաների զորքերն անցան [Արևմուտք]. Բուլղարոֆիգոնում[30] տեղի ունեցավ ճակատամարտ, որտեղ հռոմայեցիները չարաչար պարտություն կրեցին և գլխովին ոչնչացան։ Զոհվածների մեջ էր և պրոտովեստիարիոս Թեոդոսիոսը։ Դրա վրա Խերսոնի բնակիչներն էլ իրենց զորավար Սիմեոնին սպանեցին, Հովնանի որդուն[31]։ Հագարացիներն էլ Կորոնը[32] գրավեցին՝ Կապադովկիայում։*

*11. Կայսրը գնաց Դամիանոսի [ագարակները], իր հետ տանելով Զաուցեսի դուստր Զոեին, ինչպես և հենց Զաուցեսին։ Կայսեր կին Թեոփանոն[33] այնտեղ ներկա չէր, նա Վլախեռնայի սուրբ գերեզմանն էր հսկում։ Երբ կայսրը վճռեց մնալ Դամիանոսի [պալատում], Զաուցեսի մարդիկ, այդ թվում և Զաուցեսի որդի Տավցեսը[34] և մնացածները խորհուրդ արեցին գիշերը կայսեր սպանել։ Զոեն, որ կայսեր հետ էր քնած, շշուկ լսելով, լուսամուտից գած նայեց։ Շշուկը դադարեց։ Երբ իր մեջ կասկած չմնաց, որ սոսկալի դավադրություն է նյութված, նա զարթնեցրեց կայսեր և հայտնեց տեղի ունեցածի մասին։ Կայսրն իսկույն նավ մտավ, անցավ Պեգե՝ բոլորին, այդ թվում և Զաուցեսին [Դամիանոսի պալատում] թողնելով։ Առավոտ կանուխ պալատ մտնելով, նա վիգլայի դրունգար Հովհաննեսին պաշտոնանկ արեց և նրա*

փոխարեն հետերիարխ Նիկողայոսի որդի Պարդոսին նշանակեց։ Նիկողայոսը կայսեր մտերիմ ու հավատարիմ մարդ էր, նա միշտ տեղյակ էր պահում նրան Զաուցեսի բոլոր գաղտնիքներն ու նրա վերաբերյալ ամեն ինչ։ Այսուհետև ահա կայսրը Զաուցեսի սենյակը չէր մտնում, մինչև որ մագիստրոս Լեոնը՝ մականունը Թեոդոտակիս, նրանց չհաշտեցրեց։

12. Վախճանվեց կայսրուհի Թեոփանոն[35], թագավորելով տասներկու տարի։ Նա հրաշագործ էլ դարձավ, նախանձի զգացմունքին անմասն։ Զոեի բարձրացումը նա հեզորեն տարավ և իր ողջ կյանքն անցկացրեց ողորմություն բաժանելով ու աղոթելով։

13. Լեոն կայսրը Զաուցեսի դուստր Զոեին թագադրեց և հետո ամուսնացավ։ Պսակի արարողությունը կատարեց պալատի քահանան՝ մականունը Սինապես։ Արարողությունը կատարողը, սակայն, կարդալույծ արվեց, իսկ Զոեն էլ մեկ տարի և ութ ամիս թագավորելով, վախճանվեց։ Նրա մարմինն ամփոփելու համար շիրիմ պատրաստեցին, որի վրա փորագրված էր հետևյալ արձանագրությունը. «Բաբելոնի դուստրը բազմաչարչար»[36]։

14. Մուսիկոսին և Ստավրակիոսին կայսեր առջև ամբաստանեցին, թե նրանք վասիլեոպատորին բարեխոսելու համար զորավարներից, անգամ իշխանավորներից կաշառք են վերցնում։ Մի անգամ Ստավրակիոսը զորավարներից մեկի նամակով մտավ վասիլեոպատորի մոտ, իսկ Հելիակոնում կանգնած կայսրը տեսնելով նրան, հետևից ինքն էլ մտավ և վզից բռնելով դուրս հանեց, իբրև թե զորավարների մասին հարցափորձ անելու։ Բերելով Մոնոթիրոն[37], նա առավ նամակը, նրան դուրս շպրտեց, իսկ ներկաներին կարգադրեց նրան պալատից դուրս հանեն և վանական խուզեն։ Մուսիկոսը, լսելով այդ մասին, իրեն կորցրեց։ Կայսրը, մտնելով այնտեղ, որտեղ Մուսիկոսը ներկայացել էր Զաուցեսին, պարանոցից քարշ տալով՝ դուրս հանեց, կարգադրեց կիտոնիտ Խրիստոֆորոսին նրան Ստուդիոսի վանքում վանական խուզել։ Շատ չանցած Զաուցեսը վախճանվեց պալատում[38]։ Նրա մարմինը Բուկոլեոնից իջեցնելով, տարան թաղեցին Կավլեասի վանքում։

15. Թագավորության տիրանալու ախորժակներ ունեցող էպիկտես[39] Վասիլը բարեկամացավ ծպտումով հագարացի Սամոնաս[40] կուբիկուլարիոսի հետ։ Նա համարձակորեն վստահեց Սամոնասին, ասելով նրան, թե «մեր մորաքույր Զոեի մեռնելու պատճառով կայսրը հաստատ ուրիշ կին է առնելու և մեզ դուրս շպրտելու։ Արդ, դու ինձ խոսք տուր, որ գաղտնիքը կպահես, իսկ ես մեր ողջ անելիքը կվստա-

հեմ քեզ»։ Սամոնասն այդպես էլ արեց, ծանոթացավ նրա ամբողջ մեքենայություններին և գալով կայսեր մոտ, ասաց. «Ուզում եմ, տե՛ր, քեզ առանձին մի բան ասել, որը ինձ, ասողիս, մահ կպատճառի, նմանապես քեզ, եթե այն լռության մատնվի»։ Եվ նա կայսեր հաղորդեց Վասիլի բոլոր խարդավանքները։ Երբ կայսրը նրա հայտնածի ճշմարտացիության կասկած հայտնեց և ասաց, թե գուցե այդպես է ասում որևէ մեկի դրդմամբ, Սամոնասն ասաց. «Եթե դու ուզում ես համոզված լինել, ապա ցանկացածդ մարդկանց իմ սենյակն ուղարկիր, ես նրանց կթաքցնեմ, թող նրանք Վասիլի ու իմ միջև եղած խոսակցությունը գրի առնեն, այն ժամանակ դու այլևս չես կասկածի, որ իմ ասածների մեջ ոչ մի սուտ բան չկա»։ Կայսրն ուղարկում է պրոտովեստիարիոս Խրիստոֆորոսին և կիտոնիտ Կալոկիրիսին։ Նրանք բարձրացան Սամոնասի սենյակը և թաքնվեցին։ Սամոնասը, խարդավանելով Վասիլին և [իր հավատարմության մասին] երդում տալով, համոզեց նրան բացորոշ ասել իր նյութած դավադրության մասին, ինչպես և հիշատակել իր դավակիցների անունները։ Կալոկիրիսն ու Խրիստոֆորոսը, լսելով նրա ասածը, գրի առան, և երբ [Վասիլն ու Սամոնասը] գնացին ճաշելու, նրանք իջնելով, գրվածքը ներկայացրին և ընթերցեցին կայսեր։ Դրա վրա կայսրը կանչելով Վասիլին, 24 հազար միլիարեսիա՝ տվեց՝ իբրև թե նրա մորաքույր Զոեի կողմից որպես հոգու փրկություն իրեն կտակ թողնված, և Մակեդոնիա ուղարկեց, իսկ նրան դավակից դարձած վիգլայի դրունգար Պարգոսին ուղարկեց Ստիպիոտեսի մոտ, որպես թե նրան առնի բերի, բայց վերջինս նախօրոք ստացած լինելով կայսեր նամակը, Պարգոսին բանտարկեց։ Իսկ կայսրը հետերիարխ Նիկողայոսին էլ քաղաքից դուրս հանեց։ Այնուհետև նա Մակեդոնիայից Վասիլին բերել տվեց. հարցաքննության ենթարկեց, հետո սաստիկ գանահարեց, նրա մազերը խանձեց և քաղաքում ծանակելուց հետո, Աթենք աքսորեց։ Կայսրը բոլոր մագիստրոսներին ու իշխանավորներին հրավիրելով, նրանց ներկայությամբ ընթերցեց Սամոնասի հաղորդածները։ Նրանք անչափ գովաբանեցին [Սամոնասին] իբրև կայսեր կյանքի փրկարարի, և ասացին, թե նա արժանի է մեծագույն պատվի։ Կայսրն անհապաղ նրան արժանացրեց պրոտոսպաթարի պատվին և իր մտերիմը դարձրեց։

16. Վախճանվեց պատրիարք Ստեփանոսը, և նրա փոխարեն պատրիարք ձեռնադրվեց Նիկողայոս Միստիկոսը[42], իմաստությամբ ու պարկեշտությամբ մեծապես օժտված մի մարդ։ Հագարացիները գրավեցին Դեմետրիաս քաղաքը Հելլադա բանակաթեմում։

17. Լևոն կայսրը թագադրում է Աննային, Զաուցեսի դուստր Զոեի դստեր, քանզի Աննան, ավգուստա չլինելու պատճառով իրավունք չուներ կարգով սահմանված ընդունելությունները կատարել։ Կայսրը Օպսիկիոն բանակաթեմից գեղադեմ ու սիրուն մի աղջիկ բերեց, անունը Եվդոկիա, որի հետ ամուսնացավ ու թագադրեց։ Նրանից նա արու զավակ ունեցավ, բայց ծննդաբերության ժամանակ և՛ մայրը, և՛ երեխան վախճանվեցին։

18. Կայսրը սուրբ Առաքելոց տաճարի մոտ եկեղեցի կառուցեց, հանուն իր նախորդ կին Թեոփանոյի։ Նա կառուցեց նաև սուրբ Ղազարոսի եկեղեցին՝ Տոպոյ կոչվողը[43], այնտեղ նաև ներքինիների վանք։ Հենց այստեղ նա բերեց ու ամփոփեց սուրբ Ղազարոսի և նրա քույր Մագդաղինեի աճյունները։ Երբ զինվորներն զբաղված էին այդ եկեղեցիների կառուցման աշխատանքներով, աֆրիկացիները[44] գրավեցին Սիկիլիայի Տավրոմենիոնը, և հռոմայեցիների մեծ կոտորած եղավ։ Հագարացիները գրավեցին նաև Լեմնոսը և բազում ժողովուրդ գերեվարեցին։

19. Մեսոպենտեկոստեի օրը կայսրը երթ կազմակերպեց և գնաց դեպի սուրբ Մոկիոս։ Երբ մոտեցավ սուրբ դռներին, մեկը բեմից թռչելով, հաստ գավազանով նրա գլխին ուժգին հարվածեց։ Նա իսկույն կսպաներ նրան, եթե ինչ-որ նախախնամությամբ գավազանի ծայրը չկպչեր պոլիկանդելոնին, և հարվածի թափը մի փոքր չկոտրվեր։ Կայսեր գլխից սկսեց առատ արյուն հոսել, և իշխանները իրար անցած փախուստի դիմեցին։ [Կայսեր] եղբայր Աղեքսանդրը հիվանդություն պատճառաբանելով, երթին չէր մասնակցել, որը և առիթ ավեց դավադրության մեղքը նրան բարդելու։ Կայսեր հարվածողը ձերբակալվեց և, սարսափելի խոշտանգումների ենթարկվելով, ասաց, թե դավադրության մասնակից ոչ ոքի չգիտե։ Նրա ձեռքերն ու ոտքերը կտրեցին և ձիարշավարանի սֆենդոնեում նրան կրակը գցեցին[45]։ Այդ օրվանից անհամն երթին վերջ տրվեց։ Որոշ ժամանակ անց այդ եկեղեցու տնտես ամենաիմաստուն Մարկոս վանականը ավագ շաբաթ օրը կատարեց մեծ Կոզմասի տետրաօդիոնը և, կայսեր հետ միասին ճաշելիս, աղերսում էր նրան չվերացնել այդ երթը։ Երբ կայսրը մերժեց, Մարկոսն ասաց. «Ո՛վ կայսր, ո՛չ զայրացիր, ո՛չ էլ բարկացիր. քանզի Դավիթ մարգարեն նախօրոք գրած էր. որ քեզ հետ այդ բանը կատարվելու էր։ Նա կանխասացություն էր արել. «որ ինչ անիրաւեցաւ թշնամին ի սրբութեան քում։ Պարծեցան ատելիք քո ի մէջ բարեկենդանութեան քո»[46]։ Դու, ո՛վ տեր, դեռ տասը տարի կթագավորես»։ Այդպես էլ ե-

ղավ։ Իր վիրավորվելուց տասը տարի անց, նույն օրը, նա հոգին ավանդեց։

20. Կայսեր չորրորդ կին Զոեն, թեև կայսեր հետ պալատում էր, բայց թագադրված չէր։ Բուլղարների ներխուժումները նեղում էին հռոմայեցիներին։ Հագարացիները, իմանալով դրանց մասին, պատերազմական նավատորմիղ հանդերձեցին և նրա ծովակալ նշանակեցին ծագումով Ատտալիա քաղաքից Լևոն Տրիպոլսեցուն[47], քրիստոնյաների հավատքը ուրացած մեկին։ Տրիպոլիս է կոչվում Փյունիկեի [քաղաքը], որ բաժանվել էր երեք ցեղերի՝ արադացիների, տյուրոսցիների և սիդոնացիների գաղթականների միջև։ Կայսրը գնացել էր Բուտիոսի էմպորիոնը[48]՝ իր պրոտովեստիարիոս Խրիստոֆորոսի վանքի նավակատիքն անելու, երբ լուր ստացվեց, թե Տրիպոլսեցին սարակինոսների նավատորմիղով Կոստանդնուպոլսի վրա է շարժվում։ Կայսրը այդ ժամանակվա դրունգար Եվստաթիոսին նավատորմիղով Տրիպոլսեցու դեմ ուղարկեց, բայց նա չկարողանալով ընդդիմակայել, ձեռնունայն վերադարձավ։ Տրիպոլսեցին հետապնդելով նրան, մտավ Աբյուդոս և հասավ մինչև Պարիոս[49]։ Երբ այդ բանը կայսեր հայտնեցին, նա ընկավ մեծ մտահոգության ու անել վիճակի մեջ։ Ծովային ուժը պրոտոասեկրետ Հեմերիոսին[50] տալով, նրան Տրիպոլսեցու դեմ ուղարկեց։ Հեմերիոսը, անցնելով Հելլեսպոնտոսի Աբյուդոսը (այստեղ գաղութ էին հիմնել միլետացիք, իսկ Հելլեսպոնտոս անունը պարտական է Ֆրիքսոսի քույր Հելլեյին, որն այնտեղ ծովն ընկավ։ Իսկ Էգեական ծովն իր անունը պարտական է այծի նման խոյացող ջրերի հոսանքին)[51], խարիսխ գցեց Կիրյուրրայի Ստրոբելոսում[52] (Ստրոբելոս անունը կապ ունի վայրի գիրքի հետ, իսկ Կիբյուրրա՝ Մարսոսի և Կիռրամոսի եղբայր Կիբյուրրոսի անվան) և Լամպսակոսում[53] (անունը կապ ունի լույսի փայլատակման հետ, որ գիշեր ժամանակ, փոկայեցվոց աղոթքներով քաղաքի հիմնադրման ժամանակ բռնկվեց, և քաղաքի հիմքերը ամուր դրվեցին)։ Տրիպոլսեցին այնտեղից անցավ Իմբրոս[54] (այդպես է կոչվում Անթոսի որդի Իմբրոսի անունից, որի ղավակ Ստափյուլոսը, Դիոնիսոսի ամենասիրելի Բոոն էր), ապա Սամոթրակեի վրայով Թասոս[55] հասավ։ (Հին մարդիկ Թասոսը Ոսկե էին անվանում, իսկ Սամոթրակեն նախկինում Թերակղզի էր Թրակիայում, որին, գազաններով լի լինելու պատճառով, Թերիուսա էին ասում։ Դա հավերժահարսերի սրբազան վայրն էր։ Հեսսադայում ջրի հոսանքը Թերակղզին կղզու վերածեց։ Նրան տիրեցին սամոսցի գաղթականներ և Սամոթրակե կոչեցին)։ Տրիպոլսեցին այստեղ հանդիպեց Թշնամիներին, բայց մոտենալ ան-

դամ չհամարձակվեց նրանց նավատորմիղին և ինքնաբերաբար (նրան աստված էր հեռու քշում) շրջվեց և գալով Թեսաղոնիկե, գրավեց այն, գերի վերցրեց նրա զորավարին՝ մականունը Կացիլակիոս[56], շատերին կոտորեց, բազում արյունահեղություն կատարեց[57]։

21. Ոմն Հռոդոֆիլես կուբիկուլարիոս, որ ինչ-որ գործով Սիկիլիա էր ուղարկվել և իր մոտ ուներ հարյուր լիտր ոսկի, ճանապարհին հիվանդացավ և կանգ առավ Թեսաղոնիկեում՝ լոգանք ընդունելու և հանգստանալու։ Տրիպոլսեցին սրան իր ճանկը գցեց, իմանալով, որ նա ոսկի ունի, բայց այն պատճառով, որ նա պնդում էր, թե ոչինչ չունի, բազում խոշտանգումների ենթարկելով, սպանեց։ [Հռոդոֆիլեսը] ոսկին ճանապարհին էր թողել, և ասեկրետ Սիմեոնն այնտեղից անցնելիս, վերցրեց այն։ Իր այդ արարքի համար [Սիմեոնը] ստացավ պատրիկի պատվաստիճանը և պրոտոասեկրետի պաշտոնը։ Երբ Տրիպոլսեցին որոշեց կործանել քաղաքը, Սիմեոնը նրան ոսկի առաջարկեց, որպեսզի նա հրաժարվի քաղաքը կործանելու մտքից։ Այդպես էլ եղավ, և սարակինոսների նավատորմիղը թողեց հեռացավ։ Հեմերիոսը, իմանալով այդ բոլորի մասին, նետվեց նրանց հետևից։ [Սարակինոսները] խարիսխ գցեցին Կրետեում և մնացած ավարը բաժանեցին նրա բնակիչներին[58], որից հետո իրենց հայրենիքը վերադարձան, Հեմերիոսին ձեռնունայն թողեցին Լեմնոսում։

22. Կայսրը Անատոլիկոն բանակաթեմի փոխզորավար էր նշանակել Արգիրոսների լավագույն ու անվանի ընտանիքից[59] սերող, իր ֆիզիկական ուժով, հզորությամբ, խոհեմությամբ, քաջությամբ, լրջմտությամբ, խելամտությամբ ու արդարությամբ օժտված ու հռչակված պատրիկ Եվստաթիոսին[60]։ Սա Անդրոնիկոս Դուկասի հետ ոչ թե մեկ, այլ բազում անգամներ արշավեց իսմայելացիների դեմ և նրանց պարտության մատնեց։ Հագարացիները սարսափում էին Եվստաթիոս Արգիրոսից, պատմում են, թե նրա անունն անգամ նրանց մեջ վախ ու սարսուռ էր առաջացնում։ Սամոնասը, ձևացնելով, թե ուզում է գնալ Դամատրիում գտնվող և Սպիրա կոչվող իր վանքը, իր դրամներով ու ձիերով փախուստի է դիմում և յուրաքանչյուր կայանում[61] պետական ձիերի ջլերը կտրում։ Կայսրը նրան հետապնդելու ուղարկեց հետերիարխ Վասիլ Կամատերոսին և Գեորգ Կրենիտեսին։ Երբ Սամոնասը պիտի Հալիս գետն անցներ, դրունգար Նիկեփոր Կալլոնասը հասավ ու բռնեց նրան։ Սամոնասը շատ էր պաղատում Կալլոնասին, խոստանում նրան բազում դրամ տալ, բայց երբ տեսավ, որ անհնար է նրան համոզել, ձևացրեց, թե գնում է Սիրիքայի[62] խաչին աղոթելու։ Վրա հա-

սավ Անդրոնիկոս Դուկասի որդի Կոստանդինը և նրան առնելով վերադարձավ քաղաք: Կայսրը հրամայեց [Սամոնասին] կեսար Վարդասի տանն արգելափակեն, իսկ Կոստանդնին հարցրեց՝ Սամոնասն հիրավի՞ Ասորիք էր ուզում փախչել: Իմանալով, որ իսկապես այդպես էր, նա կարգադրեց Կոստանդնին, երբ սենատորներն իրեն հարց տան, այդ մասին ոչինչ չասի, այլ պարզապես հայտնի, թե նա Սիրիքա աղոթելու էր գնացել: Կայսրն ուզում էր, որ Սամոնասը ներման արժանանա: Կայսրը, գումարելով սենատ, մեջտեղ հրավիրեց Կոստանդնին և հարց տվեց. «Երդվիր հանուն աստծո և իմ կյանքի և ասա, Սամոնասն իսկապես Ասորի՞ք էր փախչում, թե՞ ոչ»: Կոստանդինը վախեցավ երդումից (նախապես նա խոստացել էր իրականությունը թաքցնել, բայց պայմանով, որ դա կատարի առանց երդվելու, պարզապես հարցին պատասխան տված լինելու համար) և բոլորի առջև խոստովանեց, թե նա Ասորիք էր փախչում: Կայսրը զայրացած, նրան դուրս հանեց, իսկ Սամոնասը չորս ամիս կեսարի տանն արգելափակված մնաց, առանց իրավունք ունենալու հանդիպելու կայսեր, որից հետո արժանացավ նրա տեսակցության:

23. Լևոնը Զոեից, իր չորրորդ կնոջից որդի ունեցավ, Կոստանդնին, որի ծննդյան պահին գիսավոր աստղ հայտնվեց: Նա իր ճառագայթները դեպի արևելք էր գցում և երևաց քառասուն օր ու գիշեր: Նորածինը մկրտվեց Մեծ եկեղեցում, սուրբ աստվածահայտնության տոնին՝ ձեռամբ Նիկողայոս պատրիարքի: Նրան սուրբ ավազանից ընդունեցին [կայսեր] հարազատ եղբայր Աղեքսանդրը, պատրիկ Սամոնասը և բոլոր պաշտոնավոր անձինք: Այն ժամանակ էր, որ Կյուֆից[63] վտարվեցին անառակ կանայք, և այն ծերանոցի վերածվեց: Լևոն կայսրը պսակվեց Զոեի հետ՝ ձեռամբ երեց Թովմայի (դրա համար նա կարդալույծ արվեց), և նրան թագուհի հռչակեց: Այդ պատճառով պատրիարքը թույլ չտվեց կայսեր եկեղեցի մտնել, և նա ստիպված մետատորիոն[64] էր անցնում աջ կողմից:

24. Սամոնասը այն պատճառով, որ գործակցում էր կայսեր ամեն տեսակի ապօրինի ու վատ գործերին, առաջ քաշվեց և պարակիմոմենոս դարձավ: Նրանք [երկուսով] սկսեցին եկեղեցու դեմ դավեր նյութել: Կայսրը կանչեց Նիկողայոս պատրիարքին (դա փետրվար ամսի մեկին էր), և երկուսով նրան շատ պաղատեցին թույլ տա կայսեր եկեղեցի մտնել, բայց դիմադրության հանդիպելով, ժողովից հետո պատրիարքին մի փոքր նավ նստեցրին և Բուկոլեոնից Հիերիա ափն անցկացրին, որտեղից նա մեծ դժվարությամբ (առատ ձյուն էր նստած)

մի կերպ հասավ Գալակրենի [վանքը]։ Պատրիարք է ձեռնադրվում սինկելլոս Եվթիմիոսը[65], սրբազդեստ, ժուժկալ և աստվածապաշտ մի մարդ, որի մասին պատմում են, թե հայրապետությունը աստվածային հայտնությամբ ստացավ։ Կայսրը մտադիր էր մի վատ օրենք հրապարակել, համաձայն որի տղամարդը իրավունք ունի երրորդ, նույնիսկ չորրորդ անգամ ամուսնանալ։ Այդ հարցում նրան աջակցում էին բազմաթիվ ամենաուսյալ մարդիկ։

25. Հունիս ամսին Լևոն կայսրը Կոստանդին Լիպսի կողմից հրավեր ստացավ գալ սուրբ Առաքելոց [եկեղեցու] մոտ գտնվող իր վանքի նավակատիքն անելու և սեղան նստելու։ Բարձրացավ լիպս կոչվող քամին[66], այն երեք օր սաստիկ փչեց, սասանեց տներ ու եկեղեցիներ, այն աստիճան, որ բոլորը բացօթյա վայրեր փախան, ենթադրելով, որ աշխարհի վերջն է եկել։ Բայց աստծո մարդասիրությամբ անձրև տեղաց, որը և դադարեցրեց այդ փոթորիկը։

26. Հոռոմայեցիների դեմ հագարացիների նավատորմիղ դուրս եկավ։ Կայսրը դրոմոսի լոգոթետ Հեմերիոսին համայն նավատորմիղի ծովակալ նշանակեց։ Անդրոնիկոս Դուկասը հրաման ստացավ միանալ Հեմերիոսին և միասին մարտնչել հագարացիների դեմ։ Սամոնասը, այն բանի համար, որ Անդրոնիկոսը մատնել էր իր փախուստը, դարձել էր նրա ոխերիմ թշնամին և նրա տակն էր փորում, ոտքերին թակարդ լարում։ Նա մեկին թելադրեց Անդրոնիկոսին գաղտնի նամակով հայտնի՝ նավ չնստի, քանզի իբրև թե Հեմերիոսը Սամոնասի հորդորով կայսրից քեզ ձերբակալելու և կուրացնելու կարգադրություն է ստացել։ Եվ ահա, երբ հագարացիները վրա հասան, Հեմերիոսը Անդրոնիկոսին բազմիցս կոչ արեց նավ նստի, բայց նա հետ կանգնեց, ընդդիմացավ դրան, որով Հեմերիոսը միայնակ, սուրբ առաքյալ Թովմայի հիշատակի օրը, հագարացիների հետ կռվի բռնվեց և մեծ հաղթանակ տարավ։ Անդրոնիկոսը, դրան իրազեկ դառնալով, հուսալքված, իր ազգականներով ու ծառաներով[67] Կաբալա կոչվող քաղաքը[68] գրավեց և ապստամբություն բարձրացրեց[69]։ Սամոնասը, որ վաղուց էր երազում նման առիթ ձեռք գցել, ասաց կայսեր. «Ես քեզ միշտ չէի՞ ասում, տե՛ր, որ Դուկասը ապստամբ ու խռովարար է, քո թագավորության թշնամին»։ Կայսրը, առանց հապաղելու, Գրիգորասին ուղարկեց՝ Իվերիացի կոչվածին[70], որ սխոլերի դոմեստիկոս էր և Անդրոնիկոսի խնամին, նրա [խռովությունը] ճնշելու։ Անդրոնիկոսը, իմանալով այդ մասին, ինչպես և Նիկողայոս պատրիարքի եկեղեցուց վտարվելու, տնով տեղով փախավ այն ժամանակ հոռոմայեցիների դեմ արշավանքի դուրս եկած

հագարացիների մոտ։ Ամերմումնին նրան փառք ու պատվով ընդունեց։ Կայսրը ցավեց Անդրոնիկոսի համար, նա մտադիր էր նրան իր ստորագրությամբ նամակ ուղարկել և կոչ անել վերադառնալ հռոմայեցիների երկիրը։ Ոմանք կայսեր խորհուրդ տվեցին սիրաշահել պրետորիոնում [բանտարկված] սարակինոսներից[71] որևէ մեկին և ստորագիր նամակով Ասորիք ուղարկել։ Կայսրը այդպես էլ արեց, կարմիր թանաքով ստորագրեց, խրխսվուլով կնքեց և դրեց կարճ, սպիտակ մոմի ֆատլիոնի մեջ։ Երբ սարակինոսը պալատից դուրս եկավ, Սամոնասը կանչեց նրան ու ասաց. «Դու տեղյա՞կ ես ունեցածիդ էության» և ավելացրեց, թե իր ձեռքում եղած մոմը Ասորիքը կկործանի։ Նրան դրամ տալով, հորդորեց գրությունը Ուզերին[72] հանձնի։ Նա գնալով այդպես էլ արեց։ Անդրոնիկոսին բռնեցին և իր բոլոր ազգականներով բանտ նետեցին։ Անդրոնիկոսը տեղեկանալով, որ կատարվածը Սամոնասի նենգության արդյունքն է, հարկադրաբար ինքն էլ, իր հետ եղողներն էլ հավատուրաց եղան։ Ինչ վերաբերում է նրա որդի Կոստանդնին, ապա նա համոզվելով, որ ամենևին չեն թույլատրի այնտեղից հեռանալ, [Անդրոնիկոսի] խորհրդով փախչում է Ասորիքից և իր մարդկանց հետ կայսեր մոտ վերադառնում։ Կայսրը նրան առատ նվերներ տվեց, և, կանգնելով մեր Տիրոջ, Փրկչի պատկերի արևելյան կողմը, ասաց նրան. «Քեզ թյուրիմացության մեջ չգցի շատերի կողմից երգվող երգը, թե հռոմայեցիների վրա Կոստանդինն է թագավորելու։ Երդվում եմ հանուն ամենատես դատաստանի և մեր Տիրոջ պատկերի, որ թեպետև անունդ Կոստանդին է, թագավորությունը քոնը չի լինելու, այն ի վերուստ և ի սկզբանե ընծայված է՝ իմ պաշտելի որդուն, ինչպես այդ մասին ինձ տեղեկացրել են բազմաթիվ սուրբ այրեր։ Եթե դու փորձես [որդուս] սպանել, այս դռնից ներս քո մարմնից անջատված գլուխն է մտնելու»։ Այդպես էլ եղավ։ Երբ նա ապստամբություն բարձրացրեց, արյան ճապաղիքով ու հողով շաղախված նրա գլուխը այդ դռնից ներս մտցվեց։

27. Կայսրը ինչ-որ կասկածի հիման վրա Եվստաթիոսին, մականունը՝ Արգիրոս, վիգլայի դրունգարի պաշտոնից ազատեց և ուղարկեց Խարսիանոն, իր՝ Եվստաթիոսի տունը[73]։ Ճանապարհին՝ Արայում[74], նա իր սպասավորներից մեկի կողմից թունավորվեց ու մեռավ։ Նրան թաղեցին Սպյունինում[75], Արայի գագաթին։ Հետագայում նրա որդիներ Պոթոսն ու Լևոնը, որ մանգլավիտի[76] պաշտոն ունեին, նրա աճյունը տարան թաղեցին սուրբ Եղիսաբեթի, իրենց պապ տուրմարխ Լևոնի կողմից սրբագործված տոհմական վանքում, Խարսիանոն բանակա-

թեմում։ Հենց այս [Լևոն տուրմարխն] էր, որ ստացավ Արգիրոս մականունը, կամ իր մարմնի մաքրության ու անարատության[77], կամ գեղեցիկ ու առնական դեմքի, կամ էլ իր քաջության ու արիության պատճառով։ Քանզի Միքայել կայսեր ժամանակ այս այրի նման կռվող զինվոր չկար, նա Տեֆրիկեի սարակինոսներին[78] իր ռազմիկներով բազմիցս պարտության մատնեց, կոտորեց ու կործանման մատնեց։ Նրա անունն ու համբավը միայն բավական էին, որ վախ ու սարսափ տարածեին։

28. Ռազմագերիների փոխանակության համար Տարսոնից եկան այն Աբըլբակեսը[79] և Սամոնասի հայրը։ Նրանց ընդունեց կայսրը, այդ առիթով փայլուն հարդարելով Մագնավրայի [պալատը]։ Նա ամբողջությամբ զարդարեց և Մեծ եկեղեցին, հագարացիներին ցույց տվեց սրբազան ամբողջ սպասքը, թեև վայել չէր քրիստոնեական կարգականոնին՝ այլակրոն ու այլազգի մարդկանց ցուցադրել աստծո պատարագի համար սահմանված սպասքը։ Սամոնասի հայրը ցանկություն հայտնեց միանալ որդուն, բայց վերջինս մերժեց, դեռ ավելին, նա հորդորեց նրան տուն վերադառնալ և հավատարիմ մնալ սեփական կրոնին, ասելով. «Եթե կարողացա, անհապաղ ես քո մոտ կվերադառնամ»։

29. Հոգեգալստյան օրը Լևոն կայսրը իր որդի Կոստանդնին[80] [կայսրը] թագադրեց՝ ձեռամբ Եվթիմիոս պատրիարքի։ Իսկ Սամոնասն իր ծառա Կոստանդնին[81], որն անցյալում մագիստրոս և կանիկլիոս Վասիլի մոտ էր ծառայել, տվեց կայսրուհուն՝ նրան սպասավորելու։ Լևոնն ու ինքը՝ կայսրուհին, նրան այնքան սիրեցին, որ Սամոնասը նախանձից սկսեց նրան զրպարտել, որ իբր կայսրուհու հետ է հարաբերվում։ Կայսրը դա ճշմարիտ համարելով, նրան սուրբ Տարասիոսի վանքն ուղարկեց և վանական խուզեց. նա հենց իրեն՝ Սամոնասին կարգադրեց այդ բանն անել։ Շատ չանցած [կայսրը] ցանկացավ նրան վերստին իր մոտ բերել և Սամոնասին հրամայեց [Կոստանդնին] Սպիրոն վանքը տեղափոխել։ Երբ կայսրը գնաց Դամատրի և ճաշեց Սամոնասի վանքում, այնտեղ Կոստանդնին տեսավ և իսկույն հրամայեց նրան աշխարհականի զգեստներ հագցնել։ Ապա նրան տվեցին ճաշի ժամանակ կայսեր գործածած բաժակը։ Նա կայսեր հետ պալատ վերադարձավ։ Սամոնասը տեսնելով, որ կայսեր սերը դեպի Կոստանդինը գնալով ուժեղանում է, մեծագույն կլիտորիտի և Միքայել Ցիրիթոնի հետ, նրա գրագիր Կոստանդին Հռոդիոսի ձեռքով կայսեր հասցեին բազում հայհոյանքներով լի մի գրություն են մոգոնում և գցում մետատորիոն։ Երբ կայսրը եկավ Մեծ եկեղեցի և եղավ մետատորիոնում, իր աղոթած

*տեղում գտավ [այդ գրությունը], որն ընթերցելով շատ տխրեց։ Նա ուզում էր իմանալ՝ ո՞վ է այդ բանն անողը։ /30/ Տեղի ունեցավ լուսնի խավարում։ Կայսրը Սիննադոնի մետրոպոլիտ Պանտալեոնին հրավիրեց խավարման հետևանքներն իմանալու։ [Պանտալեոնի] կայսեր մոտ գնալու միջոցին Սամոնասը հարց տվեց նրան. «Փորձանքն ո՞ւմ գլխին է պայթելու»։ Նա պատասխանեց. «Քո։ Բայց եթե կարողացար անցնել հունիսի տասներեքը, դրանից հետո քեզ հետ ոչ մի վատ բան չի կատարվի»։ Իսկ կայսեր ասաց, թե լուսնի խավարումը վկայում է, թե փորձանքը [կայսրության] երկրորդ մարդու գլխին է պայթելու։ Կայսրը ենթադրեց, թե խոսքը իր եղբայր Աղեքսանդրին է վերաբերում։ Իսկ ծիրիթոնը հետագայում մեկուսի խոստովանեց կայսեր, թե գրությունը Սամոնասն էր սարքել։ Կայսրը Սամոնասին անմիջապես իր տունը վռնդեց, վանական խուզեց և ուղարկեց Մարտինակիոսի վանքը[82]. իսկ Կոստանդնին նշանակեց պարակիմոմենոս։ Նրա համար [կայսրը] Նոսիեում վանք կառուցեց, ուր Եվթիմիոս պատրիարքի հետ գնաց ու նավակատիքն արեց։*

*31. Հոկտեմբեր ամսին լոգոթետ Հեմերիոսի և հագարացիներ Դամիանոսի[83] ու Լևոնի միջև ծովամարտ տեղի ունեցավ, երբ Սամոսում զորավար էր հետագայում թագավորած Ռոմանոսը[84]։ Հեմերիոսը պարտվեց և հազիվ փրկվեց, նրա հետ եղած գրեթե բոլորը վտանգվեցին[85]։*

*32. Լևոնը հիվանդացավ որովայնային ախտով և սարսափելի հյուծվեց, այն աստիճան, որ հազիվ կարողացավ, կայսերական ընդունված կարգի համաձայն, պահոց առթիվ գնալ [Մագնավրա], ուր ասաց. «Դուք տեսնում եք, ինչպես եմ ես հյուծվել, հիվանդությունից տանջված։ Ես Քրիստոսի հարության ձեզ հետ չեմ լինի»։ Մեծ եկեղեցու կերուլարիաներում[86] հրդեհ բռնկվեց, հրո ճարակ դարձան պատրիարքական սակելլայի գրասենյակն ու փաստաթղթերը։ Ինդիկտիոնի 15-րդ տարվա մայիս ամսի 11-ին, երեքշաբթի օր վախճանվում է Լևոն կայսրը, թագավորությունը թողնելով իր եղբայր Աղեքսանդրին։ Պատմում են, որ երբ Լևոնը տեսավ իր մոտ եկող Աղեքսանդրին, ասաց. «Տասներեք ամիս հետո կգա վատ ժամանակը»։ Նա շատ պաղատեց նրան իր որդի Կոստանդնին սատար կանգնի։*

## ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ[87], ՎԱՍԻԼԻ ՈՐԴՈՒ

Աղեքսանդրը թագավորեց մեկ տարի և 22 օր, Լևոնի որդի Կոստանդնի հետ: Նա մարդ ուղարկեց և Գալակրենոն [վանքից] բերել տվեց Նիկողայոսին, նախապես պատրիարքությունից հեռացնելով Եվթիմիոսին և երկրորդ անգամ այդ Նիկողայոսին[88] պատրիարքական աթոռին նստեցրեց: Աղեքսանդրը Մագնավրայի [պալատում] ժողով գումարեց, Ագաթոսի [վանքից] Եվթիմիոսին բերել տվեց և Նիկողայոսի հետ ժողովին մասնակցելով, Եվթիմիոսին կարգալույծ արեցին: Կարծես վայրի գազաններ լինեին, նրանք անմիջապես խուժեցին սրբազան այրի վրա և փետեցին նրա արգո մորուքը, վզից բռնած քաշքշեցին և անտանելի այլ պատիժների ենթարկեցին, անվանելով իգամոլ, շնացող, ուրիշի կնոջ հետ հարաբերված: Բայց այդ սուրբ ու արգո այրը ամեն ինչ տարավ հեզ ու հանգիստ: Նրան աքսորեցին Ագաթոսի [վանքը], ուր և նա վախճանվելով, թաղվեց քաղաքում[89], իր վանքում: Պատրիարք [Նիկողայոսի] այն կղերականը, որ [Եվթիմիոսի] Մագնավրայում աքսորի դատապարտվելու առթիվ փետել էր նրա ալեհեր մազերը, երբ տուն վերադարձավ, հենց այդ նույն պահին այն անտեսանելի պատճառով հրդեհվեց: Բացի այդ, նա իր դստեր գտավ կաթվածահար, ձեռքերն ու լեզուն կապ ընկած, և այդպես անկողնին գամված նա ապրեց մինչև Նիկեփոր Հաղթող[90] կայսեր ժամանակները, օրվա հացը մուրալով:

2. Աղեքսանդրը, որ անցյալում էլ իր եղբայր Լևոնի կողմից արհամարհված լինելու պատճառով կայսեր վայել ոչինչ չէր անում, փափկակենցաղ էր և իրեն որսորդության տված, սիրում էր խնջույքներն ու լպիրշություններ, միահեծան իշխելով, արի ու երևելի ոչինչ չարեց: Դառնալով մենիշխան, նա քահանա Հովհաննեսին (մականունը՝ Լազանես) ռեքտոր[91] դարձրեց: Նա Աղեքսանդրի մահից հետո դժնդակ կերպով մահկանացուն կնքեց Հեբդոմոնում՝ գնդակ խաղալիս: /3/ Աղեքսանդրը, բացի այդ, Գաբրիելոպուլոսին և սկլավինիացի[92] Վասիլիցեսին հսկայական հարստություն տվեց, ողողեց նրանց արքունիքի դրամներով: Պատմում են, որ Աղեքսանդրը բազմիցս ցանկացել է այդ Վասիլիցեսին կայսր հռչակել, իսկ Լևոնի որդի Կոստանդնին՝ ներքինացնել: Սակայն այդ ծրագրի իրականացմանը խանգարեցին Լևոնի մտերիմ մարդիկ, որոնք մեկ պատճառաբանում էին, թե Կոստանդինը դեռ փոքր է ներքինացվելու համար, մեկ, թե նա հիվանդ է: Աղեքսանդրի օրոք արևմուտքում գիսավոր աստղ երևաց. Նրան քսիֆիաս

են կոչում և մարդիկ ասացին, թե այն՝ քաղաքում տեղի ունենալիք արյունահեղության մասին էր կանխագուշակում։

Այս Աղեքսանդրը ընկերացավ խաբեբա ու կախարդ մարդկանց, որոնք իրեն համոզեցին, թե ձիարշավարանում գտնվող վարազի պղնձե արձանը իր նշանն է, քանզի մարտնչում է իր եղբայր առյուծի[93] [Լևոնի] դեմ։ Այդպիսով, նրանք այդ հիմարին հասկացրին, թե խոզին վայել կյանք է վարում։ Դրանից նա խաբված, խոզի արձանի սեռական օրգաններն ու ատամները վերականգնեց, քանզի պակասում էին։ Նման խարեությամբ տարված նա ձիարշավական մրցումներ կազմակերպեց, այդ առթիվ եկեղեցիների սուրբ ծածկոցներն ու ջահերը վերցնելով, ձիարշավարանը զարդարեց, աստծուն արժան պատիվը թշվառականը կուռքերին մատուցեց։ Դրա համար էլ ահա նա շատ չանցած աստծուց դիրքից զրկվեց։

5. Երբ հագարացիներից պարտություն կրած լոգոթետ Հեմերիոսը վերադարձավ քաղաք, Աղեքսանդրը նրան պալատի Կամպա կոչվող վանքում արգելափակեց, սպառնաց նրան, քանզի նա իր եղբայր Լևոնի թագավորության ժամանակ իր նկատմամբ թշնամաբար էր վարվել։ Կալանքի ենթարկվածը վեց ամիս անց վշտից դժնդակ կերպով վախճանվեց։

6. Բուլղարների իշխան Սիմեոնը խաղաղություն խնդրելով Աղեքսանդրի մոտ դեսպաններ ուղարկեց և հայտնեց, թե խաղաղության կողմնակից է, խնդրեց բարեհամբույր վերաբերմունք ու պատիվ[94], ինչպես Լևոն կայսեր օրոք։ Աղեքսանդրը անմտությամբ ու հիմարաբար խայտառակ կերպով դեսպաններին ճամփեց, Սիմեոնի հասցեին սպառնալիքներ ուղղեց, կարծելով, որ կսարսափեցնի նրան, որով խաղաղությունը վերացավ, և Սիմեոնը մտադիր էր քրիստոնյաներին պատերազմ հայտարարել։

7. Աղեքսանդրը՝ ճաշած ու հարբած, կեսօրվա շոգին գնաց գնդակ[95] խաղալու։ Այնտեղ իր վրա հասավ աստծո ուղարկած պատուհասը։ Նրա քթից ու սեռական օրգաններից առատ արյուն հոսեց, և գալով արքունիք, երկու օր հետո՝ ինդիկտիոնի առաջին տարվա հունիս ամսի 6-ին, կիրակի օր վախճանվեց, թագավորությունն ընձեռելով Լևոնի որդի Կոստանդինին[96], իսկ խնամակալությունը՝ Նիկողայոս պատրիարքին, Ստեփանոս մագիստրոսին, Հովհաննես Էլլադաս մագիստրոսին[97], Հովհաննես ռեկտորին, Եվթիմիոսին, Վասիլիցեսին և Գաբրիելոպուլոսին։ Աղեքսանդրի մարմինն ամփոփեցին կայսրերի գերեզմանոցում՝ իր հայր Վասիլի [շիրիմում]։

## ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԿՈՍՏԱՆԴՆԻ, ԼԵՎՈՆԻ ՈՐԴՈՒ[98]

Կոստանդինն իր հոր Լևոնի մահվան ժամանակ դեռ մանուկ էր (նա յոթ տարեկան էր), և նա թագավորությունն ստացավ իր հորեղբայր Աղեքսանդրից։ Նրա վրա խնամակալներ էին նշանակված, որոնց, ինչպես և իր մոր խնամակալությամբ նա թագավորեց յոթ տարի, իր աներ Ռոմանոսի հետ՝ 26 տարի ևս, նրա ստորակայությամբ, իսկ միահեծան՝ տասնհինգ տարի, որով նրա ամբողջ թագավորությունը տևած է լինում 55 տարի[99]։ Արքունիքի ղեկավարությունն անցավ Նիկողայոս պատրիարքի ձեռքը, քանզի նա ևս լինելով խնամակալ, հասարակաց հոգսերն էր տնօրինում՝ Ստեփանոս մագիստրոսի և Հովհաննես Էլլադաս մագիստրոսի հետ միասին, վարում կայսրության հանապազօրյա գործերը։

2. Այսպիսին էր կայսրության դրությունը, երբ քաղաքի մեծամեծներից ոմանք, որոնք իր քաջության և խոհեմության համար սիրում էին սխոլերի դոմեստիկոս Կոստանդին Դուկասին և գտնում, որ նա կարող է լավ կառավարել կայսրությունը, նրան խորհուրդ տվեցին մտնել քաղաք և առանց դժվարության տիրանալ իշխանության։ Ինչպես ուրիշները, այդպես էլ Նիկողայոս պատրիարքը, անտեղյակ որ Աղեքսանդրը իրեն լիազորել էր լինել իշխանության խնամակալը, պատարագիչ Արտավազդին հանձնարարականով Կոստանդին Դուկասի մոտ ուղարկեց, հորդորելով մայրաքաղաք մտնել և տիրանալ իշխանության։ Այդ նամակը տեղ հասցնելու համար նա նշանակվեց նշանավոր [սուրբ] Սոփիայի գլխավոր հոգևորականը։ Նա հայրն էր Անդրեասի, մեր ժամանակներում նկարչական արվեստը ամենաբարձր մակարդակին հասցրնողի, ավելի բարձր, քան Ապելլեսն[100] ու բյուզանդացիներ Ագաթարքոսը, Հերակլիդեսը և Փիլինոսը։ [3] Կոստանդին Դուկասը, որն անցյալում ևս երազում էր թագավորության տիրանալ և անվերջ աչքը թագին էր սևեռած, իրեն հավատարիմ մեծաթիվ զինվորներից ամենարնտիրների հետ փութանակի հասավ մայրաքաղաք և գիշեր ժամանակ ակրոպոլսի[101] մոտ գտնվող դարբասի պրոտովեստիարիոս Միքայելի փոքր դռնից մտավ ներս և իր մարդկանցով գիշերն անքուն անցկացրեց իր աներոջ Գրիգորասի տանը։ Սակայն ասեկրետ Նիկետասը, որ հիշյալ դեպքերից հետո պրոտոնոտարիոս դարձավ, Կոստանդին Դուկասի ժամանման մասին տեղյակ պահեց պատրիկ Կոստանդնին և Հլադիկոս վանականին։ Վերջիններս նույն գիշերն իսկ եղան Կոստանդին Դուկասի մոտ և խորհրդակցելով, դեռ լույսը չբացված, ջահերով,

բազում ժողովրդով ու ամբոխով եկան ծիարշավարանի դարբասը, Կոստանդին [Դուկասին] կայսր ներբողելով։ Բայց այստեղ [Կոստանդնի] ծիապանը ծիարշավարանի դարբասի ներսի կողմում գտնվող մեկի կողմից նիզակի հարված ստանալով, սպանվեց։ Երբ Կոստանդնին ծիարշավարանի ներսում գտնվողները չընդունեցին, դեռ ավելին, վռնդեցին, նա կարծես այսահար, թագավորությանը տիրանալու փափագից խելակորույս, տխուր ու գլխահակ հեռացավ գնաց փոքր ծիարշավարանը, ծիապանի սպանությունը վատ նշան համարելով։ Այնտեղ նա [կայսր]ներբողվելով, եկավ մինչև Խալկե և, այդ Խալկեի Երկաթե դարբասով մուտք գործելով, հասավ մինչև էքսկուբիտոսները։ Մագիստրոս Հովհաննես Էլադասը, հետերիայի զինվորների և հեծյալների մեջ ընտրություն կատարելով, զենքով նրանց Դուկասի դեմ ուղարկեց։ Նրանք հասան Խալկե և կռվի բռնվեցին, որի ժամանակ երկու կողմից էլ շատերն ընկան՝ սրակոտոր լինելով, այն աստիճան, որ տեղը գետի պես հոսող արյամբ լճացավ։ Սպանվողների մեջ էին և Գրիգորասը՝ Դուկասի որդին, նրա հորեղբորորդի Միքայելը և հայազգի Կուրտիկը։ Կոստանդին Դուկասը իմանալով, որ մեծ ընդհարում է տեղի ունեցել, ձի հեծած՝ ծիարշավարանից դուրս եկավ։ Նրա ձին, սակայն, այնտեղ սալահատակված քարե տախտակների վրա սայթաքելով, իր հեծյալին գետին տապալեց։ Երբ մի ոմն տեսավ նրան գետին գցված և միայնակ (մնացած բոլորը ցրվել էին), սրով կտրեց նրա գլուխը. այն բերվեց կայսեր, ցույց տրվեց բոլորին, խաբեության ճամփան փակած լինելու համար։ Կոստանդին Դուկասի այդ նախաձեռնության մասին գոյություն ունի մի այլ վարկած էլ։ Մի ոմն Նիկողայոս, որին վստահված էր Խալդիայի[102] պետական հարկերի հավաքումը, եկավ Ասորիք և հավատափոխ եղավ։ Հաստատվելով այնտեղ, նա հասու եղավ աստղաբաշխության կամ, ավելի շուտ՝ ինչ-որ աստեղաբանության։ Նա սև ներկված կտորի վրա մի բան գրեց և այն լոգոթետ Թովմային ուղարկեց։ Երբ հագարացիների թարգման Մանուիլը կտորը ջրով լվաց, նրա վրա գրվածն երևաց, թե «Մի վախեցեք Դուկասի կարմիր աքաղաղից, քանզի նա ապստամբություն է բարձրացնելու հիմարաբար և իսկույն բնաջնջվելու է»։

4. Այդ դեպքերի նման վախճանից հետո, Կոստանդին Դուկասի աներհայր Գրիգորասը, Լևոնի՝ Խիրոսֆակտես մականվանյալի հետ աստծո սուրբ իմաստության եկեղեցում ապաստանեցին, բայց նրանց այնտեղից բռնությամբ դուրս հանելով, Ստուդիոսի վանքում վանական խուզեցին։ Կոստանդին Էլադիկոսին արջառաջիլերով ձաղկեցին և քր-

ձեր հագցնելով, ավանակի վրա նստեցրած՝ քաղաքի միջով ծաղրուծանակի ենթարկեցին, ապա Դալմատոսի վանքը տարան և դատապարտեցին արգելափակման, Լևոն Կատակալիտեսին ու Արոտրասի որդի Աբեսալոմին[103] կուրացրին ու աքսոր ուղարկեցին, իսկ Եվլամպիոսի որդի Կոստանդնին և նրա հետ ուրիշների Լամպուգեսի որդի Հյուպարքոս Փիլոթեոսը[104] ձիարշավարանի Սֆենդոնեում[105] գլխատեց։ Շատ որոնեցին նաև ասեկրետ Նիկետասին ու Կոստանդին Լիվոսին, բայց չգտան, քանզի նրանք փախուստի էին դիմել։ Ինչ վերաբերում է այն Էգիդեսին և նրա հետ եղող բազում քաջարիների, [Փիլոթեոսը] Խրիսուպոլսի Դամալիսից[106] սկսած մինչև Լևկատոս զույգ ցցերի վրա ցցահան արեց։ Իշխանության գլուխ գտնվող այդ այսպես կոչված խնամակալները դեռ անգթորեն բազում անմեղ մարդկանց կկոտորեին, եթե դատավորներից ոմանք նրանց անօրեն թափր չկոտրեին, ասելով նրանց, թե կայսրը դեռ երեխա է, դուք ինչպե՞ս եք առանց նրա հրամանի համարձակվում նման բաներ գործել։ Դուկասի կնոջ խուզելով, ուղարկեցին Պափլագոնիայում գտնվող իր տունը[107], իսկ նրա որդի Ստեփանոսին ներքինացրին։

5. Օգոստոս ամսին Բուլղարիայի իշխան Սիմեոնը մեծ զորքով արշավանքի դուրս եկավ, մոտեցավ Կոստանդնուպոլսին և Վլախեռնայից մինչև այսպես կոչված Ոսկե դուռ պաշարման մեջ առավ այն։ Նա օրորվում էր քաղաքը հեշտությամբ գրավելու հույսով։ Բայց համոզվելով, որ այն ամուր պարիսպներով է պաշտպանված, ապահովված բազում զինվորներով, քարարձակ և նետարձակ [մեքենաներով], հուսաբեկ վերադարձավ Հեբդոմոն կոչված տեղը, խնդրելով հաշտություն կնքել։ Երբ խնամակալները մեծ սիրով ընդունեցին նրա առաջարկը, Սիմեոնը հաշտության շուրջ բանակցություններ վարելու համար իր մագիստրոս Թեոդորոսին ուղարկեց։ Նիկողայոս պատրիարքը, Ստեփանոսը և Հովհաննես մագիստրոսը առնելով կայսեր, եկան մինչև Վլախեռնա, ներս առան Սիմեոնի երկու որդիներին և կայսեր հետ պալատում ճաշեցին։ Նիկողայոս պատրիարքը գնաց Սիմեոնի մոտ, որի առջև Սիմեոնը խոնարհեց իր գլուխը։ Պատրիարքը աղոթք կարդաց և, ինչպես պատմում են, իր կնգուղը թագի փոխարեն դրեց նրա գլխին[108]։ Սիմեոնն ու նրա որդիները անթիվ, թանկագին նվերների արժանանալով, վերադարձան իրենց երկիրը, հաշտության շուրջ համաձայնություն չկայացրած։

6. Քանի որ Կոստանդին կայսրը մանուկ լինելով իր մորն էր ուզում (Աղեքսանդր կայսրը նրան պալատից հեռացրել էր), նրան դարձ-

յալ պալատ բերեցին։ Տիրանալով թագավորության, նա պալատ է մտցնում Կոստանդին պարակիմոմենոսին և հարազատ եղբայրներ Կոստանդին և Անաստասիոս Գոնգիլիոս կոչվածներին։ Հովհաննես Էլադասի խորհրդով հեռացնում են Աղեքսանդր կայսեր մտերիմներ Հովհաննես ռեքտորին, Գաբրիելոպուլոս կոչվածին, Վասիլիցեսին և մյուսներին։ Կայսրուհին հետերիարխ է նշանակում Դոմինիկոսին։ Երբ Էլադաս մագիստրոսը հիվանդացավ, բժիշկների խորհրդով հրաժարվեց պաշտոնից և հեռանալով պալատից, եկավ Վլախեռնա, բայց հիվանդությունը վերջը նրան մահվան հասցրեց։ Ջոեն Դոմինիկոս հետերիարխի խորհրդով հեռացնում է Նիկողայոս պատրիարքին և նրա մտերիմներին, զայրացած ասելով, թե ինքը կհոգա սեփական եկեղեցու մասին։ Շատ չանցած Կոստանդին պարակիմոմենոսը կայսրուհու առաջ զրպարտում է Դոմինիկոս հետերիարխին այն բանում, թե նա ուզում է թագավորությունը զավթել հօգուտ իր եղբոր։ Դոմինիկոսին հետին նպատակներով պատրիկի պատվաստիճանը շնորհեցին, և երբ նա իջավ եկեղեցի՝ սովորության համաձայն օրհնությունն ստանալու, հրամայեցին նրան տանը[109] մնա։ Իսկ Ջոեն հետերիարխ նշանակեց Հովհաննես Գարիդասին, ներքինի Դամիանոսին՝ վիգլայի դրունգար։ Դոմինիկոսը հեռացավ իր տունը, վայրապար վշտացած։

7. Երբ բուլղար Սիմեոնը սկսեց Թրակիայում դարձյալ ասպատակ սփռել, և կայսրուհին ու ղեկավար մարդիկ մտածմունքի մեջ էին՝ ինչպես սանձեն նրա ամբարտավանությունը, Հովհաննես Բոգասը խնդրեց իրեն պատրիկ դարձնեն, դրա դիմաց խոստանալով [Սիմեոնի] դեմ հանել պածինակներին։ Նրա խնդրանքին ընդառաջ գնացին և նա, նվերներ ստանալով, գնաց պածինակների երկիրը, նրանց հետ դաշինք կնքեց և այնտեղից պատանդներ ստանալով, բերեց քաղաք[110]։ Պածինակները համաձայնվեցին անցնել [Դանուբ գետը] և պատերազմել Սիմեոնի դեմ։ Այդ օրերին քաղաք եկավ և իր ֆիզիկական ուժով մեծ անուն հանած Աշոտը, իշխանաց իշխանի որդին։ Նրա մասին պատմում են, թե նա երկաթե ձողը երկու ծայրից բռնելով, իր ամեհի ուժով ծռում էր այն և շրջանակաձև դարձնում. երկաթի ամուր բնությունը տեղի էր տալիս նրա ձեռքերի հզորության[111]։ Երբ նա [քաղաք] մտավ, նրան մեծ պատվով ընդունեց տիրուհին[112] և այս ճամփու դրեց դեպի նրա երկիրը[113]։

8. Ինդիկտիոնի երրորդ տարվա սեպտեմբեր ամսին[114] Պագրատուկաս հայր Ադրիանուպոլիսն [ստիպված] հանձնեց Սիմեոնին։ Անցյալում այն Օրեստիաս էր կոչվում, Ագամեմնոնի որդի Օրեստեսի անունով։

Նա իր հոր չարանենգ սպանության արդար վրեժն առնելու մղումով խողխողեց Կլիտեմնեստրային և Էգիսթոսին և այդ առթիվ անչափ մոլեգնած, Հեբրոս, Արդոս և Արտակոս երեք գետերի միախառնման տեղում լոգանք ընդունելով, ազատվեց հիվանդությունից։ Հենց այս տեղում նա [քաղաք] կառուցեց, որին տվեց իր անունը։ Իսկ կեսար Ադրիանոսը գեղեցիկ շինություններով ընդարձակեց և վերանվանեց Ադրիանուպոլիս։ Այն գտնվում է Փիլիպպուպոլիս[115] տանող ճանապարհի վրա՝ լավ քայլողի համար երեք օրվա ճանապարհ հեռավորության, շրջապատված է Հեմոս լեռով, որի մոտ են երեք գետերը միացնում անձրևներից առաջացած ջրերը։ Շատ չանցած Զոեի կողմից բազում նվերներով այնտեղ ուղարկվեցին կանիկլես Վասիլ պատրիկը և Նիկետաս Էլադիկոս պրոտոսպաթարը, և [քաղաքը] հետ վերցրին։

9. Դամիանոս ամիրան պատերազմական նավերով և բազում զինական ուժով եկավ Ստրոբելոս[116] կղզին։ Նա կգրավեր այն, եթե չհիվանդանար ու չվախճանվեր, որով սարակինոսները ձեռնունայն հետ դարձան։ Իսկ Հելլադայի և Աթենքի բնակիչները անվերջ հարստահարվելով Իուբի որդի Խասեի կողմից[117], չկարողանալով տանել նրա այլասերվածությունն ու ագահությունը, քարկոծ անելով չարաչար սպանեցին Աթենքի տաճարի[118] բեմում։

10. Կայսրուհի Զոեն, տեսնելով Սիմեոնի փքվածությունն ու քրիստոնյաների դեմ գործած ոտնձգությունները, պետական գործիչների հետ որոշում է կայացնում՝ հագարացիների հետ հաշտություն կնքել, ռազմագերիների փոխանակություն կատարել և արևելքի համայն զորքը [արևմուտք] տեղափոխել, Սիմեոնին պարտության մատնելու և ոչընչացնելու։ Ռազմագերիների փոխանակություն կատարելու համար Ասորիք ուղարկվեցին պատրիկ Հովհաննես Հռոդինոսն ու Միքայել Տոքսարասը։ Փոխանակության կատարումից հետո, կարգի համաձայն տագմաների զինվորներին հոգ բաժանվեց, և նրանք բանակաթեմային զինվորների հետ անցան Թրակիա։ Սխոլերի դոմեստիկոս էր մագիստրոս Լևոն Փոկասը, որը սակայն ավելի իր քաջությամբ էր աչքի ընկնում, քան ղեկավարելու հմտությամբ։ Պալատի պրոտոպապաս[119] Կոստանդինը, մականունը՝ Կեֆալաս, և Կոստանդին Բալելիասը Թրակիա տարան նվիրական ու կենարար խաչափայտը, բոլորը երկրպագեցին և նրա վրա երդվեցին միմյանց համար իրենց կյանքը զոհաբերեն, որից հետո համայն զորքով արշավեցին բուլղարների վրա։ Էքսկուբիտոսների տագմայի հրամանատարը Հովհաննես Գրապսոնն էր, իսկ հիկանատների[120] Մարուլիսի որդին։ Զորավարի պաշտոնը վարում էին Ռոմանոս Արգի-

րոսը, նրա եղբայր Լևոնը և Վարդաս Փոկասը։ Նրանց հետ էին և Մելիասը[121]՝ հայերով, բանակաթեմերի մյուս բոլոր զորավարները։ Լևոն զոմեստիկոսի հետ էր նաև պատրիկ Կոստանդին Լիպսը, որը նրա խորհրդականն էր՝ բոլոր հարցերի վերաբերյալ։ Ինդիկտիոնի 5-րդ տարվա օգոստոս ամսի քսանին[122] Աքելոոս գետի ափին հռոմայեցիների և բուլղարների միջև տեղի ունեցավ ճակատամարտ[123]։ Բայց աստծո հանդեպ գործած անքնին ու անզնին մեղքերի համար հռոմայեցիները գրլխովին պարտություն կրեցին. բոլորը փախուստի դիմեցին։ Նրանք սարսափելի վայնասուն բարձրացրին՝ մի մասը իրար ոտնատակ անելուց, մյուսը՝ թշնամիների կողմից կոտորվելուց։ Այնքան արյուն հոսեց, ինչքան երբևիցե։ Լևոնը փախուստի դիմելով փրկվեց Մեսեմբրիայում[124]։ Ճակատամարտում մյուսների հետ սրակոտոր եղան Կոստանդին Լիպսը, Հովհաննես Գրապսոնը և բազում այլ հրամանատարներ։ Նավատորմիղի դրունգար պատրիկ Ռոմանոսը[125] ամբողջ տորմիղով Դանուբ գետն ուղարկվեց՝ Լևոն Փոկասի օգնության, ինչպես և (այդ մասին ասվեց) Հովհաննես Բոգասը՝ պածինակներին ոտքի հանելու։ Այն ժամանակ, երբ դրունգար Ռոմանոսը հրաման էր ստացել պածինակներին նավերով Դանուբ գետով անցկացնել, որպեսզի նրանք սատարեն Լևոն Փոկասին, պածինակները տեսան, որ Ռոմանոսն ու Հովհաննեսը կագ ու կռվի են բռնված, իրար դեմ վիճում ու գզվռտվում են, հեռացան իրենց երկիրը։ Պատերազմի ավարտին, երբ Ռոմանոսն ու Բոգասը քաղաք վերադարձան, նրանց մեղադրանք ներկայացվեց։ Դրունգար Ռոմանոսը ամբաստանվեց այն բանում, որ նա իր անփութության, ավելի շուտ՝ վնասարարության պատճառով պածինակներին չանցկացրեց [Դանուբ գետով], որ շտապ նահանջելով, անգամ փախստական հռոմայեցիներին նավերի մեջ չառավ։ Նրան մեծ վտանգ սպառնաց, քանզի կուրացման դատապարտվեց, և վճիռը ի կատար կածվեր, եթե կայսրուհու մոտ մեծ ազդեցություն ունեցող պատրիկ Կոստանդին Գոնգիլեսը և Ստեփանոս մագիստրոսը վճիռը չեղյալ չհայտարարեին։ Իսկ հաղթանակից ամբարտավանացած բուլղարները արշավեցին մինչև քաղաք, բայց սխոլերի դոմեստիկոս Լևոնը, հետերիարխ Հովհաննեսը և Դուկասի որդի Նիկողայոսը բազում զորքով բուլղարների դեմ դուրս եկան՝ Թրակիայի Կատասյուրտաս կոչվող վայրը։ Բայց երբ բուլղարները գիշեր ժամանակ հանկարծակի նրանց վրա խուժեցին, և դոմեստիկոսը դիմեց փախուստի, Դուկասի որդի Նիկողայոսը և նրա հետ բազմաթիվ ուրիշներ սրի քաշվեցին։

11. Կոստանդին կայսեր դաստիարակ Թեոդորոսը տեսնելով, որ Կոստանդին պարակիմոմենոսը նպատակ ունի թագավորական իշխանությունը կորզել հօգուտ իր փեսա Լևոնի, Կոստանդին կայսեր խորհուրդ տվեց իր հոր ծառա և իր, կայսեր հանդեպ բարյացակամորեն տրամադրված Ռոմանոս դրունգարին [արքունիք] ընդունի, որպեսզի նա իր հետ լինի, իրեն պահպանի, և ինչ հարցում որ պետք լինի, ունենա օգնական ու սատար։ Թեև այդ մասին Ռոմանոսին բազմիցս ասվեց, նա հրաժարվում էր։ Կոստանդին կայսրը իր ձեռքով նամակ գրեց և սեփական ստորագրությամբ հաստատելով, Ռոմանոսին ուղարկեց։ Վերջինս ստանալով նամակը, խոստացավ պետք եղածին պես վրա տալ Կոստանդին պարակիմոմենոսի և նրա ազգականների դեմ։ Երբ դրա մասին լուրերը տարածվելով հասան և պարակիմոմենոսի ականջին, վերջինս ստիպեց Ռոմանոսին իրեն հասանելիք հռոգը ստանա ու նավատորմիղով հեռանա։ Ռոմանոսն արդեն նախապատրաստվել էր ծով դուրս գալու և կարգի էր բերում նավերը, երբ Կոստանդին պարակիմոմենոսը պալատից գնաց նրան շտապեցնելու ժամ առաջ ճամփա ընկնի։ Ռոմանոսը նրան ծառայաբար դիմավորեց և խոստացավ հրամանը սիրով կատարել։ Երբ [Կոստանդինը]հարցրեց Ռոմանոսին՝ ունի՞ արդյոք կայսերական տրիերան թիավարելու ընդունակ գեղեցիկ արտաքինով ու լավ թիավարներ, նա իսկույն ձեռքով նշան արեց նրանց մոտենան։ Նրանք պատրաստ էին և գործին տեղյակ։ Երբ Ռոմանոսը բավականին մոտեցավ դրոմոնին (նա Կոստանդին պարակիմոմենոսի հետևից էր գալիս), ձեռքերով բռնեց նրան և իր մարդկանց ասաց. «առեք սրան», նրանք իսկույն հափշտակելով մտցրին Ռոմանոս դրունգարի տրիերան և ուժեղ հսկողության տակ առան։ Պարակիմոմենոսին պաշտպանող չեղավ, ոչ էլ ափսոսացող, նրա հետ բոլոր եղողները փախուստի դիմեցին։ Կայսրուհի Զոեն կատարվածին հասու լինելով, կանչեց Նիկողայոս պատրիարքին ու իր, Զոեի մեծամեծներին, Ռոմանոսի մոտ մարդիկ ուղարկեց, իմանալու եղածի մասին։ Երբ նրանք անցան դիմացի ափը, ժողովուրդը նրանց քարկոծելով հալածական արեց։ Զոեն առավոտյան դուրս գալով, Բուկոլեոնի հելիակոնում հարցուփորձ արեց որդուն և բոլորին՝ ինչպե՞ս տեղի ունեցավ այդ խռովությունը։ Կոստանդին կայսեր դաստիարակ Թեոդորոսն ասաց, թե այդ տեղի ունեցավ, որպեսզի Լևոն Փոկասը կորստյան չմատնի հռոմայեցիներին, իսկ Կոստանդին պարակիմոմենոսը՝ պալատը։ Կայսրը Նիկողայոս պատրիարքին և Ստեփանոս մագիստրոսին պալատ մտցրեց, որպեսզի նրանք իր հետ լինեն, քանզի ուզում

*էր իշխանությունը մոր ձեռքից խլել։ Հաջորդ օրը նա Հովհաննես Տուբակեսին պալատ ուղարկեց՝ կայսրուհի Զոեին հեռացնելու։ Զոեն լաց ու կոծով փաթաթվեց որդուն, շարժեց մոր հանդեպ նրա կարեկցանքն ու գութը և նրան տանողներին ասաց. «Թողեք, թող մայրս ինձ հետ լինի»։ Նրանք իսկույն տեղի տվեցին։ Կայսրը և պատրիարքը հրավիրելով Հովհաննես Գարիդասին, նշանակեցին սխոլերի դոմեստիկոս, քանզի վախենում էին, որ Լևոն Փոկասը կարող է խռովություն բարձրացնի։ Նա խոստացավ, որ նման բան չի լինի, եթե իր աներձագ Ջուֆինեղերին և նրա որդի Սիմեոնին նշանակի հետերիարխ։ [Կայսրից, Նիկողայոս պատրիարքից և Ստեփանոս մագիստրոսից] երդում ստանալով, նա տուն գնաց, բայց հենց տեղն ու տեղը իր ազգականներին հեռացրին պալատից։ Երբ վերջիններս Փոկասի մոտ եկան, նա տեսավ նրանց, սարսափեց ու ցնորվեց։ Նա իսկույն Ռոմանոսի մոտ գնաց և պատմեց իր գլխին եկածը։ Հաշտվելով նրա հետ և երկուստեք երդվելով լինել մի սիրտ ու մի հոգի, դարձավ նրա համախոհն ու համակամը, այն աստիճան, որ նրանք անգամ համաձայնվեցին միմյանց խնամիանալ, այդ ձևով էլ ավելի սերտ դարձրին սիրո կապը։*

*12. Մարտ ամսի քսանչորսին Ռոմանոսն իր մտերիմ ու շատ վստահելի Հովհաննես երեցին[126] և Թեոգորոս Մացուկեսին[127] պալատ ուղարկեց՝ հանդես գալու իր պաշտպանությամբ, ասելու, թե «իմ քայլը խռովություն չէր։ Կասկածելով, որ Փոկասը հնարավոր է հեղաշրջում կկատարի և երկյուղելով, որ նա կարող է կայսեր վնաս հասցնել, դրա համար է, որ ուզում եմ պալատ բարձրանալ՝ պահպանելու համար կայսեր»։ Բայց քանի որ Նիկողայոս պատրիարքը դեմ էր դրան, Ռոմանոսը հիշյալ դաստիարակ Թեոդորոսից ցուցում ստացավ ամբողջ տորմիղով նավել մինչև Բուկոլեոն։ Ռոմանոսն իր մարդկանց հետ խորհրդակցելով (լինելիքը լինելու էր), ամենասրբուհի կույս աստվածածնի ավետման օրը[128] (այն հինգշաբթի էր) զինված, համայն տորմիղով եկավ Բուկոլեոն։ Ստեփանոս մագիստրոսն իսկույն հեռացավ պալատից, իսկ Ռոմանոսի խնամի Նիկետաս պատրիկը, բարձրանալով պալատ, Նիկողայոս պատրիարքին այնտեղից դուրս հանեց։ Պալատականները, ստանալով Ռոմանոսի երդմնագիրը, նրան ուղարկեցին կենարար ու պատվական խաչը, որին նա երկրպագեց, պալատականներին երդումներով վստահեցրեց և նրանց մի քանի ուրիշների հետ պալատ բարձրացավ՝ կայսեր երկրպագելու։ Նա կայսեր հետ Փարոսի տաճարը մտավ և, փոխադարձաբար հավաստիացումներ տալուց հետո, կայսեր կողմից իսկույն մագիստրոսի պատվաստիճանն ստացավ և նշանակվեց*

մեծ հետերիարխ։ Փութանակի Լևոն Փոկասին սրբազան հրամանք է ուղարկվում՝ չփորձի մտածել ապստամբության մասին։ Լևոն Փոկասին նույն բովանդակությամբ նամակ գրելու հրաման ստացավ և Կոստանդին պարակիմոմենոսը, որպեսզի նա ոչ մի հակառակ բան չմտածի, այլ լինի Կոստանդին կայսեր հնազանդության մեջ։ Կայսերական վեստիարիոնի պրիմիկերիոս[129] Անդրեասը այդ գրությունները տարավ Լևոն Փոկասին, որն այն ժամանակ Կապադովկիայում էր գտնվում[130]։ Նա վերցրեց և ընթերցելով դրանք, հեռացավ իր տունն ու հանգիստ մնաց։ 13. Սուրբ պահոց հինգերորդ շաբաթը, ապրիլ ամսին, Կոստանդին կայսրը ամուսնական նշանի ուխտ է տալիս Ռոմանոսի դուստր Հելենեին, որն աչքի էր ընկնում մարմնի գեղեցկությամբ և խոհեմությամբ։ Զատկի երեքշաբթի օրը, որը Գալիլիայի է կոչվում, նա ձեռամբ Նիկողայոս պատրիարքի պսակվում է նրա հետ, իսկ Ռոմանոսին հռչակելով կայսերահայր[131], նրա փոխարեն հետերիարխ է նշանակում Ռոմանոսի որդի Քրիստափորին։ Շատ չանցած Լևոն Փոկասը, մի քանի իշխանավորներից և իր տագմաներից խաբվելով, խռովություն է բարձրացնում։ Նա իր հետ առավ Կոստանդին պարակիմոմենոսին, եղբայրներ Կոստանդին և Անաստասիոս Գոնդիլեսներին, պրոտասեկրետ Կոստանդին Մալելիասին, բոլորին հիմնավորապես հավաստելով ու վստահեցնելով, թե դիմում է այդ քայլին, ի պաշտպանություն Կոստանդին կայսեր։ Ռոմանոս կայսերահայրը, որպես Կոստանդին կայսեր երեսփոխան, կազմեց ստորագիր խրիսովուլ գրություններ այդ խռովությունը քարուքանդ անելու համար, որոնց համաձայն ովքեր լքելով Փոկասին անցնեն կայսեր կողմը, համարվում են կայսեր պաշտպաններ։ Ա[յ]դ գրությունները նա տվեց Աննային, մի անամոթ ու անպատկառ կնոջ, որին նաև Վասիլիկի[132] կոչեցին, և մի ոմն կղերական Միքայելի և ուղարկեց Փոկասի ճամբարը, որտեղ նրանք դրանք տարածեցին համայն զորքի մեջ։ Միքայելին Փոկասը բացահայտեց և անգթաբար գանահարելով, նրա քիթն ու ականջները կտրեց։ Ռոմանոսի կողմ[ի]ց նա հետագայում արժանացավ պետք եղած հատուցման։ Ն[ույ]նպես և նրա հետ ուղարկված կինը։ Առաջինը Փոկասին լքեց ու Ռոմանոսի կողմն անցավ հրկանատների ազգմայի հրամանատար Բարիմիքայելի որդի Կոստանդինը, դառնալով այդ խռովության տապալման սկիզբը։ Նրա հետ Փոկասին լքեցին նաև Բալանտիոսը և Ացմորոս կոչվածը, երկուսն էլ տուրմարխներ. Ինչ վերաբերում է Լևոն Փոկասին, ապա նա լավ զինված բաղում զինվորներով եկավ Խրիսուպոլիս, նրանց դասավորեց քարե հորթից[133] մինչև Քաղկեդոն և սարսափով պատեց

քաղաքի բնակիչներին։ Ռոմանոսը դրոմոնով ուղարկում է կանիկլիոս Սիմեոնին՝ Կոստանդին կայսեր ստորագիր հետևյալ բովանդակության գրությամբ. /14/ «Ես իմ հպատակներից որպես իշխանությանս ու թագավորությանս ամենաարթուն, ամենախոհեմ ու ամենահավատարիմ ոչ այլ ոք չգտա, քան Ռոմանոսին և նրան, աստծուց հետո, վստահեցի իմ պահպանությունը։ Ես նրան իմ հոր տեղ դրեցի, նրան, ով իմ նկատմամբ ծնողական սեր ու վերաբերմունք ցուցաբերեց։ Ես միշտ էլ կասկածում էի Լևոն Փոկասի վրա, որ նա աչք ունի իմ թագավորության վրա, այժմ նա, ձեռք բարձրացնելով իմ իշխանության վրա, գործով ապացուցեց իր դավադիր լինելը։ Դրա համար ահա ես չեմ ցանկանում, որ նա այսուհետև լինի դոմեստիկոս։ Այս խռովությունը նա բարձրացրել է ոչ իմ խորհրդով, նա ինքնագլուխ է անցել հարձակման, ցանկանալով տիրանալ թագավորության»։ Երբ դա ընթերցվեց զինվորներին, բոլորն սկսեցին լքել Լևոն Փոկասին և անցնել կայսերահայր Ռոմանոսի կողմը։ Փոկասն ընկավ անելանելի վիճակի մեջ, եղավ հուսաբեկ, քանզի իր բոլոր ակնկալածները ի դերև ելան։ Նա փախուստի դիմեց դեպի Ատեուս բերդը[134], բայց նրան ներս չընդունեցին, դրա վրա նա գնաց Գոելեոն[135] կոչվող գյուղը, ուր և ձերբակալվեց։ Ռոմանոսն այնտեղ ուղարկեց Հովհաննես Տուբակեսին և իր ազգական Լևոնին՝ նրան քաղաք բերելու։ Վերջիններս բռնելով նրան, կուրացրին, թեև այդ մասին ոչ մի կարգադրություն չէին ստացել, այդ բանը նրանք ինքնագլուխ կատարեցին, որի համար կայսերահայր Ռոմանոսը զայրացավ։

15. Օգոստոս ամսին հայտնի դարձավ Կոստանդին Կտեմատենոսի[136], Դավիթ Կամուլիանոսի և Մանգանների կուրատոր[137] Միքայելի դավադրության մասին։ Սրանք կուրացվեցին և, անցկացվելով քաղաքի միջով, աքսոր ուղարկվեցին։ Քաղաք բերեցին և սխոլերի դոմեստիկոս Լևոն մագիստրոսին, որին ջորու վրա նստած, անցկացրին հրապարակի միջով։

16. Բացահայտվեց և Զոե կայսրուհու դավադրությունը։ Նա փորձել էր Ռոմանոսին դեղել թունավորված ուտելիքներով, որոնք պատրաստել էր հյուպուրգիայի նոտար[138] Թեոկլետոսը։ Զոեին հեռացնում են պալատից և տանում Պետրիոն և սուրբ Եվփեմիայի վանքում մայրապետ խուզում։ Ախոռապետ Թեոփիլակտոս պատրիկի[139] կողմից կայսեր դաստիարակ Թեոդորոսը և նրա եղբայր Սիմեոնը հրավեր ստացան ճաշկերույթի մասնակից դառնալ։ Երբ նրանք ճաշում էին, բազում զինվորներով ներս մտավ վիգլայի դրունգար Հովհաննեսը, Կուրկուաս կոչ-

վոշտ[140], որը ձերբակալելով նրանց աքսորեց Օպսիկիոն, իրենց պրոաստիոնները, որպես թե Ռոմանոսի դեմ դավեր նյութողների։

17. Սեպտեմբեր ամսի քսանչորսին Ռոմանոսը ստանում է կեսարի պատվաստիճանը, իսկ դեկտեմբեր ամսի 17-ին, նախահարց[141] կիրակիին. նա ձեռամբ Կոստանդին կայսեր և Նիկողայոս պատրիարքի թագ է կապվում։

## ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՌՈՄԱՆՈՍԻ

6428 թվականին, ինդիկտիոնի 8-րդ տարվա հունվար ամսի 6-ին, սուրբ աստվածահայտնության տոնի օրը, Ռոմանոսը թագադրում է իր կնոջ Թեոդորային, իսկ մայիս ամսի 17-ին, սուրբ Պենտեկոստեի օրը, կայսեր ձեռքով[142]՝ իր որդի Խրիստոֆորոսին։ Նույն երթի ժամանակ նրանք երկուսը միայն անցան։ Ինդիկտիոնի 8-րդ տարվա հուլիս ամսին, կիրակի օր, Ռոմանոսի կողմից հոգևորականների միջև վերականգնվեց համերաշխությունը։ Հաշտվեցին դեռևս Նիկողայոս և Եվթիմիոս պատրիարքների ժամանակներից գժտված բոլոր մետրոպոլիտներն ու կղերականները։

2. Ինդիկտիոնի 9-րդ տարվա փետրվար ամսի ութին Ռոմանոսը, թագավորության վրա աչք ունենալու մեղադրանքով, Կալոմարիայի որդի Ստեփանոսին վանական խուզելով Անտիգոնոսի կղզին աքսորեց. նրա հետ նաև նրա մտերիմներ Թեոփանես Տիխիոտեսին[143] և Պավղոս Օրֆանոտրոֆոսին[144]։

3. Ռոմանոս կայսրը տրիբունալիոնում[145] ընդունելություն կազմակերպեց, որտեղ բոլորը ներկայացան զենքերը կապած։ Ադնումիոնից[146] հետո Ռոմանոսն ու Կոստանդինն իսկույն, փութանակի պալատ են վերադառնում, քանզի Արսենիոսի մտերիմ Լևոնը տեղեկացրել էր Արսենիոսի[147] և մանգլավիտ Պողոսի դավադրության մասին։ Նրանց բրածեծ արեցին և ունեցվածքը բռնագրավելով՝ աքսոր ուղարկեցին։ Այն ժամանակ պարադինաստևոնի[148] պաշտոնը վարում էր երեց Հովհաննես ռեքտորը[149], որը Արսենիոսի մտերիմ Լևոնին հեբդոմադարիոս[150] դարձրեց՝ կայսեր մտերմացնելով։ Ինչ վերաբերում է Լևոն Արգիրոսի որդի Ռոմանոսին, որին հիշել եմ վերևում, Ռոմանոս կայսրը իրեն փեսայացրեց, կնության տալով իր դուստր Ագաթեին, քանզի Ռոմանոսը թիկնեղ տղամարդ էր, մարմնով ու դեմքով գեղեցիկ, խոհեմ, աչքի էր ընկնում հատկապես իր ողորմածությամբ, առատաձեռնությամբ, բարությամբ ու համեստությամբ։

Այն ժամանակները մեջտեղ եկավ Հելլադա [բանակաթեմից] ոմն Հոնտակիոս[151], Նիկետաս պատրիկի ազգականը, անկիրթ ու հայրասպան մի մարդ։ Սա հետամուտ էր եղել իր հարազատ հորը սպանել, և հայրը նրանից փախուստի դիմելով, մտավ մի նավ և ծով դուրս գալով, ընկավ Կրետեի սարակինոսների ձեռքը։ Հոնտակիոսը առիթից օգտվելով, հոր ողջ ունեցվածքը հափշտակեց և քաղաք գալով, ապաստանեց աստծո մեծ եկեղեցին[152]։ Ռոմանոս կայսրը, տեղեկանալով սրա անկարգությունների և հափշտակությունների մասին, որոշեց եկեղեցուց դուրս հանել և պատժել։ Նա բուլղարներին հասցեագրված կեղծ նամակներ սարքելով, միտք ուներ նրանց մոտ փախչել, բայց ձերբակալվելով և հարցաքննության ենթարկվելով, զրկվեց ունեցվածքից ու աչքի լույսից։

5. Բուլղարները դարձյալ արշավեցին և հասան մինչև Կատասիրտա[153]։ Դոմեստիկոս Ադրալեստոսի մահից հետո սխոլերի դոմեստիկոս նշանակվեց Պոթոս Արգիրոսը, մի գեղեցիկ, անչափ փորձառու մարդ։ Սա տագմաների հետ գալով Թերմոպոլիս[154], այնտեղից բուլղարներին լրտեսելու հանձնարարությամբ, իր տոպոտերետես[155] Միքայելին, Մորոլեոնի որդուն ուղարկեց, բայց նա անսպասելիորեն ընկավ բուլղարների լարած թակարդը և թեև նրանցից շատերին խողխողեց, բայց ինքն էլ վիրավորվեց և քաղաք գալով վախճանվեց։

6. Այն ժամանակ հյուպուրգիայի նոտարիոս Թեոկլետոսը տեղեկացրեց Ռոմանոս կայսեր դեմ, իբրև թե Կոստանդին կայսեր օգտին փողերանոցի պետ Անաստասիոս սակելլարիոսի, Թեոդորետոս Լիտոնիտի, իդիկոնի կայսերական նոտար Դեմետրիոսի, Նիկողայոս Կուբացեսի և Թեոդոտոս պրոտոկարավոսի[156] կազմակերպած դավադրության մասին։ Հարցաքննության ենթարկվելով, նրանք բրածեծ արվեցին և, Մեսե պողոտայով ծանակվելով, աքսոր ուղարկվեցին։ Թեոդորետոսին հատուկ գանահարեցին պալատի տրիկոնխոսում և նրան էլ աքսորեցին։ Ինչ վերաբերում է Անաստասիոս սակելլարիոսին, ապա նրան Էլեգմոն վանքում վանական խուղեցին, ուր և նա կնքեց իր մահկանացուն։

7. Ռոմանոսը օգտվելով նման առիթից, Կոստանդնին ստորադաս է դարձնում, իջեցնում երկրորդ տեղը, առաջին տեղում դնելով իրեն։ Նա, երկյուղելով իր կյանքին սպառնացող ոտնձգություններից (վա՜յ մարդկային արարմունքներին). երդմնազանցության մեղք գործեց։ Զէ՞ որ նա երդվել էր, որ իր անունը որպես կայսր պիտի հիշվի Կոստանդնի անունից հետո։

8. Սիմեոնը դարձյալ է արշավում հռոմայեցիների վրա։ Նա Խագանի[157], Մենիկոսի[158] և ուրիշների գլխավորությամբ բազմաթիվ բուլղարների է ուղարկում, հրամայելով անհապաղ քաղաքի վրա հարձակվեն։ Սրանք լեռների միջով եկան մինչև Մանգլաբա[159]։ Ռոմանոս կայսրը իմանալով նրանց հարձակման մասին և երկյուղելով, որ նրանք հանկարծ կգնան կրակի կտան Պեգեի պալատներն ու Ստենոնը[160], նրանց դեմ է ուղարկում Հովհաննես ռեքտորին, Լևոն և Պոթոս Արգիրոսներին՝ կայսերական, հետերիայի և տագմաների մեծաթիվ զինվորներով։ Սրանց հետ էր նավատորմիղի դրունգար պատրիկ Ալեքսիոս Մուսելեն[161]՝ սեփական զորքով[162]։ Պահոց հինգերորդ շաբաթն էր[163]։ Ահա նրանք զինվորներին դասավորեցին Պեգեի դաշտային ու ցածրադիր վայրերում, իսկ բուլղար զինվորներն երևացին բարձրադիր տեղերից։ Անհասկանալի ու սարսափազդու վայնասունով բուլղարները ուժգնապես հարձակվեցին հռոմայեցիների վրա։ Հովհաննես ռեքտորն իսկույն փախուստի դիմեց, իսկ նրա փրկության համար մաքառող Պլատիպոդեսի որդի Ֆոտինոսը և շատ ուրիշներ սրի քաշվեցին։ Հազիվհազ փրկված ռեքտորը դրոմոն մտավ։ Եկավ և փախուստի դիմած զինյալ Ալեքսիոս Մուսելեն դրունգարը, որը սակայն չկարողացավ բարձրանալ դրոմոնի նավասանդուղքը և ծովն ընկնելով, իր պրոտոմանդատորի հետ խեղդվեց։ Ինչ վերաբերում է Արգիրոսներին՝ Պոթոսին և Լևոն պատրիկին, ապա նրանք փախուստի դիմելով՝ բերդում ապաստանեցին ու փրկվեցին։ Նավաստիներն ու բոլոր զինվորները թշնամիներից փախչելով կամ ծովում խեղդվեցին, կամ սրակոտոր եղան, կամ էլ բուլղարների ձեռքը գերի ընկան։ Բուլղարներին աՀա այլևս ոչինչ չէր խանգարում, և նրանք Պեգեի պալատները կրակի տվեցին, ամբողջ Ստենոնը մոխրի վերածեցին։ Սարսափելի բան է, երբ անխոհեմության ու անփորձության հանդգնությունն է դաշնակցում։

9. Ինդիկտիոնի տասներորդ տարվա փետրվար ամսի քսանին վախճանվեց Ռոմանոսի կին Թեոդորան։ Նրա մարմինն ամփոփվեց Ռոմանոս կայսեր տանը, որը վերջինիս կողմից վանքի էր վերածվել։ Նույն ամսին թագադրվեց Քրիստափոր կայսեր կին Սոփիան։ Հենց այդ ժամանակները քաղաք ժամանեց Իբերացի կուրապաղատը[164]։ Նա անցավ փառահեղ զարդարված հրապարակի միջով և ընդունվեց մեծ շուքով ու պատվով։ Նրան տարան և ատեն սուրբ իմաստության տաճարը՝ ականատես լինելու նրա գեղեցկության ու թանկագին զարդերին։ Նախքան նրա տաճար գալը, այն հարդարեցին ոսկեթել ծածկոցներով և ամեն տեսակի զարդերով։ Նա ապշեց տաճարի հրաշագեղության, արտակարգ

*մեծության, թանկագին զարդերի վրա, ասաց, թե այգ սուրբ տեղը հիրավի աստծո բնակության վայր է, որից հետո իսկույն իր երկիրը վերադարձավ։*

*10. Երբ բուլղարները դարձյալ արշավելով հասան ու կրակի տվեցին սուրբ Թեոդորայի պալատները, Ռոմանոս կայսրը տագմաների հրամանատարներին ճաշի հրավիրեց։ Նրանց հետ էր և Սակտիկես կոչվածը։ Կայսրը հորդորեց նրանց, դրդեց թշնամիների դեմ դուրս գան ու պաշտպանեն հայրենիքը։ Նրանք պատրաստակամությամբ ասացին, թե իրենց կյանքը չեն խնայի հանուն նրա թագավորության և քրիստոնյաների։ Հաջորդ օրը հիշյալ Սակտիկեսը զինվելով կայսեր կողմից, գործով ապացուցեց իր հավատարմությունն ու խիզախությունը։ Անցնելով բուլղարների թիկունքը և խոյանալով նրանց ճամբարը, նա հանդիպածին սրի քաշեց։ Բուլղարները տեղեկանալով կատարվածի մասին, ճամբար են վերադառնում և բախվելով, Սակտիկեսին փախուստի են մատնում, քանզի նրա զինվորները փոքրաթիվ էին։ Նա քաջաբար կռվեց, շատերին սպանեց, բայց ի վիճակի չլինելով դիմանալ մեծաթիվ թշնամիներին, քաշեց ձիու սանձը և դիմեց փախուստի։ Երբ նա պետք է մոտիկից հոսող գետն անցներ, նրա ձիու ոտքը խրվում է գետի տիղմի մեջ, և նա թիկունքին ու ազդրին վերք է ստանում։ Իր զինվորների օգնությամբ ձին մի կերպ տիղմից դուրս քաշվեց, և նա հասավ Վլախեռնա ու փրկվեց։ Նրան պառկեցրին սուրբ սորոսում[165], բայց վերքը ծանր էր, և նա գիշերը վախճանվեց։*

*11. Այդ ժամանակները գերապատիվ Պետրոնասը Ռոմանոս կայսեր հրամանով այսպես կոչված Քսերոկերկոսի դռան մոտ գտնվող սուրբ Մամասի տղամարդկանց վանքից մի փառավոր տապանակ բերեց, ինչպես և երկու այլ, առանց քանդակների տապանակներ, որոնց մեջ, ինչպես ասում են, ամփոփված էին Մավրիկիոսի[166] և նրա որդիների աճյունները։ Դրանք դրվեցին Ռոմանոս կայսեր վանքում, այն է՝ Մյուրելեոնում։*

*12. Ոմն Ագրիանոս խալդ[167] և մեծահարուստ Տաճատ հայը[168], խալդիայի զորավար Վարդաս Բոյիլասի[169] դրդմամբ, գրավելով Բաբերդ[170] կոչվող բերդը, Ռոմանոս կայսեր դեմ խռովություն ու ապստամբություն են բարձրացնում։ Նրանց ապստամբությունը ճնշում է սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասը և գլխավորներին ձերբակալելով, կուրացնում, ունեցվածքը բռնագրավում, իսկ աղքատներին ու աննշաններին անմեղ համարելով, հրամայում գնան, ուր ցանկանան[171]։ Տաճատը փախավ մի ուրիշ շատ ամուր բերդ և անպատիժ մնալու մասին*

երաշխիքներ ստանալով, եկավ քաղաք, ուր ստացավ մանգլավիտի[172] պաշտոնը։ Նա տնային կալանքի մեջ էր պահվում Մանգանների տանը, բայց երբ փորձեց փախուստի դիմել, բռնվեց ու կուրացվեց։ Վարդաս Բոյիլասին վանական խուզեցին, կայսրը նրան խնայեց, քանզի իր մտերիմն էր եղել։

13. Երբ Ադրիանուպոլսի զորավարն էր Մորոլեոն մականվանյալ պատրիկը, որին ավելի ճիշտ կլիներ կոչել Թիմոլեոն[173], պատերազմական գործերում շատ կարող ու հմուտ մի մարդ, որ բուլղարների դեմ բազում սխրանքներ էր գործել, բուլղար Սիմեոնը համայն զորքով շրջապատեց հիշյալ քաղաքը և առավ ամուր օղակի մեջ։ Քաղաքը բընակիչների պարենն սպառվեց, նրանց սարսափելի սով էր տանջում (նրանք ոչ մի տեղից պարեն չէին ստանում), և սննդամթերքի պակասից նեղված, իրենց էլ, զորավարին էլ հանձնեցին բուլղարներին։ Սիմեոնը զորավարին ձեռք գցելով, նրան ամուր կապանքների մեջ առավ և բյուր խոշտանգումների ենթարկելով, վերջը ենթարկեց դառը մահվան, իր, Սիմեոնի ամենաանգութ ու ամենադաժան հոգուն պատշաճող, իսկ քաղաքում թողնելով բուլղարների կայազորը, ինքը վերադարձավ։ Կայազորի զինվորները, սակայն, տեղեկանալով, որ իրենց վրա են գալիս հռոմայեցիների զորքեր, քաղաքը լքելով, հեռացան, և քաղաքը դարձյալ հռոմայեցիների իշխանության տակ անցավ։

14. Մեծ զորքով ու ռազմանավերով հռոմայեցիների դեմ դուրս եկավ Լեոն Տրիպոլսեցին[174]։ Նա հասել էր Լեմնոս կղզին, երբ հանկարծակի նրա վրա հարձակվեց նավատորմիղի դրունգար Հովհաննես պատրիկը, մականունը՝ Ռադինոս։ Մարտ տեղի ունեցավ, որում աստծո օգնությամբ հագարացիները պարտվեցին, փախուստի դիմելով հազիվ փրկվեց միայն Տրիպոլսեցին։

15. Ինդիկտիոնի երկրորդ տարվա[175] սեպտեմբեր ամսին Բուլղարիայի իշխան Սիմեոնը համայն զորքով Կոստանդնուպոլսի վրա է արշավում, Թրակիայում ու Մակեդոնիայում ասպատակ սփռում, ամեն ինչ կրակի տալիս, քարուքանդ անում, ծառերը կտրատում։ Հասնելով մինչև Վլախեռնա, նա պահանջում է իր մոտ ուղարկվեն Նիկողայոս պատրիարքը և մեծամեծներից ոմանք, որպեսզի խաղաղության շուրջ բանակցեն։ Երբ երկու կողմերն էլ միմյանց պատանդներ տվեցին, նախ գնաց Նիկողայոս պատրիարքը, ապա Միքայել պատրիկը, մականունը՝ Ստիպիոտես, և պարադինաստեոն Հովհաննես միստիկոսը։ Հովհաննես ռեքտորին կայսեր առջև ամբաստանել էին, և նա իրեն հիվանդ ձևացնելով, պալատից դուրս եկավ և Գալակրենոնի մոտ գտնվող իր վան-

*քում վանական խուզվեց։ Վերոհիշյալները Սիմեոնի հետ խաղաղության շուրջ բանակցություններ էին վարում, երբ Սիմեոնը նրանց հետ ուղարկեց և ցանկացավ տեսնել հենց իրեն, Ռոմանոս կայսեր, քանզի շատերից լսել էր նրա խոհեմության, քաջության ու ողջամտության մասին։ Կայսրը այդ առթիվ շատ ուրախացավ, որովհետև կաթոգին տենչում էր խաղաղություն հաստատվի, վերջ գտնեն ամեն օր տեղի ունեցող արյունահեղությունները։ Նա մարդիկ ուղարկեց և Կոսմիդիոսի[176] ափին, ծովի վրա, ամրագույն հենակետ պատրաստել տվեց, այն մտքով, որ կայսերական տրիերան նավարկելով կարողանա այնտեղ խարիսխ գցել։ Այդ հենակետը ամեն կողմից շրջափակելով, նա հրամայեց իրենց բանակցություններ վարելու տեղի մեջտեղում դառապա շինեն։ Բայց Սիմեոնը զորք ուղարկեց և Հուստինիանոս կայսեր կառուցած Պեգեի ամենասուրբ աստվածածնի տաճարը և ողջ շրջակայքը կրակի տվեց, որից պարզվեց, որ նա խաղաղություն չէր ուզում, այլ ցանկանում էր կայսեր խաբել, նրան օրորում էր սին հույսերով։ Կայսրը Նիկողայոս պատրիարքի հետ գնաց Վլախեռնա, մտավ սուրբ սորոս և ձեռքերը մեկնեց աղոթքի, ապա գետինն ի վայր երկրպագեց, արցունքներով ողողեց սուրբ հատակը, պաղատելով փառավորյալ ու անբիծ աստվածածնին՝ մեղմի ամբարտավան Սիմեոնի անհաշտ ու անգութ սիրտը, համոզի հաշտություն կնքի։ Նրանք բացեցին սրբազան արկղը, որտեղ պահվում է սուրբ աստվածածնի եմիփորոնը, կայսրը առավ ու հագավ այն՝ կարծես անխորտակելի զրահ լիներ, իսկ հավատքն էլ դեպի ամենասուրբ աստվածածինը՝ սաղավարտ, ահա նման ապահով զենքերով զինված նա տաճարից դուրս եկավ։ Նա, իրեն ուղեկցողներին վահաններով ու զենքերով զինելով, գնաց նշանակված վայրը՝ Սիմեոնի հետ բանակցելու։ Այդ բոլորը տեղի ունեցան հինգշաբթի օր, նոյեմբեր ամսի իննին, օրվա չորրորդ ժամին։ Ժամանեց և Սիմեոնը, իր հետ բերելով բազում մասերի բաժանված զինվորներին։ Ոսկե վահաններ ու նիզակներ կրողները մի խումբ էին կազմում, արծաթե վահաններ ու նիզակներ ունեցողները՝ մի այլ, վերջապես զանազան գույներով զարդարված զեներ կրողները, երկաթապատները՝ առանձին։ Նրանք իրենց մեջ առնելով Սիմեոնին, հունարեն լեզվով նրան վասիլևս[177] էին ներբողում։ Բոլոր սենատորները, [քաղաքի] պարիսպների վրա կանգնած, դիտում էին կատարվածը։ Հիրավի, տեսնելու բան էր կայսեր՝ իսկապես թագավորական ու մեծ հոգին, հիանալու նրա անվեհերությամբ, քաջությամբ։ Տեսնելով այդքան թշնամիների վրա տալը, նա չերկյուղեց, չերերաց, չնահանջեց և կարծես բարեկամների բազմության*

մեջ էր դնում, քաջաբար դիմեց առաջ, ոչ ավելի ոչ պակաս հոգին տալու թշնամիներին՝ որպես իր հպատակների փրկագին, քանզի հիշյալ հենակետը առաջինը նա հասավ և նա էր Սիմեոնին ընդունողը։ Երբ երկու կողմերն էլ միմյանց պատանդներ տվեցին, և բուլղարները ուշադիր զննեցին հենակետը, որպեսզի հանկարծ որևէ որոգայթ կամ թակարդ լարված չլինի, Սիմեոնն իջավ ձիուց և դիմեց դեպի կայսրը։ Ողջագուրվելով նրանք խոսեցին խաղաղության շուրջ։ Պատմում են, թե կայսրը Սիմեոնին ասաց. «Լսել եմ բարեպաշտ մարդ ես և ճշմարիտ քրիստոնյա, բայց և տեսնում եմ, որ քո արածն ու ասածը հակասության մեջ են։ Բարեպաշտ մարդը, քրիստոնյան խաղաղության ու սիրո կողմնակից է, քանզի աստված ինքը սեր է և սեր է նշանակում[178]։ Սպանություններով ու իզուր արյունահեղությամբ ամբարիշտ ու անհավատ մարդիկ են հրճվում։ Արդ, եթե դու ճշմարիտ քրիստոնյա ես, ինչպես այդ մասին տեղեկացել ենք, վերջապես դադարեցրու անմեղ մարդկանց կոտորելը, պիղծ արյունահեղությունը, մեզ՝ քրիստոնյաներիս հետ խաղաղություն կնքիր, չէ՞ որ դու էլ ես քրիստոնյա, քրիստոնյա ես կոչվում, մի ցանկար պղծել քրիստոնյա մարդկանց ձեռքերը համահավատ քրիստոնյաների արյամբ։ Դու էլ մարդ-արարած ես, հավատում ես մահվան, հարության ի մեռելոց, դատ ու դատաստանի։ Այսօր կաս, բայց վաղը հող ես դառնալու։ Միայն ջերմեռանդությունը ի վիճակի է հանգցնել մեծամտությունը։ Դու գնալով այն աշխարհը, ի՞նչ պատասխան ես տալու աստծուն՝ անմեղ մարդկանց կոտորելուդ համար, ի՞նչ երեսով պիտի նայես սարսափելի, բայց արդար դատավորին։ Եթե այդ բոլորը գործում ես՝ դրդված քո սիրուց դեպի գանձերը, ես քո ցանկությունը ավելիով կհագեցնեմ, միայն թե վերջ տուր պատերազմին, սիրիր խաղաղությունն ու համերաշխությունը, որպեսզի ինքդ էլ ապրես խաղաղ, արյամբ չշաղախված, հանգիստ կյանքով, և քրիստոնյաներն էլ փորձություններից դադար առնեն և վերջ տան քրիստոնյաներին կոտորելը։ Քանզի արդար բան չէ, որ նրանք հավատակիցների վրա զենք բարձրացնեն»։ Կայսրն այդքանն ասելուց հետո լռեց։ Սիմեոնը ամոթահար եղավ կայսեր այդ աստիճան համեստության վրա, նրա նման խոսքերի և համաձայնվեց հաշտություն կնքել։ Միմյանց ողջագուրելով, նրանք բաժանվեցին։ Կայսրը Սիմեոնին փառավոր նվերներ տվեց[179]։

16. Ես այժմ կպատմեմ այն ժամանակ տեղի ունեցած մի զարմանալի դեպքի մասին, որը տարօրինակ կթվա անգամ նման բաների գիտակ մարդկանց։ Պատմում են, որ երկու թագավորների բանակցելու

ժամանակ նրանց գլխավերևում երկու արծիվներ էին ճախրում, որոնք կառաչելով միախառնվեցին և ապա իսկույն բաժանվեցին միմյանցից։ Արծիվներից մեկը թռավ դեպի քաղաք, մյուսը՝ դեպի Թրակիա։ Նման բաների քաջագիտակ մարդիկ դա վատ նշան համարեցին, բացատրեցին, թե երկու թագավորները բաժանվելու են՝ առանց խաղաղություն հաստատելու։ Սիմեոնը գալով իր ճամբարը, սեփական մեծամեծներին հաղորդեց կայսեր լայնախոհության ու համեստության մասին, մեծապես գովատեց նրա գեղեցիկ արտաքինը, ֆիզիկական ուժն ու քաջությունը։

17. Դեկտեմբեր ամսի 25-ին Ռոմանոսը Մեծ եկեղեցում թագադրեց իր որդիներ Ստեփանոսին և Կոստանդինին, իսկ Նիկողայոս պատրիարքը նրա որդի Թեոփիլակտոսին կղերական խուզեց՝ ձեռնադրեց կիսասարկավագ և սինկելլոս նշանակեց։ Նախապես նա որպես կիսասարկավագ իրավունք ստացավ մտնել սրբություն սրբոցը։

18. Ապրիլ ամսի 19-ին Ռոմանոսը պարադինաստևոն Հովհաննես միստիկոսին շնորհեց անթիպատ պատրիկի պատվաստիճանը։ Դա գրգռեց ոմանց նախանձը, նրանք սկսեցին ամբաստանել նրան։

19. Ինդիկտիոնի 13-րդ տարվա մայիս ամսի 15-ին Նիկողայոս պատրիարքը վախճանվեց։ Նրա երկրորդ աթոռակալությունը տևեց տասներեք տարի։ Նրա մարմինն ամփոփվեց իր կողմից կառուցված Գալակրենոն վանքում։ Օգոստոս ամսին պատրիարք է դառնում Ամասիայի մետրոպոլիտ ներքինի Ստեփանոսը[180]։ Հոկտեմբեր ամսին պարադինաստևոն[181] Հովհաննես միստիկոսը ամբաստանվեց, որ նա լոգոթետ Կոսմաս պատրիկի՝ իր աներոջ (վերջինս նրան կնություն էր տվել իր դստեր) խորհրդով թագավորության է ձգտում։ Այդ պատճառով Հովհաննեսին հեռացնում են պալատից, բայց թույլատրում գալ և սպասարկել կայսեր, նրա հետ վարել անհրաժեշտ գործերը. Ռոմանոս կայսրը շատ էր սիրում նրան, քանզի Հովհաննեսը բոլոր հարցերում ի վիճակի էր օգտակար լինել իրեն, այդ իսկ պատճառով նա չէր ուզում նրան ամենևին հեռացրած լինել։ Երբ ամբաստանողները շտապեցնում էին կայսեր և փաստերով հաստատում իրենց ամբաստանության հիմնավոր լինելը, կայսրը քննության ենթարկեց և գտնելով, որ դրանք համապատասխանում են իրականության, որոշեց նրան ձերբակալել ու հարցաքննել։ Բայց Հովհաննեսը կանխավ իմացավ այդ մասին և փախուստի դիմելով, եկավ Մոնոկաստանոն, ուր վանական խուզվեց։ Փախավ նաև սեղանապետ Կոստանդին Բոյիլասը, Հովհաննեսի մտերիմն ու բարեկամը։ Գալով Օլիմպոս[182], նա հագավ վանա-

կանի սքեմը. լինելով միստիկոսի դավակիցը և նրա ամենամեծ գաղտնիքների հաղորդակիցը, նա էլ վախի մեջ էր։ Ինչ վերաբերում է Կոսմաս պատրիկին, ապա նրան կայսրը Հորոլոգիոնում բրածեծ անելուց հետո, պաշտոնանկ արեց։ Հովհաննես միստիկոսի փոխարեն պարադինաստևոն է նշանակվում Թեոփանես պրոտովեստիարիոսը։ Այն ժամանակները Թրակեսիոն բանակաթեմում սարսափելի երկրաշարժ եղավ, գետինը սոսկալի, մեծ ճեղք ստացավ, այն աստիճան, որ բազում գյուղեր ու եկեղեցիներ մարդկանցով հանդերձ կուլ գնացին։

20. Ինդիկտիոնի 15-րդ տարվա մայիս ամսի քսանյոթին Բուլղարիայի իշխան Սիմեոնը զորքը շարժեց խրվաթների դեմ և պատերազմելով պարտություն կրեց և իր բոլոր զինվորներին կորցրեց[183]։

21. Աստղագետ Հովհաննեսը, հանդիպելով Ռոմանոս կայսեր, ասաց այսպես. «Տեր, Քսերոլոֆոսի[184] վրայի կամարի՝ դեպի արևմուտք նայող սյունը Սիմեոնինն է։ Եթե նրա ծայրը ջարդես, Սիմեոնը նույն ժամին իսկ կվախճանվի»։ Ռոմանոսը մարդիկ ուղարկեց, որոնք գիշերով ջարդեցին սյան ծայրը։ Սիմեոնը նույն ժամում իսկ Բուլղարիայում վախճանվեց[185]։ Նա մեռավ սրտի ռագնայից՝ կորցնելով գիտակցությունը։ Նա իզուր տեղ խախտելով կարգը, իշխան նշանակեց Պետրոսին. իր երկրորդ կնոջից՝ Գեորգ Սուրսուբուլեսի[186] քրոջից ունեցած որդուն։ Գեորգ Սուրսուբուլեսին Սիմեոնը նշանակեց իր որդիների խնամակալ։ Իսկ Միքայելին, իր առաջին կնոջից ունեցած որդուն, վանական խուցեց։ Պետրոսի եղբայրներ Հովհաննեսն ու Բենիամինը դեռևս բուլղարական հանդերձներ էին հագնում։

22. Երբ շրջակա ժողովուրդները՝ խրվաթները, թուրքերն[187] ու մնացածները իմացան Սիմեոնի մահվան մասին, մտադրեցին բուլղարների դեմ արշավել։ Բուլղար ժողովուրդը սարսափելի տառապում էր սովի պատճառով առաջացած սաստիկ սովից, նա երկյուղ էր զգում և այլևայլ ժողովուրդների հնարավոր հարձակումից, բայց ամենից շատ՝ հռոմայեցիների ներխուժումից։ Եվ խորհուրդ անելով, բուլղարները արշավում են հռոմայեցիների վրա և հասնում Մակեդոնիա՝ հռոմայեցիների մեջ սարսափ տարածելու։ Սակայն երբ իմացան, որ Ռոմանոս կայսրը որոշել է իրենց վրա արշավել, Պետրոսն ու Գեորգը[188] խրխավլու նամակով ծածուկ [կայսեր մոտ] ուղարկեցին ծագումով արմենիակոս[189] Կալոկիրիս անունով մի վանականի։ Խրիսովուլ նամակում ասված էր, թե նրանք կողմնակից են հռոմայեցիների հետ խաղաղության, որ սիրով կկնքեն այն, դեռ ավելին, եթե հռոմայեցիները ցանկանան, նաև խնամիական կապեր կհաստատեն[190]։ Կայսրը

այդ վանականին մեծ ուրախությամբ ընդունեց և անհապաղ դրոմոնով Մեսեմբրիա ուղարկեց (այն անցյալում Մեններիա էր կոչվում՝ թրակացի Մենոսի, քաղաքը բնակեցնողի և թրակացիների ոմանց կողմից Բրիա կոչվող ավանի անունից, իսկ այժմ ավելի բարեհնչյուն ձևով Մեսեմբրիա է կոչվում)։ Նրանք տեղ հասնելով, անհրաժեշտ բանակցությունները վարեցին և Ստեփանոս բուլղարի հետ ցամաքով Նանապարհ ընկան։ Նրանց հետևից հասան և Գեորգ Սուրսուբուլեսը, Կալուտերկան Սիմեոնը, Ուսամպսոսը[191], Բուլղարիայի առաջնորդ Սիմեոնի աներձագը, ապա և նրա [Սիմեոնի] մոտիկ ազգական Ստեփանոսը, Մագոտինոսը, Կրոնոսը և Մենիկոսը, որոնք եկան Ռոմանոս կայսեր մոտ։ Նրանք ականատես լինելով Քրիստափոր կայսեր դուստր Մարիային և շատ հավանելով նրան, Պետրոսին նամակ գրեցին շտապ գալ, նախապես կազմելով խաղաղության պայմանագրի բնագիրը։ Պետրոսին գիմավորելու և նրան մինչև քաղաք ուղեկցելու ուղարկվեց Նիկետաս մագիստրոսը՝ Ռոմանոս կայսեր խնամին։ Երբ բուլղար Պետրոսը ժամանեց, Ռոմանոս կայսրը տրիերայով նավեց Վլախեռնա և իրեն այցելության եկող Պետրոսին հանդիպեց ու ողջագուրվեց։ Անհրաժեշտ բանակցություններից հետո ստորագրվում են խաղաղության պայմանագիրն[192] ու ամուսնական փաստաթղթերը։ Հռոմայեցիների և բուլղարների հարաբերություններում միջնորդի և մշտական կարգավորողի դերում հանդես էր գալիս Թեոփանես պրոտովեստիարիոսը։ |23| Հոկտեմբեր ամսի ութին Ստեփանոս պատրիարքը Թեոփանես պրոտովեստիարիոսի, Քրիստափոր կայսեր դուստր Մարիայի և համայն սենատի հետ գնաց Պեգեի ամենասուրբ աստվածածնի տաճարը։ Պատրիարքը կատարեց Պետրոսի և Մարիայի պսակի արարողությունը, նրանց գլխին դրեց հարսանյաց պսակները՝ կնքահայրությամբ Թեոփանես պրոտովեստիարիոսի և Գեորգ Սուրսուբուլեսի։ Տրվեց մեծ ու ճոխ սեղան, փառավոր կերպով կատարվեց այն, ինչ ընդունված է հարսանյաց հանդեսներին, որից հետո Թեոփանես պրոտովեստիարիոսը Քրիստափոր կայսեր դուստր Մարիայի հետ եկավ քաղաք։ Հարսանյաց երկրորդ օրը Ռոմանոս կայսրը փառավոր ճաշկերույթ տվեց Պեգեի նավամատույցում՝ այն զարդարելով մետաքսե կերպասներով։ Այդ նավամատույցում էր խարիսխ գցած կայսերական դրոմոնը։ Ռոմանոսն այստեղ բուլղար Պետրոսի, իր փեսա Կոստանդնի[193] և որդի Քրիստափորի հետ հանդիպում ունեցավ։ Երբ բուլղարները խիստ բողոք ներկայացրին, պահանջեցին, որ նախ Քրիստափորի անունը ներբողվի և ապա Կոստանդնի, Ռոմանոս կայսրը տեղի տվեց նրանց բողոքին և

արվեց այնպես, ինչպես նրանք էին պահանջում։ Երբ ամուսնության հետ կապված ամեն ինչ արվեց-վերջացավ, և Մարիան արդեն իր ամուսին Պետրոսի հետ պետք է դեպի Բուլղարիա ճանապարհվեր, Մարիայի ծնողները Թեոփանես պրոտովեստիարիոսի հետ նրան մինչև Հեբդոմոն ուղեկցեցին։ Երբ եկավ բաժանվելու պահը, ծնողները փաթաթվեցին իրենց դստեր, բազում արցունքներ թափեցին, ինչպես շատ սիրելի զավակի կորստյան առթիվ։ Նրանք համբուրեցին իրենց փեսային և դստեր հանձնելով նրան, վերադարձան պալատ։ Մարիան, բուլղարի ձեռքը հանձնվելով, ուղևորվեց դեպի Բուլղարիա։ Նա և՛ ուրախ էր, և՛ տխուր, քանզի զրկվել էր շատ սիրելի ծնողներից, և իր ժողովրդին հատուկ սովորույթներից, բայց և ուրախ, քանզի թագավորի հետ ամուսնացավ և հռչակվեց բուլղարների տիրուհի։ Նա գնաց՝ իր հետ տանելով բյուրազգի հարստություն և անհամար գույք։

24. Այն ժամանակներն էր, որ սխոլերի դոմեստիկոս մագիստրոս Հովհաննես Կուրկուասը, որ Ռոմանոս կայսեր գրեթե գահ բարձրանալու օրից փայլուն կերպով ղեկավարեց հռոմեական բանակը, հանապազ պարտության մատնեց սարրեստանցիներին[194], գրավեց, նվաճեց նրանց քաղաքները, բերդերը, գյուղերն ու շրջանները, տիրացավ նաև Ասորիքի նշանավոր ու հռչակավոր, շատ անառիկ ու հզոր Մելիտենե կոչվող բերդին[195]։ Նա այդ բերդի դեմ շատ համառ պատերազմ մղեց, ասպատակ սփռեց, ավերեց այն, որը ճարակ դարձրեց շրջակա գյուղերն ու շրջանները և այդ անպարտելի ու անմարտելի բերդը օղակի մեջ առնելով, նրա դեմ գործի դրեց քաղաքավեր մեքենաներ, պաշարյալներին դժվարին ու անելանելի վիճակի մեջ գցեց։ Նրանք չգիտեին՝ ինչ անեն, բազմիցս դոմեստիկոսի մոտ դեսպաններ ուղարկեցին, իրենց անձեռնմխելիության մասին խոստում խնդրեցին։ Խոհամիտ ու խոհեմ սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասը ընդառաջ գնաց մարդկանց արցունքներին ու գութ շարժող խոսքերին, ճակատագրի փոփոխականությունը աչքի առաջ ունենալով, տեղի տվեց և նրանց անձեռնմխելիության մասին խոսք տվեց, որից հետո Ամերի թոռ[196], Մելիտենեի ամիրա Աբուխաֆսը, ապա և Աբուսալաթը[197]՝ մեծատոհմիկ զորավար և Մելիտենեի մեծատուն, Կուրկուասի մոտ եկան։ Սխոլերի դոմեստիկոս Հովհաննեսն ընդունեց նրանց և կայսրին ուղարկեց։ Նրանք հաշտության պայմանագիր կնքելով, վերադարձան իրենց [քաղաքը] և այսուհետև հռոմայեցիների հետ դաշնակցած, նրանց հետ արշավանքի էին դուրս գալիս իրենց ցեղակից հագարացիների դեմ, գերեվարված հագարացիներով քաղաք էին գալիս ու հռոմայեցիների հետ մասնակից դառնում հաղթանակների առթիվ կազմա-

կերպվող հանդեսներին։ Դա արտասովոր, ապշելու բան էր՝ անաստված սարակինոսների դժբախտության մի նմուշ։ Աբուխաֆսի, այդ խոհեմ ու խորամիտ այրի մահից հետո, Մելիտենեի բնակիչները վերացրին հաշտությունը։ Սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասը բանակաթեմային զորքերով և տագմաներով, ինչպես և Մելիասը[198] հայերով, դարձյալ են արշավում նրանց դեմ, հանապազ բազում ասպատակ սփռում, անվերջ հարձակումներ գործելով գերեվարում ու թալանում նրանց։ Նրանք Մելիտենեի համար այնքան դժվարին կացություն ստեղծեցին, որ կարճ ժամանակում գրոհով վերցրին այն և հիմնահատակ կործանեցին, այն էլ ոչ միայն Մելիտենեն, այլև նրան սահմանակից բազմաբեղուն ու առատաբեր շատ եկամտաբեր քաղաքներ ու գյուղեր։ Կայսրը Մելիտենեն դարձրեց կուրատորիա[199] և ամեն տարի այնտեղից որպես հարկ գանձում էր բազում հազար ոսկի և արծաթ։

25. Նիկետաս մագիստրոսը՝ Քրիստափոր կայսեր աներհայրը, ամբաստանվեց այն բանի մեջ, որ Քրիստափորին խորհուրդ էր տալիս դեմ գնա հոր և նրան գահընկեց անի։ Այդ պատճառով ահա Նիկետասին քաղաքից վտարեցին, վանական խուզեցին և արտաքսեցին իր պրոաստիոնը։

26. Ինդիկտիոնի 6-րդ տարվա հուլիս ամսի 15-ին վախճանվում է Ստեփանոս պատրիարքը, աթոռակալելով երկու տարի և տասնմեկ ամիս։ Դեկտեմբեր ամսի տասնչորսին Ոպսիկիոնի [վանքերից] մեկի վանական Տրիփոնին, բարեպաշտ ու սրբակյաց մեկին, բերում ձեռնադրում են պատրիարք[200]՝ որոշակի ժամկետով, մինչև չափահաս դառնա Ռոմանոսի որդի Թեոփիլակտոսը։ Սրան էին նախատեսել Կոստանդնուպոլսի պատրիարք ձեռնադրել։

27. Նույն ամսի քսանհինգին սաստիկ ձմեռ արեց, այն աստիճան, որ գետինը 120 օր սառցակալեց։ Դրանից նախընթացը չունեցող սով եղավ, բազում մարդիկ՝ սովամահ, որ կենդանի մնացածները չէին հասցնում հողին հանձնել մեռածների մարմինները։ Ռոմանոս կայսրը այդ անտանելի վիճակին հասու լինելով, իր գթացող ու ողորմած բնավորության վայել հոգացություն ցուցաբերեց, նա առատաձեռն նպաստներով ամոքեց սովյալներին։ Նա սյունաշարքերը տախտակներով փակեց՝ փոքր լուսամուտներ թողնելով, որպեսզի աղքատները ձյունից ու ցրտից պատսպարվեն։ Այն ժամանակ էր, որ նա բոլոր սյունաշարքերում սարքեց այսպես կոչված արկուլաները[201] և կարգադրեց նրանց մեջ ապրող աղքատներին ամեն ամիս արծաթ դրամ տալ, եկեղեցիներում աղքատներին ամսական տրիմիսիաներ[202] բաժանել, այն-

պես որ այրկուլաների աղքատներին տրվող և եկեղեցիներում բաժանվող արծաթ դրամի ընդհանուր գումարը կազմեց տասներկու հազար։ Կայսեր՝ աղքատների մասին հոգացող հոգին դրանով չբավարարվեց, նա կարգադրեց, որ ամեն օր իր հետ ճաշի նստեն երեք աղքատ, և նրանց տրվի մեկական դահեկան։ Զորեքշաբթի և ուրբաթ օրերը նրա հետ ճաշի էին նստում երեք աղքատ վանականներ, որոնք ևս ստանում էին սահմանված դահեկանը։ Նա անում էր այնպես, ինչպես ընդունված էր անել ճաշի ժամանակ վանքերում, նա իրեն և սեղանակիցներին կրկնակի ճաշ էր մատուցում՝ մարմնին տալիս էր սովորական սնունդ, իսկ հոգին բերկրացնում պատշաճ, հաճելի, մտածված խոսքերով, որոնցով հուզում էր հոգին և հորդառատ արտասուքներ առաջացնում։ Բայց ո՞վ կարող է պատմել, թե նա ինչպիսի հավատ էր տածում դեպի բոլոր վանականները, հատկապես նրանց, որոնք իրենց սուրբ վարքով ու բարեպաշտությամբ անուն էին հանել։ Չի եղել դեպք, որ նա հանդիպի առաքինի մի վանականի և նրան բազում արցունքներով չխոստովաներ իր արարքները։ Լինելով ծայրաստիճան հավատացյալ և արտակարգ ուղղափառ, նա քաղաքի բոլոր եկեղեցիները փառավոր կերպով զարդարեց ու պաճուճեց հոյակապ ծածկոցներով ու ջահերով։ Նա տարեկան հոգ էր ուղարկում լեռնաբնակ վանականներին՝ Օլիմպոսի, Կոմինայի[203], այսպես կոչված Ոսկե Քարի և Բարաքեոսի լեռան, հոգում ու խնամում նրանց, գործով ու մտքով անվաններին իր մոտ հրավիրում և նրանց մաղթանքներն ու աղոթքները քաղում։ Բացի այդ, նա չէր դադարում հանուն աստծո ճգնողներին, անձուկ տնակներում ներանձնացածներին, բոլոր վանքերին իր սահմանած տարեկան հոգը հայթայթել։ Մենք նրա բազում փառավոր արարքների մի քանիսի մասին միայն պատմեցինք, նրա ողորմածության չնչին մասը ցույց տվեցինք։

28. Պետրոս բուլղարի[204] դեմ նրա եղբայր Հովհաննեսը, Սիմեոնի այլ մեծամեծների հետ դավադրություն նյութեց։ Դավադրությունը բացահայտվեց, և Հովհաննեսին բրածեծ անելով՝ բանտ նետեցին, իսկ մյուսները հաստ ծանր պատիժներ կրեցին։ Պետրոսը այդ բոլորի մասին Ռոմանոս կայսրին տեղյակ պահեց, և վերջինս ռազմագերիների փոխականության պատրվակով, բայց իրականում Հովհաննեսին ձերբակալելու և Կոստանդնուպոլիս բերելու համար [Բուլղարիա] ուղարկեց հետագայում ռեքտոր դարձած վանական Հովհաննեսին։ Այդպես էլ եղավ։ Նա Հովհաննեսի հետ նավ նստեց և Մեսեմբրիայից եկավ քաղաք։ Շատ չանցած [բուլղար Հովհաննեսը] հրաժարվելով վանականի

սքեմից, ցանկություն հայտնեց ամուսնանալ։ Կայսրը նրան տուն և բազում կալվածներ տվեց, ինչպես նաև կնության համար իր [Ռոմանոս կայսեր] հայրենիքից՝ Արմենիակներից[205] սերող կին. և Կեսարի տանը փառավոր հարսանիք արեց։ Որպես կնքահայր հանդես եկան Քրիստափոր կայսրը և հետագայում ռեքտոր դարձած վանական Հովհաննեսը։

29. Բայց Պետրոսի հարազատ եղբայր Միքայել վանականն էլ ցանկություն ունեցավ տիրանալ բուլղարական իշխանության և մի ինչ-որ բուլղարական բերդում ապստամբություն բարձրացրեց։ Նրան հարեցին Պետրոսի գերիշխանության դեմ դուրս եկող սկյութները[206]։ [Միքայելի] սպանությունից հետո այս [սկյութները] ոտք դրեցին հռոմեական տարածքը և այնպես եղավ, որ նրանք Մակետիսից Ստրիմոնի վրայով մտան Հելլադա և Նիկոպոլիս և համայն շրջաններն ավարառեցին։ Քաղաքը Նիկոպոլիս է կոչվում, քանզի նա կրում է հաղթանակի՝ Նիկեի անունը, հաղթանակ, որ Օգոստոս Սեբաստոսը տարավ Անտոնիոսի և Կլեոպատրայի դեմ և եգիպտացոց պետությունը հռոմայեցիներին ենթարկեց։

30. Մարտ ամսի երկրորդ օրը Ցորոսում մի գիսաստղ ընկավ սյունաշարքերում գտնվող մարդկանց վրա և վեց տղամարդ սպանեց։ Ցորոսի սյունաշարքերում մեծ ու սարսափելի հրդեհ էլ բռնկվեց ամենասուրբ աստվածածնի տաճարի մոտ, հրը ճարակ դարձան Ցորոսի մոմավաճառանոցները, մուշտակի արհեստանոցները՝ մինչև Պսիքա։

31. Ինդիկտիոնի չորրորդ տարվա օգոստոս ամսին վախճանվեց Քրիստափոր կայսրը։ Հայրը նրան աղիողորմ ողբաց ու կոծեց, ավելի սաստիկ, քան ողբում են հանգուցյալին եգիպտացիք, քանզի ինքը հասակն առել էր, իսկ որդիները դեռ մանկահասակ էին։ Քրիստափորի աճյունը ամփոփվեց իր հոր հիշյալ վանքում։

32. Ինդիկտիոնի երրորդ տարվա օգոստոս ամսին, որոշված ժամկետը լրանալու առնչությամբ, Տրիփոն պատրիարքին հեռացրին։ Նա գնաց իր վանքը, ուր և մնաց։ Պատրիարքական աթոռը թափուր մնաց մեկ տարի և 5 ամիս, քանզի Ռոմանոս կայսեր որդի Թեոփիլակտոսը դեռևս չափահաս չէր դարձել։ Ինչպես նախապես ասվեց, որոշել էին նրան պատրիարք անել։

33. Մակեդոնացի Վասիլ անունով մի խաբեբա իրեն հայտարարելով Կոստանդին Դուկաս, իր հետևից շատերին տարավ։ Նրան ձերբակալեց էլեֆանտինոս տուրմարխը՝ Օպսիկիոն [բանակաթեմից]։ Վասիլը բերվեց Կոստանդնուպոլիս և էպարքոս Պետրոսի կողմից զրկվեց

մեկ ձեռքից։ Հարմար առիթ ձեռք գցելով, նա դարձյալ եկավ Օպսիկիոն և իր կտրված ձեռքի տեղը մի պղնձե ձեռք հարմարեցնելով և մի հրս-կայական թուր սարքելով, շրջում էր, վերստին մոլորեցնելով բազում ադքատների, թե ինքը Կոստանդին Դուկասն է։ Նրանց իր հետևից տանելով, նա Ռոմանոսի դեմ հսկայական խռովություն բարձրացրեց[207]։ Նա տիրացավ Պլատիա Պետրա[208] կոչվող մի բերդի, այնտեղ կուտակեց ամեն տեսակի պարեն և դուրս գալով ասպատակ էր սփռում և հանդիպածին կողոպտում։ Կայսրը նրա դեմ [զորք] ուղարկեց և նրան, իր կողմնակիցներին էլ բռնելով, բերեց քաղաք։ Նրան հարցաքննության, բազում խոշտանգումների ենթարկեցին, որպեսզի նա տա իր հետ խռովությանը մասնակից դարձողների անունները։ Նա բազում պաշտոնավոր անձանց գրպարտեց, որ իբր իր հետ են եղել։ Երբ պարզ դարձավ, որ իր մեղադրանքների մեջ ճշմարտության նշույլ չկա, Ամաստրիանոսի [հրապարակում] նրան ողջակեզ արեցին։

34. Ինդիկտիոնի վեցերորդ տարվա փետրվար ամսի երկուսին պատրիարք է ձեռնադրվում կայսեր հիշյալ որդի Թեոփիլակտոսը[209]։ Նա ամբողջությամբ ժառանգել էր հոր ողջախոհությունը, իսկ իր զարգացածությամբ ավելի առաջ էր գնացել։ Նրա աթոռակալության առթիվ Հռոմից ժամանեցին [պապի] նվիրակները, որոնք նրա ձեռնադրությունը հաստատող ժողովական թուղթ բերեցին, և իրենք էլ նրան պատրիարքական աթոռին հաստատեցին։

35. Ռոմանոս կայսեր հիշյալ թոռ Մարիան, Պետրոս Բուլղարի կինը, բազում անգամներ Բուլղարիայից քաղաք եկավ՝ իր հոր և պապին այցելելու։ Վերջին անգամ նա իր երեք զավակների հետ եկավ, երբ իր հայր Քրիստափորն արդեն վախճանված էր և պապից բազում գանձեր ստանալով, առոք-փառոք վերադարձավ։

36. Ռոմանոս կայսրը իր որդի Ստեփանոսի կնության համար բերեց Գաբալասի[210] դուստր և Կատակիլասի թոռ Աննային։ Նա հարսանեկան պսակի հետ արժանացավ և կայսերական պսակին։

37. Ինդիկտիոնի յոթերորդ տարվա ապրիլ ամսին հռոմայեցիների վրա տեղի ունեցավ թուրքերի առաջին արշավանքը[211]։ Նրանք մինչև քաղաքն ընկած տարածքը ասպատակ սփռեցին, բոլոր թրակացիներին կողոպտեցին։ Ռազմագերիների փոխանակություն կատարելու ուղարկվեց պրոտովեստիարիոս և պարադինաստևոն Թեոփանես պատրիկը։ Նրանց հետ նա փայլուն, խելացի բանակցություններ վարեց և ամեն ինչ իր ուզածի պես լուծեց։ Նրանք հիացան ու շատ դրվատեցին նրա խելամտությունն ու լրջախոհությունը։ Այստեղ էր, որ Ռոմանոս կայսրը

ցուցաբերեց իր մեծահոգությունն ու մարդասիրությունը. ռազմագերիների փրկության համար նա դրամ չխնայեց։

38. Ռոմանոս կայսրը Կոստանդնի, իր վերջին որդու կնության համար բերեց Ադրիանոս պատրիկի դստեր, ծագումով Արմենիակներից[212], անունը՝ Հելենե։ Երբ նա փետրվար ամսին վախճանվեց, Ռոմանոսը նրան կրկին ամուսնացրեց, այս անգամ այն Մամասից սերող Թեոփանոյի հետ։

39. Ինդիկտիոնի տասնչորսերորդ տարվա հունիս ամսի տասնմեկին Կոստանդնուպոլսի վրա նավեցին տասր հազար նավերով՝ ծագումով ֆրանկ[213] այսպես կոչված դրոմիտես ռոսները[214]։ Քաղաքում առկա տրիերաներով և դրոմոններով նրանց դեմ ուղարկվեց [Թեոփանես] պատրիկը։ Նա պատրաստի վիճակում բերեց նավատորմիղը, այն առավել ևս ամրակուռ դարձրեց պահքով ու արտասուքով [առ աստված] և ծովամարտում պարտության մատնելու պատրաստակամությամբ գնաց ռոսներին ընդառաջ։ Ռոսները հասան Թեոփանեսին, մոտեցան [Եվքսինյան պոնտոսի][215] Փարոսին (Փարոս է կոչվում այն շինությունը, որի վրա դրված է մի ջահ՝ գիշերը նավողներին ճանապարհ ցույց տալու համար), Թեոփանես պատրիկը նրանց սպասում էր Եվքսինյան պոնտոսի բերանի մոտ (այն Եվքսինյան կոչվեց հետո, սկզբում կոչվում էր Կակոքսինոս[216], այնտեղի ավազակների՝ հյուրընկալվողների վրա անվերջ հարձակումների պատճառով։ Ինչպես պատմում են, նրանց Հերակլեսը ոչնչացրեց, և նավարկողները շունչ քաշելով, նրան Եվքսինոս անվանեցին)։ Նա [Թեոփանես պատրիկը] անակնկալ կերպով նրանց վրա հարձակվեց Հիերոնում (Հրերոն է կոչվում այն պատճառով, որ արգոնավորդները նավելիս այնտեղ սրբարան կառուցեցին)։ Թեոփանեսն իր դրոմոնով առաջինը հարձակվեց, ցրեց ռոսների նավատորմիղի շարքերը, արհեստական հրով նավերից շատերը կրակի տվեց, մնացածներին էլ վնասներ հասցնելով, ստիպեց փախուստի դիմել։ [Թեոփանեսի դրոմոնին] հետևեցին և մնացած դրոմոններն ու տրիերաները և հարձակման անցնելով, ռոսներին գլխովին պարտության մատնեցին, նրանց բազմաթիվ նավերը մարդկանցով հանդերձ ջրասույզ արեցին, շատերին կոտորեցին, իսկ ավելի շատերին էլ գերի վերցրին։ Կենդանի մնացած [ռոսները] նավում են արևելյան կողմը, այսպես կոչված Սգորա[217]։ Նույն ժամանակ նրանց ճամփան կտրելու համար ցամաքով, ձիավորներով և ընտիր զինվորներով նախկին զորավար պատրիկ Վարդաս Փոկասն ուղարկվեց։ Ռոսները պարեն և պիտանի այլ բան հայթայթելու համար Բյու-

Թանիայի շրջանները մի բավական մեծ զորամաս ուղարկեցին: Ահա հիշյալ Վարդաս Փոկասը, հանդիպելով այդ զորամասին, նրան մեծ վնասներ պատճառեց, պարտության մատնեց ու սրի քաշեց: Այն ժամանակ Արևելքից համայն զորքով իջավ նաև ամենաիմաստուն ու խորամիտ Հովհաննես Կուրկուասը՝ սխոլերի դոմեստիկոսը, որ այստեղ ու այնտեղ ցրիվ եկած բազմաթիվ [ռոսների] բռնելով, կոտորեց: Ռոսները Հովհաննես Կուրկուասի հարձակումից սարսափած այլևս չէին համարձակվում ափ դուրս գալ և մնում էին տեղում, իրենց նավերի մոտ, բայց նախքան հռոմեական զորքի իջնելը, նրանք բազում և սոսկալի չարիքներ պատճառեցին, կրակի տվեցին ամբողջ այսպես կոչված Ստենոնը, գերի վերցրածներից ոմանց նրանք խաչում էին, ոմանց՝ գետնին գամում, ուրիշներին էլ թիրախ կանգնեցնելով, նետահար էին անում: Ձեռք գցած հոգևորականների ձեռքերը մեջքին կապելուց հետո, նրանց գլխի մեջտեղում երկաթե գամեր էին գամում: Նրանք բազմաթիվ սուրբ տաճարներ կրակի տվեցին: Երբ վրա հասավ ձմեռը, և նրանք պարենի պակաս զգացին, ապա և սարսափ՝ իրենց վրա եկած սխոլերի դոմեստիկոս Կուրկուասի զորքից, ինչպես և հենց նրանից՝ խոհեմ ու խորամիտ Կուրկուասից, ռազմական արվեստի մեջ հմուտ պատրիկ Թեոփանեսին ծովամարտ տալուց, որոշեցին իրենց երկիրը վերադառնալ: Ջանալով թաքուն կերպով ճողոպրել [հռոմեական] նավատորմիղից, նրանք ինդիկտիոնի տասնհինգերորդ տարվա սեպտեմբեր ամսին հետ, դեպի Թրակիայի կողմերը նավեցին, բայց նրանց դեմ ելավ հիշյալ Թեոփանես պատրիկը, քանզի չկարողացան աննկատ անցնել այդ մշտարթուն ու քաջ մարդուց: Տեղի է ունենում երկրորդ ծովամարտ, որում հիշյալ այրը բազում նավեր ջրասույզ արեց և ռոսներից շատերին կոտորեց: Նավերով փրկվեցին շատ քչերը և Կյուլեի ափերը դուրս գալով, գիշերը վրա հասնելուն պես, փախան: Փայլուն հաղթանակ տարած Թեոփանես պատրիկը հսկայական ավարով վերադարձավ, մեծ պատիվներով ու շուքով ընդունվեց և պարակիմոմենոսի պատվին արժանացավ:

40. Այն պատճառով, որ հիշյալ սխոլերի դոմեստիկոս մագիստրոս Հովհաննեսը պատերազմներում մեծապես աչքի ընկավ, բազում ու փառավոր հաղթանակներ տարավ, ընդարձակեց Հռոմեական [կայսրության] սահմանները, գրավեց հագարացիների բազում քաղաքներ, և, նկատի առնելով այդ այրի ակնառու առաքինությունը, Ռոմանոս կայսրը որոշեց իր թոռ Ռոմանոսի, իր որդի Կոստանդնի որդու համար կնության առնի [Կուրկուասի] գստեր: Կուրկուասի դուստրը Եվփրոսի-

նեն էր, իսկ Կոստանդնի որդին՝ Ռոմանոսը, որ [հետագայում] ներքինացվեց Կոստանդին Ծիրանածինի կողմից և արժանացավ պատրիկի պատվաստիճանին և պրեպոզիտոսի [պաշտոնին]։ Այդ առթիվ Կուրկուասին մյուս կայսրերը նախանձեցին և [Ռոմանոս կայսրը] Կուրկուասին պաշտոնանկ արեց, թեև նա քսաներկու տարի և յոթ ամիս անընդմեջ դոմեստիկոսի պաշտոնն էր վարել։ /41/ Բայց արժե խոսել նրա ծագման, կրթության, կենցաղավարության, հոգու մեծության, մարմնի հզորության և գործերի մասին, այն մասին, թե նա մեր ժամանակների ինչպիսի ուղղափառ հավատացյալ մարդ էր։ Նա ծագումով Արմենիակներից էր[218], Դոկիայի[219] Դարբիդուն վայրից, հայրը հայտնի մարդ էր, մեծահարուստ պալատական, հիկանատների դոմեստիկոս Հովհաննեսի որդին։ Պատմում են, որ [Հովհաննես Կուրկուասը] սուրբ գիրքը ուսանել էր իր ազգական, Գանգրայի մետրոպոլիտ Քրիստափորի մոտ։ Երգ է դարձել մետրոպոլիտի ասածը, թե «Այս Հովհաննեսը հռոմայեցիների փրկիչն ու անդորրն ապահովողն է լինելու»։ Նա առավ հագարացիների բազում, մեծաթիվ քաղաքներ, ամրոցներ, շրջաններ ու վայրեր, կրկնապատկեց տարածքը Հռոմեական [կայսրության], որը նախապես մինչև Խարսիանոն բերդը և Հյուպսիլե[220] և Հալիս գետը գտնվում էր քրիստոսուրացների տիրապետության ներքո։ Ռոմանոս կայսեր հավատարիմ ու ազնիվ սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասը հռոմայեցիների սահմանները հասցրեց Եփրատ ու Տիգրիս, այդ տարածությունները Ռոմանիային ընծայեց որպես պտուղ ու նվեր, կայսրն այդ շրջաններից ժողովուրդ ու զինվորներ ձեռք բերեց, սահմանեց այնտեղ տարեկան բազում հարկեր գանձել։ Կուրկուասն այնտեղից բազում ավար, զենք ու հագարացի ռազմագերիներ տարավ։ Քանզի նա անձնապես բազում պատերազմների մասնակից դառնալով, քրիստոսուրացների քաղաքներն առավ։ Ո՞վ է ի վիճակի սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասի գրաված ու հարկատու դարձրած քաղաքներն հանվանե թվարկել։ Նա քսաներկու տարվա ընթացքում հազարից ավելի քաղաք դրավեց և Ռոմանիային հպատակեցրեց։ Տեսնելու բան էր մշտարթուն Հովհաննես Կուրկուասին, երբ նա մարտի պատրաստ ռազմաշարքերին դիմում էր հռոմեական կոչերով ու համոզիչ հորդորներով։ Նրան կարելի է նմանեցնել Տրայանոսին ու Բելիսարիոսին, անվանել Նոր Տրայանոս ու Նոր Բելիսարիոս։ Եվ եթե մեկը այս այրին նրանց հետ համեմատության մեջ դնի, կտեսնի, որ Կուրկուասի սխրագործությունն ու քաջագործությունները ավելի շատ են։ Եթե կան այնպիսիք, որոնք շատ են ցանկանում իմանալ Հովհան-

նես Կուրկուասի քաջագործությունների մասին, ապա այդ մասին կա պրոտոսպաթար և դատավոր Մանուիլի՝ ութ գրքից բաղկացած երկասիրությունը[221]։

42. Արժե պատմել նաև սխոլերի դոմեստիկոս Հովհաննես մագիստրոսի հարազատ եղբոր, խալդիա [բանակաթեմի] զորավար Թեոփիլոս պատրիկի քաջագործությունների ու սխրանքների մասին։ Սա նշանակվելով Խալդիայում մոնոստրատեգոս, իրեն չտվեց, ինչպես շատերը, զեխության, շռայլության ու հեշտամոլության, այլ խոնջության ու չարքաշության. նա ասպատակում էր հագարացիների գյուղերն ու շրջանները, ամենաանառիկ ու ամենահրաշալի Թեոդոսուպոլսի բերդում և նրա շրջակայքում գտնվող բերդերում բնակվող հագարացիներին գերեվարեց, ստիպեց նրանց Հովհաննես մագիստրոսին հարկատու և հպատակ դառնալ[222]։ [Թեոփիլոսը] Միջագետք [բանակաթեմում] էլ աչքի ընկավ որպես գերազանց զորավար, նրան համարում էին Հուստինիանոս կայսեր ժամանակ հռչակված մի նոր Սողոմոն զորավար[223]։ Սա եկող սերունդների թոռ թողեց՝ Հովհաննեսին, Ջմշկիկ մականվանյալին։ Թեոփիլոսն իր խոհեմությամբ, քաջությամբ ու անխոնջությամբ արժանացավ պատրիկի պատվաստիճանին և նշանակվեց տարբեր բանակաթեմերի զորավար, իսկ հետագայում, Նիկեփոր Հաղթողի՝ Փոկաս մականվանյալի թագավորության ժամանակ, դարձավ մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս։ Բայց սրանց մասին անհրաժեշտ չափով կխոսվի իր տեղում, ինչպես նաև մագիստրոս Հովհաննեսի, Կուրկուաս մականվանյալի որդու, իր արտակարգ քաջությամբ ու արիությամբ աչքի ընկած, տարբեր բանակաթեմերի զորավար Ռոմանոս պատրիկի մասին։

43. Ահա երբ սրանք այսպես բարգավաճում էին, զորավիգ կանգնում ու պայքարում հանուն քրիստոնեական հավատքի, Հռոմեական կայսրության հպատակ դարձնում քաղաքներ, շրջաններ ու գյուղեր և Ռոմանոս կայսեր հարկատու՝ քրիստոսուրացներին. հավատացյալների և [Քրիստոսի] ճշմարիտ ծառաների դեմ անվերջ մաքառող Բելիարը[224], չկարողանալով տանել քրիստոնյաներին՝ նրանց հանդեպ տածող բաղում ու անափ երախտագիտությունը, այդ Բելիարի դրդմամբ ոմանք Ռոմանոս կայսեր առջև զրպարտեցին դոմեստիկոս Հովհաննես մագիստրոսին, թե իբր նա հռոմայեցիների թագավորության վրա աչք ունի. այդ առթիվ՝ պատրաստ է զորք, որ նա իբր տարբեր վայրերում ու շրջաններում անարդարություններ ու հափշտակություններ է գործել։ Ռոմանոսն այդ տեղերը մարդիկ ուղարկեց ու ստուգումներ կատարելով,

ոչինչ չբացահայտեց, որով նրան վերականգնեց իր պաշտոնում։ Երբ մյուս [կայսրերը] նախանձից դրդված նման մեղադրանքներ ներկայացրին, նա պաշտոնանկ արվեց և նրա փոխարեն դոմեստիկոս նշանակվեց Ռոմանոս կայսեր ազգական Պանթերիոսը։

44. Ռոմանոս կայսրը Կոստանդնուպոլսի բոլոր քաղաքացիների՝ սկսած մեծահարուստներից, վերջացրած աղքատներով ու չքավորներով, բոլոր բացահայտ պարտքերը մարեց. ինչպես ասում են ոմանք, նա վճարեց տասնինը կենտինար։ Այդ առթիվ նա պարտամուրհակները խալկեի ծիրանի Օմֆալիոնում[225] կրակի տվեց։ Բոլորը շնորհապարտ աղոթեցին կայսեր համար։ Իր թագավորության քսաներկուերորդ տարին նա մարեց քաղաքացիների բոլոր տան վարձերը[226], ամենացածրից մինչև ամենաբարձրը։ Չորեքշաբթի և ուրբաթ օրերը, գնալով մետաստասիմա[227], ամեն մի պոռնիկին նվիրում էր երկուական արծաթե դրամ, ճգնավոր վանականներին ու մայրապետներին էլ հոգ էր տալիս՝ երեքական ոսկեդրամ։ Սա բազմաթիվ եկեղեցիներ ու վանքեր կառուցեց, ոսկեթել պատմուճաններ և ափսեներ ու սկիհներ նվիրաբերեց[228]։ Նա Մավրիանոսի վանքում հյուրանոց շինեց, ախոռներ և շատ գեղեցիկ տներ՝ մահճակալներով, շրջաններից եկողների, ինչպես և դատական գործ ունեցողների համար։ Ի վերա ամենայնի նա կարգադրություն արեց ու հրահանգ տվեց նրանց ձիերի ու մարդկանց կերակրման մասին։ Նա նրանց կցեց և տներ, որպեսզի լիուլի հոգան նրանց կարիքները։ Նա նման բան արեց այն նկատառումով, որ շրջաններից դատական գործով քաղաք եկողները իր կողմից սնունդ ստանան և ապրելու տեղով ապահովված լինեն։ Նա սահմանեց նաև, որ իր գերեզմանի վրա յուրաքանչյուր օր բաժանվի 3 բյուր հաց, չորեքշաբթի և ուրբաթ օրերին Պրետորիոնի, խալկեի և Նումերաների [բանտերի բանտարկյալներից] յուրաքանչյուրին տրվի տասնհինգական փող[229], իսկ ավագ ուրբաթ օրը բոլոր բանտարկյալներին՝ մեկական դահեկան։ Կարգադրեց նաև, որ Օլիմպոսի, Կյումինայի, Աթոսի, Բարաքեոսի և Լատրոսի բոլոր վանականները ստանան մեկական դահեկան՝ իր սեփական վանքից։

45. Ինդիկտիոնի առաջին տարվա ապրիլ ամսին հսկա բանակով դարձյալ ներխուժեցին թուրքերը[230]։ Պարակիմոմենոս Թեոփանես պատրիկը գնաց և նրանց հետ հաշտություն կնքեց՝ պատանդ առնելով երևելի մարդկանց, որը և պատճառ դարձավ, որ խաղաղությունը հինգ տարի պահպանվի։ Ռոմանոս կայսրը Մակեդոնիայի և Թրակիայի բազում քաղաքներ ի հիմանց վերակառուցեց, մի քանի քաղաքներ էլ վերանորոգեց։ Բացի այդ, նա թագավորանիստ քաղաքում նշանավոր պա-

լատներ նորոգեց, ապա և ընդարձակ ու բերքառատ մարգագետիններ գցեց, որոնք հաճույք են պատճառում։ Նա իր հոգու փրկության համար ծերանոցներ, հյուրանոցներ և հիվանդանոցներ կառուցեց։

46. Ինդիկտիոնի երկրորդ տարին Ռոմանոս կայսրը Լոնգիբարդիայի զորավար Պասքալիոս պրոտոսպաթարին[231] Ֆրանկիայի ռեքս Հուգոնի[232] մոտ ուղարկեց՝ նրա դստեր կնության խնդրելու իր փեսա Կոստանդնի որդի Ռոմանոսի[233] համար։ Հիշյալ Պասքալիոսը առնելով նրան, բազում գանձերով քաղաք բերեց։ Ամուսնության հանդեսը տեղի ունեցավ ինդիկտիոնի երրորդ տարվա սեպտեմբեր ամսին։ Նա իր ամուսնու հետ հինգ տարի ապրեց, վախճանվեց իր սկեսրայր Կոստանդնի ինքնակալության[234] օրերին։

47. Դեկտեմբեր ամսին փչեց ուժգին և սաստիկ քամի, ձիարշավարանում փուլ եկան կայսերական գահի դիմաց գտնվող այսպես կոչված դեմոսները, որոնք ջարդեցին և իրենցից ներքև եղող պատվանդաններն ու անդրիները։ Մեկ տարի անց, նույն ամսին Ռոմանոս կայսեր որդիները իրենց հոր գահընկեց արեցին։

48. Հռոմեական զորքը պաշարել էր Եդեսիա քաղաքը[235], որտեղ էր ամփոփված Քրիստոսի արգո վարշամակը։ Քաղաքի բնակիչները, գտնվելով անելանելի վիճակում, Ռոմանոս կայսեր մոտ դեսպանություն ուղարկեցին, խնդրեցին վերացնել պաշարումը, խոստանալով դրա դիմաց Քրիստոսի սուրբ վարշամակը տալ։ Իրենց նման նվերի համար նրանք պահանջեցին գերի ընկած անվանի մարդկանց, ինչպես և խրիսովուլ գրություն, որ հռոմեական զորքն այսուհետև չի ասպատակի իրենց տարածքը։ Ինչ որ տեղի ունեցավ։ Սուրբ վարշամակը, այն է՝ դաստառակը, ուղարկվեց, և երբ այն բերողները մոտեցան Կոստանդնուպոլսին, պարակիմոմենոս Թեոփանես պատրիկը Սանգարիոս գետը գնաց դիմավորելու պայծառ ջահալուցությամբ, պատշաճ ակնածությամբ և հոգևոր երգասացությամբ։ Օգոստոս ամսի տասնհինգին վարշամակի հետ նա մտավ քաղաք. կայսրը գտնվում էր Վլախեռնայում, որտեղ և երկրպագեց այն։ Հաջորդ օրը կայսեր երկու որդիներ՝ Ստեփանոսն ու Կոստանդինը, փեսան՝ Կոստանդինը, Թեոփիլակտոս պատրիարքի հետ գնացին Ոսկե դուռը և պատշաճ ակնածությամբ առան ու ոտքով բերեցին մինչև սուրբ Սոփիայի տաճարը։ Թափորի առջևից ընթանում էին բոլոր սենատորները, ինչպես և մեծաթիվ ջահակիրներ։ Վարշամակը տաճարում երկրպագելուց հետո տարան պալատ[236]։

49. Այդ օրերին քաղաք ժամանեց ինչ-որ հայ հրեշ՝ իրար միացած

երկվորյակ եղբայրներ։ Նրանց մարմնի բոլոր անդամները կատարյալ էին, բայց պորտից մինչև փորի ցածր մասը՝ իրար կպած, դեմքերը՝ իրար գիմաց[237]։ Նրանք երկար ժամանակ քաղաքում մնացին, բայց բոլորի կողմից ինչ-որ արտառոց հրեշ համարվելով, որպես չարագուշակ նշան քաղաքից վտարվեցին։ Նրանք դարձյալ քաղաք եկան Կոստանդնի ինքնակալության օրերին։ Երբ [երկվորյակներից] մեկը վախճանվեց, փորձառու բժիշկներ մեծ վարպետությամբ վիրահատեցին իրենց միացնող մասը, հուսալով, որ մյուսը կապրի[238]։ Նա երեք օր ապրելուց հետո վախճանվեց։

50. Ինչպես վերևում ասվեց, կայսրը բոլոր վանականների շրջանում անչափ վստահություն էր վայելում, նա արտակարգ հարգանք ու չափից ավելի ակնածանք էր տածում երևելի վանական Սերգիոսի հանդեպ, որը գերագույն դատավոր Կողմաս մագիստրոսի եղբայրն էր։ [Ռոմանոս կայսրը] վերանորոգեց և Մանուիլի վանքը, նա ի հիմանց կառուցեց սուրբ Պանտելեիմոնի եկեղեցին ու վանքը, որի մականունն է Օֆրոսի նավահանգիստ։ Նա այնտեղ ութ հարյուր հոգու վանական խուցեց, գրավոր սահմանելով նաև, որ նրանք իրենց սննդի համար թոշակ ստանան։ Այդ թոշակը նա տվեց վանական Սերգիոսին՝ իր հոգևոր հոր։ Նա բոլոր աքսորականներին ներում շնորհեց և նրանց բաղում դրամ տվեց. իր ջահրնկեց լինելու պահին մի աքսորական անգամ չկար։ Այս Սերգիոսը Փոտ պատրիարքի զարմիկն էր, որին Փոտի հետ ունեցած արենակցական կապից ավելի նրա հոգու վեհությունն էր վսեմացնում, քանզի անչափ առաքինի ու գիտուն մարդ էր, այն աստիճան, որ դժվար է ասել՝ այդ շնորհքներից ո՞րն էր նրա մեջ գերազանցում, չէ՞ որ նա երկուսով էլ ծայրահեղ օժտված էր։ Ամեն դրականի կողքին նա աչքի էր ընկնում նաև բանավիճելու իր շնորհքով, հմայիչ խառնվածքով, համեստությամբ։ Նա մեր օրերի իմաստունների նման մեծամիտ չէր, ոչ էլ գոռոզ ու պարծենկոտ, նրա խոսքը մեղրից քաղցր էր, բարքերը՝ աներեր ու կայուն, տրամադրությունը՝ համեստ։ Ռոմանոս կայսրը այս փառաբանված այրին մշտապես մոտն էր պահում, որպես իր կյանքը տնօրինող չափ ու կշիռ։ Նա շատ էր հորդորում կայսեր՝ հոգալ երեխաների մասին, անկիրթ չթողնել, թե չէ վատ ճանապարհով կընթանան, իր գլխին կգա Հեղիին պատահածը, Հեղիի, որ պատժվեց իր երեխաների անօրինության պատճառով[239]։ Բայց իր հետ էլ նույն բանը պատահեց։

51. Երբ Ռոմանոսին որդիները գահրնկեց արեցին և Պրոտե կղզին աքսորեցին, նրա դժբախտությունն ամոքող և վիշտը ցավազրկող սպե-

*ղանի դարձյալ այդ Սերգիոսը եղավ։ Այն ժամանակ Ռոմանոսի մոտ եղավ և ամենաբարեպաշտ Պոլիևկտոս վանականը, որ հիշյալ Սերգիոսից ոչ պակաս չափով էր նրան մխիթարում։ Իր առաքինի վարք ու բարքի համար, Թեոփիլակտոս պատրիարքի մահից հետո, Կոստանդին կայսրը հենց սրան պատրիարք նշանակեց։*

*52. Ռոմանոս կայսրը, որ արդեն զառամյալ էր և հիվանդությամբ էր տառապում, վեց հազար հիսուներեք թվականին թագավորության հարցերը լուծեց՝ կտակ թողնելով, համաձայն որի առաջին կայսրը Կոստանդին Ծիրանածինն է, ապա ըստ հերթականության երկրորդ և երրորդ կայսր՝ նրա որդիները, նրանց վերաբերյալ պարզ ու հստակ կարգադրություն անելով, որ եթե առաջին կայսեր հանդեպ այս կամ այն ձևով մեղանչեն, իսկույն հեռացվեն իշխանությունից։*

*53. Քանի որ աստված ուզում է մարդուն փրկած լինել բազում եղանակներով, թույլ տվեց, որ Ռոմանոս կայսրը անակնկալ փորձանքի հանդիպի, որպեսզի այդ ձևով նա խելքի գա և, գիտակցելով գործած մեղքերը, փրկության արժանանա։ Աստված թույլ տվեց, որ Ռոմանոսի որդի Ստեփանոսը իր դեմ ծառանա, ինչպես անցյալում Աբիսողոմը Դավթի՝ հարազատ հոր դեմ[240]։ Ստեփանոսը իր այս քայլի համար խորհրդական ունեցավ նախկին վանական Մարիանոս Արգիրոսին, Վասիլ Պետինոս պրոտոսպաթարին և Մանուիլ Կուրտիկին, իրեն գործակցեցին և մյուս կայսրերը, և Ռոմանոսին խայտառակ կերպով պալատից դուրս հանելով, աքսորեց Պրոտե կղզին ու վանական խուզեց։*

## ԻՆՔՆԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ ԿՈՍՏԱՆԴՆԻ

*Այսպիսով, ինքնակալ մնաց Ռոմանոսի փեսա Կոստանդինը՝ ինդիկտիոնի երրորդ տարվա դեկտեմբեր ամսի քսանին, վեց հազար չորս հարյուր հիսունչորս թվականին։ Նա իսկույն Վարդաս Փոկասին մագիստրոսի պատվաստիճանը շնորհեց և այն պատճառով, որ նա բազում տարիներ պատերազմներում սխրանքներ էր գործել, նշանակեց սխոլերի դոմեստիկոս, Կոստանդին Գոնգիլեսին՝ ծովակալ, և համապատասխան ոմանց՝ ստրատիարխներ։ Ապա Վասիլին՝ մականունը Պետինոս, շնորհեց պատրիկի պատվաստիճանը և մեծ հետերիարխ նշանակեց, Արգիրոսների ընտանիքից սերող Մարիանոսից հանելով վանականի սքեմը, նրան պատրիկի պատվաստիճանը շնորհեց և նշանակեց ախոռապետ։ Նմանապես և Մանուիլին՝ Կուրտիկ մականվանյալին, շնորհեց պատրիկի պատվաստիճանը և նշանակեց վիգլայի դրունգար։ Այս երեքը այն պատճառով, որ թագավորության ձգտելով տիրոջ[241] հանդեպ բրո-*



17—1069

նություն գործեցին. մեկ է՝ Քրիստոսի և նրա դեմ անօրեն կերպով ձեռք բարձրացրին, շատ չանցած աստծո արդար դատաստանին արժանացան. բացահայտվեց, որ նրանք բոլորն էլ պետական դավաճանություն են գործել և չարաչար մահով կյանքից զրկվեցին։ Բայց նրանց մասին մենք ավելի մանրամասն ու հանգամանորեն կխոսենք գալիք շարադրանքի մեջ։

2. Քառասուն օր անց, հունվար ամսի քսանյոթին, Կոստանդինը կասկածելով կայսր Ստեփանոսի և նրա եղբայր Կոստանդնի վրա, որ նրանք հանկարծ կարող են իր նկատմամբ էլ նույն կերպ վարվել, շատ ճիշտ դատելով, որ եթե նրանք հարազատ հոր չխնայեցին, ապա հնարավո՞ր բան է, որ իրեն խնայեն, նրանց հետ սեղան նստեց, և երբ դեռ ճաշը նրանց բերանում էր, Թոռնիկյաններ[242] կոչվածները, սպատրիկ Մարիանոսը և այդ գործի համար նախապատրաստված մարդիկ ձերբակալում են նրանց և պալատից հեռացնելով մերձակա կղզիները արքեյափակում ու վանական խուզում։ /3/ Շատ չանցած նրանք թույլտվություն խնդրեցին այցելելու իրենց հարազատ հոր և երբ գալով Պրոտե կղզին՝ ականատես եղան նրան վանականի սքեմը հագած, սաստիկ ցավ ապրեցին։ Հայրը տեսնելով նրանց, արտասվեց ու ասաց. «Որդիս ծնայ եւ բարձրացուցի, եւ նոքա զիս անարգեցին»[243]։ Դրանից հետո նրանք աքսորվեցին՝ Ստեփանոսը՝ Պրիկոնեսոս։ Այդ կղզին նախապես Ներրիա էր կոչվում, և Պրիկոնեսոս վերանվանեցին սամոսցի գաղթականները՝ ըստ գուշակի հիշած ջրամանի. երբ սամոսցիք եկան կղզին և ճաշի նստելով չէին կարողանում իմանալ՝ ո՞րտեղից պիտի ջուր ճարեն և այդ առթիվ աստծուն պաղատում էին, մի կին ասաց նրանց. «Եթե ջրաման ունեք, ես ձեզ ջուր կտամ»։ Ջուրն ստանալով, նրանք հող էլ ուզեցին՝ համաձայն գուշակության։ Կինը հող էլ տվեց, և դրա վրաահա կղզին նրանք Պրոքոոս[244] կոչեցին և արծաթե դրամների վրա ջրաման դրոշմեցին։ Ստեփանոսը Պրիկոնեսոսից տարվեց Հռոդոս, Հռոդոսից՝ Միտիլենե, իսկ Կոստանդինը՝ Տենեդոս, այնտեղից էլ՝ Սամոթրակե։ Հենց այստեղ նա որոշեց խռովություն բարձրացնել, սպանեց իր հսկողության համար կայսրից նշանակված Նիկետաս սպրոտոսպաթարին, բայց ինքն էլ հսկիչների կողմից սրի քաշվեց։ Նրա մարմինը քաղաք բերվեց և մեծ պատիվներով հողին հանձնվեց, այնտեղ, որտեղ թաղված էր իր առաջին կինը, անունը՝ Հելենե։ Ինչ վերաբերում է Միքայելին, Քրիստափոր կայսեր որդուն, ապա Կոստանդին Ծիրանածինը, հանելով նրա կայսերական կոչիկները, նրան դարձրեց կղերական, շնորհեց մագիստրոսի պատվաստիճանը և ռեքտոր

նշանակեց։ Ովքեր Ռոմանոս կայսեր գահընկեցության մասնակցել էին, ահա նրանց բոլորի գլխին նման փորձանքներ եկան. Վասիլ մագիստրոսին բերեցին քաղաք և ծանակելով աքսորեցին. աքսորում էլ նա տառապանքի ու վախի մեջ սպառեց իր կյանքը։ Մարիանոսի գլխին մի կին բարձրից քար նետեց և նրան Հուդայի բաժնին արժանացրեց[245]։ Զորավար Դիոգեննեսին Մալելեինոսի երկու հեջուբները[246] նիզակահար արեցին ու չարաչար սպանեցին, իսկ Կուրտիկը[247] Կրետե նավելիս, դրոմոնիոնի հետ ջրասույզ եղավ։ Կլադանին էլ խռովության մեջ բռնեցին և քիթն ու ականջները կտրեցին։ Նմանապես Փիլիպպոսին ու մնացածներին։

4. Ռոմանոս կայսրը երազում երկու սպիտակազգեստ ներքինի է տեսնում, որոնք իր ձեռքերից բռնած, մորից մերկ բերեցին Տրիկյումբալոս։ Ցուկանիստերիոնր բոցերի մեջ էր, և հրկիզողները բազում հեջուբներ էին։ Ռոմանոսը երազում տեսնում է իր մոտ եկած աստվածածնին, որ խոսում էր ներքինիներին՝ Ռոմանոսի ողորմածության մասին։ Աստվածածինը, հագցնելով Ռոմանոսին, մտցրեց Տրոպիկե։ Հեջուբների ուղեկցությամբ այնտեղից անցան կապանքների մեջ առնըված, սրակոտոր եղած տեր Կոստանդինը[248] և Հերակլիայի մետրոպոլիտ Անաստասիոսը։ Հեջուբները նրանց [դահիճներին] հանձնեցին. որոնք և նրանց այդ կրակի մեջ գցեցին։ Այն օրը, երբ կայսր Ռոմանոսը տեսավ այդ երազը, հենց այդ օրը երկուսն էլ վախճանվեցին։ Ռոմանոս կայսրը դիմեց բոլոր վանքերն ու լավրաները, ինչպես նաև սուրբ քաղաքը և Հռոմ և երեք հարյուր սուրբ վանականներ հրավիրեց։ Ավագ հինգշաբթի օրը նա հանեց հագած պատմուճանն ու վանականի զգեստները, բոլորի ներկայության կանգնեց եկեղեցում՝ այն պահին, երբ երեցը պետք է բարձրացներ աստվածային սուրբ հացը, և բոլորի ներկայության դատափետեց թղթի վրա արձանագրած իր գործած բոլոր մեղքերը։ Երբ վանականները գոչում էին «տեր ողորմյա»-ն և արցունք էին թափում, Ռոմանոսը յուրաքանչյուրին երկրպագեց ու քավություն աղերսեց, և բոլոր վանականները նրան քավություն տվեցին, և նա հաղորդության արժանացավ։ Երբ նրանք սեղանատուն էին բարձրանում, Ռոմանոսը մի տղայի խարազան ու ռեկա[249] տվեց, կարգադրեց հարվածել իր ոտքերին, ասելով. «Ջար վանական[250], սեղանատուն մտիր»։ Երբ բոլորը նստեցին, նստեց և կայսրը՝ լալով ու կոծելով։ Նա կնքեց այն թուղթը, որտեղ արձանագրված էին իր գործած մեղքերը և ուղարկեց տեղում մնացած վանականներին, այդ թվում և սուրբ Դերմոկայիտեսին[251]։ Ռոմանոսը երկու կենտինար [ոսկի] ուղարկեց Օլիմպոսի

*վանականներին, որպեսզի նրանք իր հոգու փրկության համար աղոթեն։ Դերմոկայիտեսը, ստանալով թուղթն ու դրամը, բոլոր վանականներին կարգադրեց երկու շաբաթ ծոմ պահեն և աղոթեն նրա մեղքերի քավության համար։ Մի գիշեր, երբ Դերմոկայիտեսը կանգնած աղոթում էր, լսեց անտեսանելի մեկի ձայնը. «Հաղթեց մարդասիրությունն աստծո»։ Երբ այդ ձայնը նա երրորդ անգամ լսեց, առավ թուղթը և բացելով տեսավ, որ այն մաքուր էր, այնտեղ մեկ տառ անգամ չկար գրված։ Նա կանչեց բոլոր վանականներին և այն ցույց տվեց, որի առթիվ բոլորն էլ փառավորեցին աստծուն։ Բոլոր վանականները մեղքերի քավության մասին փաստաթուղթ կազմեցին և Ռոմանոս կայսեր ուղարկեցին։ Այդ փաստաթուղթն էլ իր հետ թաղեցին, երբ նա վախճանվեց։*

*5. Ռոմանոս կայսեր՝ կղզում գտնված ժամանակ Թեոփիլակտոս պատրիարքը և պարակիմոմենոս Թեոփանես պատրիկը որոշեցին նրան դարձյալ գահ բարձրացնել։ Իրենց որոշումը նրանք հայտնեցին Ռոմանոսին և, նրա հավանությանը արժանանալով, իրենց ծրագիրն իրականացնելու հարմար առիթ էին սպասում։ Բայց նրանց ծրագիրը բացահայտվեց, այդ մասին տեղյակ պահեցին Կոստանդին կայսեր, որը բոլոր մասնակիցներին պատժեց. Թեոփանես պատրիկին աքսորեց, պինկերնես Գեորգ պրոտոսպաթարին և պրիմիկերիոս Թովմային, բրածեծ անելով ու խուզելով, աքսոր ուղարկեց։*

*6. Ինդիկտիոնի 6-րդ տարվա դեկտեմբեր ամսին ոմանք միտք արեցին կղզում գտնվող Ստեփանոս կայսեր գահ բարձրացնել և Կոստանդին կայսեր դեմ ղավ նյութեցին։ Դավադրության մասին Կոստանդնին տեղյակ պահեց Միքայել Դիաբոլինոսը[252]։ Կայսրը դավադիրներին ձերբակալեց, ոմանց քիթն ու ականջները կտրեց, մյուսներին սաստիկ բրածեծ անել տվեց և էշ նստեցնելով ու քաղաքով մեկ ծաղրուծանակի ենթարկելով, աքսոր ուղարկեց։*

*7. Ինդիկտիոնի վեցերորդ տարվա հունիս ամսի[253] տասնհինգին Պրոտե կոչվող կղզում վախճանվեց Ռոմանոս կայսրը։ Նրա մարմինը բերեցին և ամփոփեցին իր վանքում։*

*8. Մոռացա պատմել մի շատ հետաքրքիր դեպքի մասին։ Երբ Կոստանդին Ծիրանածինի դրդմամբ պալատից հեռացվեցին Ստեփանոս և Կոստանդին կայսրերը, սխոլերի նախկին դոմեստիկոս մագիստրոս Հովհաննես Կուրկուասի, մագիստրոս Ռոմանոս Սարոնիտեսի և ուրիշ զանազան բնակարաններ կոխեցին[254], որը պատճառ դարձավ հափշտակությունների, որով նրանք սնանկացան։ Կոստանդին կայսրը տեսնելով, թե ինչպես նրանք հանկարծ ու անակնկալ սդքատացան, դթաց*

և էպարքոս Թեոփիլոսին[255] կարգադրեց հավաքել հափշտակվածը և տերերին վերադարձնել։ Թեոփիլոսն իր հերթին նոր կարգադրություն արեց իր պրոտոկանգելլարիոսին և Ջոնարաս կոչվածին։ Բայց նա, լինելով հմուտ գող և արատավոր մարդ, իր ձեռքն էր գցել նրանց բնակարաններր և մեծ ջանքեր թափելով, ամեն ինչ յուրացրեց և՞իր անհագ ախորժակը հագեցրեց, այնպես որ հազիվ տասներորդ մասը տերերին վերադարձրեց։ Ո՞վ է ի վիճակի պատմել այդ խարդախ մարդու անափ ու անսահման նենգության ու վատության մասին։ Նա հռոմայեցիների պետության ախտն ու արատը եղավ։ Այդ մարդը ո՞ր մի խայտառակ գործում ամենից ավելի աչքի չընկավ։ Նա կարողանում էր բոլորին համոզել, երդումներով հավաստիացնել, թե ասածը ճշմարիտ է և ստույգ։ Տարածված համբավի համաձայն, նա ամեն ինչում հաջողություն էր ունենում, քանզի օգնության էր կոչում դևերին, որով անգամ Կոստանդին կայսրն անձնապես թեև տարբեր եղանակներով ցանկացավ նրան հեռացնել, հաջողություն չունեցավ, ընդհակառակը, նրան բարիք արեց ու նվերներ շնորհեց։ Այդ մարդու շողոքորթության ու կեղծավորության, անսահման անամոթության, անհավատարմության, նրա արատավոր ու աննկարագրելի ագահության մասին ավելի մանրամասն ու հանգամանորեն կխոսեմ գալիք շարադրանքի մեջ։

9. Երբ Կոստանդինը մնաց ինքնակալ կայսր, նա իր պրոտովեստիարիոս Վասիլին, իրենից առաջ թագավորած Ռոմանոսի՝ հարճից ծնված բնական որդուն[256] շնորհեց պատրիկի պատվաստիճանը և նշանակեց պարակիմոմենոս և սենատի պարադինաստեոն։ Վասիլը խելամիտ ու դարգացած մարդ էր և բոլոր հարցերում կայսեր ծառայում էր լավ և ինչպես պետք էր։ Մարդասեր Կոստանդինը որոշեց տարսոնցիների[257] հետ գերիների փոխանակություն կատարել, քրիստոսուրացների ձեռքում գտնվող քրիստոնյա գերիներին փրկել, քանզի նրանք երկար տարիներ տառապում էին կապանքների ու տվայտանքների մեջ։ Նա այդ գործի համար վերևում հիշված, անցյալում սխոլերի դոմեստիկոսի պաշտոնը վարած մագիստրոս Հովհաննեսին՝ Կուրկուաս մականվանյալին ուղարկեց, խոհեմ, լրջմիտ, պետական գործերում փորձ ունեցող մեկին, ինչպես և մագիստրոս Կոզմասին, իմաստուն ու իրավագետ մեկին, քաղաքային բոլոր դատարանների նախագահին։ Գերիների փոխանակությունը նրանք կատարեցին Լամոս գետի[258] ափին, որի ժամանակ ոչ մի ներհակ կամ նենգ բան տեղի չունեցավ։ Այդ գործը գլուխ բերելուց հետո նրանք վերադարձան և Կոստանդին Ծիրանածինի կողմից սիրալիր ընդունելության արժանացան։

10. Կայսեր հիշողության մեջ դեռևս թարմ էին այն անարդարությունները ու վնասները, որ Ռոմանոսի թագավորության օրոք կրեցին թշվառ ու ողորմելի աղքատները զորավարների, պրոտոնոտարների, զինվորների ու ձիավորների կողմից։ Դրա համար նա բարեպաշտ ու առաքինի մարդիկ ուղարկեց, որպեսզի տարբեր ժամանակներում տառապյալ աղքատների ուսերին դրված անտեղի հարկերի ծանր բեռը թեթևացնի։ Նա Անատոլիկոն բանակաթեմն ուղարկեց մագիստրոս Ռոմանոս Սարոնիտեսին, Օպսիկիոն՝ մագիստրոս Ռոմանոս Մուսելեին, Թրակեսիոն՝ պատրիկ Փոտին, Արմենիակների՝ Լևոն Ագելաստոսին[259], և այդպես մնացած բանակաթեմերը։ Նրանք կայսեր մղումով աղքատներին մի փոքր շունչ քաշել տվեցին։ Դա աստծո աջակցությամբ կայսեր գործած սխրանքն էր, ձեռք բերած հաջողությունը։ Հպատակ ժողովուրդը այդպես էլ բնորոշեց, ասաց, որ նա ինչպես արժիվ թևարկում էր իր [թագավորությունը]։ Նա երբևիցե չի զայրացել ո՛չ իշխանների, ո՛չ միջակների և ո՛չ էլ ցածր դասի մարդկանց վրա, հակառակ որ բացահայտել է նրանց շատերի՝ և՛ հասարակության, և՛ իր հանդեպ գործած մեծ ոճրագործությունները։ Քրիստոսին նմանվելով, նա բարերարություններով ու նվիրատվություններով էր փոխհատուցում, դատաստանը թողնելով արդար դատավորին[260]։ Նա քաղաքի էպարքոս Թեոփիլոսին, ուսումնական, քաղաքացիական օրենքների գիտակ մարդուն, շնորհեց պատրիկի պատվաստիճանը և քվեստոր նշանակեց, իսկ նրա փոխարեն էպարքոս նշանակեց Կոստանդին պրոտոսպաթարին, որն այն ժամանակ միստիկոս էր և փիլիսոփաների ղեկավար, խոսքով ու գործով գովելի մի մարդ։ Սենատի անդամներից և ոչ մեկը չուներ նրա գիտելիքներն ու իմաստությունը։ Այս ձևով ահա Կոստանդին կայսրը էպարքոսությունն ապահովեց օրինավորությամբ և արդարությամբ։

11. Թեոփիլակտոս պատրիարքը հիվանդացավ, նա մահամերձ էր, բայց երբ մի փոքր կազդուրվեց, իրեն այլևս չհանձնեց նվերներով էլ եպիսկոպոս ձեռնադրելու վատաբարո ախտին, ձիարշավներով ու այլ հիմարություններով չտարվեց։ Դարձյալ հիվանդանալով նա հոգին ավանդեց, պատրիարքական աթոռին նստելով քսանչորս տարի։ Նրա փոխարեն պատրիարք է ձեռնադրվում իր ճգնավորական կենցաղով հայտնի վանական Պոլիևկտոսը[261]։ Նա վանական էր դարձել դեռ մանուկ հասակում և աչքի ընկել իր բազում առաքինություններով և ուղղափառությամբ։ Շատերը նրան համարում էին ու կոչում Նոր Հովհան Ոսկեբերան, և նա իսկապես այդպիսին էր։ Բարեսեր Կոստանդինը

տեսնելով նրան, բերկրում էր և հրճվում, որ իր թագավորության օրերին նման մարդու հանդիպեց։

12. Աստվածասեր և բարեսեր Կոստանդին կայսրը տեսնելով, որ պրեպոզիտոս Հովսեփ պատրիկը բնավորությամբ նման է իրեն, որ նա պետության կառավարման հարցերում խորամիտ է ու թռչունից ավելի փութաջարժ, նրան նշանակում է սակելլարիոս, ապա՝ նավատորմիղի դրունգար և իր ողջ իշխանությունը նրան վստահում։

13. Ցանկանալով գրել Կոստանդին Ծիրանածինի բարեսիրության և բարեգործության մասին, նրա՝ ամեն ինչ ուղղելու և բարելավելու ձգտման մասին, այն մասին, թե ինչպես նա բարեպաշտությամբ ու արդարությամբ փրկեց հպատակ ժողովրդին և ի վիճակի չլինելով ըստ արժանվույն այդ բոլորը նկարագրել, վախենալով, որ արդեն կանցնեմ դրվատանքի, դրա համար նպատակահարմար եմ գտնում լռել։ Այդուհանդերձ արժե շատից որոշ բան պատմել։

14. Նա ամեն ինչ գտավ խայտառակ, բարձիթողի վիճակում, առաջինի [պետական] այրերին՝ արհամարհված ու քամահրված և, լինելով աստվածասեր ու բարեսեր, վախկոտ ու անարի մարդկանց փոխարեն առաջ քաշեց համարձակներին ու արիներին և նրանց դնելով սխոլերի դոմեստիկոս մագիստրոս Վարդաս Փոկասի տրամադրության տակ, հռոմեական պետության համար հաղթանակներ ձեռք բերել տըվեց[262]։ Մեր երկրում շատ էին գեղեցիկ ու գովեստի արժանի ուսմունքները, արվեստներն ու գիտությունները, բայց դրանք չգիտեմ ինչպես անուշադրության էին մատնվել ու անտեսվել։ Ի՞նչ է մտածում ահա այդ ամենաիմաստասեր միտքը։ Քանի որ նա գիտեր, որ գործնականն ու տեսականը մեզ մոտեցնում են աստծուն, և որ գործնականը վերաբերում է քաղաքական հարցերին, իսկ տեսականը՝ բանական, նա մեկը մյուսին աջակցել է տալիս, նախապատրաստում գործնականը [դասավանդել] հռետորական արվեստի միջոցով, իսկ տեսականը՝ փիլիսոփայությամբ և գոյի բնական իմացությամբ։ Նա գերազանց դասախոսներ ընտրեց։ Փիլիսոփայության դպրոցը նա վըստահեց այն ժամանակվա միստիկոս Կոստանդին պրոտոսպաթարին, հռետորությունը՝ Նիկիայի մետրոպոլիտ Աղեքսանդրին, երկրաչափությունը՝ էպարքոս Թեոփիլոս Էրոտիկոսի փեսա պատրիկ Նիկեփորին, աստղաբաշխությունը՝ ասեկրետ Գրիգորին։ Կայսրը մեծ խնամք ու հոգատարություն էր ցուցաբերում նաև սովորողների նկատմամբ. ամեն օր նրանց հետ սեղան էր նստում ու միասին ճաշում, դրամ տալիս, օգտակար զրույցներ ունենում։ Եվ շատ չանցած, կայսեր խնամքով ու խորագիտությամբ նրանք ոտքի կանգնեցրին մեծ գիտություններն ու

*արվեստները։ Կայսրը նրանց միջից հմուտներին ընտրելով, նշանակեց դատավորներ, գրագիրներ ու մետրոպոլիտներ և հռոմեական պետությունը իմաստությամբ զարդարեց ու հարստացրեց։*

*15. Նա վերանորոգեց նաև կայսերական մաշված հանդերձներն ու հինավուրց թագերն ու դիադեմաները, զարդարեց և Բուկոլեոնը՝ տարբեր տեղերից բերած կենդանիների արձաններով, նույն տեղում կառուցեց և ձկնորսարան։ Նա հետաքննություն կատարեց նաև քաղաքի և դրսի բնակավայրերի բանտերում արգելափակված մարդկանց վերաբերյալ, անձամբ այցելեց նրանց, կապանքներից ազատեց, և նրանք իրենց փրկության համար փառաբանեցին բարի, Քրիստոսի նման գործել ցանկացող Կոստանդին արքային։ Նա բոլոր կայսրերից բարձր գնահատեց առաքինությունը և ուսումը։ Նա առաջ քաշեց ու բարձր պաշտոնների նշանակեց բոլոր նրանց, ովքեր ուսյալ էին, օրենքներին գիտակ ու նրանց գործադրելուն ընդունակ։ Տեսնելու էր, թե ինչպես էին բոլորի նկատմամբ գործադրվում արդարադատությունն ու օրինապահությունը, քանզի դրանք հաստատողն ու պաշտպանը ինքը Ծիրանածինն էր։ Կայսրը օրենք էլ հրապարակեց հետևյալի մասին. տեսնելով, թե ինչպես անհագ մեծատունների ընչաքաղցությունը գլուխն առել գնացել է, և ինչպես նրանք մուտք գործելով նահանգներն ու գյուղական համայնքները[263] հարստահարում են տառապյալ ընչազուրկներին, որ դինատները զանազան մեքենայություններով ու հափշտակություններով ձեռք են բերել պրոաստիոններ[264], որոշեց նրանց ձեռքից խլել դրանք։ Ինչպե՞ս է վարվում ամեն ինչում իմաստունը։ Հրավիրելով իրեն ենթակա սենատը, նա վճիռ է արձակում, համաձայն որի իր թագավորելու օրվանից [նահանգներն ու շրջանները] սողոսկած և շրջաններում հողեր կամ ագարակներ գնած, նվիրաբերած կամ յուրացրած հարուստներին առանց որևէ փոխհատուցման այդ տեղերից քշել։ Այդպիսով, նա մի փոքր սանձեց այդ անկուշտների խայտառակությունն ու ընչաքաղցությունը։*

*16. Բարի ու խաղաղասեր կայսրը չէր հրաժարվում անձամբ դատել դատարան դիմողների վիճելի գործերը, քննության ենթարկել նրանց փաստաթղթերն ու տարաձայնությունները, դեռ ավելին, նա դեմ չէր դատավորների հետ միասին դատաստան տեսնելուն։ Նա հակահարված էր տալիս իր դատաստանին մասնակցող դատավորների ու փաստաբանների [անհիմն] փաստարկումներին ու կեղծիքներին, նրա խորաթափանց մտքից ոչինչ չէր վրիպում, ո՛չ ճշմարտանման կեղծիքը, ո՛չ գործի էությունը համոզիչ ներկայացնելու արվեստավորությունը,*

ո՛չ երկարաշունչ ու մշուշապատ կազմված խնդրագրերը, որոնք, սրքողված լինելով ճշմարտության վարագույրով, թյուրիմացության մեջ գցեցին անգամ անչափ բանիմացներին։ Ահա այս ձևով նրանցից յուրաքանչյուրը, նախքան դատը տեսնելը, վախից դաստիարակված լինելով, դարձավ անիրավվածի իրավունքի պաշտպանը։

17. Անհրաժեշտ է պատմել նաև արքայի հասարակական հոգսերի, նրա անթիվ բարեփոխությունների և պարապմունքների մասին։ Երկրի բոլոր շրջանների զորավարներից, կայսերական պրոտոնոտարներից, գյուղերի, նահանգների և քաղաքների [ղեկավարներից] եկած գրությունները, ինչպես և օտար պետությունների առաջնորդներին ուղարկվող նամակները ինքն անձամբ էր կարդում և իսկույն կարգադրում նրանց՝ ինչպես վարվեն Արևելքից եկողների հետ, ինչպես՝ Արևմուտքից, և այդ բոլորն անում էր թռչունի արագությամբ՝ դեսպանություններ ընդունում, առաջնորդներին նամակներ գրում, հապճեպ կատարված փոփոխությունները ուղղում։ Կոստանդինը մի ահեղ սենատոր էր, հոգաբարձու, զորավար, զինվոր, ստրատիարխ, հեգեմոն։ Ո՞վ է ի վիճակի ասել կամ պատմել նրա բարեմասնությունների մասին։

18. Անհրաժեշտ է պատմել նաև հանրային հիվանդանոցի մասին։ Կոստանդին կայսրը տեսնելով, որ այն շատ է փոքր, մեծամեծ շինություններով ընդարձակում է այն, որպեսզի այս կամ այն հիվանդությամբ տառապող բոլոր հիվանդները հնարավորություն ունենան այնտեղ հաճախել և իրենց մարմիններին քսուքներ քսեն։ Կայսրը հիվանդների ծախսերն ամբողջությամբ իր վրա էր վերցրել, որով ապագա սերունդներին հավերժ հիշատակ թողեց։

19. Անհրաժեշտ է պատմել նաև ծերանոցի վերածված ախոռի մասին։ Ամենահրաշալի Մեծ եկեղեցու հետևի մասում, նրան մոտիկ գտնվում էր Թեոփիլակտոս պատրիարքի մտրուկների ախոռը։ Բարի կայսրը տեսնելով դա և գտնելով, որ այդպես ճիշտ չէ, բնակարանի վերածեց՝ ծերանոց դարձրեց, գրավոր կարգադրություն անելով, որ այնտեղ մնացողներին տարեկան ուտեստ ու հանդերձներ տրվեն։

20. Պետք է պատմել նաև տասնինն ակուբիտների [տրիկլինի] ծածկի մասին։ Տեսնելով, որ այն հնացել, փլվելու վրա է, իր շուքը կորցրել է, նա այն վերանորոգեց։ Ժամանակի ընթացքում նրա ոսկեզօծ առաստաղը սկսել էր ջուր բաց թողնել։ Կայսրը փոխեց այն և կատարյալ նոր ու փառավոր դարձրեց։ Նա դրան ութանկյուն խոռոչներ հարմարեցրեց, որոնք զարդարեց երդիկներով և գույնզգույն փորագրություններով՝ խաղողի որթ, տերևներ, ծառեր պատկերող։ Այդ բո-

լորը նա ոսկեջրեց և այնքան գեղեցիկ դարձրեց, որ դիտողները ապուշ են կտրում։

21. Նա իր որդու՝ Ռոմանոս կայսեր համար պալատներ կառուցեց, ավելի շատ, քան ունեին անցյալի կայսրերը, ի հիմանց շենքեր կանգնեցնելով։ Իր կառույցներից ոմանց հարուստ արդուզարդը ապշեցնում ու շլացնում է մարդկանց միտքն ու խելքը, ականատեսները հրաշք են համարում։ Իր վաղեմի գեղեցկությունը կորցրած սուրբ Պողոսի Տետրակոնխը նա վերանորոգեց, նկարեց զանազան՝ պատկերներ, նա այնտեղ զետեղեց ոսկուց պատրաստված բազում ֆիգուրներ ու պատկերներ։

22. Այդ այրը այնպես քաջագիտակ էր նկարչության արվեստին, ինչպես, իմ համոզմամբ, և ոչ ոք իրենից առաջ կամ հետո։ Նա բազում նկարիչների խորհուրդներ էր տալիս, հանդես գալիս որպես գերազանց ուսուցիչ, դեռ ավելին, բոլորն իր վրա զարմանում, ապշում էին, որ նա, թեև հատուկ չի սովորել, հասու է։ Իսկ ո՞վ կարող է պատմել Ծիրանածինի՝ վարպետներին տված խորհուրդների մասին։ Նա սովորեցնում էր հյուսներին, ճարտարապետներին, ոսկեզօծողներին, արծաթագործներին, երկաթագործներին. արքան ամեն ինչում մեծ հմտություն էր հանդես բերում։

23. Խրիսոտրիկլինի արծաթապատ դռները[255] գեղապաշտ Կոստանդինը շինեց, հյուրերի սպասարկման և սեղանատունը գեղազարդող արծաթե սեղանն այդ աշխատասերը սարքեց, պաճուճեց այն բազմագույն փայտով, քարե տախտակներով ու բնական գույներով, սեղան, որ համեղ ճաշերից ավելի հաճույք է պատճառում սեղանակիցներին։

24. Իր ննջասենյակի առջև նա ծիրանի փյուղակե[256] կառուցեց՝ ջրավազան, մաքուր հղկված, փայլող մարմարե սյուներով շրջապատված։ Դեռ ի՞նչ արեց այդ մեծահոգին։ Նա հոսող ջրի շիթի վրա արծաթե արծիվ տեղադրեց, որն ուղիղ առաջ չէր նայում, այլ մի կողմ թեքված, գլուխը բարձր լարված վիճակում, կարծես որսի պահին։ Նրա ոտքերին օձ էր փաթաթված, որին նա խեղդում էր։ Նա կայսերական ննջասենյակի նախասրահում մեծ արվեստով գույնզգույն փայտով խճանկար պատկերներ ու ֆիգուրներ կերտեց։

25. Կայսրը նավաշինության հարցերում էլ հմուտ էր, նա ցույց էր տալիս՝ ինչպես շինել պատերազմական նավերը, դրա համար ինչպիսի շինափայտ է անհրաժեշտ, փայտերն ինչպես միացնել, հարմարեցնել իրար, ինչ հարաբերությամբ։

26. Ես մտաբերում եմ նաև Ծիրանածինի՝ Էրիայում[267] կառուցած՝

այնպես հոյակապ ու շքեղ պալատի մասին, այն վայրում, որն անցյալում քաղկեդոնացիների գերեզմանատուն էր։ Այժմ այն կանգնած է չորս խորանների վրա, որոնց անկյուններում այլ թագավորական կացարաններ կան։ Ամառային հովերն ու քամիները դրա շուրջն են փչում և դժվար է ասել, թե այնտեղ հանգստացողը ինչպիսի բերկրանք և ուրախություն է ապրում։

27. Էլ ինչ ասի մարդ մի այլ վայրում թագուհիների համար կատարված շինության մասին։ Նա իր ձևերով նման էր Էրիայի [պալատին], բայց իր արտակարգ շքեղությամբ ու փայլով, գետնից բարձրացող բուրմունքով, առավել գեղեցկությամբ նրանից շատ էր տարբերվում ու գերազանցում։ Ինչպես նրա մոտակայքում վերջերս ի նորո կառուցված Առաքելոց տաճարը՝ նա այնքան լավն է, որ արժե նրան դիտել, և այնքան գեղեցիկ, որ հիացմունք է պատճառում։ Թեև [տաճարն] իր չափերով զիջում է [Առաքելոց] հին [տաճարին], բայց ներքին շքեղությամբ գերազանցում է։ Եվ ի՞նչ արեց հավատացյալ կայսրը։ Սա Թեոդորոս Բելոնասին, փառավոր ու շքեղ տաճարի կառուցմանն իրեն գործակցելու համար, շնորհեց պատրիկի պատվաստիճանը։

28. Իսկ այն սրբազան սպասքի ու ծածկոցների մասին, որ նա նվիրում էր հասարակաց մեծ ու ամենահրաշալի քավարանին[268], մարդ ի՞նչ ասի։ Երբ այցելում էր [տաճարը], նա չէր ուզում աստծո դեմ հանդիման գալ դատարկ ձեռքերով, նա մեծ նվիրատվություններ էր անում՝ ոսկյա սպասքներ, մարգարիտներ, թանկարժեք քարեր ու կերպասներ։ Այդ բոլորը զարդարում են ու շքեղացնում տաճարի սրբություն սրբոցը և նվիրաբերողի՝ Կոստանդնի անունը կրում։

29. Պետք է պատմել նաև Կիբիրեոտների բանակաթեմի զորավար պատրիկ Վասիլ Հեքսամիլիտեսի պատերազմական արշավանքի մասին։ Այս պատրիկ Վասիլը, երբ վարում էր Կիբիրեոտների բանակաթեմի զորավարի պաշտոնը, թեև տարիքով երիտասարդ էր, նա խելքով տարեց էր, իր տարիքի համեմատ շատ էր փորձառու։ Տեսնելով, թե ինչպես նշանավոր հագարացիներով Տարսոնից դուրս եկած ռազմանավերը հռոմեական շրջանների վրա հարձակումներ են գործում, մտադիր լինելով ձեռք գցել դրանք, ինչպես թռչունի բույնը, զորավարը իր նավերը նրանց դեմ դուրս հանեց, թեպետև դրանք թվով քիչ էին, թշնամու այդքան մեծաթիվ նավերի դեմ պայքարելու ոչ բավարար։ Բայց նրա միտքն ու կամքը ավելի հզոր էին, քան թշնամու ռազմանավերի բազմությունը, իսկ ողջամիտ խիզախությունը՝ բազում դաշնակիցներից։ Նրանք հանդիպում են միմյանց, նավերը բախվում են իրար, և

երկուստեք սկսվում է մարտ։ Երկու կողմից էլ նավերի վրա բուռն աղմուկ աղաղակ բարձրացավ, նավերը բախվեցին միմյանց, մինչև այն ժամանակ, երբ զորավար Վասիլն անձամբ քրիստոսուրացների մեջ խուժեց։ Իսկ երբ այնուհետև քրիստոսուրացների վրա չորս կողմից հեղուկ կրակ թափվեց, նրանք իսկույն պարտություն կրեցին, սրի քաշվեցին և գերի ընկան։ Նախ և առաջ նրանց հրամանատարները, իշխաններն ու կաիդները[269]։ Սրանց նա քաղաք՝ երջանիկ Կոստանդին կայսեր ուղարկեց և նրանցով ձիարշավարանում հաղթական շքերթ կազմակերպեց։

30. Կոստանդին կայսրը լոնգիբարդների և նեապոլսեցիների դեմ զորաբանակ առանձնացրեց, նրա հրամանատար նշանակելով պատրիկ Մարիանոսին։ Քանզի Արևմուտքը ապստամբություն էր բարձրացրել և թոթափել հռոմեական լուծը[270]։ Նրանք, ովքեր որպես բնակության վայր Լոնգիբարդիան և Կալաբրիան էին ստացել, իրենց հույսը դնելով այն բանի վրա, որ մայրաքաղաքից շատ են հեռու, անչափ լկտիացել էին։ Նրանք շարունակ ապստամբություն էին բարձրացնում և այն աստիճան անհնազանդ դարձան, որ հագարացիներին սլախտ[271] էին տալիս, մերձակա քաղաքների, բերդերի, գյուղերի բնակիչներին սրի քաշում ու կոտորում։ Նեապոլսեցիները ևս հրաժարվելով Քրիստոսին ենթարկվել, որոշեցին ստրկի պես վարվել՝ նրանք բացահայտ ապստամբության դիմեցին։ Տիրանածինը, որպեսզի ապստամբություն բարձրացրած բազմությունը առավել ևս չլկտիանա, ասելով, թե հռոմայեցիներին հպատակ ժողովուրդներին է ստրկացրել, Թրակիայի և Մակեդոնիայի [բանակաթեմերի] զորքերով և հեղուկ կրակով հանդերձված ռազմանավերով սանձում է նրանց հավակնոտությունն ու հիմարությունը. պատրիկ Մարիանոս Արգիրոսը հռոմեական զորքով ցամաքով ու ծովով հարձակվեց Նեապոլսի վրա, ցամաքում եղածը ամբողջությամբ հրկիզեց, իսկ ափամերձ շրջաններն էլ ապահով փակեց. որով նեապոլսեցիներին ամեն կողմից օղակեց։ Սովից ու գերեվարությունից ճնշվելով ու նեղվելով, նրանք սղաչանք-պաղատանքով դիմեցին Կոստանդին արքային, ուխտելով հպատակվել, ինչպես անցյալում։ Նույն բանն արեցին նաև լոնգոբարդներն ու կալաբրիացիները։ Դրա համար էլ առա Սիկիլիայի բարբարոսները[272] հաշտության պայմանագիր կնքեցին։

31. Կարելի է գարմանալ նաև աֆրիկացիների[273] դեմ տեղի ունեցած պատերազմի վրա. շատ չանցած նրանց հետ էլ բախում ու կռիվ եղավ, ծովային մարտ։ Փչեց մեզ համար նպաստավոր և օգտավետ, իսկ

բարբարոսների համար աննպաստ ու հակառակ սաստիկ քամի, որի պատճառով նրանք պարտություն կրեցին, զենքերով ու նավերով հանդերձ խորտակվեցին։ Նրանց ամիրան կայսեր աղերսեց հաշտություն կնքել։ Խոստացան կայսեր ծառայել ոչ միայն սրանք։ Գալլիայում բնակվող բոլոր բարբարոսները Ծիրանածին արքային իրենց երախտագիտությունն էին հայտնում, թանկագին նվերներ և պատանդներ ուղարկում կայսեր։ Ծիրանածինի բախտը բոլորին հպատակության, ծառայության և լծի ենթարկեց։

32. Եգիպտոսի ամիրան լսելով հռոմայեցիների մեծ հաղթանակի մասին, տեղի ունեցած ծովամարտի և քրիստոսուրացների պարտության մասին, իսկույն բարեկամական նամակներով հայտնում է կայսեր իր խաղաղասիրության մասին և դաշնակցություն խոստանում։ Իսկ Պարսկաստանի ամիրան, այն պատճառով, որ տարբեր առիթներով պատահեց հռոմեական զորքերին և նրանց հետ բախվելով՝ տարբեր պատերազմներում պարտություն կրեց, հաշտվում է կայսեր հետ և նրա հետ բարեկամության դաշինք կնքում։ Կայսրը նրան պատանդներ ուղարկեց, որոնք հասնելով այդ չոր ու ցամաք երկիրը, երկրպագեցին ու համբուրեցին Թովմա առաքյալի շիրիմը[274]. Նրա վրա կայսերական զարդարված ջահեր վառեցին, թանկագին քարերի ու մարգարիտների առատրով զբաղվեցին։ Կայսրը իր այս և մյուս մեծագործություններով մարդկանց դուր եկավ։ Նա հավաքում, կուտակում էր զանազան բաներ, որոնք փոխադրում, մարդկանց սիրելի էր դարձնում[275]։

33. Անհրաժեշտ է պատմել նաև Խրիսոտրիկլինի մասին, որը բազմարվեստ արքան վերածեց ծաղկաշատ ու բուրավետ վարդաստանի։ Նա բազմերանգ, շատ նուրբ, զանազան քարե խորանարդիկներով [մոզայիկ ծաղիկներ] սարքեց՝ թարմ ծաղիկների գույներով։ Այդ ծաղիկները առնված էին [մոզայիկ] գալարուն հյուսքի մեջ և իրենց համաչափությամբ անզուգական պատկեր էին ներկայացնում։ Տրիկլինը նա պսակեց արծաթե գմբեթով, և այդ դիտողներին հսկայական հաճույք է պատճառում։

34. Կայսրը քաղաքացիներին սիրեց, ինչպես հարազատ զավակներին, մի բան էլ ավելի և նրանց մասին շատ էր հոգում։ Նա ազնվազարմիկների մեջ ընտրություն էր կատարում, ոմանց պատվում էր պաշտոններով, ուրիշներին՝ փառավոր նվերներով, նրանց մասնակից էր դարձնում իր սեղանին, իր սիրալիրությամբ բորբոքում նրանց սերն իր նկատմամբ։ Նա բազմաթիվ թիկնապահների, պահապանների և պաշտպանների փոխարեն սրանց էր նախապատվություն տալիս՝ որ-

պես հավատարիմ ու տիրասեր մարդկանց, որոնք արքայի կյանքը իրենց կյանքից բարձր էին դասում[276]։

35. Պետք է պատմել նաև Ծիրանածինի՝ բրումալիոնի[277] առթիվ կազմակերպած ընդունելության մասին։ Դա մի ավանդություն էր, որ նշում էին հին կայսրերը, և Ծիրանածինն այն կյանքի կոչեց։ Այն օրը, երբ իր անվան սկզբնական կապպա տառն է նշվում, և այդ առթիվ մեծ տոնախմբություն է տեղի ունենում, նա այդ տոնին մասնակից է դարձնում մեծաթիվ մարդկանց։ Այդ ճոխ, բազմատեսակ ուտելիքներով ճաշկերույթին նա հյուրասիրում էր բոլոր սենատորներին և շատ հաճկատար ծախսերով բազմապատկում տոնի ուրախությունը՝ մետաքսե հանդերձներ նվիրում, բազում անհամար դրամ, ծիրանի շորեր, հնդկական բուրավետ փայտ, բաներ, որոնց մասին մարդիկ ո՛չ լսել են, ո՛չ տեսել։

36. Բոլոր մարդիկ երաժշտությունը համարում են ինչ-որ աստվածային գյուտ, մարդկային բնությունը վեհացնող։ Եվ ահա ինչպե՞ս է վարվում բարեպաշտ ու ամենամեծահոգի արքան։ Նա հաղորդակից էր դառնում նրան և դրանով անվերջ փառաբանում աստծուն. երաժշտությամբ էին պանծանում բերկրալից տոնախմբությունները, շքեղանում վկաների տոները, պայծառանում էր սուրբ հովիվների և վարդապետների հիշատակը։ Այրը այնքան էր շնորհալի, որ կազմում էր տաղասացների խմբեր, նրանց գլխավորներ նշանակում, բոլորից առաջ սրանց հետ էր լինում և, ունկնդրելով նրանց երգերը, ուրախացնում էր ու բերկրացնում հոգին։

37. Նա սիրեց Ոսկեբերանին, ինչպես իրենից առաջ ապրած հավատացյալներից և ոչ ոք, ամենափառավոր ձևով նշեց նրա հանճարը, դրվատելով նաև նրա խոսքն ու ոճը, ցիկլերի ու սիլլոգիզմների ուղիղությունը[278], նա փառավորապես ու հոյակապ ձևով մեծարեց ապաշխարության քարոզչին։

38. Նա, ինչպես ոչ ոք, կաթոգին սիրեց իր որդի Ռոմանոսին, նախ և առաջ նա հորդորում էր նրան լինել բարեպաշտ առ աստված, այնուհետև սովորեցնում էր նրան խոսել, վարվել, քայլել, ծիծաղել, հագնվել, նստել ու կանգնել այնպես, ինչպես վայել է կայսեր։ Դրա համար Ծիրանածինը, արժանանալով սուրբ տեսիլքների, կանխասաց նրան. «եթե այդ բոլորին հետևես, հռոմայեցիների վրա երկար կթագավորես»։

39. Կոստանդինն իր որդի՝ կայսր Ռոմանոսին կնության տվեց գեղամարմին, գեղադեմ, հոգով համեստ, ծագումով ազնվական մի աղջկա՝ Անաստասիային, Կրատերոսի դստեր։ Ծիրանածինի կողմից նա

արժանաբար վերանվանվեց Ռեոփանո, որպես թե աստծուց հայտնըված[279] ու նրանից ընտրյալ։ Հարսանյաց հանդեսը տեղի ունեցավ Հուստինիանոս Քթատի[280] ամենահրաշալի տրիկլինում, և Ծիրանածինն ու ավգուստա Հելենեն ուրախություն ու բերկրանք էին ապրում Ռոմանոսին այդպիսի հին, ազնվական ընտանիքից սերած աղջկա հետ ամուսնացնելու առթիվ։

40. Ավգուստա Հելենեն հիվանդությամբ էր տառապում, բայց բարեսեր արքան ամենևին էլ չպակասեցրեց նրա հանդեպ տածած սերն ու գուրգուրանքը, նա կատարում էր նրա սրտի բոլոր ցանկությունները. ավգուստան արքայից խնդրում էր հին Պետրինում իր՝ Հելենեի կողմից նորերս կառուցված հյուրանոցին և ծերանոցին, որոնք Հելենեի են կոչվում, հատկացնել պրոաստիոններ, խրիսովուլներ և դրամական միջոցներ։ Այդ բոլորը Ծիրանածինը սիրով կատարեց։ Տեսնելու էր, թե ինչպես էր Հելենեն հոգով ու մարմնով բերկրում և ուրախանում այն բանի համար, որ Կոստանդինն անսահման սեր է տածում իր նըկատմամբ, հսկայական հարստություններ է իրեն հատկացնում։ Բայց նա ավելի շատ էր ուրախանում՝ տեսնելով իր որդի Ռոմանոսին կայսր, տեսնելով, որ իր և կայսր Կոստանդնի հետ են և իրենց հետ բերկրում են դուստրերը՝ Զոեն, Թեոդորան և Ագաթեն։ Քանզի Կոստանդինը ևս հարգում ու սիրում էր դուստրերին, հատկապես Ագաթեին, որովհետև նա անխոնջ խնամում էր կայրեր նրա հիվանդությունների ժամանակ, նրա միջոցով հասու էր լինում գաղտնիքներին ու իշխանավորների գործունեության։ Ագաթեն հանդես էր գալիս որպես միջնորդ, նրան այդպիսին էին ճանաչում, և նա այդպիսին էր։

41. Այն պատճառով, որ սխոլերի դոմեստիկոս Վարդասը՝ մականունը Փոկաս[281], տկար էր և տարիքն առած, Ծիրանածինը հեռացնում է նրան դոմեստիկոսի պաշտոնից և նրա փոխարեն դոմեստիկոս նշանակում Անատոլիկոն բանակաթեմի զորավար պատրիկ Նիկեփորին. [Վարդասի] ամենասիրելի որդուն, մի այրի, որ բազում և այլազան պատերազմներում հաջողություններ էր ունեցել և աչքի ընկել։ Նա դիմում էր զինվորներին ամենաքաղցր խոսքով ու հորդորով առաջնորդում հագարացիների դեմ, այնպես անում, որ բոլոր զինվորներն արիանան. ճամբարեն [թշնամու երկրում], ինչպես հայրենիքում, առանց թաքնըվելու, իրար խառնվելու կամ հետդարձի ճանապարհը բռնելու, ինչպես սովորություն էր նրանց համար։ Բոլորն աներեր արշավում էին թշնամիների վրա՝ վահաններով պատսպարված, նիզակներով մա... ռելով և գլխովին ոչնչացնում էին հագարացիներին։ Տեսնողները հիա-

նում ու ապշում էին հաղթող Նիկեփորի վրա, ով ջարդուփշուր էր անում ու հետ շպրտում անաստված Համդունի[282] ռազմաշարքերը, զորքերն ու սեպաձև դասավորված գնդերը, հիանում քաջահաղթի հաջողությունների վրա, փառավորում դրանք՝ քաղաքների, գյուղերի և շրջանների նրա կրակի տալը, նրանց բնակիչներին գերեվարելն ու հռոմայեցիների կայսրության ենթարկելը։ Երբ նա [պատերազմից] հավատացյալ Կոստանդնի մոտ վերադարձավ, արժանացավ նրա գովքին ու պատիվներին, ինչպես հին ժամանակներում՝ հռոմայեցի զորավարները։

42. Կոստանդին արքան թույլ չտվեց, որ փուլ գա իր հոր կառույցներից և ոչ մեկը, այդ թվում և Մարինեի պալատում իր հոր՝ Լևոնի կողմից կառուցված մեծ ու ընդարձակ բաղանիքը, մեր քաղաքի հրաշքը։ Անցյալում այն անուշադրության էր մատնվել, անհոգության ու անփութության պատճառով կորցրել իր տեսքն ու գեղեցկությունը։ Շենքից, բացի հիմքերից, բան չէր մնացել։ Կոստանդինը, որ հայրական շինությունների վրա ուրախանում էր ու բերկրում, ինչպես սեփական, վերանորոգեց այն և ոչ միայն տվեց նախկին գեղեցկությունը, այլ ավելի շքեղ դարձրեց։ Նա ամբողջությամբ գեղազարդեց այն և լոգանք ընդունողներին նախկին հաճույքը պատճառեց։ Բաղանիքը առաջացնում է օտարականների հիացմունքը և տեղաբնիկների զմայլանքը։

43. Կոստանդին կայսրը պատրիկ Թեոդորոսին, մականունը՝ Բելոնաս, կարող ու զարգացած մի մարդու, որ հմուտ ու ներհուն օրենսգետ էր, նշանակում է էպարքոս և հայր քաղաքի[283]։ Նա իր պարկեշտությամբ ու դատապաշտպանությամբ դատվող կողմերին անարատ սնունդ էր շնորհում[284]։

44. Ծիրանածինը պարակիմոմենոս Վասիլ պատրիկին զորքով և մեծ պատրաստությամբ անաստված Համդունի դեմ արշավանքի ուղարկեց։ Վասիլը Ծիրանածինի աստվածաշունչ խորհուրդներով զինված, պալատից և Բյուզանդիոնից դուրս գալով, լինում է քրիստոսուրացների շրջանները և նախ պաշարում է Եփրատ գետի ափին գտնվող և դեռ հնից ասորիների կողմից բնակեցված անառիկ, բազմամարդ և բազմագանձ Սամոսատ քաղաքը։ Նա զորքով այդ քաղաքի վրա էր շարժվում և բարբարոսների ամիրայի։ Նրանք, իրենց բնածին ամբարտավանությամբ գոռոզացած, հոխորտում էին, թե առանց մարտի հաղթանակ կտանեն։ Սակայն, երբ բարբարոսները բախվեցին հռոմեական բանակին, չկարողանալով նրա թափին ընդդիմակայել, դիմեցին

փախուստի. յուրաքանչյուրը ջանում էր մի կերպ սեփական անձը փրկել։ Այն ժամանակ հռոմայեցիները դիակապուտ արեցին, կապանքների մեջ առան գերվածներին և հսկայական ավար ձեռք բերեցին։ Այդ բոլորը ցուցադրվեց հասարակության ձիարշավարանում, հաղթական երթի ժամանակ։

45. Կայսրը պատրիկ Լևոն մագիստրոսին, Վարդաս Փոկասի որդուն, մի գերազանց այրի, հագարացիների և ընդհանրապես թշնամիների դեմ քաջ պատերազմողի, նրա եղբայր Նիկեփորի փոխարեն Անատոլիկոն բանակաթեմի զորավար է նշանակում։ Տեսնելու էր, ինչպես են երկու հարազատ եղբայրները հանուն քրիստոնյաների մարտնչում, թշնամիների վրա արշավում և նրանց սրի քաշում, քանզի վերջիններս ի վիճակի չէին նրանց թափին ընդդիմակայել[285]։

46. Սուրբ Թովմայի տաճարի մոտ շատ մեծ ու սարսափելի հրդեհ բռնկվեց, այնքան սաստիկ, որ Երկաթե դռնից սկիզբ առնող էմբոլոնը մոխրի վերածվեց։ Կայսրն իր արտակարգ բարությամբ, այն պատճառով, որ քաղաքացիներին սիրում և նրանց մասին հոգում էր, ինչպես սեփական զավակներին, բոլորին օգնության հասավ՝ հրդեհի զոհ գնացած նրանց բնակարանները վերաշինելու համար։ Քաղաքացիները արքային ներբողում էին, նրան երախտագիտություն հայտնում, համարելով երկրորդ աստված ու բարերար։

47. Թուրքերը[286] հռոմայեցիների վրա արշավեցին և ասպատակ սփռելով, սուրբ Զատկի տոնին հասան մինչև քաղաքը։ Նրանք ավարառեցին ամբողջ Թրակիան, ձեռք բերեցին բազմաթիվ գերիներ ու ավար։ Կայսրը էքսկուբիտորների դոմեստիկոս պատրիկ Պոթոս Արգիրոսին նրա տագմայով, ինչպես և Բուկելլարների, Օպսիկիոն և Թրակեսիոն բանակաթեմերի զորավարներին անհապաղ նրանց դեմ ուղարկեց։ Նրանք Ծիրանածինի աստվածընկալ աղոթքներով գիշերով [թշնամիների] վրա խուժելով, նրանց գլխովին սպակոտոր արեցին, պարտության մատնեցին, առան նրանց ձեռք բերած ողջ թալանն ու ազատեցին գերիներին։ [Վերապրածներն] իրենց կրած սարսափելի պարտությունից ու փախուստից ամոթահար, իրենց երկիրը վերադարձան։

48. Արժե պատմել նաև Կոստանդին Ծիրանածինի՝ այս աշխարհից հեռանալը կանխագուշակող, աստծո ցույց տված սարսափելի նշանի մասին։ Ասում են, որ արքայի ծննդյան ժամանակ քառասուն օր մի պայծառ գիսավոր աստղ երևաց, որն այս անգամ նրա հիվանդության և մահվան առթիվ երկնքում դարձյալ երևաց, բայց այս անգամ թույլ ու աղոտ լույս ուներ։ Այն բազում օրեր երևաց և վկայում էր, որ Կոստան-

դին Ծիրանածինն ստեղծվել էր գերագույն զորությամբ։ Այդ հրաշքին ականատես բազում երախտագետ մարդիկ այդ հրաշքի մասին հայտնեցին դրան ականատես չեղողներին, թե Ծիրանածինի մահվան առթիվ սգում են բնության տարրերն անգամ։

Թեև կայսեր մեծագործություններից շատերը հնարավոր չէ հիշել, բայց և այնպես այս մեկ վերջինն ավելացնելով արդեն ասվածին, ավարտում եմ պատմությունը։ /49/ Արքան մեծ բաղձանք ու փափագ ուներ գնալ Օլիմպոս լեռը՝ այնտեղի սուրբ հայրերին տեսնելու և վայելելու նրանց թանկագին աղոթքները։ Նա ուզում էր նաև, փոխելով իր բնակատեղին և օդը, վերականգնել իր առողջությունը, քանզի նրան կամաց-կամաց հյուծում էր թաքուն մի հիվանդություն, որի համար և բժիշկներին էր դիմում և, առավել ևս, անհրաժեշտություն էր զգում Օլիմպոս գնալ։ Այդպիսի փափագ ունենալով, նա իսկույն դրոմոնիոն նստեց և գնաց բյութանացիների երկիրը, Պրինետոս, որին բյութանացիների ինչ-որ նախնիների աստվածության անունից տեղացիները վերանվանել են Պրենետոս։ Այնտեղից նա գնաց հնուց հարուստ և բազմամարդ Նիկիա[287] քաղաքը, ապա՝ [Օլիմպոս] լեռան ստորոտում գտնրվող, Աթենոգենես վկայի անունը կրող վանքը։ Տեղի վանահայրը արքային ցույց տվեց նրա հոր՝ կինաբառիսով[288] գրված նամակը։ Ասում են, որ բարեպաշտ Լևոն կայսրը գնալով Օլիմպոսի բարձունքները՝ իրեն որդի և գահաժառանգ աղերսելու, եղավ այդտեղ։ Վանքի այն ժամանակվա վանահայր Պետրոսը մարգարեացավ նրան, թե նա որդի և իր թագավորության ժառանգ է ունենալու, որն իր կյանքի վերջում պիտի Օլիմպոս այցելի։ Ծիրանածինը հաստատեց գրությամբ՝ իր հոր՝ Լևոնին պատկանելու հանգամանքը, ասաց, որ վանականի մարգարեությունը ճշմարիտ է։ Այդ վանքից կայսրը գնաց Օլիմպոսի ստորոտը, այն Օլիմպոսի, որը հին աղբյուրներում Մյուսիոն է կոչվում, քանզի այնտեղ ժամանակին մյուսացիք էին բնակվում։ Կայսրն այնտեղից մի կերպ անցնելով դժվարին, ոլորապտույտ, դարիվեր ու ղառիվեր կածաններով, հասավ սուրբ հայրերի խցերը, հանդիպեց ու ողջագուրեց նրանց և, որպես ճանապարհի պաշար, ստանալով հոգեպարար աղոթքները, եկավ Պրուսա։ Դա ժամանակին բյութանացիների վրա թագավորած և պատերազմներում իր վրա հարձակում գործած թագավորներին հաղթած և այդ դեպքի հիշատակը հավերժացնելու համար կառուցած քաղաք է։ Այդ թագավորը, քաղաքից ոչ հեռու տեղում տաք ջրերի գետնից բխելը դիտելիս, ջրասույզ եղավ։ Առասպելների համաձայն Հերակլեսը Հյուլեում էր թափառում, երբ ուզում էր Հյուլոսի սպա-

նության ջապաղիքից այդ ջերմուկներում մաքրվել։ /50/ Արքան սուրբ հայրերից իմանալով, որ Ոլիմպոսի գագաթին քարայրի մեջ ապրում է մի հրաշագործ ծերունի ճգնավոր, փութեռանդ նրա մոտ շտապեց։ Ծերունին աստվածուստ հասու լինելով կայսեր՝ իր մոտ ժամանելու մասին, իր խցից դուրս եկավ, ողջունեց ու «օրհնյա»-ն ասաց։ Կայսեր հարցին «ո՞վ ես դու, ո՞րտեղից ես գալիս, ինչպե՞ս ես և ո՞ւր ես գնում», նա պատասխանեց. «իմանալով քո մեծության՝ դեպի ինձ գալու մասին, քո մոտ եմ գալիս»։ Կայսրը հասկացավ, որ աստված է դեպի իրեն ուղարկել, և նրա աղոթքները որպես պաշար առնելով և տեղեկանալով իր վերահաս վախճանի մասին, վերադարձավ սուրբ հայրերի խցերը, նրանց հետ սեղան նստեց, որից հետո շտապեց դեպի ծովափ։ Շատերը չգիտեին, որ նա հիվանդ է, սակայն նա ներքուստ, որովայնային հիվանդությունից ու ջերմությունից հյուծվում էր ու հալվում։

51. Ո՜վ մարդկային մահկանացու բնության օրենքներ, ճակատագրի փոփոխականություն, դեպի որպիսի մահերգն եմ ես աճապարում ու շտապում։ Այնտեղից դուրս գալով, նա նավ նստեց և ուղիղ նավարկելով, հասավ մայրաքաղաք՝ իրեն համակած հիվանդությունից հալումաշ և տառապյալ։ Հիվանդությունը կայսեր ծնկի բերեց, և երբ վերապրելու հույսերը գնալով սպառվեցին, չկար մեկը, որ չողբար ու չկոծեր։ Ծիրանածինին, բարի արքային, քաղցր, հեզ, մատչելի, խաղաղասեր, սիրո հետ առնչություն ունեցող բոլոր ածականներին վայել այրին։ Երբ Կոստանդին Ծիրանածինը համոզվեց, որ վերջին շունչն է փչում, իր որդի Ռոմանոսին ինքնակալ կայսր հռչակեց, պրեպոզիտոս Հովսեփ պատրիկին կարգադրեց, երդվեցրեց իր փորձառությամբ ու հաստատակամությամբ պահպանի նրան։ Քանզի նա հենց այդպիսին էր՝ հաստատակամ, ուղղամիտ, հավատացյալ, պետության ղեկավարման գործում արծվից ավելի սրընթաց, անաչառությամբ, բարեպաշտությամբ ու արդարությամբ նրա նմանը չկար։

52. Հելենե ավգուստան, իր զավակները, պարակիմոմենոս Վասիլ պատրիկը և սենեկապանները, տեսնելով արքա Կոստանդնին հոգեվարքի ու օրհասի մեջ, թափվեցին նրա մահճի վրա և սաստիկ լաց ու կոծ բարձրացրին, արտասվալից վայում ու կականում էին այդպիսի վեհապետի կորսայան առթիվ։ Բայց չկարողացան նրան օգնել, պարզապես նանիր և ունայն արցունքներով ողողում էին այդ արքայական մարմինը։ Եվ ահա, այն ժամանակ, երբ մարդիկ շրջապատել էին նրա մահիճը և աղիողորմ կոտորում էին իրենց, երբ քաղցր ու հարստու-

թյուն պարգևող կայսրը հասել էր վերջին, երևացին դասերը սուրբ և արդար վանականների, նահատակների և քահանայապետերի, որոնք նրա ամենասուրբ հոգին ավանդեցին հրեշտակների ձեռքը։ Նրա մարմինն անհապաղ սրբեցին և նախ դրեցին տասնինն ակուբիտների [տրիկլինում]։ Այնտեղ նրա վրա սաղմոս ասելուց հետո, անհապաղ դուրս բերեցին ու Խալկեում զետեղեցին։ Այնտեղ քահանայապետն ու քահանաները, մագիստրոսներն ու պատրիկները, բոլոր սենատորները նրան վերջին համբույրը տվեցին։ Արարողապետը, երբ ծեսի համաձայն գոչեց. «դո՛ւրս ել, թագավո՛ր, կանչում է քեզ թագավորը թագավորողների և տերը տիրողների», ամբոխն սկսեց վայել, կոծել ու ճչալ։ Երբ արարողապետն ասածը երրորդեց, իսկույն բարձրացնելով արքայի [դագաղը], համայն սենատի ուղեկցությամբ թագավորական կացարաններից դուրս բերեցին դեպի պողոտան, սուրբ Առաքելոց տաճարը, սգերգերով փառավորելով հանգուցյալին։ /53/ Անհրաժեշտություն կա՞ պատմել քաղաքի՝ [թաղման] մասնակցած ժողովրդի ու ամբոխի մասին»[289]։ Նրանց մի մասը թաղումը դիտում էր բարձրադիր տեղերից, ուրիշներ՝ մոտիկից, իսկ մյուսները՝ երկնասլաց ու բարձր շենքերի ու տների վրայից, հայացքն ուղղելով դեպի դագաղը։ Հասարակաց դժբախտության առթիվ ոմանք թաքուն էին արտասվում, սրտաբուխ հառաչում ու հեկեկում, ոմանք՝ կոծելուց կոտրվում, իսկ ուրիշներ ընկճված՝ ավելի սաստիկ էին հեծկլտում ու փղձկում։ Ոմանք աղբյուրի նման արցունք էին թափում և ողողում հեղեղում ոսկեպատ դագաղը։ Հասնելով սուրբ Առաքելոց տաճարը, թափորը թագավորական աճյունով մտավ ներս, իսկ պարակիմոմենոս Վասիլ պատրիկը, ինչպես ընդունված է անել վախճանվածներին, իր ձեռքով պատանեց մարմինը։ Գերեզմանը, այն է՝ շիրիմը, կարգի բերվելուց և բացվելուց հետո, Կոստանդնի աճյունը ամփոփվեց իր հոր՝ Լևոն կայսեր հետ։ Կապվածությունը և սերը, որ նա տածում էր դեպի հայրը, իր մահից ու թաղումից հետո անգամ ամենասիրեցյալ որդին պահպանեց։

54. Կոստանդին Ծիրանածին կայսրը բարձրահասակ էր, կաթի պես սպիտակաթույր, գեղաչյա, քաղցրահայաց, արծվաքիթ, ուներ երկար վարդագույն երես, երկար պարանոց, նոճիի պես ուղիղ հասակ, լայն ուսեր, գեղեցիկ վարվելաձև։ Նա բոլորի նկատմամբ սիրալիր էր, շատ քաշվող, սիրում էր ուտել ու խմել, քաղցրախոս էր, առաջաձեռն ու շատ հոգատար։ Նա իր ծննդից մինչև մահ ապրեց հիսունհինգ տարի, երկու ամիս և ...[290] օր։ Նա վախճանվեց աշխարհի արարչագործության վեց հազար չորս հարյուր վաթսունինն թվին[291], ին-

դիկտիոնի երրորդ տարվա նոյեմբեր ամսի տասնհինգին, թողնելով ինքնակալ Ռոմանոսին և Ռոմանոսի մոր՝ Հելենե ավգուստային։

## ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՌՈՄԱՆՈՍԻ[292] ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾՆԻ ՈՐԴՈՒ

Ռոմանոսը իր հոր Կոստանդին Ծիրանածինի կողմից ինքնակալ թողնվեց աշխարհի արարչագործության վեց հազար չորս հարյուր վաթսունիննը թվականի նոյեմբեր ամսի վեցին, ինդիկտիոնի վեցերորդ տարին[293]՝ իր մայր Հելենեի և կողակից Թեոփանոյի հետ։ Ռոմանոսը քսանմեկ տարեկան էր, իսկ Վասիլ Ծիրանածինը[294]՝ մեկ։ Ռոմանոսն իսկույն իր հոր սենեկապաններին ու մտերիմներին պատրիկի և պրոտոսպաթարի պատվաստիճանները շնորհելով, ավելի բարձր պաշտոնների նշանակեց, նվերներով ծայրաստիճան հարստացրեց և կայսերական պալատից հեռացրեց։ Նա ընտրություն կատարեց և պարադինաստեոն ու գլխավոր նշանակեց սենատորներ պրեպոզիտոս և նավատորմիղի դրունգար Հովսեփ պատրիկին, որին շատ չանցած առաջ քաշեց ու նշանակեց պարակիմոմենոս, նրան վստահելով հպատակ ժողովրդի համայն իշխանությունն ու հոգսը։ Իսկ Հովհաննես պրոտոսպաթարին, մականունը՝ Խիրինաս, առաջ քաշեց, շնորհեց պատրիկի պատվաստիճանը և նշանակեց մեծ հետերիարխ՝ արքայի անձը կասկածելիներից պահպանելու։ Նախկին սակելլարիոս Սիսինիոս պրոտոսպաթարին, զարգացած և հասարակաց գործերում կարող մի մարդու քաղաքի էպարքոս նշանակեց[295], իսկ շատ չանցած նրան շնորհելով պատրիկի պատվաստիճանը, նշանակեց գենիկոնի լոգոթետ, քաղաքի էպարքոսի նրա պաշտոնը տալով ստրատիոտիկոնի նախկին [լոգոթետ] Թեոդորոս պատրիկին, մականունը՝ Դափնոպատես[296]։ Այս Սիսինիոսը նահանգային գործերը վարեց օրինապահությամբ ու արդարությամբ և պանծացրեց սրբազան Պրետորիոնը։ Նրա դատաստանին ներկա եղողները ականատես էին լինում, թե ինչպես էր նա դիմադրում, մերժում վերանայել դատական գործերը, չէր երեսը հանում դատավորների խարդախությունները․ Նա այնպես արեց, որ դատի յուրաքանչյուր մասնակիցը անարդարություն գործածի դատի դատավորը դառնա։ Կայսրը էպարքոսին սիմպոնոսներ[297] էլ տվեց։ Պարակիմոմենոս Հովսեփ պատրիկի և էպարքոս Սիսինիոսի ընտրությամբ ու երաշխավորությամբ սիմպոնոս նշանակվեցին Թեոփիլակտոս ասեկրետը, մականունը՝ Մացիցիկոս[298], և սպաթարոկանդիդատ ու դատավոր Հովսեփը, որը Պրետորիոնի լոգոթետ նշանակվեց։ Սրանք էպարքոսի ող-

ջամտությամբ պետության համար օգտակար գործունեություն ծավալեցին։

2. Անհրաժեշտ է խոսել նաև արքայի հասարակաց հոգսերի մասին։ Նա անհապաղ բարեկամական նամակներ հղեց հռոմայեցիների բոլոր կառավարիչներին ու կայսերական զորավարներին, Բուլղարիայի, Արևմուտքի ու Արևելքի ժողովուրդներին, որից հետո բոլորը մեծապես ներբողում էին կայսեր, որպես երջանիկ ու մտերիմ և նրա հետ բարեկամական դաշինք կնքում։ Պետք է խոսել նաև քաղաքացիների մասին։ Ռոմանոս կայսրը հայրենիքը մոր պես սիրեց և [տոհմիկ] ընտանիքների մասին անչափ հոգատարություն ցուցաբերեց։ Նա ազնվականական ու բարետոհմիկ ընտանիքներից սերող մարդկանց մեջ ընտրություն կատարեց և ոմանց բարձր պաշտոններով փառավորեց, ոմանց թանկագին նվերներ շնորհեց։ Նրանց հետ սեղան նստելով, նրանց դրամ նվիրելով, ավելի էր բորբոքում ու բոցավառում նրանց սերը։ Նա նրանց մտերմությանը ավելի մեծ նշանակություն էր տալիս, քան բաղում թիկնապահների ու պահակների։

3. Նա իր քույրերին՝ Զոեին, Թեոդորային, Ագաթեին, Թեոփանոյին և Աննային պալատից հեռացնելով, Կանիկլիոսի վանքում մայրապետ խուզեց, այնտեղ, որտեղ մայրապետ էր խուզված Քրիստափոր կայսեր կին Սոֆիա ավգուստան։ Այդ առթիվ Ռոմանոսի մայր Հելենեն և [Ռոմանոսի] քույրերը աղիողորմ ողբում էին ու կոծում, իրար վզին փաթաթվում, բայց նրանց զուր ու ապարդյուն արցունքներին ուշադրություն դարձնող չկար։ Օրեր անց կայսրը նրանց այնտեղից տեղափոխեց՝ Զոեին, Թեոդորային և Թեոփանոյին՝ Անտիոքոսի վանքում տեղավորեց, իսկ Ագաթեին ուղարկեց անցյալում թագավորած Ռոմանոսի, ներկա կայսեր պապի[299] կողմից հիմնադրված և բնակեցված վանքը, կարգադրելով նրանց հայթայթել այն, ինչ և ստանում էին պալատում եղած ժամանակ։

4. Նա սխոլերի դոմեստիկոս Նիկեփոր Փոկասին մագիստրոսի պատվաստիճանը շնորհեց և Արևելք՝ քրիստոսուրացների դեմ ուղարկեց, իսկ նրա եղբայր Լևոն պատրիկին զորավար նշանակեց։ Շատ չանցած նրան մագիստրոսի պատվաստիճանը շնորհեց և նշանակեց Արևմուտքի դոմեստիկոս։ Տեսնելու էր, թե ինչպես էր արքան իրեն տվել խրախճանքների, ամբողջ կյանքն անցկացնում բացօթյա վայրերում՝ որսորդությամբ զբաղվելով։ Նա կատարելապես խորշում էր պալատից, բանակի հոգսը այդ երկու հարազատ եղբայրների վրա թողնելով, ինքը ընկերություն էր անում իր տարեկիցների, շողոքորթների, վատախորհուրդ

փչացածների հետ և Բյուզանդիոնից դուրս հրճվում ու բերկրանում որսորդությամբ։

5. Մարդ ի՞նչ ասի արքայի փութաջանության, ուղղամտության, սխրագործության, քաջարիության և բարության մասին։ Նա մի օրվա ընթացքում ներկա եղավ ձիարշավական մրցումներին, սենատում սենատորների հետ սեղան նստեց, դրամների բաժանում կատարեց, կեսօրից հետո ցուկանիստերիոնում հմուտ և փորձառու խաղացողների հետ գնդակ խաղաց և նրանց բազում անգամ հաղթեց, վերջում էլ գնաց Անորատաս և այնտեղ որս անելով, չորս հսկա վարազներ որսաց ու երեկոյան պալատ վերադարձավ։ Նա երիտասարդ էր, փթթող մարմնով, չիկահեր, գեղաչյա, արծվաքիթ. վարդերես, հաճելի ու քաղցրաբարբառ զրուցակից, նոճիի պես ուղիղ հասակով, լայնաթիկունք, հեզ ու դուրեկան[300]։ Բոլորը հիանում, զարմանում էին նրա վրա, նրանով էին բերկրում և քաղաքացիները, նրա երջանիկ լինելու և օտար ազգերի վրա տիրելու համար, այն բանի համար, որ Բյուզանդիոնի բնակիչներին հացն ու սննդամթերքները առատորեն էր մատակարարում[301]։

6. Ռոմանոս կայսրը իր հոր մահից հետո ևս մի որդի ունեցավ, նրան նա Կոստանդին կոչեց, որը շատ չանցած սուրբ Սոֆիայի բեմում կայսր թագադրվեց՝ ձեռամբ Պոլիեկտոս պատրիարքի։ Պալատում հիվանդ պառկած Հելենե ավգուստան արքայի հետ հավասար բերկրում էր։ Նա երկար տարիներ էր տառապում և սեպտեմբեր ամսի տասնինին բարեպաշտ կերպով հոգին ավանդեց։ Ռոմանոսը նրան թագավորական պատիվներ ցուցաբերեց։ Նրա մարմինն ամփոփվեց ոսկեթերթ, մարգարիտներով ու թանկագին քարերով ազուցված դագաղում և սենատորների ուղեկցությամբ տարվեց թաղվեց իր հոր՝ Ռոմանոս կայսեր կողմից Միրելեոնում հիմնադրված վանքում, իր հոր շիրմին կից։

7. Ազնիվ, մեղուշ, դուրեկան արքան, որին վայել է տալ բոլոր բարի ածականները, կարգադրեց սխոլերի դոմեստիկոս մագիստրոս Նիկեփոր Փոկասին մեծաթիվ զորքով հանդերձված ռազմանավերով և հեղուկ կրակով արշավանքի գնալ դեպի Կրետե, քանզի կրետացիք այն պահից, երբ գրավեցին այդ մեծ կղզին[302], ամեն օր բազում փորձությունների, աղետների, գերեվարության էին ենթարկում հռոմայեցիների երկիրը։ Նրանք կղզուն տիրացան Միքայել Ամորացու[303]՝ Թեոփիլոսի հոր թագավորության օրոք։ Օգտվելով զորքերի՝ Միքայելի ընկեր Մորոթովմայի[304] խռովությամբ ու ապստամբությամբ զբաղված լինելու հանգամանքից (ապստամբը ավելի քան երեք տարի իր ձեռքում էր պահում Թրակիան և Մակեդոնիան), Իսպանիայից բազում ռազմա-

նավերով եկած սարակինոսները գրավեցին կղզին, որն իրենց տիրապետության ու գերիշխանության տակ պահեցին հարյուր հիսունութ տարի[305], մինչև այն օրը, երբ կղզին գրոհով գրավվեց դոմեստիկոս մագիստրոս Նիկեփոր Փոկասի կողմից[306]։ /8/ Ռոմանոս կայսրը աստվածային մղումով և պարակիմոմենոս Հովսեփի խորհրդով ու ողջամտությամբ որոշեց երկրի ամեն տեղից նավեր ու ռազմանավեր հավաքել և հեղուկ կրակով, թրակացիներից, մակեդոնացիներից և սլավոններից բաղկացած ընտիր զորքով Կրետե ուղարկել։ Սակայն իրեն սպասարկող սենատորները խոչընդոտում էին Կրետե արշավելու գործը։ Նրանք հիշեցնում էին արքային՝ ինչպես անցյալում կայսրերի արշավանքները, նորարարությունները, հսկայական ծախսերը ոչ մի արդյունք չտվեցին՝ հատկապես բարեհիշատակ Լևոն կայսեր և Կոստանդին Ծիրանածինի օրոք, երբ այնքան շատ դրամական միջոցներ կորան, և զինվորներ զոհվեցին[307]։ Նրանք երկյուղում էին [ալեկոծ] ծովի վտանգից, [կրետացիներին] ցեղակից սարակինոսների մեծ դաշնակցությունից, Իսպանիայի և Աֆրիկայի [սարակինոսների] նավատորմիղից և այն համբավից, որի համաձայն Կրետեն նվաճողը թագավորելու է[308], նա տիրելու է հռոմեական պետության գահին։ /9/ Բայց պարակիմոմենոս Հովսեփը, այն օգտաշատ, ուղիղ ու մշտարթուն միտքը, խոսք առնելով, ասաց. «Մենք բոլորս, տե՛ր, տեղյակ ենք, թե քրիստոսուրացները ինչպիսի փորձանքներ բերեցին մեր՝ հռոմայեցիներիս գլխին։ Բայց արդար է հիշել և սրակոտոր եղած մարդկանց, բռնաբարված կույսերի, ավերված եկեղեցիների մասին, ծովափնյա բանակաթեմերի գերեվարության մասին, որով պետք է պայքարել հանուն քրիստոնյաների և ցեղակիցների, չերկյուղել ճանապարհի երկարությունից, բաց ծովից, հաղթանակի անորոշությունից, [հաղթողի՝ թագավորելու մասին] անհիմն համբավից։ Մեզ առավել ևս անհրաժեշտ է ենթարկվել քո աստվածաբուխ վճռին ու հրամանին, քանզի ասված է քեզ դա հուշել. «սիրտ թագաւորի ի ձեռս աստուծոյ»[309]։ Աստծո կողմից կառավարվող քո թագավորությունը պետք է ուղարկի սխոլերի դոմեստիկոսին ամենից առաջ այն պատճառով, որ նա շիտակ մարդ է և հավատարիմ ծառա»։ /10/ Կայսրը լսելով դա, այլևս իր վճռից հետ կանգնել չէր կարող։ Նա զինեց զորքը, վճարեց նրա հոգը, մագիստրոսին էլ դրան տալով, էքսպեդիտ[310] Միքայել կիտոնիտի հետ ինդիկտիոնի հինգերորդ տարվա հուլիս ամսին ճամփու դրեց։ Նավատորմիղի կազմում կար հեղուկ կրակով զինված երկու հազար նավ, հազար դրոմոն, պարենով ու զենքով բարձված երեք հարյուր յոթ բեռնատար

նավ։ Դոմեստիկոս Նիկեփորը մայրաքաղաքից դուրս գալով, հասավ Ցյուգելա[311] և ամենից առաջ մտահոգված էր, որպեսզի ամբողջ տորմիղը այնտեղ կենտրոնանա ու խարիսխ գցի։ Խորամիտը նախ արագընթաց գալեաներ ուղարկեց, հրամայելով հետախուզել և լեզու բռնել[312]։ Նրանք եղան տեղում և լեզուներ բռնելով, մագիստրոսին բերեցին։ Նա մանրակրկիտ հարցաքննեց նրանց և իմանալով, որ Կրետեի ամիրան և բերդի մեծամեծները քաղաքից դուրս՝ իրենց արվարձաններում են գտնվում, փութանակի, շտապ տեղ հասավ և խարիսխ գցեց։ Նավերից դուրս գալով, նա ցցապատնեշ սարքեց, խոր խրամ փորեց և գնաց ասպատակության։ Նա բոլորին խորհուրդ էր տալիս միասին լինել, թշնամուն չհետապնդել, քանի չեն իմացել [ամիրայի] ուժը։ Շարժվելով բերդի[313] վրա, նրանից դուրս գտնվող բոլոր կրետացիների վրա սարսափ տարածեց և ստիպեց բերդում ներփակվել։ Դրանից հետո ահա ամեն օր բազում մարդիկ անցնում էին մագիստրոսի կողմը։ Նիկեփորը իմանալով, որ բերդից դուրս մնացածները ապաստանել են կիրճերում, կլեյսուրներում, գետակների ափին, ճահճուտներում ու լեռներում, զորք հանդերձելով, նետաձիգ ձիավորների, ռոսների, Անատոլիկոնի, Թրակիայի և Մակեդոնիայի զինվորների հրամանատարներով, նրանց դեմ ուղարկեց, իսկ ինքը՝ խոհեմ ու քաջարի դոմեստիկոսը, մնաց Սակայի հետևում։ Այրի խորագիտության պատճառով բոլորին թվում էր, թե հայրենի երկրում են գտնվում։ Զինվորները, հասնելով ու խուժելով [կրետացիների] անասունների, հոտերի և ունեցվածքի թաքստոցները, այնտեղ, որտեղ և իրենք [կրետացիք] բացօթյա ճամբարել էին, ամեն ինչ ավարառելով, հաղթանակով և ուրախությամբ վերադարձան։ Այսուհետև հռոմայեցիները անվախ ու աներկյուղ ճամբարում էին այն վայրերում, որտեղ կային զուլալ աղբյուրներ, ամեն տեսակի բարիքների առատություն։ Յուրաքանչյուրն ուներ իր նյուղակը՝ պտղատու ծառերի մեջ, և բարիքները հոսում էին գետի նման, բոլորն ըմբոշխնում էին ու բերկրում, աղոթում իրենց փայլուն զորավարող մագիստրոսի համար։

11. Կրետեի ամիրան, անունը՝ Կուրուպաս[314], կատարվածի մասին տեղեկացրեց իր ցեղակիցներին՝ Իսպանիայի և Աֆրիկայի[315] հագարացիներին, և նրանցից օգնություն, օժանդակ զորք խնդրեց։ Վերջիններս սրընթաց գալեաներ ուղարկեցին՝ իմանալու [հռոմեացիների] զորավարի, նրա զորքի, վերջինիս դրության, զորավարի հրամաններին նրա ենթարկվելու մասին։ Նրանք փութանակի հասան Կրետե, գիշերով պարանների օգնությամբ մտան բերդը, հանդիպեցին ամիրաս Կուրուպասին և մե-

*ժամեծներին, նրանց դտան անելանելի, ընկճված ու հուսահատ վիճակում, նրանք չգիտեին՝ ինչ անեն հռոմեական բանակի և մագիստրոսի դեմ։ Իրենց մոտ ժամանածների վզին փաթաթվելով, նրանք ոչինչ չէին կարողանում ասել, սեղմում էին նրանց ձեռքը և աղիողորմ լաց լինում ու պաղատում, որ ամիրաները գիժեն իրենց օգնության՝ օժանդակ զորք ուղարկեն, որից հետո նրանց փութանակի հետ ուղարկեցին։ Նրանք վերադառնալով, յուրաքանչյուրը ներկայացավ ամիրաներին և զեկուցեց [հռոմայեցիների] հանդերձված և արշավանքի դուրս եկած հսկա նավատորմիղի, տարբեր դաշնակից ժողովուրդներից բաղկացած կուռ բանակի, զորավարի ուշիմության ու լրջախոհության, նրա՝ առ աստված ունեցած հավատքի, արդարության, նրա՝ ամեն տեսակի կրքերից խորշելու մասին։ Նրանք քար կտրեցին և ոչ մի դեպքում չէին ուզում [կրետացիներին] օգնության հասնել, օժանդակ զորք առաքել։*

*12. Երբ կղզում բանակած զորքի վրա եկավ սաստիկ ձմեռ, անձրևն ու սառնամանիքը, սպառվեց պարենը և ուտելիքը, մաշվեցին ծածկոցները, ու նա մերկ մնաց, զինվորները վհատվեցին և ուզեցին տուն վերադառնալ։ Բայց քաջարի և խոհեմ առաջնորդ Նիկեփորը կոշտ ու քաղցր խոսքով բոլորին իրենց մտադրությունից հետ կանգնեցրեց։ Նա ասաց նրանց. «Իմ եղբայրներ ու մարտնկերներ, մտաբերենք երկյուղն առ աստված, մաքառենք վրեժխնդիր լինել աստծո նկատմամբ արված անարգանքի համար, Կրետեում արիաբար պայքարենք ամբարիշտ թըշնամիների դեմ, ապավինենք երկյուղը փարատող հավատքին, մտաբերենք, որ ասորական[316] կղզում ենք գտնվում։ Փախուստն այստեղից կապված է մեծ վտանգների հետ։ Եկեք վրեժխնդիր լինենք անպատվված կույսերի համար, մեր սրտերը թող ցավ զգան՝ տեսնելով խեղանդամ եղածներին։ Մեր խոնջանքն ու վտանգները, որոնց ենթարկվելու ենք, անվարձ չեն մնա։ Աներեր կանգնենք ու տոկանք քրիստոսուրացների դեմ պայքարին, և Քրիստոս աստված մեզ սատար կկանգնի, նա կոչընչացնի մեր թշնամիներին, և Քրիստոսի նկատմամբ ամբարտավանացածների բերդը կգրավվի»։ Նա բազում այլ խոսքերով հորդորեց նրանց, իսկ մեկը բոլորի անունից պատասխանեց. «Ո՛վ մագիստրոս, դու բացեցիր մեր սրտերը, քո խոսքերը զորացրին մեզ ու հետ կանգնեցրին մեր մտադրություններից, դու թևավորեցիր մեր հոգին, մենք կենթարկվենք քո կամքին ու հրամաններին և քեզ հետ կզոհվենք»[317]։*

*13. Ռոմանոսի թագավորության երկրորդ տարվա հոկտեմբեր ամսին քաղաքում ցորենի և գարու պակասություն եղավ։ 4 մոդ ցորենը կամ 6 մոդ՝ գարին վաճառվեց մեկ դահեկանով։ Տեսնելու էր մշտար-*

թուն Հովսեփին, ինչպես էր նա ժողովրդի մասին հոգ տանում։ Նա անհապաղ Արևելք և Արևմուտք մարդիկ ուղարկեց, առևտրական նավերով հացահատիկ բերելու, արգելելու հացահատիկի շահադետներին այն կուտակելու։ Քանզի այրը արդարամիտ էր, անաչառ ու հավատացյալ։ Որով շատ չանցած մեկ դահեկանի դիմաց արդեն տալիս էին յոթ կամ ութ [մոդ]։ Այրն ահա այդպիսին էր, գործունյա՛ու ջերմեռանդ, նրա նմանը ոչ եղել է անցյալում, ոչ էլ կլինի ապագայում։

14. Մարտ ամսին մագիստրոս Վասիլը, մականունը՝ Պետինոս, ամբաստանվեց չարամիտ մարդկանց խորհրդով խռովություն ծրագրելու մեջ։ Կայսրը նրան աքսոր ուղարկեց, որտեղ և նա վախճանվեց։ Ինչ վերաբերում է Արևելքի դոմեստիկոս[318] պատրիկին, նա որպես իր եղբոր երեսփոխան Արևելք ուղարկվեց՝ անաստված Համդունին հնարավորություն չտալու Արևելքն անպաշտպան գտնելու և հռոմեական երկիրն ասպատակելու, գերեվարելու և թալանելու։ Պատրիկը միացավ Կապադովկիայի զորավար Կոստանդին Մալեյինոս պատրիկին և տագմաների մնացած զորավարներին, արշավանքի դուրս եկած ամբարտավանին հանդիպեց Անդրասոս[319] կոչվող վայրում և բախվելով նրան, փայլուն հաղթանակ տարավ, ջարդ տվեց ու փախուստի մատնեց[320]։ Այն ժամանակ տեսնելու էր, թե ինչպես են կապուտում [թշնամիների] դիակները, սրակոտոր անում ամբարտավան հագարացիներին, փախուստի մատնում նրանց և ստրուկների նման գերում։ Այլևս նրանց փույթը չէին ո՛չ ձիերը, ո՛չ դրամները, ո՛չ էլ ցեղակիցները. յուրաքանչյուրն աշխատում էր սեփական անձը փրկել։ Այն ժամանակ ամբարտավան ու փքված Համդունն էլ քիչ մնաց գերվեր, նրա ձին, որին նա հեծել էր, կանգնեց ու ծնկի եկավ, բայց նրա ծառա[321], հավատուրաց Հովհաննեսը իր ձիու վրայից իջնելով, այն Համդունին տվեց, որով Հովհաննեսը բռնվեց, բայց ամբարտավանը փրկվեց։ Պատերազմի ժամանակ ձեռք բերված ամբողջ ավարը, գերված քրիստոսուրացների հետ միասին [պատրիկը] Բյուզանդիոն բերեց և ցուցադրեց հաղթական երթի ժամանակ։

15. Թուրքերը արշավեցին Թրակիայի վրա։ Այն ժամանակ Մակեդոնիայի բանակաթեմում մոնոստրատեգոս և Արևմուտքի կատապան[322] էր պատրիկ Մարիանոս Արգիրոսը, որն ընդդիմակայեց նրանց և պարտության մատնեց, շատերին գերի վերցրեց և [մնացածներին] ստիպեց, խայտառակ եղած, իրենց երկիրը վերադառնան։

16. Ռոմանոս կայսրը իմանալով [Կրետեում գտնվող] բանակի նեղ վիճակի մասին, նրա՝ հանդերձանքի ու պարենի պակաս զգալու

մասին, պարակիմոմենոս Հովսեփի ողջախոհությամբ իսկույն օգնության հասավ։ [Զինվորները] կամաց-կամաց սիրտ առնելով, ավելի քան տասնութ ամիս պաշարման մեջ պահեցին բերդը. կրետացիների պաբենն ու միջոցները սպառվեցին և կարիքից ճնշված, ամեն օր մագիստրոսի մոտ դասալիք էին լինում։ Այսպիսով, հրամանով ամեն ինչ տնօրինող ստոծո, ինգիկտիոնի վեցերորդ տարվա մարտ ամսին սխոլերի ոոմեստիկոսը, տարբեր փաղանգներ, ծանրազեն գնդեր, զորախմբեր կազմելով, բանակն անհապաղ մարտի նախապատրաստեց։ Այդ նախաձեռնելուց հետո նա հրամայեց տագմաների և բանակաթեմային զորքերի հրամանատարներին, հայերին, ռոսներին, սլավոններին ու Թրակիայի զինվորներին գրոհել բերդի վրա։ Տեսնելու էր, թե ինչպես էին իրար հրմշտում, բախվում միմյանց, տեսնելու էր քարերի ու նետերի տարափը, բաբանների հարվածները պարսպի և ատամնաշարերի վրա։ Ամբարտավաններին երկյուղ, վախ ու սարսափ համակեց։ Կարճատև մարտից հետո բերդը գրավվեց։ Տեսնելու էր սարակինոսներին, կանանց ու երեխաներին...[323]

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

1 V դ. սկզբում կուրապաղատների պարտականությունն էր հոգալ կայսերական պալատի նյութական վիճակը։ Հետագայում, մինչև X դ., կուրապաղատը դարձավ խոշոր դեմք, և. ինչպես պատրիարք Նիկեփորն է գրում, կուրապաղատը կայսրից հետո երկրորդ մարդն էր, հասկանալի է, եթե գոյություն չուներ կեսարը։ Պատվաստիճանի մասին տե՛ս մանրամասն Guilland, Le Curopalate, էջ 185—249։ Այս հոդվածի մասին տե՛ս Բարթիկյան, Հայագիտական նյութեր, էջ 101—102։ Ավելի վաղ շրջանի կուրապաղատների մասին (հայկական աղբյուրների տվյալների լայն օգտագործմամբ) և Գիյյանի վերոհիշյալ հոդվածում թույլ տված սխալների ուղղմամբ (տե՛ս Στράτος Ο, «Κουροπαλάται», σελ. 51—56)։

2 Ինչպես տեսնում ենք, վերնագիրը վերաբերում է Թեոփանեսի Շարունակողի առաջին չորս գրքերին և ոչ ամբողջ երկին։ Այդ մասին խոսք եղավ սույն գրքի Առաջաբանում։ Վերնագրի առնչությամբ նշենք, որ ուսումնասիրողները գրչի չնկատված մի սխալ են մատնանշում «Թեոփիլոսի որդի Միքայել կուրապաղատ կայսեր» նախադասության մեջ։ Հարցն այն է, որ Թեոփիլոսի որդի Միքայել կայսրը Միքայել III-ն է, որի պատմությամբ ավարտվում է Թեոփանեսի Շարունակողի չորրորդ գիրքը և սկսվում հինգերորդը, որի հեղինակը Կոստանդին Ծիրանածինն է։ Բայց քանի որ Միքայել III-ը կուրապաղատ չէր, կուրապաղատ էր Միքայել I-ը (տե՛ս էջ 2, նաև Theophanes, էջ 205), ապա գտնում են, որ Թեոփանեսի Շարունակողն այստեղ հիշում է ոչ թե Թեոփիլոսի որդի Միքայելին, այլ Միքայել I-ին, որով սկսվում է Թեոփանեսի Շարունակողի ժամանակագրությունը։ Տե՛ս Huxley, «Leontios», էջ 136—137։ Մեր կարծիքով «կուրապաղատ» բառը գրչի կողմից թույլ տրված սխալ է և բխում է մի փոքր անց բերված «Թեոփանեսն իր պատմությունը հասցրեց մինչև կուրապաղատ Միքայել կայսեր թագավորությունը» նախադասության ազդեցությունից։

3 Խոսքը Կոստանդին VIII Ծիրանածին կայսեր մասին է (913—959 թթ)։

4 Բազմակետերի տեղում հունարեն բնագիրը եղծված է։

5 Հեղինակը դիմում է Կոստանդին Ծիրանածինին։

6 Ակնարկվում է Միքայել III կայսրը։ Տե՛ս Գիրք IV, § 37, էջ 119։

7 Թեոփանես Խոստովանողը։ Տե՛ս «Բյուզանդական աղբյուրներ», գիրք Դ։

8 Թեոփանեսն իր ժամանակագրությունն ավարտել է 813 թ. հունիսի 22-ին տեղի ունեցած Վերսինիկիայի ճակատամարտի նկարագրությամբ և դրան անմիջապես հաջորդող դեպքերի շարադրանքով։

9 Լևոն V Հայկազնը (813—820 թթ.)։ Բյուզանդական բոլոր աղբյուրները նրան հիշատակում են «Հայկազն» մակդիրով՝ Λέων ὁ Ἀρμένιος։ Այդպես է նա հորջորջվում և բյուզանդագիտական բոլոր ուսումնասիրություններում։ Բացի Թեոփանեսի Շարունակողից, Գեորգ Վանականը ես նրա հայրենիքն է համարում Հայաստանը (ἐκ [illegible]

τῆς Ἀρμενίων φρατρίας). *ինչպես և Գեորգ Կեդրենոսի ժամանակագրության գրիչներից մեկը* (Cedr., II, p. *75)։*

*10 Թեոփանեսի Շարունակողը չի որոշում ծնողներից ո՞վ էր հայ, մա՞յրը, թե՞ հայրը։ Սակայն Լևոն V-ի ժամանակներին վերաբերող մի Անանուն հեղինակի պատմություն հիշում է Լևոնի պատրիկ հոր անունը՝ Վարդ (Վարդաս), հետևաբար նա հոր կողմից էր հայ։ Մեզ հետաքրքրող բաժինը նա վերնագրել է «Լևոնի՝ Վարդաս Հայի որդու թագավորության մասին»* (Περὶ τῆς βασιλείας Λέοντος υἱοῦ Βάρδα τοῦ Ἀρμενίου), (Scriptor incertus, p. *340, տե՛ս նաև նույն տեղում, էջ 336)։ Ավելորդ չէ այստեղ մեջբերել Սիմեոն Մագիստրոսի՝ Լևոն V-ի մասին գրածը* (Sym. Mag., p. *603): Նրա ասելով, Լևոնը «գեր էր, բարետես, ուներ ցցուն մորուք, գանգուր մազեր, առյուծի բամբ ձայն։ Նա հանդուգն էր, բայց և վախկոտ»։ Նա նրան կոչում է «Քամելեոն», բացատրելով, որ նրան այդպես էին հորջորջում, քանզի նա «կարճահասակ էր»։ Բայց վերոհիշյալ Անանունը «Քամելեոնի» ճիշտ բացատրությունն է տալիս, որ Լևոնը ստախոս էր, մեկ բարեպաշտ էր ձևանում, մեկ՝ ամբարշտություն հանդես բերում, և որ նրան Քամելեոն է կոչել «մի ոմն սուրբ այր»* (Scriptor incertus, p. *341։ Հմմտ.* Georg. Mon., p. *770)։ Հարկավ, կայսեր՝ Քամելեոն կոչվելու պատճառը հիշյալ բառի մեջ Լևոնի անվան առկայությունն էր։*

*Լևոն Հայկազնը Նիկեփոր I-ի դեմ մեղանչած լինելու պատճառով գանակոծվել, վտանկան խուզվել ու աքսորվել էր։ Կայսեր սպանությունից և Միքայել I-ի գահ բարձրանալուց հետո նա հետ կանչվեց և, ստանալով պատրիկի պատվաստիճանը, նշանակվեց Անատոլիկոն բանակաթեմի զորավար* (Scriptor incertus, p. 336):

*11 Թեոփանեսի Շարունակողը (նաև Գենեսիոսը, էջ 28) իր ձեռքի տակ եղած աղբյուրի տվյալների իմաստը չի հասկացել և ծնողասպան է դարձրել Լևոնի ապագա ծնողներին։ Ճիշտ վարկածը հանդիպում է Գեորգ Վանականի ժամանակագրության Շարունակողի մոտ։ Հիշելով Լևոն Հայկազնի հոր ասորեստանցի լինելը, որպես աղբյուր հիշում է ծեր մարդկանց պատմածը, որի համաձայն Լևոնի հեռավոր նախնիները Ասորեստանի թագավոր Սենեքերիմի որդիներն էին, որոնք սպանելով իրենց հորը, փախան Հայաստան։ Որով, ըստ պատմիչի, Լևոն Հայկազնը ուղիղ գծով սերում է Ասորեստանի Սենեքերիմ թագավորի որդիներից մեկից, որը գալով Հայաստան, ամուսնացավ հայուհու հետ* (Georg. Mon., p. *769)։ Մենք, անտարակույս, գործ ունենք Աստվածաշնչի մի գրույցի հետ, որի համաձայն «Ադրամելէք և Սարասար որդիք նորա (այսինքն՝ Սենեքերիմ թագավորի—Հ. Բ.) հարին զնա սրով. և ինքեանք զերծան յերկիրն Արարադայ» (Թագաւորութեանց Դ, ԺԹ)։ Թեև բյուզանդական աղբյուրները այս գրույցը բերում են Լևոն V-ին անվանարկելու համար, ցույց տալու, որ նա ծնողասպան մարդկանցից էր սերում, այդուհանդերձ գրույցը Լևոն V-ի և նրա շրջապատի տարածածն է։ Աստվածաշնչային գրույցը, որ բյուզանդական աղբյուրներում չի բերվում, խոսում է հօգուտ դրա։ Ըստ Աստվածաշնչի, Սենեքերիմ թագավորին, որպես կռապաշտի, սպանեցին իր որդիները, որ սպանությունը տեղի է ունեցել այն պահին, երբ Սենեքերիմը կուռքերին էր երկրպագում։ Հետևաբար նրա որդիներ Ադրամելեքն ու Սարասարը դրական կերպարներ են։ Նկատենք այստեղ, որ Գենեսիոս պատմիչը Լևոն V-ին վերաբերող գլուխը վերնագրել է* Περὶ τοῦ ἐξ Ἀμαλὴκ Λέοντος (Genesii Regum, p. *3, 4)՝ «Լևոն Ամաղեկացու մասին»։ Ամբողջ վերոգրյալի լույսի տակ պարզ է, որ այստեղ Ամաղեկի մասին խոսք լինել չի կարող, Ամաղեկ են դարձրել Լևոնի թշնամիները, քանզի այդ անձնավորությու-*

*նը (Նրա ժողովուրդը) Աստվածաշնչում բացասական կերպար է, հրեաների թշնամի, որին Մովսես մարգարեն կոտորում է աստծո օգնությամբ. «Եւ ասէ Տէր ցՄովսէս ... ջնջելով ջնջեցից զյիշատակ Ամաղեկայ յերկրէ ի ներքոյ երկնից» (Ելք, ժէ, 14—15)։ Մեր համոզմամբ Լևոնի թշնամիները Ամաղիկ—'Αμαλήκ են դարձրել նախնական 'Αδραμελέχ-ը՝ Ադրամելեքը, այսինքն Լևոնն իրեն ոչ թե Ամաղեկացի, այլ Ադրամելեքացի էր համարում՝ Սենեքերիմի բարեպաշտ որդի Ադրամելեքից սերած։ Ադրամելեքի առնչությամբ ավելորդ չէ այստեղ հիշել մի փաստ ևս։ Թեոփանեսի Շարունակողը Լևոն V-ի ժամանակներում, Միքայել 1 կայսեր պրոտոստրատոր է հիշում ոմն «Ամաղեկացի» հայազգի Մանուիլին։ Քանի որ Լևոն V-ի՝ Ադրամելեքից սերելու մասին վարկածը առկա է, ապա բացառված չէ, որ այս Մանուիլը ևս, որ փաստորեն գործում էր Լևոնի օգտին, լինելով Լևոնի մերձավոր ազգականներից մեկը։ Լևոնը կայսր դառնալով, նրան նշանակեց Սրմենիակների բանակաթեմի զորավար, շնորհելով նաև պատրիկի պատվաստիճանը (տե՛ս վերը, էջ 10)։*

*Արդ, հայոց պատմության մեջ հայտնի են երկու նախարարական ընտանիքներ, որոնք իրենց ծագումը կապում են Ասորեստանի թագավորին սպանած և «յերկիրն Արարադայ» փախած Ադրամելեքի և Սարասարի հետ. ընդ որում հայ մատենագրության մեջ Աստվածաշնչի «Արարադայ» երկիրը նույնանում է Հայաստանի հետ։ Այդ նույն բանին ենք հանդիպում նաև բյուզանդական աղբյուրներում։ Գեորգ Վանականի Շարունակողը գրում է 'Αρμενία—Հայաստան։ Այդ նախարարական ընտանիքներն են Արծրունիները և Գնունիները, ինչպես և Սիմ լեռան՝ Տավրոսի բարձունքների Սանասունքի (Սասունի) տերերը։ Վերջիններս Սանասունք անունը բխեցնում էին Սենեքերիմ թագավորի որդի Սարասարի անունից, նրան դարձնելով Սանասար («Սասնա ծռեր», հ. Ա, էջ Թ—9)։ Ասենք այստեղ, որ ավանդությունը հայերիս շատ վաղուց էր հայտնի։ Այն հիշատակում է դեռևս Մովսես Խորենացին, որը Վաղարշակ թագավորին համարում է «ի զարմէն Հայկայ և ասորեստանւոյն Սենեքերիմայ («Պատմութիւն հայոց», Գիրք 2, գլ. 5, էջ 107), իսկ խոսելով Արծրունիների և Գնունիների մասին, գրում է. «են այս երկու տունքս ի զաւակէ Սենեքերիմայ» (Գիրք Բ, գլ. է, էջ 111)։*

*Եզրափակելով ասվածը, վստահ կարող ենք ասել, որ Լևոն V-ը սերում էր Արծրունիներից կամ Գնունիներից, հավանաբար՝ Արծրունիներից, ինչպես ենթադրում է Ն. Ադոնցը (*Sur l'origine, p. *45—46)։ Նրան Արծրունի է համարում և Կ. Տեր-Սահակյանը, բայց նրա «հիմնավորումը» քննադատության չի դիմանում («Հայ կայսերք», Ա, էջ 32։)։ Այսպիսով, բյուզանդական աղբյուրների տվյալները Լևոն V-ի երկածին, այսինքն՝ ասորեստանցի հոր և հայ մոր զավակ լինելու մասին, ոչ մի հիմք չունեն։ Լևոն V-ը զտարյուն հայ էր, նրա «ասորեստանցի» հոր վարկածը ոչ այլ ինչ է, քան Արծրունիների (և Գնունիների) ծագման առասպելի արձագանքը լոկ, որ ինքը՝ Լևոն V-ն էր Բյուզանդիայում շրջանառության մեջ դրել։*

*12 Թեոփանեսի Շարունակողը (և պատկերամարտ թևին պատկանող գրեթե բոլոր հեղինակները) Լևոնին «գազան» են անվանում, ելնելով Լևոնի ընդգծված պատկերամարտ լինելու հանգամանքից։ Բայց նրան «գազան» կոչելու պատճառը Լևոնի անունն էր, որ հունարեն նշանակում է «առյուծ»։*

*13 Վարդան «Թուրքի» մասին նախապես մանրամասն գրել էր Թեոփանեսը (էջ 191)։ Այն ժամանակ նա Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր։ Այժմ դարձել է մոնոստրատեգոս, այսինքն՝ մի քանի բանակաթեմերի զորավար։ Ասենք այստեղ, որ «Թուրքը» ամենևին էլ չպիտի նկատել որպես հիշյալ անձնավորության էթնիկական պատկա-*



19—1069

նելության արտահայտություն։ Իթե նա Վարդան է, ապա հաստատ հայ էւ Ասենք, որ Գենեսիոսը Վարդանին հայ է համարում (Genesii Regum, p. 8)։ Ուսումնասիրողները ևս, օրինակ Պ. Լըմերլը, նրան հայ են համարում (Thomas le Slave, էջ 264, ծանոթ. 29)։ Վերջերս մի հույն բյուզանդագետ, նկատի ունենալով Թեոփանեսի մի ասույթը, թե «Արևելքի թուրքերին, որոնց խազարներ են անվանում» (Թեոփանես, էջ 28), կողմնակից է Վարդանին խազար համարելու (Κουντούρα-Γαλάκη, Ἡ ἐπανάστασις τοῦ Βαρδάνη, էջ 203։ Վարդանի ապստամբության մասին՝ նույն տեղում, էջ 203—212)։ Վարդանի էթնիկական առումով խայտաբղետ բանակի մասին՝ Ahrweiler, L'Asie Mineure, էջ 6—7)։ Ինչ վերաբերում է «թուրք» ցեղանվան, ապա բացառված չէ, որ մենք գործ ունենք Տուրք (Տորք) անվան սխալ մեկնաբանման հետ։ Հայերն էլ էին Տուրքը Թուրք դարձնում։ Տաթևի 844 թ. մի կալվածագրում հիշվում է «Միհրան՝ Թուրքայ որդի», որ ամենայն հավանականությամբ Տուրքի աղավաղումն է։ Կալվածագիրը տե՛ս Ստեփանոս Օրբելյան, Պատմութիւն, էջ 208։ Տուրքը (Տորք) Թուրք է հասկացել ավելի ուշ քուրդ պատմիչ Շերեֆ էգ դինը (տե՛ս Бартикян, Заметки, с. 159)։

Գեորգ Կեդրենոսի ժամանակագրության մի ձեռագրում Վարդան «Թուրքի» մասին հանդիպում են հետաքրքիր մանրամասնություններ, որ նա սենատի գլխավորներից էր, ուներ պատրիկի պատվաստիճանը և նաև Արևելքի զորքերի դոմեստիկոսն էր՝ սպարապետը (Gedr., II, էջ 49)։

14 Ապագա կայսր, Ամորիական հարստության հիմնադիր Միքայել 11-ը (820—829 թթ.), Թեոփիլոս կայսեր հայրը։

15 Գազուրոս լճը Բյուրին տեղադրում է Պոնտոսում, Իրիս գետի ափին գտնվող Gaziura քաղաքի մոտ։ Հիշյալ քաղաքը գտնվում էր Ամասիայից հարավ-արևելք, Կոմանայից արևմուտք (Bury, The identity, էջ 55)։

16 Թովմա Գազիրացու էթնիկական պատկանելության մասին գիտության մեջ առկա է երկու կարծիք, որ բխում են աղբյուրների տվյալներից։ Այսպես, Թեոփանեսի Շարունակողը (տե՛ս վերը, էջ 29) գրում է, թե «նա սերում էր հասարակ ու չքավոր, ի վերա ամենայնի՝ սլավոնածին (Σκλαβογενῶν) ծնողներից» (Կեդրենոսը «սլավոնածինի» փոխարեն գրում է «բարբարոս», Gedr., II, էջ 74)։ Նրան «բարբարոս» է կոչում Թեոփանեսի Շարունակողը մի քիչ հետո (էջ 30)։ Թեոփանեսի Շարունակողը այդ առթիվ ավելացնում է, որ սլավոնները «բազմիցս Արևելքում են վերաբնակեցվել»։ Միքայել II կայսրը՝ Լուդովիկոս Բարեպաշտին գրած նամակում, Թովմային անվանում է «diaboli discipulus» (սատանայի աշակերտ)։ Տե՛ս Baronii Annales, էջ 62, apud Васильев, Византия и арабы, I, с. 24. որ հասկանալի է, մեզ ոչինչ չի ասում։ Սիմեոն Մագիստրոսը (Sym. Mag., էջ 62) նրան հռոմայեցի (հոռոմ, հույն) է համարում, իսկ Լևոն Քերականը գրում է, թե նա ծագում էր հռոմայեցիների երկրից (Leo Gram., էջ 211—212)։ Ահա վերոհիշյալ «սլավոնածինի» հիման վրա ուսումնասիրողների մի մասը, հատկապես սլավոնագետները, Թովմային համարում են սլավոն։ Սակայն բացառված չէ, որ մեր հեղինակը սխալ է մեկնաբանում Σκλάβος բառը, որ հունարենում նշանակում է ամենից առաջ «ստրուկ» (լատ. sclavus, հմմտ. ֆրանս. esclave, մանրամասն տե՛ս Kopstein, Zur Sklaverei, էջ 42—46։ Նաև Ἄμαντος, Σκλάβοι.)՝ որով բացառված չէ, որ Թովմայի ծնողները ստրուկներ են եղել։ Հարցն այն է, որ մի այլ, Թեոփանեսի Շարունակողին ժամանակակից մեծարժեք բյուզանդական աղբյուր, Գենեսիոսի պատմական երկը, Թովմային համարում է հայ՝ «Գազուրու լճի [շրջանից] Թովման ևս հայերից

էր «երում» (Θωμᾶν τὸν ἀπὸ λίμνης Γαζούρου. καὶ αὐτὸν ἐξ Ἀρμενίων τὸ γένος κατάγοντα. Genesii Regum, p. 8)։ Գրելով «Թովման էս» հայ էր, Գենեսիոսը նկատի ունի նախապես հիշատակված հայազգի «Վարդան Թուրքին»։ Նույն բանն է ասում և Գեորգ Կեդրենոսի ժամանակագրության գրիչներից մեկը. Θωμᾶν. ἕλκοντα μὲν τὸ γένος ἐξ Ἀρμενίων, τὴν δ' οἴκησιν ἔχοντα κατὰ τὴν λίμνην τοῦ Γαζούρου. (Cedr., II, p. 49)։

Հարավսլավացի պատմաբան Մ. Ռայկովիչը աղբյուրների այս հակասական տվյալները ուզում է հաշտեցնել՝ առաջ քաշելով այն միտքը, թե Գենեսիոսը նկատի ունի երկու Թովմաների՝ Թովմա Գաղիրացուն (հայազգի) և Թովմա սլավոնին (Рајкович, О пореклу Тома, էջ 35)։ Թովմայի մասին գոյություն ունի հսկայական գրականություն։ Նշում ենք ամենից կարևորները. Bury, The identity, էջ 55—60։ Липшиц, Очерки, էջ 212 և հտ. (Լիպշիցը հետևողականորեն առաջ է քաշում Թովմայի՝ սլավոնական ծագման մասին վարկածը, բայց և գրում, թե «լրիվ պարզ չէ նրա էթնիկական պատկանելությունը», նույն տեղում, էջ 217)։ Баришич, Две верзије. Deux versions, էջ 145—165, ֆրանսերեն ամփոփումը՝ էջ 166—169։ Lemerle, Thomas le Slave, էջ 225—297։ Куник, О записке, էջ 132—133։ Успенский, Константинопольский собор 842 года, էջ 144—146։ Васильев, Византия и арабы, I, էջ 23—24։ Каждан, Деревня и город, էջ 350—382։ Beševliev, Nachrichten, էջ 336—342։ Köpstein, Thomas.

17 Ֆիլոմելիոնը քաղաք էր հին Փռյուգիայում, Իկոնիոնից հյուսիս-արևմուտք։ VI դ. հիշատակում է Հիերոկլեսը, որպես Պիսիդիայի 26 քաղաքներից մեկը (Hieroclis Synecdemus, էջ 22)։ Եպիսկոպոսանիստ քաղաք էր՝ Ամասիայի մետրոպոլիտին ենթակա։ Նույնացվում է Թուրքիայի Աք Շեհիր քաղաքի հետ (Ramsey, HGAM, էջ 140)։

18 Լևոնն ու Միքայելը։

19 Թովմա Գաղիրացուն։

20 Այդ մասին տե՛ս Թեոփանես, էջ 198—199, 201—202։

21 Այսինքն՝ Կոստանդնուպոլսի դեմոսի, մայրաքաղաքի չորս կուսակցությունների։

22 Ֆեդերատների կոմեսը Բյուզանդիային դաշնակից զորքի հրամանատարն էր։

23 Խոսքը Զենոն կայսեր (474—491 թթ.) պալատի մասին է։ Գտնվում էր Կոստանդնուպոլսում, բայց ճշգրիտ տեղադրությունը հայտնի չէ (Janin, Const. byz., էջ 136)։ Դագիսթեոնը հավանաբար Հուստինիանոս 1-ի զորավար Դագիսթայոսի պալատն էր (նույն տեղում, էջ 310—311)։

24 Կորտեի կոմեսը (լատ. Cohors, когорта), թեև այլ ուսումնասիրողներ գտնում են, որ χόρτη բառն է, որ նշանակում է «վրան»։ Հետևաբար, վրանապահ, մասնավորապես կայսեր, ապա և զորավարի (տե՛ս Bury, IAS, էջ 43)։ Բանակաթեմի զորավարին էին ենթարկվում հետևյալ աստիճանները. 1. Տուրմարխները, 2. Մերարխները, 3. կորտեի կոմեսը, 4. Խարտուլարը, 5. Դոմեստիկոսը, 6. Բանդոնների դրունգարները, 7. Բանդոնների կոմեսները, 8. Սպաթարների կենտարխոսները, 9. Հետերիայի կոմեսը, 10. պրոտոկանգելլարիոսը, 11. Պրոտոմանդատորը։ Ծովային բանակաթեմերի զորավարները նաև 12. Պրոտոկարավները և 13. Կենտարխոսները։

Ըստ Կոստանդին Ծիրանածինի կորտեի կոմեսի պարտականությունն էր կայսեր վրանը պատրաստի վիճակում ունենալը։ Նրանք հետևում էին նաև, որպեսզի պահակատեղիները և զորակայանները կազմ ու պատրաստ լինեն (De Cer. I, էջ 489—490)։ Կորտեի կոմեսները ունենում էին սպաթարի և կանդիդատի աստիճան (Bury, IAS, էջ 43)։

25 Գտնվում էր Օպտիմատոն բանակաթեմում, որի կենտրոնն էր Նիկոմեդիա քաղաքը։ Մալագինան համարվում է առաջին զինվորական կայանը, ընդ որում, եթե կայսրը գնում էր արաբների դեմ արշավանքի, սխոլերի դոմեստիկոսը (սպարապետը) և Օպսիկիոն բանակաթեմի զորավարը պարտավոր էին նրան դիմավորել Մալագինայում (Կոստանդին Ծիրանածին, էջ 134—135)։ Բյուզանդական ռազմական ճանապարհը դեպի Արևելք սկսվում էր Մալագինայից և Դորիլեոնի, Պոլիբոտոսի, Ֆիլոմելիոնի, Իկոնիոնի վրայով, Կիլիկյան դռներով կամ Տավրոսի լեռնանցքներից մեկով, Կիլիկիա։ Մի այլ ճանապարհ Մալագինայի վրայով գնում էր Դորիլեոն, Ամորիոն և Կիլիկիա՝ Կիլիկյան դռներով (Ramsey, HGAM, էջ 197—198)։

26 Իշխանաց կղզիներից մեկը Պրոպոնտիսում (Մարմարա)։

27 Լիկաոնիայի՝ Փոքր Ասիայի միջերկրյայքում գտնվող նահանգի բնակիչները։ Լիկաոնիան գտնվում էր Փռյուգիայի, Գալատիայի, Կապադովկիայի, Կիլիկիայի և Պիսիդիայի մեջտեղում։ Գլխավոր քաղաքն էր Իկոնիոնը։ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ (էջ 164) մտնում էր Անատոլիկոն բանակաթեմի կազմի մեջ։ Լիկաոնիան այժմ կոչվում է Կարամանիա (Նրա մասին՝ Ramsey, HGAM, էջ 330 և հտ.)։

28 Սբ. Սոփիայի տաճարը։

29 Եվխայիտների ավանը (քաղաքը) սկզբնական շրջանում գտնվում էր Հելենոպոնտոսում, Թեոփանեսի ժամանակ՝ Արմենիակների բանակաթեմի կազմում (Թեոփանես, էջ 201)։ Գտնվում էր Ամասիայից Նիկոմեդիա տանող ճանապարհի վրա, Ալիս գետից արևելք։ Սկզբնական շրջանում եպիսկոպոսանիստ էր, մետրոպոլիտություն դարձավ 886—959 թթ. միջև։ Ռամզեյը նույնացնում է ժամանակակից Չորումի հետ (Ramsey, HGAM, էջ 318—325), իսկ Ա. Գրեգուարը՝ թուրքական Ավքար կամ Ավխար գյուղի, որտեղ գտնվում են բյուզանդական բազմաթիվ ավերակներ (Mango and Sevčenko Three Inscriptions, էջ 379—380)։

30 Նկատի ունի խան Կրումի գլխավորած՝ բուլղարների և բյուզանդացիների միջև 811 թ. հուլիսի 26-ին տեղի ունեցած ճակատամարտը, որի մասին մանրամասն տե՛ս Թեոփանես, էջ 202—203։

31 «Ռանգաբե» անվան նշանակության մասին տե՛ս Gregoire, „Rangabé“, էջ 793 և հտ.։

32 Միքայել կուրապաղատը ամուսնացել էր Նիկեփոր կայսեր դուստր Պրոկոպիայի հետ, երբ Նիկեփորը դեռևս Գենիկոնի լոգոթետ էր։

33 Բնագրում՝ στρατηγὸς Ἀνατολικῶν։ Թեոդորոս Ստուդիտեսի վարքում՝ στρατηγὸς τῆς Ἑῴας (Vita Theodori, սյունակ 169), նաև ὁ τῆς Ἀνατολῆς στρατηγός (սյունակ 276)։ Լևոնի մասին մանրամասնություններ կան այդ վարքում (սյունակ 169 և հտ.), հատկապես նրա պատկերամարտ քաղաքականության մասին (սյունակ 276 և հտ.)։

34 Երեսուն լիտր ոսկու չափով (տե՛ս Թեոփանես, էջ 209)։ Նախկին պայմանագիրը կնքվել էր 716 թ.։ Նրա մասին տե՛ս Златарски, История, I, 1, с. 177.

35 Փախստականներին վերաբերող այս կետի մասին տե՛ս Թեոփանեսի ժամանակագրության մեջ (էջ 209—210)։ Տե՛ս նաև Cankova-Petkova, Deux contributions, էջ 39—40։

36 Բյուզանդացիները «սկյութ» են անվանում բազում ժողովուրդների՝ սլավոններին, ռուսներին, հաճախ թուրքերին և այլն։ Այստեղ խոսքը վերաբերում է բուլղարներին։

37 Բյուզանդական բանակը բաղկացած էր երկու մասից՝ Թեմաներից և տագմա-ներից։ Առաջինները ներկայացնում էին նահանգների՝ բանակաթեմերի զորքերը. իսկ տագմաները այն զորքերն էին, որոնք կենտրոնացած էին մայրաքաղաքում, կամ նրան մոտիկ նահանգներում՝ Թրակիայում, Մակեդոնիայում և այսպես կոչված Պերատիկա շրջանում՝ Բոսփորի ասիական կողմում։ Բանակաթեմերի զորքերը գլխավորում էին բանակաթեմերի զորավարները, իսկ տագմաները՝ դոմեստիկոսները, և ունեին տարբեր կազմակերպություն։ Տագմաները հաճախ է հիշատակում Թեոփանեսը, VIII դ. դեպքերի առնչությամբ։ IX դ. հիշվում են չորս տագմա, այն է՝ 1. Սխոլարիոսներ, 2. էքսկուբի-տոսներ, 3. Արիթմոսներ և 4. Հիկանատոսներ (տե՛ս Bury, IAS, էջ 47—48)։

Տագմաների մասին մանրամասն տեղեկություններ են տալիս արաբական աղբյուր-ները։ Կուդաման իր «Քիթաբ ալ խարաջ» աշխատության մեջ գրում է հետևյալը. «Կոս-տանդնուպոլիս, արքայանիստ քաղաքի կեցող զորաց թիվը 24.000 կհաշվվի, որոնց 16.000-ը ձիավոր և 8000-ը հետևակ են։ Ձիավորները չորս գնդի կրաժանվին։ Առաջինը 4000 հոգով կկացուցանե Սկոլարյան գունդը, մեծ Դոմեստիկի հրամանատարության տակ, միևնույն ժամանակ նաև ընդհ. հրամանատար է բովանդակ բանակին և կարգադիր զո-րաժողովներու։ Երկրորդ գունդը նույնպես 4000 հոգվով, կկոչվի Տակսիս։ Դրունգարի մը հրամանին տակ գտնվող՝ նմանապես 4000-է բաղկացած, երրորդ՝ եկսկուբիտք ([illegible]) գունդը կներկայացնե անձնապահաց դասը։ Չորրորդը՝ Սկուտարյանք՝ 4000 հոգ-վով, որոնք թագավորին ճամբորդությանցը միշտ կընկերանային։ Հետևակազորն եր-կուքի կբաժնվի, մին կկոչվի՝ Ոպտիմատես, մյուսը՝ Նումերա, յուրաքանչյուրը 4000 հոգվով» (տե՛ս Դեյցեր, Սկզբնավորությունք, էջ 50, ծանոթ. 1)։ Բանակաթեմերի զորքերի (թեմատա) և տագմաների մասին հիշատակություն կա Հովհաննես Զմշկիկի՝ Հայոց Աշոտ Գ Ողորմած թագավորին հղած նամակում՝ «... հեծելազօրս առաքեցաք զԹիմա-ցիսն և զՏաշխամատացիսն» (Մատթեոս Ուռհայեցի, էջ 25), որոնց մասին տե՛ս Բար-թիկյան. Մի քանի բյուզանդական տերմինների մասին, էջ 72—77։

38 Լևոնի ժամանակաշրջանի Անանուն պատմիչը պարզիպարզո գրում է, թե մարտից խուսափեցին և առաջինը փախուստի դիմեցին Անատոլիկոն (այսինքն՝ Լևոն Հայկազնի) բանակաթեմի զինվորները (Scriptor incertus, էջ 340)։ Գենեսիոսը նշում է Թեոփանե-սի Շարունակողի երկու վարկածներն էլ (Genesii Regum, էջ 4)։

39 813 թ. հուլիսի 11-ին։

40 Պարիսպների, այսինքն՝ Կոստանդնուպոլսի պարիսպների պահապան զորքերի. հրամանատարը կոչվում էր κόμης τῶν τειχέων։ Ավելի մանրամասն տե՛ս Չորրորդ գրքի 60-րդ ծանոթագրությունը։

41 Բուլղարիայից վերադառնալիս։

42 Տե՛ս Յովբ, ԻԳ, 10. «քննեաց զիս իբրև զոսկի»։

43 Մանուիլ «Ամաղեկացու» մասին տե՛ս վերը, ծանոթ. 11։

44 Ստրատորների զորամասի պարագլուխը, որի սկզբնական պարտականությունն էր. օգնել կայսեր ձի նստելու։ VI դ. հիշվում է ստրատորների հատուկ զորամաս։ Հուստի-նիանոս II-ի ժամանակ հանդիպում է ստրատորների դոմեստիկոս Օպսիկիոնի պրոտո-ստրատորի հետ միասին։ 765 թ. հանդիպում է մի «սպաթար և կայսերական պրոտո-ստրատոր»։ Նշենք այստեղ, որ Վասիլ I Մակեդոնացին իր գործունեությունն սկսեց որ-պես ստրատոր, ապա դարձավ պրոտոստրատոր։ Պրոտոստրատորը ձի հեծած ուղեկ-ցում էր կայսեր։ IX դ. վերջում և X դ. սկզբում պրոտոստրատորը այնքան էլ բարձր. աստիճան չէր, բայց հետագայում նրա նշանակությունն ու կշիռը շատ է բարձրանում,

իսկ Պալեոլոգների ժամանակ դառնում է ամենաբարձր աստիճաններից մեկը (տե՛ս Bury, IAS, էջ 117—118)։

45 Միքայել Ասորու ասելով ինքը՝ Միքայել կայսրը Լևոնի գլխին դրեց թագը (Michel le Syrien. III p. 70):

46 Բարկա (βάρκα) նշանակում է «մակույկ»։ Երևի հայհոյական է։ Հեսիոդոսը ցույց է տալիս, որ այդպես են կոչում տարանտինացիք կանացի սեռական օրգաններըւ

47 Մոդիոլոն (լատ. modiolus), կանացի շքեղ գլխարկ։ Այստեղ հավանաբար՝ թագ։

48 Կոստանդնուպոլիսն ուներ մի քանի դարպասներ։ Ոսկե դարպասները (կամ դռները) կայսրերի մուտք գործելու պաշտոնական դռներն էին, երբ նրանք վերադառնում էին պատերազմական արշավանքներից։ Ենթադրում են, որ կառուցվել են 386 և 391 թվականների միջոցին, Թեոդոս Մեծի հաղթանակի առթիվ ընդդեմ Մաքսիմոսի (մանրամասն՝ Janin, Const. byz., էջ 252—256): Այս և մյուս դարպասները Կոստանդնուպոլսի բնակիչները բացեցին կամովին, առանց որևէ դիմադրություն ցուցաբերելու (Scriptor incertus, էջ 340)։ Ոսկե դռան տեղում այժմ գտնվում է Եդի կուլեն։

49 Խալկե՝ սկզբնական շրջանում նշանակում էր կայսերական պալատի պղնձե դուռ։ Հետագայում այդպես կոչվեցին այդ դռան ներփակող շինությունները՝ Փրկչի եկեղեցին, սբ. Էպիխարիսի վանքը։ Խալկեին այլ բացատրություն է տալիս Գեորգ Կեդրենոսը (Cedr. I, էջ 647), թե անունը պարտական է պալատի պղնձե ծածկին (Janin. Const. byz. էջ 110—113)։ Այլ ուսումնասիրողներ բացատրում են, թե Խալկեն մարմարե հատակով նախասրահ էր, որ Ավգուստեոն հրապարակից տանում էր Մեծ պալատ։ Հրապարակից նա բաժանված էր երկաթե մեծ դարպասներով (Labarte, Le Palais, էջ 61։ Беляев, Byzantina. I. c. 131 и сл.):

50 Ապագա կայսր Միքայել II-ը (820—829 թթ.)։

51 Վանական դարձավ։ Տե՛ս և Միքայել Ասորու մոտ, հտ. III, էջ 71։

52 Պլատե (ավելի ճիշտ՝ Պլատիա՝ Տափակ, տափարակ, թուրքերը կոչում են Յասըադա)։ Իշխանաց կղզիներից մեկը։ Կոստանդնուպոլսում կար համանուն թաղամաս՝ Ոսկեղջյուրի շրջանում։

53 Հիկանատների գորամասը մինչև IX դ. չի հիշատակվում աղբյուրներում։ Նրանց հրամանատարն ունենում էր սպաթարի աստիճան (տե՛ս Bury, IAS, էջ 63—64)։

54 Այսպես կոչված Կոստանդնուպոլսի թվականի համաձայն 6302 թ. համապատասխանում է մ. թ. 794 թ., որ ակնհայտ սխալ է։

55 (Տասն) հրատարակիչներն առել են անկյունավոր փակագծերի մեջ, ցանկանալով համաձայնեցնել նախորդ՝ 6302 թ. հետ։ Լատիներեն թարգմանության մեջ սխալմամբ թվականները համապատասխանաբար նշված են 6032 և 6037։

56 Շարադրանքից պարզ չէ, Սատիրոսի վանքից, թե՞ Սատիրոսի հեթանոսական տաճարից։

57 Այսինքն՝ չարություն։

58 Ավելի ճիշտ՝ Բուկոլեոնի նավահանգիստը։ Պրոպոնտիսի (Մարմարա) արևելյան ամենափոքր նավահանգիստը։ Նույնանում է ժամանակակից Չատլաչըկապը նավահանգստի հետ (տե՛ս Janin, Const. byz., էջ 224—225)։

59 Թեոգնոստոս Կասսիտերասը սպաթարոկանդիդատի աստիճանն ուներ։ Նա պատրիկ Միքայել Մելիսսենոսի որդին էր (Genesii Regum, էջ 11)։

60 Նոր կտակարանում «Պյութոնի ոգի»-ի տակ հասկանում էին Դելփիքի պատգամարանի ոգին, այսինքն՝ կանխագուշակելու շնորհքը։ Գործք Առաքելոցում (ԺԶ, 16) թարգմանված է «այս (իմա՝ չար ոգի) հարցուկ»։

61 Խոսքը Կոստանդնուպոլսի ակրոպոլսի մասին է, քաղաքի եվրոպական մասի արևելյան ծայրին, որտեղ դեռ անտիկ շրջանում Բյուզանդիոնի բնակիչները կենտրոնացրել էին իրենց աստվածությունների տաճարները։ Քաղաքի երկրորդ շրջանի կենտրոնն էր։ Այսօր նրա տեղում գտնվում է Սերայլը։

62 Խոսքը սբ. Պողոսի տաճարում եղած որբանոցի և նրա վարիչի մասին է (տե՛ս Lemerle, „Le Gouvernement des Philosophes", p. 233)

63 Անանուն պատմիչը ցույց է տալիս, որ Լևոնը թագադրվեց Նիկեփոր պատրիարքի կողմից, ինդիկտիոնի 7-րդ տարվա հունիս ամսի 10-ին (Scriptor incertus, էջ 340), նախօրոք նրան իր ձեռքով ստորագրված գրություն տալով, թե չի խախտի եկեղեցու ընդունած կանոններն ու կարգը (տե՛ս և Leo Gramm., էջ 207, Sym Mag., էջ 604, Georg. Mon., էջ 763)։

64 Խոսքը Թովմա Գազիրացու մասին է։

65 Հավանաբար՝ ֆեդերատների կոմես կամ դոմեստիկոս (տե՛ս վերը, ծանոթ. 22)։

66 Բնագրում՝ στρατηγὸν τυγχάνοντα τῶν Ἀρμενίων: Ամենայն հավանականությամբ պետք ուղղել՝ Ἀρμενιακῶν, Արմենիակների բանակաթեմի զորավար։

67 Բնագրում՝ συντεχνος: Բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում։ Հայկազյան բառգիրքը բացատրում է. «համածինք. համածնողք. կամ որդիացեալք ի սուրբ աւազանէն. որպէս կնքահայր և սան, են» (հ. Բ, էջ 714)։ Բառի մասին տե՛ս և Hübschmann, Arm. Gram., էջ 379)։ Ավելի մանրամասն տե՛ս գիրք Գ, ծանոթ. 80։

68 Խան Կրումը (803—814 թթ.)։

69 Այժմ Նեսեբր քաղաքը Բուլղարիայում, Սև ծովի ափին։

70 Պյուրփորոս նշանակում է «հրակիր»։ Լակեդեմոնացիներն այդպես էին կոչում զորաբանակն ուղեկցող քրմին, որ կրում էր անմար կրակը։ Նա օգտվում էր անձեռնմխելիության իրավունքից։ Այն գոյություն ուներ նաև ասորեստանցիների մոտ. և «պյուրփորոսն անգամ չփրկվեց» դարձվածքը (օգտագործում է Հերոդոտոսը) նշանակում է, որ բոլորն էլ գլխովին կոտորվեցին, մարդ չփրկվեց։

71 Իվան Դույչեր գտնում է, որ Լևոնի կողմից բուլղար երեխաներին քարերին շպրտելով սպանելու փաստը որոշակի բովանդակություն չունի, այլ աստվածաշնչային դարձվածք է, վերցված 136-րդ սաղմոսից. «երանի որ կալցէ զմանկունս քո և ընկեցէ զվէմ» (Дуйчев, Легендата, էջ 118 և հտ.)։

72 Թեոփանեսի Շարունակողը Լևոնի՝ բուլղարների խան Կրումի դեմ վարած պատերազմների վերաբերյալ շատ համառոտ է գրում։ Անանուն պատմիչը և Լևոն Քերականը տալիս են շատ հետաքրքիր մանրամասնություններ։ Կրումը Լևոն V-ի գահ բարձրանալուց վեց օր անց, իր եղբորը թողնելով պաշարելու Ադրիանուպոլիս քաղաքը, անձամբ պաշարում է Կոստանդնուպոլիսը։ Լևոնը փորձեց խորամանկության դիմել և ձերբակալել Կրումին, բայց դա իրեն չհաջողվեց։ Դրա վրա բուլղար խանը կրակի տվեց Կոստանդնուպոլսի պարիսպներից դուրս գտնվող բոլոր շենքերն ու եկեղեցիները, վանքերն ու ապարանքները։ Ապա նա նույն բանն արեց Թրակիայի Աթյուրա, Սիլիվրիա, Հերակլիա, Ռեդեստոս քաղաքներում, գրավեց Ադրիանուպոլիսը (ըստ Սիմեոն Մագիստրոսի՝ Արկադիուպոլիսը, էջ 616), որի բնակչությունը, հիսուն հազար հոգի, քշեց տարավ Բուլղարիա՝ Դանուբ գետի ձախ ափին (Scriptor incertus, էջ 342—345։ Նաև՝ Leo

Gramm., էջ 207—208. Sym.Mag., էջ 616—617)։ Ադրիանուպոլսից (Արկադիուպոլսից) գերիները իրենց հետ տարան բարձրորակ հայկական բրդե գործեր ու կապերտներ, պղնձյա սպասեղեն ('Αρμενιακὰ στρατηγλωματωτήρια καὶ ναυστάπητα ἐνώτερα καὶ [illegible] πολὺν καὶ γλυκώματα). Մի բան, որ վկայում է գերվածների Հայ լինելու մասին։ Հիշյալ դեպքերի մասին համառոտ, բայց ճիշտ, նշում է և Սամվել Անեցին. «Եկն Թշնամին յՈսկի դուռնն՝ և առան բազում քաղաքք, և գերեցաւ մայր քաղաքացն Մակեդոնացւոց Անդրիանուպօլիս... Սա (Լևոն V-ր—Հ. Բ.) շինեաց զԹիւզու և զԱրկաթուպօլիս» (էջ 91)։ Նույն պատմիչը Լևոն V-ի մասին տալիս է և մի այլ կարևոր տեղեկություն. «սա զԿամախ էառ» (նույն տեղում։ Տե՛ս և Ստեփանոս Ասողիկ. էջ 143, Կիրակոս Գանձակեցի. էջ 76)։

Տվյալներ կան, որոնց համաձայն Լևոն V-ը 814-ի վերջին կամ 815 թ., այսինքն Կրումի որդի Օմուրտագի հետ հաշտության պայմանագիր է կնքել, որը որոշում էր Բյուզանդական կայսրության և Բուլղարիայի սահմանագիծը Թրակիայում, ինչպես և ռազմագերիների փոխանակության հարցը։ Бешевлиев, Първобългарски надписи էջ 121—123։ Ցանկովա-Պետկովայի կարծիքով հաշտության բանակցությունները սկրսվեցին 815 թ. վերջին, իսկ պայմանագիրը կնքվեց 816 թ., որի մասին միակ աղբյուրը Գենեսիոսի պատմական երկն է և Բուլղարիայի Սուլեյմանքյոյ (այժմ՝ Սեյչիշտե) վայրում գտնված Օմուրտագի վիմագիր արձանագրությունը։ Մանրամասն տե՛ս Cankova-Petkova, Deux contributions, էջ 42—45։

73 Ինչպես անունն է վկայում, նա հայազգի էր։ Կեդրենոսի մոտ անունը աղավաղվել դարձել է Սաբբատիոս (Cedr., II, էջ 54)։

74 Հունարեն՝ τραχᾶς (տարաքսիաս)։ Բառախաղ է, նա այդ բառից է բխեցնում Տարասիոս անունը։

75 Այսինքն՝ ծածկած սյունաշարք։ Կոչվում էր նաև Մավրիանոսի երկար սյունաշարք։ Նույնացվում է Կոստանդնուպոլսի Ուզունչարշիի հետ (Janin, Const. byz. էջ 93)։ Տեղին է նշել, որ «էմբոլոն» բառը հանդիպում է և հայկական միջնադարյան աղբյուրներում «ոմբոլոն» ձևով. «քահանայ որ որիչ կամի զպատարագն առնել. մի գացի ի խաւարային ոսբոլոնսն, այլ մնասցէ ի մեծ եկեղեցինս». «ի մի տեղն ուր բաւական էր մի կամ երկու եկեղեցի ժողովարան. այժմ տեսանի բազումս և անթիւ ծակոտեալ ոմբոլոնս» (տե՛ս Սրբոյն Ներսեսի Լամբրոնացւոյ Խորհրդածութիւնք. էջ 227, 524)։ Բառը հայկազյան բառարանը բացատրում է. «կամարակապ սրահակ և խորշ խորանի մթին ի տաճարս» (հ. Բ, էջ 515։ Տե՛ս և Աճառյան, Արմատական բառարան, հ. Գ, էջ 559)։

76 Հմմտ. Սամվել Անեցի. «և զպատկերսն ընկէց Լևոն» (էջ 91)։ Նաև՝ Կիրակոս Գանձակեցի, էջ 76. Միքայել Ասորի. հ. Գ, էջ 71։ Լևոնի հրովարտակը այդ առթիվ՝ Dölger, Regesten, I, 49, № 394 (apud: Μπονι. οἱ ἅγιοι Κύριλλος καὶ Μεθόδιος, σελ. 272)։

77 Պատրիարք Նիկեփոր Ա-ը (806—815 թթ.), նշանավոր ժամանակագիր։

78 Պատրիարք Թեոդոտոս Մելիսենոս Կասսիտերասը, պատրիկ Միքայել Մելիսենոսի որդին, որ Կոստանդին V կայսեր խնամին էր՝ վերջինիս երրորդ կնոջ գծով։ Թեոդոտոսը մինչև պատրիարք դառնալը սպաթարոկանդիդատ էր։ Պատրիարքական աթոռին նստեց 815—821 թթ.։ Տե՛ս վերը, ծանոթ. 59։ Դեպքի մասին նաև՝ Michel le Syrien, t. III, p. 72։

79 Նիկիական հավատո հանգանակը։

80 Նկատի ունի պատկերամարտությունը, որ հերձված էր որակվում։

81 Հոգևոր պետի կողմից եկեղեցու մեջ առաջին թագադրված կայսրը Փոկասն էր (տե՛ս [illegible], էջ 249, ծանոթ. 317)։

82 Թեոփանես Խոստովանողին, հայտնի ժամանակագրին։ Նա աքսորված էր Սամոթրակե կղզին, ուր և վախճանվեց 818 թ.։

83 Դուշակեց, որ նա խոստովանող է լինելու։

84 Նկատի ունի Թեոփանեսի մահը։

85 Կոստանդնուպոլիսը, այստեղ՝ Բյուզանդական կայսրությունը։

86 Հմմտ. նաև՝ Genesii Regum, p. 17—18։

87 Լավսիակոսը (Լավսիակոս տրիկլինոս) շքեղ սրահ էր կայսերական պալատի բակի հարավային մասում, կառուցված Հուստինիանոս Բ-ի կողմից. որպես Ոսկե տրիկլինի նախասրահ։ Ուներ մոտ հարյուր մետր երկարություն և ութ մետր լայնություն։ Նախասրահը նաև կայսեր մոտ գնացողների սպասասրահ էր, ինչպես և կայսրերի աշխատատեղին։ Մանրամասն տե՛ս Беляев, Byzantina, I. c. 45 и сл.

88 Նկատի ունի էպարքոսին, Կոստանդնուպոլսի քաղաքապետին։ Պաշտոնն առաջին անգամ հանդես եկավ IV դ. կեսերին, հատուկ նշանակություն ստացավ V դ.։ Էպարքոսը համարվում էր «քաղաքի հայրը», նրան նշանակում էր անձամբ կայսրը, որի բացակայության կարևորագույն հարցերը վճռում էին պրեպոզիտոսը, մագիստրոսը և էպարքոսը։ Վերջինս կարգավորում էր մայրաքաղաքի տնտեսական կյանքը, քննության ենթարկում քաղաքի արհեստավորների ու առևտրականների դատական գործերը։ Քաղաքի առևտրաարհեստավորական կորպորացիաները էպարքոսին էին ենթարկվում։ Քաղաքային ինքնավարության անկման հետ միասին բարձրացավ էպարքոսի դերը։ Էպարքոսի դերը արարական արևելքում կատարում էր մուհթասիբը, որ XI դ. կեսերին հիշատակված է նաև Անիում։ Էպարքոսի մասին տե՛ս „Византийская книга эпарха" Guilland, L'Eparque, I. fasc. I. p. 17—32. fasc. 2. p. 145—179

89 Բուլղարիայի հետ այս երեսնամյա հաշտության պայմանագիրը կնքվեց 814 թ. վերջին. կամ 815 թ.։ Բուլղարիայում այն ժամանակ իշխում էր խան Օմուրտագը, որին Թեոփանեսի Շարունակողը հիշում է մի այլ տեղում (գիրք Բ. գլ. 17)։ Տե՛ս Дуйчев, Мирные договора, էջ 64—65։ Պայմանագրի տեքստը պահպանվել է Բուլղարիայի Սուլեյմանքյոյում հայտնաբերված պրոտոբուլղարական վիմագիր արձանագրության մեջ (նույն տեղում, էջ 65—66)։ Արձանագրության նորագույն հրատարակությունը՝ Бешевлиев, Първобългарски надписи, էջ 152 և հտ.։ Նրա մասին նաև՝ Ангелов, История на Византия, հ. Ա, էջ 297, Цанкова-Петкова, Българо-византийските отношения, էջ 176—177, (հեղինակը սխալ է հասկացել երդման արարողությունը)։

90 Այդ մասին՝ Златарски, Клятва, էջ 251 և հտ.։ Бешевлиев, Вярата, էջ 32—33, 49 և հտ.։ Дуйчев, Славяноболгарские древнос и, с. 14.

91 Հմմտ. Մատթեոս, է, 6. «Մի տայք զսրբութիւն շանց, և մի արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց, զի մի առ ոտն կոխիցեն զնոսա»։

92 Հմմտ. Սիրաք, է, 18. «վրէժխնդրութիւն ամբարշտի՝ հուր և որդն»։ Նաև՝ Մարկոս, Թ, 45—47. «...անկանել ի գեհեն. ուր որդն նոցա ոչ մեռանի և հուրն ոչ շիջանի»։

93 Թեոփանեսի Շարունակողը հիշում է միայն Հովհաննես Քերականին (տե՛ս հաջորդ ծանոթագրությունը)։ Անանուն պատմիչը և այլ հեղինակներ հիշում են մի բանի ուրիշների անունները ևս՝ կոչկակարների համքարության պետ ([illegible])

Կոստանդնին, քերական Կասիմատասին և մի ծերունի իրավագետի, որն ուսուցչությամբ էր պարապում և վանք մտնելով վերանվանվեց Անտոնիոսՙ Հետագայում նա դարձավ Սիլեոնի եպիսկոպոս (Scriptor incertus, p. 349—351, Sym. Mag., p. 606)

94 Հովհաննես Քերականը (Ἰωάννης ὁ Γραμματικός) հայազգի էր, Թեոփանեսի Շարունակողը տալիս է նրա եղբոր անունը՝ Արշավիր (տե՛ս Գիրք Դ, գլ. 8), իսկ Անանուն պատմիչը՝ հոր՝ Բագարատ (Παγκράτιος). որի մասնագիտությունը սկիաստես էր (Սոֆոկլեսի բառարանում այդ բառը մեկնաբանվում է՝ մեկի գլխին հովանոց պահող)։ Հովհաննեսին նույն աղբյուրի համաձայն կոչում էին նաև Հյուլիլաս (ըստ Սիմեոն Մագիստրոսի՝ Հյուլգիլաս, էջ 606), որը, իբր եբրայերեն նշանակում է սատանայի գործակից և կարապետ (Scriptor incertus, էջ 350։ Հմմտ. նաև էջ 359 և Sym. Mag., էջ 606)։ Լևոն Քերականը նրան չարաբանում է, գրելով, որ Հովհաննեսը իբր զբաղվում էր բախտագուշակությամբ, վհկությամբ և այլն (Leo Gramm., էջ 208—209)։ Հովհաննեսի կենսագրությունը նույն ոգով են շարադրում Թեոդորոս Ստուդիտեսի կենսագիրները (տե՛ս Vita Theodori, col. 172, 277)։ Հովհաննեսը, հակառակ Թեոփանեսի Շարունակողի պնդումներին, զարգացած մարդ էր, Միքայել Թլվատը սրան էր վստահել իր որդու՝ Թեոփիլոսի դաստիարակության գործը։ Լևոն V-ը որոշել էր Հովհաննեսին Կոստանդնուպոլսի պատրիարք դարձնել, բայց պատրիկները դրա դեմ դուրս եկան, պատճառաբանելով, թե Հովհաննեսը դեռ երիտասարդ է և աննշան, որ անհարմար է իրենց՝ տարեց մարդկանց երկրպագել մի երիտասարդի (Scriptor incertus, p. 359)։ Հովհաննեսը պատրիարք դարձավ 833—836 թթ. միջև և աչքի ընկավ որպես պատկերամարտ։ Թեոփիլոսի մահից հետո (842 թ.) Թեոդորա կայսրուհու կողմից կարգալույծ արվեց։ Միքայել III-ը նրա աճյունը գերեզմանից հանելով, կրակի տվեց։ Նրա մասին մանրամասն տե՛ս Ադոնց, Հայ գիտական դեմքեր, էջ 512—522։ Липшиц, Очерки, էջ 296—301։ Ἀναστασίου. Ὁ κατηγορίας τῆς πατριαρχίας. σελ. 50.

95 Հին հունական դիցաբանության համաձայն Պրոտևսը ծովային աստվածություն էր, որդին Պոսիդոնի և Փյունիկեի (ըստ այլ վարկածի՝ Օվկիանոսի և Տեթյուսի)։ Ապագան կանխագուշակելու շնորհքն ուներ, բայց այդ բանն անելու համար անհրաժեշտ էր նրան բնած ժամանակ կապոտել և ստիպել գուշակություն անել։

96 Տե՛ս Եսայի, ԽԱ, 19։

97 Լևոն Քերականը և Գեորգ վանականը ցույց են տալիս, որ տվյալ պահին Միքայելը էքսկուբիտոսների գնդի հրամանատարն էր (Leo Gramm., էջ 210, Georg. Mon. էջ 778)։ Սիմեոն Մագիստրոսը նրան անվանում է Լևոն [illegible] (πρωτοσπάθαριος, Sym. Mag., էջ 604)։ Գենեսիոսը ցույց է տալիս, որ Միքայելը պատրիկի պատվաստիճան ստացավ և նշանակվեց էքսկուբիտոսների կոմես՝ Լևոնի գահ բարձրանալուց հետո (Genesii Regum, p. 12)։

98 Հետաքրքիր տերմին է օգտագործում հեղինակը՝ [illegible] («ականջ դնողներ»)։

99 Լատ. a secretis՝ Կայսերական վարչության ծառայողի Վարչությունը կազմված էր գրասենյակներից, որոնք սեկրետա էին կոչվում։ Հնում կայսերական նոտար կոչվածները X դ. սկսեցին կոչվել ասեկրետիս և ենթարկվում էին պրոտոասեկրետին (տե՛ս Bréhier, Les Institutions, էջ 166 և հտ.)։ Պաշտոնի անվանումը աղավաղված ձևով հանդիպում է Մխիթար Գոշի Դատաստանագրքում. «երրորդ՝ ասին՝ կրիտքն (հարդա՝ ասիկրիտք), որք են թղթագիրք արքային» (Մխիթար Գոշ, Գիրք դատաստանի, էջ 139, 603—604)։

*100 Արշավիրը պատրիկ էր և քվեստոր* (Genesii Regum, *էջ 21)։ Նրա մասին մանրամասն գրում է Թեոփանեսը, էջ 195։*

*101 Պապիասը ներքինի պաշտոնյա էր բյուզանդական արքունիքում, որի պարտականությունն էր հետևել Մեծ պալատի ներքին կարգ ու կանոնին և ապահովության, որի բանալիները նրան էին վստահված։ Սա էր առավոտյան բացում և երեկոյան փակում պալատի սրահներն ու գրասենյակները՝ հետերիարխի, պրիմիկերիոսի և կայսերական արքունիքի այլ իշխանավորների ուղեկցությամբ։ Նա ներկա էր լինում պաշտոնական ընդունելություններին։ Պապիաս կար Մեծ պալատում և Մագնավրայի պալատում, բայց Միքայել III-ը մի երրորդ պապիաս նշանակեց Դափնեի պալատում* (Georg. Mon., *էջ 816)։ Մագնավրայի և Դափնեի շենքերը անմիջական կապ ունեին Մեծ պալատի հետ, և նրանց պապիասները անմիջականորեն ենթարկվում էին Մեծ պալատի պապիասին։ Պապիասը որպես կանոն ունենում էր պրոտոսպաթարի աստիճանը (*Bury, IAS, *էջ 126—128)։ Լևոն Քերականի ասելով հիշյալ պապիասը Միքայել կայսեր ազգականն էր* (Leo Gram., *էջ 210)։ Նրանց մասին ավելի մանրամասն տե՛ս* Беляев, Βυζαντινά, I, с. 145—163:

*102 Այսինքն՝ սիբիլլային վերաբերող։ Հին հունական առասպելաբանության համաձայն սիբիլլաները Ապոլլոնի ներշնչմամբ գուշակելու հատկություն ձեռք բերող կանայք էին։ Գոյություն ունեին սիբիլլական գրքեր, որտեղ չափածո գուշակություններ էին գրված։ Մեզ են հասել 12 գրքից բաղկացած սիբիլլական գուշակություններ, որոնք վերաբերում են տարբեր ժամանակների և իրենց հիմքում ունեն հեթանոսական, հրեական, քրիստոնեական հավատալիքներ։*

*103 Հունարեն Լեոն* (Λέων), *ակնարկում է Լևոն կայսեր։*

*104 Այս հեքիաթի ավելի ընդարձակ տարբերակը (և բացատրությունը) բերում է Սիմեոն Մագիստրոսը։ Պատկերվածը առյուծ էր (հունարեն՝ լեոն), որի գլխին կար «Խ», իսկ մարմնի հետևի մասում՝ «Ֆ» տառը։ Առյուծի մեջքին սուր էր խրած։ Նկարի իմաստի բացատրությունը տվել է ոմն Ստեփանոս Կապետոլիգես, թե կայսեր հետ դժբախտություն է պատահելու Քրիստոսի ծննդյան* (Χριστογέννα) *և Աստվածահայտնության* (Φῶτα) *տոների միջև ընկած ժամանակահատվածում* (Sym. Mag., *էջ 610—611)։*

*105 Խոսքը Աստվածածնի և Քրիստոսի մասին է։*

*106 Տե՛ս էջ 15։*

*107 Կոստանդին Ծիրանածինը բացատրում է կանիկլիոս տերմինը. «Նա ում վստահված է կայսերական գրչի հոգսը»։ Գլխավոր քարտուղար։ Կանիկլիոս բառը լատիներեն է՝* canniculum, *որ նշանակում է հատկապես կայսեր թանաքամանը։ Ինչպես բազում բյուզանդական պաշտոններ (հետերիարխ, դոմեստիկոս և այլն), կանիկլիոսը ևս միջնադարում հայերի կողմից ընդունված է որպես հատուկ անուն։ Ստեփանոս Ասողիկը գրում է. «Եւ այա գիտադաղութիւն խօսեցաւ Կանիկլին ընդ Գուրգենայ, որպէս թէ առնել թագաւորին դկամս նորա՝ զոր խնդրիցէ»* (Ստեփանոս Ասողիկ, *էջ 279)։ Թյուրիմացությունը տեղ է գտել նաև Ասողիկի պատմության ռուսերեն թարգմանության մեջ.* «Царь Василий, узнав это, приказал магистру, по имени Кан кл". Всеобщая история, с. 202. *և ռուսամնասիրություններին։* Մ. Չամչյանը *(«Հայոց պատմութիւն», հ. Բ, էջ 883) այս դեպքերի առթիվ գրում է. «Արձակեաց յայնժամ ի վերա նորա Վասիլ կայսր զԿանիկլ զօրավար»։ Լեոյի մոտ այդ նույն զորավարի*

-հանունը» գործել է general Cankel (Lebeau, Histoire, t. XIV, p. 185) Միայն ուղղել է Շլյումբերժեն։

108 Հոգևորականներին։

109 Լևոն կայսեր սրակոտոր արված մարմինը, քրջերի մեջ փաթաթված, նավակով տարան թաղեցին Պրոտե կղզում, որտեղ արգելափակեցին և Լևոնի որդիներին՝ վանական խուցերով (Leo Gramm., էջ 211)։ Լևոնի որդիների անունները տալիս է Սիմեոն Մագիստրոսը. Սմբատ, Վասիլ, Գրիգոր և Թեոդոս (Sym. Mag., p. 619—620)

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

1 Միքայել II Թլվատ (820—829 թթ.), Ամորիական կոչվող հարստության հիմնադիրը, որն իշխեց Բյուզանդիայում մինչև Միքայել III-ի մահը (867 թ.)։ Այդպես էր կոչվում Միքայել II-ի ծննդավայր Ամորիոն քաղաքի անունից (քաղաքի մասին տե՛ս ստորև, ծանոթ. 7)։ Նշենք այստեղ, որ Միքայել Ասորու համաձայն (Michel le Syrien, t. III, p. 72) Միքայել Ամորիացին ծագումով իբր հրեա էր, բայց սպար քրիստոնեություն էր ընդունել։ Ուսումնասիրություններից՝ Barišič, Les sources, էջ 257—271։

2 Սկյուլան շենք էր Կոստանդնուպոլսում, որի անունն անցավ շուրջն ընկած թաղամասին։ Շենքը ծառայում էր որպես Հուստինիանոսի տրիկլինի նախասրահ. որտեղ էին ունենում պաշտոնական արարողությունները։ Այս Սկյուլայի միջոցով տրիկլինը կապվում էր ձիարշավարանի հետ։

3 Պապիասի մասին տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 101։

4 Ձեռագրում հավանաբար այս բառից հետո կա չնկատված lacuna.

5 Կոստանդնուպոլսի թաղամաս։ Գտնվում էր Ոսկեղջյուրի շրջանում։

6 Նկատի ունի հաղորդության գինին։

7 Ամորիոնը մտնում էր Հռոմեական Ասիա պրովինցիայի կազմի մեջ, այսպես՝ Փռյուգիա Սալուտարիս նահանգի։ Եպիսկոպոսանիստ քաղաք էր։ Այնուհետև մաս կազմեց Գալատիա Սալուտարիսի։ Ավելի ուշ շրջանում մտավ Կապադովկիա բանակաթեմի կազմը։ Առաջին անգամ գրավվեց արաբների կողմից 666 թ. (նրա մասին տե՛ս Թեոփանես, էջ 62)։ Արաբները կոչում էին Ամմուրիյա։ Հիշատակում է և Մովսես Կաղանկատվացին Եմովրիայ ձևով (Մովսես Կաղանկատվացի, էջ 330)։ Այժմ կոչվում է Ասար կալե։

8 Աթինգանների մասին տե՛ս Թեոփանես, էջ 200, 206—208, 306, ծանոթ. 958։

9 Իր կամակատարներին։

10 Տե՛ս Ովսէ, Ը, 4։

11 Կոստանդնուպոլսի Մեթոդիոս I պատրիարք (843—847 թթ.)։

12 «Ազատ» տերմինը, ինչպես երևում է սույն հատվածից, նշանակում է «հարկերից ազատ»։ Այդ բանը հանդիպում է և X դ. բյուզանդական այլ աղբյուրներում ևս։ Ա. Կաժդանի կարծիքով հարկերից ազատվելը ավելին էր նշանակում, քան սովորական տընտեսական առանձնաշնորհում։ Դա, իր կարծիքով, նշանակում էր արտակարգ առանձնաշնորհյալ վիճակ, որոշ իմաստով պատկանելություն տիրող դասակարգին (Каждан, Формирование, էջ 119)։ Կաժդանի ենթադրությանը պիտի վերապահությամբ մոտենալ, քանզի մեր դեպքում խոսքը հրեաներին է վերաբերում, որոնք հազիվ թե Բյու-

գանդիայում տիրող դասակարգի մեջ մտնելու։

13 Կոստանդին V կայսր (741—775 թթ.)։

14 Մովսես մարգարեն։

15 Այսինքն՝ աշխարհիկ, ոչ քրիստոնեական ուսում։

16 Փոքր Ասիայում։

17 Խոսքը Թովմա Գաղիրացու մասին է։ Տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 16։

18 Հին հունական դիցաբանության համաձայն, հանգուցյալները Հադես էին գնում՝ անցնելով Ստյուքս գետը, որից հետո մոռանում այս աշխարհի ամեն ինչը։

19 Այդ մասին տե՛ս վերը, Գիրք Ա, ծանոթ. 16։ Ավելացնենք այստեղ, որ «սլավոնածին» բառը օգտագործում է Աննա Կոմնենան XI դ. վերջին գործած բուլղարներ Քորիլի և Գերմանոսի վերաբերյալ (Anne Comnène. Alexiade, t. I. p. 64 հմմտ. t. II, p. 96)։ Բառի մասին՝ Дуйчев, Образи, с. 749, 751։

20 Արևելքում վերաբնակեցված սլավոնների մասին տե՛ս Липшиц, Очерки, с. 36)։

21 Գենեսիոսը տալիս է այս սենատորի անունը, նա հայտնի Վարդան պատրիկն էր (Genesii Regum, p. 35. Michel le Syrien, t. III. p. 37)։

22 Միքայել Ասորու համաձայն Թովմային արաբներն ուղարկեցին ընդդեմ Բյուզանդիայի, տալով նրան և զորք (Michel le Syrien. t. III, p. 37)

23 Այս հարցի վերաբերյալ հետաքրքրություն են ներկայացնում Միքայել II-ի՝ Լուդովիկոս Բարեպաշտին գրած նամակի տվյալները։ Համաձայն նրանց, Թովման սկզբում կապեր էր հաստատել մի պատրիկի կնոջ հետ, և երբ դա բացահայտվեց, նա փախավ արաբների մոտ և այնտեղ մնաց մինչև Լևոն V-ի գահ բարձրանալը։ Խալիֆայության մեջ Թովման իբր կրոնափոխ եղավ, ընդունեց մահմեդականություն և արաբներին իրեն ներկայացնում էր որպես Իռենեի որդի Կոստանդին։ (Baronii Annales. t. XIV. p 62—63. Apud: Васильев. Византия и арабы. I, с. 24—25։ Համապատասխան փաստերի ենք հանդիպում Գենեսիոսի երկում, որ տալիս է նաև հիշյալ պատրիկի անունը (Վարդան), որի կնոջ հետ հարաբերություններ էր հաստատել Թովման (Genesii Regum, p. 35. Հարցի մասին տե՛ս և Michel le Syrien, t. III. p. 37)։

24 Տե՛ս Թեոփանես, էջ 184.

25 Սամվել Անեցին Թովմա Գաղիրացու ապստամբության սկիզբը գնում է Միքայել I-ի թագավորության տարիներին, ավելի որոշակի՝ Պէ (807 թ., սակայն 807 թ. թագավորում էր Նիկեփոր I-ը)։ Նա գրում է. «Խաշնամահն և սուտ թագաւորն Թովմաս ի Կարնոյ քաղաքն եկն...» (էջ 91)։ Նա ցույց է տալիս նաև, որ Թովմայի ապստամբությունը տևեց մինչև Թեոփիլոս կայսեր թագավորության սկիզբը («կոխ ընդ Թովմասի մոլորեցուցչին», նույն տեղում, էջ 91), և այդ դեպքը թվագրում է ՊԻԷ (827) թվականով, որով և թվագրում է Թեոփիլոսի թագավորության սկիզբը (Թեոփիլոսը իրականում թագավորեց 829 թ.)։ Ըստ Միքայել Ասորու Թովման ապստամբեց Հարուն ալ Ռաշիդ թագավորության ժամանակ և շարունակեց այն Մամունի իշխանության օրոք (Michel le Syrien, t. III, p. 37)։

26 Նրա Կոստանդին կոչվելու։

27 Այսինքն՝ օտարազգի։

28 Ի. Է. Լիպշիցը այս «ստրուկների» տակ համամիտ է տեսնելու պավլիկյան աղանդավորներին, որոնց շարժման սոցիալական բովանդակությունն այն էր, որ նրանք որպես կանոն, միշտ հարում էին կառավարության ընդդիմադիր ճամբարին (Липшиц.

Павликианское движение, с. 64): Թեև դա բացառված չէ, պետք է նկատել, որ այստեղ Թեոփանեսի Շարունակողը որոշակի շարժում նկատի չունի, այլ պարզապես նշում է քաղաքացիական պատերազմներին հատուկ իրադարձությունները։

29 Տաքսեոտ (նաև տաքսատիոն, տաքսատոս) տաքսիսի՝ 128 ռազմիկներից բաղկացած զորամասի զինվորն էր։ Նրանց հրամանատարը կոչվում էր տաքսիարքոս։ Ոստիկանական պարտականություններ վարող անձնավորություն էր և սովորական զինվորից բարձր էր դասվում։ Մեկ անգամ հանդիպում է հայկական աղբյուրներում. «Սատակեաց կորույս զտաքսատս զօրս նորա վասն անարգանաց նորա» (տե՛ս Հ. Աճառյան, Արմատական բառարան, հ. Դ, էջ 391)։

30 Լոխագոս (լատ. curio կամ cent.rio) հարյուրապետ։

31 Միքայել կայսր հավատարիմ մնացած զորավարներից Գենեսիոսը, բացի Կատակիլասից, որին նա համարում է Միքայել կայսեր (հորեղբոր կամ մորեղբոր) որդին, և Օլբիանոսից, հիշատակում է ոմն Քրիստոփորոս մագիստրոսի և նրա որդիներին՝ պատրիկներ Վարսակիոսին և Նասարին։ Ո՛չ Վարսակիոսը, ո՛չ Նասարը հունական անուններ չեն։ Վարսակիոսը, եթե Արսակիոս (Արշակ) չէ, ապա կարող է Վասակ լինել, իսկ Նասարը արաբական անուն է (Նասր)։ (Տե՛ս Genesii Regum, p. 35): Վասակ անունը Կոստանդին Ծիրանածինը բերում է Վասսակիոս ձևով (Կոստանդին Ծիրանածին, էջ 26)։

32 Կապնիկոն (հունարեն կապնոս բառից, որ ծուխ է նշանակում)։ Ըստ էության գլխահարկ էր, որ գանձվում էր յուրաքանչյուր ընտանիքից։ Բյուզանդական հեղինակներից Թեոփանեսն առաջինն է, որ հիշատակում է այն։ Կապնիկոնը հողահարկի հետ կազմում էր պետության հիմնական եկամուտը։ Այդ հարկը գոյություն ուներ դեռևս 8-րդ դ.։ Կապնիկոնի մասին հիշատակում են Իբն Խաուկալն ու Իբն Խորդադբեհը (տե՛ս Каждан, Деревня и город, с. 145—146; Липшиц, Очерки, с. 127; Yannopoulos, La societe, p. 223—224):

33 Արծաթ միլիարիսիոնը հավասար էր ոսկեդրամի 1/12 մասին։

34 Համանարար՝ արաբերեն։

35 Տե՛ս վերը, էջ 29։

36 Անտիոքի պատրիարք Հակոբ չի եղել (տե՛ս Grumel, La chronologie, p. 447—449)։ Գենեսիոսը պատրիարքին Յոբ է անվանում (Genesii Regum, p. 33)։ Նա աթոռակալել է 813/814—844/845 թթ.։

37 Հարկավ, արաբների ճնշմամբ։ Սամվել Անեցին նրան կոչում է «սուտ թագաւորն Թովմաս» (Սամվել Անեցի, էջ 91)։

38 Բնագրում՝ ասորեստանցիներ։

39 Գուցե Kérzes: Տե՛ս Թեոփանես, էջ 304, ծանոթ. 946։ Նաև՝ Lemerle, La chronique, էջ 20։ Ըստ Մորավչիկի կովկասաբնակ սաբիրներն են և նույնացվում են այլ աղբյուրների կաբարների (կավարների) հետ (Moravcsik, Byzantinoturcica II, p. 144; Bury, A History, p. 89):

40 Տվյալ ժամանակաշրջանում Մանիի գաղափարներին հետևող էին համարվում պավլիկյանները (տե՛ս «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», հ. Ա, էջ 744, Բարթիկյան, Պավլիկյան շարժման գաղափարախոսությունը, էջ 96)։ Մանիքեցիները վաղուց էին վերացել։ Թվարկված ժողովուրդների մեջ կան այնպիսիք, որ դժվար է ասել՝ ում նկատի ունի հեղինակը։ Խոսքը խալդերի, դեխերի և կարիրների մասին է, հին, պատմության ասպարեզից շատ վաղ հեռացած ժողովուրդների։ Բացառված չէ, որ հին անուն-

ներով հիշվում են տվյալ ժամանակաշրջանում իսկապես գոյություն ունեցած ժողովուրդներ։ Ջեխերի տակ, օրինակ, ենթադրվում են ադրդեյներր (տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 248, ծանոթ. 17)։ Կաբիրներին հիշում է Հովհաննես Սկիլիցեսը, 1047 թ. դեպքերի առնչությամբ (Հովհաննես Սկիլիցես, էջ 154, 158)։ Ասենք այստեղ, որ Գենեսիոսը տալիս է Թովմայի բանակի էթնիկական ավելի խայտաբղետ պատկերը, որ նրա կազմում էին՝ հագարացիներ, հնդիկներ, եգիպտացիներ, ասորեստանցիներ, մարեր, աբազգներ, զեխեր, իբերներ, կաբիրներ, սլավներ, հոներ, վանդալներ, դետեր, մանիքեցիներ, լազեր, ալաններ, խալդեր, հայեր և բազում այլ ժողովուրդներ (տե՛ս Genesii Regum, p. 33)։ Դեռևս Ա. Կունիկը (Куник, О Записке, էջ 132—133) փորձել էր որոշել Գենեսիոսի նշած՝ Թովմային հարած ժողովուրդների էությունը։ Նրա կարծիքով հնդիկները Արաբական թերակղզու հյուսիսում գտնվող «Փոքր Հնդկաստանի» ժողովուրդ են, ասորեստանցիները՝ նեստորականները կամ քրդերը, աբազգները՝ աբխազները, զեխերը՝ ադրդեյները կամ չերքեզները, իբերները՝ վրացիները, կաբիրները՝ հոն սաբիրները, հոները՝ Պոնտոսի ափերին ապրող հոների մնացորդները, վանդալները՝ աֆրիկյան վանդալների մնացորդները Փոքր Ասիայում, գետերը՝ փոքրասիական գոթերը, իսկ ալանները՝ օսերը։ Թովմայի խայտաբղետ բանակի մասին գրում է ինքը՝ Միքայել II կայսրը, 824 թ. ապրիլի 10-ին Լուդովիկոս Բարեպաշտին գրած նամակում։ Նրա տվյալները շատ կարևոր են հայագիտության համար. Mansi XIV, 417—418· apud: Ф. Баришич, Две верзије, p. 154, ծանոթ. 23։

41 Տե՛ս էջ 30։

42 Երկու շարք թիեր ունեցող նավ։

43 Բյուզանդիայում երկու տեսակի ծովային միավորումներ կային. կանոնավոր նավատորմիղը, որ աղբյուրներում հիշատակվում է ընդհանուր բանակաթեմային նավատորմիղ ձևով, որի մեջ էին մտնում բացարձակապես ծովային բանակաթեմերը (Կիբիրրեոտների՝ Անտալիա կենտրոնով, Էգեական ծովի և Սամոսի), և ղեկավարվում էին ուղղակի Կոստանդնուպոլսից, և ավելի փոքր միավորումներ՝ նահանգային նավատորմիղը, որը ղեկավարվում էր բանակաթեմի զորավարի կողմից (Ahrweiler, Byzance et la mer, p. 32–33, 108–111)։

44 Ա. Վասիլևի ենթադրությամբ՝ Sarkoi (Peristeri), քաղաք Մարմարայի ծովի հյուսիսային ափին, Դարդանելից ոչ հեռու (Васильев, Византия и арабы I, с. 32, прим. 5)։

45 Բնագրում՝ [illegible], որ քեռորդի էլ է նշանակում։ Եթե Լևոն V-ի մոտիկ ազգական էր, ապա, պարզ է, հայազգի էր։

46 Նույնանում է Կոսմիդիոնի՝ Կոստանդնուպոլսի Կոսմաս և Դամիանոս վանքի և նույնանուն թաղամասի հետ, Ոսկեղջյուրի հյուսիսարևմտյան ափին։

47 Հունարեն բնագրում հրատարակիչների մեղքով § 14-ը կրկնված է, որով պարբերությունների համարակալման մեջ սխալ է թույլ տրվել։

48 Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 282, ծանոթ. 187։

49 Տագմայի մասին տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 37։

50 Ստուդիոսի վանքը նվիրված էր Հովհաննես Կարապետին, գտնվում էր Կոստանդնուպոլսի Պսամաթիա (այժմ՝ Սամաթիա) թաղամասում և բյուզանդական ամենանշանավոր սրբատեղիներից էր։ Կառուցել էր 463 թ. պատրիկ Ստուդիոսը, Արևելքից կոնսուլը։ Վանքը մինչև VII դ. այնքան էլ կարևոր դեր չէր խաղում Կոստանդնուպոլսի հոգևոր կյանքում։ Նրա վանականները դաժան հալածանքների ենթարկ-

վեցին VIII դ. կեսերից. պատկերամարտների կողմից։ Վանքը ծաղկեց վանահայր սբ. Թեոդորոս Ստուդիտեսի օրոք։ Վանքին կից գործում էր դպրոց, կար հյուրանոց։ Վանքում մեծ զարգացում ապրեց գրչության արվեստը և պատկերագրությունը, այն մեծապես նպաստեց IX դ. սկիզբ առած գրականության ու արվեստի վերածնությանը։ Վանականները հալածանքների ենթարկվեցին նաև Լևոն V Հայկազնի, Միքայել Թլվատի և Թեոփիլոսի օրոք։ Վանքի կանոնադրությունը բազում վանքերի կանոնադրությունների հիմք է ծառայել։ Եվթիմիոս Ստուդիտեսն էր, որ Չմշկիկ կայսեր օրոք կազմեց Աթոսի առաջին կանոնադրությունը։ Վանքն իր գոյությունը պահպանեց շատ երկար և միայն Բայազետ II սուլթանի օրոք (1481—1512 թթ.) վերածվեց մզկիթի, որ կա մինչև այսօր և կոչվում է Միրահոր կամ Իմրահոր ջամի (տե՛ս Janin, La geographie. p. 444—445)։ Ստուդրոսի վանականներին հիշում է և Մխիթար Գոշը. «Ստուդէք՝ կրաւնաւորք քաղաքին, որոց գործ է նոցա զգոբոզայսն, եւ զպաշտաւն, եւ զկանոնսն երգել» (Գիրք դատաստանի, էջ 139)։ Տե՛ս նույն տեղում. «Եւ ստուդէս Մոնաքոսքն՝ որք են միաւորքն»։ Հմմտ. էջ 402։ Տե՛ս նաև Մկրտիչ Ավգերյան, Լիակատար վարք և վկայաբանություն սրբոց, հ. 2-րդ, Վենետիկ, 1811, էջ 161։ Աճառյան, Արմատական բառարան, հ. Դ, էջ 266։

51 Հելլադա բանակաթեմն իր մեջ ընդգրկում էր Լարիսայից հարավ ընկած շրջանը՝ Թեսալիան, Ատտիկան, Էվրիան և Կիկլադյան կղզիները։

52 Հեղուկ (հունական) կրակով զինված բյուզանդական նավատորմիղի մասին տե՛ս Davidson, The secret weapon.; Haldon-Byrne, Greek Fire, p. 91—99։

53 Խան Օմուրտագը, Կրումի որդին։ Իշխել է 814—831 թթ., սակայն նա ամենևին էլ թագավոր չէր։ Պատմիչն արձանագրում է 927 թ. հոկտեմբերին կնքված բյուզանդաբուլղարական հաշտության պայմանագրում արտահայտված այն իրողությունը, որի համաձայն բուլղար խաները բյուզանդական արքունիքի կողմից արժանացան «թագավոր» կոչվելու։

54 Դաշնակցության մասին՝ Тивчев, Бунтът на Тома Славянина, с. 68—76

55 Հիշյալ պայմանագրի մասին տե՛ս վերը, Գիրք Ա, ծանոթ. 89։

56 Կեղուկտոս վայրը (լատ. aquaeductus). ակվեդուկ բառն է։

57 Այսինքն՝ խան Օմուրտագը։

58 Թեոփանեսի Շարունակողը սխալվում է այստեղ։ Թովման ապստամբեց ոչ թե Ադրիանուպոլսում, այլ Արկադիուպոլսում (այժմ՝ Լուլե Բուրգազ)։ Ճիշտ տեղադրությունը տալիս են Միքայել II-ի նամակի տեքստը Լուդովիկոս Բարեպաշտին, Գենեսիոսը և Գեորգ Վանականը՝ Մեղապարտը։

59 Թրակիայի Բյուզե (Визе) քաղաքը։

60 Թովման էր նախապես կայսեր Կոստանդնուպոլսում պաշարել։

61 Բուլղարիան նկատի ունի։

62 Բյուզե քաղաքը։

63 Սովորաբար մարդու սննդի համար ոչ ընդունված անասունների միսը նկատի ունի։ Տե՛ս Ղևտական, գլ. ԺԲ։

64 Հիսուս Քրիստոս։ Թովմայի մահապատժի մասին տե՛ս և Michel le Syrien, t. III. p. 37.

65 Սա նախապես հիշվել է (տե՛ս էջ 9, 19)։ Նրա վրա էր դրված Կոստանդնուպոլսի պարիսպների պաշտպանության հոգսը։ Նրա պաշտոնի մասին տե՛ս Գիրք Դ, ծանոթ. 60։

*66 Թովմա Գազիրացու ապստամբության և նրա եղեռական վախճանի մասին գիտե և Ստեփանոս Ասողիկը. «Միքայել ամս Թ. առ սովաւ Թումայի մոլորեցուցչի գալ և քրիստոնէից չփոթու.Ն և կործանում.Ն: Իսկ ի ՄՀԲ թուականին Միքայէլ թագաւորն կռուեալ ընդ Թումայի և կալեալ կտրեաց ոտս և ձեռս և հան ի փայտ» (Ստեփանոս Ասողիկ, էջ 143)։*

*67 Պատրիարք Տարասիոսի և Նիկեփորի կենսագիր Իգնատիոս Սարկավագը, Սուիդասի բառարանի տվյալներով, Թովմայի վերաբերյալ յամբեր է գրել, որ չեն պահպանվել։*

*68 Հերակլիան հնում կոչվում էր Պերինթոս* (Genesii Regum, *էջ 45)։ Հիերոկլեսի Սինեկդեմոսը Թրակիայի նահանգի կազմում հիշում է 14 քաղաք, որոնց մեջ են և Հերակլիան, Բիզյուեն և Պանոնիոնը (Պանիոն)։ Տե՛ս* Hieroclis Synecdemus, p. I:

*69 Բնագրում՝* ἄνθρωπος: *Մ. Յա. Սյուզյումովը այդ բառը տերմին է համարում և բացատրում՝ «հավատարիմ, նվիրված ստրուկ».* „Византийская книга эпарха", с. 241: *«Մարդ», «մարդիկ» հասկացողությունը հաճախ է հանդիպում բյուզանդական աղբյուրներում, և ուսումնասիրողները դրանց տարբեր բացատրություն են տվել։ Տե՛ս* Verpeaux, Les oikeioi, *էջ 90։* Арутюнова, ἄνθρωποι *(հոդվածի մասին տե՛ս* А. В. Урушадзе-*ի գրախոսականը* „Византийский временник". XXXI. 1971, с. 196—197; Lemerle, Le Typikon, p. 186—187; Бешевлиев, Първо-българскн надписи, с. 68—70:

*70 Կարալա քաղաքը գտնվում էր Իկոնիոնից հյուսիս-արևմուտք։ Տեղադրությունը նշում է Կեդրենոսը. «բերդ, որ գտնվում է Իկոնիոնից վերև»* (Cedr., II, *էջ 266—267։ Ավելի հանգամանորեն՝* Ramsey, HGAM, p. 359):

*71 Սանիանան կազմում էր տուրմա և բաղկացած էր Վերինոպոլիս, Ստավրոս և Միրիոկեֆալի բերդերից։ Որպես տուրմա հիշում է Կոստանդին Ծիրանածինը, որ այն տեղադրում է Խարսիանոն բանակաթեմում, միաժամանակ նշելով, որ Լևոն VI-ից առաջ այն մտնում էր Բուկելլարների բանակաթեմի կազմում (տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 25)։ Հիշում է դեռևս Ստրաբոնը Սանիսենե ձևով և տեղադրում Բյութանիայի սահմանագլխին (ԺԲ, 3, 41)։ Տե՛ս և* Ramsey, HGAM, p. 219, 248; Honigmann, Die Ostgrenze, S. 51:

*72 Խրիսովուլ նշանակում է ոսկե կնիք, դրոշմ, որ կախված էր լինում պաշտոնական գրության ծայրից։ Հասցեատիրոջ գրաված դիրքի, աստիճանի համաձայն, այն լինում էր մեկից մինչև չորս սոլիդ կշիռ ունեցող (տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 150)։ Խրիսովուլ միաժամանակ նշանակում էր կայսեր հրովարտակը, կարգադրությունը՝ իր կողմից ստորագրված և կնքված։ Խրիսովուլը հայկական աղբյուրներում կոչվում էր «ոսկե մատանի» (որտեղ «մատանին» «կնիք» էր նշանակում), և նրա հիշատակությանն ենք հանդիպում վիմական արձանագրություններում։ Այսպես, Անիի կառավարիչ Ահարոն Բուլղարը 1056 թ. Անի է բերում կայսրուհու մի հրամանը որոշ հարկերի վերացման մասին, որը հաստատված էր «ոսկէ մատանեաւ» (Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պր. Ա, էջ 38)։ Խրիսովուլը «ոսկե մատանի» է կոչված նաև Գրիգոր Մագիստրոսի՝ Կեչառիսի տաճարի պատի վրա թողած արձանագրության մեջ (տե՛ս Կոստանյանց, Վիմական տարեգիր, էջ 23)։ Գրիգոր Մագիստրոսի թղթերում («Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 104) խրիսովուլը կոչված է «կնիք ոսկեղէն», ինչպես և «ոսկէ մատանի»։ Խրիսովուլ բառը Հովհաննես Չմշկիկի՝ հայոց Աշոտ Գ թագավորին ուղղած նամակում թարգ-*

մանված չէ. «բայց խոսովօլօնն, զոր յուղարկեցաք, տուր տանել առ զօրավարն մեր» (Մատթեոս Ուռհայեցի. էջ 27)։ Բնագրում գրիչների մեղքով թույլ է տրված սխալ, և «խոսովօլօնն» բառի առաջին երկու տառերը՝ խո ընդունելով որպես թվական՝ քառասուն հազար, ենթադրվել էր, որ խոսքը քառասուն հազար օվոլոսների մասին է։ Սխալը ուղղեց Ն. Ադոնցը, տե՛ս La lettre, p. 145:

73 Անափորա նշանակում է զեկուցագիր։ Հայերեն աղբյուրներում հանդիպում է Հովհաննես Չմշկիկ կայսեր՝ հայոց թագավոր Աշոտ Գ-ին գրած նամակի հայերեն թարգմանության մեջ, որն ընդգրկված է Մատթեոս Ուռհայեցու Ժամանակագրության մեջ (էջ 27). բայց աղավաղված ձևով. «Եւ յանափոռտէն պոտօսպաթրին Դերջնայ»։ Դյուլորիեն կարծում էր, որ Դերջանի պրոտոսպաթարի անունը Անափուռտէն է։ Սխալ է մեկնաբանել և Աճառյանը, այն համարելով բյուզանդական պաշտոնյայի տիտղոս։ Ն. Ադոնցը սրամտորեն վերականգնել է բնագիրը, միանգամայն ճիշտ առաջարկելով «յանափոռտէն»-ն ուղղել «յանափոռաէն» և դրա տակ տեսնել հունարեն ανθυπατ (զեկուցագիր) բառը (տե՛ս La lettre, p. 143): Անափոռա բառը հանդիպում է հայկական աղբյուրներում, դեռևս VII դարում, տե՛ս Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 398։

74 Այս ամբողջ պարբերության ռուսերեն (ոչ այնքան հաջող)՝ թարգմանությունը տե՛ս Сборник документов, с. 120—121:

75 Այստեղ ևս հրատարակիչների մեղքով § 20 համարը կրկնված է։

76 Այսինքն՝ Իբերական թերակղզում՝ Իսպանիայի։

77 Թեոփանեսի Շարունակողը նրան ամերմումնի (խալիֆա) է անվանում, բայց նա զորահրամանատար էր։ Իսկական անունն էր Աբու Խաֆս Օմար իբն Շոհայբ (Васильев, Византия и арабы, I, с. 44): Այս արաբները 818—819 թթ. գրավել էին Ալեքսանդրիան, բայց քշվելով այնտեղից հիջրեթի 210 թ. (24 ապրիլ 825 թ.—12 ապրիլ 826 թ.) հարձակվեցին Կրետեի վրա։

78 Կոետեի Խարաքս հրվանդանը, նույնանում է Խանդաքսի հետ, հետագայում՝ Կանդիտ, այժմ Կրետեի կենտրոն Հերակլիոն քաղաքը։

79 Այս առասպելանման պատմությանը հանդիպում ենք և արաբական աղբյուրներում։ Տե՛ս Васильев, Византия и арабы, I, с. 48, прим. 2:

80 Բնագրում՝ խարաքս։

81 Տե՛ս սույն գրքի 78-րդ ծանոթագրությունը։

82 Նկատի ունի Կոստանդին Ծիրանածինի մորը։

83 Դիա անունով կան մի շարք աշխարհագրական վայրեր, բայց այստեղ խոսքը, հավանաբար, Դիա կղզուն է վերաբերում, որ գտնվում է հենց Կրետե կղզու Խանդաքս քաղաքից հյուսիս։ Այժմ կոչվում է Ստանդիա։

84 Իմա՝ Իսպանիայի սարակինոսներին։

85 Գորտինե քաղաքը (ավելի ճիշտ՝ Գորտիս կամ Գորտին)։ Կրետեի հնագույն քաղաք, հիշված դեռևս Հոմերոսից։ Կղզու՝ քրիստոնեությունն ընդունած առաջին քաղաքն էր, այնտեղից էր սերում Տիտոս առաքյալը, որ դարձավ Կրետեի առաջին եպիսկոպոսը։ Այս քաղաքի եպիսկոպոս Կյուրեղի վարքի հայերեն թարգմանության մեջ՝ «Խորտինոյ եպիսկոպոս» («Մայր ցուցակ ձեռագրաց Կիլիկիո կաթողիկոսության», էջ 30)։

86 Աբելն ու Զաքարիան հին կտակարանի անձնավորություններ են։ Աբելն սպանվեց իր եղբոր՝ Կայենի կողմից։ Վերջինս համարվում է մարդկության մեջ առաջին մար-

դասպանը։ Ինչ վերաբերում է Զաքարիային, ապա այդ անունով բազմաթիվ քրիստոնյաներ են հիշվում, որոնք իրենց հավատքի համար նահատակվեցին և մտան ուղղափառ եկեղեցու սրբերի դասը։

87 Կրետեի դրավման մասին տե՛ս Christides, The Conquest. Կղզին արաբների ձեռքում մնաց 138 տարի և ազատագրվեց հայազգի զորավար (հետագայում՝ կայսր) Նիկեփոր Փոկասի կողմից (այդ մասին տե՛ս Հովհաննես Սկիլիցես, էջ 6—7)։ Արաբական տիրապետության մասին կզգում տե՛ս Δεσποτάκης, Α· ἀραβικαὶ ἐπιδρομαί, σελ. 119—129:

88 Այս շրջանում սենատի (սինկղետոսի) դերը ձևական էր. Липшиц, Очерки, с. 123:

89 Ա. Կաժդանը Թեոփանեսի Շարունակողի այս տվյալներից եզրակացնում է, որ Միքայել II-ի ժամանակ է, որ Բյուզանդիայում առաջանում են վասալական տիպի անձնական կախման տարրեր, երևույթ, որի դեմ հանդես է գալիս պատմիչը։ Նա գրում է, որ կայսրն ուզում էր տիրել ոչ միայն ներկայի, այլև ապագայի վրա, այն ժամանակ, երբ ապագան կախված է ոչ թե սենատորներից, այլ աստծուց (Каждан, Крестьянские движения, с. 84):

90 Տե՛ս «Առակք Սողոմոնի», Ը, 15։

91 Խոսքը Կոստանդին VI-ի մասին է, որին կուրացրել էր իր մայր Իրենեն։

92 Բյուզանդական աղբյուրներում այս շրջանում կրետացի ասելով նկատի ունեին Կրետեն նվաճող սարակինոսներին։

93 Կամ Կոս, էգեական ծովի հարավարևելյան կղզիներից մեկը։ Հնում կոչվում էր Մերոպիս կամ Մերոպե, Նյումփեա, Կարիս։ Իր մեծությամբ Դոդեկանեսի կղզիների մեջ Հռոդոսից հետո երկրորդն է։

94 Արաբները Կրետեի վրա տիրեցին մինչև 961 թ.։ Տե՛ս ծանոթ. 87։

95 Տե՛ս Ahrweiler, Byzance et la mer, p. 102, 112. Յուրաքանչյուր զինվորի ռոճիկը կազմում էր քառասուն դահեկան։

96 Այս խոսքերից պարզ է, որ դրանք գրվել են նախքան 961 թ.՝ կղզու ազատագրման տարին։

97 Սիկիլիայի մայրաքաղաքը։

98 Նկատի ունի Վասիլ I-ին, Մակեդոնական հարստության հիմնադրին (867—886)։

99 Բնագրում՝ աստուծո, բայց Քրիստոսի պատկերները նկատի ունի։

100 Տե՛ս Գիրք Բ, գլ. 8։

101 Ինչպես տեսանք, Թեոփանեսի Շարունակողը մանրամասն խոսում է Կրետեն, ինչպես և Սիկիլիան, Կալաբրիան և Լանգոբարդիան նվաճող արաբների դեմ Միքայել II-ի մղած պատերազմների մասին։ Ասիայում տեղի ունեցած ռազմական ընդհարումների մասին այստեղ գրեթե խոսք չկա։ Սակայն, ճիշտ է, շատ սուղ, տեղեկությունների ենք հանդիպում Ստեփանոս Ասողիկի երկում. «...պատերազմեալ Միքայէլի ընդ Տաճիկ զօրուն և գրազումս ի նոցանէ սատակեաց ի Կուռն աւանին (այլ ձեռագրերում՝ «ի կուռ նաւին», «ի Կուռնաւին») և յաղթեաց նոցա և (sic!) Անկիւրիան» Ստեփանոս Ասողիկ, էջ 143—144)։

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

1 829 թ.: Թագավորել է մինչև 842 թ. հունվարը:

2 Կոստանդնուպոլսի Մագնավրայի պալատում: Գենեսիոսը տալիս է ժողովի գումարման որոշակի թվականը՝ 6338, ինդիկտիոնի 8-րդ տարին (830 թ.) (Genesii Regum, p. 51):

3 Ճիշտը՝ էպարքոս: Տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 88:

4 Համտ. Գիրք Բ, գլ. 24:

5 Ինչպես գիտենք, Եվփրոսինեն միանձնուհի էր:

6 Թեոփիլոսի պատկերամարտությունը (և պատկերամարտությունն ընդհանրապես) քննադատության առարկա է դարձել դեռևս միջնադարում, այդ թվում և Ալեքսանդրիայի պատրիարք Եվտիքիոսի (933—940 թթ.) կողմից: Տե՛ս Griffith, Eutychius of Alexandria, p. 154—190. Հայ իրականության մեջ պատկերամարտության դեմ ուղղված գրվածքների հանդիպում ենք դեռևս VII դ.: Այդ մասին տե՛ս Der Nersessian, Une apologie (այս հոդվածի հայերեն թարգմանությունը՝ Տեր-Ներսեսյան, VII դարի մի երկ):

7 Ոչ թե շաբաթ օր, այլ շաբաթ (յոթօրյակ):

8 Թարգմանաբար նշանակում է «Միջինը» (Մեջտեղի): Կոստանդնուպոլսի գլխավոր պողոտան այդպես էր կոչվում, որովհետև ձգվում էր քաղաքի մեջտեղով:

9 Կոստանդնուպոլսի թաղամաս Վլախեռնայի սբ. Աստվածածնի տաճարը գտնվում էր Ոսկեղջյուրի ափին, քաղաքի հյուսիսային անկյունում: Այստեղ կային բազմաթիվ շինություններ, այդ թվում և կայսերական պալատ (Janin, Const. byz., p. 303—304):

10 Հելիակոնը շենքի, կամ որևէ այլ կառույցի գլխավորապես արևահայաց կողմում եղած սյունաշարքն է, կամ բացօթյա բակ: Այդպես էր կոչվում նաև շենքի հարթ ծածկը կամ մի տեսակ պատշգամբ (տե՛ս Guilland, Le Sigma, էջ 228: Նաև՝ Беляев, Βυζαντινα, I, с. 35):

11 Խոսքը հայազգի կայսրուհի Թեոդորայի մասին է: Թեոփիլոսի և Թեոդորայի ամուսնության (830 թ. հունիսի 5) վերաբերող մի հետաքրքիր զրույցի ենք հանդիպում բյուզանդական աղբյուրներում: Համաձայն դրան, Թեոփիլոսի (խորթ) մայր Եվփրոսինեն Թեոփիլոսին հարսնացու ընտրելու համար երկրի ամեն տեղից գեղադեմ աղջիկներ է բերել տալիս, որպեսզի Թեոփիլոսը ընտրություն կատարի: Նա կանգ է առնում գեղեցկուհի Իկասիայի վրա (Կասիա կամ Կասիանի) և սրամտելու նպատակով ասում, թե «ամեն վատը կնոջից է ծագել»՝ նկատի ունենալով Եվային: Երբ Իկասիան պատասխանեց, թե «ամեն լավն էլ կնոջից է ծագել», նկատի ունենալով Աստվածածնին, Թեոփիլոսը, նրա հանդգնությունից ազդված, կնության առավ հայազգի Թեոդորային: Իկասիան մտավ վանք և զբաղվեց գրական աշխատանքով, որոնց մեջ կան բազում բանաստեղծություններ՝ հայերի դեմ ուղղված: Ն. Ադոնցի կարծիքով Իկասիայի հակահայկական ոգին բացատրվում է Թեոդորայի նկատմամբ նրա ունեցած ատելությամբ: Ավանդության մասին տե՛ս Sym. Mag., էջ 624—625, Georg. Mon. էջ 789—790, Leo Gramm., էջ 213: Ուսումնասիրություններից՝ Адонц, Կասիա միանձնուհին և հայերը, Treadgold, The Bride—Shows; Littlewood, The Symbolism, էջ 47—48, Rochow, Studien: Պահպանվել է Թեոդորայի վարքը: Տե՛ս Vita sanctae Theodorae, էջ 1—19: «Վարքը» երեք այլ ձեռագրերի հիման վրա վերահրատարակվել է. Μαρκόπουλος, Βίος τῆς Θεοδώρας, էջ 249—285: «Վարքի» մասին՝ Каждан, Хроника Симеона, էջ 126—127: Թեոդորայի մասին մանրամասն՝ Адонц, Մամիկոնյան իշխանուհին, էջ 354—451:

*12 Մի այլ վկայության համաձայն՝ «վաճառականի»։ Հարցի մասին, հատկապես Կոստանդնուպոլսի՝ այս ժամանակ միջազգային առևտրի խոշոր կենտրոն լինելու մասին տե՛ս* Липшиц, Очерки, с. 104:

*13 Երիսսա վայրի տեղադրությունն անհայտ է։*

*14 Հավանաբար վիգլայի դրունգար։ Նա Կոստանդնուպոլսում գտնվող չորս գվարդիաներից մեկի՝* Ἀριθμοί *կոչվածների հրամանատարն էր։ Այս գվարդիայի հիմնական պարտականությունն էր արքունիքի անվտանգության ապահովումը։ Վիգլայի դրունգարը զբաղվում էր նաև ռազմագերիների հարցով (տե՛ս* Bury, IAS, *էջ 60—62)։*

*15 Բանակաթեմը (զորաբանակի իմաստով) ստորաբաժանվում էր բանդոնները* (βάνδον *—դրոշ. հայերենում նույնպես դրոշ բառն ունի «գունդ», «վաշտ» նշանակությունը. հմմտ. «Բայց ուր լինէր հանդէս, ի նշանաւոր տեղիս գնդի գնդի, դրօշու դրօշու, վաշտուց վաշտուց...»։* Փավստոս, *Գ, 7), որոնք իրենց հերթին կազմում էին* μοῖρα*-ներ և* δροῦγγον*-ներ, որոնց գլխավորում էին մերարխները կամ դրունգարները։ Երեք* μοῖρα*-ն կազմում էր մեկ* տուրմա *կամ* մերոս, *որը գլխավորում էր տուրմարխը կամ մերարխը* (Leon VI Tactica, Migne, Patr. gr., t. 107, col. 708), *մերոսը դա տուրման է, որը երեք մասից, այսինքն՝ դրունգոններից է բաղկացած։ Մի այլ տեղում կարդում ենք, որ տուրմարխը նա է, ով իր հրամանի տակ ունի երեք դրունգոն։ Կոստանդին Ծիրանածինը վկայում է, որ տուրմարխը իր հրամանի տակ ունի 500 նետաձիգ, 300 վահանակիր և 100 նիզակակիր. հետևաբար մի բանակաթեմի զորքը բաղկացած էր շուրջ 2500—3000 մարդուց։ Տուրմարխը բանակաթեմի զորավարից հետո ամենաբարձր անձնավորությունն էր նահանգում։ Նա ուներ պրոտոսպաթարի աստիճան (տե՛ս* Bréhier, Les Institutions, p. 361—362, Ahrweiler, Recherches, p. 3).

*16 Զոստե պատրիկուհի (այսինքն՝ գոտեվորված պատրիկուհի) տիտղոսը կրող առաջին կինը Թեոփիլոս կայսեր զոքանչն էր, հայազգի կայսրուհի Թեոդորայի մայրը։ Զոստե պատրիկուհին միակ տիկինն էր, որ պատրիկուհի էր իր բոլոր իրավունքներով։ Տիտղոսի մասին՝* Guilland, La patricienne à ceinture, *էջ 269—275։ Տե՛ս նաև* Bury, IAS, *էջ 33։* Oikonomides, Les lists, *էջ 293 և ծանոթ. 33։*

*17 Գտնվում էր Կոստանդնուպոլսի նույնանուն թաղամասում։*

*18 Թեոփանեսի Շարունակողը նշում է տիկնիկին մանուկների տված անունը* νινία, *որ կուկու ենք թարգմանում։*

*19 Հոմերոսի Իլիականի հերոսներից։ Նրա տգեղությունն ու անպարկեշտությունը դարձել են առակ։*

*20 Թեոփանեսի Շարունակողն օգտագործում է ոչ թե* [illegible], *այլ հույների մոտ այժմ էլ գործածական և ժողովրդական* μάνα *(մանա) բառը, որի ստուգաբանության շուրջ բազում վեճեր են գնացել։ Արտահայտվել է կարծիք, որ փոխառություն է պարսկերենից՝ «նանա»։ Տե՛ս* Hemmerdinger, Thiais, 173 noms, p. 53

*21 Խոսքը Օպսիկիոն բանակաթեմի կոմեսի մասին է* (Sym. Mag., p. 637; Georg. Mon., p. 803—804):

*22 Զոնարասի տվյալների համաձայն* (Zonaras, Epitome, ed. L. Dindorf, v. *IV, 1871,* p. *82), որոնք վերաբերում են Նիկեփոր Բ Փոկասի թագավորության ժամանակաշրջանին, պետական հարկերով ծանրաբեռնված բյուզանդական գյուղական բնակչությունը բաղկացած էր նախ և առաջ ստրատիոտներից (զինվորներից) և «չքավորներից»։ Ստրատիոտները մանր հողատերեր էին, և նրանց գլխավոր պարտականությունը զինվորական ծառայությունն էր։ Նրանց վիճակը բավական ծանր էր, և աղբյուրներում*

հաճախ են հանդիպում վկայություններ «չքավոր զինվորների» մասին։ Հարցի մասին՝ Каждан, Крестьянские движения, с. 77—78;

23 Կարիանոսի թաղամասը գտնվում էր Վլախեռնայի եկեղեցու մոտ։ Բացի պալատից այստեղ կար սյունաշարք և ծերանոց։

24 Հովհաննես Սինկելլոսը («սինկելլոս» բառի մասին տե՛ս Թեոփանես Խոստովանող, էջ 215, ծանոթ. 7) հետագայում դարձավ Կոստանդնուպոլսի պատրիարք։ Նախապես Կոստանդնուպոլսի Սերգիոսի և Բաքոսի վանքի վանահայր էր։ Նրա մասին տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 94։

25 Բնագրում՝ Συρίας ἄρχοντα: Արաբ խալիֆա Մամունը (813—833 թթ.)։ Հովհաննես Քերականի այս առաքելության գլխավոր աղբյուրը Թեոփանեսի Շարունակողն է, որի պատմածը Ա. Վասիլևը համարել է պատմական հիմքից զուրկ ժողովրդական ավանդություն։ «Առաքելության» մասին հատուկ տե՛ս Bury. The Embassy, էջ 296—299։ Васильев, Византия и арабы, I, էջ 94—95, համեմատած, էջ 127—132, ուր և բոլոր աղբյուրների տվյալները «առաքելության» մասին։ Ավելի նոր գործերից՝ Impellizzeri, L'umanesimo bizantino, էջ 227։ Նաև՝ Rosser, John the Grammarian's Embassy, էջ 168—171։

26 Չորս կենտինարը համասար է 400 լիտր ոսկու՝ 28.800 դահեկանի։

27 Խալիֆան, արաբ. amir ul mu minīna «հավատացյալների իշխան»։ Տերմինը հիշատակում է Ղևոնդ պատմիչը՝ «նախ և առաջին որք և Ամիր-ալ-Մումնիք անուանեցան» (Ղևոնդ, էջ 3), Սամվել Անեցին՝ «և ի տիրելն աշխարհաց՝ կոչեցան Ամիրըլմումնիք» (էջ 82)։ Նրան կրկնում է Կիրակոս Գանձակեցին (էջ 60), իսկ մի այլ տեղում գրում. «մինչև բարձաւ թագաւորութիւն Ամիրմումնեացն» (էջ 83)։ Տե՛ս և Hubschmann, Armenische Grammatik, S. 262:

28 Բնագրում՝ Χερνιβόξεστα. հին հունարեն χερνιβον -ից, որ ձեռքերի լվացարան է նշանակում։ Արաբերենում դարձել է nirnib: Տե՛ս Canard, Les relations politiques, էջ 54։ Բյուզանդական շրջանում խերնիվոքսեստոնը նույն ձեռքի լվացարանն էր, որը սակայն գործածում էին հիմնականում եկեղեցում։ Այն պահում էր սարկավագը կամ եկեղեցու սպասավորը, որպեսզի եպիսկոպոսը կամ քահանան լվանա ձեռքերը՝ հոգևոր հանգերձները հագնելուց հետո և նախքան հաղորդություն տալը։

29 Արաբագետները կասկածում են, որ այս բանակցությունները տեղի ունեցան Բաղդադ քաղաքում (տե՛ս Васильев, Византия и арабы. I, ч. II, прил. с. 131)։

30 Խոսքը Իսմայիլ անունով մարդու մասին չէ, հավաքական հասկացություն է՝ արաբ նշանակությամբ։ Տվյալ դեպքում արաբ խալիֆան է ենթադրվում։

31 Իմա՝ խալիֆային։

32 Կոստանդնուպոլսի ասիական ափին գտնվող Բրիաս թաղամասը, ժամանակակից Մալթեփեից արևելք։ Այստեղ դեռևս 718 թ. արաբների և բյուզանդացիների միջև նավամարտ տեղի ունեցավ (տե՛ս Թեոփանես, էջ 106)։ Բաղդադի պալատի օրինակով Թեոփիլոսի՝ 831 կամ 832 թ. կառուցած ապարանքի մասին տե՛ս Janin, Const. byz., p. 145—146:

33 Սաղմոս ՁԱ (ՁԲ), 6։

34 Բնագրում՝ ὕμνοι καὶ ᾠδαί։ Հմմտ. Եփես., Ե, 19։ Կողոս., Գ, 16։

35 Աբրաամիտների վանքը նվիրված էր Աստվածածնին։ Կայսրերը, հաղթական արշավանքներից վերադառնալիս, այստեղ էին աստծուն գոհություն հայտնում։ Այստեղ եկավ և Վասիլ 1-ը Գերմանիկիայից և Տեֆրիկեից վերադառնալուց հետո (De Cer., I, p. 499):

36 Նկատի ունի Դիոնիսիոս Արիոպագացուն, Հիերոթեոս (հայերենում՝ Յեռոթէոս) Աթենացուն և Իրինեոս ((հայերենում՝ Երանոս) Լուգդունացուն։ Հնում նրանց գործերը թարգմանվել են հայերեն։ Տե՛ս Զարբհանալյան. Մատենագարան հայկական թարգմանության, էջ 381 և հտ., 419 և հտ.։

37 Ղուկասի՝ Աստվածածնին նկարելու վարկածը առաջին անգամ հրապարակ հանեց Թեոդորոս Անագնոստեսը։ Նա VI դ. առաջին կեսին Կոստանդնուպոլսի սբ. Սոֆիայի դպիրն էր և գրեց 313—527 թթ. ընդգրկող «Եկեղեցական պատմություն», որից հատվածներ են միայն պահպանվել։

38 Նկատի ունի Եդեսիայի Արդար թագավորին ուղարկած դաստառակը։ Այս ավանդությունը, որ ժամանակի ընթացքում որոշ փոփոխություններ է կրել, առաջին անգամ գրված է եղել ասորերեն։ Դրանից հետագայում թարգմանություններ են կատարվել հունարեն, հայերեն և այլ լեզուներով։ Հունարեն հնագույն թարգմանությանը մենք հանդիպում ենք Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմության» մեջ, որտեղ, սակայն, խոսք է լինում Քրիստոսի թղթի մասին միայն։ Անձեռագործ պատկերի մասին խոսք չկա այնտեղ։ Ասորերեն խնդրո առարկա աղբյուրը հնում թարգմանվել է նաև հայերեն, որտեղ, բացի Քրիստոսի թղթից, խոսք է լինում նաև նրա պատկերի մասին, որը, սակայն, նրա տվյալներով Աբգար թագավորի սպասավոր Անանի աշխատանքի արգասիքն է։ Եվսեբիոս Կեսարացու և Ղաբուբնայի տվյալների հիման վրա այդ մասին մանրամասն շարադրանք է տվել Մովսես Խորենացին։ Նա ի միջի այլոց հիշում է և Քրիստոսի պատկերի մասին, որը, սակայն, նա նույնպես անձեռագործ չի համարում։ Եվագրիոսն է, որ իր «Եկեղեցական պատմության» մեջ (Գիրք Դ, գլ. 27), խոսելով պարսից արքա Խոսրովի՝ Եդեսիան պաշարելու մասին, հիշում է խնդրո առարկա պատկերը, որը նա արդեն համարում է «աստվածակերտ և անձեռագործ»։ Թեև Եվագրիոսի աղբյուրը Պրոկոպիոս Կեսարացին է, վերջինիս մոտ պատկերի մասին խոսք չկա։

Քրիստոսի անձեռակերտ պատկերի մասին ավանդությունը միշտ հրապարակ էր գալիս, երբ Բյուզանդիայում բորբոքվում էին պատկերամարտական-պատկերապաշտական վեճերը։ Պատկերապաշտները դիմում էին այդ ավանդության՝ իրենց դիրքերը պաշտպանելու համար։ VIII և IX դարի առաջին կեսում, երբ նման վեճերը դարձյալ սուր բընույթ ստացան, այդ ավանդությանը դիմեցին Ալեքսանդրիայի պատրիարք Քրիստափորը, Անտիոքի պատրիարք Հոբը և Երուսաղեմի պատրիարք Բարսեղը, որոնք մանրամասն շարադրանք ներկայացրին Թեոփիլոս կայսեր։ Նրանց գրվածքը չի պահպանվել։ Այն օգտագործել է Կոստանդին Ծիրանածինը իր մի երկում (տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 177—194), որի գրության պատճառը քաղաքական բարենպաստ իրադրությունների բերմամբ Բյուզանդիայի՝ դեպի Ասորիք կատարած առաջխաղացումն էր, որի ժամանակ, կայսրության ճնշման տակ, Եդեսիայի ամիրան ստիպված էր կայսրության զիջել Քրիստոսի «անձեռակերտ պատկերը»։ Այդ մասին տե՛ս Թեոփանեսի Շարունակողի մոտ, էջ 255։

39 Թուղթ առ Կողոսացիս, Ա, 8։

40 Կալոն Օրոս թարգմանաբար նշանակում է «Գեղեցիկ լեռ»։ Այդպիսիք մի քանիսը կային Կրետեում, Սիրոս կղզում։ Այդպես էր կոչվում և Աթոսը՝ «Սուրբ լեռը», Մակեդոնիայի Քալկիդիկե թերակղզում։

41 Լևոն VI (886—912 թթ.) կայսր։

42 Խոսքը նշանավոր Թեոդորոս Ստուդիտեսի մասին է։ Թեոփանեսի Շարունակողը նրա եղբորն անվանում է Թեոփանես Խոստովանող, հավանաբար շփոթելով պատմիչ

*Թեոփանեսի հետ։ Սիմեոն Մագիստրոսը նրան չի կոչում խոստովանող, ցույց տալիս, թե նա եկեղեցական կանոններ և շարականներ է դրել* (Sym Mag., p, 641):

*43 Կոստանդնուպոլսի պատրիարքարանը բազմաթիվ շենքերից բաղկացած մի համալիր էր։ Ի շարս տարբեր շինությունների. այն ուներ և երկու տրիկլին։ Թոմայիտես էր կոչվում հնագույն տրիկլինը, որը կրում էր կառուցողի՝ պատրիարք Թովմայի (1-ի՝ 607—610 կամ II-ի՝ 667—669 թթ.) անունը։ Այս տրիկլինում էր գտնվում պատրիարքարանի մատենադարանը (տե՛ս* Janin, Const. byz., p. 174)

*44 Հավանաբար՝ Երուսաղեմ։*

*45 Նման երկարաշունչ տեքստ հազիվ թե տեղավորվեր մարդու ճակատին, ինչքան էլ այն լայն լիներ։ Սիմեոն Մագիստրոսը գրում է, որ բանաստեղծությունը դաջեցին նրանց ճակատին և կրծքին* (Sym. Mag.. *էջ 641)։ Գենեսիոսը դաջելը «սկյութական» (գուցե սլավոնական կամ բուլղարական) սովորություն է համարում* (Genesii Regum, p. 74):

*46 Երուսաղեմի։*

*47 Ըստ Ադոնցի՝ Մամիկոնյան ընտանիքից* (Les Taronites. *էջ 225)։ Հարցի մասին ավելի մանրամասն՝* Каждан. Армяне, *էջ 10—11։ Նրա և նրա անթիպատ պատրիկի պատվաստիճանի մասին՝* Guilland, Proconsul, *էջ 10—11։ Այս Ալեքսիոս Մուսելեն առաջինն էր IX դ., որի «անթիպատ» տիտղոսը սոսկ պատվաստիճան էր դարձել։ Ալեքսիոս Մուսելեի և Մարիայի ամուսնության մասին (836 թ.) տե՛ս* Treagold, The Problem, p. 325—341:

*48 Եթե Կրինիտես մականունը հունարեն է, ապա պիտի կապ ունենա κρήνη (կրենե) «աղբյուր» բառի հետ (Ակն)։ Եթե մականվան գրության ձևը կարդանք այնպես, ինչպես տվյալ ժամանակաշրջանում արտասանում էին հույները (և չհետևենք գիտական տառադարձության), ապա կարելի է կարդալ Կրինիտիս, որով բացառված չէ դրա տակ հասկանալ Կարինիտիս (Կարնեցի), այսինքն ենթադրենք, որ Ալեքսիոս Մուսելեի հայրենիքը Թեոդոսուպոլիս-Կարին քաղաքն էր։ Այդ մտքի օգտին է վկայում և այն հանգամանքը, որ Թեոփանեսի Շարունակողը մականունը տալուն պես ավելացնում է՝ χώρας τῆς τῶν Ἀρμενίων. հայերի երկրից։ Ն. Ադոնցը կարծում է, որ Կրինիտեսները ծագում են Դեգիքում (Չորրորդ Հայք) գտնվող Կոնի վայրից* (Adontz, Les Taronites, p. 229):

*49 Այսինքն՝ Ա[լեքսիոսը] պիտի հաղթի Թ[եոփիլոսին]։ Թեոփանեսի Շարունակողը հայազգի Ալեքսիոս Մուսելեի պատմությունը համառոտել է։ Թեոփիլոսը, հավատ ընծայելով զանազան լուրերին, որոնց համաձայն Ալեքսիոսը ուզում է գահին տիրանալ, նշանակելով Սիկիլիայի զորավար և դուքս, ուղարկում է հեռավոր այդ կղզին։ Բայց դրանով էլ չեն վերջանում Ալեքսիոսի տառապանքները։ Սիկիլիացիներից ոմանք նրան զրպարտում են, թե նա կապեր է հաստատել հագարացիների հետ, որ նա Թեոփիլոսին գահընկեց անելու ղավեր է նյութում։ Թեոփիլոսը Ալեքսիոսին Սիկիլիայից Կոստանդնուպոլիս է բերում, որպես դավադիր բրածեծ անում, բանտարկում և նրա ողջ ունեցվածքը բռնագրավում։ Երբ Թեոփիլոսին այդ առթիվ մեղադրեցին երդմնազանցության մեջ, նա Ալեքսիոսին ազատ արձակեց, վերադարձրեց ունեցվածքը։ Ալեքսիոսը դարձավ վանական, կառուցեց Անթեմիոսի վանքը, այնտեղ էլ վախճանվեց ու թաղվեց* (Sym. Mag., p. 630—632. Georg. Mon., p. 794—796):

*50 Ապագա կայսր Միքայել III-ը (842—867 թթ.)։*

*51 Շատ տարիներ անց ղագաղի սրծաթը հանեց Լևոն VI կայսրը (տե՛ս* Sym. Mag., p. 630: Georg. Mon., p. 794):

*52 Խոսքը բյուզանդական խարիստիկիոնի (եվրոպական բենեֆիցիումի) մասին է։ Սա աշխարհիկ ֆեոդալին հողևոր հիմնարկություն նվիրաբերելու մասին բյուզանդական պատմողական աղբյուրներում հանդիպող հազվագյուտ հիշատակություններից է* (Каждан, Деревня и город, с. 106--107):

*53 Վանքը մինչև վերջն էլ բյուզանդական հեղինակների կողմից կոչվեց Մուշեղի վանք* (μονη Μωσηλε): *Հատուկ Մուսելեի վանքի և նրա տեղադրության մասին տե՛ս* Σταυρίδου—Ζαφρακα. 'Η μονη Μωσηλε, σελ. 65—92:

*54 Այս Իբրահիմին Աբրահամ ձևով հիշում է Մովսես Կաղանկատվացին (էջ ɘ30), որին, սակայն, կոչում է «ամիր մումնի» (խալիֆա)։ Ըստ հայ պատմիչի նա հայոց 287 թ. (մ. թ. 838) բյուզանդացիներից գրավեց «Եմովրիա» քաղաքը, որի տակ ենթադրվում է Ամորիոնը (տե՛ս* Սմբատյան, Ձեմովրիա, *էջ 85—88), որը, ճիշտ է, այդ թվականին գրավեց Մուտասիմ խալիֆան։*

*55 Սրանց մասին հատուկ տե՛ս* Gregoire, Etudes, *էջ 520—524, Նույնի՝* Manuel et Theophobe, *էջ 183—204, Նաև՝* Каждан, Из истории византийской хронографии X в. 3, *էջ 114—115,* Rosser, John the Grammarian's Embassy *էջ 168—171։ Մանուիլը, Վարդան Արևելցու տվյալներով, պատկանում էր Մամիկոնյանների ընտանիքին։ Պատմելով Լևոն V Հայկազնի սպանության և Միքայել II-ի թագավորելու մասին, նա գրում է. «Եկանէր ի խնդիր մեծ զորավարին Մանուելի Մամիկոնենոյ. և նորա աճապարեալ հարիւր և յիսուն արամբք անկանի ի Կամախ, և անտի առ Մամուն իշխանն Իսմայելի...»* (Վարդան Արևելցի, *էջ 77)։*

*56 Հետագայում (Գիրք Դ, գլ. 1) Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս, որ Մանուիլը Թեոդորա թագուհու հորեղբայրն էր։ Տե՛ս և* Charanis, The Armenians, *էջ 25 (հայերեն թարգմ., էջ 44)։ Թեոփանեսի Շարունակողը պարզ ցույց է տալիս նրա հայ լինելը՝* ἐξ 'Αρμενίων γαρ τὴν γένεσιν ἦν:

*Հետաքրքիր այս դարձվածքը վկայում է, որ Բյուզանդիայում հայ և քաջ հասկացողությունները հոմանիշ էին։ Կեդրենոսի բանաքաղության մեջ ավելի հստակ է գրված, թե հակառակորդներին հայտնի էր նրա խիզախ լինելը, այսինքն նա անցյալում էլ գործ է ունեցել արաբների հետ, քանզի Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր եղել և Միքայել կայսեր առաջին ձիապանը* (Cedr., II, p. *120)։ Թեոփանեսի Շարունակողը (էջ 88) նրան Արմենիակների բանակաթեմի զորավար գիտե, թեև բացառված չէ, որ տարբեր ժամանակներում է նա ղեկավարել այդ բանակաթեմերը։ Նա ստացավ մագիստրոսի, իսկ ըստ Գենեսիոսի՝ նաև պրոտոմագիստրոսի տիտղոսը* (Genesii Regum, *էջ 77)։ Միքայել Ասորին նրան պատրիկ է կոչում* (Michel la Syrien, t. III, p. 74):

*57 Կոստանդնուպոլսի թաղամաս* (Janin, Const byz , p. 370—371):

*58 Թեոֆոբոսի իսկական անունը Նասր էր։ Նա այդպես է կոչվում արաբական աղբյուրներում։ Նասրին Թեոֆոբոսի հետ նույնացրեց Ա. Գրեգուարը։ Տե՛ս նրա՝* Manuel et Theophobe, *էջ 185—188։ Թեոֆոբոսը Բյուզանդիա փախած խուռամյանների պարագլուխն էր* (Laurent, L'Armenie, *էջ 67, 252)։ Նրա ծագմանը վերաբերող երկու կարծիքներն էլ Ա. Վասիլևը համարում է անհիմն զրույցներ* (Васильев, Византия и арабы, I, с. 82, прим. 1): *Թեոֆոբոսը Բյուզանդիա փախավ 833 թ.՝ Ջիբալում իր և Իսխաք իբն Իբրահիմ իբն Մուսաբի միջև տեղի ունեցած բախումից հետո և Բյուզանդիայում այդ փախստականներից կազմակերպվեց հատուկ զորամաս* (Laurent, L'Arménie, p. 249):

*59 Բաբեկի շարժումը բռնկվեց 816 թ. և արաբական խալիֆայությունը ցնցեց մինչև*

837 թ.։ Գտնում են, որ նրա գաղափարախոսության հիմքում ընկած էր Մազդակյան ուսմունքը։ Իբն ալ Ասիրի համաձայն, նրանք հավատում էին փոխակերպման ուսմունքին. թե հոգիները մի կենդանի արարածից անցնում են մի ուրիշի (Իբն ալ Ասիր, էջ 120)։ Շարժման մասին նաև՝ նույն տեղում. էջ 142 և հտ., 158—159։ Michel le Syrien, t. III, p. 90. Գաղափարախոսության մասին՝ Петрушевский, К истории маздакитов:

Բաբեկի ապստամբության մասին արժեքավոր տեղեկություններ է հայտնում Վարդան Արևելցին. «Յաւուրն յայնոսիկ այր մի յազգէն Պարսից Բար անուն ելեալ ի Բաղտատայ, արկանէր զբազումս ի սուր սուսերի յազգէն Իսմաելի, զբազումս դերելով. և ասէր զինքն անմահ. և ի միում նուագի սատակէր երեսուն հազար ի պատերազմեյն իւրում ընդ Իսմայելի։ Եւ եկն մինչև ղԳեղարքունի, և մաշէր սրով զմեծ և զփոքր...»։ Այնուհետև նա պատմում է նրա եղեռական վախճանի մասին։ Տե՛ս Վարդան Արևելցի, էջ 79։ Բաբեկին (Բաբան) «մարդախողխող, աշխարհաւեր, արիւնարբու զազան» է անվանում Մովսես Կաղանկատվացին (Մովսես Կաղանկատվացի, էջ 330), որ «աւերեաց զերկիրն և ի սուր սուսերի էարկ զկանայս և զմանկունս Բաղաց։ Եւ անտի ի միւս տարին էանց Բաբան ի գաւառն Գեղարքունի և էարկ ի սուր զբնակիչսն ոգիս իբրև ԺԵ հազարբըս. և զմեծ մայրաքաղաքն Մաքենացւոց այրեաց... և էր թիւն Հայոց ՄԶ (827 թ.)»։ Նույն տեղում, էջ 326—327։

Բաբեկի մասին ուսումնասիրություններից տե՛ս Томара, Бабек: Из Тарих-аль Камиль Ибн ал-Ассира, էջ 37—58։ Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 73—75, 77—80, 94։ Նույնի՝ Армения, էջ 129—130, 136—138։ Մելիք-Բախշյան, Հայաստանը, էջ 344—347։

60 Թվականների ինչ-որ անհամաձայնություն կա։ Հայտնի է, որ Բաբեկը ապըստամբություն բարձրացրեց 816 թ.։ Եթե հավատանք Թեոփանեսի Շարունակողին, ապա նա Բյուզանդական կայսրության սահմանները մուտք գործեց ապստամբությունից հինգ տարի անց, հետևաբար շուրջ 821 թ.։ Բայց Թեոփիլոսը իշխել սկսեց 829-ից։ Մեր պատմիչը արաբ խալիֆային անվանում է Սարակինոս։ Եթե 821 թ. նկատի ունի, ապա այն ժամանակ իշխում էր Մամունը (մինչև 833 թ.), եթե 833-ից հետո՝ Մուտասիմը (մինչև 842 թ., երբ, ի դեպ, մահացավ և Թեոփիլոսը)։ Վասիլևը սխալ է համարում բյուզանդական աղբյուրների տվյալներն այն մասին, որ Բաբեկը և նրա գլխավորած պարսիկները բյուզանդացիների կողմն անցան, քանի որ հայտնի է, որ Բաբեկը քսան տարի Պարսկաստանում կռվում էր արաբների դեմ և երկրից դուրս չէր եկել (Васильев, Византия и арабы, I, с. 82, прим. I):

61 Հետաքրքիր մանրամասնություններ է տալիս Գենեսիոսը։ Նրա ասելով, պարսիկների առաջնորդ Բաբեկը արաբների դեմ ապստամբելու հինգերորդ տարում պարտություն կրելով, յոթ հազար հոգով մտավ Հռոմեական կայսրության (իմա՝ Բյուզանդիայի) սահմանները, եկավ Սինոպ քաղաքը, ուր որոնում էր պարսիկների շրջանում մեծ հարգանք վայելող և բյուզանգական բանակում ծառայող Թեոֆոբոսի հօր: Գենեսիոսի ասելով, Բաբեկը գտավ նրան և, կայսեր կողմից երաշխիքներ ստանալով, իր զինվորներին և իրեն ենթարկեց Թեոփիլոս կայսեր (Genesii Regum, էջ 54—55)։ Տե՛ս և նախորդ ծանոթագրությունը։ Խուռամյանների՝ Բյուզանդական կայսրության սահմաններում ապաստանելու մի դեպքի մասին հիշում է Իբն ալ Ասիրը։ Նա նշում է նաև, որ նրանք եկել են Ջիբալից, Համադանից, Սպահանից, Մասբադանից, այսինքն՝ Պարսկաստանի տարածքից (Նույն տեղում, էջ 126)։ Խոսելով Զապետրայի դեմ Թեոփիլոս կայսեր կատարած արշավանքի մասին, արաբ պատմիչը ցույց է տալիս, որ կայսեր բանակում

կային մուհամմիրաներ (էջ 146)։ Սրանք համարվում են Պարսկաստանից փախած խուռամյաններր (Петрушевский, Ислам в Иране, էջ 248)։ Ավելորդ չէ այստեղ նշել, որ Բաբեկի այս պարսիկներին նկատի ունի Միքայել Ասորին։ «Այս ժամանակները,—գրում է նա,—նկատի ունենալով Թեոփիլոս կայսեր՝ արաբների դեմ կատարած երկրորդ արշավանքի դեպքերը,—Բաբեկի համախոհներից շատերը, Նասր զորավարի գլխավորությամբ, պարսից պատերազմի ստեղծած օրհասներից ստիպված, գնացին դեպի հռոմայեցիների թագավոր Թեոփիլոսը և ընդունեցին քրիստոնեությունը» (Michel le Syrien. t. III, էջ 88)։ Պատմիչը շարունակելով ցույց է տալիս, որ Թեոփիլոսը նրանց հաստատել էր Մեծ Հայքում և ցանկացել օգտագործել արաբների դեմ մղվող պատերազմում (Michel le Syrien, t. III, էջ 88)։ Հմմտ. և Միխայէլ Ասորի, 1871, էջ 371. «եւ յայնժամ երկու զօրագլուխքն Տաճկաց Նասրն և Պապաքն հաճեալ ընդ կրօնս քրիստոնէից զօր տեսին ի Նուրեացն, բազում զօրօք գնացին առ Թեոփիլոս թագաւորն Յունաց և եղեն քրիստոնեայք»։ Նաև՝ Միխայէլ Ասորի, 1870, էջ 381։ Ինչպես տեսնում ենք, Միքայել Ասորու բնագրում Թեոփիլոսին դիմող է համարվում միայն Նասրը, իսկ հայերեն թարգմանությունը հիշում է և «Պապաքին»։

62 Այսինքն՝ բյուզանդական վարձկան զորքերի չորս գնդերից (տագմա) մեկը։ Սրանում ծառայողները կոչվում էին սխոլարիոս, իսկ նրանց հրամանատարը՝ սխոլերի դոմեստիկոս։ X դարից սխոլերի գոմեստիկոս տերմինը նշանակում է սպարապետ, ողջ բյուզանդական բանակի հրամանատարը։ Այդպիսիք էին երկուսը՝ Արևմուտքի սխոլերի դոմեստիկոս և Արևելքի։

63 Պահպանվել են Թեոֆոբոսի արճճե կնիքները, որոնք կրում են Θεόφοβος ἐξουσιαστὴς Περσῶν («Թեոֆոբոս՝ պարսիկների էքսուսիաստես»)։ Տե՛ս Zacos—Vegleri, Byzantine Lead Seals, հ. Ա, № 2526։ Հրատարակիչները Περσῶν-ի փոխարեն կարդացել են Χερσῶνος։ Սխալն ուղղել է Վ. Զայբտը։ Տե՛ս „Byzantinoslavica," t. XXXVI (1975), fasc. 2. p. 212։

64 Թեոփիլոսի այս հաղթական վերադարձը և շքերթը Կոստանդնուպոլսում մանրամասն նկարագրված է Կոստանդին Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքում (De Cerim., p. 503—508)։ Այստեղ նշված են նաև արաբական այն քաղաքները, որոնց դեմ նա հաղթանակ տարավ (Տարսոն, Մոպսուեստիա, Ադանա, Իրինուպոլիս, Անազարբա)։

65 Կնաբարո է անվանում, քանզի նա ներքինի էր։ Թեոփանեսի Շարունակողը դա ցույց է տալիս հաջորդ էջում։

66 Նկատի ունի վերոհիշյալ Թեոդորոս Կրատերոսին, որ եկեղեցու կողմից հետագայում սրբագործվեց Ամորիոնի 42 նահատակների թվում։ Վասիլ I-ը նրանց հիշատակին Պեգե պալատում տաճար կառուցեց։ 42 նահատակների վարքը գրել է նրանց ժամանակակից Եվոդիոսը (Acta Sanctorum Martii I, 887—893։ Տե՛ս նաև Сказания о 42 Аморийских мучениках).

67 Մեթոդիոսին անցյալում Անդրոս կղզին էր աքսորել Թեոփիլոս կայսեր հայր Միքայել Թլվատը (տե՛ս վերը, Գիրք Բ, § 8)։

68 Պատմիչն օգտագործում է հազվադեպ հանդիպող στρατηγέτης բառը։

69 Բնագրում՝ βασιλεύς (թագավոր)։

70 Ըստ Սիմեոն Մագիստրոսի, Մանուիլի փախուստը արաբների մոտ տեղի ունեցավ Թեոփիլոսի թագավորության հինգերորդ տարում (Sym. Mag., էջ 632), այսինքն 833 թ.։ Բայց Տաբարին ցույց է տալիս, որ Մանուիլը արաբների մոտ էր արդեն հիշրա-

*ի 215 թ. (28 փետրվարի 830 թ.—17 փետրվարի 831 թ.)։ Նույն բանն է ասում և Յակուբին։ Այս թվականն էլ (830) ընդունված է որպես Մանուիլի՝ արաբների կողմն անցնելու տարեթիվ (*Васильев. Византия и арабы, I, ч. II. приложение, с. 133—134):

*Մանուիլի այս քայլի մասին հետաքրքիր մանրամասնություններ է տալիս Լևոն Քերականը։ Նրան կայսեր առաջ ամբաստանողը դրոմոսի լոգոթետ ոմն Մյուրոն էր, մի կնոջ հետո հիշվող Պետրոնաս զորավարի աները։ Մանուիլին էր պաշտպանում և ամբաստանությունը զրպարտություն համարում Լևոն պրոտովեստիարիոսը։ Կոստանդնուպոլսից փախուստի դիմելով, Մանուիլը արաբներին հայտնեց, թե իրենց կողմը կանցնի, եթե նրանք չստիպեն իրեն հավատուրաց լինել։ Արաբները ոչ միայն նրան այդ մասին երաշխավորություն տվեցին, այլև ընդունեցին որպես բյուզանդական կայսր* (βασιλέα Ῥωμαίων. Leo Gramm., *էջ 218—219)։ Միքայել Ասորին հիշում է Մանուիլի ապստամբության մասին և ցույց տալիս, որ նա փախավ Մամուն խալիֆայի մոտ* (Michel le Syrien, t. *III, էջ 74)։ Նա նրան անվանում է նաև էմմանուէլ։ Մանուիլի փախուստի մասին արաբների մոտ գրում է և Վարդան Արևելցին. «Ելանէր ի խնդիր մեծ զօրավարին Մանուելի Մամիկոննենոյ. և նորա աճապարեալ հարիւր և յիսուն արամբք անկանի ի Կամախ, և անտի առ Մամոնն իշխանն Իսմայելի. և նորա յոյժ պատուեալ զնա, կտրեաց ռոճիկս աւուրն հազար երեքհարիւր և վեց կշիռ արծաթոյ, և զայլ որ ըստ օրէ պարգևս անչափ և անկշիռս»* (Վարդան Արևելցի, *էջ 77—78)։ Պատմիչը Մանուիլի փախուստը արաբների մոտ դնում է Միքայել II-ի թագավորության ժամանակ։ Վասիլևը դա սխալ է համարում* (Васильев, Византия и арабы, *I, էջ 87, ծանոթ. 2)։ Բայց Թեոփանեսի Շարունակողը մի փոքր անց բերում է և այնպիսի վարկած, որի համաձայն Մանուիլը արաբների մոտ փախավ Միքայել II-ի օրոք (§ 26)։*

*71 Բնագրում՝* Κερματοι. *Կեդրենոսի բանաքաղության մեջ՝* Κερμαται (Cedr., *II,* p. *126)։ Ա. Ադոնցը և Ա. Գրեգուարը նրանց նույնացնում են* Karmati (*հոգնակի՝* Karamita) *VIII դ. կեսերին խալիֆայության մեջ ծագած իսմայիլացիների (ծայրահեղ շիիզմի մի մեծ թևի) հետևորդների հետ։ Կարմատներն ընդունում էին, որ իմամները, ինչպես և գլխավոր մարգարեները պիտի յոթը լինեն, որով Մուհամմադ իբն Իսմայիլից հետո չեն կարող այլ իմամներ լինել։ Պետք է սպասել միայն յոթերորդ մարգարեին՝ Մահդիին, վերջին դատաստանի կարապետին, որը «լիացնելու է երկիրը ճշմարտությամբ, արդարությամբ, քանզի այն այժմ լի է անարդարությամբ ու բռնությամբ»։ Կարմատների և ընդհանրապես իսմայիլիտների մասին տե՛ս* Бертельс, Насир-и Хосров, *գլ. Բ—Գ*: Беляев, Мусульманское сектантство, *էջ 47—80, նաև՝* Madelung *-ի* „Karmatl" *հոդվածը* „Encyclopedie de l'Islam". t. IV, p. 687—692: *Վասիլևը, սակայն, խոսում է Մանուիլի՝ խուռամյանների դեմ տարած հաղթանակների մասին* (Васильев, Византия и арабы. I, ч. II, прил. с. 127), *կարծիք, որ բաժանում է Ջ. Ռոսսերը* (Rosser, John the Grammarian's Embassy, *էջ 170, ծանոթ. 18*) *և ժամանակին արտահայտել էր Բըրին,* Bury, History, p. 253, n. 1, p. 257, n. 4:

*72 Այսինքն՝ խալիֆայի։ Նա Մամունն էր։*

*73 Խոսքը Հովհաննես Սինկելլոսի մասին է, որ հետագայում Կոստանդնուպոլսի պատրիարք դարձավ։ Նա հայազգի էր, Լևոն Մաթեմատիկոսի ազգականը։ Տե՛ս Գիրք Դ, § 26։*

*74 Այսինքն՝ ոսկե կնիքով հաստատված գրություն։ Տե՛ս Գիրք Բ, ծանոթ. 72։*

*75 Հմմտ. Գիրք Բ, ծանոթ. 29։ Վասիլևը այս ամենը հեքիաթ է համարում, ժողո-*

վըրդական ավանդություն (Васильев, Византия и арабы. I, ч. II, приложение, с. 132):

76 Լևոն Քերականի ասելով, Մանուիլին հետ վերադարձնելու համար Արաբիա գնաց Հովհաննես Սինկելլոսը (հետագայում՝ պատրիարք)։ Հովհաննեսը կայսրից մեծ գումար ստանալով գնաց արար խալիֆայի մոտ՝ արգելափակված հոռմայեցիների ռազմագերիներին այցելելու պատրվակով։ Բացի այդ, նա Թեոփիլոսից բազմաթիվ նվերներ տարավ խալիֆային և այդ ժամանակ է, որ նա գաղտնի տեսակցություն ունեցավ Մանուիլի հետ (Leo Gramm., p. 219):

77 Այսինքն՝ իսմայելացիների (արաբների) առաջնորդը, Մուտասիմ խալիֆան (833—842 թթ.)։

78 Լևոն Քերականը ցույց է տալիս, որ դա կատարվեց, երբ Մանուիլը մոտեցավ Անատոլիկոն բանակաթեմին։ Նա Կապադովկիայի զորավարի մասին չգիտե (Leo Gramm., p. 220)։ Հարցն այն է, որ Կապադովկիան զորավարության (բանակաթեմի) ստատուս ստացավ ավելի ուշ։ Մինչ այդ Կապադովկիան կլեյսուրարխություն էր։ Բյուրին Թեոփանեսի Շարունակողի տվյալները անախրոնիզմ է համարում (Bury, A History, p. 222, n 5):

79 Վերադարձի մասին գիտե Վարդան Արևելցին. «Եւ Մանուել երթայր դարձեալ ի Յոյնս» (էջ 79)։

80 Ըստ Թեոփանեսի Շարունակողի՝ σύντεχνος Լևոն Քերականը բացում է փակագծերը՝ Թեոփիլոսը դարձավ Մանուիլի երեխաների կնքահայրը, բառացի՝ մկրտության ավազանից ստացավ նրա երեխաներին (Leo Gramm., p. 220)։ Հովհաննես պատրիարքն էլ Թեոդորա կայսրուհու սինտեկնոսն էր (նույն տեղում, էջ 228)։ Նշենք այստեղ, որ սինտեկնոս բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում. «Սինտեկնոս (կամ Սընդեկնոս). բառ յն. Σύντεχνος. որպէս Համածինք. համածնօղք. կամ որդիացեալք ի սուրբ աւազանէն. որպէս կնքահայր և սան» (ՆԲՀԼ, հ. Բ, էջ 714։ Նաև՝ Աճառյան, Արմատական բառարան, հ. Դ, էջ 217)։

81 Նրա իսկական անունը Հովհաննես էր։ Պատկերապաշտների ճամբարին պատկանողները նրան Իաննիս կոչեցին՝ անվանարկելու միտումով (հմմտ. Բ թուղթ առ Տիմոթէոս, Գ, 8. «Այլ որպէս Յանէսն եւ Յամրէս հակառակ կացին Մովսիսի, նոյնպէս և սոքա հակառակ կան ճշմարտութեանն. մարդք ապականեալք մտօք՝ անպիտան ի հաւատրս։ Այլ ոչ երբեք գայցեն յառաջ ի լաւ անդր. քանզի անմտութիւն սոցա յայտնի լիցի ամենեցուն...»)։ Նրան անվանում էին նաև լեկանոմանտես (տաշտագուշակ), իբրև թե տաշտակի մեջ գուշակություններ անելով ապագան էր կանխատեսում (հմմտ. և Leo Gramm., p. 221։ Տե՛ս և վերը, Գիրք Ա, ծանոթ. 94)։

82 Բնագիրն այստեղ եղծված է, բայց հավանաբար մի քանի բառ։ Կեդրենոսի բանաքաղությունը չունի այդ Պլատոնի սասծները (Cedr., t. II, p. 129), թեև և՛ նախորդ, և՛ հաջորդ շարադրանքում բառացի համընկնում է Թեոփանեսի Շարունակողի շարադրանքին։

83 Բնագրում՝ ὅ τε χαγάνος Χαζαρίας καὶ ὁ Πὲχ: Այս նախադասությունից որոշակի իմաստ չի ստացվում, բայց Կոստանդին Ծիրանածինի մոտ նախադասությունը ավելի հստակ է. «Խաքանն այն, որ և Խազարիայի պեխը» (DAI, cap. 42), որով պարզվում է, որ խաքանն ու պեխը նույն անձնավորությունն են։ «Պեխ» թուրքերեն բառ է և նշանակում է «բեյ», «բեգ» (տեր)։ Տե՛ս Sophocles, Greek Lexicon, v. II, p. 888. Նաև՝ Moravcsik, Byzantinoturcica, II, S. 250:

84 Սարկելը (խազարերեն իսկապես Սպիտակ տուն է նշանակում) կառուցվել էր IX դ. 30-ական թվականներին և գտնվում էր ժամանակակից Ցիմլյանսկոյե ամբարտակի տեղում։ Կոստանդին Ծիրանածինը Սարկել բերդի մասին հատուկ խոսում է «Կայսրության կառավարման մասին» աշխատության 42-րդ գլխում, որտեղ փաստորեն կրկնում է Թեոփանեսի Շարունակողի ժամանակագրության մեջ առկա փաստերը։ 965 թ. գրավեց ռուս իշխան Սվյատոսլավը։ Հետագայում ավերվեց, բայց կյանքը շարունակվեց մինչև XII դ.։ 1934—1936 և 1949—1951 թթ. նրա տեղում պեղումներ է կատարել Մ. Ի. Արտամոնովը և հայտնաբերել Սարկելի ավերակները։ Տե՛ս Артамонов. История хазар. էջ 297 և հտ.։ Նաև՝ Труды Волго-Донской археологической экспедиции, т. 1—3, М., 1958—1963 (Мат. и иссл. по арх. СССР, № 62, 75, 109)։

85 Ենթադրվում է Դոն գետը։

86 Այսինքն՝ պեչենեգների։ Թուրքական ցեղ էր, որոնց մասին տե՛ս Հովհաննես Սկիլիցես, էջ 299—300, ծանոթ. 188։

87 Տաքսեոտների մասին տե՛ս Գիրք Բ, ծանոթ. 29։

88 Այստեղ գրում է πόλις (քաղաք), մի քիչ վերև՝ κάστρον (բերդ)։

89 Կոչվում էր նաև πρωτοπολίτης (քաղաքի առաջին մարդը)։ Խերսոնի քաղաքային իշխանությունների ներկայացուցիչն էր և հիշվում է Խերսոնի զորավարից (բանակաթեմի զորավարից) անկախ և նրան զուգահեռաբար։ «Պրոտևոն»-ի, «պրոտոպոլիտևս»-ի և «քաղաքի հայրերի» մասին տե՛ս Dölger, Die Stadt, S. 77—87 (apud: Ahrweiler, Byzance et la mer, p. 72)։

90 Բնագրում՝ μετὰ καὶ τῶν πατέρων τῆς πόλεως (քաղաքի հայրերի հետ)։ Տե՛ս և նախորդ ծանոթ.։

91 Դեպքը տեղի ունեցավ 834 թ. և վերաբերում է քաղաքի ինքնավարության վերացմանը։ Տե՛ս Сюзюмов, Византийский город, с. 69։

92 Սողոպետրա (կամ Զապետրա, արաբ.՝ Զիբաթրա)։ Քաղաք Կիլիկիայում։ Մտնում էր Կոմագենեի սահմաններում։ Դեպքերի մասին տեղյակ է և Սամվել Անեցին, որ տալիս է բյուզանդական աղբյուրներում բացակայող տեղեկություններ։ Նա գրում է. «ՊԻԸ։ Եմուտ Թէոփիլոս յԱսորիս՝ և էառ զքաղաքն Զուպատա՝ եկն և ի Հայս՝ և էառ զամուրն զՊաղին և զՄեծկերտն՝ և զԱնկղ ի գաւառին Դեղնիս (այլ ձեռագրեր տալիս են Դիգիս ընթերցումը, որ ճիշտ է, խոսքը Չորրորդ Հայքի յոթերորդ գավառ Դեղիքի մասին է— Հ. Բ.) և զԽոզան» (Սամվել Անեցի, էջ 92)։ Այսպիսով, հայ պատմիչի տվյալներով պարզվում է, որ Թեոփիլոսը արշավել է նաև Չորրորդ Հայք։ Դեպքերի մասին տե՛ս և Michel le Syrien, t. III, p. 74, որը հիշում է և մի երկրորդ արշավանքի մասին Սողոպետրայի վրա (նույն տեղում, էջ 89)։ Թեոփանեսի Շարունակողը գրում է երկու քաղաքի մասին, բայց հիշում է միայն Սողոպետրան։ Երկրորդ քաղաքի անունը տալիս են Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականը՝ Սամոսատ։ Հավանաբար այս դեպքերը նկատի ունի Ստեփանոս Ասողիկը. «Եւ ի նոյն ամի եմուտ Թէոփիլոս յԱսորիս և էառ զքաղաքն Ուրբելի (sic!) և պատերազմեցաւ ընդ Տաճկաց յԱլմուլատ (հավանաբար՝ յԱշմուշատ—Հ. Բ.) և յաղթեաց» (Ստեփանոս Ասողիկ, էջ 144։ Հմմտ. և Michel le Syrien, t. III, p. 89, որտեղ ցույց է տրված, որ Թեոփիլոսը շարժվեց Անձիտի վրայով։ Տե՛ս և Միխայել Ասորի, 1870, էջ 381, 1871, էջ 371)։ Իր հաղթանակից հետո Թեոփիլոսը բազում ավարով վերադարձավ Կոստանդնուպոլիս, որտեղ և հաղթական շքերթ կազմակերպեց (Sym. Mag., էջ 634, Georg. Mon., էջ 798)։ Շքերթի նկարագրությունը տվել է Կոստանդին Ծիրանածինը իր «Արարողությունների մասին» գրքում (էջ 503—

508), որտեղ խոսվում է Կիլիկիայի Տարսոն, Մոպսուեստիա, Ադանա, Իրինուպոլիս, Անազարբա քաղաքներում՝ արաբների դեմ նրա տարած հաղթանակների մասին։

93 Թեոֆոբոսի՝ պարսիկ զորքերի 838 թ. բարձրացրած հակաբյուզանդական ապըստամբության մասին հատուկ տե՛ս Rosser, Theophilus' Khurramite Policy, p. 263—271:

94 Թեոփիլոսի՝ Հայաստանում կատարած գործունեության մասին վկայություններ ունի Ստեփանոս Ասողիկը։ Նա միաժամանակ հիշում է մի առեղծվածային զորաբանակի մասին, որ մեր կարծիքով ոչ այլ ինչ է, քան Բաբեկի (ավելի շուտ՝ Թեոֆոբոսի) խուռամյանները։ Նա գրում է. «Ի սորա (Թեոփիլոս կայսեր—Հ. Բ.) աւուրս եղև գալուստ Հոռոմդիբրոյն (այլ ձեռագրերում՝ Հոռոմի դիերոյն) ի գաւառն Բասեան, և զբազումս խողխողեցին սրով՝ ի վերայ յարուցեալ գեղաքաղաքին Գոմաձորոյ։ Իսկ Թէովփիլոս գնաց ի Խաղտիս և ել ի ցամաք կամուրջ և գերեաց զբազումս ի Հայոց հանդերձ ընտանեօք իւրեանց...»։ Ասողիկը շարունակելով, գրում է. «Եւ ապա եկեալ Հոռոմդի արանցն (անկասկած նույնանում են վերևի «Հոռոմդիերոյն»-ին) ի Վանանդ ի գիւղն Կաճկաքար՝ կոտորեցան ի ձեռն Սահակայ որդւոյ Իսմայիլի» (իմա՝ Իսխաք իբն Իսմայիլ։ Ստեփանոս Ասողիկ, էջ 144)։ Ասողիկից հայտնի է, որ Թեոփիլոս կայսրը «ի խաղալն իւրում յարևելս կոյս ի սահմանս Հայոց՝ առնու զՇմու բերդն Հայոց, զԱսաղին և զՄեծկերտ և զԱլբերդ ի գաւառին Գեղամայ, և զԽոզան և զՉորրորդ Հայս անապատ առնէ ի մարդոյ և յանասնոյ» (նույն տեղում)։ Հավանաբար նույն դեպքերը նկատի ունի Սամվել Անեցին։ Նա գրում է. «Թէոփիլոս կայսրն ի Տրապիզոն եմուտ։ Նոյն սա զպարսիկս կոտորեաց» (Սամվել Անեցի, էջ 92)։ Այս պարսիկները, ամենայն հավանականությամբ, նույնանում են Ստեփանոս Ասողիկի «Հոռոմդիերոյն»-ի հետ, որոնց տակ ենթադրվում են խուռամյանները։ Տե՛ս Բարթիկյան, «Բյուզանդական» խուռամյանները։

95 Հիշյալ դեպքերի մասին ավելի մանրամասն՝ Michel le Syrien, III, p. 94 և հտ.։ Ուսումնասիրություններից՝ Васильев, Византия и арабы, I, с. 119—140:

96 Այժմ՝ Էսկի Շեհիր։

97 Հեգեմոն. բառացի նշանակում է առաջնորդ։

98 Բարուցիկոսը հայազգի էր։ Տվյալ դեպքում անունը վերածվել է ազգանվան։ Ինչպես տեսանք (էջ 80), այս Բարուցիկոսի անունը Թեոդոս էր, որը, Գենեսիոսի ասելով, Թեոփիլոս կայսեր մոտ ազգականն էր (ἀγχιστεύς) Genesii Regum, էջ 72)։ Հավանաբար Թեոփիլոսի կնոջ՝ Թեոդորայի ազգական էր գալիս, քանզի Թեոդորայի դուստր Սոփիան մի այլ՝ Կոստանդին Բարուցիկոսի կինն էր։ Հայոց մեջ հայտնի է Բարոց անունը, որի գգվականն էլ պիտի Բարուցիկ լինի (հունարեն -ոս վերջավորությամբ)։ Ղազար Փարպեցին հիշատակում է Բարոց Արշակունի անունով մի հայ գործչի, որ Վահան Մամիկոնյանի կուսակիցն էր։ Տե՛ս Ղազար Փարպեցի, գլ. ՀԱ։ Հմմտ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հ. Ա, էջ 354։ Տե՛ս նաև Ադոնց, Մամիկոնյան իշխանուհին, էջ 359։

99 Տե՛ս վերը, Գլուխ Գ, ծանոթ. 66։

100 Խոսքը ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ Աքթայի մասին է, որ աչքի ընկավ հետագայում, Բյուզանդիայի՝ պավլիկյանների դեմ սկսած ջարդերի ժամանակ։ Նրան հանդիպում ենք ոչ միայն արաբական պատմողական երկերում (Васильев, Византия и арабы, I, с. 182 և հտ.), այլև արաբական էպոսում։ Մանրամասն տե՛ս Canard, Un personnage: Նույնի՝ Les principaux personnages, էջ 169—170։ Բյուզանդական

*«Դիգենիս Ակրիտաս» էպոսում նա հանդես է գալիս որպես Դիգենիսի հոր պապը և կրում Ամրրոն անունը։ Դրա մասին տե՛ս նաև* Veloudis. Das Armourislied, *էջ 313—319։ Այս դեպքերի առնչությամբ այլ աղբյուրներ հիշում են մի արաբ զորահրամանատարի ևս՝ Գունդեի (Սուդայի կամ Սուդեմ)։ Տե՛ս* Sym. Mag., p. 638; Georg. Mon. p. 805; Leo Gramm., p. 224):

*101 Այս դեպքերը ավելի հետաքրքիր մանրամասնություններով շարադրված են Գենեսիոսի երկում։ Նա խալիֆայի որդու բանակում եղած թուրքերին կոչում է ամենաարևելյան՝ առնական թուրքեր* (σὺν τοῖς ἀνατολικωτάτοις τῶν ἀνδρικῶν Τούρκων). *Եթե բյուզանդական աղբյուրներում «արևելյան թուրք» են կոչվում խազարները, ապա «ամենաարևելյան»-ների տակ պիտի որ Միջին Ասիայի թուրքերը ենթադրվեն, որ որպես վարձկաններ ծառայում էին խալիֆաթում։ Խոսելով հայերից բաղկացած ամբողջ բանակի մասին* (κατὰ πάσης τῆς ἐξ Ἀρμενίων στρατιᾶς), *իշխանաց իշխանի մասին, Գենեսիոսը նրանց կողքին հիշատակում է նաև «Վասպուրականցուն»* (τοῦ τε Βασπαρακανίτου), *որի տակ ենթադրվում է Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունին (Ա. Վասիլևը «Վասպուրականցի»-ն սխալմամբ անուն է համարում։ Տե՛ս* Васильев, Византия и арабы, I, с. 121, прим. 5, *ընդ որում նրան համարում է և Գենեսիոսի հիշատակած «հայկական զորքի» հրամանատար)։ Ինչ վերաբերում է «իշխանաց իշխանին», ապա նա Տարոնի իշխան Բագարատ Բագրատունին է։ «Իշխանաց իշխանի» մասին՝* Genesii Regum, *էջ 67։ Հմմտ. և* Գ. Գրիգորյան, *Տարոնի իշխանությունը, էջ 70—71։*

*102 Դաղիմոն։ Ռամզեյը տեղադրում է Թոքատից արևմուտք և նույնացնում Կազ Օվայի հետ* (Ramsey, HGAM, *էջ 220, 329)։ Նույն հեղինակը մի այլ տեղում ցույց է տալիս, որ Դազիմոն էր կոչվում նաև Թոքատը (նույն տեղում, էջ 326, 329)։ Հմմտ.* Васильев, Византия и арабы, I, 121.

*103 Անզեն* (Ἀνζήν), *Թեոփանեսի Շարունակողը կոչում է* χῶρος*-վայր, Գենեսիոսը՝* χωρίον *-գյուղ։ Ա. Վասիլևը տեղադրում է Թոքատից արևմուտք* (Васильев, Византия и арабы, I, с. 126

*104 Թուրքերի (հետագայի՝ սելջուկ թուրքերի)՝ հմուտ նետաձիգներ լինելու մասին վկայում է Մատթեոս Ուռհայեցին* (Մատթեոս Ուռհայեցի, *էջ 47—48)։*

*105 Խիլիոկոմոն. Գենեսիոսի երկում՝ Խիլիոկոմոն, որ «հազար գյուղ» է նշանակում։ Հիշում է դեռևս Ստրաբոնը (ԺԲ, Գ, 39) և տեղադրում Ամասիայի մոտ, Պոնտոսում։*

*106 Խոսքը Սոզոպետրայի մասին է։*

*107 Նկատի ունի պատկերամարտությունը, որը հովանավորվում և գլխավորվում էր Թեոփիլոս կայսեր կողմից։*

*108 Հունարեն այդպիսի անուն գոյություն չունի, թարգմանաբար նշանակում է փոքրը եզ, հետևաբար հայկական Եզնակ կամ Եզնիկ (գուցե՝ Ցլիկ) անվան հունարենն է։ Այլ աղբյուրներ այս Եզնիկին համարում են աստեղաբաշխ Լևոն փիլիսոփայի աշակերտը։ Նույն աղբյուրները հիշում են մի մատնիչի անունը ևս՝ Մանիկոփանես (կամ Մանիկոփագոս)։ Տե՛ս* Sym. Mag., p. 638; Georg. Mon., p. 805; Leo Gramm., p. 224)։

*Այս դավաճանին հիշում են և արաբական աղբյուրները, բայց համարում են բյուզանդացիների ձեռքն ընկած մուսուլման ռազմագերի, որ քրիստոնեություն էր ընդունել, և արաբներին մատնացույց էր արել քաղաքի պարիսպների թույլ կողմը՝ փախչելով արաբների մոտ* (Васильев, Византия и арабы, I, с. 131)։ *Ավելորդ չէ ասել, որ Տաբարին հիշում է մի բյուզանդացի զորավար՝ Ամորիոն քաղաքի պաշտպաններից, անունը*

Վենդու, որ «արաբերեն նշանակում է ցուլ» (Васильев, նույն տեղում, էջ 135, ծան. 1)։ Սա հարաբերությունների մեջ էր մտել Ամորիոնը պաշարող Մուտասիմ խալիֆայի հետ։ Ավելի մանրամասն՝ նույն տեղում, էջ 150—152։

109 Պահպանվել է այս 42 նահատակների մանրամասն Վարքը, որ հրապարակել են Վ. Վասիլևսկին և Պ. Նիկիտինը. Сказания о 42 Аморийских мучениках: Նահատակվածներից ոմանց անունները տալիս են Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականը. Թեոփիլոս Պարսիկ, զորավարներ Մելիսենոսն ու Աետիոսը, ներքինի Թեոդորոս Կրատերոս պրոտոսպաթարը, Կալլիստոս տուրմարխը, Կոստանդին դրունգարը, սուրհանդակ Բեսոեսը, տագմաների հրամանատարներ ((Sym. Mag., p. 639: Georg. Mon., p. 805: Նահատակվածների թվում էր նաև Կարուցիկոսը։ Աետիոսի (Յաթիս) մահապատժի մասին խոսում է և Մասուդին (Васильев, Византия и арабы, I, ч. II, с. 69):

110 1.440000 ոսկեդրամ։

111 Ակնարկում է Հովհաննես սինկելլոսի դեսպանությունը խալիֆայի մոտ։ Տե՛ս վերը, էջ 57 և հտ.։ Բայց նրա տարածը ընդամենը չորս կենտինար էր։

112 Համանաբար Աետիոս պատրիկին նկատի ունի։ Տե՛ս վերը, էջ 75։

113 Այդ զորահրամանատարների նահատակությունից հետո, խալիֆայի հրամանով գլխատվեց և մատնիչ Բոյիդիցեսը։ Խալիֆան այդպես էր կարգադրել, ասելով, որ «եթե նա ճշմարիտ քրիստոնյա լիներ, հավատուրաց չէր լինի» (Sym. Mag., p. 639)։ Այս փաստը վկայում է, որ Բոյիդիցեսը և Լևոն Մաթեմատիկոսի աշակերտը չեն կարող նույնանալ, քանզի վերջինս ոչ միայն մահապատժի չենթարկվեց, այլև առաքելությամբ գնաց Բյուզանդիոն խալիֆայի մոտ բերելու իր ուսուցիչ Լևոն Մաթեմատիկոսին։ Բոյիդիցեսի գլխատման մասին չգիտե Լևոն Քերականը (Leo Gramm., p. 225).

114 Ֆրանկիայի ռեքսն այդ տարիներին Լուդովիկոս Բարեպաշտն էր (814—840 թթ.), Կարոլոս Մեծի որդին։

115 Բուկոլեոնը Կոստանդնուպոլսի կայսերական պալատական շենքերից մեկն էր։ Կար և նույն անունով բանտ և նավահանգիստ։

116 Թեոֆոբոս թարգմանաբար նշանակում է «աստվածավախ», «աստծո երկյուղն ունեցող», իսկ Թեոփիլոս՝ «աստվածասեր»։ Սիմեոն Մագիստրոսի ասելով, Թեոֆոբոսի մահապատժի ենթարկվելու պատճառը կայսեր վախն էր, թե իր մահից հետո պարսիկները կարող է Թեոֆոբոսին կայսր հռչակեն (Sym. Mag., էջ 646։ Georg. Mon., էջ 810)։ Նրան գլխատողներն էին Թեոդորա կայսրուհու եղբայր Պետրոնասը և լոգոթետը (տե՛ս նաև Leo Gramm., էջ 227—228)։ Սիմեոն Մագիստրոսի երկի մի ձեռագրում ասվում է նաև, որ Թեոֆոբոսի մարմինը տարան թաղեցին Նարսեսի վանքի մոտ, որտեղ որ «այժմ» գտնվում է Թեոֆոբիայի վանքը՝ պարսիկ Թեոֆոբոսի անունով։ Տե՛ս Шестаков, О рукописях Симеона Логофета, с. 20:

117 Կրետացիք ասելով պատմիչը նկատի ունի Կրետեի սարակինոսներին։

118 Լատրոս (հնում՝ Լատմոս), լեռ Միլետոսի մոտ։ Այնքան շատ էին այստեղ վանքերը, որ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ այն կոչվեց «Եփեսոսի մոտի Սուրբ Լեռ»։ Լատմոսը հիշում է դեռևս Ստրաբոնը (ԺԴ, 1, 8)։

119 Առածի նշանակում է կոտորել, ջարդ տալ։

120 Թեոփիլոսի թագավորության տարիներին ինդիկտիոնի միակ 8-րդ տարին ընկնում է 829 թ., այսինքն՝ նրա թագավորության սկզբին (տե՛ս Grumel, La Chronologie, p. 276)։ Հետևաբար, պատմիչի ասելը «նույն այդ ժամանակները» կարող է շփոթության պատճառ դառնալ, քանզի հիշյալ դեպքերը նա շարադրում է Ամորիոնի



21—1069

Վենդու, որ «արաբերեն նշանակում է ցուլ» (**Васильев**, նույն տեղում, էջ 135, ծանոթ. 1)։ Սա հարաբերությունների մեջ էր մտել Ամորիոնը պաշարող Մուտասիմ խալիֆայի հետ։ Ավելի մանրամասն՝ նույն տեղում, էջ 150—152։

109 Պահպանվել է այս 42 նահատակների մանրամասն Վարքը, որ հրապարակել են Վ. Վասիլևսկին և Պ. Նիկիտինը. Сказания о 42 Аморийских мучениках: Նահատակվածներից ոմանց անունները տալիս են Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականը. Թեոփիլոս Պարսիկ, զորավարներ Մելիսենոսն ու Աետիոսը, ներքինի Թեոդորոս Կրատերոս պրոտոսպաթարը, Կալլիստոս տուրմարխը, Կոստանդին դրունգարը, սուրհանդակ Բեսոեսը, տագմաների հրամանատարներ ((Sym. Mag., p. 639: Georg. Mon., p. 805: Նահատակվածների թվում էր նաև Բաբուցիկոսը։ Աեցիոսի (Յաչիս) մահապատժի մասին խոսում է և Մասուդին (**Васильев**, Византия и арабы, I. ч. II, с. 69):

110 1.440000 ոսկեդրամ։

111 Ակնարկում է Հովհաննես սինկելլոսի դեսպանությունը խալիֆայի մոտ։ Տե՛ս վերը, էջ 57 և հտ.։ Բայց նրա տարածը ընդամենը չորս կենտինար էր։

112 Հավանաբար Աետիոս պատրիկին նկատի ունի։ Տե՛ս վերը, էջ 75։

113 Այդ զորահրամանատարների նահատակությունից հետո, խալիֆայի հրամանով գլխատվեց և մատնիչ Բոյիդիցեսը։ Խալիֆան այդպես էր կարգադրել, ասելով, որ «եթե նա ճշմարիտ քրիստոնյա լիներ, հավատուրաց չէր լինի» (Sym. Mag., p. 639)։ Այս փաստը վկայում է, որ Բոյիդիցեսը և Լևոն Մաթեմատիկոսի աշակերտը չեն կարող նույնանալ, քանզի վերջինս ոչ միայն մահապատժի չենթարկվեց, այլև առաքելությամբ գնաց Բյուզանդիոն խալիֆայի մոտ բերելու իր ուսուցիչ Լևոն Մաթեմատիկոսին։ Բոյիդիցեսի գլխատման մասին չգիտե Լևոն Քերականը (Leo Gramm., p. 225).

114 Ֆրանկիայի ռեքսն այդ տարիներին Լուդովիկոս Բարեպաշտն էր (814—840 թթ.), Կարոլոս Մեծի որդին։

115 Բուկոլեոնը Կոստանդնուպոլսի կայսերական պալատական շենքերից մեկն էր։ Կար և նույն անունով բանտ և նավահանգիստ։

116 Թեոֆոբոս թարգմանաբար նշանակում է «աստվածավախ», «աստծո երկյուղն ունեցող», իսկ Թեոփիլոս՝ «աստվածասեր»։ Սիմեոն Մագիստրոսի ասելով, Թեոֆոբոսի մահապատժի ենթարկվելու պատճառը կայսեր վախն էր, թե իր մահից հետո պարսիկները կարող է Թեոֆոբոսին կայսր հռչակեն (Sym. Mag., էջ 646։ Georg. Mon., էջ 810)։ Նրան գլխատողներն էին Թեոդորա կայսրուհու եղբայր Պետրոնասը և լոգոթետը (տե՛ս նաև Leo Gramm., էջ 227—228)։ Սիմեոն Մագիստրոսի երկի մի ձեռագրում ասվում է նաև, որ Թեոֆոբոսի մարմինը տարան թաղեցին Նարսեսի վանքի մոտ, որտեղ որ «այժմ» գտնվում է Թեոֆոբիայի վանքը՝ պարսիկ Թեոֆոբոսի անունով։ Տե՛ս **Шестаков**, О рукописях Симеона Логофета, с. 20:

117 Կրետացիք ասելով պատմիչը նկատի ունի Կրետեի սարակինոսներին։

118 Լատրոս (հնում՝ Լատմոս), լեռ Միլետոսի մոտ։ Այնքան շատ էին այստեղ վանքերը, որ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ այն կոչվեց «Եփեսոսի մոտի Սուրբ Լեռ»։ Լատմոսը հիշում է դեռևս Ստրաբոնը (ԺԴ, 1, 8)։

119 Առածի Նշանակում է կոտորել, ջարդ տալ։

120 Թեոփիլոսի թագավորության տարիներին ինդիկտիոնի միակ 8-րդ տարին ընկնում է 829 թ., այսինքն՝ նրա թագավորության սկզբին (տե՛ս Grumel, La Chronologie, p. 276)։ Հետևաբար, պատմիչի ասելը «նույն այգ ժամանակները» կարող է շփոթության պատճառ դառնալ, քանզի հիշյալ դեպքերը նա շարադրում է Ամորիոնի



21—1069

*անկումից հետո։ Ամորիոնը արաբների ձեռքն ընկավ 838 թ.։ Թվականի մասին տե՛ս* **Васильев**. Византия и арабы, I, с. 775:

*121 Թեոփանեսի Շարունակողն արդեն դրել էր Թեոֆոբոսի մահվան մասին և հանկարծ այստեղ խոսք է անում նրա Աբազգիա կատարած արշավանքի մասին։ Այս և այլ փաստերի հիման վրա Կաժդանը եկել է այն եզրակացության, որ Թեոֆոբոսի մասին Թեոփանեսի Շարունակողի պատմությունը ընդմիջարկություն է, որ պատմիչը իր երկի հիմնական մասի շարադրանքն ավարտելուց հետո օգտվել է Թեոֆոբոսի մասին մի աղբյուրից* (**Каждан,** Из истории византийской хронограф и X в, 3, с. 113):

*122 Հայազգի կեսար Վարդասը Բյուզանդական կայսրության նշանավոր դեմքերից մեկն էր։ Նա հարազատ եղբայրն էր կայսրուհի Թեոդորայի։ Վարդասի հայրը կոչվում էր Մարինոս, մայրը՝ Թեոկտիստե (վերանվանյալ Փլորինա)։ Մեզ հայտնի է նաև Վարդասի եղբոր անունը և մանրամասն գործունեությունը։ Նա կոչվում էր Պետրոնաս։ Վարդասի հայկական ծագումն ընդգծում է ոչ միայն նրա անունը (Վարդ), այլև նրա հորեղբոր մասին սկզբնաղբյուրներում առկա տեղեկությունները։ Հորեղբայրը կոչվում էր Մանուիլ և նշանավոր զորահրամանատար էր (աղբյուրների համաձայն, այդ թվում և Թեոփանեսի Շարունակողի՝ հայազգի)։ Վարդասը հիշատակվում է նաև Կիրիլի և Մեթոդիոսի՝ քրիստոնեություն քարոզելու համար Մորավիա գնալու առնչությամբ (862 թ.)։ Միքայել III կայսրը կազմակերպեց նրանց մորավյան առաքելությունը Վարդասի հետ* (съ Барлою): *Տե՛ս* Dostal, La Tradition Cyrillo—Methodienne, p. 157—158:

*123 Այս արշավանքը դեպի Աբազգիա (837 թ.) նույնացնում են Թեոփիլոս կայսեր դեպի Խաղտիք կատարած արշավանքի հետ, որի մասին գրում է Ստեփանոս Ասողիկը (էջ 144)։ Այն ուղղված էր Թիֆլիսի ամիրա Իսխաք իբն Իսմայելի (Ասողիկի մոտ՝ Սահակ որդի Իսմայիլի) դեմ։ Ավելի մանրամասն՝* Laurent, L'Armenie, p. 67: Բարթիկյան, *«Բյուզանդական» խուռամյանները։*

*124 Թեոփանեսի Շարունակողն այնուհետև խոսում է Թեոփիլոսի աշխարհիկ և հոգևոր կառույցների մասին։ Հիշյալ կայսրը ըստ Գենեսիոսի կատարել է շինարարական և այլ գործեր, բարձրացրել Կոստանդնուպոլսի պարիսպները, որոնք այնուհետև սկսեցին կոչվել Թեոփիլոսի պարիսպներ* (Genesii Regum, p. 75):

*125 Բնագրում՝* ἐπὶ τοῦ Κίονος. *այսինքն՝ Տիրոջ (Քրիստոսի) եկեղեցու կողմից* (**Беляев** Βυζαντινά, I, c. 93—94: Guilland, Le Sigma p. 227)

*126 Կոստանդնուպոլսի Մեծ պալատը (կամ Սրբազան պալատը) իրենից ներկայացնում էր բազմաթիվ շենքերի ու շինությունների մի համալիր, որոնք կառուցվել էին տարբեր ժամանակներում, տարբեր կայսրերի կողմից։ Թեոփիլոսը կառուցել էր, ինչպես կտեսնենք, բացի հիշյալ Կարիանոսից, Մուսիկոսը, Մարգարիտեսը, Կամիլասը, Մյուստերիոնը, Պիքսիտեսը և էրոսը, բացի այդ նա իրար էր կապել Խրիստոտրիկլինոսը Դափնեի պալատի հետ՝ Սիգմայի և Տրիկոնխի միջոցով։*

*127 Կարիանոս քարը, այսինքն՝ Կարիայի, Փոքրասիական թերակղզու հարավարևմտյան ափին ընկած շրջանից բերվող սպիտակ մարմարը։*

*128 Թարգմանաբար նշանակում է երեք կոնխա (խորան) ունեցող։*

*129 Հունարեն* C *տառի ձևով։ Այն հիշվում է դեռևս Իրենե կայսրուհու (797—802 թթ.) ժամանակներից և հայտնի էր «Կիսակլոր» անվամբ։ (Տե՛ս* **Беляев,** Βυζαντινά, I, с. 89 и сл.: Guilland, Le Sigma, p. 216—247:

*130 Դոկիմիտես քարը (մարմարը) անունը պարտական է Փռյուգիայի Դոկիմիա*

վայրին, որտեղից բերում էին հիշյալ մարմարը։ Հիշում է դեռևս Ստրաբոնը (ԺԲ 8, 14)։

131 Ստյուրաքսը, ելնելով շարադրանքից, պիտի աստիճան նշանակի, թեև բառարաններն այդ բառին տալիս են բոլորովին այլ նշանակություն։ Այն աստիճան է համարում Գիյյանը (Guilland, La Sigma, p. 218: Беляев, Βυζαντινά, I, с. 91):

132 Պիպերատոս մարմարը։ Բառն առնչություն ունի πιπερ (πεπερι) բառին, որ պղպեղ է նշանակում։ Սոֆոկլեսը հարցականով թարգմանում է spotted (բծավոր)։ Greek Lexicon, հ. Բ, էջ 891։ Ըստ երևույթին մարմարը սև պղպեղի հատիկների նման կետեր ուներ։

133 Մյուստերիոն, այսինքն՝ գաղտնի, ծածուկ։

134 Տեղի՝ Պրոպոնտիսի Պրիկոնեսոս կղզու անունից, որտեղից բերում էին հիշյալ մարմարը։ Հայտնի էր վաղուց։ Աշխարհի յոթ հրաշալիքներից մեկի՝ Հալիկառնասոսի Մավսոլոսի գամբարանը պրոկոնեսիոս մարմարից էր կառուցված։ Մարմարի հանքերը օգտագործվում են մինչև օրս։

135 Կոստանդնուպոլսի քաղաքացիները։

136 Թեոփանեսը նրանց տակ ենթադրում է Բոսպորի ասիական ափին կենտրոնացած զորքերը։ Տե՛ս Գլուխ Ա, ծանոթ. 37։

137 Կոստանդնուպոլսի դեմոսը բաժանված էր չորս «մասերի»՝ «կողմերի», որոնք իրենց կրած համազգեստի գույնից կոչվում էին պրասինոս (կանաչ), վենետոս (կապույտ), սպիտակ և կարմիր. ընդ որում սպիտակները հանդես էին գալիս կապույտների հետ, իսկ կարմիրները՝ կանաչների։ Կապույտներն իրենցից ներկայացնում էին բնակչության ավելի բարձր, իսկ կանաչները՝ ցածր, գլխավորապես առևտրաարհեստավորական խավը։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 329—330։

138 «Կողմերի» պարագլուխները։ Տե՛ս նախորդ ծանոթ.։

139 Ակնարկում է IX դ. կեսերին ստեղծված «Արարողությունների մասին» գիրքը (Կլետորոլոգիոնը), որի մի կատարյալ օրինակ, 899 թ. պրոտոսպաթար և ատրիկլին Փիլոթեոսի կողմից կազմված, պահպանվել է։ Նա կազմել է Կոստանդին Ծիրանածինի «Արարողությունների մասին» աշխատության երկրորդ հատորի 52 և 53 գլուխները։ Հարցի մասին՝ Липшиц, Очерки, էջ 123։

140 Տրիկլին էր կոչվում ճաշասեղանը՝ նրա շուրջ եղած երեք թախտերով (կամ ակուբիտներով), որոնց վրա պառկած և ձախ արմունկի վրա հենված էին ճաշում։ Հետագայում տրիկլին կոչվեցին և ճաշասրահները, ապա և ամեն մի փառահեղ սրահ, որտեղ գտնվում էին կայսերական գահերը, և տեղի էին ունենում պալատական ընդունելությունները։

141 Այս Իգնատիոսի մասին տե՛ս Липшиц, Очерки, էջ 302, ծանոթ. 125։ Wolska—Conus, „De quibusdem Ignatiis". էջ 330—360 (հատկապես էջ 351—357)։ Վերջինս «տիեզերական վարդապետ» Իգնատիոսին նույնացնում է «Իգնատիոս պատկերամարտի» հետ, որի դեմ գրել է Թեոդորոս Ստուդիտեսը, և որը մինչև վերջերս համարվում էր «տիեզերական վարդապետից» տարբեր անձնավորություն։ Նա գործել է Լևոն III-ի և նրա որդի Կոստանդին V պատկերամարտ կայսրերի արքունիքում։

142 Էրոս կոչվող շենքի մասին՝ Guilland, Le Sigma, p. 222, 226:

143 Բաթյուինոս սյուները։ Սոֆոկլեսը հարցականով բացատրում է՝ deep purple:

144 Այս շենքի մասին՝ Guilland, Le Sigma p. 227—228:

145 Պապիասի մասին տե՛ս վերը, Գիրք Ա, ծանոթ. 101։

146 Հելիակոնի մասին տե՛ս Գիրք Գ, ծանոթ. 10։

147 Ցուկանիստերիոն էր կոչվում այն հրապարակը (բակը), որտեղ բյուզանդացի մեծամեծները ձիու վրա նստած գնդակ էին խաղում։ Կոչվում էր այդպես, քանզի այդ խաղը պարսկական էր՝ tshu-qan (Janin, Const. byz., p. 119)։ Խաղը մինչև օրս էլ տարածված է Պարսկաստանում և կոչվում է չոգան։ Խաղը հիշում է Մատթեոս Ուռհայեցին. «խաղ գնդին ի մայտանն» ձևով (Մատթեոս Ուռհայեցի, էջ 32)։ Վասիլ I կայսրը Ցուկանիստերիոնի տեղում կառուցեց իր նշանավոր Նոր եկեղեցին և նոր Ցուկանիստերիոն կառուցեց մի այլ տեղում։

148 Կուբուկլիոն (լատ.՝ cubiculum) ննջասենյակ, հատկապես կայսեր ննջասենյակը։

149 Հունարենում՝ արիստերիոն։ Այստեղ, որպես կանոն, տրվում էր դեսերտը։ Ճաշը տրվում էր Հուստինիանոսի տրիկլինում։ Այստեղ դեսերտի սեղան տրվեց նաև ռուս իշխանուհի Օլգային (Беляев, Byzantina, I, c. 28)։

150 Հաշվում է վերևից։ Առաջին հարկը երրորդն է, երրորդը՝ առաջինը։

151 Պեգանուսիոս մարմարն իր անունը պարտական է Իշխանաց կղզիների կազմում գտնվող Պեգանուսա կղզուն, որտեղից էին ստանում հիշյալ մարմարը։ Կղզին այժմ թուրքերը կոչում են Սեդեֆ ադա (սադափի կղզի)։

152 Լևոն VI-ը։

153 Կենուրգիոնը 16 սյուներով բազիլիկ սրահ էր, որ Վասիլ I-ը կցեց կայսերական պալատին։ Նրա մանրամասն նկարագրությունը տե՛ս Թեոփանեսի Շարունակողի երկի Ե գրքի, § 89-ում։

154 Լավսիակոս կոչվող տրիկլինը կառուցել էր Հուստինիանոս II կայսրը, Թեոփիլոսն այստեղ երկար վեճ ունեցավ, սրբապատկերների պաշտամունքի շուրջ, Թեոփանեսի և Թեոդորոսի հետ (տե՛ս Գիրք Գ, § 14)։ Հուստինիանոսի տրիկլինը նույն Հուստինիանոս II-ն էր կառուցել 694 թ.։

155 Բրումալիոնի տոնակատարության մանրամասն նկարագրությունը տե՛ս De Cer., էջ 601 և հտ.։ Նաև Ֆիլոթեոսի «Կլետորոլոգիոնում» (Oikonomidès, Les listes, էջ 223—224)։ Տոնը հեթանոսական ծագում ուներ (Κουκουλές, Βίος, հ. Բ, 1, էջ 25—29, 36—38) և նշվում էր նոյեմբեր—դեկտեմբեր ամիսներին։ Կայսրերը դրա առթիվ փող էին բաժանում։ Տոնի մասին՝ Crawfurd, De Bruma: Ельницкий, Византийский праздник брумалий, c. 340—350: Antonievic, Византијске брумалиј, p. 93—129:

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

1 Նրա մասին այժմ տե՛ս նաև Jenkins, Portrait of Michael III; Karlin-Hayter, Etudes, էջ 452—496։

2 Միքայել III-ի՝ Թեոփիլոսի կողմից նշանակված ռեանդամ խնամակալության մասին՝ Χριστοφιλοπούλου, Ἡ ἀντιβασιλεία, σελ. 34.

3 Կոստանդին Ծիրանածինը բացատրում է կանիկլիոս տերմինը. «նա, ում վստահված է կայսերական գրչի հոգսը»։ Գլխավոր քարտուղար։

4 Լոգոթետները ընդհանուր առմամբ հարկային պաշտոնյաներ էին, որոնց հիմնական պարտականությունն էր հարկերի հավաքումը, տարբեր վարչությունների հաշիվների վերահսկողությունը։ Լոգոթետներ կային ոչ միայն նահանգներում, այլև բանակում։ Եկեղեցին իր հերթին նույնպես ուներ լոգոթետներ։ Նրանց մասին՝ Miller, The Logothete of the Drome, p. 438—470; Guilland, Les Logothètes, p. 5—115;

5 Ուսումնասիրողներից ոմանք գտնում են, որ Մանուիլը չէր կարող 842 թ. հուն-

վարի՝ խնամակալ նշանակվել, քանի որ նա 838 թ. հուլիսի 22-ին ծանր վիրավորվել էր Դազիմոնի ճակատամարտում և մի քանի օր անց վախճանվել (տե՛ս Gregoire, Etudes, էջ 520—524։ Նույնի՝ Manuel et Theophobe, էջ 183—204)։ Սակայն այլ ուսումնասիրողներ կասկածում են Մանուիլի՝ 838 թ. վախճանված լինելուն, որովհետև մի շարք վստահելի աղբյուրներ արդյուհանդերձ Մանուիլին հիշում են Միքայելի խնամակալների թվում։ Թեպետև ենթադրում են, որ այդ շրջանում կարող էին լինել Մանուիլ անունով երկու տարբեր անձնավորություններ (տե՛ս Χριστοφιλοπούλου, Ἡ ἀντιβασιλεία. σελ 37, 39 :

6 Այս վիգլայի դրունգար Կոստանդնին Գենեսիոսը և Սիմեոն Մագիստրոսը հայազգի են անվանում (ἐξ Ἀρμενίων) և էքսկուբիտոսների գնդի հրամանատար (Genesii Regum, էջ 81, Sym. Mag., էջ 681)։ Սիմեոն Մագիստրոսն ավելացնում է, որ նա հայրն էր Թովմա պատրիկի և վիգլայի դրունգար Գենեսիոսի (նույն տեղում)։ Նա իր քաջությամբ, գեղեցիկ արտաքինով աչքի էր ընկել դեռևս Թեոփիլոսի ժամանակ և նշանակվել կայսերական վիգլայի հրամանատար, ստացել պատրիկի պատվաստիճանը և դրումոսի լոգոթետի պաշտոնը (նույն տեղում։ Վիգլայի դրունգարի մասին տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 282—283, ծանոթ. 192)։ Նորագույն հետազոտողները գտնում են, որ Կոստանդին հայը պատկանում էր Մանիակեսների ընտանիքին։ Տե՛ս Karlin-Hayter, Etudes, էջ 484 և հտ.։ Նա հենվում է Գեորգ Վանականի մի տվյալի վրա, որտեղ վիգլայի դրունգարը կոչված է Մանիակես (Georg. Mon., p. 822):

7 Հանդիպում է նաև հայկական աղբյուրներում պրաստ, պրաստին և պրաստնոց ձևերով։ Հին հունարենում նշանակել է քաղաքի արվարձան։ Միջնադարում դա կալված էր, որտեղ, որպես կանոն, բնակվում էին ոչ թե վերջինիս տերերը, այլ նրանց ենթակա մարդիկ՝ ստրուկներ, վարձակալողներ և ուրիշներ։ Պրոաստիոնը հաճախ ունենում էր հսկայական չափեր։ Ավելի մանրամասն տե՛ս Острогорский, Византийский податной устав. էջ 121, Հմմտ. Նաև՝ Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը, էջ 421, ծանոթ. 19, Նաև՝ Каждан. Формирование феодального поместья, с. 100—101:

8 Գենեսիոսը ցույց է տալիս, որ ըստ պատրիարքի, իրեն բրածեծ անողը էքսկուբիտոսների տագմայի հրամանատար Կոստանդին հայն էր (տե՛ս ծանոթ. 6), որ հետագայում դարձավ կայսերական վիգլայի հրամանատար (Genesii Regum, էջ 81)։

9 Մեթոդիոս I (843—847 թթ.)։

10 Նկատի ունի Թեոփիլոս կայսեր, Թեոդորա կայսրուհու ամուսնուն։

11 Թեոդորայի պատմածը, հարկավ, հեքիաթ է։

12 Թեոփիլոսի՝ հետմահու «ներում» շնորհելու մասին մի պատմվածք է պահպանվել. De Theophili imperatoris absolutione, p. 19—39:

13 Սբ. Սոփիայի տաճարը։

14 Սաղմոս ԾԲ, 5. «Ո լնու ի բարութենէ զցանկութիւն քո, նորոգեսցի որպէս արծուոյ մանկութիւն քո»։

15 Ինչպես գիտենք, Հովհաննես պատրիարքը հայազգի էր, նրա ընտանիքի մականունը՝ Մորոխարղամիոս (ըստ Կեդրենոսի բանաքաղության՝ Մորոխարզանիոս)։ Բարդ բառ է։ Առաջինը՝ Մորո կարող է կամ հունարեն μωρός (մորոս՝ հիմար) բառը լինի, կամ ավելի հավանական է՝ μαῦρος (սև, թուխ, հմմտ. Մավրոկատակալոն, ինչպես և Մատթեոս Ուռհայեցու հիշատակած Մորավարդը (էջ 39, որի անունը ձեռագրերում հանդիպում է նաև Մաւրոյ Վարդ ձևով)։ Հետևաբար, պիտի ենթադրել հայերեն «աւ»-ի «ո» դառնալու օրենքով (հմմտ. Մավրիկ—Մորիկ)։ Այսպիսով, մնում է բացատրել անվան բաղադրիչը՝ խարղամիոս (խարզանիոս)։

16 Դեռ ավելին, նա երիտասարդ հասակում այդ վանքի εἰκονιστὴς προβάλμιος, այսինքն՝ վանքի սրբապատկերների գլխավոր նկարիչն էր եղել (Genesii Regum, էջ 83)։

17 Բնագրում՝ εὔριπος: Հռոմի Circus Maximus խաղադաշտի և հանդիսականների նստարանների միջև փորված էր մի խրամ, որի նպատակն էր ապահովել հանդիսատեսների անվտանգությունը դաշտում գտնվող գազաններից։ Այդ խրամը լցված էր ջրով և կոչվում էր Եվրիպոս (տե՛ս Guilland, L'arene. p. 30—31):

18 Բնագրում՝ Τρυφωνίου: Ուղղ.՝ Τρύφωνος: Այդ անունով վանք կար Կոստանդնուպոլսում (տեղագրությունն անհայտ), որը կրում էր հիմնադրողի՝ Տրիփոնի անունը։ Կառուցված պիտի լինի 518 թ. առաջ (Janin, Const. byz., p. 401):

19 Ըստ Կեդրենոսի բանաքաղության հիշյալ կինը այս Մետրոփանեսի մայրն էր (Cedr. II, p. 147):

20 «Ուղղափառության տոն» է կոչվում Արևելյան եկեղեցու կողմից կայսրուհի Թեոդորայի՝ 842 թ. սրբապատկերների վերականգնման հիշատակը։ Մինչև օրս էլ Արևելյան եկեղեցին տոնում է այն, կոչելով «Ուղղափառության կիրակի» (նշվում է Մեծ պահքի առաջին կիրակին)։ Թեոդորան դրա համար դասվեց Արևելյան եկեղեցու սրբերի թվում և հիշատակն է նշվում փետրվարի 11-ին։

21 Սբ. Սոփիայի տաճարը։

22 Տե՛ս Գիրք Գ, ծանոթ. 45։

23 Տե՛ս Գիրք Դ, § 6։

24 Գենեսիոսը (Genesii Regum, p. 85) տալիս է պաշտոնի հունարեն անվանումը՝ առաջին ὁ [illegible]ιαψεύς. Հետևաբար նա ասեկրետ չէր, այլ պրոտոասեկրետ։ Ասեկրետների մասին տե՛ս Գիրք Ա, ծանոթ. 99։

25 Իմա՝ Բորիս (Միքայել)—852—889 թթ.։

26 Նկատի ունի Բյուզանդիայի և Բուլղարիայի միջև խան Օմուրտագի ժամանակ կնքված հաշտության պայմանագիրը, որի ժամկետը լրանում էր 845 թ.։

27 Բորիսի քրիստոնեություն ընդունելը տեղի ունեցավ 866 թ.։ Այդ մասին, բացի պատմողական աղբյուրներից, վկայում է և հունարեն մի վիմագիր արձանագրություն (Иванов, Български старини, էջ 12—16)։ Հարցի մասին ամենահանգամանալից ուսումնասիրությունը՝ Гюзелев, Княз Борис: Նույնի՝ The adoption of Christianity:

28 Եղել են հեղինակներ, որոնք այս նկարիչ Մեթոդիոսին նույնացնում են սլավոնների լուսավորիչ Մեթոդիոսի (Կիրիլի եղբոր) հետ, բայց այդ կարծիքը ընդունելություն չի գտել։ Տե՛ս Извори, т. V, с. 117, прим. 1.

29 Սիդերայի տեղադրությունը վիճելի է։ Տե՛ս Цанкова-Петкова, О территории էջ 135—138։ Ենթադրում են, որ նույնանում է Դեմիր կապուի հետ, Արևմտյան Ստրանջայի դաշտավայրում։

30 Արևելյան Թրակիայի հին քաղաք։ Հռոմեական շրջանում մտնում էր Հեմիմոնտի նահանգի կազմում։ 812 թ. գրավվեց խան Կրումի կողմից։ Այժմյան Դեբելտ գյուղի մոտ (Բուրգազի գավառ) գտնվում են հին քաղաքի ավերակները։

31 Թեոփանեսի Շարունակողի տվյալներից կարելի է գալ այն թյուր եզրակացության, որ բուլղարները, նախքան այդ շրջաններին տիրելը, քաղաքը կոչում էին Ջագորա, այնինչ Սիմեոն Մագիստրոսի և Հովհաննես Սկիլիցեսի տվյալներով այդ անունն ստացավ իրենց պետության սահմաններում ընդգրկվելուց հետո։ Տե՛ս Цанкова-Петкова, О территории, с. 135:

32 Բուլղարիայի՝ քրիստոնեություն ընդունելու պատճառների և հետևանքների մա-

սին կա հսկայական գրականություն։ Այն իրավամբ համարվում է ոչ պատահական երևույթ, բխում էր երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական և էթնիկական զարգացման պայմաններից՝ IX դարում։ Պորիսմով հանգամանորեն զբաղվել են բուլղար պատմաբանները, որոնց գործերից նշում ենք նորագույնները. Гюзелев, Княз Борис: Ангелов, Покръстване, с. 77—80: Его же, Покръстването на българите. с. 3—57:

33 Բնագրում՝ ἐπ ἐξουσία:: Ս. է. Լիպշիցը, հավանաբար բնագրի լատիներեն թարգմանության (ac magistratuum) ոչ ճիշտ ընկալման ազդեցության տակ, թարգմանել է՝ „некоторых из магистров“ (Сборник документов, с. 123). Թեև բնագրում ոչ մեկի տիտղոսն ու պաշտոնը ցույց տրված չէ։ Տվյալ տեղում Լիպշիցը ռուսերեն է թարգմանել Թեոփանեսի Շարունակողի § 16-րդի սկզբից մինչև պավլիկյանների՝ խալիֆայի մոտ գնալու մասին հիշատակությունը։

34 Պատժիչ արշավանքի այս երեք գլխավորողների լրիվ անունները գտնում ենք Կեդրենոսի բանաքաղության մեջ. Լևոն Արգիրոս, Անդրոնիկոս Դուկաս և Սուդալիս (Cedr. II, p. 154)։ Սուդալիսը հիշվում է նաև «Դիգենիս Ակրիտաս» էպոսում։ Լևոն Արգիրոսի մասին ավելի հանգամանորեն տե՛ս Թեոփանեսի Շարունակողի Զ գրքում, § 27։

35 Կարբեասը (հայերեն՝ Կարբիս-Կարպիս, Կարապետ) բյուզանդական էպոսում հիշվում է որպես Կարոես և համարվում է էպոսի գլխավոր հերոսի՝ Դիգենիս Ակրիտասի հոր հորեղբայրը։ Նրա մասին մանրամասնությունների ենք հանդիպում ոչ միայն Գենեսիոսի, այլև Պետրոս Սիկիլիացու «Պավլիկյանների պատմության» մեջ (տե՛ս Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», հ. Ա, էջ 768, 779—780, 782, 786, 788—790, 798, 801)։ Նա հիշվում է և վարքագրական գրականության մեջ (տե՛ս Сказания о 42 Аморийских мучениках, с. Г 29: Васильев. Византия и арабы, I, с. 183 прим. 1, ч. II, Приложение, с. 55, 56):

36 Առաջին մանդատորը։ Բառը լատիներեն է և նշանակում է սուրհանդակ։ Բոլոր զորահրամանատարները ունենում էին մանդատորներ։ Պրոտոմանդատորը համապատասխանում է սխոլերի պրոեքսիմոսին (տե՛ս Bury, IAS, p. 45, 47)։ Պավլիկյան զորահրամանատար Կարբեասը պրոտոմանդատորի աստիճան ուներ։ Լևոն Զ-ին վերագրվող «Տակտիկա»-ում ասված է, որ «մանդատորը» են կոչվում հրամանատարների կարգադրությունները շտապ կարգով զինվորներին հասցնողները։ Տե՛ս Leonis Imperatoris Tactica, սյունակ 704։ Պաշտոնը ավելի ուշ շրջանում տարածում ուներ և վրաց պետությունում (մանդաթուրթ ուխուցեսի)։

37 Ամերի մասին տե՛ս Գիրք Գ, ծանոթ. 100։

38 Հայոց Արգովանը Մալաթիայից հյուսիս, Եփրատի աջ ափին։

39 Հայոց Դիվրիկը։ Կոստանդին Ծիրանածինն այն տեղագրում է Կոլոնիա բանակաթեմում, որն, ըստ իրեն, ծագում է Առաջին Հայք նահանգից (Կոստանդին Ծիրանածին. էջ 170—171, նաև՝ էջ 273—274, ծանոթ. 104)։ Իբն ալ Ասիրը քաղաքն անվանում է Կարբեասի գյուղ (Իբն ալ Ասիր, էջ 160)։ Պավլիկյան (և թոնդրակյան) շարժումների տարածման աշխարհագրության մասին այժմ տե՛ս Huxley, The historical geography, p. 81—95 ; Darrouzes, Epistoliers, p. 275:

40 Նա Ամբրոն է կոչվում նաև բյուզանդական էպոսում, որտեղ հանդես է գալիս որպես Դիգենիս Ակրիտասի հոր՝ խրիսոխերպոսի պապը։ Նշենք այստեղ, որ Իբն ալ Ասիրը նրան անվանում է նաև Ամբու (էջ 161), որտեղից էլ ահա բյուզանդացիների Ամբրոնը։ Իսկական անունն էր Օմար իբն Աբգալլահ ալ Աքթա։ Նրա մասին տե՛ս Գիրք Գ, ծանոթ. 100։

*41 Տարսոնի ամիրա Ալին հայազգի Ալի իբն Յահիա ալ Արմնին է։ Նրան լավ դիտե ժամանակակից Հովհաննես Դրասխանակերտցին. «Ապա ոստիկան ոմն ի Հայս առաքեալ, որ Ալի արմանի անուանիւր՝ ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանացն Հայոց զնա (Սմբատի որդի Աշոտին—Հ. Բ.) կացուցանէր, բազում զգեստիւք և արքունական պատուով ճոխացուցեալ՝ ի նա հաւատալով զսակս Հայոց և զամենայն բեկար արքունիս»* (Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 133։ Տե՛ս նաև* Ստեփանոս Ասողիկ, *էջ 110, նաև 136)։ Նրա մասին տե՛ս* Ադոնց, *Բագրատունյաց փառքը, էջ 76—77։*

*42 «Ինչ-որ նահանգը»՝ Հայաստանն ու Ատրպատականն էին, որոնց կառավարիչ նա նշանակվեց 862 թ. նոյեմբերին* (Իբն ալ Ասիր, *էջ 162)։*

*43 Մասուգիի համաձայն, Ալի իբն Յահիան, իմանալով Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ Աքթայի սպանության մասին, Հայաստանից գնում է դեպի Նփրկերտ, բայց նրա մոտակայքում տեղի ունեցած ընդհարման ժամանակ սպանվում՝ 863 թ. ռամադան ամսին (18 հոկտ.—16 նոյեմբեր)։ Տե՛ս* Васильев, Византия и арабы, I, ч. II, с. 62: *Դեպքերի մասին մի փոքր տարբեր (հավանաբար՝ աղավաղված) պատմությունը տե՛ս* Իբն ալ Ասիր, *էջ 162։*

*44 Բնագրում՝* συνάσχων: *Այս Սկլերոսի մասին տե՛ս* Seibt, Die Skleroi, S. 21—23:

*45 Ինչպես անցյալում Իրենե կայսրուհին՝ իր որդի Կոստանդին VI-ին։*

*46 Գենեսիոսը նշում է, որ Թեոկտիստոսի անձի դեմ ուղղված դավադրության մեջ խառնված էին մի քանի փոխզորավարներ և Թեոդորա կայսրուհու քույր Կալոմարիան (Բարի Մարիա)։ Նրա դերն այն էր, որ իր տան վերնահարկից պիտի դիտեր, երբ Վարդասը հարձակվեր Թեոկտիստոսի վրա, այդ մասին իսկույն տեղյակ պիտի պահեր Միքայել կայսեր* (Genesii Regum, p. 87);

*47 Թեոկտիստոսին հենց Սկյուլայում փորձեց պաշտպանել էքսկուբիտոսների տագմայի հրամանատար Կոստանդին հայը (սրա մասին տե՛ս Գիրք Դ, ծանոթ. 8), բայց անհաջող* (Genesii Regum, p. 89).

*48 Գենեսիոսը ցույց է տալիս տվյալ հետերիայում այս ժամանակ ովքեր էին ծառայում, ովքեր մասնակցեցին Թեոկտիստոսի սպանությանը։ Նրանց նա անվանում է Տավրիկեի (Ղրիմի) սկյութներ* (Genesii Regum, p. *89)։ Հավանաբար վարձկան խազարներն էին։*

*49 Պետական հեղաշրջումը, որի ժամանակ սպանվեց Թեոկտիստոսը, ըստ ոմանց տեղի ունեցավ 851 թ. նոյեմբերի 20-ին (տե՛ս* Wasilewski, Studia, *էջ 378, ռուսերեն և ֆրանսերեն ամփոփումներով)։ Խրիստոֆիլոպուլուն այլ թվական է նշում՝ 855 թ. նոյեմբերի 20* (Χριστοφιλοπούλου. Ἡ ἀντιβασιλεία. *էջ 42)։ Հարցի մասին ավելի մանրամասն՝* Ka lin-Hayter, Etudes, p 460—474:

*50 Նկատի ունի իր որդուն՝ Միքայել կայսրին։*

*51 1090 կենտինարը հավասար է 7.848.000 ոսկեդրամի, իսկ երեք հազար կենտինար արծաթը՝ 21.600.000 արծաթ դրամի։ Ե. Լիպշիցը սխալմամբ գրում է 190 հազար կենտինար ոսկի, իսկ արծաթը՝ 300 լիտր, այսինքն՝ երեք կենտինար։* Липшиц, Очерки, 126:

*52 Իգիկոնը կայսեր գանձարանն էր, գենիկոնը՝ պետական դանձարանը (տե՛ս* Կոստանդին Ծիրանածին, *էջ 170, ծանոթ. 88, էջ 271, ծանոթ. 94)։*

*53 Միքայել կայսեր կողմից ոսկե այս իրերը հալելու մասին խոսում է և Կոստանդին Ծիրանածինը (տե՛ս Գիրք Ե, 29)։ Ինչ վերաբերում է «սենզատոն» կոչվող*

*դրամին, ապա բառը հունականացված լատիներեն է՝* σένζον, *կամ* σέσσος *(լատ.* sessus*), օգտագործված Ծիրանածինի «Արարողությունների մասին» գրքում և նշանակում է «կայսերական գահ»։ Կարծում են, որ սենզատոն է կոչվել, որովհետև գրամի մեկ երեսին դրոշմված էր կայսերական գահի պատկերը, կամ էլ, որ դրամը հատելու համար օգտագործված է եղել կայսերական գահի ոսկին։ Հիշյալ դրամները սենզատոն սկսեցին կոչվել X դ. կեսերին, քանի որ Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս, որ՝ դրանք այդպես են կոչվում «այժմ»։ Հարցի մասին տե՛ս* Laurent, Nom de monnale, p. 193—197:

*54 Նկատի ունի Թեոփիլոս կայսեր մայր Եվփրոսինեին, Միքայել Թլվատի կնոջ։*

*55 Թարգմանաբար նշանակում է ժամացույց, հավանաբար արևի ժամացույց էր։ Գտնվում էր Թեոդոսիոս կայսեր բազիլիկայի արսիդում և Հուստինոս II կայսեր նվերն էր* (Ianin, Const. byz., *էջ 103, 158—159)։ Նշենք այստեղ, որ Կոստանդնուպոլսում կային յոթից ոչ պակաս «ժամացույցներ»։ Գլխավորը գտնվում էր սուրբ Սոփիայի տաճարի հարավային կողմում (հմմտ.* De Cer., I. p. 63):

*56 Տե՛ս ծանոթ. 46։*

*57 Բարուցիկոսների ընտանիքի մասին տե՛ս Գիրք Գ, ծանոթ. 93։*

*58 Բյուզանդական բազմադարյան մշակույթի լուսապսակը, բյուզանդական և համաշխարհային մշակույթի ռահվիրան։ Նա գոնե մոր կողմից հայազգի էր, Թեոդորա կայսրուհու և կեսար Վարդասի փեսա Արշավիրի քրոջ՝ Իրենեի որդին։ Փոտի մասին հին և նոր գործերից կարևոր են՝* Hergenrother, Photius: Dvornik, The photian schism: Ahrweiler, Sur la carriere de Photius. *էջ 348—363 (Արվեյլերը Փոտի ծննդյան թիվն է համարում շուրջ 810 թ.։ Նրան համաձայն է Լըմերլը.* Lemerle, Le premier humanisme byzantine. *էջ 179—181)։ Փոտի մասին նաև՝* Τατάκη, Φώτιος, σελ. 81—111: Каждан, Социальные и политические взгляды Фотия. с. 91—96: Dvornik, Photius' Career, p. 211—218: Stratoudaki White, Patriarch Photios: Impellizzeri, L'umanesimo bizantino, p 245—266:

*59 Ստեփանոս Մագիստրոսի մասին տե՛ս* Guilland, Les patrices, *էջ 308։ Նշենք այստեղ, որ Թեոփանեսի Շարունակողը մի այլ տեղում Ստեփանոս մագիստրոսին (հետևաբար և նրա եղբոր Վարդասին) համարում է ոչ թե Իրենեի որդիներ, այլ Կալոմարիայի (տե՛ս վերը, Գիրք Զ. Թագավորություն Ռոմանոսի, § 2)։ Նույնն է ասում և Գեորգ Վանականը* (Georg. Mon , p. 850):

*60 Բնագրում՝* τὸν τειχιώτην: *Հատուկ պաշտոն էր՝* κόμης τοῦ τείχους. *կամ* κόμης τῶν τειχῶν, *որին վստահված էր Կոստանդնուպոլսի Մեծ պարսպի պաշտպանության պարտականությունը, ավելի որոշակի՝ Կոստանդնուպոլսի պաշտպանությունը։ Թեև պաշտոնը կար դեռևս Անաստասիոս կայսեր ժամանակներից, առաջին անգամ հիշատակվում է 718—719 թթ. Լևոն III Իսավրացու ժամանակ (տե՛ս* Թեոփանես Խոստովանող. *էջ 110)։ X դ. Կոստանդին Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքում նա կոչվում է նաև «պարիսպների» (կամ՝ պարսպի) «դոմեստիկոս» և «կոմես»։ Նրա մասին՝* Guilland, Le Comte des murs, p. 17—25:

*61 Պետրոս Սիկիլիացին էլ Կարբեասին համարում է Տեֆրիկեի (Դիվրիկի) կառուցողը և նշում պավլիկյանների կողմից այդ քաղաքի կառուցման պատճառները։ Ինչպես գիտենք, պավլիկյանները Թեոդորա կայսրուհու հալածանքներից փախուստի դիմելով Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ Աքթայի (Ամեր կամ Ամբրոն) մոտ, նրանից ստացան Արգաուս (Արգովան) և Ամարա քաղաք-ամրոցները։ Սակայն, երբ այնտեղ ա-*

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

27—1069

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՑԱՆԿԵՐ

## ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐ





28—1069

## ՑԱՆԿԵՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՒՅՆ ՄԱՏԵՆԱՇԱՐՈՎ ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

1. *Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքերեն բնագրերից, ներածությունով, ծանոթագրություններով, տերմինաբանական բառարանով և հավելվածով, հատոր Ա, կազմեց* Ա. Խ. Սաֆրաստյան, *Երևան, 1961։*
2. *Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքական բնագրերից, ներածական ակնարկներով ծանոթագրություններով և հավելվածով, հատոր Բ, կազմեց* Ա. Խ. Սաֆրաստյան, *Երևան, 1964։*
3. *Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, կազմեց* Հ. Թ. Նալբանդյան, *Երևան, 1965։*
4. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 4։ Թուրքական աղբյուրներ, գիրք Գ, Էվլիյա Չելեբի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Ա. Խ. Սաֆրաստյանի, *Երևան, 1967։*
5. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 5։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Ա, Պրոկոպիոս Կեսարացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Հրաչ Բարթիկյանի, *Երևան, 1967։*
6. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 6։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Հրաչ Բարթիկյանի, *Երևան, 1970։*
7. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 7։ Թուրքական աղբյուրներ, գիրք Դ։ Թարգմանություն բնագրից* Ա. Խ. Սաֆրաստյանի *և* Գ. Հ. Սան-բուրջյանի. *Երևան, 1972։*
8. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 8։ Ասորական աղբյուրներ, գիրք Ա։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Հ. Գ. Մելքոնյանի, *Երևան, 1976։*
9. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 9։ Հին հունական աղբյուրներ, գիրք Ա, Հովսեպոս Փլավիոս, Դիոն Կասսիոս։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ։* Ս. Մ. Կրկյաշարյանի, *Երևան, 1976։*
10. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 10։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Գ, Հովհաննես Սկիլիցես։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Հրաչ Բարթիկյանի, *Երևան, 1979։*
11. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 11։ Արաբական աղբյուրներ, գիրք Բ, Իբն ալ-Ասիր։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Արամ Տեր-Ղևոնդյանի, *Երևան, 1981։*
12. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 12։ Ասորական աղբյուրներ, գիրք Բ, Անանուն Եդեսացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Լ. Հ. Տեր-Պետրոսյանի, *Երևան, 1982։*
13. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 13։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Դ, Թեոփանես Խոստովանող։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Հրաչ Բարթիկյանի, *Երևան, 1983*
14. *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 14։ Հին հունական աղբյուրներ, գիրք Բ, Դիոդորոս Սիկիլիացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ* Ս. Մ. Կրկյաշարյանի. *Երևան, 1985։*

ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

# Ե

# ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

Հրատ. խմբագիր Ա. Լ. Սահակյան
Նկարչական ձևավորումը Հ. Ն. Գործակալյանի
Տեխ. խմբագիր Զ. Հ. Սարգսյան
Սրբագրիչ Ռ. Ա. Մուրադյան, Գ. Ա. Կիրակոսյան

ИБ №
Հանձնված է շարվածքի 27.07.1990 թ.։ Ստորագրված է տպագրության 1.09.1990 թ.։ Չափը 60×90 1/16։ Թուղթ № 1։ Տառատեսակը «Գրքի սովորական» բարձր տպագրություն։ Տպագր. 30,5 մամուլ։ Ներկ. մամուլ Հրատ., հաշվարկ. 30,75 մամուլ։ Տպաքանակ 2650։ Հրատ. № 7611։ Պատվեր № 1069։ Գինը 5 ռ. 80 կ.։

ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչություն, 375019, Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24 գ.։
Издательство АН АрмССР. 375019, Ереван, пр. Маршала Баграмяна, 24 г.
ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչության տպարան, 378310, ք. Էջմիածին։
Типография Издательства АН АрмССР, 378310. г. Эчмиадзин.

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐ





28—1069

ՑԱՆԿԵՐ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՒՅՆ ՄԱՏԵՆԱՇԱՐՈՎ ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ


1. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքերեն բնագրերից, ներածությունով, ծանոթագրություններով, տերմինաբանական բառարանով և հավելվածով, հատոր Ա, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, Երևան, 1961։
2. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքական բնագրերից, ներածական ակնարկներով ծանոթագրություններով և հավելվածով, հատոր Բ, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, Երևան, 1964։
3. Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965։
4. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 4։ Թուրքական աղբյուրներ, գիրք Գ, Էվլիյա Չելեբի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Ա. Խ. Սաֆրաստյանի, Երևան, 1967։
5. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 5։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Ա, Պրոկոպիոս Կեսարացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967։
6. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 6։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970։
7. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 7։ Թուրքական աղբյուրներ, գիրք Դ։ Թարգմանություն բնագրից Ա. Խ. Սաֆրաստյանի և Գ. Հ. Սանբուրջյանի. Երևան, 1972։
8. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 8։ Ասորական աղբյուրներ, գիրք Ա։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Գ. Մելքոնյանի, Երևան, 1976։
9. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 9։ Հին հունական աղբյուրներ, գիրք Ա, Հովսեպոս Փլավիոս, Դիոն Կասսիոս։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ։ Ս. Մ. Կրկյաշարյանի, Երևան, 1976։
10. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 10։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Գ, Հովհաննես Սկիլիցես։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1979։
11. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 11։ Արաբական աղբյուրներ, գիրք Բ, Իբն ալ-Ասիր։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Արամ Տեր-Ղևոնդյանի, Երևան, 1981։
12. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 12։ Ասորական աղբյուրներ, գիրք Բ, Անանուն Եդեսացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Լ. Հ. Տեր-Պետրոսյանի, Երևան, 1982։
13. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 13։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Դ, Թեոփանես Խոստովանող։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1983
14. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 14։ Հին հունական աղբյուրներ, գիրք Բ, Դիոդորոս Սիկիլիացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Ս. Մ. Կրկյաշարյանի. Երևան, 1985։

ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

# Ե

# ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

*Հրատ. խմբագիր* Ա. Լ. Սահակյան
*Նկարչական ձևավորումը* Հ. Ն. Գործակալյանի
*Տեխ. խմբագիր* Զ. Հ. Սարգսյան
*Սրբագրիչ* Ռ. Ա. Մուրադյան, Գ. Ա. Կիրակոսյան

ИБ №

*Հանձնված է շարվածքի 27.07.1990 թ.։ Ստորագրված է տպագրության 1.09.1990 թ.։ Չափը 60×90 1/16։ Թուղթ № 1։ Տառատեսակը «Գրքի սովորական» բարձր տպագրություն։ Տպագր. 30,5 մամուլ։ Ներկ. մամուլ Հրատ., հաշվարկ. 30,75 մամուլ։ Տպաքանակ 2650։ Հրատ. № 7611։ Պատվեր № 1069։ Գինը 5 ռ. 80 կ.։*

*ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչություն, 375019, Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24 գ.։*
Издательство АН АрмССР. 375019, Ереван, пр. Маршала Баграмяна, 24 г.
*ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչության տպարան, 378310, ք. Էջմիածին։*
Типография Издательства АН АрмССР, 378310. г. Эчмиадзин.